ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# Ն Ա Խ Ն Ե Ա Ց

---

## ԿՈՐԻՒՆ

# ԿՈՐԻՒՆ

# ՎԱՐԴԱՊԵՏ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՎԱՐՈՒՑ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ

ՍՐԲՈՅՆ

## ՄԵՍՐՈՎՊԱՅ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻՆ 1833 ՌՄՁԲ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՎԱՐՈՒՑ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ

## ՍՐԲՈՅ ԱՌՆ ԵՐԱՆԵԼՒՈՅ ՄԵՍՐՈՎԲԱՅ ՎԱՐԴԱՊԵ-ՏԻ ՄԵՐՈՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ

ԱՐԱՐԵԱԼ

# Ի ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ

ՅԱՇԱԿԵՐՏԷ ՆՈՐԻՆ

ԶԱԶԳԱՆԱԶԳԵԱՆ ազգին և հայաստան աշխարհին զմտածապարզ գրոյն, եթէ երբ և յորում ժամանակի մատակարարեցաւ, և որպիսի առամբ այնպիսի նորոգատուր ա̃ծեղէն շնորհս երևեցաւ. և վասն նորին լուսաւոր վարդապետութեան, և հրեշտակաբար կրօնիցն առաքինութե̃ զմտաւ ածելով յիշատակարանս առանձին մատենանշան [1] ծաղկեցուցանել: Իսկ մինչ դեռ անդէն 'ի խորհրդանոցի մտացն, վասն յուշ արկանելոյ միայնագործ հոգացայ. եկեալ հասանէր առ իս հրաման տան միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ աշակերտի տան այնորիկ. և ընդ նմին այլոց ևս քաջալերութիւն աշակերտակցաց մերոյն վարդապետութեան: Ուստի և իմ մասնաւոր աշակերտութե̃ վիճակ առեալ. Թէպէտ և էի կրտսերագոյն և առաւել քան զկար մեր. գրաւեալ անաչառ հրամանին հասելոյ, փութանակի և առանց յապաղելոյ զառաջի եդեալն մատենա-

[1] Յայլ գրչին. ճառքննանշան:

դրել ։ Զօրս և մեր համօրէն աղաչեալ երկախառնել ընդ մեզ աղօթիւք յանձնարարութեամբ ածեղէն շնորհացն, զի կամակարագոյնս և ուղղագոյնս նաւեցեմք զհամատարած ալեօքն վարդապետական ծովուն ։

Այլ արդ առեալ նախաքննեսցուք, եթէ իցէ համարձակութիւն գրով նշանակել զվարս արանցն կատարելոց. ոչ 'ի մէնջ արուեստախօսեալ մերոյն կարծեօք վիճաբանելով, այլ յօրինակացն տուելոց զընդդիմակացն բարձրացուցանել ։ Քանզի ած բարեբարին այսպէս բարեխորհեալ զիւրոց սիրելեաց, ոչ միայն ըստ առաքինութեան վարուց՝ զչքնաղ և զբարձրագոյն հատուցումն բաւական համարել յանսպառ յաւիտեանսն, այլ և աստէն իսկ կանխագոյն. զի անցաւոր ժամանակօքս մատենապատում երկնաբերձ պայծառացուցեալ զհոգեղինացն և զմարմնականացն, առ հասարակ փայլեցէն ։

Այլ 'ի մովսիսական պատմութեան յայտնի է երանելեաց արանցն ազնուականութի, ճշմարտութեան հաւատոցն հաստատութի, ածամերձ ածամուխ կենացն վայելչութիւն, սքանչելական կենացն պայծառութի ։ Զի ոմն ընդունելի պատարագաւ արդար կոչեցաւ ։ Այլ այլ ոմն հաճոյական արուեստին 'ի վերայ ամենակուլ մահուանն կենօք երևեալ ։ Այլ միւս ոմն բովանդակ արդարութբ 'ի վերայ համատարած լեռնացելոյ ածապատիժ ծովուն, հանդերձ ամ շնչականօք տարևոր ժամանակօք նաւակաց պահեալ ։ Այլ միւսոյն յանկարծագիւտ հաւատովք արդարացեալ. ածամերձ ածախօս դաշնաւոր կատարեալ, և զաւետիս հանդերձելոց բարեացն ժառանգեալ ։ Բազմօք և այլ նոյնպիսիք ածածանօթ գրեալք. որոց ազնուականութիւնքն յամ ածածանօթ գրոց պատմի ։ Հանգոյն ասացելոյս երանելոյն Պաւղոսի առ եբրայեցիսն կարգեալ զանուանսն՝ գովէ զնոցին ճշմարտութի հաւատոցն. որով զվարձահատոյց մխիթարութի ընկալան յամենապարգևողէն ածյ, ըստ իւրաքանչիւր յառաջադիմութեցն ։ Սա և զժանդագործին Ռահաբու զհիւրընկալութի լրտեսացն համեմատէ ։

Իսկ եթէ հայեցեալ 'ի բազմախուռն գումարութիւն, արդարև զտակաւուցն զանուանս յայտ առնէ. և զայլովք ևս զանց առնէ, անքաւական զժամանակն առ 'ի կարգի պատմելոյ: 'Ի կիր արկանէ այնուհետև նշանակել միանգամայն զփորձութիւն 'ի վերայ յարձակեալս. և նոցա զանընդդիմակաց զնահատակութիւնսն, զորս և պատուականս քան զաշխարհս առ վաճառ համարի: Այն օրինակ և ա՟մ գիրք հոգեպատումք նշանակեալ ունին զքաջութիւն ա՟մ զօրաց. զոմանց ըստ ա՟ծեղէն կրօնիցն զբարեպաշտութ՟ի, և զոմանց ըստ աշխարհագիր կարգաց ըղմարտից և զպատերազմողաց արութիւն. որպէս զՆեբրովթայն և զՍամփսոնին և զԴաւթայն: Նոյն զոմանց զանական զիմաստութ՟ի գովեալ ա՟ծեղէն իմաստութեամբն հանդերձ. որպէս զՅովսեփայն Եգիպտոս, և զԴանիէլին 'ի Բաբելոն: Յորոց և հզօր թագաւորացն խրատիչք էին, զաշխարհակալ կենցաղոյս զհանգամանսն ցուցանէին, հանդերձ ամենիշխանին ա՟յ ծանօթս առնելով: Որոց և մարգարէին իսկ գովեալ զիմաստութիւն, ասէր ցոմն այսպէս: "Միթէ իմաստնագոյն իցես քան զԴանիէլ. կամ իմաստունք խրատտուք խրատեցին զքեզ հանճարով իւրեանց": Նա ոչ այսչափ միայն. այլ և հոգեկան ազգին հրեշտակութ՟ե՝ գովեալ զսրբոյն զօրութ՟ի, որ զԴանիէլ ցանկալի քարոզելովն կոչէին. և զնա տերամայրն 'ի Գալիլեայ՝ օրհնեալ 'ի կանանց:

Բայց զի՞նչ ասիցեմք զզուգանացն զառ 'ի միմեանց պատուեալ զգովութիւն. զորոց և տ՟րն իսկ ամենայնի՝ բերանալիր գոչէր զազնուականութիւնսն. ոչ միայն զյանդիմանական գործոյն, այլ և զծածուկ սրտիցն լուսաւորութիւն, առաջի հրեշտակաց և մարդկան բերէ: Որպէս զհիւրամեծարին Աբրահամու, հրեշտակօքն հասելովք զծառայական հաւասարութիւնն յայտ արարեալ. պատմելով նմա յետ աւետեացն ընկալելոյ, զինչ 'ի Սոդոմն էր գործելոց: Նոյնպէս և զքաջի նահատակին Յոբայ յառաջ քան զպատերազմել առաջի պատերազմականին՝ յօրինէ զգովութ՟ե ասելով. "Այր ճշմարիտ արդար և ա՟ծապաշտ, և արոշեալ յա՟մ գործոց չարաց": Իսկ մեծին Մովսէ-

սի զառաւելագոյն զա̃ծամուխ մերձաւորութիւն ա̃մ եկեղեցական գրով հնչեցուցեալ. զորոյ և զողջունէ զկայտառութիւն յայտ արարեալ ա̃ծեղէն օրինացն. Նա և զայլազգոյն զՅոթորի ևս զխրատն՝ չանսցուցեալ անգիր:

Եւ այնպէս միահամուռ ա̃մ ա̃ծակրօն արուեստականացն բարեգործութիւք՝ փայլեն յա̃ծագիր օրինացն, զորոց չէ ոք բաւական յիշատակել զերանելի անուանց գումարուն: Եւ ոչ միայն զյառաջագունիցն, այլ և զկնի եղելոցն զմիածնի որդւոյն ա̃յ փրկչին ամենեցուն, 'ի լուսաբեր աւետարանին իւրում ծաղկեցուցանէր զազնուականութիւս, մանաւանդ երանութիւք իսկ պսակէր. ոչ միայն սեպհականացն զերկատասանիցն, և կամ զյառաջամուտ զԿարապետին, այլև զայլոց մատուցելոցն՝ գովէ և զհաւատոցն ճըշմարտութիւն: Քանզի զՆաթանայէլ առանց նենգութեան նշանակէ. և զթագաւորազին զմեծութիւն հաւատոցն՝ անգիւտ յԻսրայէլի ասէ: Բայց ոչ միայն զմեծամեծսն, այլ առաւել ևս զթեթևագոյնսն բարձրագոյնս՝ անարգամեծարն Տ̃ր. որ սակաւիկ ինչ զծախս ուղղոյն յարգէ, և զծախսելեացն յիշատակարան պատմեն ա̃մ ուրեք՝ առ 'ի ներքոյ երկնից: Եւ զկնոջէն քանանացւոյ մեծ զհաւատոցն ասէ. Նաև ըղձանկաց երկուց ընծայելոցն՝ գովէ զարեացն զյօժարութիւն առաւել քան զմեծացն: Իսկ Պաւղոս 'ի մտի եդեալ էր շրջեցուցանել զքնադիր կարգացն պայծառութիւն, անօթ ընտրութեան անուանեալ. անուանակիր յաշխարհի իւրոյ սքանչելի անուամն առնէ:

Վասն որոյ երանելոյն հայեցեալ 'ի շնորհացն բարձրութիւնս առ իւրոյ մեծ օրինացն, և առ ա̃մ սրբոցն. բարձրագոյն բարբառով 'ի փառաւորութիւն[1] ձայնէ. եթէ "Շնորհք ա̃յ, որ յա̃մի հուչակ հարկանէ ըզմէնջ 'ի Տ̃ր. և զհոտ գիտութեան իւրոյ յայտնի առնէ մեզ յա̃մ տեղիս": Ի վերայ այնորիկ ապա և զհամարձակագոյնն բերէ, թէ ո՞ կարէ բիծ դնել ընտրելոց ա̃յ: Եւ զայս օձեան ընկալեալ 'ի ա̃նէ երանելի առաքելոցն, զա̃մ գործակցաց իւրեանց գրով

1 Յայլ օրին. փառաւորութեան:

նշանակել զքաջութիւն. տեսանել զոմանց 'ի մէջ աւետարանին և զոմանց 'ի գործս առաքելոցն երանելոյն Ղուկասու մատենագրեալ. և իցեն որ 'ի կաթուղիկէն առաքելոցն առաւելագոյնս ճանաչին :

Նոյն ինքն Պաւղոսի չորեքտասանեքումբք թղթովք պատմէ զիւր առաքելակիցս, և նիզակակիցս և ուրախակիցս իւր առնէ. և 'ի վախճանի թղթոցն, ըստ իւրաքանչիւր ումեք յողջոյն կատարեալ՝ յանուանէ հարցանէ. և զուրումն յաւետարանէ անտի նշանակէ զգովութիւնս : Բայց ոչ միայն զերանելւոյն զօգնականութիւնս յարգէ. այլ և զքնամեծար ասպնջականիցն իւրոց՝ բազում գովութիւնս փոխանակ մեծարանացն կարգէ, վասն որոյ և յաղաչանս առ ած մատուցեալ՝ զփոխարէն բարեացն հատուցանել հայցէ : Նաւս ամ եկեղեցեօք հնչեցուցանէ զընտրելոցն զազնուականութի. ոչ միայն զարանցն այլև զկանանցն աշակերտելոց [1], որ զճշմարտութիւն աւետարանեն :

Նւ զայս ամ աւետարանեալ ոչ 'ի պարծանս գովութեան, այլ զի օրինակ և կանոն զկնի եկելոցն պաշտիցի : Որպէս 'ի նոյն իսկ զի բարեաց գործոց նախանձաւորս լինել ամենեցուն՝ ստիպէ ասելովն, թէ « Զհետ երթայք սիրոյ. և նախանձաւոր լինել ամենեցուն հոգևորացն » [2] : Որոց զյօժարութի աքայեցւոց վասն պաշտամանն սրբոցն 'ի Մակեդոնիա պատմեալ՝ նախանձեցուցեալ յորդորեաց : Նոյն համարձակութիւն իսկ տայ անխափան 'ի բարեացն առաքինութիւն. թէ « Լաւ է յամ ժամ նախանձել 'ի բարիս » : Նոյն և նմանօղ իւր և մն ստիպէ լինել:

Դարձեալ փութայ ամենեքումբք համերձ ըստ Քի հետոցն վարել, « Հայեցարուք, ասէ, 'ի զօրագլուխն հաւատոց. և 'ի կատարիչն Քս » : Նւ դարձեալ, թէ « Յիշեցէք զառաջնորդս ձեր, որք խօսեցան զբանն այ. հայեցեալ յելս գնացից նոցա, նմանօղք եղերուք հաւատոցն » : Նւ միանգամայն, եթէ « Զայս խորհեսցի իւրաքանչիւրոք 'ի ձեզ որ և 'ի Քս Յս » : Համգոյն սմին և Ղուկաս յսկիզբն առաքելագործ մատենին դնէ : Իսկ ցանկալի մն եղ-

1 Յայլ օրին. պարծեցուցելոց.   2 Յայլ օրին. հոգևորականացն :

բայրն Յակոբոս, զհամօրէն իսկ զգունդն սրբոց հանդերձ սրբասէր տերամբն յօրինակ առեալ՝ ’ի Թղթին իւրում ասէ, եթէ “Օրինակ առէք չարչարանաց և յերկայնմտութեան զմարգարէսն, որ խօսեցան յանուն Տն. զհամբերութի Յոբայ լուարուք, և զկատարումն Տն տեսէք”։

Յայտնի է այսուհետև ասացելովքս, եթէ գովութի մն մծասէր ընտրելոցն ’ի Տնէ է. որ ’ի հրեշտակաց, որ առ ’ի միմեանց, ոչ ’ի պարծանս անձանց՝ այլ առ ’ի նախանձուկս միմեանց արկանելոյ զմիմեամբք, քաջալերեալք հասանիցեմք ’ի բարեացն կատարումն՝ ’ի նշանակեալ նպատակն երանելոյն Պաւղոսի, եթէ “Միաբան հասանել ’ի չափ հասակին Քի”։ Որոյ ազատութեն ’ի յերկինս է, ակն ունել փրկչին մեծին Տյ։ Ունիմք և զկանոնական յաջողուդեալ յառաքելոցն անտի զշնորհապատում գրեալսն, եթէ որպէս մեծարեալք ’ի միմեանց, գովեալք ըստ ճշմարիտ հաւատոյն և ըստ աւետարանագործ կրօնից, մինչև ցայսօր ժամանակի նովին սովորութեամբ վարին։

Նա և արդ առեալ յերկոցունց համարձակութիւն ’ի կիր արկանել և զվարս առն արդարոյ, արդ այսուհետև և խոստացեալն առաջի դիցի. և հայրենակատար մեծարեալ պայմանաւ, որ առ ’ի մէնջ հաճեսցի, և նոցա քաղցրատուր հրամանն հաստուցեալ զարդարեսցի։

Այն զոր ’ի նախակարգ բանիս նշանակեմք, վասն որոյ և փոյթ արարեալ մեր պատմելոյ, էր Մաշթոց անուն ’ի տարօնական գաւառէն, ’ի Հացեկաց գեղջէ, որդի առն երանելւոյ Վարդան կոչեցելոյ։ ’Ի մանկութեան տիոն վարժեալ հելլենական դպրութեամբն, եկեալ հասեալ ’ի գաւառն արշակունեաց Թագաւորաց Հայոց մեծաց, կացեալ յարքունական դիւանին, լինել սպասաւոր արքայատուր հրամանին առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց Առաւանայ ուրումն։ Տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականացն, և ան-

դէն ուշ եղեալ փութով ընթերցուածոց ա՟ծեղէն գրոց. որով առ ժամայն լուսաւորեալ և թևամուխ միջամուխ յա՟ծատուր հրամանացն հանգամանս, և ն՟մ պատրաստութ՟բ զանձն զարդարեալ, հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնս:

Նա յետ այնորիկ ըստ աւետարանական չափուցն՝ 'ի ծառայութ՟ի ա՟յ մարդասիրին դարձեալ, մերկանայր այնուհետև զիշխանակիր ցանկութիւնս. և առեալ զխաչն պարծանաց, ելանէր զկնի ամենակեցոյց խաչելոյն: Նա հաճեալ հրամանացն 'ի խաչակիր զունդն Ք՟ի խառնէր, և անդէն վաղվաղակի 'ի միայնակեցական կարգ մտանէր. բազում և ազգի ազգի վշտակեցութիւն ըստ աւետարանին կրէր ն՟մ իրաց: Ամենայն կրթութ՟բ հոգևորացն զանձն տուեալ միաւորութ՟բ, լեռնակեցութ՟բ, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակութեց, արգելմանց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց: Նա բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն և զհարկ քնոյ յոտնաւոր տքնութ՟են 'ի թօթափել ական վճարէր: Նա զայս ն՟մ առնէր ոչ սակաւ ժամանակս, և գտեալ ևս զոմանս յինքն յարեցուցանէր աշակերտեալ նմին սովորական աւետարանութ՟ե. և այնպէս ն՟մ փորձութեց 'ի վերայ հասելոց՝ կամաւորական քաջութ՟բ տարեալ և պայծառացեալ, ծանօթական և հաճոյ լինէր ա՟յ և մարդկան:

Առեալ այնուհետև երանելոյն զհաւատացեալս իւր, դիմեալ իջանէր յանկարգ և յանդարման տեղիս Գողթան: Այլ և ընդ առաջ ելանէր նմա իշխանն Գողթան, այր երկիւղած և ա՟ծասէր, ըստ աշակերտաց հաւատոցն Ք՟ի: Իսկ երանելւոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն 'ի մէջ առեալ, ձեռն արկանէր զգաւառօքն հանդերձ միամիտ սատարութ՟բ իշխանին. գերեալ զամենեսեան 'ի հայրենեաց աւանդելոց, և 'ի սատանայական դիւապաշտ սպասաւորութ՟են 'ի հնազանդութ՟ի Ք՟ի մատուցանէր:

Նա յորժամ 'ի նոսա զբանն կենաց սերմանեալ, յայտնի իսկ բնակչաց գաւառին՝ նշանք մեծամեծք երևէին, կերպակերպ նմանութ՟բ դիւացն փախստա-

կան լինելով, անկանէին 'ի կողմանս Մարաց։ Նոյն-
պէս առաւել հոգ 'ի մտի արկանէր՝ զհամաշխարհա-
կանս սփոփելով. և առաւել յաղօթս մշտնջենա-
մռունչս, և բազկատարած պաղատանս առ Ա՟ծ. և
արտասուս անդադարս. զմտաւ ածելով զառաքելա-
կանն և ասէր հոգալով. “Տրտմութի՟ն է ինձ և ան-
պակաս ցաւք սրտի իմոյ, վասն եղբարց իմոց և ազ-
գականաց„։

Եւ այնպէս տրտմական հոգովք պաշարեալ և թա-
կարթապատեալ և անկեալ 'ի ծուփս խորհրդոց, և-
թէ որպիսի՛ արդեօք ելս իրացն գտանիցէ։ Եւ իբրև
աւուրս բազումս անդէն 'ի նմին դեգերէր, յարու-
ցեալ այնուհետև հասանէր առ սուրբ կաթուղիկոսն
Հայոց մեծաց, որոյ անուանն Ճանաչէր Սահակ, զոր
պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ։
Եւ միանգամայն յօժարութ՟բ գումարեալ հանդերձ
աղօթիւք մեծովք առ Ա՟ծ կանխէին, վասն ամենայն
ոգւոց քնաքեր փրկութե՟ն հասանելոյ. և զայն առ-
նէին աւուրս բազումս։ Ապա ելանէր նոցա պարգևա-
կան յամենաբարին Ա՟յ, ժողովել զաշխարհահոգ խոր-
հուրդն երանելւոյ միաբանելոցն, և գիրս նշանագրոյ
Հայաստան ազգին, հասանել բազում հարց փորձի.
և քննութե՟ն զանձինս պարապեցուցեալ, և բազում
աշխատութե՟ց համբերեալ, ազդ առնէին ապա և
զկանխագոյն խնդրելին իւրեանց թագաւորին Հայ-
ոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ։

Յայնժամ պատմէր նոցա արքայն, վասն առն ու-
րումն ասորւոյ եպիսկոպոսի ազնուականի Դանիէլ
անուն կոչեցելոյ, որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս
աղփաբետաց հայերէն լեզուի։ Եւ իբրև պատմե-
ցաւ նոցա յարքայէ վասն գտելոյն 'ի Դանիէլէ, յօ-
ժարեցին զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնո-
ցիկ։ Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրո-
վարտակօք առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կո-
չէին. որ էր մերձաւոր Դանիէլի ասորւոյ եպիսկո-
պոսի։

Իսկ Հաբէլին զայն լուեալ, փութանակի հասա-
նէր առ Դանիէլն, և նախ ինքն տեղեկանայր 'ի Դա-
նիէլէ նշանագրոյն, և ապա առեալ 'ի նմանէ առա-

քեր առ արքայն յերկիրն Հայոց. 'ի հինգերորդի ամի թագաւորութեան նորա 'ի նա հասուցանէր: Իսկ արքային հանդերձ միաբան սրբովն Սահակաւ և Մաշթոցիւ՝ ընկալեալ զնշանագիրսն 'ի Հաբէլէն, ուրախ լինէին: Ապա առեալ երանելւոյն հոգաբարձուացն զյանկարծագիւտն, խնդրէին հայցէին ևս յարքայէ մանկունս մատաղս, որով զնշանագիրսն մարթեացեն: Նոյնժամ բազումք 'ի նոցանէ տեղեկանային. ապա հրաման տայր ա͞մ ուրեք նովին կրթել. որով և յաստիճան իսկ վարժապետութեան գեղեցիկ երանելւոյն հասանէր. և իբրև ամս երկու կարգեալ զվարդապետութիւն իւր. և նովին նշանագրովք տանէր:

Իսկ իբրև 'ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն՝ ողջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուին, մանաւանդ զի և նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան:

Յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ 'ի նոյն հոգս դառնային, և նմին ելս խնդրէին ժամանակս ինչ: Վասն որոյ առեալ երանելւոյն Մաշթոցի դաս մի մանկտոյ հրամանաւ արքայի, և միաբանութեամբ սրբոյն Սահակայ, և հրաժարեալք 'ի միմեանց համբուրիւ սրբութեան՝ խաղայր գնայր 'ի հինգերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց, և երթեալ հասանէր 'ի կողմանս Արամի՝ 'ի քաղաքս երկուց Ասորոց. որոց առաջինն Եդեսիա կոչի, և երկրորդն Ամիդ անուն: Ընդդէմ լինէր ս͞բ եպիսկոպոսացն. որոց առաջնոյն Բաբիլաս անուն և երկրորդին Ակակիոս. հանդերձ կղերականօքն և իշխանօքն քաղաքին պատահեալ, և բազում մեծարանս ցուցեալ հասելոցն, ընդունէին հոգաբարձութեամբ, ըստ Ք͞ի անուանելոցն կարգի:

Իսկ աշակերտասէրն վարդապետին՝ զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ, զոմանս յասորի դպրութեանն կարգէր, և զոմանս յունական դպրութիւնս: Ինքն 'ի սամուսատական քաղաքն գումարէր, և նորա իւրովք հաւասարօք զսովորականն առաջի եդեալ զաղօթս և զտքնութիւնս և զպաղատանս արտասուալից, զխստամբերութիւնս, զհոգս զաշխարհահեծս, յիշելով զասացեալսն մարգարէին,

եթէ “ Յորժամ հեծեծեսցես, յայնժամ կեցցես „:

Եւ այնպէս բազում աշխատութեամբ համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց ինչ օգտին գտանելոյ: Առուամ պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհողէն այ. հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ և սքանչելի սբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին: Եւ անդ վաղվաղակի նշանակեալ անուանեալ և կարգեալ, յօրինէր սիղոբայիւք և կապօք: Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն մեց, հանդերձ օգնականօք իւրովք իջանէր 'ի քաղաքն սամոստացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն և յեկեղեցւոյն մեծարեալ լինէր: Եւ անդէն 'ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութե՝ Հռոփանոս անուն գտեալ. որով զամ ընտրութիս նշանագրոյն զնրբագոյնն զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն, միանգամայն յօրինեալ և յանկուցեալ, 'ի թարգմանութի դառնային հանդերձ արամբք երկուք, աշակերտօքն իւրովք. որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին, յԵկեղեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն[1] 'ի պաղանական տանէն: Եւ եդեալ սկիզբն նախ յառակացն Սողոմոնի, որ 'ի սկզբանն իսկ ծանօթս իմաստութեն ընծայեցուցանէ լինել, ասելով եթէ “ Ճանաչել զիմաստութի և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ „: Որ և գրեցաւ ձեռամբն այնորիկ գրչի. հանդերձ ուսուցանելով մանկունս գրչա նմին դպրութե:

Ապա յետ այնորիկ առնոյր թուղթս յեպիսկոպոսէ քաղաքին. և հրաժարեալ 'ի նոցանէ հանդերձ ամենայն իւրովքն, բերէր առ եպիսկոպոսն Ասորոց: Եւ յորոց նախընկալն եղև, առաջի արկեալ նոցա զնշանագիրն ածատուր. վն որոյ բազում իսկ գովութիւք յեպիսկոպոսաց սրբոց և յամենայն եկեղեցեաց բարձրանային 'ի փառս այ, և 'ի մխիթարութի աշակերտելոցն ոչ սակաւք: Յորոց թուղթս աւետագիրս հանդերձ շնորհատուր պարգևօքն, և ամենայն իւրայիւքն, 'ի շնորհացն այ ճանապարհորդ լինէր.

1 Յայլ օրին. պաղոնեանէ:

զօթևանօք անցեալ աջողութբ և հոգելից ուրախու-թեամբ եկեալ հասանէր 'ի հայաստան աշխարհն, 'ի կողմանս այրարատեան գաւառին, առ սահմանօք Նոր քաղաքին, 'ի վեցերորդ ամի Վռամշապհոյ ար-քային Հայոց մեծաց ։

Նաև ոչ այնպէս մեծն Մովսէս զուարճանայր յէջս սինէական լերինն. չասեմք թէ առաւելօքն՝ պակա-սագոյն ։ Քանզի յայ առեալ և ածագիր հրաման 'ի բազուկս այրն ածատես, 'ի լեռնէն իջանէր. այլ վասն վրէժագործ ժողովրդեանն, որոց թիկունք 'ի տէ-րունեան, և կործան յերկիր, տիրադրուժք յուրեանց կուռս ձուլածուին երկիրպագանէին, և զնորին հրա-մանաբերն սրտառուչ սրտաբեկ լացուցին[1]. քանզի 'ի տախտակացն խորտակելոց յայտնի եղեալ տեսանէր բեկելոյն թախծութիւն ։ Իսկ այսր երանելոյս՝ վն որոյ ճառեալքս յարդարին, ոչ ըստ այնմ օրինակի որ անդն գործեցան, այլ ինքն իւրով լցեալ հոգևոր մխի-թարութբ՝ կարծեալ զընդունելոցն յօժարութիւն, և ընդունելոցն յուսով ուրախութեն դասաւորութ ճանապարհացն աւետաբեր ։

Բայց մի ոք յանդգնագոյն վասն ասացելոցն զմեզ համարեսցի. թէ զիա՛րդ զայր մի խոնարհագոյն ընդ մեծին Մովսէսի, ընդ ածախօսին, սքանչելագործին նմանեցուցեալ համարեաց. որով թերևս ստգտա-նեսցեմք ։ Նաև կարեմք այլ աւելի հաւատովք. քանզի և չկայ ինչ 'ի վերայ յայտնեօք և ծածկանօք[2] զածա-կանն խօսել ։ Քանզի միոյն այ ամենազօրի շնորհք առ ամենայն ազգս երկրածնաց մատակարարին ։

Նաև արդ եկեալ յիշելին մերձ 'ի թագաւորական քաղաքն, ազդ լինէր թագաւորին և նոյ եպիսկոպո-սին ։ Որոց առեալ զամենայն նախարարագունդ աւա-գանւոյն ամբոխ, 'ի քաղաքէն ելեալ՝ պատահէին ե-րանելոյն զափամբ Ռահ գետոյն ։ Նաև զցանկալի ող-ջոյնն միմեանց տուեալ. ուստի և բարբառօք ցնծու-թեն և երգօք հոգևորօք, և բարձրագոյն օրհնութբք 'ի քաղաքն դառնային. և զաւուրս տօնական ուրա-խութբ անցուցանէին ։

1 Յայլ օրին. կացուցին ։ 2 Յայլ օրին. ծածկականօք ։

Յայնժամ փաղփաղակի հրամանն առեալ 'ի Թագաւորէն սկիզբն առնելոյ ըղխուժաղուժ կողմանսն Մարաց, որք ոչ միայն վասն դիւական սատանայակիր բարուցն ձիւաղութե, այլ և վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին' դժուարամատոյցք [1] էին: Նա 'ի յարդարել և փնոցա հարուստ [2] ամացն ծընունդս' առեալ պարզախօսս հռետորաքանս, կըրթեալս ա̃ծատուր իմաստութեն ծնունդս կացուցանէին: Նա այնպէս միջամուխ եղեալ հանգամանօք օրինապատգամացն, մինչև բնաւ արտաքոյ իւրեանց բնականութեն զերծանել [3]: Նա 'ի ձեռն առեալ այնուհետև ա̃ծագործ մշակութե զաւետարանական արուեստն' 'ի թարգմանել 'ի գրել և յուսուցանել. մանաւանդ հայեցեալ 'ի տեառնաքարոզ հրամանացն բարձրուեն, որ առ երանելին Մովսէս եկեալ, վասն ամենայն իրացն եղելոց, յա̃ծեղէն պատգամացն բարձրութի աւանդելոցն' մատենագրել առ 'ի պահեստ յաւիտենիցն որ գալոցն էին. նոյնպիսիք և այլոց մարգարէիցն հրամայեալք: “Նա, ասէ, քարտէզ նոր մեծ, և գրեա 'ի նմա գրչաւ' դպրի„: Եւ այլուր, թէ “Գրեա զտեսիլդ 'ի տախտակի, և 'ի գիրս հաստատեա„: Իսկ Պաւղոս յայտնապէս ևս վասն ամենայն ազգաց' զկիձակ ա̃ծատուր օրինացն նշանակէ ասելովն, թէ “Գրեսցի յազգ յայլ„: Եւ թէ “Տէր պատմեսցէ գրովք ժողովրդոց„: Զոր եկեալ կատարեաց ամենափրկիչն Քս̃ շնորհատուր հրամանաւն, եթէ “Եկէք ընդ ամենայն ազգս„: Եւ եթէ “Քարոզեսցի աւետարանս ընդ ամենայն տիեզերս„: Ուստի և երանելի հարցն մերոց համարձակութի առեալ յուսալից փութով, և երևելի և արդիւնակատար ըստ աւետարանին' զիւրեանց մշակութին ցուցանեն:

Յայնմ ժամանակի երանելի և ցանկալի աշխարհս Հայոց անպայման սքանչելի լինէր. յորում անկարծ ուրեմն օրէնսուսոյց Մովսէս' մարգարէական զաուն, և յառաջադէմն Պաւղոս' բովանդակ առաքե-

1 Յայլ օրին. դժուարընկամփոյց:
2 Յայլ օրին. հարանց ամացն:
3 Յօրինակին. իւրեանց բնաւյանց էնէ զերծանել:

լականն գնդովն, համօրէն աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի, միանգամայն եկեալ հասեալ 'ի ձեռն երկուց հաւասարելոցն՝ հայաբարբառք հայերենախօսք գտան :

Անդ էր այնուհետեւ սրտալիր ուրախութիւն եւ ակնավայել տեսիլ հայելւոյն : Քանզի երկիր, որ համբաւուցն անգամ օտար էր կողմանցն այնոցիկ, յորում ամենայն ածագործ սքանչելագործութիւնքն գործեցան, առժամայն վաղվաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր : Ոչ միայն ժամանակաւ պաշտեցելոցն, այլ եւ յառաջագոյն յաւիտենիցն, եւ սպառելոցն սկզբանն եւ կատարածի, եւ ամենայն ածատուր աւանդութեանցն : Իսկ իբրեւ զչափ առեալ զիրացըն հաստատութեան, եւ համարձակագոյն եւ առաւելագոյն զաշակերտութիւնն նորագիւտ վարդապետութեանն՝ խնդրէին ուսուցանել եւ թեքել, եւ պատրաստական քարոզութեան անգէտ մարդկան յօրինել : Որոց եւ ինքեանք իսկ 'ի կողմանց եւ 'ի գաւառաց հայաստան աշխարհին յորդեալք եւ դրդեալք հասանէին 'ի բացեալ աղբիւրն գիտութեան այ : Քանզի յԱյրարատեան գաւառին՝ 'ի կայս թագաւորացն եւ քահանայապետացն, բղխեցին Հայոց շնորհք պատուիրանացն այ :

Անդ էր յիշելի եւ մարգարէականն, եթէ «Եղիցի անդ աղբիւր բղխեալ 'ի տան Դաւթի» : Որ եւ սկսան իսկ սիրտք եկեղեցւոյ՝ միջամուխ ձեռամբ զգործ աւետարանչացն Քրիստոսի գործել. գումարել 'ի կողմանս, 'ի գաւառս, 'ի տեղիս տեղիս Հայաստան աշխարհին, դասս դասս [1] զաշակերտեալսն ճշմարտութեանն, զհաստատեցելոցս 'ի կատարումն գիտութեան, բաւական եւ առ 'ի զայլսն զեկուցանելոյ : Որոց կանոն եւ օրինակ զիւրեանց անձանց արգասիս եղեալ, եւ պատրաստեալ կալ 'ի նմին կանոնի. եւ իւրեանց անդէն զանուանթերակաց արքունիսն, համօրէն ամենայն ազատագունդ բանակիւն՝ ածեղէն իմաստութեան վարդապետեալ : Նուաճել երանելոյն Սահակայ զՄամիկոնեան օրեարն՝ 'ի վարժս վարդապետութեան պարա-

1 Յայլ օրին. դասս դասս :

պեցուցեալ. որոց առաջնոյն Սարգան անուն էր, որ և Սարգկան կոչէր: Այսպէս և զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել'ի գիտութիւն ճշմարտութեան:

Յետ այնորիկ առնոյր հաւանութիւն երանելւոյն Մաշթոց. որպէս զի տէր եպիսկոպոսն 'ի Կայենականըն, և նա 'ի սփիւռս հեթանոսաց զգանն կենաց սերմանիցեն: Նա հրաժարեալք 'ի նոցանէն հանդերձ այլովք ևս օգնականօքն. որոց առաջնումն Տիրայր անուն 'ի Խորձենական գաւառէն, և երկրորդին Մուշէ¹ անուն 'ի նահանգէ Տարօնոյ, որք էին ոքք և զուարթագոյնք. հանդերձ այլովք ևս սպասաւորօք աւետարանին, զոր չեմք բաւական ըստ անուանցն նշանակել. որով յանձն եղեալ երանելւոյն շնորհացն Այ, երթեալ իջանէր առ ոտս տանն Գողթան' յառաջին դաստակերտն իւր: Նա անդ ընդելական սովորութեամբ 'ի կիր արկեալ զվարդապետութիւն' հաւատարութեամբ բարեպաշտին Շաբաթայ, լի առնէր զգաւառն ողջոյնիւ աւետարանին Քի. և կարգէր յամենայն գիւղս գաւառին' դասս ոքց վանականաց: Որում և հասեալ ժամանեալ հայրաքարութիւն Գնտայ, որդւոյ Շաբաթայ առն քրիստոսասիրի, բազում սպասաւորութիւն իբրև հաւասարի որդւոյ վարդապետին տանէր:

Ապա յետ այնորիկ 'ի սահմանակիցս 'ի սիւնական աշխարհն ելանէր. և անդ ծածասէր հնազանդութբ ընկալեալ զնա իշխանին Սիւնեաց, որ էր Վաղինակ անուն, բազում օգնականութիւն գտեալ 'ի նմանէն վասն իրացն առաջի արկելոցն, մինչև հասանել նմա բովանդակ 'ի վերայ սահմանաց Սիւնեաց: Նա ժողովեալ մանկունս առ 'ի նիւթ վարդապետութեան, առաւել զգազանամիտ զվայրենագոյն զձիւաղաբարոյ կողմանցն. և այնչափ փոյթ 'ի վերայ ունելով և դայեկաբար սնուցանել և խրատել, մինչև 'ի նոցունց իսկ 'ի վայրենեացն եպիսկոպոսս տեսուչս եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անունն կոչէր Անանիաս. այր ոք և երևելի հայրաքարոյ ժառանգաւորաց եկե-

1 Յայլ օրին. Մուշեղ:

զեցուոյ. ապա և զերկիրն Սիւնեաց՝ դաստուք վանականաց լնոյր:

Յորում ժամանակի պարգևեալ նմա, հասանէր 'ի գլուխ իշխանութեան Սիւնեաց՝ քաջն Սիսականն Սասակ. այր խորհրդական և համձարեղ և յառաջիմաց, շնորհատուր իմաստութեամբ նոյ: Բազում ինչ նպաստութի ցուցանէր աւետարանագործ վարդապետութեան, իբրև որդւոյ առ հայր՝ հպատակութի ցուցեալ, և ծառայեալ ըստ աւետարանին վայելչութե. մինչ 'ի վախճան զհրամայեալսն 'ի գործ բերէր:

Դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ, հոգ 'ի միտ արկանէր սիրելին ՝Բնի՝ և վասն բարբարոսական կողմանն. և առնոյր կարգեալ նշանագիրս վրացերէն լեզուին, ըստ շնորհեցելոյ նմա 'ի Տնէ: Գրէր կարգէր և օրինօք յարդարէր. և առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել 'ի կողմանս Վրաց. և երթեալ յանդիման լինէր Թագաւորին՝ որում անուն էր Բակուր, և եպիսկոպոսի աշխարհին՝ Մովսէս: Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ օրինացն Տոյ՝ Թագաւորին և զօրացն, հանդերձ ամենայն գաւառօքն:

Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով. յորում և յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել: Եւ գտեալ զայր մի Թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ և ճշմարտահաւատ. հրաման տայր այնուհետև արքայն Վրաց՝ 'ի կողմանց կողմանց, և 'ի խառնիճաղանջ գաւառաց իշխանութե իւրոյ՝ ժողովել մանկունս՝ տալ 'ի ձեռն վարդապետին: Զոր առեալ՝ արկանէր 'ի բովս վարդապետութեան. և հոգևոր սիրոյն եռանդմամբ՝ զաղտ և զժանգ շարաւահոտ դիւացն և զմնոտիագործ պաշտամանն 'ի բաց այնչափ անջատեալ 'ի հայրենեաց իւրեանց՝ և անյիշատակ ցուցանել, մինչև ասել՝ թէ “Մոռացայ զժողովուրդ իմ և զտուն հօր իմոյ,,:

Եւ արդ զնոսա, որ յայնչափ 'ի մասնաւոր և 'ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով ածաբարբառ պատգամօքն մի ազգ կապեալ՝ փառաբանիչք միոյ

ծոյ յօրինէր․ յորոց և իմ անարժանիս՝ եղեալ 'ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ․ որոց առաջինն Սամուէլ անուն, այր ՟նք և բարեպաշտօն՝ եպիսկոպոս կացեալ տանն արքունականի ։ Իսկ իբրև ընդ ամենայն տեղիս Սրբոյ կարգեալ զգործ ածպաշտութեն, այնուհետև հրաժարեալ 'ի նոցանէ՝ դառնայր յերկիրն Հայոց․ և պատահեալ Սահակայ կաթուղիկոսի Հայոց, պատմէր նմա զողջութենէ եղելոցն, միանգամայն փառաւոր առնելով զած զմեծամեծն ՟Քն ։

Ապա դարձեալ ելանէր շրջէր զտեղեօք կարգելեօք, և զգաւառօքն աշակերտելովք աշխարհին Հայոց, զուարթացուցանել, նորոգել, հաստատել ։ Եւ յորժամ այնպէս ընդ ամ տեղիս՝ լի առնէր զ՟ք աւետարան ՟ին, և ամենեցուն զգուշացուցեալ[1] զկենաց ճանապարհն վարելոյ, խորհուրդ առնոյր[2] այնուհետև վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութ՟ն Թագաւորին Յունաց ։ Եւ փութացեալ գընայր հանդերձ աշակերտօք բազմօք, անցանել 'ի կողմանս Յունաց․ և վասն առաւելագոյն բարեգործ համբաւուց՝ յառաջագոյն զնմանէ անդ 'ի հիւսիսական կողմանց հռչակելոց, առաւել միամտութ՟բ ընդունեբար յեպիսկոպոսաց աշխարհին, և յիշխանաց և 'ի գաւառականացն պատուեալ․ մանաւանդ 'ի ստրատելատէն աշխարհին, որ անուանեալ կոչէր Անատոլիս[3] 'ի մուտ ճանապարհին․ որ զիրս առաջի եղեալ գրով ցուցանէր կայսերն, որում անուն Թէոդոս կոչէին, որդի Արկադու կայսեր․ ուստի և հրաման ելանէր, վայելուչ մեծարանօք զՍուրբն՝ Ակումիտ անուն կոչելոյ ։

Իսկ նորա զբազմութիւն աշակերտացն տարեալ 'ի քաղաքն Մելիտինացւոցն, յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որ Ակակիոս կոչէին․ և գըլխաւոր աշակերտացն՝ Թողոյր զայն, որում Ղեւոնդէոս կոչէին․ այր հաւատարիմ և ճշմարտապաշտ ։ Եւ առեալ երանելոյն զպատուական եպիսկոպոսն

1 Ցայլ օրին․ զգուշացեալ ։
2 Ցայլ օրին․ առնէր ։
3 Օրինակ մի․ Անփիլի․ և միւս Անփիլի․ բայց Խորենացին Անատոլ առէ յերես 513 ։

Գուերջանոյ, որոյ անուն կոչէր Գուինթ, և սակաւս յաշակերտաց անտի, և եղեալ յանարուոյն դիմոսական և բազում պատիւ գտեալ, հասանէին 'ի թագաւորակաց քաղաքն Կոստանդինական, զորմէ իսկոյն պատմէին յարքունիսն. և մտեալ առաջի պատուական աթոռոյն յանդիման լինէր ա̃ծակարգ թագաւորացն և հայրապետին սրբոյ Կաթուղիկոսին աշխարհամուտ դրանն, որում Պատրիկոս կոչէին. յորոց և գտեալ շնորհս՝ հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդէն 'ի տիեզերական քաղաքին մեծարել դարմանօք կարգելովք, յեկեղեցւոյն և յարքունեաց և 'ի պատուական իշխանաց քաղաքին:

Իսկ ապա յետ Պասեքին կատարելոյ՝ ցուցեալ կայսերն զպիտոյից զհանգամանս, և առեալ զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերօք կայսերագիր նշանակելովք՝ վասն մանկտոյն յաշակերտութիւնն, առ 'ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ, և վասն ժանտագործ ազգին բարբարոսաց, և եկեղեցեաց հաստատութեան, և մեծամեծ պարգևօք պատուել: Վասն որոյ հաւանեցուցեալ Ճշմարտին զարքունիսն, անընկալ թողոյր. և երկիրպագեալ ծիրանափառ օգոստականացն, և սրբոյ կաթուղիկոսին, և ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանացն քաղաքին, և ա̃մ իւրայովքն յաջողեալք՝ ելանէին 'ի դեսպակս 'ի կառս արքունատուրս: Իսկ մեծաւ շքով և բազում վայելչութ̃բ ունէին զճանապարհս արքունականս, և ա̃մ քաղաքացն պատահելով, 'ի քաղաքին պայծառագոյն երևէին. և մեծամեծ պարգևս գտեալ, գային հասանէին 'ի ժամադիր կողմանս. և անդէն վաղվաղակի պատահեալ սպարապետին Հայոց, հանդերձ սակերօք կայսեր յանդիման լինէին: Իսկ նորա առեալ սակերս կայսերական նշանօք, փութայր վաղվաղակի զհրամանն կատարել. և հրեշտակս արձակեալ այնուհետև 'ի գաւառս կէս ազգին Հայոց՝ յիշխանութ̃են կայսեր, բազմութիւն մանկտւոյ ժողովել, և նոցին ուշիմս կարգել 'ի պատեհագոյն տեղիս. յոր և երանելին զվարդապետութիւնն իւր 'ի գործ արկեալ, և ժողովելոցն քաղցրացուցանէր:

Ապա յետ այնորիկ ձեռն արկանէր զդժպատեհ և զկամակոր Բորբորիանոս աղանդն քննելոյ. և իբրև ոչինչ գտանէր հնարս յուղղութի̅ն ածելոյ, առեալ 'ի գործ արկանէր զթշուառացուցիչ գաւազանն, ծանրագոյն [1] պատուհասիւք 'ի բանդս, 'ի տանջանս, 'ի գելարանս: Իսկ յորժամ այնու ևս պակասեալք 'ի փրկութենէն գտանէին, խորտակեալս ապախանձեալս, մրեալս և գունակ գունակ խայտառակեալս, և յաշխարհէն կորզէին:

Իսկ երանելոյն զիւր վարդապետութեանն պայման արարեալ՝ սակեալ և վճարեալ, և բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ, ծովացուցանէր զվարդապետութե̅ն զխորութիւն, և լցեալ զեղոյր ա̅մ բարութեամբք:

Յայնմ ժամանակի եկեալ [2] դիպէր նմա այր մի երէց աղուան ազգաւ, Բենիամէն անուն. և նորա հարցեալ և քննեալ զբարբարոս զբանս աղուաներէն լեզուին, առնէր ապա նշանագիրս, ըստ վերնապարգև կորովի սովորութե̅ն իւրում. և յաջողութեամբ Ք̅ի շնորհացն, կարգեալ և հաստատեալ կշռէր: Յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց և յիշխանաց աշխարհին և յա̅մ եկեղեցեաց. առ որս թողեալ վերակացուս հաւատացելոցն՝ զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն. որ առաջնոյն Ենովք անուն էր, և երկրորդին Դանան՝ արք կրօնաւորք և յառաջադէմք յաւետարանական ապաստաւորութեանն. զորս յանձն արարեալ շնորհացն ա̅յ՝ անդէն զետեղէր: Եւ ինքն բազում աշակերտօք գայր անցանէր 'ի կողմանս Հայոց մեծաց. և հասեալ 'ի Նորքաղաքն յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, և թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին և ամենայն բանակին. և պատմեալ նոցա ըզգործս կողմանցն այնոցիկ ըստ աջողութե̅ց շնորհացն ա̅յ, դադարէր անդ աւուրս ինչ՝ մխիթարէր վասն հոգևոր անձուկն սփոփելոյ:

Եւ ապա յետ այնորիկ հրաժարեալ գնայ 'ի կողմանս Աղուանից, և երթեալ իջանէր յաշխարհն. և

1 Յայլ օրին. ծայրագոյն:

2 Յայլ օրին. եդեալ:

հասեալ 'ի Թագաւորական տեղին, տեսանէր զնա եպիսկոպոսն Աղուանից, որում անուն Երեմիա կոչէին, և զնոցին Թագաւոր, որում Արսվաղ էր անուն, ամենայն ազատօք հանդերձ. որոյ առաւել հպատակութիւն ընկալեալ վասն անուանն Քրիստոսի: Ապա հարցեալ 'ի նոցանէ, առաջի եղեալ վասն որոյ եկեալն էր, և նոցա երկոցունց զուգացելոց եպիսկոպոսին և Թագաւորին՝ յանձն առեալ դպրութեանն հնազանդելոյ: Տային ևս հրաման՝ 'ի գաւառաց և 'ի տեղեաց իշխանութեանն իւրեանց, բազմութիւն մանկանց՝ յարուեստ դպրութեան ածել և գումարել՝ ըստ արժանաւոր և պատեհ տեղեաց, դասս դասս դպրոցաց, և ռոճիկս կարգել 'ի դարմանս:

Իսկ իբրև հրամանն այն, արդեամբք և գործովք յանկ ելանէր, ապա այնուհետև երանելոյն Երեմիայի եպիսկոպոսի 'ի ձեռն առեալ՝ վաղվաղակի զաստուածային գրոց թարգմանութիւն 'ի գործ արկանէր, որով անդէն յական թօթափել, վայրենամիտ և դատարկասուն և անասնաբարոյ աշխարհն Աղուանից, մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին, և ամենայն աւանդելոցն ա̃յ, ոչ ինիք անտեղեակք: Դարձեալ առաւել ևս երկիւղածն յա̃յ արքայն Աղուանից՝ միամիտ փութով հրաման տայր սատանայակիր և դիւամոլ ազգին սաստիւ՝ թափել զերծանել յունայնավար հնացելոցն, և հնազանդ լինել ամենահեշտ լծոյն Քրիստոսի:

Իսկ յորժամ զայն արարեալ հաւասարութ̃ք, և լցեալ զպիտոյն իւրեանց, և զկամացն յօժարութիւն, ձեռնատու [1] ևս եղեալ նմա սրբամատոյց վարդապետութեանն 'ի քաղաքական կողմանս սրբոյ եպիսկոպոսին՝ որում Մուշեղ կոչէին, հրաժարէր ապա և 'ի Թագաւորէն և յեպիսկոպոսացն և յա̃մ եկեղեցւոյն Աղուանից: Իսկ զոմանս յիւրոց աշակերտացն վերակացուս իւրեանց կացուցանէր, հանդերձ արամբ քահանայիւ արքունական դրանն, որում անուն Յովնաթան կոչէին, որոյ բազում յօժարութիւն 'ի վարդապետութեան էր գտեալ, և յանձն առնելով զնոսա

1 Յայլ օրին. ձեռնտու:

և զանձն՝ ամենապահ շնորհացն Այ, խաղացեալ գայր 'ի կողմանցն Աղուանից, անցանել յաշխարհն Վրաց. և հանդէպ հասեալ գայր գարդմանական ձորոյն: Ընդ առաջ լինէր նմա իշխանն Գարդմանից, որում Խուրս կոչէին, և ասպնջական եղեալ նմա ածասէր երկիւղածութբ, առաջի դնէր զանձն վարդապետին, հանդերձ իշխանութեամբն իւրով. առաւելագոյն իսկ փայելեալ 'ի հիւթ և 'ի պարարտութն վարդապետութեանն, յուղարկէ զերանելին ուր և երթալոցն էր:

Իսկ նորա անցեալ դիմեալ 'ի կողմանսն, առ որով ժամանակաւ Արձիւղ անուն Թագաւորեալ Վրաց, որոյ առաւելապէս պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնս. և նորա շրջեալ զամենայն աշակերտօք, պատուիրեալ կալ 'ի ճշմարտութեանն: Յայնժամ իշխանին տաշրացւոց տան պատուականի և ածասիրի, որ անուանեալ կոչէր Աշուշայ, 'ի ձեռն տայր նմա զանձն ամենայն գաւառօքն իւրով. և նորա ամենափիւռ վարդապետութիւնս, ոչինչ պակասութբ քան զայլոցն գաւառաց անցուցեալ, և յանձն արարեալ զնոսա Տեառն եպիսկոպոսին Սամուէլի, այնմ զոր 'ի վերոյ նշանակեցաք, ինքն դառնայր 'ի կողմանս Հայոց մեծաց. և եկեալ 'ի սովորական տեղիսն, զըն-դելական ողջոյնն սրբոյն Սահակայ և ամենայն պատահելոցն տուեալ, պատմէր նոցա վասն այնր ևս նորագործ իրացն: Որք իբրև լուան, առաւել գոհանային զպարգևացն Այ:

Յետ այնորիկ ուշ եղեալ երկոցունց երանելեացն՝ զիւրեանց ազգին զդպրութիւն առաւել յարգել և և դիւրացուցանել, ձեռն 'ի գործ արկանէր 'ի Թարգմանել և 'ի գրել մեծն Իսահակ՝ ըստ յառաջագոյն սովորութն: Որոց դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն՝ յուղարկել 'ի կողմանս Ասորոց 'ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ, զոր 'ի վերոյն յիշեցաք, և երկրորդն Եզնիկ անուն՝ յայրարատեան գաւառէն 'ի կողբ գեղջէ, զի յասորական բարառոյն՝ զնոցին հարցն սրբոց զաւանդութիս, հայերէն գրեալս դարձուսցեն:

Իսկ Թարգմանչացն հասեալ՝ ուր առաքեցանն, և

կատարեալ զհրամանսն, և առ պատուական հարսն առաքեալ անցեալ գնայէին 'ի կողմանս Յունաց. ուր և ուսեալք և տեղեկացեալք, Թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին ։

Ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ումանց եղբարց 'ի հայաստան աշխարհէս, դիմել իջանել 'ի կողմանս Յունաց, որ և Ղևոնդէս առաջնոյն անուն էր, և երկրորդին Կորիւն, և մատուցեալ յարէին յԵզնիկն, իբրև առ ընտանեգոյն սըննդակից՝ 'ի կոստանդինական քաղաքին, և անդ միաբանութեամբ հոգևոր պիտոյիցն՝ զխնդիրսն վճարէին ։ Արդ յետ այնորիկ հաստատուն օրինակօք ա̃ծատուր գրոցն, և բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութ̃ք, և նիկիական և եփեսոսական կանոնօք գային երևելով աշխարհին Հայոց, և առաջի դնէին հարցն զբերեալ կտակարանսն Եկեղեցւոյ Ա̃յ ։

Իսկ երանելոյն Սահակայ զեկեղեցական գրոց զումարութիւնն՝ կանխաւ յունական բարբառոյն 'ի հայերէն դարձուցեալ, և բազում ևս զհայրապետաց մեծաց զճշմարիտ զիմաստութիւնն ։ Դարձեալ յետ այնորիկ առեալ հանդերձ Եզնակաւ՝ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի զթարգմանութիւնս, հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք, և շատ ևս մեկնութիւն գրոց թարգմանէին ։ Նա և այնպէս զա̃մ ժամանակս իւրեանց՝ յընթերցուածս գրոց ծախէին հարքն՝ զտիւ և զգիշեր, և նովիմբ ծաղկեալք և շահաւետեալք՝ օրինակ բարեաց ուսումնասէր առընթերակայից լինէին. մանաւանդ զի ունէին պատուիրանս զգուշացուցիչս յա̃ծակարգ պատգամաւորացն. յորոց առաջինն հրամայէ՝ թէ « Յօրէնս Տ̃ն խորհեսցիս 'ի տուէ և 'ի գիշերի ». և երկրորդն հանդոյն պատուիրէ, թէ » Մի՛տ դիր ընթերցուածոց մխիթարութեան վարդապետութեան, մի՛ անփոյթ առնել զշնորհացդ որ 'ի քեզ են. յայդ խորհեա՛ և 'ի դոյն յամեսջիր. զայդ եթէ առնիցես և զանձն ապրեցուսցես, և զայնոսիկ որ քեզն լսիցեն » ։

Ապա յետ դարձեալ՝ այնպիսի առաւել և բարձրագոյն վարդապետութեամբ՝ սկսեալ երանելոյն Մաշթոցի ճառս յաճախագոյնս, դիւրապատումս, շնորհա‿

գիրս, բազմադիմիս 'ի լուսաւորութենէ և 'ի հիւ-
թոյ գրոց մարգարէականաց կարգել և յօրինել. ըն
ամենայն ճաշակօք աւետարանական հաւատոցն ճըշ-
մարտութեան։ Յորս բազում նմանութիւնս և օրինակս 'ի
յանցաւորացս ստուի, առաւելագոյն վասն յարութե-
նական յուսոյն առ 'ի հանդերձեալն՝ յերիւրեալ
կազմեալ. զի հեշտընկալք և դիւրահասոյցք ախմա-
րագունիցն, և մարմնական իրօք զբաղելոցն ըմբռնիցին,
առ 'ի սթափել և զարթուցանել և հաստահիմն առ
'ի խոստացեալ աւետիմն քաջալերել։

Այլ այնպէս զամենայն կողմանս Հայոց Վրաց և Աղուա-
նից, զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն և
զձմեռն զտիւ և զգիշեր՝ անվեհեր և առանց յապա-
ղելոյ իսկ, իւրով աւետարանական և ողջապատում
գնացիւքն՝ առաջի թագաւորաց և իշխանաց, և ամե-
նայն հեթանոսաց և անընդդիմակաց 'ի հակառա-
կորդաց՝ զամենափրկչին Յիսուսի անուն կրեաց յանձին։
Այլ զամենայն ոգի քննազգեստ և հոգեղէն վառեաց, և բա-
զում բանդականաց և կալանաւորաց և տագնապելոց
'ի բռնաւորաց թողութիւն արարեալ՝ կորզեալ՝ ըզ-
նոսա ահաւոր զօրութեամբն Քրիստոսի։ Այլ բազում մուր-
հակս անիրաւութեան պատառեաց, և բազում սգաւո-
րաց և կարճամտելոց՝ մխիթարական վարդապետութեամբն
զակնկալ յուսոյն ըստ յայտնութեան փառաց մեծին
Աստուծոյ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի նօլթձեաց. և զամենայն
միանգամայն յաստուածպաշտութեան պայման անդ փո-
խեաց։

Այլ դարձեալ բազում և անհամար գունդս վա-
նականաց, 'ի շէնս և յանշէնս, դաշտականս և լեռ-
նականս, անձաւամուտս և արգելականս բնակեցու-
ցեալ հաստատեր։ Որս ընդ ժամանակս ժամանակս
իւրով մարմնովն իսկ օրինակ ցուցեալ, առեալ զոմանս
յաշակերտաց յիւրաքանչիւր մենաստանացն, և եր-
թեալ լեռնակեաց սորամուտ ծակախիթ եղեալ,
զառօրէական զկերակուրն խոտաբուտ ճաշակօքն վը-
ճարէին. այնպէս վշտակեաց տկարութեան զանձն տային։
Մանաւանդ որոց հայեցեալ 'ի մխիթարութիւն առաքե-

1 Յայլ օրին. կորզեալ։

լական բանիցն, թէ "Յորժամ տկար եմ վասն Ք՟ի յայնժամ զօրացեալ լինիմ". և թէ "Լաւ ևս լիցի պարծել տկարութ՟ս, զի բնակեսցէ յիս զօրութիւն Ք՟ի":

Նոյն էր այնուհետև չարչարանաւ գնալով, այլ առաւելոյ հոգւով, և պատրաստել զխիստ երգօք հոգևորօք, 'ի փառս և 'ի գովութիւն[1] այ: Նոյն կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց՝ հոգեպատում գրոց: Նոյն քաջալերութիւն յորդորական վարդապետութեան, առ 'ի յառաջադէմ ընտրութեան՝ պսակահաս քնադիր կիտին: Նոյն եռալ հոգւով ամենապաշտ ծառայութեամբ: Նոյն աղօթք աղերսալիք, և խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց՝ առ մարդասէրն այ, և նորին հոգեկրօն արուեստին՝ հանէր աւուրս բազումս յանապատ տեղիս. մինչև ազդ[2] լինէր յերիցանց, որոց ինչ օգտակարաց եկեղեցեաց կողմանցն այնոցիկ՝ հասանել յօգնականութիւն շնորհօքն Ք՟ի: Եւ նորա առանց իրիք զբաղելոյ՝ հանդերձ գործակցօք իջեալ 'ի թիկունս դիպացն պատահելոց, և վճարեալ զօրութեամբն այ, և յորդորագոյնս և պարարտագոյնս և անփակ բերանով զվտակս վարդապետութեան 'ի սիրտս լսողացն ծաւալեցուցանէր:

Եւ զայս առնէր զամենայն ժամանակս իւր, վասն անձին և վասն աշխարհի. քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք՝ զանձանց առաքինութիւն՝ կանոն աշակերտելոցն դնել. մանաւանդ յուշ առնելով զտէրունականն՝ զմիոյ միայնոյ իմաստնոյն այ: "Քանզի սկսաւ Յս առնել և ուսուցանել": Որոյ բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն, և աննախանձական անձամբն օրինակ կարօտելոցն լինէր. յորժամ 'ի Թաբօրական լերինն՝ զաւետեաց երանութիւն տայր, և յորժամ 'ի նմին լերին զկանոնական զաղօթս առնէր, մինչդեռ աշակերտքն 'ի տիբերական ծովուն նաւէին: Եւ դարձեալ յաւուրս բաղարջակերացն յօրինական տօնին՝ զգիշերոյն աղօթքն և ցայգոյ, 'ի ձիթաստանեաց լերինն առանձինն մատուցանէր: Եւ

1 Յայլ օրին. 'ի գովութէ:

2 Յայլ օրին. աղտր:

տի և յայտնի իսկ է և առանց խուզելոյ, եթէ՝ ոչ
վասն անձին ամենատէրն, այլ համաշխարհի յուսումն
զայն գործէր. որ է օրինակ ամենայն հնազանդե-
լոց. վասն որոյ ասէր իսկ, “Արթուն կացէք, զի մի՛ 'ի
փորձութիւն մտանիցէք„։

Իսկ արդ եթէ 'ի թեթևագոյն արուեստից՝ պա-
կասագոյն են 'ի գիտութեն ազգք երկրածնացս, որ-
չափ այնմ արուեստի ոք համարեսցի և անգիտանալ՝
որ ընդ ած զխօսսն կատարէ. որով երանելին Պաւ-
ղոս ամենեցուն տգիտանալ ասէ, վասն որոյ զամենա-
կեցոյց Հոգւոյն 'ի թիկունս հասանել՝ անմռունչ հե-
ծութեք բարեխօս գիտէ։ Իսկ արդ յորժամ լսիցեմք,
եթէ սկսաւ Հոգին առնել և ուսուցանել՝ ապաքէն առ-
նէ և ուսուցանէ, և ոչ եթէ զի պարգևեսցէ իմանա-
լի է։ Այլ բարեխօսել նորա վասն սրբոց, և բարեխօսել
Հոգւոյն Սրբոյ առ 'ի վարդապետելոյ մեզ. զի ընդ մի-
մեանց բարեխօսելն գիտելի է. քանզի միապատիւ է
ածականն և ոչ բազմաբար։ Իսկ երանելի առաքե-
լոցն ընկալեալ 'ի վարդապետութէ ճշմարտութեն,
նախ կարօտական անձանցն մատակարարէին, և ապա
աշակերտացն բարձեալ տանէին. երբեմն առանձինն՝
և երբեմն ժողովրդովքն գումարելովք՝ զփառսն Քրիստոսի
առաքելովքն բարձրացուցանէին. քանզի առաւել
օգտակար իսկ է՝ յամենայն աշխարհակիր զբօսանաց
առանձինն սահմանել՝ և միայն ածպաշտութեն պարա-
պել, զոր և մարգարէքն գործէին. որք 'ի լերինս և յա-
նապատս և 'ի փապարս վիմաց՝ զածեղէն կրօնիցն ըղ-
ծառայութիւնսն հարկանէին։

Որպէս և ամենայն հարքն՝ որք յաջորդեցան,
յառաքելական կանոնաց կրեալ անձամբք զլաւու-
թիւս, բերէին վերջնոցս օրինակ. ուստի երանելիս
այս բարձեալ էր զաւանդելոցն պատիւ, և ամենայն
մատուցելոց առ նա՝ զնոյն պատուիրեալ գուշակէր։
Այլ այնպէս յառաջ՝ ամենայն ածեղէն գանձուցն
վայելչութեամբք լցեալք, պարարտացեալք, խաղա-
ցեալք [1] գայլին 'ի բազում ժամանակս՝ նովին 'ի նոյն
կանխեալք՝ 'ի նմին հանապազորդեալք։

1 Յայլ օրին. խաղաղացեալք։

Յայնմ ժամանակի բերեալ երեւեցան հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն հոռոմի, որում Թէոդիոս անուն ։ Սա որոյ սիւնհոդոսական հայրապետաց եկեղեցեացն Յ՟նց նշանակեալ ազդ առնէին՝ ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մաշթոցի ։ Այլ նոցա ճշմարտասէր փութով զայն 'ի միջոյ բարձեալ՝ աշխարհահալած արտաքոյ իւրեանց մերժեցին . զի մի 'ի լուսաւոր վարդապետութենէն՝ ծուխ ինչ սատանայական յարիցէ ։

Յետ այնորիկ դէպ լինէր նովին ճշմարտութ՟բ՝ երանելոյն Սահակայ լցեալ աւուրբք երկայն ժամանակօք, եւ վայելչացեալ ա՟ծաբեր պտղոցն բարութ՟բք, յառաջնումն ամի Յազկերտի որդւոյ Վռամայ՝ Թագաւորի կացելոյ 'ի Պարսից աշխարհին, 'ի Բագրեւանդ գաւառի՝ 'ի գիւղ Բլրոցաց, 'ի կատարել ամսեանն Նաւասարդի, որպէս եւ զօր ծննդեան երանելոյն յիշէին . յերկրորդ ժամու աւուրն, 'ի պաշտաման անուշահոտ իւղոյն, համդերձ ա՟ծահաճոյ աղօթիւք՝ ծերունւոյն 'ի Ք՟ս աւանդեալ . հայեցեալ 'ի մարգարէին, որ ասէր, “ 'Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ „ . եւ Ստեփաննոսի երանելոյ, որ ասէր, “ Տէր Յ՟ս, ընկա՛լ զհոգի իմ „ ։

Ըստ նմին օրինակի՝ եւ ն՟ր ապսպրեալ զանձն եւ զմնացեալս՝ ամենապահ շնորհացն ա՟յ . զոր եւ առեալ վաղվաղակի ա՟մ հանդերձելովք, ձեռնասուն ա՟ծասէր պաշտօնէիցն իւրոց . որոյ գլխաւորին Երեմիա անուն ճանաչէր, այր սուրբ եւ բարեպաշտօն, համդերձ ա՟ծասէր իշխանականաւ միով, որ անուանեալ կոչէր Դուստր . որ էր կին Վարդանայ, զոր 'ի վերնոյն յիշեցաք, եւ բազում ամբոխից ՟նց ժողովոց, բարձեալ զ՟մն սաղմոսիւք եւ օրհնութ՟բ եւ հոգեւոր բարբառով, յետ սակաւ ինչ աւուրց ընդ տիւ եւ ընդ գիշեր 'ի Տարօն հասուցանէին մինչ 'ի բուն իսկ գիւղն յԱշտիշատ ։ Այլ անդ 'ի մարտիրոսական խորանին յարկեղ՟նցյն, համդերձ ամենայն անուշահոտ խնկօք եդեալ եւ կնքեալ քնաղրոշմ[1] կնքովն՝ եւ զօրինաւոր յիշա-

1 Յայլ օրին՟ . [illegible] ։

տանն ՚ի վերայ կատարեալ, այնուհետեւ խուրաքանչիւրն դառնային ։ Արդ եւ նոյնպէս ամի ամի գումարելովք ՚ի նոյն ամսեան՝ զնոյն յիշատակն տօնախմբեն ։

Իսկ երանելոյն զուգականին լուեալ, զՄաշթոցէ ասեմ, բազում անձկայրեաց տրտմութե՟ եւ արտօսրագութ ողբովք եւ ծանրաթախիծ սգովք պաշարեալ դնէր. զի թէ առաքեալն նր՟, ոչ գտեալ առժամայն զընդերակիցն զՏիմոթէոս՝ անհանգիստ զհոգւոյն ասէ, որչափ եւս առաւել զմիանգամայն զհրաժարելոցն՝ սաստիկ կիրս մնացելոցն է համարեալ ։ Բայց թէպէտ եւ միայնաւորութե՟ն տրտմութիւն չթողոյր զուարթանալ, սակայն զաւետարանական ընթացսն, եւ զվերակացութիւն նր՟յ եկեղեցւոյ, շնորհօքն ա՟յ առանց պակասութեան տանէր, եւ առաւել փութայր գուն եդեալ՝ զամենեսեան յորդորելով առ բարեացն քաջութե՟ ։ Եւ զցայգ եւ զցերեկ պահօք եւ աղօթիւք եւ ուժգին խնդրուածովք եւ բարձրագոյն բարբառովք՝ ա՟ծադիր պատուիրանացն հրամանս ուշ առնելով, ըզգուշացուցանելով ա՟մ մարդոյ. մինչեւ բազմագոյնս եւ զդժուարագոյն վարուց կրթութիւն. մանաւանդ զի եւ զմտաւ իսկ ածէր ըստ տէրունական հասակին զօր վախճանին. չտայր քուն աչաց եւ ոչ նիրհ արտեւանաց՝ մինչեւ հասանել ՚ի հանգիստն տ՟ն ։

Եւ մինչդեռ այնպէս մերձաւորացն առ իւրեւ զհոգւոր եռանդն ածէր, եւ բազում թուղթս խրատագիրս եւ զգացուցիչս ընդ ա՟մ գաւառս առաքէր, անդէն ՚ի նմին ամի՝ յետ ամսոց վեցից անցելոց վախճանի երանելոյն Սահակայ, լինէր հանդերձ սրբով վարդապետով բանակն Հայոց յայրարատեան ՚ի Նոր քաղաք, եւ նովին հոգեկրօն վարուք հասանէր նր՟ն քծ՟ակոչ կատարումն, յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութե՟ն, յերեքտասաներորդում ամսեանն Մեհեկանի ։ Եւ յորժամ որոշեալ ՚ի միջոյ ձեռնասուն աշակերտաց եւ խառնեալ ՚ի գունդն Ք՟նի հասանէր, թեթեւացեալ եւ սթափեալ ՚ի ցաւոցն՝ կանգնեալ նստաւ ՚ի ժողովոյն միջի, եւ համբարձեալ զձեռսն համապատարած յերկինս՝ զամէն մնացեալսն յանձն առնէր շնորհացն ա՟յ. վասն ն՟ց օգնականութե՟ն հայցէր.

Այլ անուանք գլխաւորաց աշակերտացն ժողովելոցն՝ են այս. առաջնումն Յովսէփ, զոր և 'ի սկզբբան գրեցաք. երկրորդին Թադիկ. արք զգաստք՝ ըզգուշագոյնք հրամանաց վարդապետութեան : 'Ի զինուորական կողմանն, առաջնումն Վահան անուն յազգէն Ամատունեաց, որ էր հազարապետ Հայոց մեծաց. և երկրորդին Հմայեակ՝ 'ի Մամիկոնեան տոհմէն, արք պատուականք երկիւղածք հրամանակատարք վարդապետական հրամանաց : Այլ մինչդեռ ձեռք նոցին ընդ երկինս կարկառեալ էին, տեսիլ սքանչելի խաչանմանն լուսաւոր շողաւոր ձև երևէր 'ի վերայ ապարանիցն, յորում երանելին վախճանէր. զոր ամենայն ուրուք ինքնատես եղեալ, և ոչ առ յընկերէ պատմեալ : Այլ սորա սրբոցն զսէր և զմիաբանութիւն աւանդեալ, զմերձաւորս և զհեռաւորս օրհնութեամբ պսակէր, և զհանձոյական աղօթս հասուցեալ 'ի Քրիստոս հանգեաւ :

Զոր առեալ Վահանայ և Հմայեկի կազմութեամբ վախճանելոյ, հանդերձ աշխարհական ամբոխիւ, սաղմոսիւք և օրհնութեամբք, և հոգևոր ցնծութեամբք, կանթեղօք վառելովք և ջահիւք բորբոքելովք, և ամենայն լուսաձաձանչ գնդիւն, և այնու խաչանշան լուսաւոր առաջախաղաց նշանաւն, յՕշականն եղանէին, և անդ 'ի մարտիրոսարանն մատուցեալ, զօրինաւոր յիշատակն կատարեալ, ապա նշխարն աներևոյթ լինէր, և նորա իւրաքանչիւր դառնային : Իսկ յետ երից ամաց անցելոց, յաջողեցան Վահանայ ամատունւոյ, քրիստոսասէր փութով խորան սքանչելի կանգնել, տաշածոյ վիմօք քանդակելով, և 'ի ներքսագոյն խորանին զսրբոյն հանգիստն յօրինեալ, որոյ սպասս վայելուչս գունագոյնս պայծառատեսիլս ոսկով և արծաթով և ակամբք պատուականօք՝ 'ի յիշատակարան սեղանոյն կենդանարար մարմնոյ և արեանն Քրիստոսի պատրաստեաց, և ամենայն սրբովք 'ի միասին գումարելովք խաչակրօն վկայիցն Քրիստոսի, հանդերձ երանելեաւն Մաշթոցիւ, 'ի հանգիստ խորանին փոխէ : Այլ զնորին աշակերտ Թադիկ անուն՝ զայր ըզգաստ և բարեպաշտօն, հանդերձ եղբարբք երանութեանն հասելոց՝ սպասաւոր նոցին 'ի փառս Աստուծոյ կար-

գէին, և գլխաւորս վերակացուս տեղապահս յայտ արարեալ հարցն կատարելոց[1] որոց առաջինն Յովսէփ գլխաւոր ժողովոյն, և երկրորդն այլ աշակերտ Յովհան անուն. այր իսկ սուրբ վարդապետասէր և ճշմարտապատում։ Որում դէպ լինէր յետ վախճանի Ներսի, բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վշտաց. մենամարտիկ երկպատական բռնութեանն 'ի Տիզբոն քաղաքի, վասն Քի յաղթութեամբ տարեալ համբերեաց. վասն որոյ և զխոստովանողական անուն ժառանգեաց. 'ի նոյն վերակացութին դառնայր յերկիրն Հայոց։

Իսկ բարեացապարտին Սահակայ, յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր. որ աշխարհածնիւն հայրենեացն սեպհական ոգի գտեալ, շնորհօքն Քի այ մերոյ, մերձաւոր կենակից վայելէր. և զի ըստ օրինակի գրելոցս առ 'ի մէնջ հարքն 'ի կափարումն[2] դարձան։

Եւ եթէ 'ի հին համբաւուց տեղեկացեալ և մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեր իսկ ականատես եղեալ կերպարանացն՝ և առընթերակաց հոգևորական գործոց, և լսող շնորհապատում վարդապետութեան, և նոցին արբանեակ ըստ աւետարանական հրամանացն։ Եւ սուտապատում ճարտարախօս եղեալ առ 'ի մերոց բանից զհօրէն իմոյ կարգեցաք, այլ զյաճախագոյնն թողեալ, և 'ի նշանադիմակացն քակելով զհամառուրսն կարգեցաք, որք ոչ միայն մեզ, այլև որ զատեանսն ընթեռնուն յայտնի է։ Քանզի չէաք իսկ հանդուրժօղք՝ զամենայն արարեալսն կտակաւ զիւրաքանչիւրսն. այլ 'ի դիւրագոյն և 'ի հեշտագոյնս, յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք. որոյ անցեալ զբազմախուռն արգասեօք սըրբոցն, առ 'ի մանրակտիտ առնելոյ զկարևորագոյնս պատմելոյ՝ զհանգամանսն՝ ասացաք։ Եւ 'ի պատիւ ինչ Ներցն այ, որք ամենապարծ և կենդանատուր խաչիւն ծանուցեալք յարգեցան, այլ յօրինակ քաջալերիչ հոգևոր ծննդոց իւրեանց, և որք նոքօք աշակերտելոց իցեն յազգս ազգաց։

1 Ցայլ օրին. ըստ յառաջագոյն կատարելոյ վարդապետին։

2 Ցայլ օրին. 'ի կատարումն։

Այս արդ լինի համար հաւատոց երանելոյն ամք քառասուն և հինգ, և 'ի դպրութենէն Հայոց մինչև ցվախճան 'նըյն՝ ամք երեսուն և հինգ, որք համարին այսպէս: Թագաւորեալ Դիսմոնայ Պարսից արքայի ամս վեց, և Յազկերտի ամս քսան և մի. և յառաջնումն ամի երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ, վախճանեցաւ Երանելին: Այս արդ առնու՝ համար ամաց 'նըց հաւատոց 'ի չորրորդում ամէն Կրմանայ արքայի, մինչև ցառաջին ամն երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ, և դպրութեանն Հայոց, յութերորդ ամէ՝ Յազկերտի առեալ սկիզբն: Այս ՎՐնի մարդասիրին փառք յաւիտեանս ամէն:

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ՄԱՄԲՐԷ ՎԵՐԾԱՆՈՂ

# ՄԱՄԲՐԷԻ

## ՎԵՐԾԱՆՈՂԻ

### ՃԱՌՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՄՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1833 ՌՄՁԲ

# ԵՐԱՆԵԼՈՅՆ

# ՄԱՄԲՐԷԻ

# ՎԵՐԾԱՆՈՂԻ

## ԱՍԱՑԵԱԼ

## Ի ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐՈՒ

ԱՄԵՆԱՅՆ ա̃ծայինն նշանք [1] տեառն մերոյ Յ̃սի Ք̃սի՝ են որք կարեւորք են, եւ են որ եւս կարեւորք, որք մանաւանդ ունին զերկնային յուսոյն ըղմխիթարութիւնն: Այլ յորժամ զյարութիւնն տեսանես, 'ի ձեռն մանաւանդ յարութեան հաւատասջի՛ր զբոլոր մասունս զար 'ի յԱդամայ մինչեւ ցգալուստն երկրորդ:

Է ինչ որ ըստ բնութեան լինելութեանս վարեցաւ տէրն մեր, եւ է՛ ինչ որ ըստ տեսական արուեստից բնութեանս մերոյ. զի սկիզբն 'ի գլխոյ անտի առնու լինել մարդ: Իսկ ստուերագիր նկարիչքն զպատկերս թագաւորաց նախ յոտիցն ձեռնարկանեն [2], եւ զբոլոր անդամսն մարմնոյն ներքուստ 'ի վեր ձեւացուցանեն, եւ ապա 'ի ձեռն գլխոյն ճանաչի թէ ո՛վ իցէ: Ըստ այսմ օրինակի եւ տ̃ր մեր 'ի սկզբանն արար 'ի Ջրոյ գինի՝ եւ ապա զա̃մ խեղութիւս անդամոց ած յառողջութիւն. ուր ոտիւք՝ ուր ձեռօք՝ ուր ականջօք, եւ զայլն ամենայն. եւ զդեւսն ընդ նմին հալածականս արար 'ի մարդկանէ: Իսկ իբրեւ մերձեցաւ ժամանակ

1 Երկու օրին. շնորհք:

2 Երկու օրին. ձեռնարկէին:

կատարման նորա, կատարումն նշանաց զյարութեան Ղազարու եցոյց ամենեցուն. որպէս և ըստ Յովհաննու աւետարանագրի՝ յետ այլոց սքանչելեացն՝ այլ ինչ վասն նշանաց ոչ ճառեաց, այլ զՂազարուն՝ և անդէն 'ի ճառս խաչելութեան մտանէ։ Ապա թէ զատից նորա զօծումն ասես 'ի Մարիամայ, թողութիւն մեղաց շնորհէ, և ոչ խեղութեան բժշկութիւն ասի։ Արուամ և յաւանակին ակնարկումն՝ սրբութիւն հեթանոսաց. և հնչումն տղայոցն՝ վկայութիւն մարգարէական տառիցն[1]. և բազում և այլ մեծամեծ իրք 'ի յարութեան Ղազարու մինչև 'ի խաչելութիւնն և 'ի լուսաւոր յարութիւն տեառն մերոյ։ Որպէս զբազումս ած ընդ իւր 'ի մեռելոց և ցուցեալ բազմաց՝ աւետիս տայր տիեզերաց վասն փրկական յարութեանն, իրագործութիւն ասի. այլ 'ի համար առաջին նշանացն ոչ մտանէ. թէպէտ և բարձրագոյն է ճոխութեամբ։

Արդ ըստ Յովհաննու առ Ղազար սահմանեցաւ նշանագործութիւնն, իբրև գլուխ 'ի վերայ կենդանւոյ, իբրև զմարդ 'ի մարդկոջ զթագաւորական պատիւ 'ի միութիւն կենդանւոյ։ Էր անսահման և սահմանեցաւ. թուական ամօք եկն 'ի կատարելութիւն, և մանաւոր նշանագործութեամբ սահմանեաց առ 'ի յարութիւն մեռելոյն. և ապա զինքն տարաւ եհան յանբաւութիւն, և յուսով առյապա՝ զբոլոր աշխարհս։

«Արդ էր, ասէ, հիւանդ մի Ղազար անուն 'ի Բեթանիա 'ի գեղջէ Մարեմայ և Մարթայի»։ Յա յայնկոյս Յորդանան գետոյ, ուր Յովհաննէս զմկրտութիւն առնէր, զայն տեղեօքն փարէր՝ զբոլոր անապատն որսայր 'ի կենդանութիւն։ «Առաքեցին առ նա քորքն նորա և ասեն. ահաւասիկ զոր դու սիրէիր հիւանդացեալ է»։ Լուաւ զգոյժ հիւանդին, սահմանեաց զիշխանութիւն մահու, քարոզեաց վասն փառացն աստուծոյ։ «Այն հիւանդութիւն, ասէ, չէ 'ի մահ, այլ վասն փառացն աստուծոյ՝ զի փառաւորեսցի Որդի աստուծոյ 'ի նմա»։

Ո տեղի կալաւ աւուրս երկուս, թոյլ ետ աւազակին մտանել 'ի տուն մեռելոյն. եմուտ ապակա-

1 Երկու օրէն. յաշնիցն։

նագործն, և արար խռովութիւն ըստ կամաց իւրոց ։ Ընթանեկին Մարիամու ոչ արար պատասխանի. ոչ զերթալոյ և բժշկելոյ, և ոչ զչերթալոյ և անփոյթ առնելոյ. զանուն հիւանդին ասացին՝ և զփառաց անուանն լուան և գնացին ։ Տրտմութի ըստ տեսլեան և խնդութիւն ոչ գոյր 'ի միջի. բազում աղերսանօք յղարկեցին, և մեծաւ թախանձանօք աղաչէին, և զօր ըստ օրէ ընդունելութին յիշէին. ոչ 'ի կարծ[1] կոչէին, և ոչ երկբայանօք հաւատային 'ի յարուցիչն ամենեցուն. բայց մարդկաբար փութային մինչ չև հիւանդն վախճանեալ[2] էր 'ի կենաց իւրոց ։ Քանզի մինչդեռ յախտալից մարմնոս բնակեալ է ոգին, յաճախագոյն[3] սայթաքէ քան թէ հաստատուն կայ. որպէս Հոգին Տր ասէ 'ի բերանոյ Դաւթի. "Հոգի որ ելանէ այլ ոչ ևս դառնայ" ։ Ոչ ած մոռանայ, այլ և զմոռացեալն դարձեալ յիշէ, այլ զմնութիւն բարուց նոցա երկրորդէ ։ Որպէս Պաւղոս առաքեալ զայլոց թերահաւատութի իւրով լեզուաւն երկրորդէ. "Զիարդ յառնեն մեռեալք կամ որով մարմնով գայցեն" ։ Շարժող ոգին ելեալ գնացեալ, ամ մարմինն անկեալ է ընդ ապականութե. ոչ միայն քակտումն յօդից, այլ և գոյացութիւն մարմնոյն 'ի հող դարձեալ ։ Հարկեցաւ առաքեալ առակօք սերմանեացն՝ "Որ մեռանի կենդանանայ", ածել զնոսա 'ի հաւանութիւն յարութեն ։ Ըստ այսմ օրինակի և քորքն Ղազարու աղէկոծէին 'ի սիրտս իւրեանց. և երբեմն յած հաւատացին, երբեմն զբժիշկ ճարտար առ հիւանդն կոչէին ։

Յղեն առ նա բան միջնորդի[4] ։ Յերկուց կողմանց դիմառուն ցուցանէ. 'ի հեռաստանէ կալաւ զերակս հիւանդին, մանր զննեաց և ճշմարտիւ զպատմութին արար. "Այս հիւանդութի, ասէ, չէ 'ի մահ". այլ 'ի քուն և յընդոստումն ։ Քուն լինելովն մարդիկ առակաւ ոտնհար լինին, եթէ սիրելեաց իւրոց ոչ կարաց օգնել. ընդոստմամբն ած փառաւորի, և 'ի նմին փառս և Որդի ցնծացեալ բերկրի ։ Նկին առա-

1 Երկու օրին. 'Ի կարծիս ։

2 Մի օրին. խախճանեալ ։

3 Մի օրին. յառաջագոյն ։

4 Մի օրին. յղէն առ նոսա բան ։

քեալքն Մարիամու և ոչինչ կարացին պատմել ըզյայտնութիւն բանիցն մն ։ Գոռոզացաւ հպարտացաւ մահ և կատարեաց զկամս իւրոյ չարութեանն ։

“Ասէ Յիսուս ցաշակերտսն. եկայք երթամք ՚ի Հրէաստան„ ։ Ասէին և անդ երկիւղ մահուն, և չարագոյն ևս տագնապեաց զնոսա քան զքոյրսն Ղազարու ։ “Տէր, ասեն, այժմ խնդրէին զքեզ հրեայքն սպանանել՝ և դարձեա՞լ երթաս„ ։ Նքեր[1] առաջի նոցա զձայն լուսոյն. “Որ գնայ ասէ, լուսով ոչ գայթակղի„. յայտ արար թէ որ երկնչի ՚ի մահուանէ, ո՛չ տեսանէ զնա ։ Մի՛ ինչ այժմ զմարմնաւոր աչացդ զտեսիլ ասէր. այս տեսումն՝ վասն երկիւղի է մարդկան և ամ կենդանեաց. վասն զի տկարքն ըզգուշանան ՚ի հզօրագունիցն, հանապազ դողելով և սարսելով զդառնութեան զկեանս աշխարհիս կատարեն. զհաւատոցն զտեսաւորութի՞ ասեմ, որ զակընկալեալն յակնարկելն ցուցանէ. և զառաջապայմն աժամայն գուշակէ[2]. եթէ զայնպիսի տեսութի յագիմն ոչ ստացեալ ունի, եթէ ՚ի միջօրէի գնայ՝ գայթակղի. և խաւարն ընդ նմա իսկ է հանապազ ։ Որպէս զառաքեալսն Մարիամու իբրև զգուժկանս[3] անայն մտօք արձակեաց անդրէն, նոյնպէս և զաշակերտսն այսր անդր երերեաց[4], և ոչ կամեցաւ զյայտնութիւն խորհրդոյն ցուցանել նոցա ։ Վասն է՞ր. զի միանգամ և երկիցս տեսին նշանս յարութե՛ և ոչ հաւատացին. փոխանակ զանձինս աներկիւղս ունելով, զնա ևս երկնչոտ ուսուցանէին ։

“Այժմ, ասեն, սպառնային հրեայքն սպանանել զքեզ՝ և դարձեա՞լ անդր երթաս„ ։ Սպանանիլն և մեռանելն նոյն է ։ Օ երկոտասանամեայ դուստր քահանայապետին յայրոյ, նոյնպէս և զմիամօրն ՚ի Նայինն քաղաքի կալաւ և կանգնեաց ՚ի դագաղաց անտի. որ զմի մեռեալ կարէ կեցուցանել, նա և ըզբազումս. և եթէ զայլոց մահ հալածական արար, ևս առաւել զձերդ. զի՞ այդչափ զահի հարեալ էք և դողայք. ո՞չ ապաքէն ելանելոց էք ՚ի մարմնոյ այտի.

1 Մի օրին. դնէր ։
2 Երկու օրին. ցուցանէ ։
3 Երկու օրին. զփողակս ։
4 Երկու օրին. յերերեւեաց ։

ո՛չ հանապազ ընդ այդ բան կրթեցարուք՝ թէ «Մի՛ երկնչիք յայնցանէ որ զմարմինն սպանանեն, և զոգին ոչ կարեն սպանանել». դա միանգամայն զոգի և զմարմին թափէ 'ի մահուանէ առ հասարակ։ Նաև 'ի Թաբօր լերինն զձայն բարբառ 'ի Հօրէ լուարուք «Դա է Որդի իմ սիրելի, դմա լուարուք»։ Դուք փոխանակ դմա լսելոյ՝ հրամանատու կամիք լինել. մի՛ երթար, ասեն, 'ի Հրէաստան, զի սպանանեն զքեզ։ Նաև եթէ զՂազարու յարութեան զխորհուրդն 'ի վեր հանեալ էր ձեզ, դուք ո՛չ հաւատայիք։

Վասն նոցա տկար մտացն՝ այսր անդր տարուբերեաց զզօրութիւն բանիցն, զի սակաւիկ մի կրթեսցէ զլսելիս նոցա. մերթ ասէ, «Այս հիւանդութիւն չէ 'ի մահ». և դարձեալ ասէ. «Վասն փառացն Այ է, զի փառաւորեսցի 'ի նմա Որդի Այ»։ Հիւանդութիւնն անվրէպ 'ի մահ էր. և փառքն 'ի մահուանէն յորդեցին 'ի տեսարանս [1] ամ թերահաւատ ժողովրդեանն։

Յանժամ զբանիւք արար զաշակերտան, մինչև մեռեալն թաղմամբ գերեզմանին վճարեցաւ. ապա յետ այսորիկ ասէ ցնոսա. «Ղազար բարեկամ մեր ննջեաց, և ես երթամ զի զարթուցից զնա»։ Ո՛վ Տէր, իբրև ընդ մանկունս խօսիս. իբրև տղայոց կաթն ջամբես. մայրաբար ծնանիս, և դայեկաբար սնուցանես. Երբ էիր դու սենեկապետ Ղազարու, զի երթաս զարթուցանես զնա 'ի քնոյ. Երկուց աւուրց գնացք է հեռաւորութիւն ճանապարհին, և մինչև դու երթաս՝ Ղազարոս համակ 'ի քո՛ւն կայ. մի՞թէ 'ի մանդրագորայն թմբրեալ իցէ. և կամ 'ի սաստիկ անապականց զմրեալ [2] իցէ. և կամ ո՞ ոք 'ի մարդկանէ զչորս տիւ և զչորս գիշեր անհատ [3] 'ի քուն լինիցի։ Նաև արդ դո՞ւ երթաս զարթուցանես զնա. և քորքն նորա որք փութացան յղեցին առ քեզ զարբանեակս իւրեանց, նոքին ընդէ՞ր ոչ զարթուցանեն զնա։ Վասն քնոյ նորա առ քեզ ոչ յղէին, այլ վասն մահաբեր ախտին ստէպ աղաչէին, զի երթիցես և բժշկեսցես։

1 Մի օրին. 'Ի տեսանելիս։
2 Մի օրին. զմբրեալ։
3 Մի օրին. անընդհատ։

Արդարև գառինք անմեղք էին աշակերտքն, զոր ինչ տեսանէին զնոյն և գրէին, և զոր ինչ լսէին՝ զնոյն և հաւատային. ծածային խորհրդոյն ամենեւին հասու ոչ կարէին լինել:

«Տէր, ասեն, եթէ ննջեաց՝ ապա ապրի»: Բազում հիւանդք ննջեն և ոչ ապրին[1]: Ով փաղաքշանք տգիտաց. զծածկագէտ զօրութիւն կամէին սփոփել. գիտէին թէ սիրէ տր մեր զտունն զայն 'ի Բեթանիա, և 'ի տան անդ զՂազար անմեղ. և ոչ կամէին թէ վիշտ ինչ հասցէ 'ի տան անդ ընտանեաց նորա. վասն այնորիկ քան 'ի Ղազար՝ 'ի նոսա առաւել գթացաւ տէրն. մերկացաւ զծածկոյթ խորհրդոյն՝ և ասէ յայտնապէս. «Ղազար բարեկամ մեր մեռաւ»: Եւ զի մի՛ յանկարծակի ընդոստիցեն կամ հչելով՝ կամ կոծելով՝ կամ արտօսր 'ի վերայ բանիցն արկանելով, անդէն վաղվաղակի մխիթարութիւն մատոյց. «Եւ ես ուրախ եմ, ասէ, վասն ձեր՝ զի դուք հաւատասջիք, քանզի ես չէի անդ»:

Ահա դարձեալ պատ 'ի պատ պատասխանիք՝ որ ոչ կարացին համօրէն հասանել 'ի վերայ. մահու անուն և ուրախութէ միանգամայն հնչեցին 'ի լսելիս նոցա. և ոչ 'ի զարմացումն անգամ կարացին հասանել վասն երկձայն բարբառոյն. որպէս երկչոտութիւն Թովմայի տեղեակ առնէ զմեզ վասն տխմար անուսումնութէ նոցա: Նա ասէ. «Եկայք երթիցուք անդր». և Թովմաս ասէ. «Ոն եկայք և մեք երթամք անդր՝ զի մեռանիմք ընդ նմա»: Նա երթայ զմեռեալն յարուցանել, նոքա կենդանւոյն 'ի մահ պատրաստին: Քանզի տարակուսանք էին 'ի տեղւոջ անդր: Դիւրագոյն է երկրագործ մշակաց զկորդացեալ երկիր 'ի գործ արկանել, քան գիտնոց զտգէտսն ածել 'ի գիտութիւն հաւանութէ. երկրագործ 'ի սակաւ ժամանակի աշխատի ընդ ամեհի երկիրն, և բազում մխիթարութի ունի 'ի նմանէ[2]. իսկ զմարդ կորդացեալ[3] տգիտութբ՝ այ միայն է կարողութի 'ի գործ

1 Մի օրին. ոչ՛ ապրին. և են որք ննջեն և ապրին:

2 Երկու օրին. և բազում պտղոյ անհնարութի է 'ի նմանէ:

3 Մի օրին. խոպացեալ:

տրկամնել ։ Որչափ թերահաւատութիւնն զօրանայր յերկուց կողմանց, չարին կրկին ուրախութի էր յամենայն կուսէ ։ Բայց քանզի ած էր մարդացեալն միջնորդ այ և մարդկան, ո՛չ դանդաղեցաւ և ոչ զանգիտեաց յամօթ առնել զբոլոր թերահաւատութիւն, այլ ըստ հայրենի զօրութեն հզօր գործ գործեաց ։

“ Եկն, ասէ, Յս և եգիտ զՂազար չորեքօրեայ մեռեալ, զի կայր 'ի գերեզմանի ”։ Եւ զի մերձ էր գեղն յԵրուսաղէմ մղոնօք երիւք, համարեմ թէ բոլոր ամբոխ քաղաքին ելեալ հեղեալ եկեալ էին 'ի վիշտ անդր ։ Եւ՛ իսկ բնութես մերում սովորութի՝ քան զաւետիս զգոյժ սիրեմք լսել. մանաւանդ զայլոց քան զանձանց. և մտանել 'ի տուն կոծոյ՝ քան 'ի տուն ուրախութե ։ Այն 'ի մարմնոյ լկտութի. միւս ոմն չարասէր՝ յոտնհարութե. և բազումք 'ի շատխօսութի և յընդվայրաբանութի. և սակաւք այն են որ կցորդ լինին սգոյն տրտմութե ։ Յայս պատճառս՝ բոլոր բազմութի քաղաքին ժողովեալ էին առ քորս նորա. ագարակն քաղաքացեալ էր և քաղաքն ագարակացեալ. թէպէտ և ոչ 'ի կամաց էր բազմութե ամբոխն. 'ի մէջ Երուսաղէմի գործելոց էին սքանչելիքն ։

“ Մարթա իբրև լուաւ թէ Յս գայ, ընդ առաջ գնաց նորա. բայց Մարիամ անդէն 'ի տանն նստէր ”։ Երկաքեան անկանէին ընդ գովելի օրհնութեամբ. մինն իբրև զբան բերանոյ[1], և միւսն իբրև զսիրտ աման խորհրդոյ. սիրտն 'ի տեղին հաստատուն կառուցաւ. բանն թարգմանն սրտին՝ ընթացաւ յառաջագոյն և պատմեաց զպաղատանս սգաւոր սրտին 'ի լսելիս այնորիկ, որ եկեալ էր բառնալ զսուգն 'ի տանէ սիրելւոյն ։ Գիտաց բանն՝ թէ ամ մխիթարիչքն, որ եկեալ ժողովեալ էին իւրաքանչիւր անձինք լի են սգով և տրտմութք. և տրտում զտրտում ոչ զուարթացուցանէ. և սգաւոր զսգաւոր ո՛չ մխիթարէ. բայց եթէ կրկին սուգ 'ի վերայ սգոյ յաւելու ։

Մի տագնապիր, ասեն, իմ եղբայր եւս մատաղագոյն մեռաւ քան զնա. այն ինչ հարսն 'ի տուն ա-

1 Երկու օրին. Իբրև զբերան ամանոյ ։

ծեալ էր, անզաւակ էանց յաշխարհէս. չմնաց յիշա-
տակ[1]. բարձաւ անուն նորա 'ի միջոյ կենդանեաց: Միւս այլ ոմն կին յառաջ մատչի և ասէ. միամօր որդեակ ունէի. այր մեռեալ, քոյր և եղբայր չու-
նիմ. և այն մանուկ, 'ի պսակի իբրև ծաղիկ մի թօ-
ռամեցաւ. չեհաս 'ի քաղաք ընկալչին իւրոյ. չեմուտ յառագաստն. չետես զվայելչութի աշխարհիս. յետս դարձաւ յոյսն[2]. եղծեալ ապականեցան կարգք տու-
եալիկ փոխանորդութեն: Եւ այլք ևս քան զայս խանդաղատագոյնս երկրորդեն. զսիրտն բեկանեն, զաղիսն գալարեն, զերիկամունսն դողացուցանեն. Ջիլքն թուլանան, յօդքն լուծանին, բոլոր զօրութի մարմնոյն մեղկի և անկանի. վայ 'ի վերայ վայոյ, և ձիչ 'ի վերայ ձչոյ[3], և այրումն 'ի վերայ այրման և խարխարումն առաջին վիրացն, և կեղեքումն[4] առա-
ջին չարեացն. եթէ արժա՞ն իցէ այսպիսի բանից մխի-
թարութիւն ասել, ես ոչ գիտեմ. զմի մարդ եկեալ էին մխիթարել, և ամենեքեան նստէին 'ի սուգ ան-
մխիթար:

Զայս ամենայն ամբոխ եթող Մարթա, և "Ասէ ցՅս՛, տ՛ր, եթէ աստ լեալ էիր դու, եղբայրն իմ չէր մեռեալ. այլ և արդ գիտեմ եթէ որ ինչ միանգամ խնդրես դու յա՛յ, տացէ քեզ ա՛ծ": Իմաստութիւն հոգևոր և սէր ա՛ծային և հաւատք ճշմարիտք, և անսուտ մարգարէութիք, չորեքեան եղբարք հարա-
զատք են, քանզի մի է շարժող նոցա ա՛ծ: Որպէս և յերգեհոնն արուեստապետն ընդ մի բերան փչէ, և բազմութի փողոցն առ հասարակ գոչեն. ոմն սոսկ, ոմն թաւ, և ոմն ևս թանձրագոյն, և այլքն ըստ իւ-
րաքանչիւր կարգի. թէպէտ և բազումք են թուով, մի ձայն առի և ոչ բազում. ըստ ձեռին շարժողին ըն-
տրութիւք ձայնիցն երևին. և գործին մի է, և նոյն բաւական առ ամենեսեան: Նոյնպէս և Մարիամ և Մարթա և Ղազար 'ի մեռեալսն, և եթէ այլ ոք գոյր 'ի տան ա՛նդր իբրև զնոսա հաւատացեալ, թէպէտ և որիշ որիշ բարբառէին, սակայն մի հա-

1 Մի օրին. յիշատակարար:
2 Մի օրին. յետս դարձ յոյն:
3 Մի օրին. ձիւոյ:
4 Մի օրին. կեղեքեղամ:

ւանք էր ամենեցուն. զմի սէր սիրէին զՔ՟ս, զմի հոգևոր իմաստութի՟ ունէին ամենեքեան : ’Ի բազմացն միաբանութեանէ մարգարէացաւ Մարթա և ասէ, "Տ՟ր եթէ աստ լեալ էիր՝ եղբայրն իմ չէր մեռեալ" :

Ուր կեանք են, մահ անդր ոչ մտանէ. բազում անգամ մտեալ էր տ՟ն ’ի տուն Մարթայի և Մարիամու, մահն ’ի գեղջէն փախստական լինէր՝ թող թէ ’ի տանէն : Երկնաւոր իմաստութե՟ ասաց զայն. "Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ" : Իսկ որ զա՟ծ ընդունի, զա՟ծային իմաստութի՟ն ժառանգեսցէ : [1] Յիմաստութեանէ անտի մարգարէութիւն վերաբերեցաւ : "Այլ և արդ գիտեմ, ասէ, որ ինչ միանգամ խնդրեսցես դու յա՟յ՝ տայ քեզ ա՟ծ" : Այս բարբառ մարգարէութիւն է. քան զամենայն ինչ ա՟ծ էած և փակեաց. ’ի տալ անդր քեզ՝ ոչ միայն զմիոյ մեռելոյ զյարութի՟, այլ և զվաղնջուցն անցեալ դարուցն :

Բայց գուցէ ումեք թերի բանս թուեսցի. կամ զխնդրելն յա՟յ, կամ զտալն Նորուն : Զայս և ինքն տ՟ն ասաց. "Ամենայն ինչ տուաւ ինձ ’ի Հ՟օրէ իմմէ" : Եւ զմիտս լսողացն հաստատէ. "Ոչ ոք գիտէ զՀ՟այր, եթէ ոչ Որդի. և ոչ զՈրդի ոք ճանաչէ, բայց Հ՟այր" : Այս բարբառ զմիաբանութի՟ն ուսուցանէ և ոչ զերկցութիւն և զկրտսերութի՟. վասն այսորիկ և տ՟ն մեր հաճեցաւ ընդ հաւատոյն Մարթայի :

"Ասէ ցնա Յ՟ս. յարիցէ եղբայրն քո. ասէ ցնա Մարթա. գիտեմ զի յարիցէ անդ ’ի յարութեան յաւուրն յետնում" : Եւ տ՟ն միանգամ յայտնեաց նմա զյետինն և զառաջինն. "Ես իսկ եմ յարութի՟ և կեանք" : Դրունք երկնից բացան կնոջն, զինքնածագ լոյսն ետես, յանմատոյց տեղւոյն եհաս, որդւոյն Զեբեթեայ նմանեաց [2] : Ոչ զտեսական լանջօքն Ք՟ի անկաւ, այլ յիմացական զօրութի՟ն վերաբերեցաւ. զբանն կենաց շօշափեաց, ’ի նոյն կեանս ընկղմեցաւ. եկն արտասուօք և լցաւ ծաղու. էր վրէ-

1 Աստանօր այս հատուած բանից պակասի յերկուս օրինակս, և գնայ մինչև ցհրէայքն որ եկեալ էին. յեր. 45 :

2 Մի օրին. հաւասարեաց :

տագնեալ և եղև բերկրեալ. մտացն աչք բացան. ներքին մարդն լուսաւորեցաւ. 'ի բաց գնաց թախծութիւնն. զուարթացաւ դոյն երեսացն. ողջացաւ կեղեքածք մարմնոյն. մոռացաւ զսուտ մխիթարիչսն բօթաբեր եղբօրն. աւետիս լուաւ զյարութենէ, մինչ չև յարուցեալ եղբօրն. 'ի ձեռն մեռելոյն զկենդանին ետես, զկենդանին և զկենդանացուցիչն ամենայն մեռելոց:

"Ես իսկ եմ յարութիւն և կեանք": Եղիա յարոյց զմեռեալն և դարձեալ մեռաւ. նոյնպէս և Եղիսէէ մի և երկուս. Ես ոչ միայն յարուցիչ եմ, այլ և յարութիւն. յարուցանեմ և կեցուցանեմ յանմահութիւն: "Որ հաւատայ յիս, թէպէտև մեռանի՝ կենդանի է. և որ կենդանի է և հաւատայ յիս, ոչ ճաշակեսցէ զմահ յաւիտենից": Զայս ասաց Տ̃րն մեր ցՄարթա. և անդէն վաղվաղակի զվարձս վարդապետութեանն պահանջեաց 'ի նմանէ. "Հաւատա՞ս այսմիկ զոր լուար արդ. և նա ասէ ցնա. այո՛ Տ̃ր, ես հաւատացի եթէ դու ես Որդի Ա̃յ կենդանւոյ՝ որ յաշխարհս գալոց էիր": Որպէս վերագոյն ասացաք, ըզչորս մասունս մարգարէականս զգեցաւ կինն 'ի տեղւոջ անդ: "Դու ես որ գալոց էիր յաշխարհս": Յաշխարհի էր, ասէ. և դու գալո՞ց ասես. զմարգարէիցն բանս երկրորդեաց, զոր և շամրտացի [1] կինն ասաց. "Յորժամ Մեսիա գայ, պատմեսցէ մեզ զա̃մ": Ասաց զառ 'ի կուսէ ծնունդն, և ակնարկեաց զերկրորդ գալուստն. քանզի որ զսկիզբն տեսանէ, և 'ի կատարումն հայի. իբրև անգամ մի 'ի ներքս յարքունիս անդ առաւ, զամենայն ինչ տեղեկացաւ. սակաւիկ ինչ խօսեցաւ և զմեծամեծս Ա̃յ լուաւ. եկն իբրև զմարդ տրտում, գնաց իբրև զհրեշտակ Ա̃յ ուրախութեամբ:

"Չոգաւ և ասէ ցքոյր իւր. վարդապետ եկեալ է և կոչէ զքեզ": Արդարև ճշմարիտ. առանց ալփաբետաց ուսուցանէ, և առանց սողոքայից հեգէ, և զամենայն պէտս դպրութեան լնու և կատարէ. ասաց վարդապետ, և եմուտ 'ի կարգ աշակերտացն.

1 Մի օրին. շամրտացի:

խօսեցաւ ընդ Մարիամու լուելեայն , և աշակերտեաց 'ի նոյն վարդապետութիւն հեշտական[1] դիւրահաւան :

" Իբրև լուաւ , յարեաւ վաղվաղակի և եկն առ Յս ,, . 'ի նոյն տեղի և 'ի նոյն ուրախութիւն , առ նոյն ուսուցիչ : Զոմն 'ի ծածուկ և զոմն յայտնի՝ ձգեաց զերկոսեանն 'ի սգաւոր աշխարհէս յանտրտմական ուրախութիւն կենացն :[2] Հրեայքն որ եկեալ էին մխիթարել զՄարեմանն վասն եղբօրն , մնացին ունայնք և թափուրք յերկնային մխիթարութենէն . սգաւորք[3] և թախծեալքն նստէին անդէն 'ի տան յառաջին արտասուսն շաղեալք . և նովին տրտմութեամբ ասեն ցմիմեանս . երթայ ուրեմն 'ի գերեզմանն լալ զնա : " Յարեան և նոքա և գնացին ընդ նմա ,, . ոչ առ յարութիւն անդր , այլ 'ի գերեզման մեռելոյ :

" Որում տուեալ է , ասէ , տացի նմա և յաւելցի . և որում ոչն է տուեալ՝ թէ և ունիցի ևս՝ և զայն հանցեն 'ի նմանէ ,, : Ոչ առ ագահութե տուողին , այլ վասն վատթարութե ընդունողացն : Հանապազ գերեզմանասէրք էին . թող անդր զմարդիկ մեռեալ , այլ և սուտ ածս առնէին՝ և զնոսա մեռեալս անուանէին . " Լսէին , ասէ մարգարէն , կանայք նոցա և լային զԹամուզ ,, : 'Ի նոցանէն յարեաւ Մարիամ և եկն առ այն՝ զոր յառաջագոյն ճանաչէր , եթէ որ զբազում մեղս իմ կարաց շնորհել ինձ ձրի , նոյն կարող է և զծանրատաղտուկ տրտմութիւնս իմ փարատել յինէն : Անկաւ առ ոտս նորա և երկրպագեաց զնոյն բանս , զորս ասաց քոյր նորա . " Տէր եթէ աստ դիպեալ էիր , եղբայրն իմ չէր մեռեալ ,, :

Միոյ դպրոցի մանկունք՝ զմի բան բարբառեալ խօսին , հաճք և հաւանք և միաբանք՝ ըստ վարդապետին կամաց յօրդորին 'ի նոյն ուսումն : Այնպէս և քորքն երկոքեան՝ միով արուեստիւ 'ի մի ոգս կենդանի երկնաւոր ըմբռնեցան . զմի սէր սիրեցին զտէրն , և զմի գիտութի արբին երկոքեանն . տեսին մարդ ,

1 Մի օրին . հեշտ կամակ :
2 Այսպ սկսանին դարձեալ երկու օրինակքն :
3 Մի օրին . [illegible] :

և հաւատացին ած. ՚ի լռութէ սրտից նոցա՝ և բանք զնոյն երկրորդեցին ։

Յաշխատեալ մարմնոյ ըղխեն քրտունք. և ՚ի տրտմագին սրտէ՝ ըղխեն [1] աչք զարտասուս, ոչ միայն ՚ի վերայ մեռելոյ, այլ և ՚ի վերայ կենդանի սիրելւոյ յորժամ եկեսցէ ՚ի հեռաստանէ ։ Նոյնես Մարիամ զՅս. երկու երկունք սիրոյ ստիպէին զնա. յիշատակ մեռելոյն և տեսիլ կենդանի սիրելւոյն. ոչ ճչեաց ըստ աշխարհական կարգի, այլ յոյժ ցածութեամբ եհեղ արկ զարտասուսն առաջի ողորմածին. այնչափ աղիողորմ տեսիլ՝ մինչև զամ հրեայսն բարձրականն [2] լացոյց ։ Ի նոյն միաբանութի և տր մեր հաւասարեաց, արտասուս առ արտասուս, և տրտմութիւն առ տրտմութիւն. համարեա՛ց թէ զնոյն սուգ սգացաւ [3] ։ Քանզի ասէ աւետարանագիրն, եթէ « Զնոյն տեսեալ Յսի խռովեցաւ յոգի իւր ». իբրև թէ յամ զօրութենէ իւրմէ տրտմեցաւ ։ Ոչ կարաց պարզաբար բարբառել՝ թէ « Ո՞ւր եդիք զնա ». այլ մռնչելով ասէ. ոչ այպանելով, այլ լալով և արտասուօք՝ կիսաբանութեա իբրև զտրտմակից և զգակից ՚ի վերայ սիրելւոյ իւրոյ ։

Ի յորդահոս անձրևաց առատաբեր լինին անդաստանք մշակաց. առապարք և անապատք բուսուցանեն զդալարիս արօտականաց ։ Այնպէս և յորդ արտասուք [4] մարդկանն՝ ՚ի գութ մեծ ածին զածն մարդացեալ. եղև նոցա կցորդ սգոյ. զի լիցին մարդիկ մխիթարակից նմ ։ Բազում սերմանիք [5] ՚ի բազում ամաց ընդարմացեալ կային ընդ հողով անբոյսք. վայելէր իսկ երկնի և երկրի տեղալ ՚ի վերայ նոցա. զի եթէ մի հատն բուսցի, վաղվաղակի ապա և ամենեցուն ակնկալութի է բուսանելոյ ։

« Ո՞ւր եդիք, ասէ, զնա. Տէր, ասեն, եկ և տես »։ Գետևս որսայր զմարդկան փրկութիւն. ՚ի Բեթանւոյ [6] մինչև ցԲեթաբարէ եւթանասուն և երկու մղոնք են. յայնչափ հեռաստանէ գիտաց զմահն Ղա

1 Մի օրին. բերեն ։
2 Մի օրին. բարձր կոխանաւոր ։
3 Մի օրին. սգեցաւ ։
4 Մի օրին. արտասուք ։
5 Երկու օրին. սերմնիք ։
6 Երկու օրին. ՚ի Բեթանիայէ ։

զարու. ՚ի մօտ եւս եկեալ՝ և ՚ի կամրջին տղխտանայ ։ « Ո՞ւր եդիք, ասէ, զնա »։ Դուք եդիք, և ես առնում. մեռեալ եդիք, և ես կենդանի բառնամ. դագաղջք[1] տարայք, և ձայնիւ ընթացուցանեմ[2]։ Իսկ եթէ այդ այդպէս իցէ, առ ի՞նչ հարցանես, տէր ։ Ընծային գործք գործելոց էին ՚ի տեղւոջ անդր, զուցէ զրկիցին ինչ մարդիկ. քանզի բազում անգամ եղեն առ նոսա յայտնութիւք երկնաւորք. անմարմին զօրութիւնքն մարմնաձև երևեցան, այլ ոչ մարմնացան. սա միայն կրէ զերկուս ներգործութիւնս ։ Վասն այսորիկ երկոցունց կողմանց զգուշանայ առ հասարակ. ոչ միայն արտասուօքն շատացաւ՝ այլ և հարցանելովն ստուգեաց, և ՚ի նոցունց ընկալաւ անսուտ վկայութիւն ։

« Տեսէք, ասեն, որչափ սիրէր զնա, զի ինքնին արտասուեաց »։ Մարմնոյ ոչ միայն աչք արտասուեն, այլ բոլոր անդամքն քրտնուն. որով և տէր մեր բազում անգամ վարեցաւ յաշխարհի. այնչափ խորամուխ ուսոյց զմարմնաւորութիւն, մինչ զի եւս վատթարագոյն պատճառս հայհոյութեան առնել. « Մինչ զի ասէին, ոչ կարէր սա, որ զաչս կուրին եբաց՝ առնել, զի և սա մի՛ մեռցի »։ Դուք, ասէ, սովոր էք հայհոյել. որ զմեծն զծովն բաժանեաց, և բազում աքանչելիսն արար, հայհոյեցէք. և ոչ գոհացարուք[3] զնմ, այլ անասնոյ փոխանակեցէք. և ՚ի Մովսէս երդմամբ ուրացարուք. եթէ չէր Մովսէսի ընդ ծովն ճանապարհ արարեալ, զբոլոր ժողովուրդն արկանէր Փարաւոն ՚ի սուր սուսերի իւրոյ ։ Որ զայնչափ բազմութիւն ՚ի բերանոյ մահու ապրեցոյց, չկալայք շնորհ. և ոչ վասն կուրին բժշկելոյ շնորհակալուք լինիցիք ։

Շունչ կուրին կենդանի էր, և շարժէր մարմինն. աչք նորա մեռեալ էին. շունչ ՚ի մեռեալ մարմին ոչ բնակէ, և ոչ լոյս արեգական՝ յաչս մեռելոյ. եթէ զմեռեալ աչսն կենդանացոյց, և զհրաժարեալ լոյսն անդրէն շնորհեաց. ապա եթէ բոլոր մարմնովն մեռեալ էր՝ անդէն կենդանանայր ։ Բայց դուք որչափ

1 Մի օրին. դարգաղջք ։
2 Մի օրին. կանգնեմ ։
3 Մի օրին. զգոհացարուք ։

կամիք յաճախեցէք 'ի նոյն հայհոյութիւն. Թերեւս 'ի նմին տեղւոջ ամաչեսջիք վասն առաջին և վերջին հայհոյութեան ձերոյ. մանաւանդ յորժամ բազումք 'ի ձէնջ փառաւոր առնիցեն զնա 'ի վերայ մեծամեծ սքանչելեացն՝ զոր տեսանիցէք ։

“Յս գնաց 'ի գերեզման անդր, ուր եդեալ էին զՂազար յայրի միոջ, և վէմ մի յեցուցեալ 'ի դուրս այրին“ ։ Սովորութիւն էր առաջնոցն մեծաւ աշխատութեամբ ամբարձուցանել զգերեզմանս իւրեանց. վասն զի հեռի էր 'ի նոցանէ յոյսն յարութեան. զայս միայն գիտէին կեանս, և զսոյն մահ դառնութեան միայն հաւատային. և յիշատակ մեռելոցն զգերեզմանսն համարէին, շիրիմ յիշատակ նոցա առնէին. և զանուն մեռելոյն 'ի վերայ դրանն փորագրէին. ակնկալութիւն յարութեան անցեալ էր զամենեքումբք. վասն որոյ և Մովսէս ակամայ խոնարհի 'ի սովորութիւն անդր առաջնոցն. “Եթէ ուրուք եղբայր մեռանիցի անորդի, մտցէ միւս եւս եղբայրն առ կին մեռելոյն՝ և յարուսցէ զաւակ յանուն եղբօր իւրոյ„. հնարք վասն ժառանգութեան երկրին վիճակելոյ ։ Այլ դարձեալ երկրորդ օրինօքն անդրէն ընդդիմացաւ[1]. և իսրայելացիքն զնոյն սովորութիւն ունէին առ գերեզմանս մեռելոցն ։

“Ասէ Յս. 'ի բաց արարէք զվէմդ 'ի բերանոյ գերեզմանիդ„ ։ Յորմէ երկիր դողայ՝ լերինք հալին, վասն փոքր վիմին օգնական խնդրէր 'ի մարդկանէ. ոչ օգնական, այլ վկայս ։ Սատարութիւն զոր արկ առ մարդիկ արտասուօք, զնոյն փոխարէն պահանջէր առ 'ի վիմին 'ի բաց վերացումն ։ Զերկիր մարդիկ գործեն, և զերկինս հրեշտակք ունին. տէրն հրեշտակաց և մարդկան եկեալ էր 'ի տեղի անդր. հրեշտակք ինչ ոչ պիտոյ էին յօգնականութիւն. որոց սովորութիւն է գործել զերկիր՝ նոցունն և հրամայեաց ։ Դուք, ասէ, առէք զվէմդ 'ի վեր աստի, և դուք հայեցարուք 'ի գերեզման անդր, եթէ կայ 'ի ներքս մեռեալդ, եթէ չարաչար է տեսիլ մեռելոյդ. աչք ձեր վաղուն վկայ լիցին, Թիկունք ձեր ծանրութեան

1 Մի օրին. իմացաւ ։

վիմիդ։ Նչք ձեր մեռեալ դիականդ, և հոտ նեխոյդ ռնգացդ ամենեցուն՝ որ մօտ կայք[1]. և 'ի մէջ այդ-չափ վկայիցդ բազում՝ զյարութիւն մեռելոյդ յու-սատ ոչ կարէք լինել։ Գիտէր զնոցա չար սովորու-թիւնն, յամ կողմանց հնարէր արգելուլ 'ի հայհոյ-ութենէն։ Զնոյն վկայութի և Մարթա վկայեաց քոյր մեռելոյն. « Տէր, ասէ, արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է. ասէ ցնա Յս. ո՛չ ասացի քեզ եթէ հաւատասցես՝ տեսցես զփառսն այ »։ Մարդ-կան՝ 'ի մեռելոյ դայ հոտ նեխոյ, և այ՝ 'ի մեղաւորէ. ամենայն աշխարհ առհասարակ նեխեալ էր, ոչ դադ-ջեցաւ և ոչ դարձոյց զերեսս իւր յումեքէ, այլ յիւր անուշահոտութիւն[2] համեմեաց զամենեսեան։ Մշակ կի ոչ դոյ հոտ 'ի նեխեալ մարմնոյ, այլ լի են միտք իւր խնդութեամբ, և պարարին խելք իւր 'ի հոտ ան-դաստանացն իւրոց. որում սակաւիկ մի ետ վկայութի և Իսահակ 'ի զննելն իւրում և յօրհնելն զՅակոբ։

Զոր դու ապականութի ասացեր, ո՛վ Մարթա, անտի բուսանելոց են անապական կեանք մարդկան. միայն աներկբայ հաւատա՛ յիս, և անտի հարկանի քեզ հոտ անոյշ և կենդանի, այնչափ պայծառ և լուսաւոր, մինչ զի զփառս այ անտի հաւատով կարես տեսանել։ Յերկիր՝ ուր ոչ են արկեալ սերմանք, թէ և բազում անգամ ամպք տեղասցեն 'ի վերայ նորա՝ ոչ բուսանի ցորեան. և 'ի գերեզմանի՝ յորում ոչ է եդեալ մեռեալ, թէ և բազում շփորք[3] երկնաւորք հնչեսցեն 'ի վերայ նորա, ոչ ոք տեսանէ 'ի նմա ըզ-յարութի մեռելոց։ Նուաղիկ մեռեալ և եդեալ 'ի գերեզմանիդ. դու զմահն դաւանես, և տէրն կեն-դանի՝ կեանք խոստանայ և յարուցանէ։ Կրկնեա՛ և երեքկնեա՛ զդոյն վկայութի, զի պապանծեսցին բե-րանք հայհոյիչ մարդկան, յորժամ զչորեքօրեայ մե-ռեալն կենդանի տեսցեն 'ի մէջ հրապարակիդ։ Ան չարահոտութեան մի՛ ինչ կասկածեր յամենեցունց տնէդ, աղ է դա անուշացուցիչ[4] ամենայն հոտեալ

1 Մի օրին. որ մօտակայդ էին։

2 Երկու օրին. իւրով անուշահո-տութեամբ։

3 Մի օրին. շփոթք.

4 Մի օրին. աղ է դա, և անու-շացուցիչ։

մարմնոյ. լոյս է թափանցանց ա̃մ կուրացելոց աչաց. ձայն է դա, բացումն ա̃մ խլացելոց լսելեաց. զոր և այժմ գործով առ սիրելի եղբօրդ քում տեսանիցես. զնա աչօք զտանես, և մտօք զփառս նորա իմանաս:

« Նա՝ իբրև ՚ի վեր առին զվէմն ՚ի դրաց գերեզմանին, Յ̃ս ամբարձ զաչս իւր յերկինս և ասէ. Հ̃այր, գոհանամ զքէն զի լուար ինձ, և ես գիտէի զի յամենայն ժամ լսես ինձ, այլ վասն ժողովրդեանս, որ շուրջ կան առնեմ՝ զի հաւատասցեն եթէ դու առաքեցեր զիս »: Մինչև զվէմն ՚ի վեր առեալ, տ̃ր մեր զՂազար յարոյց. և մինչև Յ̃ի զաչսն ՚ի վեր համբարձեալ[1] զՀ̃այր տեսանէր. և մինչև ձայնիւ կարդացեալ, Հ̃այր լսէր նմա. ոչ յայնմ ժամու միայն, այլ և յա̃մ ժամու. իսկ տեսողացն և լսողացն յայնմ ժամու միայն: Այլ ուրուք հոգի զատ իցէ ՚ի մարմնոյն. ոչ ուրուք ՚ի կենդանեաց. ևս քան զայս՝ անզատական է միաբանութիւն միանական Երրորդութեանն:

Նմանեաւ, Թէոդորիտոս. մի ամբառնար զաչսդ յերկինս, Նեստորիոս. քանզի կոյր աչօք էք ՚ի միաբանութենէ սուրբ Երրորդութեանն. վասն կորըստեան ձերոյ միաբանեցէք պատմել զանօթալից վարդապետութիւն: Ոմն, ասեն, կարդայ՝ և ոմն լսէ. ոմն աղաչէ՝ և ոմն աղաչի. ոմն խանդաղատի, և զոմն ՚ի խանդաղատանս ածէ. իբրև զի ոչ ունի իշխանութի̃ յարութ̃ե, զՀ̃այր կարդայ ձայնիւ յօգնականութ̃ի մեռելոյն: Ո՛վ, քանի՛ դարովելի են բանք սորանցս այսոցիկ, ոչ միայն յաչս իմաստնոց, այլ և որ կարի տխմարագոյնք իցեն ՚ի մ̃ջ եկեղեցւոյ: Ի տան քահանայապետին յորժամ յարոյց զդուստրն նորա ՚ի մեռելոց, ոչ աղաչեաց ոչ թախանձեաց ոչ պաղատեցաւ և ոչ յերկինս հայեցաւ և ոչ առ Հ̃այրն կարդաց. հայեցաւ ՚ի մեռեալն և ասէ, « Տալիթա կումի, աղջիկ դու, արի՛ կաց »: Զարթեաւ որպէս ՚ի քնոյ. կանգնեցաւ վաղվաղակի իբրև զառողջ. առժամայն և բազմականի արժանի եղև: Նոյնպէս և ՚ի Նային քաղաքի բազում ամբոխ էր զհետ դագաղացն[2]. ոչ

1 Մի օրին. հայեցուցեալ. 2 Մի օրին. դարգաղացն:

ոք զնա 'ի մարդկանէ թախանձեաց. և ոչ նա առ Հայր աղաչանս մատոյց. ձեռն միայն ձգեաց 'ի դագաղն և մեռեալն վաղվաղակի կանգնեցաւ ։ Նոյնպէս և յամենայն նշանագործութիւնս[1]. ուր անձամբն առնէր, զզօրութիւն աստուածութեան ցուցանէր. և ուր առ Հայր աղաչանս մատուցանէր, զկատարեալ սիրելութիւնն ցուցանէր ։

« Վասն ժողովրդեանս, ասէ, առնեմ ». և զմեկնութիւն բանին թարգմանէ. « Զի որք հաւատասցեն եթէ դու առաքեցեր զիս յաշխարհ » ։ Ճշմարիտ գոհութի[2] զՀօրէ վասն մարդկան. « Գոհանամ զքէն Հայր, ասէ, զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց անմեղաց » ։ Նմանեքեան անկեալ եմք ընդ կարևոր մեղօք. այլ և ընդ անքաւելի մեղօք անկեալ այնոքիկ են՝ որք յանբաժանելի բնութեանն բաժինս արկանեն. իբրև անդ ոչ են ձեռնհաս առնել խռովութիւն, ինքեանք յանձինս իւրեանց խռովեալ տագնապին. 'ի մարդկանէ հայհոյին և յԱստուծոյ դատապարտին և ընկենին 'ի դպրութենէ կենաց ։ Այլ մեք փութասցուք անդրէն առ գերեզմանն Ղազարու հասանել, զոր ոչ է արժան գերեզմանն անուանել, այլ յարութեան մեռելոց ։

« Զայս իբրև ասաց Յիսուս, 'ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Ղազարէ, արի եկ արտաքս ։ Եւ ել մեռեալն ոտիւքն կապելովք և ձեռօք երիզապնդովք. և երեսօքն պատատելովք » ։ Առաջ միտ դիր աղաչեմ ։ Յորժամ յԱստուածային գիրս մխեսցիս ընթեռնուլ և իմանալ զզօրութիւն բանիցն, գիր մի ձայնաւոր մի անցցէ զմտօք քոյովք. ամենայն շարագրածքն յղի[3] են երկնաւոր իմաստութեամբ, և ծնանին զբանս հոգևորս իմաստութեան մտաց. առ վատուսմունսն ամլանան, և առ քաջուսմունսն յիշատակաց՝ բազմորդիք լինին. սոյնպէս և 'ի լսելիս իւրաքանչիւրոց՝ որոց առողջք են միտք ականջաց, ըստ այնմ և հանգամանք մտացն անուշանան ։

'Ի ձայն բարձր աղաղակեաց և կարդաց զմեռեալն.

1 Մի օրին. աշխարհագործութեանս ։ 2 Երկու օրին. գոհացողութեան ։ 3 Մի օրին. ամ նշանագիրքն լի են հոգևոր իմաստութեամբ ։

ոչ եթէ սաստկութիւն ձայնին ընդոստոյց[1], ո՛չ. և զմտաւ անգամ մի՛ ածէր։ Ոչէ մեռեալ զմեռեալ յարոյց երբեմն, մի ձայն բարբառոյ անդ ոչ գոյր 'ի միջի։ Նշանակեաց վասն բազմութեն մարդկանն, զի 'ի ձեռն ձայնին լուծցէ զամենայն հակառակութի. հարկեցոյց զա՞մ տեսանելիս յինքն կորզելով։ "Որ հարցի, ասէ, ընդ մեռեալ՝ պիղծ կացցէ մինչև ցերեկոյ,,։ Կատարեաց զհրամանս օրինացն. հեռի եկաց 'ի գերեզմանէ անտի կանգունս երկոտասան, չմերձենալով 'ի մեռեալն. փոխանակ ձեռինն զձայնն սաստկացոյց. ձայնն եղև որոտումն երկնաւոր. արտասուքն ցօղ շայեկան ամպոց. խստութի վիմին կակղացաւ, և եղև անդաստան բերրի։ Քարինք որ անբոյսք են 'ի խոտոց, մալեաց կակղեաց սաստկութի ձայնին, և առ ընկալաւ զշայեկան անձրևին լիութի, և մածոյց զլուծութի սերմանն։ Հոտ նեխոյն դարձաւ 'ի հոտ անուշութեան. եմուտ ձայնն 'ի գերեզմանն, կալաւ զձեռանէ մեռելոյն. ոչ քարշեաց և ոչ գնացոյց, վասն զի կապեալ էր կապանօք. որպէս հրեշտակն զԱմբակում մարգարէ՝ հացիւն եփելով և թանիւն հասելով զաւլոր կերակուր հնձողացն տարաւ։ Արագ է բանն Այ քան հրեշտակ երկնից, և որչափ արագ է, առաւել ևս հզօրագոյն է։

Ասէ ցնոսա Յս, լուծէք զդա և թողէք երթալ,,։ Որ կապեցիքդ լուծէք, և որ պատեցիքդ քակեցէք, և որ պատատեցէքդ կողոպտեցէք. մի՛ գարշիք ոչ գոյ հոտ նեխոյ. մի՛ խորշիք ըստ օրինացն, չէ մեռեալ՝ այլ կենդանի է. տեսէք ձերօքն նշանօքդ. ծաներուք ձեռօք ձեր։ Զպատեալ բերանդ բացէք, և դուք ընդ այլ վկայսն վասն մահուդ, ամենեքեան վկայ լերուք յարութեանդ զոր տեսէքդ։ Ի մրգով ճանաչի բոլոր պտուղ երկրի. մանաւոր առժամայն, և աւետիք առ յապայ։

Ո՛վ հիւանդութի, կենդանութեն յոյս. ո՛վ հիւանդութի, յարութեն նշանակ. ո՛վ հիւանդութի, մահու ընդդիմամարտիկ. ո՛վ հիւանդութիւն; բանսարկուին ոսոխ. ո՛վ հիւանդութի, հաւատոյ հիմն.

1 Մի օրին. ընդոստփացոյց։

ո՛վ հիւանդութիւն, թերահաւատից յանդիմանութիւն։ Ոչ հիւանդութիւն կոչել ախորժեմ, այլ հիւանդացեալ մտաց առողջութիւն. ոչ հիւանդութիւն մահացուցիչ, այլ ախտացեալ անձանց բժշկութիւն. ոչ հիւանդութիւն առ 'ի մահ ննջումն, այլ ննջեցելոց առ 'ի մահ՝ կանգնումն. ոչ հիւանդութիւն, այլ մերոյ յարութեան պատկեր։ Սքանչասցուք ընդ նորահրաշ յարութիւնն Ղազարու. պայծառասցուք ընդ աստուածային ներգործութիւնն. բերկրեսցուք Ղազարու յարութեամբն, զնոյն յոյս յանձինս մեր հաստատելով։ Խայտասցեն և հոգիք սրբոցն, զի վերստին զգենլոց են զմարմինս զոր մահացոյց բանսարկուն։ Ողբասցէ մահ զկործանումն իւրոյ թագաւորութեան. կոծեսցին և դժոխք զքակտումն իւրոյ զօրութեան. հրճուեսցի նախաստեղծն ընդ գալուստ հովուին 'ի խնդիր կորուսեալ ոչխարին. ծափս հարցեն հաւատացեալք 'ի նորոգմանն Ղազարու. սուգ առցեն դևք զինքեանց տեսանելով զկործանումն։ Աւետարանեսցեն որոց 'ի գերեզմանսն բնակեն զյոյս յարութեանն. մի՛ այսուհետև զարհուրեցուսցէ զմեզ մահ. մի՛ դողացուսցէ բանսարկուն, որ մահացոյցն։ Գտաք զկենաց ծառն, 'ի բաց եկաց քերովբէն բոցեղէն սրոյն պահպանութեամբն. խափանեցաւ ներգործութիւն մահաբեր ծառոյն. տերև թզենւոյն պատառեցաւ, զի անապականութիւն գուշակ մեզ այսր աւուր յարութիւն եղև [1]։

Ո՛վ աստուածային ձայնին զօրութիւնն՝ որ զդժոխս պատառեաց, և զըմբռնեալսն 'ի մահուանէ ոգին արտաքս կորզեաց։ Ո՛վ աստուածային ձայնի զօրութեան, որ զլուծեալ անդամսն վերստին նորոգեաց 'ի կեանս։ Ո՛վ աստուածային ձայնին զօրութիւն, որ զորոշեալ ոգին 'ի քթթելական ժողովեաց առ լուծեալ մարմինն, ոչինչ անպատուականագոյն հրաշագործեալ քան զառաջին ստեղծուածն։ Ո՛վ ձայնին զօրութիւն, կանգնելով 'ի չորեքօրեայ մեռեալն պարառուանդեալ ոտիւք, ձեռօք ածէ 'ի տեղին ուր էրն։

Կացուսցուք [2], ո՛վ սիրելիք, զմիտս մեր 'ի վերայ ձայնիս ամբիծ հաւատովք, և տեսցուք մտաց աչօք

1 Մի օրին. Նշմարեցաւ։

2 Մի օրին. զնա առաջուստ։

զնոյն ինքն զկենսատուն Ք՟ս. և զնոյն ինքն դատաւանելով մեզ յարութիւն և կեանք, 'ի հասարակաց յարութենն մի երկմտեսցուք. զի ահա այն ձայն և զմեզ յարուցանելոց է 'ի գերեզմանացն: Փութասցուք այսուհետև ամենայն ամբարել զգործս օգտակարագոյնս առ հանդերձեալ յարութիւնն, զի մի չիջեալ լապտերօք ելցուք ընդ առաջ փեսային. զի յորժամ կոչեսցիմք 'ի գերեզմանացն, առձեռնպատրաստ գըտցուք զողորմութենն եւղ՝ որով լապտերքն մեր պայծառանան: Զի ոչ է յետ այնորիկ ժողովք վաճառուց. ոչ ունիս գնել զոր յուսաս. այժմ է հանդէս վաճառաց. ամենայն են աղքատացն ժողովքն. 'ի նոսա զանձեսցուք՝ որ ոչ ցեց մերձենայ. նոցա հաւատասցուք զգանձն՝ և ոչ գողն կարէ ական հատանել. 'ի ձեռն նոցա դիցուք 'ի պահեստի, զի անդ 'ի ձեռս դատաւորին գտցուք: Ընթասցուք առ լուծումն մեղացն սրագոյն քան զգնել աւետիսն. կաշառեսցուք զդատաւորն նախ քան զգնել աթոռոյն. մի կացցուք մերկս 'ի հրապարակատես ատենին. լաւագոյն է այժմ միայն խօսել ընդ դատաւորին. դիւրին է ամենայն լուծանել զմեղադրանսն: Զի յորժամ ծագեսցէ լոյսն 'ի մէջ գիշերի, և երևեսցի արդարոցն պարծանքն, այսինքն յամեցեալ փեսայն, կարասցուք ժամանել ընդ առաջ նորա պայծառ լապտերօք. զի 'ի դատաստանէն ապրեալք՝ առագաստին մտիցն լինիցիմք արժանի ընդ հրաւիրեալսն ժառանգելով զանսպառ ուրախութիւնն 'ի Ք՟ս Յ՟ս 'ի տ՟ր մեր. որում փառք յաւիտեանս, ամէն:

# ՎԱՍՆ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՂԱԶԱՐՈՒ ՅԱՒՈՒՐ ՇԱԲԱԹՈՒ[1]

Մեծ շաբաթս այս զմեծ հազար դարն նշանակէ, քանզի այս շաբաթս զմեր բնութեան ունի զյարութիւն և զդատաստան, վասն որոյ գնալն յԵրուսաղէմ և դղրդիլ քաղաքին՝ զյարութիւն մեռելոցն յայտնէ, որպէս 'ի Պասեքին շաբաթու օրն Ճրագալուցին՝ զՔրիստոսի Աստուծոյ մերոյ. զի 'ի գիշերի զյարութիւն պատմէ, և չև ևս յարութիւն եղեալ, գուշակէ զյարութիւն: Նմանապէս և 'ի սմա զհամօրէն մարդկան յարութիւն ցուցանէ, որ լինի 'ի կիւրակէի, որպէս նախ ասաց յաղագս իւրոյ յարութեան և ապա յարեաւ. և նախ մարգարէքն գուշակեցին, և ապա Քրիստոս կատարեաց: Նոյնպէս և տէրն նախ աւետարանեաց, "Եկեսցէ ժամանակ վերջին օրն, և լուիցեն ձայնի նորա, և եկեսցեն արտաքս":

Եւ այժմ է, զի օրինակ էր Ղազարու յարութիւն մարդկային բնութեան. քանզի կամեցաւ զնախաստեղծին բժշկել զառավանդակ մարմինն, 'ի փոքրագոյն անդամոցն առնու սկիզբն. զումեմն զգօսացեալ ձեռն, զայլոյ զբորոտութիւն, զուրուք զտեսարանն, և զորդի այրւոյն 'ի Նային քաղաքի յարոյց, և զդուստր հազարապետին. սակաւ սակաւ և ապա զՂազար 'ի Բեթանիա, առհաւատչեայ յարութիւն ամենայն մարմնոց: 'Ի շաբաթու յաւուր՝ յորում մատնեցաւ Յիսուս, մեռաւ Ղազար, և յաւուր՝ յորում տէրն ննջեաց 'ի

1 Զայս ճառս այսպէս առանց անուան օրինակագրի յերկուս Տօնապատճառս գտեալ, յորոց միումն պակասէր սկիզբն, յարեմք զկնի Մամբրէի ճառին. զի բազում ուրեք նմին խմաստիւք ընթանայ 'ի բանսն. այլ թէ այս իցէ բուն հարազատ ծնունդ միոյ նորա, և թէ առաջինն, անմարթ է մեզ ճշգիւ դատաստան առնել զմանէ. զի թերևս զկնի 'ի գրչացն խանգարեալ և անուանն մոռացեալ իցէ: Բայց և զայս գիտեմք, զի և Տօնապատճառք առեալ զայլոց զբանս ըստ կամի յերիւրեն, մերթ յանուն այլոց և մերթ առանց անուան՝ ուրեք զխմաստն պահեալ և ուրեք յաւելեալ կամ զեղչեալ: Այլ մեք ժամանակին թողումք հաւաստել զճշմարտութիւնն:

գերեզմանն, յարոյց զՂազար ։ Վասն այսորիկ Ադամ գոհացողական ձայնիւ նուագէ ծննդովք իւր. «Տէր, հաներ ի դժոխոց զանձն իմ, փրկեցեր յայնցանէ որ իջանեն ի գուբ»։ զըմաւէից նորոգութեան մարմնոց ։ Իսկ զկատարեալ փրկագործութիւն և Քի չարչարանան և յարութեան պահին. իսկ Ղազարու յարութիւն զկնի քառամենիցն ցուցանէ, թէ պահք և աղօթք՝ Քի չարչարակից առնէ զմեզ, որպէս յարոյցն զՂազար ։ Պահօք և աղօթիւք զհոգիս մեր կանգնեսցուք ի պէսպէս ախտից գլորմանէ ։ Այս ժամնէ ի տասն ժամուն ձեղաւ և ի նոյն ժամուն՝ յորում ելաւ արտաքս ի դրախտէն, ի նոյն ժամու և տէրն բոլորից էջ ի խաչէն ի գերեզման, ի նոյն ժամու յարոյց զՂազար ի գերեզմանէն ։

«Էր ոմն հիւանդ Ղազարոս»։ Որ ըստ եբրայեցւոցն օգնականեալ ասի. և հիւանդութիւն ըստ իմանալի տեսութեան, զմեղացն ասէ զաղտի մարդկան, և մեռանելըն՝ զմեղացն մահն որ է չար. ի Բեթանիայ՝ ի տուն սգոյ ասի աշխարհիս, ըստ նմանութեան յանցաւորութեան Ադամայ ։ Սգակցեն ամ արարածք, ողբան հեծեծեն և երկնեն մինչև ցայժմ, զանկեալն Ադամայ ի փառաց դրախտին վայելչութեան՝ ի կենդանութեան նոյ. և Քրիստոս արձակեցաք ի կապանաց մեղացն ի նորոգութիւն կենացն ի Քն Յն ։ Ի գեղջէ Մարիամու՝ լուսաւորիլ տէրունական լուսոյն և եկաւորութեամբն ։

Այս այն Մարիամն էր որ զոմ գոյսն վաճառեալ՝ գնեաց զեւղն, որով օծ զոտս նն, և լուաց ջրով, և հերով գլխոյն մաքրեաց՝ վասն եղբօրն յարութեան ի տան իւրեանց. «և Ղազար մի էր ի բազմելոցն»։ Ոչ այն պոռնիկն որ ի տուն Սիմոնի բորոտի էօծ ըզտէրն՝ զոր երեք աւետարանիչքն ասեն, այլ սա լի մաքրութք և պարկեշտութեամբ, և լաւագոյն առծայինման ։ Իսկ Մարթայ տէրունական ասի եկաւորութեամբն բերկրեալ, որոց եղբայրն հիւանդ էր ։ Եղբայրը զհարազատութիւն յայտնէ քերցն, վասն սոցա թուի ասացեալըն, «Վասն այնորիկ օրհնորդք»

1 Յօրինակին . ուխորդք ։

սիրեցին զքեզ„, առ 'ի յօգնել եղբօրն վտանգելոյ։

Սովորութիւն է պատմագրաց, որպէս զերման բացա-յայտեն, այսպէս և զտեղին ցուցանել առ 'ի հաւատարիմ լինել բանին։ Ի՞ր վասն կանանցն և ոչ զՂազարու գեղն կոչէ։ Ո՞չ թէպէտև հասարակաց էր տեղին, մանաւանդ Ղազարու քան քերցն, այլ կենդանեացն 'ի դէպ էր զտեղին կոչել քան մեռելոյն։ Իսկ օծանել զոտս Տն վասն սիրոյն առաւելութեան ըստ երախտագործութեան եղբօրն. իսկ հերովն ջըն-ջելն, զի ոչ ունէր այլ պատուական քան զգլուխն՝ ո-րով սպասէր կենսաբեր ոտիցն։

Յս յայն կոյս Յորդանանու և փարէր զտեղեաւն, զոլոր անապատն որսայր 'ի կենդանութիւն։ “Առա-քեցին առ նա քորք նորա„։ Որ նշանակէ զմարգա-րէիցն դասքն, “Տէր, զոր սիրէիրն հիւանդացաւ„։ Թէպէտև դեռևս ոչ ունէին կատարեալ հաւատս, սակայն սիրոյն յիշատակաւն խորհէին ձգել զնա 'ի գութ եղբօրն։ “Իբրև լուաւ Յս„։ Լուաւ զգուժ հիւանդին, թոյլ ետ մահուն իշխել նմա և մահա-ցուցանել։ “Այն հիւանդութիւն ոչ է առ 'ի մահ, այլ վասն փառացն այ„։ Ցուցանէ թէ հիւանդութեն ոչ ունի իշխանութիւն մահացուցանել զնա, բայց սուղ ինչ ժամանակ, զի քարոզեսցէ զփառսն այ։ Ցուցանէ թէ 'ի հեռաստանէ կալաւ զերակս հիւանդին, և մանր զննեաց, զճշմարիտ պատմութիւնն արար, և որ-պէս տր 'ի քնոյ զարթուցանէ իշխանութեամբ զծա-ռայ իւր։ Ի քուն լինելն՝ մարդիկ ոտնհար[1] լինին սիրելեացն՝ ոչ կարացեալ օգնել. ընդոստուցանելն՝ ած փառաւորի 'ի հայրական փառս իւր, և Որդին ցնծացեալ բերկրի վասն փառացն այ։ Թողուի ինձ 'ի Հայր ձգէ զբանն, որպէս յաղօթելն 'ի վերայ գերեզ-մանին՝ վասն ժխտող հրէիցն, որ զնա հակառակ այ անուանէին, և ապա առ հայր աղօթէ, որ ածական հրամանաւն կոչելոց էր զմեռեալն, զՀօր և զիւր կա-մացն զփառակցութիւն յայտնելով։ Պարձեալ զփա-ռաբանութիւն որ 'ի ծերոցն և 'ի տղայոցն լինելոց էր, կանխաւ գուշակեաց։

1 Մի օրին. ոտնահար։

«Մաքրեցին առ նա քորքն»: Բազում աղերսանօք յղեցին, և մեծ Թախանձանօք աղաչեցին, ոչ երկբայութեամբ հաւատացին յարուցիչն մեռելոց ամենից, բայց մարդկաբար փութային՝ մինչ դեռ հիւանդն ոչ էր վճարեալ 'ի կենաց: Զինչ դիւրահաւանելի քան զմարմին. յաճախագոյն սայթաքէ քան յառաջջութեան կայ. զի ոգի որ ելանէ՝ այլ ոչ դառնայ. շարժողն հոգւոյն գնայ և ա͞մ մարմինն անկանի ընդ ապականութեամբ, և գոյութեան մարմնոյն 'ի հողոյ բնութիւն դառնայ: Այնր աղագաւ քորքն Ղազարու ալեկոծուփ կէին 'ի միտս իւրեանց. և իբր յա͞ծ հաւատացեալ, զՏր որպէս բժիշկ ճարտար 'ի հիւանդն կոչէին:

Զտեղի առ աւուրս երկու, թոյլ ետ աւազակին մտանել 'ի տուն սիրելւոյն, և ապականութեան և խռովութեան գործել: Գոռոզացաւ մահ և զկամս իւր կատարեաց: «Լուաւ Յս և ասէ»: Յս ոչ ինչ ետ պատասխանի և ոչ երթալ և բժշկել և ոչ չերթալ և անփոյթ առնել: Զանուն հիւանդին ասացին, և ըղփառաց անուն լուաւ և գնացին տրտմութեամբ: Կալ մնալ երկու աւուրս՝ զգալստեան ժամանակս առ նախահարս բացայայտէ. կամ վասն յանդիմանութեան մոլեգնոտ հրէիցն, զի հրապարակաւ և լուր աշխարհի լիցի մահն, զի ա͞ծագործ հրաշքն պայծառագոյն երևեսցին:

«Սիրէր Յս զՄարիամ և զՄարթայ և զՂազար եղբայր նոցա», ըստ այնմ որ առակողն ասէ 'ի դէմս Տն, «Ես որ զիմն սիրեն, սիրեմ և բաշխեմ պարգևս բարեկամաց իմոց»: Զի մինչ Տր յԱգիպտոս իջանէր, սոքա յառաջ ժամանակաւ գնացեալ էին յԱդրիանուպօլիս քաղաք, և բազում սիրով ընդունեալ՝ բարձողն մեղաց բոլորից զսկզբնակիցն Հօր զմիածինն՝ բարձին ուսովք և կրեցին բազկաւ զկրողն ա͞մի. և 'ի դառնալ յԵգիպտոսէ Տն, և սոքա ընդ կուսին Մարիամու և Յովսեփու եկին 'ի Բեթանիա:

«Եւ Յս ասէ ցաշակերտսն, եկայք երթիցուք 'ի Հրէաստան»: Եկն և անդ երկեղ մահուն և չարաչար տագնապեցոյց զնոսա քան զքորսն Ղազարու: Զի՞ այդչափ զարհուրեալ էք և դողայք. ապաքէն

ելանելոց էք 'ի մարմնոյդ. որ լուսայք 'ի նմանէ, «Մ՛ի երկնչիք յայնցանէ, որ սպանանեն զմարմինն, և զհոգին ոչ կարեն սպանանել»: Դա՝ զհոգի և զմարմին ապրեցուցանէ 'ի մահուանէ, զի ոչ էր իսկ սովորութիւն ծանուցանել նոցա զտեղին ուր երթալոց էր: «Տէր, ասեն, հրեայքն խնդրեն սպանանել զքեզ, և դու անդր երթաս»: Զաշակերտսն այսր անդր տարաբերէր, ոչ կամեցաւ զխորհուրդն յայտնել նոցա, զի տեսին զնշան յարութեն, և ոչ հաւատացին: Զերկոտասանամեայ աղջիկն զՅայրոսին դուստրն յարոյց, և զորդի այրւոյն 'ի Նային քաղաքին: Որ զի մեռեալ կարէ յարուցանել, նա և զամենայն ննջեցեալսն. թէ զայլոց մահ հալածական արար, առաւել ես զձերդ: 'Ի լերինն Թափովր 'ի Հօրէ լուայք, «Դա իմ սիրելի Որդի, դմա լուարուք». բայց դուք փոխանակ նմա լսելոյ, հրաման տայք նմա, մի երթալ 'ի Հրէաստան. զՂազարոյ խորհուրդ եթէ յայտնեալ[1] էր ոչ հաւատայիք վասն ձեր տկար մտաց:

«Իսկ Յս̃ ասէ, երկոտասան ժամ է աւուրս»: Զբոլոր օրն յայտնէ. զի օր Տն̃ որով խաւար կռապաշտութեն լուծանի որ նովաւ գնան, օրն լոյս ասի ըստ Եբրայեցի բանիբանիցն. և լոյս Քն̃ որ լուսաւորէ: «Որ գնայ 'ի տուընջեան ոչ գայթակղի». որչափ առաւել[2] ձեզ ընդ իս գոլով որ լոյս եմ աշխարհի: Մ՛ի զմարմնոյ աչաց տեսիլդ, ասէ, իմասցիս և որ է երկեղ մարդկան և ամ̃ կենդանեաց, տկարքն դողան 'ի հզօրագունիցն. այլ ես զ'ի հաւատոյ տեսութենն ասեմ, որ զառյապայն առժամայն տեսանէ. որ զայն տեսութիւն ոչ ունի 'ի հոգւոյն, թէ և 'ի միջօրեայ գնայ՝ գայթակղի, զի զլուսաւոր համապատ ընդ իւր ունի: Սակաւիկ մի կրթելով զմիտս նոցա ընդ բանս այլ զաշակերտսն, մինչև մեռեալն 'ի գերեզմանն էջ: Ապա ասէ, «Ղազար բարեկամ մեր ննջեաց, երթամ զարթուցանել զնա»: Իբրև տղայոց կաթն ջամբէր, մայրաբար ծնանիս, և դայեկաբար սնուցանես, և զտգիտութիւն նոցա իմաստութեամբ ծածկես. Երբ էիր դու

1 Յառաջին օրին. Ղազարու նշանակեր յետ, չուստ ոչ հաւատայիք: յարութեան զխորհուրդն 'ի վեր հա-
2 Յօրինակին. առաւ:

անհնեկացեալ Ղազարու, որ երթաս զարթուցանես զնա, երկու աւուր ճանապարհաւ հեռի. մինթէ յանապակ ըմպելեաց թմրեալ իցէ. կամ ո՞ ոք չորս տիւ և չորս գիշեր 'ի քուն լինի. քոյրքն նորա ընդէ՞ր ոչ զարթուցանեն: Պաւլինք անմեղք էին աշակերտքն, զոր ինչ տեսանէին՝ զնոյնպէս գիտէին, և զոր ինչ լսէին՝ նմին և հաւատային. յանձայրին խորհուրդն հասու լինել ոչ կարէին: Աստ յայտնէ զգնալն 'ի Բեթանիա և ոչ յԵրուսաղէմ, զի զերկեւղն 'ի մտաց նոցա փարատեսցէ, այլ զարթուցանելովն զխնամմնն որ առ Ղազար՝ յայտնէ:

«Տէր, եթէ ննջեաց, ապա ապրի»: Բազում հիւանդք ննջեն, և ոչ ապրին, և իցեն որ ոչ ննջեն և ապրին: Ո՞ փաղաքշանք ոգւոյ տացն, զծածկատեսն կամէին սփոփել. գիտէին աշակերտքն թէ սիրէ տէր մեր զՂազար անմեղ, և ոչ կամէին թէ վիշտ հասցէ ընտանեաց նորա: Աշակերտքն զննջելն՝ ապրելոյ և առողջութեան վարկանէին. տէրն մերկացաւ զծածուկ խորհուրդն և յայտնապէս ասէ, «Ղազար բարեկամ մեր մեռաւ»: Զի մի յանկարծակի ընդոստուցեն ճչելով կամ կոծելով: Իսկ Տր ասէր, մեռայք որով ըմբռնեալն էր ազգ մարդկան, այսինքն օրինօքն. զի Մովսիւ փոխելոց էին յանմահութի, յարութ֊ն Ղազարու որ էր գաղափար հանդերձելոցն:

«Եւ ուրախ եմ վասն ձեր, զի դուք հաւատացէք զի ես չէի անդ»: Պատիպատ խօսք, որ ոչ կարացին 'ի վերայ հասանել իրին. մահու անունն և ուրախութեան 'ի լսելիս նոցա հաչակեցաւ, և զարմացմամբն ոչ կարէին հասու լինել վասն երկշաւիղ բանիցն. բայց երկչոտն Թովմայ տեղեակ առնէ զմեզ վն տխմարութեան նոցա: Ոչ 'ի պարծանս ինչ յարուցանեմ զնա, այլ վասն ձեր հաւատոցդ հաստատութեան. ուրախ եմ զի առնուցուք զչափ իմոյ զօրութեանս: «Եկ Թովմաս, եկայք զի և մեք մեռցուք ընդ նմա»: Այս երթայ զմեռեալն յարուցանել, և մեք կենդանիքս պատրաստիմք 'ի մահ. քանզի տարակուսեալ էին յայս տեղւոջս: Երկրագործ մշակաց դիւրագոյն է զկործանեալ երկիր վարել, քան գիտնոց զտգէտսն ածել 'ի հաւանութի. երկրագործ սակաւ աշխատի

ընդ ամեհի երկիրն, և բազում պտղոց ակնունի . իսկ մարդ կոյր տգիտութ֊ք, այլ միայն է կարողութիւն 'ի գիտութ֊ի ածել: Որչափ թերահաւատութ֊ին զօրանայր, յամ կողմանց ուրախութիւն լինէր . զբոլորիցն անհաւատութ֊ի հայրենի զօրութ֊ք հզօր գործեաց:

« Նայն Յ֊ս և եգիտ զՂազար չորեքօրեայ 'ի գերեզմանին »: Օ֊ր մերձ էր գեւղն յԵրուսաղէմ, և սուգն մերձ էր յուրախութ֊ի և 'ի խաղաղութիւն, ասպարիսաւ հնգետասան . ասպարէսն երկու մղոն է Ճանապարհի, մինչ յԵրուսաղէմ: Ի ծննդենէն կրկին թուօք մինչև 'ի խաչելութ֊ին՝ երեք հնգեաշարժ զգայութ֊ք, տեսանելեօք, լսելեօք, հոտոտելեօք, Ճաշակելեօք և շօշափելեօք: Օ֊րս Փայոյդ ընդ իւր էութ֊ի, որ համբարձաւ յերկինս . ընդ նմին յարոյց և ըստ նմին նստոյց ընդ Հօր:

« Բազումք 'ի հրէիցն եկեալ էին առ Մարթայ և առ Մարիամ »: Դալն մեծայլին տեսչութեամբն իմանի գոլ, զի տեսողք լիցին մեծագործ նշանացն . զի ոմանք օգտեցան հաստատելով 'ի Ք֊ս հաւատով խարսխեալ, զի մխիթարեսցեն զնոսա: Ագարակն քաղաքացեալ էր, և քաղաքն ագարակացեալ, բոլոր ամբոխ քաղաքին եկեալ էին 'ի վիշտն . զի է բնութ֊ե սովորութ֊ի զգօթ սիրեմք լսել զայլոց, և մտանել 'ի տուն սգոյ քան ուրախութ֊ե . ոմն 'ի լկտութ֊ի և ոմն յանհաւատութ֊ի, և յոլովք 'ի շատխօսութիւն . սակաւք լինին կցորդք տրտմութ֊ե, զի 'ի մէջ Երուսաղեմի գործելոց էին զքանչելիսն:

« Մարթայ իբրև լուաւ թէ Յ֊ս գայ, ընդ առաջ գնաց նմա »: Մարթայ յառաջանալ ըստ օրինացն և մարգարէիցն, որ գուշակեալ ցուցանելոց էր զՔ֊ս Փրկիչ աշխարհի: Մարիամ անդրէն նստէր 'ի տանն . մինն եղև իբրև զգան բերանոյ, և միւսն իբրև զսիրտ շտեմարան խորհրդոյ . սիրտն 'ի տեղւոջն հաստատուն եկաց, և բանն յառաջ ընթացաւ պատմել ըզպաղատանս սգաւոր սրտին 'ի լսելիս այնորիկ՝ որ կարող էր բառնալ զսուգ 'ի տանէ սիրելեացն իւրոց: Մարթայ որ է բան, գիտաց թէ ամ մխիթարիչքն որ ժողովեալ էին՝ նոցա անձինքն լի են տրտմութ֊ք . տրտում զտրտում ոչ կարէ զուարթացուցանել, և

ագաւոր զագաւոր ոչ մխիթարէ ։ Մինչ ասէր, մի՛ տա-ղիր եղբայր իմ վաղ մեռեալ տղայ, և այլքն ըստ իւ-րաքանչիւր կարեւորացն ասեն զմահն տարաժամ, և զսիրտն ընկանեն, և զաղխին գալարեն, վայ 'ի վե-րայ վայի ։ Օ՜ այս ած եթող Մարթայ և ասէ ցՅս, "Տէր, աստ լինեալ էիր դու, եղբայրն իմ ոչ էր մե-ռեալ"։ Մարգարէացաւ Մարթայ ։ Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի զվարձս մարգարէի առցէ, իսկ որ զած ընդունի, զփառս ածային ժա-ռանգէ ։ Երկնաւոր իմաստութեամբն ասաց զայս, և յածային փառսն վերացաւ․ զի ուր կենդանութիւն է՝ անդ մահ ոչ մտանէ․ տէրն բազում անգամ մը-տեալ էր 'ի տունն Մարթայի և Մարիամու, և ըզ-մահն 'ի գեւղջէն հալածական առնէր թող թէ 'ի տանէն ։ Իմաստութիւն հոգևոր, և սէր ածային, և հաւատք ճշմարիտ, և ստոյգ մարգարէութիւն, չորք եղբարք են հարազատք․ քանզի մի է շարժողն սոցա ած ։ Որպէս արուեստաւորն ի Եերան փչէ յերգեհոնն, և բազում փողքն, ոմն սուր, ոմն թաւ, ոմն թանձրա-գոյն, մի ձայն ասէ․ այսպէս և Մարթայ և Մա-րիամ և Ղազար և թէ այլ ոք էր 'ի տանն նոցա, մի հաւատք էին ամենեցուն, մի սէր սիրեցին զՔս, մի հոգևոր իմաստութի էր ամենեցուն ։

"Արդ գիտեմ զոր ինչ խնդրես տայ քեզ ած"։ Մարգարէացաւ կինն, ոչ զմիոյ մեռելոյ յարութիւն, այլ զդարուցն կարող ես յարուցանել կամակցութբ Հօր և Հոգւոյն ։ Տէրն ասէր, "Ամենայն ինչ տուաւ ինձ 'ի Հօրէ"։ Այս զմիտս լսողացն հաստատէր ։ "Եւ ոչ ոք գիտէ զՀայր, բայց Որդի, և ոչ ոք զՈր-դի ճանաչէ, բայց Հայր"։ Այս բան զմիակամութի և զմի բնութի ցուցանեն, և ոչ երիցութիւն[1] և կրսե-րութի․ վասն այսորիկ Քս հաճեցաւ ընդ հաւատս Մարթայի ։

"Ասէ ցնա Յս, յարիցէ եղբայրն քո"։ Տէրն յայտ-նեաց նմա զառաջին յարութի եղբօրն իւր և զյե-տինն ։ Ոչ պէտք են աղաչանաց, և ոչ կարծիք հայ-ցուածոց որպէս ոմանց թուի ։ "Գիտեմ զի յարիցէ

1 Մի օրէն․ երիցութեան ։

յարութեան յաւուրն յետնում „ ։ Գիտեմք երկնից բացան կնոջն . զինքնածագ լոյսն ետես կինն աչօք . յանմահատոյց տեղւոյն եհաս . որդւոյն Զեբեդեայ հաւասարեաց . ոչ զմարմնոյ լանջօքն Ք՟ի անկաւ , այլ իմաստութեան [1] զօրացաւ յոյժ . զԲանն կենաց շօշափեաց , 'ի կեանս ա՟յ փոխեցաւ . մտաց աչքն բացան . լուսաւորեցաւ ներքին մարդն . եկն արտասուօք , լցաւ ծաղու . վշտացեալն բերկրեցաւ . զուարթացաւ գոյն երեսացն . աւետիս լուաւ յարութեան . մինչ չեւ յարուցեալ եւեթ զեղբայրն , զի զկենդանացուցիչն ետես ա՟մ մեռելոց ։

" Ես իսկ եմ յարութիւն եւ կեանք „ ։ Եղիա յարոյց զմեռեալս , եւ դարձեալ մեռան . Եղիսէ երկուս ։ Ես յարուցանեմ եւ կեցուցանեմ յանմահութիւն ։ " Որ հաւատայ յիս , թէպէտ եւ մեռանի , կենդանի է , եւ որ հաւատայ յիս՝ մի ճաշակեսցէ զմահ յաւիտեան „ , որպէս 'ի մօտոյ տեսանելոց ես ։ Այսպէս եւ յիս հաւատացեալքն փրկին 'ի յաւիտենից մահուանէն . զի յոյժ բարձրագոյն ճառեաց Փրկիչն , վասն այսորիկ զվարձ վարդապետութեան խնդրեաց 'ի նմանէ , " Հաւատաս այսմիկ զոր լուար „ . թէպէտ երկշաւիղ էր բանն , սակայն յուսայր նա . ասէ " Այո , Տ՟ր , ես հաւատացի թէ դու ես Ք՟ս որդի ա՟յ որ յաշխարհ գալոց էիր „ ։ Զմարգարէիցն բանն երկրորդեաց , որպէս շամարտացի [2] կինն ասաց , " Յորժամ Մեսիայ գայ , նա պատմեսցէ մեզ զա՟մ „ ։ Ասաց ըզկուսական ծնունդն , եւ ակնարկեաց զերկրորդ գալուստն . զա՟մ ինչ տեղեկացաւ եւ զմեծամեծսն ա՟յ լուաւ ։ Եկն իբր մարդ տրտում , եւ գնաց իբր հրեշտակ ա՟յ ուրախացեալ . կոչեաց զքոյր իւր լռելեայն . աշակերտեաց 'ի նոյն վարդապետութիւն հեշտակամ , դիւրահաւան ակնարկելովն վասն հրէից . զի եւ քոյրն զնոյն մաղթանսն արկցէ առաջի՝ 'ի գութ ածելով զՔ՟ս վասն եղբօրն կենդանութեան . եւ Մարիամ զնոյն բանս քեռն երկրորդէր . ասէ " Վարդապետ եկեալ է եւ կոչէ զքեզ „ ։ Արդարեւ ճշմարիտ վարդապետ , առանց ալփափատաց ուսուցանէ , զա-

1 Մի օրին . գիտութեանն ։

2 Մի օրին . շամբրացի ։

մենայն պէտս դալրութեան կատարէ. ասաց վարդա-պետ, և ինքն եմուտ 'ի կարգ աշակերտացն։

"Իբրև լուաւ յարեաւ վաղվաղակի և եկն առ Յս". 'ի նոյն տեղի և 'ի նոյն ուրախութիւն, առ նոյն ուսուցիչն. զոմն 'ի ծածուկ և զոմն յայտնի ձգեաց զերկուսեանն 'ի սգաւոր աշխարհէս՝ յանտրտում ու-րախութիւն կենացն։ Յս չև էր եկեալ 'ի գեղն. այլ կայր 'ի տեղւոջն ուր ընդ առաջ եղև նմա Մարթա։ Ի՞ր վասն արգելոյր զինքն և ոչ փութայեր գայր 'ի գերեզմանն. այլ զի 'ի հասանել համբաւ գալստեան նորա, զի առեան գործեսցէ ժողովր-դեանն, և ոմ ոք ձեպեսցի առ 'ի տեսանել զսքան-չուսն ածագործ նշանացն. զի 'ի լսել մարդոյն 'ի պա-տուիրանապահութենէն այ, լսէր և ածագործ հրաշքն յերկրէ. և մերկացաւ մարդն յածատուր փառացն վասն յանցանացն. աստ յաղագս Ղազարու զհրա-մանն այ պահելոյ, կենագործեր 'ի գերեզմանէն։ Իսկ հրեայքն որ եկեալ էին մխիթարել զնոսա, ին-քեանք թափուր յերկնային յուրախութենէն մնա-ցին, սգով թաղծեալ նստէին 'ի տան, յառաջին յար-տասուսն շաղախեալ[1] և նովին տրտմութբն։ "Իբրև տեսին զՄարիամ զի յարեաւ, գնացին և նոքա ըղ-հետ"։ Ոչ առ 'ի յարութենն տեսութիւն, այլ 'ի գե-րեզման մեռելոյն։ "Զի որում տուեալ է յաւել-ցի, և որում ոչ է տուեալ, և զոր ունի հանցեն 'ի նմանէ"։ Ոչ առ ագահութիւն տուողին, այլ վասն անարժանութեան ընդունողին, որպէս առաքելոցն և Յուդայի տեսանի։ "Համարէին թէ 'ի գերեզ-մանն երթայ, զի լացցեն անդ"։ Զի հանապազ գե-րեզմանատեղք էին, ոչ միայն զմարդիկ մեռեալ, այլ և զսուտ ածս ասէին մեռեալ, "Նա նստեալ լային զԹամուզ" մարգարէն ասէ։

"Նա Մարիամ եկն առ Յս"։ Մարիամ 'ի նո-ցանէ մերժեցաւ, և եկն առ այն որ յառաջն ճանա-չէր, թէ որ զբազում մեղս իմ եթող ձրի, կարող է զծանր տրտմութիս փարատել։ [2]Անկաւ առաջի ոտիցն

1 Մի օրին. շաղեալ։ զի յառաջագոյն յերես 56. այլ է
2 Այս հակառակաբանէ գրիչն, ասաց զայս Մարիամ 'ի մեղաւոր

Յ̃սի և ասէ, “ Տէր աստ լինեալ էիր, եղբայրն իմ ոչ էր մեռեալ”: Մերոյ դպրոցի մանկունք, մի լեզու խօսէին. միաբան ըստ վարդապետին կամացն յորդորէին յուսումն ա̃ծային: Նոյնպէս և երկու քորքն 'ի մի որս կենդանիքն [1] ըմբռնեցան, զմի սէր սիրեցին զտէրն. 'ի մի աղբիւրէ արբին զջուրն կենդանի. տեսին մարդացեալ զա̃ծ, հաւատացին 'ի տէր բոլորից: Թուի թէ խորհեալ էին ածել զՅ̃ն եղբօրն 'ի կենդանութ̃ի գործել. յերկուցն միաբարբառ լինի վասն մերձաւոր մեռելոյն ասելով, տէր, թէ չէիր անտես արարեալ զազգ մարդկան, ոչ մեռանէին զմեղացն մահ: “ Ո՜ի մեք մեղաք և դու բարկացար”, ասէ ոմն 'ի մարգարէիցն առ 'ի պարկեշտութիւն վարուց և 'ի սքանչելի խրատուցն:

“ Յ̃ս ետես զնա զի լայր, և որ ընդ նմայն էին լային”: Յաշխատել մարմնոցն բխեն քրտունքն, և 'ի զայրագին սրտէ հեղուն արտասուս 'ի վերայ մեռելոյն, և 'ի կենդանի սիրելոյ յորժամ 'ի հեռաստանէ եկեսցէ: Նոյնս Մարիամ զՅ̃ն, և երկունք գրթոյն ստիպեցին զնա յիշատակաւ մեռելոյն, այլ ոչ ճչեաց ըստ աշխարհիս կարգաց, այլ ցնծութեամբ եհեղ զարտօսր առաջի ողորմածին. անչափ աղիողորմ տեսլեամբ, մինչև զհրեայսն բարձրականն լացոյց: Խռովեցաւ 'ի հոգի, իբր թէ ա̃մ զօրութ̃բ տրտմեցաւ. ոչ կարաց պարզաբար ասել ո՛ւր եդիք, այլ մռնչելով ասէ, կիսաբան տրտմակից 'ի վերայ սիրելւոյն: Յորդահոս անձրևաց առատաբեր լինին ամպք, և բուսուցանեն դալարիս արօտականաց. նոյնպէս և յորդ արտասուք մարդկան 'ի գութ ածեն զա̃ծ: Եղև կցորդ սգոյ նոցա, զի լիցին մարդիկ մխիթարեալք յն̃մ: Կամ մռնչեաց 'ի վերայ Սատանայի որպէս առիւծ 'ի վերայ որսոյ. զի ոչ ստուգապէս կարէին շարժել զնա տրտմականքն, որպէս զմեզ յաղթահարեն մարմնոյ շարժմունք. զի ա̃ծային բնութ̃ի անախտ և անտրտում է. այլ խռովելն նշանակէ,

կնոջէն, զոր երեք աւետարանիչք յիշատակեն, և այժմ նոյն համարի զսա, որպէս և յերեսն 75:

1 Այլ օրին. 'Ի մի որս կենդանի երինաւոր ըմբռնեցան:

թէ հրաման ետ տրտմութեան գալ և բխել զարտօսրն կամաւորաբար ։ Յուցանէ թէ յորժամ կամէր զի-ջանէր յայնոսիկ 'ի բնական կիրսն , յայտնելով զճըշ-մարիտ մարդեղութիւնն , զի թէպէտև ա͞ծ միացաւ 'ի մարմնի , այլ ոչ ետ շարժել մարմնոյն 'ի բնական կիրսն , այլ յորժամ թոյլ տայր իջանէր 'ի կերակուր և յըմպելիս և 'ի քուն . և յորժամ կամէր անցանէր որ բնութեանս գեր 'ի վերոյ . պահէր զինքն ա͞ծային միութեամբն ։

« Ասէ ո՛ւր եդիք զնա . ասեն , եկ և տես » ։ Ոչ անգիտութ͞բ . որպէս Հայր Նորա հարցանէր , « Ուր ես Ադամ » , և ցԿայէն , « Ուր է Աբէլ եղբայր քո » , և ցՄովսէս , « Զինչ է այդ որ 'ի ձեռին քո է » ։ Խնդրէ արարիչն զիւր պատկերն , որ ըստ պատկերի իւրոյ արար զնա , և չարն նախանձեցաւ ընդ բարւոյն Ադամայ , և ընկեց զնա յերանելի կենացն . տէրն ե-կեալ որսայր զմարդկան փրկութիւն ։ 'Ի բեթանիայէ մինչև 'ի Րաթաբրէ եօթանասուն և երկու մղոնք են , յայնչափ հեռաստանէն գիտացեր զմահն Ղա-զարու , և մօտ 'ի կարմջիդ անգիտանամս ։ Ու՞ր ե-դիք դուք , և ես կենդանի առնում զնա , դագաղօք տարայք , և ես ձայնիւ յարուցանեմ ։ Ապա զիա՛րդ հարցանես , տ͞ր . ասէ , ա͞ծային հրաշս գործելոց եմ աստ 'ի տեղւոջս , գուցէ զըրկեսցին մարդիկ ։ Յերկու կողմանց զգուշանայ , հոգւոց և մարմնոց , վասն զի ա͞ծ էր մարդացեալ . այլ զի ինքեանք ցուցցեն և վկայ լիցին մեռելոյն և տեղւոյն ։ Արտասուեաց Յս ։ Մարմնոյն ոչ միայն աչքն արտասուեն , այլ բոլոր մար-մինն քրտնի , որով տ͞ր մեր բազում անգամ վարեցաւ յաշխարհի , մինչև 'ի նուազագոյն պէտս . զի զազ-գակցութիւնն իւր 'ի մեր[1] վշտակցութիւնս ցուցցէ ։ Դարձեալ զի սահման և կէտ զայն վարդապետէ , այնքան արտասուել հաւատացելոց , որք զյարութե յոյս յինքեանս ունիցի ։ Դարձեալ զի տեսանելով զմեռեալն , պարտ է արտասուել 'ի վերայ մարդոյն , որ 'ի սկզբանէ ժառանգեցոյց ազգի մարդկան ։ Կամ 'ի վերայ հրէիցն արտասուեաց , որ յետս կալոց էր

1 Այլ օրին . Ի մեր ։

յա՜ծագործ նշանացն թերահաւատեալք, և գեհենոյն ժառանգ լինելոց էին,

«Հրեայքն, ասեն, տեսէք որչափ սիրէր զնա, զի ինքեամբ արտասուեաց. կէսքն ասեն, ո՞չ կարէ սա որ եբաց զաչս կուրին, առնել զի և սա մի՛ մեռցի»: Դուք սովոր էք հայհոյել, որ զծովն բաժանեաց և զբազում նշանս արար, հայհոյեցէք և ոչ գոհացայք զնյ, և անուանոց փոխանակեցէք. և 'ի Մովսէս երդմամբ ուրացայք: Որ ընդ ծովն ճանապարհ արար, զբոլոր ժողովուրդն 'ի բերանոյ սրոյն Փարաւոնի ապրեցոյց. չկալայք շնորհ, զի վասն կուրին բժշկութե շնորհակա՞լ լինիցիք: Հոգի կուրին կենդանի էր և շարժէր զմարմինն, և աչք կուրին մեռեալ էր. շունչն 'ի մեռեալ մարմինն ոչ բնակէր, և ոչ լոյս արեգական 'ի մեռեալ աչս[1]. թէ զմեռեալ աչս կենդանացոյց, և զլոյսն հրաժարեալ անդրէն դարձոյց, ապա և զբոլոր մարմինն կենդանի առնէ: Բայց դուք 'ի կամս ձեր յաճախեցէք 'ի հայհոյութի. թերևս 'ի նմին տեղւոջ ամաչէք, յորժամ բազումք 'ի ձէնջ փառաւոր առնէին զիմ ա՜ծութիս 'ի վերայ մեծամեծ սքանչելեացն զոր տեսանելոց էն:

«Նա դարձեալ զայրացաւ 'ի միտս իւր»: Ընդ ասէ, թէ խռովեցոյց զանձն իւր կոչելով յինքն զարտօսրն, և աստ սաստէ[2] բնութեն դադարել 'ի շարժմանէ տրտմութեանն, զոր կոչեաց խռովեցոյց: «Նա գնաց 'ի գերեզմանն Ղազարու, և էր այր մի և վէմ մեծ եդեալ 'ի վերայ այրին»: Սովորութի էր առաջնոցն ամրացուցանել զգերեզմանս, վասն զի հեռի էր 'ի նոցանէ յոյս յարութեանն: Զայս՝ կեանք համարէին, և զայն՝ դառնութի մահու. յիշատակ մեռելոյն զշիրիմ համարէին, և զանուն մեռելոյն 'ի վերայ գերեզմանին փորագրէին. և Մովսէս ակամայ թոյլ տայր սովորութեն[3]: Եղբայր անորդի մեռեալ, առնոյր զկինն եղբայրն, և յարուցանէր զաւակ յանուն մեռելոյն վասն ժառանգութե երկրին վիճակե-

1 Յօրինակին. շունչն 'ի մեռեալ մարմինն բնակէր. եւ ոչ լոյս արեգական 'ի մեռեալ աչս ոչ բնակէ. զոր յայլ օրինակաց ուղղեցաք:

2 Յայլ օրին. ասէ.

3 Յայլ օրին. և Մովսէս ակամայ 'ի փորձանս անդ խոնարհէր 'ի սովորութեան առաջնոցն:

լոյ ։ Կամ վէմն կափարիչն՝ նշանակէ զսատանայ․ որ 'ի վերայ դժոխոցն զհոգիսն փակեալ ընդ իւրով իշխանութեամբ պահէր ։

Յն ասէ , “ 'Ի բաց առէք [1] զվէմդ 'ի բերանոյ այրոյդ „ ։ Յորմէ երկիր դողայ , և լերինք հալին , մտ փոքր մի վիմիդ օգնական խնդրես 'ի մարդկանէ ։ Սըկայ կոչեմ յարութեան , դուք առէք զքարդ 'ի վեր , և հայեցարուք 'ի գերեզմանդ․ աչք ձեր վկայ լիցին , և թիկունք ծանրութեան վիմիդ , և հոտ նեխոյդ ռնգացդ որ 'ի մօտ կայք ամենեքին ։ Պիտէր մնոցա չար սովորութեանն․ յամ կողմանց զգուշանայր արգելուլ զհայհոյութեանն ։ Զի՞նչ պէտք էին բառնալ զվէմն , որոյ հրամանաւ դժոխք փախելոց էին զմեռեալս ։ Նայլ վասն ժխտող հրէիցն , թէ զսքանչելիսն ուրանան , ձեռք նոցա դատախազք գտանիցին յանդիմանելով զնոցա թերահաւատութիւնն ։ Կամ վէմ՝ զբուռն ծանրալուծն Սատանայ պահակն մեղաց , որ արգելեալ պահէր ընդ մահու իշխանութեամբ զմեղաւորսն ։ Տէր բառնայ զվէմն , զբռնակալութիւն դիւացն , զի դիւրաւ յարիցեն 'ի մեղացն մարդիկ զկնի Քրիստոսի գալստեանն ։

“ Ասէ Մարթայ քոյր մեռելոյն , տէր , արդ հոտեալ է „ ։ Նախատեղծին բերէ օրինակ , և մեռելութեան և նեխութեան ըստ մարգարէին ։ “ Նեխեցան և փտեցան վէրք իմ „ ։ Նու այլ մարգարէքն ամբաստանեն վասն ազգի մարդկան , զմեղացն ժահահոտութեան բացայայտեն արարչին , իւրաքանչիւր ըստ իւրում բանին․ զի տէր աշխարհ առ հասարակ նեխեալ էր ։ Հոտ նեխոյ մարդոյ՝ գայ 'ի մեռելոյ , իսկ հոյ՝ 'ի մեղաւորէն․ իսկ ոծ յիւր անուշահոտութենէն համեմատ զամենեսեան ։ Աշակերտին ոչ գոյ հոտ նեխոյ 'ի սերմանեացն , զի լի են միտք իւր խնդութեամբ , զի պարարեալ են խելք 'ի հոտոյ անդաստանաց իւր․ և յԻսահակ ասէր , հոտ որդւոյ իմ , որպէս անդաստանի լիոյ [2] ։ “ Քանզի չորեքօրեայ է „ ։ Զ չորեքնիւթեան

1 Յայլ օրին․ արարէք ։

2 Յայլ օրին․ որում և սոխաւիկ մի էփ վկայութիւն և իսահակ 'ի զննելիւ բում և յօրհնել զՅովսէփ ։ Այլ օրին․ 'ի զննել խորում զԵսաւ և զարդարութեան փա Յակոբայ ։

բնութիս[1] մարդկան, թուի թէ զչորեքեզերեան աշխարհս նշանակէ. զի ամենեքեան մեղան և նուազեալ են 'ի փառացն Այ: Բազմօրեայք ընդ չորեքօրէին յարոյց Քն 'ի մեղացն ապականութէ: “Ասէ ցնա Յս, հաւատա՛ և տեսցես զփառս Այ”: Ո՛վ Մարթայ. այտի բուսանելոց են անապական[2] կեանք մարդկան, միայն հաւատա՛ յԱծ, և հարկանի քեզ հոտ անուշ կենդանի, և զփառսն Այ տեսանես. և պապանձին բերանք հայհոյիչ մարդկան, յորժամ զչորեքօրեայ մեռեալ կենդանի տեսանիցեն[3] 'ի հրապարակիդ. աղ է դա անուշացուցիչ է ամ հարեալ մարմնոյ. և լոյս է դա թափանցիկ կուրացեալ աչաց, և ձայն է խլացեալ ականջաց, զոր գործով առ եղբայր քո տեսանես, և մտօք զփառսն Այ իմանաս:

” Իբրև 'ի վեր առին զվէմն ”: Մինչև զվէմն 'ի վեր առեալ էր, Ղազար յարուցեալ էր 'ի գերեզմանէն. ոչ է արժան գերեզման ասել, այլ յարութիւն անուանել: “Ամբարձ զաչս իւր յերկինս ”: Մինչև զաչս Յս յերկինս համբարձեալ էր, զՀայր տեսանէր: “Հայր, գոհանամ զքէն, զի լուար ինձ, գոհանամ զքէն, Հայր, զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց անմեղաց ”: Մինչև ձայնիւ կարդացեալ էր, Հայր լսէր նմա յամենայն ժամ:

Ամաչեսցէ Թէոդորիտոս և նմանք նորա հերձուածոցն, որ ասէր, թէ ոմն կարդայ և ոմն լսէ. բան լի յիմարութե, ո՛վ անիրաւ: 'Ի տան քահանայապետին յարոյց զդուստրն նորա 'ի մեռելոց, ոչ աղաչեաց և ոչ յերկինս հայեցաւ, և ոչ առ Հայր կարդաց. հայեցաւ 'ի մեռեալն և ասէ, “Տալիթա ղումի, աղջիկ դու քեզ ասեմ արի կաց. և կանգնեցաւ ողջ ”. նոյնպէս և 'ի Նային քաղաքի բազում ամբոխ էր, և ոչ ոք թախանձեաց զնա, և ոչ առ Հայր կարդաց. ձեռն միայն ձգեաց 'ի դագաղն, և մեռեալն կանգնեցաւ, նոյնպէս և յայլ նշանսն: Ուր անձամբ առնէր. զԱծային զօրութիւն ցուցանէր. ուր առ Հայր

1 Այլ օրին. բնութեանս:
2 Յայլ օրին. անանցական:
3 Յօրինակին. տեսանի:

տղաչէր , զսիրելութն ցուցանէր . քանզի երանելի բնութն սրբոյ Երրորդութեն բնութեն , անսահմանելի միապէս յերիս անձինսն , 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին Սբ : Իսկ յատկութենն յիւրաքանչիւր յերեսս բաժանին և 'ի դէմս . քանզի բնութն երիցն այս է : Տէր ած ամենակալ ամենախնամ , արարիչ անիմանալի , անպարագրելի , անորակ , անքանակ , անուր , աներբ , ոչ սկսեալ և ոչ դադարեալ : Իսկ առանձնաւորութիւն Հօր՝ ծնող , և պատճառք , անսկիզբն և սկիզբն , և ոչ սկսեալ յումեքէ , առաքող , ոչ ծնեալ յումեքէ և ոչ արարեալ[1] կամ յինքենէ կամ յայլմէ ումեքէ : Իսկ Որդւոյ առանձնաւորութեն , Որդի , Բան , ծնունդ , լոյս , կերպարան , իմաստութն , Ճառագայթ , պատկեր , կնիք , նկարագիր : Իսկ Հոգւոյն սրբոյ առանձնաւորութեն , բղխումն ճշմարիտ , նորոգող , մխիթարիչ , ուղիղ , բարի : 'Ի Հօրէն Որդի և Հոգին Սբ , այլ ոչ կոչին եղբարք և ոչ որդիք երկոքեանն . զոր օրինակ յԱդամայ են Սէթ և Եւայ , այլ ոչ եղբարք և ոչ որդիք երկոքեան : Վասնզի Հայր ծնող է , և Որդին ծնունդ , և Հոգին Սբ ելող է . և նստի Որդի ընդ աջմէ Հօր , և Հոգի Սբ ընդ աջմէ Որդւոյ : Վասնզի 'ի հարիւրերորդի իններորդի սաղմոսին ասէ , « Ասաց Տր ցՏր իմ , նիստ ընդ աջմէ իմմէ » : Հայր զՈրդի ասէ , և յետ սակաւուց ասէ , « Դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի , և Տր ընդ աջմէ քումմէ » : Հայր ընդ Որդւոյ վասն Հոգւոյն սրբոյ ասէ :

Եւ արդ ոչ մեծ և ոչ փոքր[2] 'ի Սբ Երրորդութեն երևի . զի զմեծ և զփոքր , զծանր և զթեթև , զշատ և զսակաւ , ժամք և ժամանակք բովանդակեն : Իսկ ուր ոչ ժամք և ոչ ժամանակք , ոչ չափ և ոչ կշիռ մերձենայ յանբաւելի բնութիւնն , անդ ոչ նկարի ոչ փոքր և ոչ մեծ : Կամեցայ զՀայր մեծ ասել որպէս զծնող և զպատճառ , այլ երկեայ նոյն ինքն 'ի Հօրէ . զի մի տկար զսկիզբն արարից և թշնամանեցից մեծարանօքն . քանզի ոչ են փառք Հօր , թէ որ յինքենէ

1 Յայլ օրին . չարարեալ :
2 Յայլ օրին . ոչ մեծութն և ոչ փոքրկութն :

են փոքրագոյն են քան զնա. քանզի այս տկարութիւն գործի[1], ոչ կարել իւր հաւասար Որդի ծնանել, կամ Հոգի բղխել. այլ վայելէր նորա հրաշափառ զօրութեան, զի որ 'ի նորա բնութենէն՝ ինքեան փառակից գոլով ճանաչին: Արդ Հայր ոչ ծնունդ և ոչ ելող, և Որդի ոչ ծնող է և ոչ ելող, և Հոգին Սուրբ ոչ ծնող է և ոչ ծնունդ, այլ միշտ զելողութիւն ունի: Ընծայ Հայր ընդ փառս Որդւոյ, և զուարճանայ Որդի ընդ պատիւ Հոգւոյն, և փառաւորէ Հոգի զՀայր և զՈրդի, զի 'ի նոցունց էութենէ առնու և նորակերտէ զարարածս, յորմէ ամենայն երև յերկինս և յերկրի, երևելիք և աներևոյթք, զգալիք և իմանալիք, մարմինք և անմարմինք: Արդ զայս դաւանութիւն ընկալան Հայք 'ի մեծէն Գրիգորէ և 'ի սրբոյն Աստակիսէ և յերանելւոյն Ներսիսէ:

„Վասն ժողովրդեանս առնեմ„: Մեկնութիւն առնէ ինքն, զի Աստուած ոչ հայի յիւր պատիւնն, որպէս 'ի մեր փրկութիւնս. զի յորժամ զինքն հաւասար Հօր առնէր, և զմեղս թողոյր, նոքա հայհոյիչ և դիւահար կոչէին. զի հաւատասցեն թէ դու առաքեցեր զիս: Ոչէ հակառակ Հօր զիս գոլ ասէք և հայհոյիչ, մի լիցի գործակից հակառակողիս. կոչեմ զքեզ 'ի գործակցութիւն հաւատացելոց 'ի հաստատութիւն, և անհաւատիցն յանդիմանութիւն: Ընդ անքաւելի մեղօք են, որ յանքաժանելի բնութիւն բաժինս արկանեն. 'ի մարդկանէ հայհոյին և յԱստուծոյ դատապարտին, և ջնջին 'ի դպրութենէ կենացն:

“Զայս իբրև ասաց Յիսուս, 'ի ձայն մեծ աղաղակեաց„: Աղաղակեաց վասն մարդկան, զամենեցուն լսելիս և տեսանելիս առ ինքն ձգելով: Հեռի եկաց 'ի գերեզմանէն կանգունս երկոտասան չմերձենալով 'ի մեռեալն: Փոխանակ ձեռինն զձայնն սաստկացոյց, կատարեաց զօրէնսն որ ասէ, “Որ մերձենայ 'ի մեռեալ, պիղծ է մինչև ցերեկոյ„: Ձայնն այն եղև փրոտումն երկնաւոր. զի թէ մի հատն բուսանի, վաղվաղակի և ապա ամենեցուն ակնկալութիւն է յարութեան: Հոտ նեխոյն դարձաւ 'ի հոտ անուշութիւն

[1] Յայլ օրին. այս փչարութեան գործ է:

առ մեռեալն, և 'ի դուրս ելեալ կենդանի ։ Ի մուտ ձայնն 'ի գերեզմանն, կալաւ զձեռանէ մեռելոյն. զի 'ի մեռելոյ զգայութիւն ոչ աղդէ հնչումն ձայնի. զի նայեսցին յա̃ծային հրամանն՝ ձայնիւն լսել որք անդ էին, և յայտնի երևեսցի 'ի նորա հրամանէն արտաքս գալ մեռելոյն ։ Ըստ սովորութեան մարդկան 'ի բացուստ կացեալ ձայնիւ գոչէ, ընտելականաւն մատակարարէ, և ձայնին զօրութեամբն 'ի ձեռաց բանսարկուին վերածէ զհոգին՝ կապելով ընդ լուծեալ մարմնոյն, և զհոտեղէն մասն 'ի հող դարձեալ, և զջուրն 'ի յաւիշտ, և հուրն 'ի հրանիւթն, և զօդն 'ի յօդն ցնդեալ. ոչ ձեռօք ստեղծագործէ կենդանի, որպէս զառաջինն, այլ սոսկ ձայնիւ անուամբ կոչէ, և սարսափմամբ արագապէս ելանէ ։ Բեթանիա տուն հնազանդութեան, վասն զի Ղազար հնազանդէր մահու վասն Ադամայ, որ անկաւ ընդ իշխանութե̃ մահու ։ Հնազանդէր մահ Յ̃ի յաղագս արարչական [1] զօրութեան, և ծառայապէս լսէր տէրունական ձայնին, և ընձեռէր զմեռեալն ա̃ծային հրամանատրութեան ։ Գայ Յ̃ս 'ի տուն հնազանդութեան, որ զանհնազանդութիւն մարդկան, ընդ հ[illegible]անդութե̃ Բանին ա̃յ միաւորէ, և հնազանդի ա̃ծա[illegible]ն մարմնովն՝ հասարակաց Հօրն՝ փոխանակ անհնազանդութեանն Ադամայ, և ըստ ա̃ծութեան առնու բարեբանութիւն ընդ Հօր 'ի հրաբուն զօրացն ։

« Ղազարէ, եկ արտաքս » ։ [2] Բազում մեռեալք դնին 'ի գերեզմանի, բայց միոյն պէտք էին կոչելոյ արտաքս. թէ առանց անուան ասացեալ էր ո՛ գիտէր 'ի մեռելոցն և գայր արտաքս [3], վասն այսորիկ յանուանէ կոչէ, « Ղազարէ, եկ արտաքս » ։ Բազում Ղազարք էին անդ, իսկ ակնարկումն կամացն Յ̃ի զմինն կոչեաց, որ Մարթայի և Մարիամու եղբայրդ ես, զոր ես սիրեմ, վասն որոյ զիս աղաչելով կոչե-

1 Յայլ օրին. արարչականութե̃ ։

2 Յայլ օրին. Գիտեմ զի 'ի միտ չէր կամէր հարցանել զիս, եթէ ուր ինչ զՂազար յանուանէ 'ի գերեզմանէն կարդաց. խնդրելի է բանդ և ոչ զանց առնելի, է ինչ որ գոյութե̃ է. և է ինչ որ ըստ զօրութե̃ ։... ըստ գոյութե̃ այս է ։ Բազում մեռեալք ։

3 Այլ օրին. ո՛ գիտէր թէ ո՛ր մեռեալ գայր արտաքս ։

ցին, առ այժմ դու միայն եկ, քև այլոց յոյս լինի[1]։ Թէ ոչ յանուանէ կոչեալ էր՝ զօրութն ձայնին Որդւոյ զամ գերեզմանս քակէր։ Ժամանակ է սերմանելոյ և ժամանակ հնձելոյ, դեռ ևս սերմանիք սերմանին, բոյսք բուսանին, պտուղք առաքանան, և մատուցանին միածնի Որդւոյն այ։ Նա և ոչ այլոյ անուամբ զմեռեալն կոչէ 'ի գերեզմանէն, որոյ գումարտակ մարգարէքն յանուն տն, և առաքեալքն յանուն Յսի Որդւոյ, այլ ինքն ազատիչխանական ձայնիւ հրամայէ եկ արտաքս։ Զի ուսցին կենդանի և զգայական գոլ հոգւոցն, և յոյժ հեռաւորք 'ի մարմնոյ հոգւոց, զմահու լուծանէ զիշխանութիւն, և զըմբռնեալն 'ի նմանէ հանդերձ հոգւով և մարմնով կոչեցեալ վերածէ կենդանի. ըստ զօրութն այնմ որ ասաց, «Հանցեն ջուրք զեռունս կենդանիս». որ ասաց և եղեն, նոյն ձայն էր առ գերեզմանին։

«Ել մեռեալն ոտիւք կապելովք և ձեռօք երիզապնդեալ, և երեսօք վարշամակապատ[2]։ Ոչ քարշեաց և ոչ գնացոյց ըստ սովորութն մարդկան, վասն զի կապեալ էր կապանօք և պատեալ պատանօք. որպէս հրեշտակն զԱմբակում մարգարէ հացիւն և Թանիւ զբոլոր կերակուր հնձողին՝ տարաւ 'ի Բաբելոն։ Արագ է բանն այ քան զհրեշտակս երկնից, ըստ արագութն առաւել հզօր, նա առեալ զվարսից զբոլոր մարմինն տանէր ընդ իւր. և Յն սաստիկ ձայնիւն ոչ 'ի կատարն մերձեցաւ, այլ յական քթթելն եած զհոգին 'ի հեռաստանէ, և միաբանեաց ընդ լուծեալ մարմնոյն, և ընդոստոյց յանդընդայլին քնոյն առանց քայլափոխելոյ. ուր կամք տեառն կամեցան, վաղվաղակի անդ գտաւ։ Կտաւեղէն կապարանն ոչ կարաց արգելուլ զտէրունական հրամանն, լուծանէր զիւր կարգն զարարչին կամն կատարելով, և մահ ծառայաբար այն հնազանդէր հրամանին։ Այսօր զառաջին մարդոյն կապանսն արձակէ յանիծից

1 Յայլ օրին. ըստ զօրութեան այս է «Հանցեն ջուրք զեռունս շնչոց կենդանեաց ըստ ազգի և ըստ նմանութեան»։ Բանն արտադրանագործեցաւ, և տառանց անմատութեան եղեն ծննդոցանք, և զնի բազմութեան ոչ կարէ արկանել 'ի համար։ Նոյն ձայն էր և առ գերեզմանին, եթէ ոչ յանուանէ։

2 Յայլ օրին. վարշամակապ։

մահուն, և առաւելութի̃ մեղացն ոչ բաւէ զտէրու-
նեան արգելուլ զհրամանն . և յինքն զյանցանսն կոր-
զէ, և որպէս զյանցաւոր, փոխանակ յանցաւորի մար-
դոյն պարտաւորի անպարտ, զպարտաւորն կացուցա-
նէ առաջի Հ̃օրն :

“ Ասէ ցնոսա Յ̃ս, լուծէք զդա և թողէք երթալ ” : Որ կապեցիքդ լուծէք, և որ պատեցէքդ՝ քակեցէք, և որ պատատեցիքդ՝ կողոպտեցէք . մի՛ գարշիք ոչ գոյ հոտ նեխոյ, մի՛ խորշիք ըստ օրինացն, չէ մեռեալ՝ այլ կենդանի է, տեսէք ձերովք նշանօքդ, ծանե-րուք ձեռօք ձեր . զպատեալ բերանդ բացէք, և դուք ընդ այլ վկայսն վասն մահու դորա ամենեքեան վկայ լերուք յարութեանդ՝ զոր տեսէքդ : Մի միգով ճանաչի բոլոր պտուղ երկրի, մասնաւոր առժամայն, և աւետիք առյապայ : Ընդէր հրամայէ նոցա լուծանել . զի անամօթք էին, և միշտ եղծանել ջանային զճշմարտութիւն, վասն որոյ զձեռան և զհոտոտելիսն կացուցանէ նոցա դատախազ և վկայ : 'Ի նախնումն 'ի բարեբարութէն լսէր ա̃ծ, վասն Ադամայ 'ի պատուիրանապահութէն լռելոյ, յերկրորդումն վասն Ղազարու Բնասիրութէ նորոգէ 'ի գերեզմանաց անշնչութէ, և 'ի մահազգեստ ծածկոյթ կտաւապատութէ արձակէ :

“ Բազումք 'ի հրէից որ եկեալ էին առ Մարիամեանսն, իբրև տեսին զոր արարն՝ հաւատացին 'ի նա ” : Ոմանք հաւատացին մեծասքանչ նշանացն, թէև յետոյ ուրացան, որք զայլ սգաւորս եկեալ էին մխիթարել, զանձինս մխիթարէին անտրտում ուրախութեամբ, և այլոց աւետիս 'ի քաղաքն տարան : Ոմանք գնացին առ փարիսեցիսն, և պատմեցին զոր արար Յ̃ս : Իսկ ոմանք որպէս 'ի դիւաց մոլեալք, գնացին առ սադուկեցիսն և ասացին, թէ հաւատացին 'ի նա բազումք, արդ աճապարեցէք առ 'ի լռեցուցանել զփորասքանչ նշանացն զօրութի : 'Ի տանն Մարիամու և Մարթայի ուտէ հացընթրիս, և յանդիման բազմի Ղազարոս 'ի գերեզմանէ յարուցեալ . ուտի ընդ իւր զերիզապինդ կտաւն հաւատարիմ վկայ . զի 'ի ձեռն կերակրոյ և ըմպելոյ և գերեզմանական կտաւոյն, ճշմարիտ և հաւատարիմ յարութեանն

հաւատասցեն Ղազարու ։ Օ՜ Մարիամու ընդունի զբարեպաշտութիւն. իւղոյն օծումն խոստովանի սպասաւորութիւն իւրոյ մահուն, և անմաքուր վարուցն լուացարան, և զհերսն մեռեալն մարմնական վարուց, զարտասուսն անմաքուր վարուցն Ընկէց, զոտսն թորօք աչօք թանալ զժամանակս կենդանութեան, և զեւթներեկաւորս, որով յառաջ խաղան ամիսք և տարիք, յորս անսուրբ գնայր վարուք գործոց ։ Տէրն իւր մաքուր ոտիւքն սրբէր զՄարիամ և զՄարթայ, շնորհազարդէ հաւատով, զչորեքօրեայ մեռեալն 'ի գերեզմանէ ընդունի կենդանի ։

Հայր գայ 'ի հաճուն, Որդի աղաչող, Հոգին՝ որ բարեխօս. յորժամ բոլոր պտուղ աշխարհիս բովանդակեցին տուանց մեր կոչելոյ, տէրն բոլոր էից հայրենի [1] սկզբնատիպ փառօքն և զօրութբ արարող Հոգւոյն, և բազմութբ հրեշտակաց ձայնիւ անձեռագործ փողոյն յերկնից յերկիր եկեալ, աթոռք անկանիցին, ատեանք ուղղեն, դպրութիք հրաշիցն բանան, ձայնք կենդանեաց հնչեն, երկինք գալարին, լուսաւորք վայրօք թօթափին, երկիր դղրդի, վէմք պատառին, գերեզմանք աւարին, մեռեալք յառնեն, յայնժամ և Ղազարոս ընդ մեզ յարուցեալ տեսանի ։ Վերինք և ներքինք միաբանին, խառնիքն որոշին, և համառօտքն սահմանին, կողմ արդարոցն վերաբերին [2] հանապազ ընդ նմա լինելով 'ի վերայ անուշ օդոց անմահիցն, կակուղ և փափուկ գարշապարօք անմահական մարդոց 'ի պարս հրեշտակաց [3] միաւորին ։ Յորս լիցի ամենեցուն մեզ հասանել, շնորհօք և մարդասիրութբ նմա մերոյ և փրկչին Յսի Քսի, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

1 Յայլ օրին. տուանց մեր կոչելոյ [illegible] փէրն արարածոց հայրենի ։
2 Յայլ օրին. Վերաբերին ։
3 Յայլ օրին. Գարշապարօք մարդոց յանմահական պարս հրեշտակաց միաւորին ։

# ՆՈՐԻՆ

## Ի ՄԵԾԻ ԱՒՈՒՐ ԳԱԼՍՏԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

ՆԱԽԱԽՆԱՄՕՂ և մշտնջենաւոր ա̃ծային գթութեամբն հասեալ ժամանեցաք յօրհնաբանութեան օրս, յորում զերկնագոչ բարեբանութի̃ն ընդ տիեզերական հաւատացեալս համախմբեալ յիշատակեմք. և զա̃ծաբանութիւն տղայոցն վերաձայնաբար ճառեմք. և զտիեզերական [1] անուամբ եկաւորութի̃ն՝ բարեբանապէս Դաւթայ խոստովանիմք զարմ: Իսկ մերակերպ բնութե̃ս ընդ արարչութե̃ [2] միաւորութե̃ երևելապէս հանդիպեցաք տեսակի. և զերկակի եկաւորութի̃ն գոչելով, զեկեալն և զգալոցն՝ արարչական [3] խոստովանիմք բացայայտութե̃. զոր և երանելի աւետարանիչ.քն ա̃ծաբանութե̃՝ և հրաշալի և ըղձալի ընձեռեցին [4] եկեղեցւոյ գիւտ: Յորոց մին ասէ:

«Իբրև մօտ եղեն 'ի Բեթփագէ և 'ի Բեթանիա՝ մերձ 'ի լեառն Ձիթենեաց, առաքէ Յս̃ երկուս յաշակերտացն իւրոց և ասէ ցնոսա. երթա՛յք 'ի գեղջ որ առաջի ձեր է, և իբրև մտանիցէք՝ գտանիցէք էշ կապեալ և յաւանակ ընդ նմին, լուծէ՛ք ածէք ինձ. և եթէ ոք ասասցէ ինչ ձեզ, ասասջի՛ք եթէ տն̃ իւրեանց պիտոյ է, և վաղվաղակի առաքեսցէ զնոսա»:

Երուսաղէմ խաղաղութի̃ թարգմանի. վասն զի անդ խաղաղանայր գրաւորական ժողովուրդն, 'ի պատուիրանազանցութենէ քաւեալք 'ի ձեռն քահանայութե̃ն և զանազան կենդանեաց արեանցն հեղման՝ և առօրեայ և շաբաթօրեայ լուացմանցն: Րայս

1 Մի օրին. զի եղական անուամբ:

2 Մի օրին. ընդ յարարչութե̃:

3 Մի օրին. հրաշափառ:

4 Մի օրին. ընդջեռեցին:

պէս և եկեղեցւոյ մօտ էր ճշմարիտ խաղաղութիւնն Յս՝ որ մերձակայ մահուամբն հանդերձեալ էր զբազում ածութեն վրդովմունս խաղաղացուցանել: Նոյն 'ի մերձենալն Յսի 'ի չարչարանս, մերձենային հեթանոսք 'ի դատապարտութենէ յազատութի որդեգրութեանն [1]: Որք մօտ եղեն հեթանոսք յերկնային խաղաղութին՝ յաղագս յերկնուստ իջելոյն և մարմնակից մարդկեղէն բնութիւնս եղելոյն. և մօտ էր Յս խաղաղութին եկեղեցւոյ՝ յաղագս մարգարէիցն նախագուշակութեան և տէրունական մահուանն, որ զմահու տիեզերաց բառնայր զիշխանութին, և յարատեւակ ածային կենդանութեամբն՝ [2] զանլուծանելի կեանս հասարակաց ընդձեռէր. վասն զի խաղաղանայր մարդկային բնութիւն յաղագս մարմնոյն՝ որ ընդ ածութեանն խաղաղացաւ [3] անանջատապէս:

"Եկին 'ի Բեթփագէ և 'ի Բեթանիա": Բեթփագէ՝ Թարգմանի տուն ծնօտի, և Բեթանիա՝ տուն սգոյ և տուն հնազանդութե. վասն այնորիկ տուն ծնօտի, զի ծնօտ բանաւոր բնութե է սպասաւոր 'ի ձեռն շարժման, պատուիրանին պաշտօնեայ: Ծնօտ առաջին մարդոյն՝ լուծանէր զինքն 'ի բանական [4] սպասաւորութենէն՝ պատուիրանազանցութեն աղագաւ, և բոլոր մարմնեղէն տաճար թափուր 'ի բնակողէն մնայր. վասն որոյ լինի մարմնեղէն տուն Յս, և երրեակ միութեն յաւիտենական կայարան: Նոյն ծնօտ՝ յաղագս մարդկեղէն [5] ծնօտի զարարչեղէն վարդապետել զաստուածաբանութին: Իսկ Բեթանիա՝ որ է տուն սգոյ. վասն զի տուն ուրախութե էր առաջին մարդն յաղագս 'ի դէմս զտէրունեան [6] փչումն ընդունելոյ. որ պատուիրանազանցութեն աղագաւ՝ վերադարձաւ առ փշոցն, և անփառունակ և սգաւոր լինէր նախաստեղծին անձն: Նոյն տուն հնազանդութեան, զի անհնազանդեցելոյ մարմնեղէն և բանա-

1 Մի օրին. Երջանկային յանդափառաւորելի աղօթմամբ որդեգրութեան:

2 Մի օրին. և յանդրանակեան ածային կենդանութե զանլուծանելի զկեանս.

3 Մի օրին. Թաւալեցաւ:

4 Մի օրին. 'ի մարմնական:

5 Մի օրին. մարմնեղէն ... արարչեղէն բերանն վարդապետեալ զածաբանութիւն:

6 Մի օրին. զտէրունոյն:

կանի տանն արարչադիր աւանդիցն, լինի տուն՝ նորին ստեղծչին, և հնազանդի Հօր բովանդակապէս, և պարաբառնայ զանհնազանդութիւն առաջին մարդոյն :

“ Յայնժամ առաքէ Յիսուս երկուս յաշակերտացն իւրոց ”: Զօրինաւորական և զհոգևորական աւանդիցն ասէ. յորոց մին առաքելական և առաջին շնորհի [1], Թէպէտ և ժամանակաւ զկնի. իսկ երկրորդն մարգարէութիւն կարգեցաւ 'ի Հոգւոյն սրբոյ, զի երկոցունց վկայութեամբք հաւատարմացուսցէ զտնօրէնութիւնն : Այլ դարձեալ՝ եթէ միովն գայթակղեսցի ոք, միւսովն կանգնեսցի. և 'ի հաւատոց ցրուեցեալքն զայս երկուս աւանդութիւնս միով վերարկեսցեն, և աստուածային ջեռնուն սիրովն : Իսկ յաշակերտացն երկուս, վասն զի բազում ունելով Յիսուսի զաշակերտսն, զվերջին ութաշտիճանեայ երկնագումար զպարսն՝ զոր մեծն Պաւղոս շարադասէ. հրեշտակք, հրեշտակապետք, աթոռք, տէրութիւնք, պետութիւնք, իշխանութիւնք, սերովբէք, քերովբէք : Իսկ մերասեռիցս, դատողութիւնք թագաւորութիւնք և այլ աստուածաշնորհ պարգևք. յորոց որպէս 'ի բազում աշակերտաց զերկուսն առաքելով, զմարգարէութիւն որ յառաջագոյն զմարմնաւորութիւն գուշակէր ճշմարտապէս, և զառաքելութիւն՝ զոր հազարապետ խոքեան խորհրդոցն կացուցանելով, ասէ “ Երթայք 'ի գեւղ որ առաջի ձեր է ”: Զի տիեզերական բազմութիւն մարդկան՝ աստուածեղէն և ամենատես ականն է որպէս գեւղ, յոր առաքէ զմարգարէականն յառաջ քան զիւր եկաւորութիւնն, իսկ զառաքելականն՝ 'ի մերումնակերպախառնութեան [2]: Ասէ, “ Գտանէք էշ կապեալ ”: Էշ սա յանմաքուր կենդանեաց՝ որ է հրէից ժողովարանն. և էր մաքուր կենդանի և երկնային հօտապետին հօտ՝ 'ի տարրաւորութենէ [3] եղեալ անսուրբ կենդանի. իսկ կապեալն, ընդ բազմաստուածութեանն իշխանութեամբ. յորմէ լուծանէ առաքելական կոչմամբն :

Այլ եւս կապեալ, զի ընդ օրինացն պահպանու-

1 Մի օրին. շնորհիւն :
2 Մի օր. Իսկ զառաքելականն 'ի մե- [illegible] առաքելով, ասէ :
3 Մի օրին. 'ի տարապաշտութենէ :

թեամբ կապեալ էին հրեայքն, 'ի կապարանէ արձակէ զնոսա յիւր աւետարանական վարդապետութիւն՝ մարգարէական և առաքելական կոչմամբն։ Իսկ յաւանակ առ նմին, զհեթանոսաց ժողովարանն ասէ. զորս յանսուրբ վարուց և 'ի կռապաշտութէ լուծանէ յիւր երկնաբեր շնորհն. զոր ոչ ընդ օրինացն կապով էր արկեալ, այլ արձակ և համարձակ թողլով զհաճոյս իւրաքանչիւր կատարել. և վասն այնորիկ նմանեցուցանեմք կատարելագոյն կենդանւոյն՝ զհրեայսն, և յաւանակին՝ զհեթանոսս։ Վասն զի որք կանխագոյն զա̃ծեղէն բանն ընկալան՝ կատարելագոյնք են և առաջինք. և ըստ տարացուցի՝ “ Որդի իմ անդրանիկ Իսրայէլ՝ ասէր, ցՓարաւոն՝ և մեծն Պաւղոս։ Փառք և պատիւ և խաղաղութ̃ի գործողացն զբարիս՝ նախ հրէի և ապա հեթանոսի „։

„ Ածին, ասէ, զկենդանին և արկին զնոքօք ձորձս, և նստաւ 'ի վերայ նոցա „։ Ածել՝ զառաքելական և զմարգարէական կոչմանէն ասէ, որովք խնդրեալ մերձեցոյց առ ինքն. իսկ ձորձոցն վերարկուն, զաւազանին մաքուր և զանապական զգեստն՝ զոր շնորհէ մեզ Հոգին. զի զմարմինն անապական զգեստաւ սրբէ մաքրութ̃բ[1], և զոգին լուսաւորէ փչմամբ, և լնու զմիտսն առնելով տեղի ինքեան հանգստեան միածնի Որդւոյն։ Դարձեալ նստաւ 'ի վերայ նոցա. քանզի յերկաքանչիւրոց[2] կոչեցեալք 'ի հրէից և 'ի հեթանոսաց 'ի մի եկեղեցի և յորդեգրութիւն երկնային Հօրն, 'ի հասարակաց մաքրագոյն վարս առաքինութ̃ե նստի և հանգչի տիրապէս և ա̃ծաբար։

Իսկ նստելն 'ի վերայ անմաքուր կենդանեացն, վ̃ա զի ոչ երկու ժողովարանք հրէից և հեթանոսաց մաքրութ̃բ առ ա̃ծ մերձեցան. այլ մարմնացեալ Բանն վարդապետութ̃բն կոչեաց, և չարչարանօքն եբոյծ զյանցանսն, և մահուամբն 'ի մահուանէ ազատեալ՝ արար իւր աթոռ, և նստաւ 'ի վերայ հասարակաց խորհրդոց, և դատի և դաստիարակէ զբոլորից հոգի և զմարմին, և շնորհէ[3] իւրաքանչիւր բարւոք զխոտրե-

1 Մի օրին. անապական զգենու մաքրութ̃բ և հոգին առաջին.

2 Մի օրին. յերկաքանչիւրեանց։

3 Մի օրին. փրկէ։

լխմն և զընդունականսմն : Իսկ ձորձոցն վերարկեցելոց 'ի նոյն կենդանատեսակացն՝ յորոց վերայ նստի նստեալն ճշմարտապէս յերկինս երկնից 'ի քրովբէական կառսն : Զորձս իմանալի է զառաքելական վարդապետութիւնն . զի անդ 'ի սրովբէական սրբութեն նստի և հանգչի , իսկ աստ յառաքելական քարոզութեանն նստի և բազումս հրաշակերտէ [1] , և զերասանակ վարդապետութեն ուղղէ յերկինս երկնից տիրապէս : Արդ հասարակաբար նստաւ միածինն յերկինս 'ի վերայ քերովբէից , և յերկրի 'ի նուս [2] կենդանեաց . անդ արարչաբար և համապատուապէս , աստ մերունակն ծածկեալ կերպիւ և անանջատելի 'ի Հօրէ , բոլոր Երրորդութեն , գոլով և անորիշ յերկրէ : Բայց կատարելապէս նստեալն 'ի վերայ կենդանեաց առաւելութի սիրոյ է արարչին առ իւր արարածս , յորմէ հարստահարեալ տէրունեան կամքն՝ անխտրաբար կոչէ զա՜մ մարդկեղէն [3] բնութիս յինքեան անճառելի շնորհսն , և հանգչի և բերկրի 'ի վերածնեալսն աւազանաւն եղբայրապէս և հարազատաբար՝ յաղագս եղբայրացելոյ ընդ մեզ մարդկեղէն բնութեանն : Իսկ ձիթաստանեայց լեառն՝ ա՜ծեղէն բնութեն մարմնաւոր բնութե նուաստանալն . վասն զի ձէթ գիշերոյ է լուծիչ . այսպէս Բանն 'ի Հօրէ 'ի դուրս եկեալ և ընդ մարմնոյ միաւորելով արեգակնապէս փայլեալ ելոյծ զբոլոր մարդկային բնութեանս զոգւոցն գիշեր . Եւ յեկաւորեն Երուսաղէմ՝ հաւանեցն է 'ի կամաւոր չարչարանսն . զի Երուսաղէմ Թարգմանի խաղաղութի . և խաղաղութի՝ որ 'ի վեր է քան զա՜մ մարգարէական և առաքելական շնորհս , որ պարգևեցաւ մեզ ա՜ծեղէն մահուամբն : Զի իջանելն Երուսաղէմ՝ վերատանել էր զմերասեռ տոհմն յածակերտ գաւառն . վասն զի դիմելն Երուսաղէմ , դիմել էր 'ի մահ . և մահուամբն 'ի մահուանէ արձակէր զմահու արժանաւոր անձինս [4] :

1 Մի օրին . և բազում հրաշս կատարէ :

2 Մի օրին . 'ի նուաստ 'ի կենդանիս :

3 Մի օրին . պանծացեալ բնութիւս :

4 Մի օրին . և մահն ազատ 'ի մահուանէ արժանէր զմահու ըմբռնեալն :

Իսկ զի՞նչ բազմութիւն ժողովրդեանն առաջոյ և զկնի, և ձորձոցն սփռելն 'ի ճանապարհին ։ Ժողովրդոցն առաջինք՝ հայրապետութիւնք, մարգարէութիւնք, քահանայութիւնք, դատողութիւնք, թագաւորութիւնք, ծերոցն ատեանք, դպրացն և փարիսեցւոցն կաճառք, և Յովհաննու կարապետական կոչումն. նոքա ժողովուրդք՝ որք յառաջ էին քան զՔրիստոսի մարմնանալն ։ Իսկ երանելի Առաքեալքն և մեծ վկայքն և վարդապետքն, և բովանդակ աւազանէն նորածնունդքն [1] որ զկնի տնօրէնութեան կոչեցան, ժողովուրդ որ զկնի ։ Իսկ ձորձոցն 'ի ճանապարհին տարածանելն՝ հնազանդելն է աւետարանական վարդապետութեան բոլոր տիեզերաց՝ որք սփռեցին սիրով զնոսա, և զճանապարհս յինքեանս կազմեցին քառահոլով չորից աւետարանչացն՝ որովք 'ի վերայ գնայ և հետեւի, և ողջախոհացն բերկրի ախորժակօք մերակերպունակ Էմմանուէլն ։ Քանզի յօրինակացն մաքուր անձինք՝ դիտաւորելով զնորա մարմնատիպ եկաւորութիւն, ոչ սոսկ բանիւ խոստովանեցին, այլ նիւթեղէն տեսակ զգիրն՝ որպէս ձորձս, և 'ի ժամանակին՝ որպէս ճանապարհ, տարածեցին պատմագրապէս. վասն զի 'ի հողեղէն բնութեան կենդանակերպեցաք, և 'ի հողեղինէս զհոգեղէն զգեցաք պատկեր ։

Բայց զոստս 'ի ծառոց տարածանելն. զի 'ի սկզբանն և 'ի լինելութեան՝ Բանն 'ի Հօրէ ճառեալ եղեցի լոյս, և ժողովեսցին ջուրք, և բղխեսցէ երկիր ըզ-

1 Մի օրինակն փոխանակ այսր հատուածի՝ սասի մինչև ցկրկին ատեանսն, ունի այսպէս ։ Որք զհետ անցանէին մարդոյն զառաջարքն հանդերձ տապօղք առաջի սփռեն, զի զանապարհն և զանձինս զառաջին ըզգեստն ընկեցին ։ Զի՞նչ ժողովրդոյն բազմութիւն առաջի և զկնի ։ Ժողովրդոյն բազմութիւն 'ի Քրիստոս հաւատացելոց ասէ. իսկ առաջի և զկնի՝ որ 'ի ժամանակին օրէնսդրագործութեան ընդ որս տնօրինէր զարմագործութեամբ մարմնացեալն և առանց մեղաց. իսկ զկնի Առաքելոցն քարոզեալ հրաշիւք փրկչական և աւազանին նորածին մարդկան ։ Բայց որ 'ի զանազան ժամանակս զմի քաղաքացւոյն խոստովանին մարմնեղէն զգեցեալ բնութիւն, բոլորովին համագոյ Հօր և անանջատելի յերկնից իջեալ՝ միայ անձնաւորն 'ի ծոց Հօր, և 'ի վերայ քերովբէիցն բովանդակ Աստուածութեամբ. և նախէակն մարմնաւորութեամբ և 'ի գիրկս Կուսին ծծայեալ մարմնովն և զարթեալ իսրան գնա մարմնացեալ Աստուածութեամբ. և աղաղակէին ասելով " Օրհնեալ որ գայ յանուն Տն,,. զմարմնեղէն գալուստն որ նախատարոց մարգարէական պետակիմք յառաջ ճչգրտեալ մատաղ հարթն գաղակէին բազմապէսակ յերեւ ։

ծաղիկս և զծառս, և բովանդակ գոյանայր արագագոյն քան զակն քթթել, և բովանդակ ծաղկաւէտանայր երկիր՝ 'ի գագաթունս բերելով պսակ թագազարդեալք: 'Ի պատուիրանազանցութէ նախահօրն՝ նոյն Բանն յանմեկնելի ծոցոյ Հօր՝ հրամայէր ծաղկազարդ երկրի գոլ փշաբեր. զորոյ զղջացեալ Հօր, զԲանն յիւրածին ծոցոյ՝ անանջատելի յինքենէ առաքէ: Վասն զի ոչ բաւէ բնութիւս՝ զբնութեն տանել տեսութի, առնու զմեր կերպարանս, և կերպարանակից զմեր բնութիւս լինելով առնէ ըստ շնորհի. և մերունակ բնութեամբ ընդ մահու պատերազմեալ մահու չափ, զմահու կամեցաւ բառնալ զփշխանութիւն. և զերկիր և զտարերս յառաջին նորոգէր հրաշափառութ: Եւ զայս ոչ վայրապար, այլ 'ի ժամանակին՝ յորում պատուհասակիրն եղանիւր մարդն, և երկրի բարեվայելչութիւն՝ որ մարդոյն աղագաւ էր կազմեալ. 'ի նոյն ժամանակի 'ի գարնանային հասարակութեն՝ յորում լինելութե երկրիս գոլ սկիզբն. 'ի նոյն հասարակաւորութեն գայ և վերադարձուցանէ զերկիր յառաջին կարգս: Վասն որոյ ծերք և տղայք ոստս 'ի ծառոց 'ի Ճանապարհին տարածանելով տերևազգեստ և ծաղկազարդս. որովք նշանակէին զանէծս երկրի հանդերձ փշաբերութեամբն պարաբառնալ, և յառաջին ծաղկերտ բուրաստանատեսակն յեղանակել:

Պարձեալ ոստս 'ի ծառոց տարածանել. վասն զի 'ի ձեռն առաջին տնկոյն յոստոցն ընկալաք զպատուիրանազանցութեանն պտուղ, յորոյ սակս զնոյն ոստս տարածանել 'ի Ճանապարհի, զի գնալով 'ի վերայ ոտիցն Յի, ընդ ոտիւք մեզ զհակառակամարտին արկցէ զօրութի: Իսկ ըստ իմանալի տեսակի. ծառ է հրեշտակական զօրութիւքն՝ որք 'ի բանական և 'ի հոգևոր բնութիւնս զատեալ ոռոշեցան բարձրակայ վայրիւք, յորս ևս վերածայրեալք սերովբէիցն բարձրութիւք, որ 'ի ներքոյ տէրունական ոտիցն սոսկացեալ՝ քառունակ թևօք պարփակեալ զինքն՝ անկարողացեալ զտեսութիւն բերել 'ի կիզմանէ, սարսափելով զյաղթական և զպանծալի սրբասացութեանն անհատաբար գոչելով: Յայսպիսի բարձրագոյն ոստոց

հատեալ՝ 'ի բարբառոց բարեբանութե մանկանցն որ տարածանէին գոչմամբ զեկաւորութե զհետեւմունս և զհանդերձեալ գալուստն, որ աղաղակէին ասելով "Օրհնեալ որ գաս յանուն Տն„ **։

Ընդ որս և համարձակախօսն Զաքարիաս ճշգրըտաբանէ զԿուսին զյղութիւն յանզուգակցութէ, և զծնեալ մանուկն՝ ընդ մեզ Ած. և զհանդերձեալ աւուրս յԵրուսաղէմ եկաւորեալ և 'ի վերայ նստեալ կենդանեաց ոչ առակախօսէր՝ այլ յայտնապէս ասելով. "Ուրախացի՛ր, դուստր Սիոնի, վասն զի քո Թագաւոր գայ առ քեզ, Ած մարմնակերպ 'ի վերայ նստեալ անմաքուր կենդանեաց„ ։ [1] Ո՞ր սակս Սիոն և ոչ մեծն Երուսաղէմ ասի ուրախանալ ։ Սիոն էր ամրոց, յորժամ Դաւիթ թագաւորեաց 'ի Հրէաստանի՝ եկեալ յԵրուսաղէմ և արգելեալ յԵբուսացւոցն՝ զի մի՛ թագաւորանիստ լիցի Երուսաղէմ. Իսկ Դաւիթ պատերազմեալ առնու զամրոցն տեղւոյն զկոչեցեալն Սիոն. և շինեալ զամրոցն ինքեան տուն և տեղի յարքունական, անդ վերատին նորոգէ զտեղանն 'ի Սելովայ զկործանեալն. անդ և զտապանակն դարձուցեալ՝ 'ի գերութենէն հանէր, բովանդակ զքահանայական կարգն հանդերձ սպանդիւքն նորոգէր ։ Նաև վասն զի անձառելի ծոցոյ Հօր անմեկնելի Բանն մերունակ տպաւորեալ կերպիւ՝ 'ի Կուսէ անապական և 'ի զաւակէ Դաւթի մաքուր բերանով խոստովանեալ՝ և զհայրենի լուծեալ թագաւորութի Դաւթի ստուգագրապէս նորոգէ, և արարող խաղաղութե Նա՝ ինքեամբ բերանով զխաղաղութի տիեզերական փրկութե. զի 'ի Պասեքին ոչ այլ ուրեք՝ այլ 'ի Սիոն հրամայէ առնել զԶատիկն ։ Ընդ և զգառնն ուտէ, անդ պարփակեալ դրօքն էր՝ և 'ի յաշակերտացն 'ի մեղուէ ճաշակէ, և զնոր արքայութի որ է իւր յարութի՝ հաւատարմացուցանէր ընդ նոսին ճաշակմամբն. վասն այսր Ած հրամայէ ուրախանալ դստեր Սիոնի ։ Իսկ դուստր Սիոնի, վասն զի քաղաք Դաւթի Սիոն կոչեցաւ, և քաղաք զծննդականի ունի զանուն. որպէս արհեստական բնութե

1 'ի միում օրինակի, աստի մինչև ցերկին աստեղն պակասի ։

Յովսէփ Դաւթի է զարմ, և Յս որդի Դաւթի խոստովանեցաւ, այսպէս և Սիոն: Բնակիչք ժամանակիս դուստր են առաջին բնակչացն:

Բայց ըստ իմանալի տեսութե, դուստր Սիոնի անուանի դուստր խաղաղութե, զի զճշմարիտ խաղաղութիւն բերեալ յերկնուստ տէրն՝ տայ սրբոց Առաքելոցն ասելով. «Զխաղաղութի զիմ տամ ձեզ», և զանճառելի զխաղաղութի. զոր ընկալեալ աշակերտացն՝ առնուն 'ի Սիոնէ զփչումն, զոր առաջին մարդն արտաքս անմաքրութբ տարաւ: 'Ի Սիոն վերնատանն փակելովք դըռովք երևեալ փչէ յԱռաքեալսն ասելով. «Ընկալարուք զմաքուր Հոգին»: Այսպէս և 'ի Պենտեկոստէին 'ի Սիոն և 'ի վերնատանն 'ի շնչմանէ 'ի շառաչմանէ տրոհեալ լեզուք, Առաքելոցն՝ զկոչումն ազգաց 'ի ձեռն նոցա նշանակէր լեզուօքն հրեղինօք: Եւ ճշմարտապէս 'ի Սիոնէ ընկալան զխաղաղութի՝ և 'ի բազմաստուած վրդովմանցն զտիեզերս խաղաղացուցին, և ընդ արարածս զարարիչն Հայր հաշտեցուցին, զհիմնաւորութի Եկեղեցւոյ 'ի նոյն Սիոն սկզբնաւորեցին: Յաղագս այսպիսի նորագործ հրաշից հրամայէ մարգարէն՝ նախ քան զամենեցուն Սիոնի խնդալ:

Իսկ դուստր Սիոնի՝ ծնունդ և պտուղ այսպիսի շնորհաց, որ է Եկեղեցի. վասն զի առաքելական վարդապետութի 'ի Սիոն առ սկիզբն. սա է մայր Սիոն և անդ մարդ ծնաւ. մարդ աւազանաւն յորդեգրութի երկնաւոր Հօրն. վասն այսորիկ մայր Սիոն և դուստր Սիոնի յառաջատեսիլ. 'ի Սիոնէ առաքելոցն զհեթանոսաց կոչումն և յառաջին սքանչելեացն որ 'ի Սիոնէ երկրորդ փոխեցաւ 'ի հեթանոսս յեկեղեցի**:

Արդ ուրախանալ դստեր Սիոնի հրամայէ՝ որ է տիեզերական Եկեղեցւոյ կոչումն. իսկ Թագաւորն Յս, որ Թագաւորէ ըստ արարչական զօրութեն երկնի և երկրի, Թագաւոր է ըստ մարմնոյ զոր ընդ արարչական բնութեն միացոյց. և գալ՝ զդիմեցումն չարչարմանացն ասէ. և յանմաքուր նստեալ կենդանիս՝ զհրէից և զհեթանոսաց զանմաքրութի սրբէ իւրով մահուամբ: Իսկ 'ի վերայ նստեալ տաճարացուցանէ սրբութբ զհաւատացելոցն միտս ինքեան՝ անորոշելի

յԵրրորդութենէն ։ Ասէ ․ « Կապեսցէ զորթոյ զէշ իւր » ։ Որթ՝ զԻնքն խոստովանի ասելով, « Ես եմ որթն ճշմարիտ » ․ և էշ՝ զՀրէից զհաւատացեալսն , զորս կապեաց ընդ Ինքեան [1] ․ զորպիսի կապ ոչ կարասցեն փորձութիւնք աշխարհիս լուծանել ։

« Եւ զորթոյն գնդակէ զյաւանակ իւր » ։ Յաւանակ՝ զմեզ Եկեղեցի ասէ , և գնդակ որթոյ՝ զերանելի Առաքեալսն ․ զի որթն Յս կապեաց ընդ իւր հրաշագործութբ զՀրէից անմաքրութիւն , հպելով առ ամ ախտաժէտս բժշկապէս ․ իսկ գնդակ որթոյ՝ երկոտասան Առաքեալքն , որք որպէս գնդակ յորթոյ , ծնան 'ի նորա վարդապետութենէն ․ վասն զի զՀեթանոսաց կոչումն յաւիտենական կապեաց ընդ առաքելական վարդապետութեան [2] ։ Եւ բազմութիւն ժողովրդոցն ասէին ․ « Օրհնեալ որ գաս յանուն Տն » ։
[3] Մովսէս և մարգարէքն զայսպիսի եկաւորութիւն Փրկչին կանխաւ գուշակեցին ․ և քահանայութիւն միշտ ընթեռնոյր և ձնային ածեղէն գալստեան ․ վասն զի զտաղայմն ածաբանն՝ Տր Հոգւոյն արար , և որպէս մատամբ ցուցանելով , եթէ որ գալոցն էր՝ դա է , և որում ակնունիք միւսանգամ , զի եկեալ կոչեսցէ յանապական և յանճառելի Երրորդութեն շնորհս ։ Եւ գայ դատել զտիեզերս և ըստ գործոց հատուցանել վարձս ։

Իսկ քահանայապետքն և դպիրք 'ի նախանձուէն նսեմացեալք՝ ոչ զճշմարտութիւնն անսուտ արեգականն [4] կարողացան տեսանել ․ զի մտօք և բբօք առհասարակ եղեն անտեսք , այլև բարբառոյ տղայոցն համբացեալք՝ մատուցեալ առ Յս ասէին ․ « Սաստեա ժողովրդեանդ զի լռեսցեն ․ և նա ասէ ․ զի եթէ դոքա լռեսցեն , քարինքդ աղաղակեսցեն » ։ Քարինք զանպտղութեն ունին զմտութն և զամլութն ․ այսպէս և հեթանոսք , որպէս և զնոյն տեսակ քարացեալ սրտիւք՝ անպտուղ և անբոյսք էին յածային

1 Մի օրին․ յինքեան , որպիսի կապ ոչ կարասցին կենցաղոյս փորձութիւնքն լուծանել ։

2 Մի օրին․ ընդ առաքելոց վարդապետութեան իւրոյ ։

3 Այս հատուած մինչև ցկրկին ասացեալն 'ի միում օրինակի պակասի ։

4 Մի օրին․ ոչ զճշմարտութիւն և զանսուտ արեգակն ։

բարեպաշտութենէն . որք համարձակեալ էին 'ի ձեռն առաքելական քարոզութեանն խոստովանել զԱստուածութիւն նորա :

Պարձեալ քարինքդ աղաղակեսցեն . զնոյն ինքն զքահանայիցն ասէր՝ որք դեռևս ոչ էին ընդ Առաքելոցն անկեալ վարդապետութեամբ, և անպտուղք 'ի հաւատս, որք համարձակեալ էին զաշակերտացն վերաձայնել բարեբանութիւն . յորոց Նիկոդիմոս և Կայիափա և Պաւղոս և ուխտանքն սանեփանեանք, և հազարաց բազմութիւնքն, որք զկնի յարութեանն Առաքելոցն դարձան քարոզութեամբ : Նոյն և քարինքդ աղաղակեսցեն : Քարինք 'ի շինուածս տրամադրին 'ի հիմունս, և զբոլոր շինուածն 'ի վերայ ինքեանց բերեն անշարժապէս . այսպէս և երանելի Առաքեալքն տրամադրեցան 'ի հիմունս Եկեղեցւոյ կարծր և անշարժելի իւրեանց հաւատովն . յորոց վերայ շարադրեցաւ Եկեղեցւոյ պարակարգութիւն[1] . ըստ որում Պետրոս վէմ դաւանեցաւ յաստուածային բերանոյն՝ խոստովանելով զՔրիստոս 'ի Հօրէ իջեալ անորոշապէս : Նոյնպէս և որք 'ի գրաւորականին՝ քարինս կոչէ զմարգարէութիւնս և զքահանայութիւնս . վասն զի ասէ "Քարինք սուրբք հոլովին յերկրի նորա" : Հոլովել՝ զկոչումն աստուածեղէն հրամանին ասէ, 'ի քահանայութենէ 'ի դատաւորութիւն 'ի թագաւորութիւն . զի երանելի Առաքելոցն քարոզութիւն և կոչման[2] ձայնք, ընդ ամենայն երկիր հասին բարբառով աւետարանութեան, և 'ի տիեզերս ժամանեցին նոցուն բանքն 'ի փրկութիւն : Որդ եթէ մանկտիդ լռեսցեն, Պետրոս վէմն՝ համարձակ Առաքելովքն աղաղակեսցէ զՈրդւոյ զեկաւորութիւնն մարմնապէս և աստուածաբար անանջատելի 'ի Հօրէ, բովանդակ 'ի յերկրի և բոլորովին յերկինս . ընդ Հօր ընդ զքերովբէական աթոռն՝ և 'ի վերայ անմաքուր կենդանեաց նստելով մտանէ յԵրուսաղէմ . անդ 'ի սերովբէից զմաքուր և զարարչականն ընդունի աստուածայնելոյ գովասանութիւն, և աստ 'ի տղայոց՝ 'ի մտանելն աստուածապէս և մերունակ կերպիւ խնամակալութեամբ[3]

1 Մի օրին . տասնեցաւ Եկեղեցւոյ շարադրութիւն :

2 Մի օրին . Նոցունց ձայնք :

3 Մի օրին . Վկայութիւն :

ընդունի . անդ իմանալի տեսութիւն, և բոլոր Աստուածութիւն սերովբէիցն երևի . աստ զգալի բնութեամբ շօշափի . և է ամենայն յամենայնի և ընու զամենայն պարս ոլորտապէս . որոյ երկին թզաւ և երկիր քլաւ ** :

[1] Այլ ես քարինքդ աղաղակեսցեն . վասն զի միշտ 'ի հայրապետութիւն պանծային Աբրահամու գործոցն . որոց 'ի սակս մեր յանդիմանելով ասէր . "Ո՛չ է սոսկ պարծիք, Աբրահամու աննմանողք, նորուն գործոց նախահապետին . ասեմ ձեզ, ասէ, կարող է Աստուած 'ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս Աբրահամու" : Որպէս յանծնունդ յորովայնէ ծնաւ Իսահակ՝ յորմէ դուք, այսպէս և յանհաւատ և յանծնունդ ժողովրդենէ հեթանոսաց՝ կարողացի իմ տէրութիւն մանկունս հաւատոյ ծնանել Աբրահամու, որք զիմս աղաղակեսցեն եկաւորութիւն մարմնապէս և աստուածաբար, "Օրհնեալ որ գալոց յանուն տեառն" :

Իսկ մեր զաստուածավայելուչ տօնեալ աւուրս կնքեսցուք զբանս . ընդ տղայոցն աստուածաբանեսցուք գոչելով զսարսափելի զարարչական բարեբանութիւնս [2] . և ընդ աշակերտացն սպասաւորեսցուք տէրունական եկաւորութեանն . ընդ ժողովրդեանն բազմութեան զգեստս և զոստս հետևեցելոցն յերկրէ արարչականին սփռեսցուք ոտիցն . զի ամենայնիւ և ընդ ամենեսեան հաղորդեսցուք աստուածապէս և մարմնաւոր անբաժանելի առանձնաւորութեանն Բանի, և անորիշ և համապատիւ սրբոյ Երրորդութեան . որում գովութիւն և մեծվայելչութիւն և փառաւորութիւն 'ի մերոցս խոստովանեսցուք բերանովք [3] . զանորոշելի և զանմեկնելի զմի Աստուածութիւն և զերիս անձնաւորութիւն բաժանեալ առանձնաւորութեամբ և միաւորեալ Աստուածութեամբ . զի [4] նորա է պատիւ փառք և զօրութիւն յաւիտեանս, ամէն :

1 Այսպէս յաւելու մի օրինակն և զայս բանս : Որդիքն փեղի յոր ծոծոխեալն որդի անշարժելով 'ի միասին . և զերանեան մերոյ ծերունեանս աղագաւ, զերգն խոստովանին ձայնաւոր ածէին . և զնուաստութիւն ասէր եկաւորութեան 'ի վերուստ խոստովանեալն հոգևկրացն ածէին :

2 Մի օրին . ծառաբանութիւն :

3 Մի օրին . Երբանօքս զանճառելի և զանորոշելի աստուածութիւն, հանդերձ գովասանական երգով օրհնեսցուք բարեբանեսցուք բարեհամբաւեսցուք :

4 Մի օրին . Որում [illegible] պատիւ և գոհութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, յաւիտեանս յաւիտենից, ամէն :

# ՆՈՐԻՆ

## ՅԱՂԱԳՍ ԵԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՓՐԿՉԻՆ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

ԶԲԱԶՈՒՄՍ թողլով Էմմանուէլի զսքանչելագործութիւնս, յերկնեան և 'ի սերկնեանս փութացուք բացայայտութիւն հրաշից. և զերկաքանչիւրոցն զարմանագործութիւն 'ի պատմագով ասպարիսին համդիսայայտել զքաջայայտ առաւելութիւն. քանզի նախագործեալ ա̃ծեղէն և նախագործ հրաշս, երեկ ըղխոստովանեալ եկաւորութիւն 'ի Բեթանիա կատարէ, և զյառաջաձայնեալ զՂազարու յարութիւնն գայ 'ի լնուլ. իսկ այսօր մտանէ յԵրուսաղէմ, նըստեալ 'ի վերայ յաւանակի՝ զմարգարէական նախագուշակումն հաւատարմացուցանելով: Երեկ զՄարիամ և զՄարթա շնորհազարդէ[1] հաւատով. զընկերօրեայ մեռեալն 'ի գերեզմանէն ընդունի կենդանի, այսօր զաշակերտսն և զտղայսն սրբէ ա̃ծաբար[2] և զեկսն 'ի փրկութիւն բոլորից մանկանցն փայլէ բարեբանութիւն: Երեկ զմահու լուծանէ զիշխանութիւն և զըմբռնեալն 'ի նմանէն հանդերձ շնչով և մարմնով կորզեալ վերածէ 'ի կենդանութիւն. այսօր զհեթանոսս և զհրեայս լուծանէ 'ի հակառակամարտին ծառայութենէ՝ և նստի 'ի վերայ վարդապետութեան, և ուղղէ 'ի խաղաղութիւն զերասանակն նշանակաւ՝ երկուց կենդանեաց նստելով 'ի վերայ մտանէ յԵրուսաղէմ: Երէկ զՂազարոս երիզապնդեալ ոտիւք ձայնէ արտաքս, և կտաւեղէն կապարանին անկապացեալ արգելուլ զտէրունեան հրամանին, լուծանէր զիւր կարգն՝ ողջ զինքեան արարչին պահելով զհրամանն, և մահու ծառայակցէր՝ արարչական հնազանդելով հրամանին. այսօր զառաջին մարդն 'ի կապարանէն ար-

1 Մի օրին. շնորհաւորաւէ:

2 Մի օրին. զա̃ծաբանս:

ձակէ յանիծից, և առաւելութի յանցանացն ոչ բաւէ զտէրունեանն արգելուլ զհրամանն. և յինքն զյանցումնն կորզէր որպէս զյանցաւոր, և փոխանակ յանցաւորի մարդոյն դատապարտի. անպարտն զպարտաւորն առաջի ինքեան կացուցանէր Հօրն:

Յանցելումն աւուրն զգայութեանցն կենդանագործէ զմեռելութի, և զվարշամակեայ պատառէ զկապն, և լուծանէ յերիզապնդէ շղթայիցն զձեռսն, և զպարչականն ծանուցանէ զօրութի. և զհողեղէն մասն 'ի հող դարձուցեալ՝ ոչ ձեռօք իբրև զառաջինն կենդանաստեղծ, այլ սոսկ ձայնելով անուանակոչութե և սարսափմամբ արագապէս զելմն կատարէ: Իսկ 'ի սերկեան աւուրս զտիեզերաց զկոչումն ընդ փարիսեցիսն և ընդ սադուկեցիսն Ճառեալ ասէր. եթէ որդայքդ լուեն՝ զօրհնաբանումն քարինքդ աղաղակեսցեն. որով նշանակէ զանպտուղ հեթանոսաց պտղաւետեալ բարեպաշտութեն զհաւատս: Յերեկւոջ աւուրն 'ի Բեթանիա՝ որ է տուն չարչարանաց և տուն հնազանդութե: Տուն չարչարանաց՝ յաղագս ննջելոյն Ղազարու բարեկամի. վասն որոյ և արտասուաթորէր՝ յաչաց արարչին՝ բոլոր մարդկեղէնս կարեկցեալ բնութե՝ բարեկամապէս և ազգակցաբար բերեալ լինի: Իսկ տուն հնազանդութե՝ վասն զի հնազանդէր Ղազարոս մահու՝ յաղագս նախահօրն ընդ մահու անկեալ իշխանութեան, և հնազանդէր մահ Յոր՝ յաղագս արարչական զօրութե. ծառայապէս լսէր տէրունեան հրամանին և ընդձեռնէր զմեռեալն ածայինն հրամանատրութեն. Իսկ այսօր գայ Յերուսաղէմ յիւր չարչարանաց տունն. վասն զի անդ հանդերձեալ էր չարչարանօք՝ 'ի չարչարանաց զմարդկայինս ազատել զբնութիս. և 'ի տուն հնազանդութեան գայ՝ որ զանհնազանդ մարդկեղէն բնութիս ընդ հնազանդի Որդին միաւորէ. և հնազանդի[1] փոխանակ անհնազանդելոյ առաջին մարդոյն՝ իւրում Հօրն. վասն զի ըստ մարմնոյն հնազանդէր ծառայա-

1 Ա.Ջ. օրինակ. Եւ հնազանդի Աստուածային մարմնով հաւասարակից Հօրն փոխանակ անհնազանդութեն Ադամայ, և ըստ Աստուածութեն սորին՝ բարեբանութե ընդ Հօր 'ի հրաշեան գերաց:

կերպ տեսակաւ հասարակաց Հօրն. իսկ ըստ Աստուածութեն ընդունէր զբարեպաշտութիւն արարչապէս ընդ Հօր համապատուաբար ։

’Ի գնացելում աւուրն ’ի տան Մարիամայ և Մարթայի ուտէր ընթրիս, և յանդիման բազմի Ղազարոս ’ի գերեզմանէն յարուցեալ. ունի ընդ իւր զերիզապինդ կտաւն հաւատարիմ վկայ, զի ’ի ձեռն կերակրոյն և ըմպելւոյն և գերեզմանական կտաւոյն ճըշմարիտ և հաւատարիմ յարուէն հաւատասցեն Ղազարու ։ Իսկ ’ի հանդիպելում աւուրս, դղրդեցուցանէ զբոլորն Երուսաղէմ ’ի պասեքատօնիս [1] մտանելով ’ի սա, և ’ի նորեկաց ժողովրդոցն փորձեալ ստուգէր Յն ’ի Նազարեթէ գալիլեացւոց. որոց խոստովանութիւն համաբանի ընդ հրեշտակին [2] երևելով հովուացն ’ի Բեթղահեմ ։

’Ի գնացելում աւուրն զՄարիամայ ընդունէր զբարեպաշտութիւն՝ զպատուական իւղոյն օծումն խոստովանելի սպասաւորութի իւրոյ մահու, ’ի չարչարանացն գործակցութիւն ։ Ս արտասուսն անմաքուր վարուցն լուացարան. հերն զմեռելութի ’ի մարմնեղէն վարուցն. և զոտսն ոտիւք ընթանալ զժամանակս կենդանութեան, և զեւթներեակ աւուրցն որովք յառաջ մատեան ամիսք և տարիք, յորս անոր հետևանայր գործովք իւրովք՝ մաքուր ոտիւքն սրբէր ։ Իսկ ’ի հանդերձելում աւուրս զքահանայիցն կատարէ ախորժակս՝ զայ յայտնապէս աշակերտացն բազմութե՛ որէ զլեզուս մանկանցն յօրհնաբանութի. ազդէ ’ի միտս ժողովրդոցն և զմանկոցն ’ի ճանապարհին տարածանել՝ որք են ծածային և թագաւորական սպասաւորութիւն. վասն զի երկու աքանչելագործութիւնք յերկուս կատարեալ աւուրս գործեցան՝ յանգործականիս և ’ի սկզբնականիս [3]. և ըստ լինելուն յանգործականի՝ սկզբնականին շաբաթ որ է հանգիստ. և եւթներեակ միաշաբաթումն՝ որ է սկիզբն. քանզի ’ի դատարկաբանին գործէ ած հրաշափառ ’ի մեռելութէ

1 Մի օրին. ’Ի պասեքայ փոխել ։
2 Մի օրին. Միաբանեալ հովուացն ’Ի Բեթլեհեմ ընդ հրեշտակին ։
3 ’Ի միում օրինակի չիք. յանգործականիս և ’ի սկզբնականիս ։

յարութ̃ի բանական բնութ̃ես. զի նախ 'ի լինելութ̃են դադարումն լինէր յեւթներորդումն աւուրն. և զի բոլոր արարչակերտագործութիւնքն բարի են, Մովսէս խոստովանի. «Նա զոր արար ա̃ծ, բարի է». սակս զբարեգործականսն լուէր ա̃ծ. քանզի յառաջնումն մինչև 'ի վեցերորդն՝ զերկին և զերկիր փառաւորեաց ա̃ծ. իսկ 'ի վեցերորդումն զմարդն իւրով կենագործէ ձեռամբ, և օրէնս աւանդէր պահպանակմն: Ի լուել մարդոյն զպատուիրանապահութիւնն՝ լուէր և ա̃ծ զբարեգործութիւնն. զի 'ի վեցերորդումն մարդն դադարէր յօրինապահութ̃էն, և յեւթներորդումն արգելոյր ա̃ծ զբարեգործելն. և զայս ոչ վայրապար՝ այլ արարչական ճշմարտութեամբն. վասն զի երկինք և երկիր սակս մարդոյն՝ և մարդն վասն պատուիրանին: Պատուիրանապահելն զա̃ծեղէն բարերարութիւնն բացափայլէր. 'ի լուելն պատուիրանապահութ̃ն՝ լուէր և ա̃ծագործ հրաշքն. քանզի մերկանայր մարդն յարարչատուր փառացն յաղագս յանցմանն, և մեռանէր Ղազարոս երկրային և ժամանակաւոր մեռելութեա̃մբն: Նոյն յաղագս նախահօրն պատուիրանազանցութեանն՝ լուէր ա̃ծ զյանցանացն թողութ̃ի. աստ յաղագս Ղազարու աւանդապահի՝ երկասիրէր զկենագործելն՝ 'ի գերեզմանէն:

Նմանապէս[1] շաբաթ առաջին և երկրորդ. 'ի նախնումն 'ի բարեգործութ̃է լուէր ա̃ծ, նախահօրն պատուիրանապահութենէն լռելոյ աղագաւ. յերկրորդումն յաղագս Ղազարու քրիստոսասիրութ̃են, նորոգէ 'ի գերեզմանական անշնչութենէն. և 'ի մահազգեաց պարածածուկ կտաւակապութենէն արձակէ: Իսկ միաշաբաթն է բարեբանութ̃ե օր. և աշակերտացն բազմութ̃ե զեկմն Երուսաղէմ բարեբանելով 'ի վերայ անմաքուր նստելով կենդանեաց. ձորձոց և տնկոց ընդ ոտիւք տարածելովք մուտն Երուսաղէմ ահաւորապէս, դղրդին Երուսաղէմի ժողովրդովքն եկելովք, քահանայիցն ախտանալով ըզնախանձն՝ զի՞նչ գքեն աղաղակեն ասելով ցտէրն:

[1] Մի օրին. Նոյնապէս:

Պատասխանի ետ տէրն. “Ո՛ ի թէ մանկտիդ լռեն՝ քարինքդ աղաղակեսցեն,,:

Միաշաբաթ է սկիզբն լինելութեան, զի անդուստ սկզբնաւորեալ երկնի և երկրի արարչագործութիւն: Նորոգ[1] վասն զի առաջին աստուածավայելուչ ապականեցաւ իրագործութիւն յանցաւորութեամբ նախահօրն ազգաւ, զյանցաւորի առնու զկերպ, և որպէս զյանցաւորս տայ 'ի դատապարտութիւն զանձն. և որպէս թողացուցանէ դատողացն զինքն դատապարտել, զի զդատապարտութիւն առաջին մարդոյն գրաւականեսցէ. և մարդացեալն Աստուած պարտաւորութիւն ընդունի, և փոխանակ գրաւականի հօրն 'ի մեղս 'ի մարմինն աստուածացեալ, և անյանց զմեղս ընդունի կամաւորաբար և յանցաւորապէս. և մարմնացեալ Աստուածութեամբն զբոլոր յանցաւորութիւն լուծանէ զնախնի մարդոյն, անյանց զնա առաջի ինքեան կացուցանէ հօրն**:

Իսկ բազմութիւն աշակերտացն՝ նշանակէ զհանդերձեալ տիեզերական հաւատացելոց կոչումն. իսկ ձիթաստանեաց լեառն՝ ձէթ արեգական է գործակից. լեառնն՝ զաստուածեղէն վարդապետութեան զբարձրութիւն ասէ. ձէթ զլուսափայլ և զտէրունեան բերանն՝ որ արտաքոյ զաստուածախօսութիւնն ջահաւորէ: Իսկ տունկս ընդ ոտիւք տարածանելն, երկիր 'ի փշաբեր անիծից յառաջին դառնալ 'ի ծաղկաւէտութիւն. և տնկոցն վերահանդիսանալ հասակ ոտեղն[2] վերածնունդ քաջապտուղ և բարեսաղարթ. զոր առեալ ժողովուրդն ընծայեցուցանէին անիծից բարձողին և նորոգչին զերկիր՝ յառաջին աստուածակերպութիւնն[3]: Իսկ ձորձոցն տարածումն՝ զախտացեալսն հոգւով և մարմնով որք հաւատով 'ի Յիսուս մերձեալ բժշկեցան, նշանակէր. և քահանայիցն ախտանալ ընդ մանկանցն օրհնաբանութիւն՝ զնորահաւատիցն արգելուլ զխոստովանութիւն, և առաքելական քարոզութեանցն ընդդիմամարտք գոլութիւն:

Իսկ ասելն տեառն, “Եթէ դոքա լռեսցեն քարինքդ աղաղակեսցեն,,. քարինք զերանելի Առաքելոցն ըզ-

2 Այսոր մինչև ցկրկին աստեղս չիք 'ի միում օրինակին:

2 մի օրին. հասակ ոստեղն:

3 Մի օրին. հրաշակերպութիւնն:

կարծր և զհիմնադրական քարոզութեան ասէ․ եթէ զմանկտիդ արդեօք, Պաւղոս և Սիկոդիմոս և Գամաղիէլ և Կայիափայ՝ որք են տակաւին անպտուղք, և քարատեսակ 'ի հաւատս, և 'ի հրէութեան քաջ անպտուղք, սոքա զինչ խոստովանեսցեն զԱստուածութիւն մարդացեալ[1]․ և զերկուս եկաւորուն քաջանձնապէս բարբառելով՝ զառաջինն և զերկրորդն։

Այլ եւ քարինքդ աղաղակեսցեն՝ իմանալի է քարինք զմարգարէսն, որք յօրինեն հանդիսացան 'ի շինուածս, և 'ի նոցունց մարգարէական խոստովանութիւնք՝ որք զբովանդակ տնօրէնութիւն գրոց նախագուշակական[2] տաւիղք՝ յիշատակ առյապայ եղելոցս անկապտելի թողին զմնձ․ երկու հաւատարիմ վկայիւք՝ մարգարէական և աւետարանական ճծխօսութեան գրովք։ Օհ[3] և զտօնախմբողքս արժանի արասցէ նոր արքայութեան․ զի նորա են փառք և զօրութիւն յաւիտեանս, ամէն։

1 Մի օրին․ փոխանակ անպտուղ, դոքա ղինչ խոստովանեսցին ճարքին աստուածացեալ։

2 Մի օրին․ փնօրէնութին նախագուշական։

3 Աստանօր մի օրինակն, ունի հատուած մի երկայն յառաջին ճառէն, և աւարտ ճառիս առնէ քաղելով և օրինակելով զառաջնոյն զվերջաբանն։ Նոյնպէս և միւս օրինակն, ունի այլ ինչ հատուած աւելի յառաջնոյ անտի, և վերջաբանէ ըստ օրինակիս զոր եդաք։

ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# Ն Ա Խ Ն Ե Ա Ց

---

ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹ

# ԴԱՒԹԻ

## ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

### ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ԵՒ ԹՈՒՂԹ

ԳԻՒՏԱՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՌ ԴԱՒԻԹ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1833 ՌՄՁԲ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՆԵՐԲՈՂԵՆԻ ԽԱԶԻՆ

Դաւիթ փիլիսոփայ ասացեալ. որ լիապէս գիտէ զտեսականն և զգործնականն. և զմասունս նոցա զերկոտասան. 'ի Հարք գաւառէ 'ի Հերեթն գեղջէ. աշակերտ Սահակայ և Մեսրոպայ. զոր ասեն քուերորդի Մովսէսի քերթողահօրն, 'ի վաթսնիցն՝ որք ընտրեցան ուշեղք և փափկաձայնք և երկարագիք, և ամենայն առաքինութեամբ զարդարեալք. որք յետ հարիւր մետասան ամի սրբոյն Գրիգորի՝ 'ի գտանել դպրոյ ազգիս ընտրեցան, և չոգան յազգս՝ ուսանել իմաստասիրութիւն և արուեստախօսութիւն, և առնել թարգմանութիւն, յԱղեքսանդրիա և յԱթէնս և յայլ գաւառս։ Եւ որք ընդ նմա գնացին, Մամբրէ եղբայրն Մովսէսի, Մուշէ և Եղիշէ, Եզնակ և Արձան արծրունի և Աղան։ Եւ 'ի դառնալն զի բազում ժամանակք էին անցեալ, և յոլով անցք անցեալ ընդ երկիրս. ընկենուլ զսուրբն Սահակ յաթոռոյն, և տապանանել Արտաշրի 'ի Սուրմակ քահանայէն 'ի սանդրելս, իշխանացն և յԱսորոց առաջնորդ կացուցանելն. և յետ քսան և ութ ամի գիւտի դպրոյն կոտորումն սրբոց վարդանանց. և բաժանումն հայրապետութեանն յերկուս. Յոհան մանդակունի 'ի Պարսից կողման կաթողիկոս. և Գիւտ 'ի կողմանս Յունաց՝ յաշակերտաց սրբոց քահանայիցն։

Յաւուրս վերադիտողութեան Հայոց տն Գիւտայ եկին արք ոմանք 'ի նահանգէն Անտիոքայ 'ի գեղջէն որ կոչի Աւշին, որոց անուանքն Կոստանդին և Պետրոս և Թէոդորէ. խարազնազգեացք, բոկագնացք, պահողք, և կեղծաւորք, որոց ծունկք և ճակատք տեռեալ էին իբրև զուղտոյ 'ի ցոյցս մարդկան, որք ասէին ոչ գոլ զՄարիամ ածածին, և ոչ զխաչն ածյ խաչ, այլ գողոց պատժարան։ Իբրև լուաւ Գիւտ զգալն Դաւթի և զընկերացն, բերկրեցաւ և մխիթարեցաւ յոգի, և գրեաց առ Դաւիթ նամակ, որ ունէր օրինակ զայս։

# ԹՈՒՂԹ ԳԻՒՏԱՅ ԱՌ ԴԱՒԻԹ

ՅԵՐԿՆԱՒՈՐԻՆ ցանկացեալ մեծութեանն, զառողջ զանձնու և ծնայլին լրութե յաւսոյս, որով ձգեալ հասեր 'ի տիրապէս անճառութեան 'ի գերակայ և 'ի պատուրան պայմանն, զատեալ և ծածկեալ, բացայայտեալ բոց բարեաց բարետուրապէս բարուց քոց, զոր 'ի վարժ վաճառի վարդապետութե քում խնդրելի է մեզ խուզողացս, խօսել խորհրդով 'ի խաչն Քի, ըղնորին երախտեացն հատուցանել որ առ 'ի մէնջ զահութիւն, փրկելոցս փրկաւէտ փայտին փառաց փեսայինն: Ո 'ի պաշտելի է մեզ և պատուելի և պանծալի ըստ Պաւղոսի պարծել 'ի պատուականն տապակն Քի, և 'ի Թագն նորոյս Սիոնի. զի բարձցի հերետիկոսաց հերձուածն, և խլեսցի յազգաւրակաց փուշք, և որոմն սատանայական սերմանց, որ 'ի մաքուր յուսոյս և ոչ յԱստուած:

ԳԻՒՏ

զադաշեալ և գերեզմանն 'ի զարշապար, և մահու մերձաւոր, զրուատ հայցեմ, Հայոց հօտի հովուապետ և վերադիտող տանն Արշակունեաց:

# ԸՆԿԱԼԵԱԼ ԶԹՈՒՂԹՆ ԹԱԽԱՆՁԱՆԱՑ ԴԱՒԻԹ ԱՌՆԷ ԱՆԴՐԷՆ ԵՒ ԱՆԴՐԱԴԱՐՁ ՊԱՏԱՍԽԱՆԻ

ՓԱՌ 'ի յածուստ պատուեալ զերից երջանիկ, զմեծի հայրապետի և զաթոռակալի սրբոյն Գրիգորի, Հայոց մեծաց վերադիտողի զմեծահրամանս խնդիր հարկապահանջութե եկեղեցական գործառնութեան՝ զոր հրամայեցեր մերում կրտսերութե դրով դրոշմել 'ի քարտիսի մատենագրութե, զի կացցէ և մնասցէ անջնջելի յիշատակ զկնի ազգաց եկելոց, զոր ոչ այլազգ լինել թուի, քան թէ իշխանութե քում ըստ գերազանցութե պատուոյ զարհուրեցուցչի, և ըստ անհնարին հրամանաց ծանրութե. սակս որոյ տարբեալ տարտափեմ, և երկն ոչ դուզնաքեայ յիս եկեր. զի գտանի քան զկար մեր գերազանց խնդիրդ։ Այլ զի հարկ 'ի վերայ կայ աւետարանել հնազանդութեանս, զի մի վայն վիճակեսցի. սակայն սատարեսցէ սրբամաքուր աղօթք ձեր սարտուցելոյս, զի Բանն Ած տացէ բան բանի մերոյ մասին, և հանճար հրամատութե Հոգին՝ որ, խորհել խորհրդով և խօսել։

Եւ եղև այս 'ի ժամանակս մարզպանութե և սպարապետութեան Վահանայ որդւոյ Մագնեսի որդւոյ Վարդանայ, կամ որպէս ասեն եղբօր՝ փորձողք և դիտողք։ Սուտ ասեն զայլ պատճառն, յԱթէնս կամ 'ի Բուզանդիա, կամ յԵրուսաղէմ, կամ յորժամ 'ի Պարսից դարձաւ խաչն և խօսեցաւ. իսկ այս առանց կարծեաց է։

# ԳԻՐՔԻ

# ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

## ՆԵՐԲՈՂԵԱՆ

## Ի ՍՈՒՐԲ ԽԱՉՆ

### ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ

ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔ զտէր ա՟ծ մեր, մարգարէն ձայնէ. երկրպագեցէք պատուանդանի ոտից նորա: Իսկ ես զնոյն ձայնեմ ըստ հոգւոյն նախազգեցութե տարբերելով զբանս հրատարակեմ: Զի թէ առ օրինակն ճշմարտութե՝ այս ինքն առ Սիոն լեառն, կամ մանաւանդ զառ 'ի յապա իսկ անդ լինելոյ այնց շնորհաց՝ յառաջագոյն տեսեալ[1] զյարակայութի, պատուանդանի նմանեցուցանելով ոտից ա՟յ, սուրբն այն և պատուական այր յերկրպագութի անդ զանուանեալն իսրայելեան ազն[2] յորդորելով, զնոյն ինքն զա՟ծ ասի բարձրացուցանել. ապա և ինձ յոյժ տարարժանիս՝[3] ոչինչ կարի հասցէ[4] դատապարտութի առ 'ի ստուգութե հետս հետևեցելոյ[5] բանիւս այժմիկ:

Քանզի որ առաջի անցեալ կայ մեզ բանս՝ ոչ է օրինակ, այլ ճշմարտութի օրինակի. և ոչ նշանակաւ պատուանդան միայն, այլ և տաճար և սեղան և աթոռ, և ոտից պատուանդան ա՟յ ստուգապէս սուրբս

1 Մի օրին. Էփէս.

2 Երկու օրին. Իսրայէլեան:

3 Երեք օրին. փրկանիս. Ընդհանուրն 'ի մեկնութեան Բարձրացուցէքին. փառարժանւոյս:

4 Մի օրին. հասցէ պատահել դոփառաբանութէ:

5 Մի օրինակ. հետևողեցելոյ:

այս . միանգամայն և իմանալի լեառն սուրբ դիտանոց ։ Վասնզի այսպէս զՍիոն թարգմանեն , առ որ տեսոյ ճշմարտութե . այս ինքն զսուրբ կատարեալ հաւատոյ մանկունս՝ ընդհանուր յերկրպագութիւն ձայնիւ յորդորեմք ։ Վասնզի այս է իսկ երկրպագութիւն ճշմարիտ աստուածօրհնութե՛ և յորդորեցուցիչ . եռափափաք և քրիստոսազարդ սուրբ նշանիս եկայք աստուածասէրք , երկրպագեսցուք ։

Վասնզի սա մեզ 'ի մահուանէ 'ի կեանս առնի փոխադրութեան առիթ , և 'ի կեանս՝ ոչ իբրև յաղցաւորս և յերկրայինս , այլ յանվախճանս և յանպատումն և յանմատոյցս , և որ առ հրեշտակական բարեբաստութենցն անցեալ հանդիսանայ ըստ աւետարանին ազդեցեալ բանի ։ Վասնզի սովաւ մեզ 'ի դիւրութեանց քաջամանութե [1] մարմնոյ , և ամենայն որ ինչ յաշխարհիս զհետ երթայ առանց ըղձից . և որ ինչ յոգւոյն տրամադրեալ են ախտք՝ սա մեզ է փրկութեան պատճառ ։

Արդ այսքանեացս և այսպիսեաց [2] մեզ բարութեցս առթողի , որպիսի՞ մեզ հասցէ հատուցանել գոհութիւն ։ Սակայն որչափ 'ի կարի մերում է՝ հանդերձ գովասանական երգով միշտ 'ի խոնարհ երկիր պագցուք ։ Եւ 'ի խոնարհելն մերում , զամենայն 'ի բաց դիցուք զծանր և զմթացուցիչ խորհուրդս . յատակ հայեցուածովք հոգւոյն թեթևացեալ՝ առ սուրբ երկնային խորհուրդն արժանացեալք [3] , 'ի բարձրագոյնսն վերաբերիցիմք ։

Վասնզի ոչ եթէ փոքր ինչ կամ տեսանելոյդ միայն առաջի անցեալ կայ մեզ զարմանալոյ արժանի ուշի նպատակ՝ առ որ մերձենամք , այլ որ դովաւ և որ 'ի դմին մեծն և հրաշալին կայ ծածկեալ , հիացուցանող ահաւոր զօրութի ։ Վասնզի կրկին ապաքէն և ոչ մեկին է սորա զօրութի . զի թէպէտ և յերկրէ բոյսն տունկ՝ հոմանունաբար [4] ասացեալ փայտ որ երևիդ մեզ . այլ որ իմանին՝ [5] է այն , որ զեր-

1 Երկու օրին . դիւրութենց 'ի քաջամնութե մարմնոյ ։

2 Երեք օրին . այսպիսի ։

3 Մի օրին . արժանացեալք ։

4 Երկու օրին . համանունաբար ։

5 Մի օրին . այլ որ 'ի նմին ։

կիր իսկ գլխովլին՝ միանգամայն և զերկլին ա̃մ բարձեալ ունի զօրութի. առ որ յոյժ բազմապատիկ մաքրութե եղիցին պէտք մատչելոյ կամեցողին: Զի թէ առ բուն իսկ մաքրագոյնն երկնի և հոգւոցն ասի 'ի բաց գառնալ, ուր[1] և սերովբէքն թևօք զերեսս ծածկեալ մերձենան[2]. իսկ որպիսի՞ առ բուն անարգս և հողանիւթեայս առ մարդս պահանջեսցի արժանաւոր մաքրութի:

Բայց ինձ թուի ոչ փոքր ինչ հիանալ 'ի վերայ անուանցս այլափոխութե. որ զանազանի 'ի չորս յեղանակս. բնական, սեռական, ձևական, իմացական: Եւ է բնականն՝ որ հոմանունական[3] ասի փայտ: Իսկ սեռականն՝ յատուկ ինքեան. որպիսի կիպարիս: Իսկ ձևականն՝ որ տրամադրի[4] խաչ՝ գործի սպանման: Իսկ իմացականն՝ 'ի վեր քան զբան. աստուածախաչ՝ որ է գործի կենաց: Իսկ 'ի վերայ ասացելոյս ո՞ ոչ սխրասցի. գործի սպանմանն՝ և նոյն գործի կենաց. և հայեցուցանէ առ մահ ձև սորա, և առ կեանս զօրութի սորա: Վասն զի համաբնակից է այնր տնկոյ՝ որով մահ, թէպէտ և ոչ ըստ սեռի. և զօրութիւնակիր այնմ տնկոյ՝[5] որով կեանք, թէ և ոչ ըստ բնութեան: Զի և մանաւանդ մերձենալով 'ի սա ճշմարիտ կեանքն, 'ի լաւ զվատթարն փոխեաց զօրութի[6], որպէս առ կեանս զմահ, որպէս օրէնն է կենաց զամենայն՝ առ որ ինչ միանգամ մերձեսցի կենսացուցանել[7]:

Որպէս և առ խաւար՝ լուսոյ է ունել. որով ճըշմարտեսցի ա̃յ խաչ: Եւ աստուածախաչ ասելով, ո՜վ աստուածասէրք, մի՛ պատկառեսցուք, քանզի պարծանք պարծանաց է սա առ մեզ[8] ըստ Պաւղոսի: "Ո՜վ Տիմոթէէ, մի՛ ամօթ զվկայութիւնն տեառն Յիսուսի համարիր, այլ կցո՛րդ լեր աւետարանելոյ զօրութե ա̃յ՝ որ զմեզ փրկեաց: Զի խաչին ճառ՝ կո-

1 Մի օրինակ. այր:
2 Մի օրին. մերձեցելոյ:
3 Մի օրին. համանունական:
4 Երկու օրին. մակադրի:
5 Երեք օրին. այնմ՝ որով կեանք:
6 Երեք օրին. 'Ի լաւ զվատթարին փոխեաց զզօրութի:
7 Մի օրին. կենդանացուցանել:
8 Երկու օրին. պարծանք սա մեզ է տառագաղէս ըստ:

րուսելոցն յիմարութ՟ի կարծի, այլ փրկելոցս մեզ զօրութ՟ի այ՟։ Զի և ես ոչ ամօթ ինչ համարիմ զաւետարանն այ՟. քանզի զօրութ՟ի այ՟ է 'ի փրկութ՟ի ամենայն հաւատացելոց»։ Ապա ուրեմ՟ն ոչ պատկառանք սա մեզ, այլ պարծանք պարծանաց. վասն զի սաստուածազօր մեր փրկութիւնս է։ Ուստի և զուարթութ՟ն այն 'ի գերեզմանի անդ առ մարդկապէս խորհողաց տրտմեցելոց կանանցն սփոփանս, իբր յա՟ծ մեծապէս պանծանօք, այսպիսի իմն առասացութեամբ զիւրոյ ո՟ն ձայնեալ զանուն։ «Զփրկիչն դուք խնդրէք, ո՛վ կանայք, զխաչելեալն. քանզի զայդ Յիսուս թարգմանեն՝ յարեաւ»։ Յորոց և զամենայն իմաստս գիտութ՟ե և բարեպաշտութ՟ե՝ իբր 'ի վեհից և յոյժ աստուածամերձաց [1] մեզ է ուսանել, զսոցայս առեալ յարացոյց։

Իսկ ո՞ր արդեւք զօրութ՟ի յաստուածայինն սուրբ զօրութ՟եցն զսա ոք ասիցէ ըստ Առաքելոյն։ Զի և ոչ մի զօրութ՟ի 'ի ճշմարիտ Աստուածութ՟ն իմանայցէ ըստ հեթանոսականացն. իբր 'ի ձեռն ցրտացուցանելն, կամ 'ի հուր այրելն ևեթ. իսկ 'ի միակն ճշմարտի՝ յորում ամենայն զօրութ՟ի իւրապէս զիւրն ունի։ Եւ սա նշան սեռն և անապակ այ՟ առ մարդիկ սիրոյն. վասն զի այսպիսի աստուածայինն ազդէ գիր։ «Յայտնեաց ա՟ծ զսէրն իւր 'ի մեզ, որպէս զի մեղաւորք եղով մեք՝ Ք՟ս վասն մեր մեռաւ։ Եւ այնչափ ա՟ծ զմարդիկ սիրեաց, մինչև զՈրդին իւր միածին ետ։ Եւ յայսմիկ երևեցաւ սէր նորա 'ի մեզ՝ զի զանձն իւր եդ վասն մեր։ Եւ այսպիսի սէր ոչ ոք երբէք կալցի՝ եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց, որպէս և ես անձամբ իմով դնեմ զանձն»։ 'ի տեառնէ իսկ վկայեալ։ Որդի որ եդ զանձն՝ ապաքէն սովաւ եդ, և 'ի սմին եդ։ Եւ որ 'ի սմին ետ, նոյն տակաւին 'ի սմա է, և 'ի սմանէ ոչ հեռանայ [2]։

Ապա ուրեմ՟ն յիրաւի այ՟ զօրութ՟ի է սա, և զօրութիւնս այս որպէս և ասացաւդ. զի թէպէտ և բարձաւ 'ի սմանէ ըստ մարմնոյ բևեռեալն 'ի սմա, այլ

1 Մի օրին. Ա՟ծասիրաց։
2 Երեք օրին. Եւ 'ի սմանէ ոչ Երբէք մեկնեսցի հեռացեալ։

զօրութիւն բնակեցելոյն և այսօր ՚ի սմին միացեալ է ։ Քանզի որ հաճեցաւ ՚ի սմա բնակել, ՚ի սմանէ ոչ մեկնեցաւ․ այլ բնակեաց և բնակէ և բնակեսցէ ։

Այսուհետև որ ոք հաղորդեսցի համբուրելով առ ժամանացեալ` ոչ եթէ ՚ի լոկ խաչ, այլ եթէ ՚ի ստուգապէս նոյն ինքն ահաւոր զօրութի̄ աստ բնակեցելոյն ա̄յ ։ Վասն զի և է իսկ աստ․ քանզի որ էրն աստ` է աստ` և կասցի աստ մինչև յաւիտեան ։ Զի թէ առ հնովն և առ օրինակաւն այսպէս ունէր, ասէ, "Այս է հանգիստ` իմ յաւիտեանս յաւիտենից ՚ի սմա բնակեցայց զի հաճեցայ ընդ սա"․ որչափ ևս առաւել առ նորս և առ ճշմարիտս այսպէս կալցի ։ Քանզի և լեառն ասէ, յորում բնակել հաճեցաւ ա̄ծ` և բնակեսցէ ՚ի սպառ․ զի և այս ոչ ինչ կարի օտարացուցանելով ՚ի բանէս բանդ է ։ Զսոյն և յաջորդն յանձն առցէ, կառք ա̄յ ասացեալ․ և ելանելով զգերեալսն գերել, այն` որ ոչինչ կարօտի կառաց` բնութ̄ի ։ Նաև ըստ յարմարութեան տառի առ ՚ի պէտս բանի ձևացելոյ` զոր և այսր ճահեցուցանել ոչինչ քակտիչ ինձ լինել թուի բանիդ․ ըստ որում և բազմակին եղև որ տեսանն [1] կառք ։ Ապաքէն զի յամենայն կոյս ուղիղ զհայեցուածս կալցի․ քանզի քառադէմ առաքէն ասի և կառքդ․ որպէս և քառաառաջէ այս [2] կառք խաչակառք, յորում Էմմանուէլն բարձրացեալ, կառավարելով ստուգապէս աւարումն գերելոցն արար ։ Նա և ըստ միոջէքդ ա̄մ մինչև ՚ի բուն ծայր երգոյս ոչինչ անյար [3] այսոցիկ` որք ընդ միտ ածեն ճանաչի ։

Սակայն ասի կառք, և ապաքէն ոչ առանց տ̄ն, այլ տ̄ր ՚ի սմա ։ Որպէս զի ցուցցէ թէ ՚ի վերելակէն իւրմէ այս կառք ոչ երբէք ունայնացեալ թափուր մնացէ [4], այլ լի և պատարուն վերելեալն յաւիտեան անպարապասցի ։ Վասն զի մշտնջենական և ոչ առժամայն զենումն զ՚ի սմա զենեալն հաւատայ եկեղեցի․ ուստի նոյն խորհուրդ զենմանն միշտ հա-

1 Մի օրինակ․ փետանեն ։

2 Երկու օրին․ քառաառաջէնայս կառք․ և մի օրին, քառաառաջէաց այս կառք ։

3 Շնորհալին ՚ի մեկն․ Բարձրացուցէքին ոչինչ անյարմար այսոցիկ ։

4 Մի օրին․ մնայ ։

նապաղորդել մինչ 'ի միւսանգամ նորայն յայտնութեան՝ 'ի մէնջ իսկ հրամանատրեցաւ:

Տի՛ն ն'աւանիկ և տեղիք իսկ բևեռացն և խոցուածն տիգին ոչ կցեալ՝ այլ համագաղաբար մեր սպիացեալ[1] մնայ 'ի յարուցումն[2]: "Եւ զի՞ այդ վէրք 'ի քո ձեռս՝ մարգարէին հարցեալ, զոր վիրաւորեցայ տանէ, 'ի տան սիրելւոյ իմոյ": Այլ և առ 'ի յերկիր փնորայն գալուստ ասացեալ, "Հայեսցին յոր խոցեցինն": Եւ զի՞նչ այլ այս՝ եթէ ոչ զմշտնջենաւորութի և զկարակայութիւն այս սուրբ զենմանս 'ի հաւատացելոց հաւատարմացուցէ բանս: Վասն զի անմահ է զենումն հաւաստի, և նոյն միշտ անմահ և կենդանի. և տուգապէս մեռեալ, և նոյն միշտ կենդանի: Քանզի ա՛ծ առ Հօր, և առանց կարծեաց մարդ յերկրի, և նոյն միշտ ա՛ծ ընդ Հօր: Եւ որպէս Ճշմարտիւ և ոչ կեղակարծելի ա՛ծ անպարագրելի և անքաւ, և յարգանդի Կուսին բաւանիլ կրէր ըստ մարմնոյ, և մարդկապէս առ ծնանողս մերձեցելոյ. ըստ որում Աստուածածին ծնօղն, և նոյն ինքն ծնեալն Աստուած անպարագրելի և անքաւ. այսպէս և 'ի սմանէ հաղորդեալ համբուրիւ, և մկրտեալ 'ի մահ մարմնով ըստ մարմնոյ: Ըստ որում և խաչն՝ Աստուծոյ խաչ, և նոյն ինքն խաչեալն Աստուած անմահ, անպարագրելի և անքաւ. և ոչինչ յերկբայացի[3]: Օյ եթէ առժամայն և ոչ անմահ զենումն զենեալ ասա, ապա առժամայն նմա և խաչմանն հասցէ: Բայց ապա ուրեմն Ճշմարտապէս անմահին եղով սա զենումն[4] և պատարագի զենարան և սեղան, ըստ նմին և նոյնպէս և զխաչմանն և զսեղմանանն կալցի: Եւ ե՞րբ արդեւք, եթէ ոչ 'ի սմա այն՝ յորոյ ահէ ամենայն դողացեալ տարր և անտարր և փախըստեայ սարսէին, սպըրէին[5] դևք և ա՛մ խաւարային իշխանութիւք: Այսոցիկ հաւատարմացելոյ բանիցս յարդեանցն փորձի[6], վասն որոյ ոչ զոք կարծեմ այլազգաբար զմտաւ ածել յաղագս այսոցիկ:

1 Մի օրին. սպացեալ:
2 Երեք օրին. 'ի յարուցելումն:
3 Մի օրին. երկբայեսցի:
4 Երկու օրին. զենման:
5 Մի օրին. սարսէին:
6 Մի օրին. յարդեանցն փորձի Ճշմարտութեան:

Այսուհետև հոգւոյ ակամբ՝ իբր աչօք մարմնոյ յայտապէս նկատելով հաւատացի. իբր թէ այժմիկ իսկ միածինն Հօր բազկատարած 'ի սմա բևեռեալ տեսանիցէ: Նաև տակաւին իբր թէ, ցնցուղ փրկական աղբևր սուրբ արեանն 'ի կենարար տնօրինեցելոյն կողէ այժմիկ իսկ առաջի աչաց մերոց կայլակացեալ՝ հրաշիւք յաներևոյթս զանմաւոր երկիրս առոգելով փրկագործէ: Քանզի չև ևս զՏէր տեսանեմք հնազանդեալ նմա. և որ հնազանդեցոյցն, ասի թէ զՏէր իսկ գործով: Ապաքէն մինչ զի զկատարումն ամենայնս առցէ, զհնազանդելն է իմանալ. ուրեմն և զփրկելն: Նաև փրկութիւն այս, զի զամենայնն ասելով, յամենայնի փրկագործութիւն. որպէս և այն որ 'ի Գաղատիայն մեղադրելով գիրն ասէ. « Ձեր ասէ, գրեթէ առաջի աչաց Յս Քս գրեցաւ 'ի խաչ ելեալ »: Արդ ոչ կամելով հեռանալ խաչէն այլազգաբար խորհիք. քանզի ուր խաչ՝ անդ և խաչեցեալն. և ուր խաչ և խաչեցեալ՝ անդ և խաչելութիւն:

Արդ եթէ բանիւ լսիցեալքն՝[1] ականատես ասի խաչելութեան առ հաւատ, իսկ ուր խաչն ականատեսի գլխովին՝ զիա՞րդ ոչ յանդիմանակայ անդ խաչելութիւնն հաւատասցի[2] առ 'ի նոյն հաւատս: Արդ ուրեմն ասելով խաչ՝ աստ իմասցի Գողգոթայ, և աստէն խաչելութիւնն, աստ զենումն, և 'ի սմին փրկագործութիւն: Օ ի դագաղթն Գողգոթայ, տեղի կառափելոյ, և շիրիմ առաջին մարդոյն յեբրայեցւոցն ասացեալ: Նաև Տէր անդ է, քանզի բերէ զգագաթն բարձրութիւն սորա, և զկառափեալն ձև սորա. իսկ զթաղումն՝ քանզի փայտիւ Ադամայ վերաւորեցելոյ առ 'ի նմին իսկ այնուհետև անկեալ՝ 'ի մեռելոյ է 'ի համարի: Յորոյ վերայ հասանելով յերկրի երկնայինն Ադամ, գթածաբար զփրկութիւն կամեցեալ նորոգործել աստ թաղեցելոյ ծառայիւն և Հօր, զյաւիտենական բարձեալ բերէ զարդարութիւն. նմանասեր[3] մարմնով լուծանելով աստ զնորա զհաճեալ ըղմեղսն, և ճաշակելով իբր նայապէս զմահ ստանա-

1 Երկու օրին. լսեցեալքն:
2 Մի օրին. հաստատարմասցի:
3 Մի օրին. նմաներ:

նելով վնորայն մահ, բարձրացուցանէ զանուանեալն զագաթն գերագոյն երկնից ։

Այս զանսուրբ փայտն զպատճառս մեղաց, 'ի փրկութեան պատճառս և 'ի սրբութիւն սրբոց. և զկապանսն՝ 'ի կենաց գործեալ. իսկ զթաղումն 'ի սքանչելի յարութիւն ածեալ փոխարկէ մարդոյն ։ Այս ամենևին իսկ պատճառաւ փրկութեան, զայն որ մեղացն էր պատճառ 'ի բաց բարձեալ, երկին իսկ միանգամայն, և կամ եւս վերագոյն ասացեալ՝ երկնից երկին և փառաց աթոռ զսա գործեալ, յաւիտենական աստ բնակեցաւ. ըստ որում և զարդարապէս ըզպատիւ ճանաչել սորա, հաւատ առ հանդերձեալսն է ։

Յաղագս որոյ թէպէտ և զբարեպաշտութիւն ցուցանելով յերկրէքս[1]. այնք՝ որք զա̃ծ սիրել խորհեցան՝ թագաւորք և որք միանգամ ըստ երկրի մասանց ընչաւէտք՝ զարմանալի կամեցեալ 'ի տեսողսն երեւեցուցանել զսորայս պատիւ, այնու զոր երկիր և ծով մատուցանէ մեծութիւն ստացուածոց, քարամբք պըճնեցին պատուականօք, և այլովք այսպիսեօք պանծալիս վայելչացուցին ։ Իբր զի զտակաւին զողջարուսն[2] մտօք մարդկան այսու առ 'ի փափագ ձգել զկիզմն բաղձացուսցեն[3], զտեսկալն և զքստմնելի[4] ըդսորայս ցուցեալ պատիւ ։ Այլ սա գերագոյն երկնայնօքն[5] աստուածայնովք զարդարեալ փառօք, և եւթնպարեան դասիւք հրեշտակաց սպասաւորեալ և պաշտեցեալ, զտէրն իւրեանց 'ի սմա գոլ տեսանելով ։

Տինա և բազմակամբք քերովբէիւք և վեցթեւեամբք շրջապատեալք սերովբէիւք՝ զեռահիւսակ սրբասացութիւնս իմանալի ձայնիւ 'ի սմա վերելելոյն ա̃յ յարաձայնելով ։ Քանզի ա̃մ աներեւութից առ 'ի հաստատուն նշանակ հաւատոյ ցուցական յարարոյց, յառաջագոյն ամենիմաստն առաջնորդն ա̃յ հոգացեալ մարդկան, առ 'ի դիւրընկալ զհաւատս գործոյն և իրին 'ի տեսողսն գործելոյ ։ Որպէս այն որ յօրինա-

1 Մի օրին. ցուցանելով յերկրէ ք̃ո այնք ։

2 Երկու օրին. զողջայաճարոյսն մտօք մարդկան ։

3 Մի օրին. բաղձացուսցէն ։

4 Մի օրին. փափնելի ։

5 Երկու օրին. երկնայնովն ։

Օրհնեալ ես, աստուածազարդեալ փայտ սուրբ, որ գերագոյն յՈրդւոյն 'ի մէջ խորացելոյ [1] փայտին 'ի քրովբէէ բոցեղինաւ ցանկապատեալ սերովբէիւ. որ դիւրահուպ առ 'ի մէնջ բուսանելով յերկրի՝ ընդ-մահուամբ անկելոցս ձրի մեզ կենդանութեան ծաղկե-ցուցանելով ստուգապէս փայտ բնաւորեցար կենաց:

Օրհնեալ ես, փայտ սուրբ, քանզի իբրու առա-ջին փայտն գեղեցիկ և քաղցր պտղովն մահու եղև առիթ, պատիր եղեալ ադամածին կուսին, կուսա-ծինն Աստուած դառնաճաշակ 'ի քեզ լինելով զկեանս 'ի մարդիկ աղբիւրացոյց [2]:

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ գլորեցելումն հօր ցուպ եղեր յարուցիչ և գաւազան հաստատութեան. ընդ որոյ մարգարէն փոխանորդաբար 'ի բերան ա-ռեալ, փրկողին զգոհացողականն հնչէ: « Քո ցուպ և գաւազան՝ մխիթարեսցէ զիս »: Յոր և իմաստունն հոգւոյ ականբ յառեալ, ասէր. « Փայտ կենաց է պատսպարողաց և յեցողաց 'ի նա, իբրև 'ի տէր հաս-տատութեամբ »:

Օրհնեալ ես, փայտ կենաց, իմանալի տապան, որ 'ի հեղձական ծովէս 'ի քեզ օժընդակեալ ոգւոց՝ գերագոյն ծփական ալեաց մերձ առ երկին թեթև-թռուցեալ վերաբերիս՝ դուռն 'ի կողմանէ քոյոց-վերնատան զնա և զտէրունեան [3] բաց ունելով զկող: Յորում փոխանակ աղաւնոյ շղաբեր հրեշտակի ար-ձակեցելոյ, 'որ մտաւորն մարդկեղէն ոգի, ըստ իմա-նալի բացելոյ ձեղուանն 'ի ձեռն բարբառոյ Տեառն՝ որ ա-ւանդեցեալ. յորոյ ձեռն զորդեգրութեան պայման որ առակի՝ 'ի ձիթենւոյն [4] տաղարթ առեալ բերէ աղ-դի մարդկան:

Օրհնեալ ես, աստուածազարդ փայտ դու, կամ ճշմարտապէս տունկ, որ զ'ի քէն կախեցելոյ սաբեկայ զառամբն՝ ոչ միայն Իսահակ [5] 'ի մահուանէ փրկիւր, այլ միանգամայն համօրէն ծնունդք Ադամայ:

Օրհնեալ ես, փայտ կենաց, իմանալի սանդուխք

1 Մի օրին. 'ի մէջ կացելոյ փայտին:
2 Երկու օրին. բղխեցոյց:
3 Մի օրին. փէրունական:
4 Երկու օրին. ձիթենւոյն:
5 Երկու օրին. անձն Իսահակայ:

յերկինս 'ի վերոյ ճանապարհորդութեան, որով զուարթնոց դասուց յերկիր յար էջ և ելք առաքման ¹, և որ 'ի քեզ հաստատեալ. զոր 'ի բացուստ տեսեալ սրբոյն Յակոբայ, և յաւէտ ըմբռնեալ հրաշիցն, յինքն սուկացեալ ստուգապէս, դուռն երկնից զքո վայր և տուն Այ զԲեթէլ անուանէր :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ նախանկար 'ի քո խորհուրդս նշմարէր ախտերն տանջեցելոյ տապակի՝ որ յԵգիպտոս, գառնառաքելն աւերմանաշաղախ դրօշն՝ ² որպէս երկնի մուխ ³, 'ի յորժամ տիեզերաց անդրանկանն Մսրայ՝ անդրանիկքն փրկէին Իսրայէլի : Յորմէ զոգիս քան թէ զմարմինս ⁴ 'ի բաց բարձեալ որորմեցելոյ 'ի բարկութեան յայնս, յորս միշտ աչք Տն 'ի վերայ ժառանգութեան ասի՝ փոխադրէ. որ ըստ հեշտ և կամակ ⁵ կենաց ազգացն կաթին և մեղու, ասի բղխէ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ 'ի քեզ և 'ի քոյդ խորհուրդ՝ 'ի ջուրց առեալն գաւազանաւ պղնձոյն հարկանելով՝ վիմաստանէ ելեր զլոյծ միտս, և զվէմ հարեալ հոսանուտ գործէ, որպէս և զկարծր ապառաժն արտեւ. և զապաքուկեն 'ի քեզ ձեւացուցանելով 'ի մարտի՝ պարտէ զԱմաղէկն, որ նշանակաւ կոչի Ամաղէկ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, անկապտելի սիւն, որ զանստամբելի զլոյսն և զհուր 'ի քեզ բարձեալ ունելով՝ քեզ հետեւեցելոցս յառաջակայ 'ի կեանս յերկնայինս քաղաքին առաջնորդես և լուսաւորեալ պահես :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ 'ի հոսանուտ կենացն դառնաբեր միժամս պարտաւորեցելոյս Ադամայ, այս ինքն յինքնաբուն մարմնոյ վարուց 'ի ներքս մտեալ, քաղցր և անուշ և արբուն գործեցեր. զոր Մովսէսին գիտէ ազդել զօրէնս :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի տապանակ, ուխտի տախտակ երկնայնոյն լցեալ մանանայիւ, և գաւազանն հրաշաբեր պայծառացեալ ծաղկաւ. միանգամայն և երկուս տախտակս ընդ միմեանս յարմա-

1 Այլ օրին. առաքելն :
2 Մի օրին. դրօշիւն :
3 Երկու օրին. որպէս եգիպտ մուխ :
4 Մի օրինակ. զորմէ զոգիս տան թէ մարմնով :
5 Մի օրին. որ ըստ հեշտ և կամաց կենաց :

րեալս զհոգի և զմարմին հնդեկին [1] զգայութե̃ք.
յորում կատարելապէս ա̃ծ Բանն անճառելի տպաւո-
րեալ. զմի և զնոյն ինքն տէրութեան սուրբ մարմինն
Աստուածութե̃ն միացելով [2] 'ի քեզ բարձեալ կրեցեր :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի վիմարդեան
և քառանկիւն տախտակ, յորում ճշմարիտ աստուա-
ծածանօթութե̃ ոչ տամբանեայ մատամբ դրոշմեալ
ա̃յ, այլ մի և նոյն ինքն անպարագիծն ա̃ծ բանիւ
ձևացեալ փոխանակ 'ի Սինայէ աստուածատուր` 'ի
Սիովնէ ամենայն երկրի շնորհեցաւ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի գաւազան,
որ իբրու ցամաք գոլով` նոյնժամայն իսկ դալարաբե-
րեաց` ոչ կաղին արքայական, այլ զամենեցուն Թա-
գաւորն, զանԹառամն և զերկնայինն ծաղկեցար ծա-
ղիկ. և ոչ այսչափ միայն, այլ և կենդանի աղբեւր
փրկական ջրոյ և արեան 'ի ծայրի քում երևեցաւ
բղխեալ. որով առհասարակ ա̃մ լցան տիեզերք :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, զոր Յ̃ս փոխանակ
Յեսուայ ինքն յինքեան զքեզ բարձեալ, դայխո-
նաքար նշանակ յաղԹութե̃ պարտեցելոյ Թշնամւոյն.
և պարտեցելոյն [3] 'ի վերայ կանգնէ, զի զԹագաւո-
րեալ զմեղսն մինչ 'ի կատար ընԹացից արեգականն
'ի սպառ սպանցէ. և զԹևաւորէ զքեզ, զոր նշանա-
կաւ գիր երկճղի կոչէ, կախէ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ փոխանակ Յայե-
լի որդի կուսին` ցից զքեզ ընդ ծամելիսն ծիախրոխտ
մահու վարեալ, 'ի դառնուԹիւն և 'ի մահ զճաշակն
նմա գործէ, և ընդ ոտիւք զգետնեալ մեռուցանէ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ 'ի շրջանաստոյգ
պտոյտս յորձանուտ կենացս, իբր կարԹ 'ի ներքս
արկար [4] 'ի մահուանէ 'ի կեանս զմարդիկ ձգեցեր.
իսկ իմանալի վիշապին առ 'ի կորուստ նմա` կարԹ 'ի
քիմս եղեր, որով 'ի բաց բարձեալ` իբր ձագ մի քա-
կապեցաւ. զոր օրինակ անդ բաբելացի կարԹիւն յԵ-
րուսաղեմէ առ 'ի վախճան կորզեալ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի աշտանակ

1 Երկու օրին. հնդկէկին :
2 Մի օրին. միաւորելովն :
3 Մի օրին. պարտէզելոյն :
4 Երկու օրին. իբր կարԹ ընդ քիմս արկեցեր :

պատուականն քան զնիւթ ոսկի, որ զիմանալի զկոյսն 'ի քեզ գունդ վառեալ ունելով եւթնճառագայթեան փայլմամբ լոյս յաշխարհի ջահաւորեցեր :

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ հրեղէն հացին եղեր սեղան. որում սերովբէն ունելեաց կարօտա-նայր առ 'ի բառնալ :

Օրհնեալ ես, փայտ սուրբ. որ մերազգոյն մարմ-նոյն առ կոյսն ընդունեցար զքանչելեօք. այն որ զկենդանական և զգայական նորայն եւեթ տեւակա-նութիւն առ հուրն, հրաշացամբքութե [1] և դիւրածա-խութե մանաւանդ բերելով. քանզի հիւթն [2] այն և դալարագոյն զօրութիւն թփոյն առ հուրն անխիւթ-տեւականութեան՝ թերեւս խորշի և տեղի տայ զարմանց : Իսկ քո յոյժ դիւրակէզ ցամաքդ՝ իբրու ելոյ զօրու-թիւն [3], և նովիմ հրոյն անշիջու՝ իբրև եռանդնոտ յիմանալի քրայն՝ արտաշխկագոյն աւաւ [4] հրախառն սուրբ արեանն հոսմամբ 'ի վերայ իջեալ՝ պահեցար անկէզ, առաւել բարձրագոյն գոս հրաշից : Յաղագս որոյ և այն՝ որ յորովայնի զայդ հուր կրեաց՝ կամա-ւոր քեզ երկրպագեաց Կոյսն : Քանզի առ 'ի յան-տանելի այդր արիւնոտ հրոյդ ահաւորութենէ՝ նմ տարերք յանժամ, երկիր իսկ միանգամայն 'ի սմայ-եղբս, երկին՝ և այն որ յերկնի հրեղէնքն՝ սասանեալ ահասարսափ առ լուծանել իսկ նմ իրօք, եթէ ոչ 'ի նորին հրոյ ամենակրողի կրեալ հայէին : Զի ստա-րակայութե լուսինն՝ թէպէտ և առ 'ի ներքինս ագ-գանկցաքար ըստ երեւութեան զարիւն իւր եբեր, իսկ անուանակիր եղեալ անօրակին՝ ըստ իմացագտնին ծայրագոյն պատուով, զհուր և զլոյս և ոչ միով հնա-րեցաւ բերել արեւակն, քող զատուերն արկաւ [5] պատ-կառանացն : Սան զի 'ի թագաւորել ճշմարտու-թեանն, լռեսցէ ամենայն կարծեցուցանող զօրութե զերահնչեալ յաշխարհս : Որպէս և այլոց աղօտա-գունից՝ որ [6] ինչ միանգամ ըստ փայլածման երեւոյթ, նորին երեւակդ գործէ :

1 Երեք օրին. հրաշս ցամաքութէ :
2 Երեք օրին. հիւթեան այն :
3 Մի օրին. զօրութէ :
4 Մի օրին. առաւ :
5 Մի օրին. փող զատուէրն արկ :
6 Մի օրին. որոց ինչ :

Ո՛վ հրաշալեացդ չնաշխին փայտակս. իսկ դու ծաղկ մի 'ի Լիբանանէ ցամաք փայտ, և զնմ բերելով զարիւն, զջուր և զլոյս, և նոյնութիւ[1] ամբողջ պահելով զելդ-փայտ ոչ 'ի բաց եղեր:

Ո՛վ հրաշալիցս, անմարմնաւոր լուսաւորին յերկնի արիւն, որ և երկրայնոյ և մարմնաւոր արեանց, որ 'ի վերայ քոյ հուր և լոյս. որ և երկնայնոցն աստանօր յայտնապէս ցուցեալ թարգմանեացի Աստուածու-թիւնն յերկրի, և մարդիկ յերկինս. զոր և յա-ռաջագոյն իսկ մարգարէին ազդեալ զայս ահաւոր նշանացս հրաշս հրոյ և արեան, ըստ երկնի և ըստ երկրի փոխադրութե: Զոր և մրրիկ ծխոյ նմանե-ցուցանելով, զմխմափուլ առ 'ի շարժմանէ, թեթև առ 'ի խոնաւուտ ժամանակի փոշւոյ՝ ըստ օրինակի ծխոյ յամպս թռուցելոյ[2]: Զոր հողմոյ իսկ՝ կամ որպէս օրէնն է գարնանաբեր[3] պքոյ առեալ, ընդ ա-նօսր օդս սփռեալ շամանդաղանձև՝ համդերձ խաւա-րային ժամուն միգապատոյն[4] 'ի վերայ նսեմացուցանէ մարդկան զատուեր: Սակայն[5] անդրէն զտակիմք ըղ-ձանս ածեալ՝ 'ի սորայս հայեսցուք զարմանս:

Ո՛վ հրաշալիցս, երկնայինն հուրն հայելով միայն 'ի վերուստ զօրութէ 'ի քեզ՝ ցայտելոյ հրալից[6] արեանց կիզեալ 'ի բաց շիջաւ. իսկ դու փոքր ինչ խուիւ փայտ ցամաք, 'ի քեզ իսկ զնոյն հուր ընկալեալ արդեամբք պահեցար անկէզ:

Ո՛վ հրաշալիցս, յայդր ահաւոր հրոյդ երևութեցդ՝ հաստատակառոյց 'ի հիմանէ դղրդեալ սասանիւր եր-կիր. և արձագանք յինքեանց հերձեալ՝ պատառէին վէմք: Իսկ դու ուղէշ մի անկոյ ցամաք փայտ, մանա-ւանդ թէ ծիղ մի խոտոյ կամ ծղօտ մի եղեգան. և անշախշախ և անբախ[7] պահեցար. յոյժ բիւրապատիկ առաւելագոյն[8] գոս հրաշից:

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի հնձան, քանզի 'ի քեզ 'ի նոյնում վերայ երկնայինն այն ձմլե-

1 Երկու օրին., Ի նոյնութէ:
2 Երկու օրին. ծառացելոյ:
3 Մի օրին. գարնանաբեր սփոյ:
4 Մի օրին. մգլափոյն:
5 Մի օրին. Սակայն ամենեքեան փոյն: անդրէն զտոկիմք:
6 Մի օրին. հրաշլից.
7 Երկու օրին. անպախ:
8 Երկու օրին. առաւելաբարձրա-

ցաւ տեղւոյդ՝ բաւական յուրախութիւն երկնայնոցն և երկրայնոցս. այն որ 'ի ներքս 'ի խոնարհ զկենաց մե-րոց զթշնամին իւր և զհնձան կախեալ սրտմտութ̃բ զնորայն 'ի յերկիր եհեղ զմաղձ ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի կամուրջ, քանզի 'ի մահուանէ 'ի կեանս զմարդիկ ածեալ ան-ցուցեր ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի քարոզ. քանզի 'ի քեզ ազատութ̃ մերոյ և որդեգրութեան անջինջ դրեցաւ կտակ, ոչ գրագիծ մելանաւ, և ոչ մատամբ տառ ձեւացեալ Ա̃յ, այլ եւս անպատմելի՝ ա-րեամբ իսկ նորուն ժառանգակցի Որդւոյն Ա̃յ [1] ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ, իմանալի դաւազան կենարար սուրբ հովուին. քանզի քև անարատ դա-ռինք եկեղեցւոյ ընտրեալք որոշին՝ անկասկածք յա-պականողէ ամրացեալք 'ի գազանէն, որ օրինակաւ 'ի ճակատն նշանակեալք յապագայոյն օրէ, և 'ի սա-տակմանէ աստուածային սրոյ բարկութեան զերծեալ ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ անբարբառ բարբե-խօս. հրեշտակաց ցուցական. սրբութ̃ անտեսակա-նին իւրեանց Տ̃ն փառաց. եկեղեցւոյ փառք. առա-քելոց պարծանք. մարգարէից հանդիսարան. մար-տիրոսաց պսակ. քահանայից շնորհաբաշխութիւն. վարդապետաց քանոն հաւատոյ ։ Աստուածորաց յաղ-թանակ. իշխանաց յոյս քաջութ̃. քրիստոսասէր զօրաց յառաջապահեստ. ախոյանաց քաջալերութ̃ի. նահատակաց զօրավիգն. վտանգելոց օգնական. պար-տեցելոց ապաւէն ։ Նեղելոց բաւական. հալածելոց ապաստան. փախուցելոց պատսպարան. հարթուցե-լոց խաղաղարար. վշտացելոց մխիթարութ̃ի. ցնծա-

[1] Յաւելու սաւէն այլ օրինակ գեղեցկագոյն հատուած, որ յայլսն չիք, այլև ոչ 'ի մերն. Շնորհալւոյն.

" Օրհնեալ ես, փայտ Տէր, իմա-նալի բուրվառ, քանզի 'ի քէն բու-րեաց աստուածախառն խունկն, այն որ 'ի ծոց կուսմեցաւ սուրբ Կուսին. առ յանձնաշահութիւն բուրեցին Հօր, միածնականին և 'ի հաշտութ̃ տա երկնից ածեալ ան-ցուցեր ։

Օրհնեալ ես, փայտ սուրբ, որ փոխանակ փայտին՝ որով հողեղէն և շնչաւոր մարդն յանցանեցաւ, հնութեն եհաս և ապականութե, որով մահ Թագաւորեաց. իսկ եր-կրորդ մարդն տէրն յերկնից՝ զհո-գին կենդանարար ընկալեալ 'ի քեզ բարձեալ բերելով շնորհս 'ի մեզ Թագաւորեցուցեր ,, ։

ցելոց գոհու̃ն : Մեծատանց զգուշացուցիչ. աղքատաց անկողոպտելի[1] գանձ. անզգամաց զգաստու̃ն. ստահակաց խրատ. ընդվայրապարաց[2] նահանջ. կուսանաց զարդ. ամուսնացելոց կնիք : Տղայոց պահապան. մանկանց դաստիարակ. ծերոց ժողովարան. Ճանապարհորդաց առաջնորդ. աշխատելոց հանգիստ. նաւելոց նաւահանգիստ. մոլորելոց դարձ. տառապելոց յարկ ապաւինի. այրեաց ակնածու. որբոց խնամածու : Միայնացելոց պարիսպ. Ճգնաւորաց ժուժկալութ̃ի. ապաշաւելոց[3] իղձք. ախտացելոց բժշկութ̃ի. դիւաց ահարկու. հաւատացելոց առձեռնպատրաստ զէն. մեղուցելոց քաւարան. անմեղաց պահապան. կենդանեաց փրկարան. մեռելոց յոյս յիշատակի.

Արդ ամենայնիւ յամենայնի օրհնեալ ես, փայտ տուրք. որ յամենայնի վերտառութեամբ՝ յորժամ 'ի հուր ամենայն որ ինչ եղև եկեալ փոխեցի յահեղ աւուրն համառօտի, որ օրն է մեծ և երևելի, յերևել յամեցելոյ փեսային 'ի վերջնումն գիշերին, դու կարապետ յառաջագոյն երկնայնոյն ընթացեալ և հրաւիրակ, զաւետիս ապբերելով[4] գալստեան երկնաւոր թագաւորին : Ոչ որպէս տեսանիսդ տեսանելով՝ այլ որպէս իմանին, յայնժամ 'ի տեսիլ գոլով անմատոյց լուսով՝ փայլակնաբորբոք ջահաւորեալ 'ի չորս անկիւնս աշխարհի, Ճառագայթարձակ յարևելից լուսածագեսցիս՝ 'ի սպառ զլուսաւորացն լուցուցանել զկարծեցեալ Ճաճանչ : Զանտանելւոյն փառաց յայնժամ 'ի քեզ տեսանելով ըզլոյսն՝ առ 'ի յանդիմանու̃ն անհաւատից, և 'ի պարծանս հաւատացելոց, 'ի դատապարտութ̃ի անօրէնց, և բարեգործացն 'ի գովութ̃ի :

Յորժամ երկնաթռիչս զնախայարուցեալսն ըզսուրբսն 'ի Քս̃ կենդանեօքս հանդերձ, զբարեկամս փեսայինն լուսազգեստ, նմա՝ զհարսանեացն մտին մանկունսն՝ յառաջագոյն ընդ առաջ հրաւիրեսցես :

1 Երկու օրին. անկողոպտելի :
2 Ընդհանուր 'ի Մեկն. Բառգիր. ընդվայրապանաց :
3 Մի օրին. ապաշխարողաց :
4 Երկու օրին. տուեալ բերելով :

Իսկ աներկրպագուացն քեզ մոլորիցն[1] և ծուլիցն՝ զառանց լուսոյն և զյարակէզն հնոցացուցանելով զհուր, որով ընդ աջեացն և ընդ ահեկեացն ասի ՚ի բաց որոշութիւն[2]: Յորժամ ա̃մ որ զինքն արժանացոյց՝ մաքրութեամբ պատկեսցի․ և քում՝ ամենայն որ անձին անփոյթ արարեալ զփրկութ̃ն, օգնականութ̃ե կարօտասցի․ յորժամ զհնազանդեալս[3] համագոյակցին առ ամենահայրն՝ հասցէ իմանալ Որդւոյ մարդկութեանն մինչ ՚ի քեզ հնազանդեցելոյ․ որոյ[4] հետին առ ծայրագոյն անճառիցն ընկալցի և մացուաց, առ ՚ի լինել ա̃ծ ամենայնի[5] յամենայնում: Յորժամ ա̃մ զկատարումն հասեալ առցէ, յայնժամ յամենեցունց յայտնապէս խոստովանեսցիս մի միայն փրկութ̃ե անօթ՝ յերկնի եղեալ մարդկան և յերկրի ՚ի պարծանս քրիստոնէից և ՚ի փառս Ք̃ի:

Աստանօր իրաւապէս առցէ բանս զկայ՝ պայծառացեալ և պատուական սուրբ նշանիւս ՚ի Ք̃ս Յ̃ս ՚ի տէր մեր, որում փառք յաւիտեանս․ ամէն:

1 Մի օրին․ մոլորելոցն:
2 Ընորհակալին ՚ի մեկն․ բաժանման․ տալ հաստորոշութ̃է:
3 Մի օրին․ զհանդերձեալս:
4 Մի օրին․ յորոյ հետին:
5 Մի օրին․ ա̃ծ յամենայնում:

# ՆՈՐԻՆ

# ԴԱՒԹԻ

## ԵՌԱՄԵԾԻ

## ԵՒ

# ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

### ԸՆԴԴԷՄ ԱՌԱՐԿՈՒԹԵԱՆՑ ԶՈՐՈՒՑ

### ՊԻՀՌՈՆԻ ԻՄԱՍՏԱԿԻ

### ԵՒ ՍԱՀՄԱՆՔ ԵՒ ՏՐԱՄԱՏՈՒԹԻՒՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ

Որք միանգամ իմաստասիրութեան տենչան բանից, և առ 'ի նմանէ հեշտութեանց ծայրիւ միայն մատին հանդիպելին ճաշակեալք, զամենայն կենցաղական հոգոց բարեաւ մնալ ասացեալք, ողջախոհ իմն մոլութեամբ առ այսոսիկ վարեալք են։ Այլ անդուստ իսկ ապա էակացն մակացութեամբ՝ փութապէս զնոցին իսկ յինքեանս փոխեն զտենչանս։ Եւ մակացութիւն էակացն որպէս հանդերձեալ եմք ուսանել՝ իմաստասիրութիւն է։

Այլ արդ վասն զի բազում յօժարութեամբ և ողջախոհ զբաղմամբ և իմաստուն տենչմամբ յայսոսիկ վարեաց զմեզ 'ի հանդէս, բե՛ր զաստուածայինն հանդէս իմաստասիրութեան զգեցցուք։ Մի՛ զառաջիկայդ դժուարաձեռն համարելով, այլ առ եզր աստուածայինն խոստմանց դորա բացահայտելով, զամենայն աշխատութիւն նուաստ և

Երկրորդ նորին գալ վարկցուք . բայց բարւոք թուի ինձ սակաւ մի յառաջագոյն առնել պատմութեանս , և առուեստիցն հաւանել որոշմանց . որք ասեն՝ թէ պարտ է գրեթէ յամենայն իրողութիւնս չորս զայսո-սիկ խնդրել զգլուխս : Եթէ է՞ . և զի՞նչ է . և որ-պիսի՞ ինչ է . և վասն է՞ր է :

Այս յիրաւի այսոքիկ խնդրին . քանզի յիրողու-թեանցն ոմանք անգոյք են . որպէս Այղջերուաքաղն , և Մարալեզն , և որչափ ինչ միտս վերաստեղծէ մտա-ծութիւն . իսկ ոմանք գոյացութիւն[1] ունին . և այնո-ցիկ[2] դարձեալ որք զգոյացութիւն ունին՝ ոմանք երկ-բայաբար ունին զգոյացութիւն . որպէս անասող եր-կնին , և հակոտնեայքն[3] . քանզի յերկբայս եմք վասն այսոցիկ , եթէ են և եթէ ոչ . իսկ ոմանք աներկբայ-աբար ունին զգոյութիւն . որպէս մարդ , ձի , արծուի . որք խոստովանաբար գոն : Արդ 'ի վերայ անգոյիցն՝ և այնոցիկ որք երկբայաբար ունին զգոյութիւն՝ զե-թէէն խնդրել պարտ է . իսկ 'ի վերայ այնոցիկ որք աներկբայաբար ունին զգոյացութիւն՝ ոչ է պարտ խնդ-րել զեթէէն , այլ զզի՞նչէն : Իսկ զինչէն կամ ա-նուամբ ճանաչի մեզ՝ և կամ սահմանաւ : Այս ա-նուամբ . յորժամ տեսանելով ինչ՝ ասեմք զի՞նչ է . ա-սեմք թէ մարդ է : Իսկ սահմանաւ՝ յորժամ ասեմք , կենդանի բանաւոր[4] մահկանացու՝ մտաց և հանճա-րոյ ընդունակ :

Այս վասն զի ամենայնք յիրողութեանցն ոչ միայն հասարակութիւն[5] ունին առ միմեանս , այլ և զանա-զանութիւն . քանզի կենդանիք ոչ միայն հասարակութիւն ունին առ միմեանս , այս ինքն է ըստ սեռաւն , ըստ ո-րում կենդանիքն գոն , այլ և զանազանութիւնս . վասն զի ոմանք բանականք և ոմանք անբանք գոն . ոմանք մահկանացուք և ոմանք անմահք . վասն այսորիկ խնդրի և որպիսիինչէն . զի նովաւ ուսցուք զզանա-զանութիւնս : Քանզի հարցանելովն՝ թէ որպիսի՞ ինչ է . ասեմք թէ բանական՝ թէ անբան . մահկանացու՝

1 Երկու օրին . գոյացութիւն :
2 Երկու օրին . այնոքիկ :
3 Երկու օրին . հակափնեայքն .
4 Մի օրին . բանախօսող :
5 Մի օրին . հասարակութիւն :

թէ անմահ։ Եւ գիտելի է, զի բազում անգամ որպիսիինչէն 'ի զինչէութիւն երեւի։ Քանզի յորժամ զինչէն սահմանաւ ճանաչէ, յայնժամ որպիսիինչէն 'ի զինչէութիւն տեսանի. քանզի զինչէն համադերձ սահմանաւն երեւի։

Իսկ յորժամ զինչէն առանց ճանաչէ, յայնժամ որպիսիինչէն ոչ երեւի 'ի զինչէութիւն. եւ պարտ է յայնժամ եւ զորպիսիինչէն խնդրել։ Եւ վասն զի ամենայնքն 'ի գոյիցս առ կատարութիւն ինչ տեսանիլ ըստաւորեցան, եւ ոչինչ ընդունունայն եւ վայրապար ոչ ստեղծիչն եստեղծ, ոչ բնութիւն, եւ ոչ արհեստ, վասն այսորիկ կարեւորապար զվախճանս խնդրեմք։ Որգոնս. վասն է՞ր են մահիճք. վասն հանգստեան մարդկան. եւ վասն է՞ր է մարդ. վասն զարդարելոյ զզգալիսս։ Քանզի եթէ ոչ էր մարդկային սեռն, ա̃մ անկատար գոյր. որպէս յայտ առնէ եւ Պղատոն 'ի Տիմէոսի տրամաբանութեան։ Քանզի այսպէս ասէ յաղագս արարչին՝ թէ յետ առնելոյն զերկինս եւ զերկիր, հրամայեալ առ իմանալի զօրութեանն այսպէս եւ ըստ այսմ օրինակի։ Եթէ այլ եւս երեք սեռք մահկանացուք պակաս գոն մեզ անեղանելիք. որոց ոչ եղելոց երկինն անկատար։ Իսկ մերք ասացելոցդ ըստ այսմ օրինակի. եթէ այլ եւս երեք սեռք մահկանացուք պակաս գոն մեզ անեղանելիք, այսինքն տակաւին ոչ եւս եղեալք։ Որք են երեք սեռք մահկանացուք. օդայինք, ջրայինք, երկրայինք, յորոց եւ մարդն է. որոց ոչ եղելոց՝ որպէս ասէ, երկին անկատար։ Երկին կոչեաց զաշխարհ. 'ի պատճառականէն զպատճառակեալն նշանակելով. քանզի երկին պատճառական աշխարհս։

Եւ արդ վասն զի իմաստասիրութիւն է առաջինկայս մեզ, եւ գեղեցկագոյն եւ պատուականագոյն ա̃մ գործոց մարդկան, որ առ 'ի մէնջ ոչ երկրայանի վասն գոլոյն. բայց յայլոց ա̃մնց երկրայանի. որպէս 'ի կուրաց քաստակիցելոց [1] յաղագս գունից [2] շարաբանեցելոց։ Յաղագս որոց եւ Ստագիրացին ասէ, եթէ 'ի ծնէ կոյրք ոչ կարեն յաղագս գունից շարաբանել.

1 Մի օրին. փափաքեցելոց։  2 Երկու օրին. գունոց։

վասն զի և ոչ գիտէին 'ի բնութէ զգոյնս : Որք զայ-սոցիկ զգամս արտադրեսցուք , և զերդմունս նոցա որ-պէս և կարողութի է արասցուք , յայտնապէս զան-մտութի նոցա յանդիմանելով : Այլ եթէ որպիսի՛ ինչ իցեն այսոքիկ բանք , 'ի հետակայումն տեսաւո-րութե [1] ուսցուք .

1 Երկու օրին. փէսոսիէ :

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՈՐԾԱՒՈՐՈՒԹԻՒՆՍ

### ՊՐԱԿՔ Ա.

Քանզի որպէս յառաջնումն[1] տեսութեան խոստացաք զբանս կամեցելոցն երծանել, զգոյութիւն իմաստասիրութեան[2] արտադրեսցուք. և զնոցին երծմունս ըստ կարողութեան արասցուք։ Այլ է նախ առաջին ձեռնարկութիւն այնոցիկ՝ որք երծանեն զգոյութիւն իմաստասիրութեան. այսպէս և ըստ այսմ օրինակի արտաքերի։

Էն 'ի համանուանց է. իսկ համանունքն ընդ սահմանաւ ոչ ստորանկանին և ոչ ընդ գիտութեամբ. ապա ուրեմն էն անգիտելի է. իսկ իմաստասիրութիւն գիտութիւն էիցն է ըստ ձեզ, յայտ է թէ անգիտելի է, որովհետև էն անգիտելի է։ Արդ յայսմ ձեռնարկութեան ըստ երկուց յեղանակաց պատահեմ ձեզ. ընդդիմակայութեամբ, և ընդդիմայարակայութեամբ։ Այլ է ընդդիմակայութեանն գործ՝ անդուստ 'ի սկզբանն ճշմարիտ գոյացուցանել զնա, և ոչ երբեք չփութել զառաջիկայն։ Արդ երծանելով զառաջին ձեռնարկութիւն երծանողացն զիմաստասիրութեան գոյութիւն, պիտանանաւք ընդդիմակայմամբ, և ընդդիմայարակայութեամբ։

Այլ ընդդիմակայմամբն այսպէս ասելով, եթէ ոչ է էն 'ի համանուանցն, այլ յայնցանեացն, որք որպէս 'ի միջէն և առ մին են. քանզի թէ զի՞նչ են համանունքն՝ յառաջիկայսն ունիմք ուսանել։

Իսկ ընդդիմայարակայութեամբ պիտանացեալ ասեմք, զի թէպէտ և տամք զէն 'ի համանուանցն գոլ՝ այլ ոչ եթէ այսուիկ ինչ անգիտելի է։ Քանզի թէպէտ և ոչ կարողք գոն համանունքն ընդ սահմանաւ ստոր

1 Մի օրին. յառաջիկայումն։ 2 Մի օրին. իմաստութեան։

անկանիլ, այլ ոչ այսպիսիք անգիտելիք գոն ։ Վասն զի որոշումն է տրամաբանականին, որ ասէ, թէ պարտ է 'ի վերայ հոմանունանցն զերիս զայսոսիկ խնդրել. եթէ քանիս ունի նշանակութիւնս հոմանունն. և եթէ յաղագս որո՛յ նշանակութեն է բանն. և երրորդ ապա ստորագրել և կամ սահմանել զմի 'ի նշանակութեանցն յաղագս որոյ բանն է ։ Որզոն, արդ յորժամ յարացուցիւ հաւաստեացուք զասացեալսդ ։

Յորժամ վասն շան է բան, վասն զի 'ի հոմանունանցն է այս ձայն, նախ առաջին պարտ է քննել, թէ քանիս ունի նշանակութիւն. որզոն, եթէ նշանակէ զաստղայինն, և զծովայինն, և զերկրայինն ։ Նաև երկրորդ ասի՝ թէ յաղագս որո՛յ նշանակեցելոյ այս խնդիրն թէ յաղագս որո՛յ շան է բանն ։ Նաև երրորդ զայն յաղագս որոյ բանն է՝ ընդ ստորագրութ̄բ կամ ընդ սահմանաւ ստորարկանել[1]. որզոն, թերևս յաղագս երկրայնոյ շան է բանն, ասեմք կենդանի է չորքոտանի հաչողական ։

Արդ այսպէս և 'ի վերայ էից զերիս զայսոսիկ խնդրեմք ։ Վասնզի խնդրեմք նախ առաջին՝ թէ որչափ նշանակութիւս ունի. և ասեմք, թէ ըստ տասն նշանակեցելոյն էն բերի. այս ինքն ըստ տասն ստորագրութեանցն ։ Նաև երկրորդ խնդրեմք՝ թէ յաղագս որո՛յ նշանակեցելոյ է բանն. այսինքն յաղագս գոյացութեա՞ն, թէ յաղագս քանակի՞, թէ յաղագս որակի՞, թէ յաղագս այլոցն ։ Նաև երրորդ զնշանակեցեալն ընդ սահմանաւ և կամ ընդ ստորագրութ̄բ արկանեմք. իսկ եթէ ընդ սահմանաւ և ընդ ստորագրութեամբ արկանեմք, յայտ է թէ ոչ է էն անգիտելի ։

Իսկ երկրորդ գլուխ եղծանողաց զգոյութի իմաստասիրութեն՝ յառաջ գայ այսպէս և ըստ այսմ օրինակի ։ Էակքն 'ի հոսման և 'ի ծորման են. և ոչ երբէք հանդիպին դադարման. քանզի յառաջանայ քան զբանն փոփոխումն էակացն, և գրեա թէ յառաջ քան զձայնելն զնոցանէ զբանն՝ փոփոխին ։ Նաև բերեն յարացոյց ինչ այսպիսի. եթէ զոր օրինակ 'ի հոսանուտ գետ՝ 'ի նոյն ջուր անկար է երկիցս թանալ

1 Երեք օրին. ստորարկել ։

զգան ։ Եւ կամ որպէս ասեմք եւս յարաձգելով զպարակուսանող ասեն, եթէ եւ ոչ մի անգամ կարողուի է 'ի նոյն ջուր թանալ զոտն՝ այն ինչ ջրոյն փութապէս 'ի բաց հոսեցելոյ եւ անցելոյ ։ Այնպէս եւ էակքն 'ի հոսման եւ 'ի ծորման գոլով՝ եւ դադարման հանդիպեալ եւ ոչ մնում, եւ յայտ է՝ եթէ ոչ ստորանկանին ընդ գիտութեամբ. քանզի եւ 'ի կամելն մտօք գիտել՝ փոփոխին. եւ 'ի զանազան ժամանակս զանազանապէս ունին. եւ ոչ ոք կարէ հասանել եւ գիտել զնոսա ։ Արդ զիարդ իմաստասիրութիւն գիտութիւն էակացն է, ուր էակքն 'ի հոսման եւ 'ի ծորման գոլով անգիտելիք են ։

Եւ այլ ազգ դարձեալ ասեն. եթէ զի եղիցի հասումն՝ պարտ է գիտողին պատկանիլ գիտելւոյն. եւ գիտող ասեն զանձն. իսկ գիտելի զէնթակայ իրն ։ Արդ զի եղիցի պատկանութիւն՝ այս ինքն ըմբռնումն եւ կարող հասումն, պարտ է գիտելւոյն ոչ շարժիլ եւ ոչ զանազանաբար գոլ ։ Ապա եթէ շարժի գիտելին եւ փոփոխի, պարտ է եւ գիտողին՝ այս ինքն անձին՝ շարժակից եւ փոփոխակից լինել ։ Եւ թերեւս ուրեք գիտելին սպիտակ լինիցի, պարտ է եւ անձինն սպիտակ լինել ։ Եւ թէ գիտելին ջուր, պարտ է եւ անձինն ջուր լինել. զի գիտասցէ նմանութեամբ զնմանն ։ Այլ արդ անձն ոչ փոփոխակից լինի գիտելւոյն. եւ յայտ է թէ ոչ կարէ գիտել զգիտելին ։ Ապա ուրեմն իմաստասիրութիւն ոչ կարող գոյ լինել գիտութիւն էակացն. վասն զի ոչ ստորանկանին ընդ գիտութեամբ էակքն ։ Զայսոսիկ այնոքիկ ։

Արդ որս ասեմք նախ եւ առաջին, թէ իմաստասիրութիւն ոչ եթէ զմասնականացն [1] լինի, որք 'ի ծորման եւ 'ի հոսման են, այլ զհանուրցն լինի, որք ոչ փոփոխին, այլ միշտ նոյնպէս ունին ։ Երկրորդ զի թէպէտ եւ ասեմք զիմաստասիրութէ թէ վասն մասնականացն է, ոչ եթէ վասն այնորիկ ոչ կարող գոյ հասանել ինչ եւ գիտել. վասն որոյ գիտողն՝ այս ինքն անձն՝ ոչ փոփոխակից լինի գիտեցելոյն. այս ինքն ենթակայութեան ։ Քանզի ըստ այսմ բանի՝ եւ ոչ ծնայինն

1 Մի օրին. 'ի մասնաւորացն .... 'ի հանուրցն ։

գիտասցէ ինչ 'ի գոյիցն . վասն ոչ փոփոխակից լինելոյ գիտելեացն, այլ միշտ նոյնպէս է և մնայ ։ Նաև դարձեալ ըստ այդմ բանում՝ և ոչ բժիշկ ըստ բնութեան առողջ գոլով՝ կարող եղիցի ճանաչել զցաւս անցաւ բնութե՛ը . այս ինքն յորժամ ողջ գոյ՝ ոչ կարէ տրոհել զցաւն, այլ հարկաւորի հիւանդանալ՝ զի զհիւանդութիւնն գիտասցէ ։ Բայց բազում անգամ անձն յառաջ քան զփոփոխել իրացն գիտէ զնոսա . որպէս և Պղատոն յայտ առնէ ասելովն, եթէ առաքինեացն անձինք ոչ միայն 'ի վերջոյ զգան իրացն, այսինքն հետևել բնաւորեցան, այլ բազում անգամ յառաջէն քան զնոսա և գիտեն ։ Արդ այսու-քիկ այսպէս ։

Երրորդ ձեռնարկութի եղծանողացն զիմաստասիրութի՝ եթէ ամ̃ գիտելիքն ընդ զգայութե՛ [1] ստորանկանին . որպէս և Պղատոն յայտ առնէ ասելովն՝ թէ արարիչն տեսողութի և լսողութիւն շնորհեաց մեզ, զի 'ի ձեռն սոցա զիմաստասիրական սեռն ուղղեսցուք ։ Արդ զայս առնելով՝ խոստովանաբար ասեմ, եթէ ուրեք ցուցանեմք 'ի ձեռն բաժանմանն, եթէ մասունք իմաստասիրութե՛ ոչ կարողք գոն լինել մասունք իմաստասիրութե՛, յայտ է թէ ոչ և բոլորն ասեմ՝ այս ինքն իմաստասիրութի կարող գոյ [2] բաղկանալ ։ Նաև ասեմ, եթէ ըստ ձեզ իմաստասիրութիւն բաժանի 'ի տեսականն և 'ի գործականն ։ Նաև դարձեալ տեսականն բաժանի 'ի բնաբանականն՝ և յուսումնականն՝ և յաստուածաբանականն ։ Արդ եթէ կործանեմք զայսոսիկ զմասունս, յայտ է թէ և ոչ բոլորն կարող գոյ բաղկանալ իմաստասիրութի . վասն զի մասանցն ոչ գոլով՝ և ոչ բոլորն կարող գոյ բաղկանալ ։

Նաև ասեմ՝ թէ ուսումնականն ոչ է մասն իմաստասիրութե՛, որպէս և Պղատոն կարծէ . քանզի և նա ոչ կարծէ զուսումնականն մասն գոլ իմաստասիրութեան, այլ նախակրթութի ինչ . որպէս և քերթողականն և ճարտասանականն ։ Սուտփ և 'ի վերայ ի-

1 Երկու օրին . Գիտութե՛ ։
2 Մի օրին . կարող լինել ։

րոյ համալսարանին մակագրեաց, Աներկրաչափն մի՛ ներքսամտեսցէ: Իսկ զմնաբանականէն ասեմ, եթէ կարծանեսցուք զնա 'ի ձեռն երկրորդ ձեռնարկութե̃ն ասելով, թէ էակքն 'ի հոսման և 'ի ծորման են. և դադարմանն հանգիստին և ոչ ուրեք: Իսկ զմ̃ծաբանականն եղծանեն այսպէս. եթէ մ̃ծայինքն ըստ ըզգայութե̃ ոչ երբէք ստորանկանին և ոչ ըստ գիտութեամբ. ապա ուրեմն և մ̃ծայինքն անդիտելիք են: Արդ այսոքիկ այսպէս:

Առ որս ասեմք, եթէ տակաւին ըստ դէմ [1] գործականին ոչ ինչ ասացէք, որ ընդդիմաբաժանի սեռականուե̃. և յայտ է եթէ ոչ զմ̃ն իմաստասիրութե̃ եղծին. վասն զի և գործականն մասն է իմաստասիրութե̃: Որպէս և Պղատոն յայտ առնէ ասելովն՝ թէ իմաստասէր կոչեմ ես ոչ զբազմագէտն՝ և ոչ զայն որ կարող գոյ բազում ինչ առնուլ 'ի մերման, այլ զայն՝ որ անարատ և անբիծ վարս ստացեալ ունի յինքեան. որ է գործական իմաստասիրի: Զայսոսիկ այսպէս:

Բայց եկեսցուք և պատասխանատրեսցուք յաղագս ուսումնականին և բնաբանականին և աստուածաբանականին: Առ յաղագս ուսումնականին ասեմք, եթէ ոչ կարծէ զնա Պղատոն ոչ գոլ մասն իմաստասիրութեան, եթէ ոչ ծայրագոյն իմաստասիրութե̃, այս ինքն մ̃ծաբանականին. քանզի ծայրագունին ոչ կարծէ զնա գոլ մասն: Այլ զի գիտէ զուսումնականն մասն իմաստասիրութե̃, յայտ առնէ մակացութիւն զնա կոչելով. արդ եթէ մակացութիւն է, յայտ է եթէ մասն է իմաստասիրութե̃. իսկ Արիստոտէլ յայտնապէս զուսումնականն մասն իմաստասիրութե̃ կոչէ: Իսկ յաղագս բնաբանականին պատասխանատրեսցուք. յեղծումն արկեալ զերկրորդն ձեռնարկութե̃, որ ասէին՝ թէ էակքն 'ի հոսման և 'ի ծորման են: Իսկ յաղագս մ̃ծաբանականին ասեմք, թէպէտ և մ̃ծայինն անդիտելի է ըստ ինքեան, այլ սակայն տեսանելով զստեղծուածս և զարարածս նորա՝ և զբարեկարգապէս շարժումն աշխարհի՝ 'ի մտածութիւն և 'ի կարծիս գամք ստեղծչին: Իսկ անե-

1 Երկու օրին. յաղագս գործականին:

րևոյթն յերևելեացս փութադոյն ունի զճանաչելն : Արդ այսպէս յեղծումն արկեալ և զերրորդ նոցա ձեռնարկութին՝ դադարեցուսցուք զառաջիկայ տեսութիւնս :

Չորրորդ ձեռնարկութի[1] հանդիպի ընդդիմակացուաց իմաստասիրուէ այսպէս և ըստ այսմ օրինակի : Իմաստասիրութի կամ գիտութի է՝ կամ ոչ է գիտութի . եթէ ոչ է գիտութի , ապա և ոչ արհեստ և ոչ մակացութի կարող գոյ գոլ : Իսկ եթէ գիտութի է , կամ ընդհանուր է կամ մասնական : Իսկ եթէ մասնական գոյ՝ յոռեգոյն գոյ քան զայլ արհեստս և զմակացութի . քան զքերթողականն ասեմ և քան զճարտասանականն . քանզի նոքա ունին ընդհանուր բացորոշութիս : Իսկ եթէ յոռեգոյն է քան զայլ արհեստ , զիա՞րդ ասէք զնա արհեստ արհեստից և մակացութի մակացուեց : Իսկ եթէ ընդհանուր գիտուէ է , ոչ կարէ գոյանալ 'ի միում անձին . վասն զի ընդհանուր գիտութի՝ ընդհանուր պատահումն է . իսկ ընդհանուր պատահումն ոչ կարէ 'ի մասնական ենթակայումն գոյանալ . վասն զի ընդհանուր սպիտակն ոչ կարէ 'ի ձեան բաղկանալ . ապա թէ ոչ՝ ոչ կարէ 'ի բռում՝ կամ 'ի կաթնում գոյանալ : Արդ եթէ իմաստասիրութիւն ընդհանուր գիտութիւն է՝ ոչ կարէ 'ի մասնական ենթակայում գոյանալ . այս ինքն 'ի Սոկրատում կամ 'ի Պղատոնում :

Զայս տարակուսութի լուծանելով ասեմք , թէ իմաստասիրութի ընդհանուր գիտութի է . և ոչ եթէ վասն այսորիկ ոչ կարէ 'ի միում ենթակայում բաղկանալ , վասն զի ընդհանուր գիտութի է , քանզի այլ է ընդունակ ընդհանուր պատահման , և այլ ընդունակ ընդհանուր իմաստասիրութե : Քանզի ընդունակ ընդհանուր պատահման՝ մարմին . և ընդունակ ընդհանուր իմաստասիրութե՝ միտք : Եւ թէպէտ և մի մարմին[2] ոչ կարէ զընդհանուր պատահումն ընդունել . քանզի որպէս ասացաք , եթէ Սոկրատէս ոչ կարէ զընդհանուր սպիտակն ընդունել . զի եթէ կա-

1 Մի օրէն . փարախուսութի :

2 Երկու օրէն . և մի մասն :

րող գոյր Սոկրատէս զընդհանուր սպիտակն ընդունել, ոչ կարող գոյր սպիտակն յայլում ումեք երևել ։

Այլ թերևս Սոկրատէս մարմնով ոչ կարէ զընդհանուր սպիտակն ընդունել, այլ սակայն մտօք ըմբռնման ընդհանուր սպիտակին կարէ ընդունել. քանզի կարէ գիտել Սոկրատէս, եթէ ընդհանուր[1] սպիտակն գոյն է արտադատող աչաց ։ Եւ ըստ այլում օրինակի պարտ է զայս ցուցանել. քանզի մարմին ոչ կարէ զհակառակսն սեռաբար և առանց շփոթութեան ընդունել'ի միում մասին և ըստ միում ժամանակի ։ Քանզի ոչ իսկ կարէ զսպիտակն և զսևան սեռնաբար և առանց շփոթութեան ընդունել ըստ միում մասին և ըստ միում ժամանակի ։ Եւ ասացեալ ըստ միում մասին. վասն զի ըստ այլ և ըստ այլ[2] մասին կարէ զհակառակսն ընդունել'ի միում ժամանակի ։ Եւ ըստ միում ժամանակի ասացեալ. վասն զի'ի միում մասին կարողք գոն հակառակքն անշփոթաբար գոյանալ ըստ այլ և այլ ժամանակի ։

Արդ թէպէտ և մարմին ոչ կարէ զհակառակսն սեռնաբար և առանց շփոթութեան ընդունել'ի միում մասին և ըստ միում ժամանակի, սակայն միտք կարողք գոն'ի միում ժամանակի զընդհանուր հակառակացն զբանսն ընդունել յինքեանս ։ Քանզի կարող է գիտել եթէ ընդհանուր սպիտակն գոյն է արտադատող աչաց. և թէ ընդհանուր սևան գոյն է բաղդատող աչաց ։ Իսկ եթէ կարողք գոյ միտքն, որք բնաւորեցան գոլ յանհատն հանուր մարդոյ՝ զհակառակսն սեռնաբար և անշփոթաբար ընդունել'ի միում ժամանակի, զիա՞րդ ոչ կարող գոյ միտք զընդհանուր զիմաստասիրութիւն[3] ընդունել, որ գոյիցն է գիտութիւն ։

Եւ վասն զի կատարեալ վարդապետութիւն է այն՝ որ ոչ միայն զընդդիմակայ տարակուսութիւնս լուծանէ, այլ և որ զիւրն կարող գոյ հաստատել ։ Եւ արդ քանզի լուծաք զառաջին եղեալ տարակուսութիւնս,

1 Մի օրին. ընդհանուր. որ և այլուր բաղում անգամ ։

2 Մի օրին. ըստ այլ և այլ մասին ։

3 Մի օրին. զիմաստութիւն ։

բե՛ր այսուհետեւ ցուցցուք, եթէ է իմաստասիրութիւն այսպէս եւ ըստ այսմ օրինակի։

Եթէ է ա̃ծ, է եւ իմաստասիրութիւն։ Բայց արդ՝ է ա̃ծ. քանզի Եպիկուրայքն[1] ասեն, եթէ ոչ է ա̃ծ։ Արդ եթէ է ա̃ծ, է եւ նախախնամութիւն. քանզի ոչ միայն ստեղծանէ ա̃ծ, այլ եւ խնամ տանի ստեղծուածոյն։ Արդ եթէ նախախնամութիւն է, է եւ իմաստութիւն[2]. քանզի ոչ եթէ անքննաբար՝ այլ իմաստութեամբ նախախնամէ։ Իսկ եթէ է իմաստութիւն, է եւ բաղձանք իմաստութեան։ Իսկ եթէ բաղձանք իմաստութեան, եւ սիրելութիւն իմաստութեան։ Իսկ եթէ սիրելութիւն իմաստութեան, ապա եւ իմաստասիրութիւն։ Քանզի ոչ այլ ինչ է սիրելութիւն իմաստութեան, եթէ ոչ իմաստասիրութիւն։

1 Մի օրին. Եպիկուրացւոցն է։ 2 Մի օրին. իմաստասիրութիւն։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

# ԳՐԱԿՔ Բ.

*Զի թէպէտ եւ աւելորդ էր 'ի խնդիր անկանել[1] յաղագս իմաստասիրութեան եթէ է, այլ սակայն զճշմարտութիւն որպէս նիզակակից 'ի կիր առեալ՝ զբանս այնոցիկ որք փորձեցան զգոյութիւն իմաստասիրութեան բառնալ՝ որպէս տկարս կործանեցաք։ Քանզի այնոցիկ՝ որոց կենցաղն հեռի է, որք են պիհռոնացիք, զա՟մ ինչ եղծանել կամելով զմայր ապացուցին՝ այս ինքն զիմաստասիրութիւն 'ի ձեռն ապացուցի կամեցան եղծանել. որպէս զիմաստասիրութիւն 'ի ձեռն իմաստասիրութեան եղծանել։ Ըստ որս հանդիպի Պղատոն ախտացեալ[2] առ ասացեալս նոցա ոչ գոլ հասումն, ասելով եթէ զիա՞րդ ասէք ոչ գոլ հասումն. որպէս հասեա՞լք, եթէ որպէս ոչ հասեալք։ Եւ եթէ որպէս հասեալք, յայտ է թէ հասէք, եւ է հասումն։ Իսկ եթէ որպէս ոչ հասեալք, ո՞վ հաւատասցէ ձեզ յասելդ զայդ, ոչ հասելոցդ եւ ոչ գիտացելոցն։*

*Բայց եւ Արիստոտել յիւրում[3] յորդորականումն, յորում յորդորէ զհամբակս յիմաստասիրութիւն ասէ այսպէս։ Թէպէտ եւ ոչ է իմաստասիրելի, իմաստասիրելի է. եւ եթէ իմաստասիրելի, իմաստասիրելի է. բայց ա՟մ իրօք իմաստասիրելի է։ Այս ինքն՝ թէպէտ եւ ասէ ոք ոչ գոլ զիմաստասիրութիւն, ապացուցի պէտս ունի, որով բառնայ զիմաստասիրութիւն։ Իսկ եթէ ապացուցի պէտս ունի, յայտ է թէ իմաստասիրէ. քանզի մայր ապացուցի իմաստասիրութիւն է։ Եւ եթէ ոք ասէ գոլ զիմաստասիրութիւն, դարձեալ իմաստասիրէ. զի ապացուցի պիտանանայ, որով ցու.*

1 Երեք օրին. արժանէր։

2 Մի օրին. հանդիպի Պղատոն առ ասացեալս նոցա։

3 Երկու օրին. յիւրում յառաջին յորդորականումն։

ցանէ զօղ զնա. ապա ուրեմն ամ̃ իրօք իմաստասիրէ, և որ բառնայ զնա՝ և որ ոչն բառնայ. քանզի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ապացուցի պէտս ունի, որովք հաւատարիմք լինին ասացեալքն: Իսկ եթէ ապացուցի պէտս ունի, յայտ է եթէ իմաստասիրէ. քանզի մայր ապացուցի որպէս և ասացաք՝ իմաստասիրութիւն է:

Արդ 'ի բաց թողեալք զէթէէն, խնդրեսցուք եթէ զի՞նչ է իմաստասիրութի՛ և որպիսի՞ ինչ է: Այլ պարտ է գիտել, եթէ իմաստասիրութիւն մի ինչ է, որպէս բոլոր պա՛հանջելով. և բազմացեալ գոյ, որպէս զանազան մասունս ունելով: Ապա որպէս մի ինչ գոլ՝ զնա սահմանեսցուք, իսկ որպէս բազմացեալ՝ բաժանեսցուք. քանզի անտեղի է այլոց արհեստից սահմանս տալ և բաժանել, իսկ իմաստասիրութեանն ոչ սահմանս տալ և ոչ բաժանումն, յորմէ ամ̃ արհեստք յառաջ գան:

Այլ պարտ է գիտել, եթէ զսահման և զբաժանումն յիշէ Պղատոն: Զսահման 'ի Փեդոնի [1] տրամաբանութեն ասելով, թէ Ով մանուկ դու, մի է սկիզբն գեղեցկաբար խորհելոյն [2]. գիտել յաղագս ո՞յր է մտածութեն. ապա թէ ոչ՝ հարկ է յամենայնէն վրիպել. այս ինքն՝ եթէ կամի ոք յաղագս իրի ուրուք ճշմարտաբար խորհել և մտածել, պարտ է նախ գիտել զնորին իրի բնութիւնն. այս ինքն զսահմանն: Քանզի որ ոչն գիտէ զսահմանն, վրիպի յայնցանեաց ամենեցունց, որք հետևելն բնաւորեցան նորին իրի. որգոն, եթէ ոք կամիցի գիտել զի՞նչ է բժշկութիւն. եթէ ոչ նախ գիտիցէ զէութի՛ բժշկութեանն, եթէ յաղագս մարդկային մարմնոյ լինի. այլ կարծէ զնա յաղագս փայտի լինել. զինչ բանս զոր և ասէ յաղագս բժշկութե՛, ընդունայն ասէ: Իսկ զբաժանումն յիշէ 'ի Սոփեստեայ տրամաբանութեն ասելով, թէ Ըստ բաժանական հնարս ոչ ինչ պանծացի փախչել. քանզի և ոչ ինչ է որ փախչի 'ի բաժանմանէ. քանզի յորժամ ասեմք, թէ 'ի կենդանեացն ոմանք բանականք են և ոմանք անբանք, և ոչ ինչ է որ առանց

1 Յօրինական Փեդոնի: 2 Երկու օրին. խորհելոյն. այս ինքն գիտել:

տոյգ է. քանզի ոչ գոյ կենդանի որ ոչ է բանական
կամ անբան ։

Նոյ դարձեալ նոյն ինքն 'ի նորին տրամաբանութեն
յաղագս բաժանման ասէ. զայսորիկ ասեն՝ զբաժա-
նումն պարգևեալ մեզ 'ի ձեռն Պռիմիթեայ երևե-
լական հրոյ։ Նոյ պարտ է գիտել՝ եթէ որք առաս-
պելաբանեն ասեն, թէ Պռիմիթեւս գողացաւ եր-
բեմն յԱստուածոցն հուր՝ և շնորհեաց մարդկան.
որ է այլաբանութի։ Վասնզի նախ և առաջին Պռի-
միթեւս եգիտ զբաժանողական հնարս. քանզի բա-
ժանողական հնարն համեմատի հրոյ. վասն այսորիկ
ասեն զնմանէ շնորհել հուր մարդկան ։ Նոյ զի բա-
ժանողականն համեմատի հրոյ՝ աստուստ է յայտ.
զոր օրինակ հուր տրոհէ 'ի միմեանց զհոմասեռսն և
զայլասեռսն ։ Նոյ զհոմասեռսն՝ որգոն զհրահալե-
լիսն. այս ինքն զարծաթ և զոսկի և զանագ և զպղինձ
և զկապար. քանզի այսոքիկ հոմասեռք են. վասն
զի սեռ ունին զհրահալելին և հրով տրոհին 'ի մի-
մեանց. նա և հրով իսկ տրոհի արծաթ յոսկւոյ՝ և
կապար 'ի պղնձոյ ։ Իսկ զայլասեռսն՝ որգոն յոր-
ժամ 'ի ձեռն հրոյ ասեմք տրոհել զժանկն յարծա-
թոյ և 'ի պղնձոյ. այսպէս և բաժանողականն հա-
մեմատիլ ընաւորեցաւ հրոյ, 'ի տրոհելն [1] և զհոմա-
սեռսն և զայլասեռսն։ Նոյ զհոմասեռսն՝ որգոն յոր-
ժամ ասեմք, եթէ կենդանեացն ոմանք բանականք են
և ոմանք անբանք. որք են հոմասեռք. վասն զի հա-
սարակ սեռ ունին զկենդանին ։ Իսկ զայլասեռսն՝ որ-
պէս յորժամ 'ի ձեռն բաժանման բաժանեալ տրո-
հեմք զտասն թիւ 'ի քերականութենէն, որ են այլա-
սեռք. քանզի քերականութի ընդ հանուր արուեստիւ
է, որ է ընդ որակութը. իսկ տասն թիւ ընդ թուա-
կանութը է, որ է ընդ քանակութը ։

Արդ այսոքիկ այսպէս գոլով, եկեսցուք և սահ-
մանեսցուք զիմաստասիրութի, և բաժանումն նորին
արասցուք ։ Բայց պարտ է քննել, եթէ զո՞ր պարտ է
առաջին դասել. զսահմանե՞լն եթէ զբաժանելն ։ Նոյ
պարտ է գիտել, եթէ պարտ է նախ սահմանել՝ և ա-

1 Երկու օրին. 'Ի բաժանելն ։

պա բաժանել վասն այսր պատճառանաց ։ Վասնզի սահմանն վերաբերի միակի. իսկ բաժանումն բազմութեան. արդ որպէս միակն յառաջ է քան զբազմութիւն, նոյն օրինակաւ և սահմանն համեմատելով միակի՝ յառաջ է քան զբաժանումն, որ համեմատի բազմութեան. և զի սահմանն համեմատի միակի՝ իսկ բաժանումն բազմութեան՝ աստուստ է յայտ ։ Զոր օրինակ միակն մի ինչ է և մի բնութիւն, նոյնպէս և սահմանն զբազումն մի ինչ առնէ, և մի բնութեան բացակատարէ ։ Վասնզի մարդ՝ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ, մի բնութիւն բացակատարէ զընդհանուր մարդն. իսկ բաժանումն զընդդէմ նորին զմինն 'ի բազումս տրամատէ և յանբաւս. քանզի առնու զգոյացութիւն և բաժանէ 'ի մարմին և յանմարմին. և զմարմինն 'ի ներբուսականն և յանբուսականն ։ Նմանապէս և զայլսն որ 'ի կարգի ։

Արդ եկեսցուք և սահմանեսցուք զիմաստասիրութիւն ։ Այլ վասն զի որպէս ոչ է կարողութիւն հիւսել զհետևաբանութիւն եթէ ոչ նախ ուսանիցուք զինչ է հետևաբանութիւն և ուստի եղանի, այսպէս և սահմանել անհնար է, եթէ ոչ նախ ուսանիցուք եթէ զինչ է սահման ։ Արդ զայս գիտելով, գլուխս ոմանս թուով ինն յարադրեսցուք[1] ։

Առաջինն՝ յորում ասեմք զինչ է սահման ։ Երկրորդն՝ յորում ասեմք, թէ ի՞ւ զանազանի սահման 'ի սահմանադրութենէ՝ և 'ի ստորագրական սահմանէ ։ Երրորդ՝ թէ ուստի ասի սահման ։ Չորրորդ՝ թէ ուստի առնու[2] սահման ։ Հինգերորդն՝ յորում ասեմք, եթէ ո՞ր է կատարեալ սահման՝ և ո՞ր անկատար. և զի՞նչ է յոռութիւն և զի՞նչ առողջութիւն սահմանի ։ Վեցերորդն՝ յորում ասեմք, քանի՞ք են սահմանք իմաստասիրութեան ։ Եօթներորդն՝ յորում ասեմք, վասն է՞ր են այսքանիք[3] սահմանք իմաստասիրութեան՝ և ոչ նուազք և ոչ յոլովք ։ Ութերորդն՝ յորում ասեմք զկարգս նոցա ։ Իններորդն՝ յորում ասեմք, թէ ո՞յք են գտաւղք[4] սահմանացս այսոցիկ ։

1 Մի օրինակ, յարդարեսցուք ։
2 Մի օրին. առնանի. որ և այլուր բազում անգամ ։
3 Երկու օրին. այսքան են ։
4 Երկու օրին. գտօղք ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ Գ.

ԵԿԵՍՑՈՒՔ յառաջին գլուխն թէ զի՞նչ է սահ-
ման. սահման է «Բան կարճառօտ՝ յայտնիչ բնութեան
ենթակայ իրի»: Այլ վասն զի որպէս հանդերձեալ
եմք ուսանել՝ ամ̃ սահման բնաւորեցաւ 'ի սեռէ եւ
'ի բաղկացուցիչ զանազանութ̃ց լինել, ասասցուք
եթէ որ բան յառաջիկայ սահմանիս համեմատի սե-
ռի, եւ ո՞յք են այնոքիկ, որք բաղկացուցչաց զանազա-
նութեանց: Այլ զի հաւատի մեզ վարդապետու-
թիւնս եղիցի, յօրինակ առնումք զսահման մարդոյ:
Եւ պարտ է գիտել, թէ մարդ՝ է կենդանի բանա-
ւոր մահկանացու մտաց եւ հանճարոյ ընդունակ:
Արդ ահա աստանօր կենդանին փոխանակ սեռի
առաւ. քանզի հասարակ է եւ ըստ բազմաց բերի.
ըստ մարդոյ եւ ըստ շան եւ ըստ ձիոյ եւ ըստ այլոց այս-
պիսեաց. իսկ այլքն 'ի բառից փոխանակ բաղկացուց-
չաց զանազանութ̃ց յարառոցեալք գոն: Արդ այս-
պէս եւ յառաջիկայումս սահմանումս, բան՝ փոխանակ
սեռի առաւ. քանզի հաւասար է եւ ըստ բազմաց բե-
րի. քանզի բերի ըստ ներտրամադրականին եւ ըստ
յառաջաբերականին: Իսկ այլքն 'ի բառից՝ փոխանակ
բաղկացուցչաց զանազանութ̃ց յարառոցեալք գոն:
Արդ եկեսցուք եւ պատմեսցուք զսահմանդ սահ-
մանի: Եւ պարտ է գիտել, զի բան ասաց յաղագս
որոշելոյ զանունն. քանզի եւ անուն սահմանէ զբնու-
թիւն ենթակայ իրի. որգոն մարդ. եւ զոր սահման
'ի ձեռն բազմաց բառից առնէ, զայն անուն 'ի ձեռն
միոյ բառի. ուստի եւ հակասահմանին: Քանզի ա-
սեն, թէ անուն է սահման կարճառօտ. իսկ սահման
է անուն ծաւալեալ. արդ զի որոշեսցի անունն՝ վ̃ն
այսորիկ կոչեցաւ բան: Եւ թէ արդարեւ զոր ինչ առ-

նէ անուանն՝ առնէ և բան, քանզի և անուանն և սահմանն զբնութիւն ենթակայ իրի յայտնեն. վասն էր ի մնացան զսահմանն: Եւ արդ ասեմք՝ վասն գիտելոյ մեզ զբաղկացուցիչ զանազանութիւնն. այսինքն բաղկացուցանելով մեզ զենթակայ իրն: Քանզի թէ ասեմք մարդ միայն. ոչ ևս գիտեմք զբաղկացուցիչ զանազանութիւն. իսկ եթէ ասեմք, մարդ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ, գիտեմք զբաղկացուցիչ զանազանութիւնն:

Իսկ համառօտ ասացաւ, վասն ձկտեցելոցն բանից որ կոչին ճառք: Որպէս որ յաղագս պսակի. և կամ որպէս պատմական բանի. քանզի և նոքա բանք ասին, այլ ոչ են համառօտ:

Իսկ յայտնիչ բնութեան ենթակայ իրի ասացաւ. կամ վասն ասացելոց բացագանչմանց. որգոն՝ Ծանիր ըզքեզ. և եթէ՝ Մի ինչ յոյժ. քանզի և այսոքիկ բանք ասին և համառօտ. այլ ոչ յայտնեն զբընութիւն ենթակայ իրի. և կամ վասն ստորագրութեանց. քանզի և նոքա ոչ եթէ զբնութիւն ենթակայ իրին յայտնեն, այլ զպարագայս բնութեանն և զըստ պատահմանն հետևեալս: Որգոն յորժամ ասեմք, եթէ մարդ է ուղղորդագնաց՝[1] ծիծաղական՝ լայնեղունգն. քանզի այսոքիկ զպարագայսն բնութեան յայտնեն և ոչ զբնութիւն: Արդ զայսոսիկ յառաջին գլուխն:

Եկեսցուք յերկրորդ գլուխն և ասասցուք՝ զինչ զանազանի սահման 'ի ստորագրութենէ: Եւ պարտ է գիտել՝ եթէ զանազանի սահման 'ի ստորագրութենէ այսու. վասն զի սահման 'ի գոյացողականաց ձայնիցն առնու, և զգոյութիւն և զբնութիւն ենթակայ իրին յայտնէ. որգոն՝ մարդ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ. իսկ ստորագրութիւն 'ի պատահմանցն առնու՝ և զպարագայս ենթակայ իրին յայտնէ. որգոն՝ մարդ ուղղորդագնաց ծիծաղական լայնեղունգն: Եւ վասն զի ասացաք, եթէ սահման 'ի գոյացողական բառիցն առնու, իսկ ստորագրականն 'ի պատահմանց, ուսցուք զինչ է գոյացողականն և զինչ պատահումն:

1 Մի օրին. ուղղագնաց:

Նաև պարտ է գիտել՝ եթէ գոյացողական այն է՝ որ առընթեր գոլով գոյացուցանէ, իսկ ոչ գոլով ապականէ, որպէս բանականն. քանզի սա առընթեր գոլով գոյացուցանէ զմարդն, իսկ ոչ գոլով ապականէ։ Իսկ պատահումն է, որ առընթեր գոլով ոչ գոյացուցանէ, և բառնալովն ոչ ապականէ՝ որպէս սպիտակն։ Քանզի սպիտակն առընթեր գոլով ոչ գոյացուցանէ, և բառնալովն ոչ ապականէ։ Արդ զայսոսիկ ասացեալք, եկեսցուք և ասասցուք եթէ զի՞նչ զանազանի սահման 'ի սահմանադրութենէ։

Նաև պարտ է գիտել՝ եթէ որպէս մարդ և կենդանի՝ հանուրք և մասնականաւ զանազանին 'ի միմեանց. վասն զի մարդ մասնականագոյն է քան զկենդանին. իսկ կենդանին ընդհանրականագոյն է քան զմարդ։ Քանզի որ ինչ մարդ՝ նոյն և կենդանին. վասն զի ամ մարդ կենդանի. բայց ոչ որ ինչ կենդանի՝ նոյն և մարդ. քանզի ոչ ամ կենդանի մարդ է. վասն զի ոչ միայն մարդ է կենդանի, այլ և ձի և շուն։ Նոյնպէս և սահման և սահմանադրութիւն հանուրքն և մասնականաւն զանազանին 'ի միմեանց. քանզի սահման մասնականագոյն է, և սահմանադրութիւն ընդհանրականագոյն քան զսահման, քանզի որ ինչ սահմանադրութիւն է՝ նա և սահման, այլ ոչ որ ինչ սահման, նա և սահմանադրութիւն է։ Քանզի սահմանադրութիւն ոչ միայն զսահման նշանակէ, այս ինքն զհամառօտ բան զյայտնիչ բնութեան ենթակայ իրին, այլ և զսահմանադրութիւնս վայրից և գեղից և ագարակաց ըստ Արիստոտէլի. և ընդ սովաւ և զայնս՝ յորս վերլուծանի առաջարկութիւն։

Քանզի ասէ Արիստոտէլ՝ եթէ սահմանադրութիւն կոչի, յորս վերլուծանի առաջարկութիւն. որգոն՝ Սոկրատէս ձեմի. առաջարկութիւն է սա և վերլուծանի 'ի Սոկրատէսն և 'ի ձեմին. և իւրաքանչիւրոք 'ի նոցանէ, որպէս ասէ Արիստոտէլէս, սահմանադրութիւն կոչին. այս ինքն Սոկրատէսն և ձեմին։ Արդ որպէս ասացաք, ըստ հանրականին և մասնականագունին 'ի միմեանց սահման և սահմանադրութիւն զանազանին։ Բայց բազում անգամ և զսահման սահմանադրութիւն կոչեն ընդհանրական անուամբ պիտա-

նացեալք. որպէս բազում անգամ և զմարդ սեռական անուամբ կոչեմք կենդանի։ Արդ ուսեալք, եթէ զինչ զանազանի սահման 'ի սահմանագրութենէ, եկեսցուք և ասասցուք՝ զի՞նչ զանազանի սահման՝ ստորագրական սահմանի։

Այս պարտ է գիտել՝ եթէ զանազանի սահման ստորագրական սահմանի այսու, վասն զի սահման միատեսակ [1] է, և 'ի գոյացուցականաց ձայնիցն առեալ լինի միայն. որգոն՝ մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ. իսկ ստորագրական սահման խառնակ է. քանզի առեալ է 'ի գոյացուցականաց և 'ի պատահմանց։ Այս որպէս զի ասիցէ ոք 'ի սահմանէ և 'ի ստորագրականէ բաղկացեալ. որգոն որպէս յորժամ ասեմք, թէ մարդ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ, ուղղորդագնաց լայնեղունգն։ Այս պարտ է գիտել, եթէ առ 'ի լինել սահմանի՝ պարտ է զամ̃ բառսն գոյացուցականս դնել. որգոն, մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ։ Իսկ առ 'ի լինել ստորագրական սահմանի՝ բաւական է և մի բառ յաւելուլ [2] ընդունել՝ զպատահումն յայտնելով. որգոն, մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ՝ ուղղորդագնաց։ Այս որպէս առ 'ի լինել յարմարութեան քնարի՝ պարտ է զամ̃ աղիսն բարեյարմարս դնել. իսկ առ 'ի լինել անյարմարութեան՝ բաւական է և մի աղի փոփոխել։ Այս դարձեալ առ 'ի լինել առողջութեան պարտ է դնել չափաւորութիւն խառնուածոցն, և զըստ բնութեան շարադրութիւն [3] մասանցն. իսկ առ 'ի լինել հիւանդութեան՝ բաւական է և մի խառնուած փոփոխել, և մի մասնիկ ոչ դնելով ըստ բնութեան. Ըստ նմին օրինակի առ 'ի լինել սահմանի՝ պարտ է զամ̃ բառսն որպէս ասացաք, գոյացուցականս դնել. իսկ առ 'ի լինել ստորագրական սահմանի՝ բաւական է և մի բառ յեղափոխել։ Այս այսորիկ այսպէս։

Բայց տարակուսեն ոմանք յառաջին գլուխն ասե-

1 Մի օրին. միայնատեսակ։

2 Մի օրինակ. յեղուլ։

3 Երկու օրին. չափաւորութիւն։

լով, եթէ յետին արարէք՝ սահմանի սահման բացատրելով, քանզի պահանջեմք 'ի ձէնջ և սահմանի սահման. և այնր սահմանի այլ սահման. և այսոքիկ մինչև յանբաւս արտաբերին, և ոչ ևս իմասցուք զինչ է սահման:

Այլ պատասխանատրեն ոմանք ասելով՝ թէ ոչ որպէս սահման սահմանեցաք, այլ որպէս սահմանելի. այս ինքն որպէս ենթակայ իր: Ոչ որս ասելի է՝ թէ ոչ մնայ նուազ տարակուսութիւն. քանզի ասեմք ընդդեմ՝ թէ և այնր սահմանի բացատրեցէք սահման որպէս սահմանելոյ. և դարձեալ միւս ևս սահմանին բացատրեցէք սահման որպէս սահմանելոյ. որ նմանապէս և այս յանհունս արտաբերի: Արդ այսպէս պարտ է ասել՝ թէ զոր օրինակ չափոցն և թուոցն են ոմանք, որ ինքնաչափք և ինքնաթիւք են, և նոյնք այլաթիւք և այլաչափք են: Այլ ինքնաթիւք և ինքնաչափք ըստ եզականն որ 'ի նմա. քանզի տամն՝ ինքն զինքն թուէ ըստ եզականն որ 'ի նմա. բայց թուէ որպէս այլաթիւ և զքսան և զերեսուն. զքսան ըստ երկուց. և զերեսուն ըստ երից: Ըստ նմին օրինակի և սահման և ինքնասահման և այլասահման. և այլասահման՝ վասն զի նոյն և զայլ սահմանս սահմանէ. իսկ ինքնասահման՝ վասն զի և զինքն ընդ այլս սահմանէ: Այլ զոր օրինակ մարդ սահմանելով զմարդ՝ ասէ, թէ մարդ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ, ոչ միայն զամենայն մարդ սահմանէ, այլ և զինքն. վասն զի և ինքն սահմանի:

Բայց տարակուսեն ոմանք և առ երկրորդ գլուխն ասելով՝ թէ մինչ գոյացութիւն պատուականագոյն է քան զպատահումն, և առեալ է 'ի գոյացութեանցն սահման, իսկ ստորադրութիւն 'ի պատահմանց, վասն էր ասեմք ստորադրական սահման, զյոռին նախադասելով, և ոչ ասեմք սահման ստորադրական:

Այլ պատասխանեն ոմանք ասելով՝ եթէ վասն էր ըստ քերթողին կիսէշ ասեն, զի քերթողն կիսէշ ասէ Հոմերոս. զի յոռեգոյնն յաղթէ 'ի շարադրութեան անուանց լաւագունին. զի յոռեգոյնն լաւագոյն է: Քանզի կիսէշ ասեմք զջորի, զյոռեգոյնն անուա-

նելով․ և ոչ կիսաձի․ վասն այսորիկ և ստորադրական սահման ասեմք, զյուեգոյնն նախադասելով։ Օ այսոսիկ նոքա։

Բայց ասելի է՝ թէպէտ հիւանդական է պատասխանատրութիւնդ, բայց սակայն ոչ բարւոք տարակուսեցին որք տարակուսեցինն։ Նախ և առաջին, քանզի ոչ ոք ՚ի հնոց վարդապետաց ասաց, եթէ սահման ստորադրական պարտ է ասել՝ և ոչ ստորադրական սահման։ Իսկ երկրորդն, թէպէտ և ստորադրական սահման ասեմք՝ թէպէտ սահման ստորադրական, ոչ ինչ եղծանի նշանակեալն․ քանզի ասէ Արիստոտէլ, եթէ անուանք և բայք փոխադրելով զնոյն նշանակեն․ վասն զի զնոյն իսկ նշանակեն եթէ ոք ասիցէ՝ Սոկրատէս ձեմի, և թէ՝ ձեմի Սոկրատէս։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ Դ.

ՍԿԻԶԲՆ առաջացուք և երրորդ գլխոյն որ ասէր, թէ ուստի՞ ասի սահման: Այլ պարտ է գիտել՝ եթէ սահման ասի ՚ի փոխաբերութենէ [1] գեղջից՝ և ագարակային սահմանաց. քանզի առաջինքն յերկաքանչիւրոցն անչափութենէ փախչելով, յառաւելաստացութենէ և ՚ի պակասաստացութենէ, գտին զսահմանադրութիւն. զի յիւրեանցն վայելեսցեն՝ և յայլոցն փախիցեն:

Արդ նոյնպէս և սահման պարասահմանելով զենթակայ իրն՝ որոշէ զնա յայլոցն. որպէս և սահման մարդոյ. որգոն կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ: Արդ ասելով կենդանի, զատոյց յայնց՝ որք ոչ են կենդանիք. այս ինքն յանկենդանեացն և յանշնչիցն. իսկ ասելովն բանական, որոշեաց յանբանիցն. իսկ մահկանացուն՝ յանմահիցն. իսկ մտաց և մակացութեան ընդունակ ասելովն որոշեաց զնա յաներևութից և ՚ի մահկանացուաց արարածոց. որք և յաւէրժական հարսունք [2] անուանին. որք և բնութեամբ ունին զգիտութիւն և ոչ ուսանելով. բայց միայն մարդն բնաւորեցաւ ընդունել ըստ ազդողականին գիտութիւն:

Այլ պարտ է գիտել, զի ՚ի սահմանս հակակիրք միմեանց լինին բառք և իրք: Քանզի յորժամ սահման առաւելու բառիւք, նուազեն իրք. որգոն, մարդ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ, քերթող: Քանզի քերթողն յաւելուածն եղեալ ՚ի սահմանի՝ նուազեցոյց զիրսն. վասն զի

1 ՚Ի լուս. միոյ օրին. ՚ի հաղաբերութենէ. և այլ օրին. ՚ի փոխադրութենէ:

2 Մի օրին. յաւէրժահարսունք:

զքերթողն միայն սահմանեաց և ոչ զամենայն մարդ. քանզի ոչ ամենայն մարդ քերթող. ահա առաւելաւ 'ի բառսդ՝ և նուազութիւն եղև իրացդ : Իսկ յորժամ նուազեն բառքդ՝ առաւելուն իրքդ. որգոն, մարդ կենդանի բանական. ահա նուազեցին բառք՝ և յաւելան իրքդ : Վասն զի ոչ միայն մարդ է կենդանի բանաւոր, այլ և հրեշտակք և դևք. և որպէս ասէր Ոլոմպիադորոս փիլիսոփոս՝ եթէ Աքանչելի իմն հնարս եգիտ բնութիւն. նուազութեան հարստացեալ՝ և հարստութեան կեղծաւորեալ զնուազութեանցն :

Իսկ եթէ ոք տարակուսեսցէ ասելով՝ թէ զիա՞րդ ասասցէք, թէ յորժամ առաւելու սահման բառիւք՝ նուազէ իրօք. քանզի ահա ասեմք, մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մահանալով՝ մտաց և մակացութեանց ընդունակ. առաւելաւ բառիւք և ոչ պակասեցաւ իրօք. քանզի զամենայն մարդ պարունակեաց : Ասեմք եթէ յաւելեալ բառդ՝ ոչինչ առաւել նշանակեաց. քանզի նոյն է սահման, մահկանացուն և մահանալովն. զի մահանալովն յաւելուած բայի է և ոչ անուան[1]. քանզի սահման անուամբ ճանաչի և ոչ բայիւ : Զայսոսիկ և երրորդ գլուխն :

Բայց եկեսցուք 'ի չորրորդ գլուխն և ասասցուք թէ ուստի առնու սահման : Եւ պարտ է գիտել՝ թէ սահմանք կամ յէնթակայէ առնուն, և կամ 'ի կատարմանէ. և կամ յերկոցունց. այս ինքն յէնթակայէ և 'ի կատարմանէ. բայց նախ ասասցուք զի՞նչ է ենթակայ և զի՞նչ է կատարումն : Ենթակայ է, ըստ որում լինի և ըստ որում ազդէ. եթէ արհեստ՝ և եթէ մակացութիւն. իսկ կատարումն է, ըստ որում նկատէ[2] և կերպարանէ. և ըստ որում զամենայն ինչ առնէ : Որգոն՝ հիւսնութեան ենթակայ է փայտ. զի վասն փայտի գոյանայ հիւսնութիւն. իսկ կատարումն ունի աթոռ առնել՝ և տաճար շինել : Եւ դարձեալ՝ աստեղաբաշխութեան ենթակայ ունի զերկնային մարմինն. իսկ կատարումն ոչ եթէ զառնելն նման նմա, այլ գիտել զշարժումն նորա. նոյնպէս և իմաստա-

1 Մի օրին. անուան :

2 Մի օրին. նկարէ :

սիրութի՟ ունի ենթակայ՝ ունի և կատարումն ։ Ենթ-
թակայ զա՟մ գոյս՝ իսկ կատարումն զգիտութիւն նո-
ցին . այս ինքն գիտել զնոսա՝ և նոքումբք նմանել ա՟յ .
քանզի իմաստասէրն նման է ա՟յ . որպէս յայտ առ-
նէ Պիւթիա հարցուկն՝ ասելովն ցԼիւկուրգիոս օրէնսդրա-
դիր և փիլիսոփոս . վասն զի առաջինք յիմաստասի-
րացն օրէնսդիրք էին ։ Արդ եկիր, ով Լիկոյերգէ,
յիմ ճենճերալից տաճարս . յերկբայս գոմ զինչ ըզ-
քեզ ասասցից . ա՟ծ՝ թէ մարդ . բայց սակայն ա՟ծ առ-
ասասցից զքեզ, ով Լիւկոյերգէ ։ Զայս ասելովն ոչ
եթէ ոչ գիտէր զինչ պարտ էր կոչել զնա , այլ զի
ցուցցէ կցորդակից զա՟յ բնութիւն և զիմաստասիրին .
ուստի և 'ի վերայ ածէ , Բայց սակայն ա՟ծ առասա-
ցից զքեզ, ով Լիւկոյերգէ ։ Եւ զի կատարեալ իմաս-
տասէրն նման է ա՟յ , աստուստ է յայտ՝ զի նոքիմբք
կերպարանի որովք և ա՟ծ ։ Քանզի որպէս ա՟ծ կեր-
պարանի բարեաւն և գիտնականաւն և կարելեաւն ,
որպէս և քերթութիւն յայտնէ . վասն բարւոյն՝ եթէ
ա՟ծք տուիչք բարեաց են . իսկ գիտնականաւն՝ թէ
ա՟ծք զա՟մ ինչ գիտեն . իսկ կարելեաւն՝ թէ ա՟ծք
զա՟մ ինչ կարեն առնել ։

Ըստ նմին օրինակի և կատարեալ փիլիսոփոս երե-
քումբք այսոքիւք կերպարանի . բարեաւն ասեմ, և
գիտնականաւն և կարելեաւն ։ Եւ բարեաւն՝ թէ որ-
պէս ա՟ծ խնամ տանի ամենեցունց , նոյնպէս և իմաս-
տասէրն խնամ տանի անկատար ոգւոց 'ի կատարեալ
գիտութի՟ ածելով զնոսա ։ Իսկ գիտնականաւն՝ թէ
որպէս ա՟ծ զա՟մ ինչ գիտէ , նոյնպէս և կատարեալ
իմաստասէրն զա՟մ ինչ խոստանայ գիտել , և գիտէ
զօգտակարն ։ Իսկ կարելեաւն՝ թէ որպէս ա՟ծ զա՟մ
ինչ կարէ զպատշաճագոյնս և կամի , նոյնպէս և կա-
տարեալ իմաստասէրն որչափ ինչ կարող գոյ ըստ կա-
րելոյն՝ և կամի . և ոչ երբէք կամի զոր ոչն կարէ ։

Այլ սակայն 'ի վերայ ա՟յ անդրադարձի . քանզի
որչափ ինչ կամի՝ և կարող գոյ . և որչափ ինչ կարող
գոյ՝ և կամի . իսկ 'ի վերայ իմաստասիրի ոչ անդրա-
դարձի . քանզի որչափ ինչ կարող գոյ կամի . այլ ոչ
որչափ ինչ կամի կարող գոյ ։ Քանզի եթէ կամի մա-
տամբն հպել 'ի կոռնըթարդն երկնից , ոչ գոյ կարող ։

Վասն որոյ տարակուսեն[1] ոմանք ասելով՝ եթէ զիարդ ասացէք զիմաստասէրն կարելեաւն կերպարանի նմանել այ, որովհետեւ անդրադարձի 'ի վերայ այ, իսկ 'ի վերայ փիլիսոփայի ոչ, որպէս ասացէք։ Վասն որոյ ասեմք՝ եթէ կատարեալ իմաստասէրն կամի ոչ տենչալ անհասանելեացն. վասն զի եւ 'ի տոկոսիմն մեծ կարօտութիւն է տենչմանացն անլինութի։ Բայց պարտ է գիտել, եթէ յառաջելով ցուցանելի է, եթէ այլ ազգ է առ 'ի յայ բարին եւ գիտականն եւ կարելին, եւ այլ ազգ առ իմաստասիրին։

Բայց այժմ պարտ է գիտել, թէ սահմանք յենթակայէ առնուն կամ 'ի կատարմանէ՝ եւ կամ յերկոցունց. այս ինքն յենթակայէ եւ 'ի կատարմանէ։ Առ յենթակայէ՝ յորժամ ասեմք, եթէ բժշկականութի է արհեստ յաղագս մարդկային մարմնոյ ըննութե եղեալ։ Իսկ 'ի կատարմանէ՝ յորժամ ասեմք, թէ բժշկականութիւն է առողջութե արարիչ. քանզի կատարումն բժշկականութե է՝ կամ զներկայ առողջութիւնն պահել, եւ կամ զմերժեալն վերստին ածել։ Իսկ յերկոցունց՝ որպէս յորժամ զերկոսին սահմանսդ շարակցեմք եւ ասեմք, եթէ բժշկականութի է արհեստ յաղագս մարդկային մարմնոյ եղեալ՝ առողջութե արարիչ։

Արդ այսպէս եւ զիմաստասիրութի սահմանելով յենթակայէ եւ 'ի կատարմանէ, ասեմք յենթակայէ, եթէ իմաստասիրութի է գիտութի ածայնոց եւ մարդկայնոց իրողութեց. իսկ 'ի կատարմանէ՝ եթէ իմաստասիրութի է նմանութի այ ըստ կարողութե մարդկան։ Իսկ յերկոցունց՝ որպէս յորժամ ասեմք, եթէ իմաստասիրութի է գիտութի ածայնոց եւ մարդկայնոց իրողութեց՝ եւ նմանութի այ ըստ կարողութե մարդկան։ Առ այսոքիկ այսպէս։

Բայց տարակուսեն ոմանք ասելով՝ եթէ զիարդ ասէք, եթէ ամ սահման յենթակայէ առնու կամ 'ի կատարմանէ, կամ յերկոցունց. այս ինքն յենթակայէ եւ 'ի կատարմանէ. ուր առ հասարակ ամենեքեան ասեմք, եթէ ամ սահման 'ի սեռէ առնու եւ

1 Մի օրին. պատասխանէն։

'ի բաղկացուցիչ զանազանութենէ։ Որգոն, մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ. քանզի ահա աստանօր զկենդանին սեռ ունի, իսկ զայլսն 'ի բառից՝ բաղկացուցիչ զանազանութիւնս։ Եւ ոմանք պատասխանատրելով զայս պատճառս տան, եթէ ի վերայ բնականացն 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութեանց առնուն սահմանք. որպէս 'ի վերայ մարդոյ, եթէ մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ։ Իսկ 'ի վերայ արուեստականացն յենթակայէ առնու, կամ 'ի կատարմանէ. կամ յերկոցունց՝ յենթակայէ և 'ի կատարմանէ. որպէս 'ի վերայ ասացելոց յառաջ օրինակաց։

Զայս նոքա և ոչ բարւոք ասեն։ Նախ առաջին, զի զտարակուսանսն ոչ լուծին. քանզի տարակուսանք էին, եթէ զի՞մ սահման 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութենէ առնու. իսկ դոքա զոմանս 'ի սահմանաց՝ 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութենէ առնուն. իսկ զոմանս յենթակայէ, և զոմանս 'ի կատարմանէ, և զոմանս յերկոցունց՝ յենթակայէ և 'ի կատարմանէ.

Իսկ երկրորդ՝ զի ոչ լուծին բարւոք զտարակուսանսն. քանզի գտանեմք զսահման և 'ի վերայ բնականացն յենթակայէ և 'ի կատարմանէ առեալ, որպէս և 'ի վերայ բարկութեան։ Քանզի և բարկութիւն բնական ինչ է. և սակայն յենթակայէ և 'ի կատարմանէ սահմանեմք զնա ասելով, եթէ բարկութիւն է եռանդն զսրտիւն արեանն, առ 'ի տենչումն փոխարէն տրտմեցուցանելոյ։ Եւ ահա եռանդն զսրտիւ արեանն՝ յենթակայէ է. քանզի բարկութեան ենթակայ է զսրտիւն արիւն. իսկ առ 'ի տենչումն փոխարէն տրտմեցուցանելոյ՝ 'ի կատարմանէ. քանզի կատարումն բարկութեան՝ է տենչալն փոխարէն տրտմեցուցանել զայն որ տրտմեցոյցն։ Արդ այսոքիկ այսպէս։

Բայց պարտ է ասել, թէ բարւոք ասեմք զի՞մ սահման 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութեանց առնուլ. քանզի որք յենթակայէ և 'ի կատարմանէ, և որք յերկաքանչիւրոց ունին, և սեռ ունին և բաղկացուցիչ զանազանութիւնս։ Որգոն, բժըշ-

կականութիւն է արհեստ յաղագս մարդկային մարմնոյ եղեալ : Սա աստանօր փոխանակ սեռի առաւ արհեստ . իսկ փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց՝ այլ բառք : Նոյն դարձեալ՝ բժշկականութիւն է արհեստ վասն մարդկան մարմնոյ եղեալ[1], առողջութեան արարիչ : Սա աստանօր արհեստ՝ փոխանակ սեռի առաւ, իսկ այլ բառք փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց :

Նոյն դարձեալ՝ բժշկականութիւն է արհեստ յաղագս մարդկային մարմնոյ եղեալ՝ առողջութեան արարիչ : Սա աստանօր արհեստ՝ փոխանակ սեռի առաւ . իսկ այլ բառք՝ փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց : Նոյն դարձեալ՝ իմաստասիրութիւն է գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց : Սա աստանօր փոխանակ սեռի առաւ գիտութիւն . իսկ փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց այլ բառք : Զայսոսիկ և չորրորդ գլուխն :

Իսկ հինգերորդ գլուխն էր, յորում 'ի խնդիր ելաք՝ եթէ որ է կատարեալ սահման և որ անկատար : Նոյն պարտ է գիտել՝ եթէ կատարեալ սահման այն է, որ անդրադարձի առ սահմանելին . որգոն, յորժամ ասեմք, եթէ զինչ որ միանգամ մարդ է՝ նա կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ . և զինչ որ միանգամ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ՝ նա մարդ է : Իսկ անկատար սահման է որ ոչ անդրադարձի . քանզի յոռութիւն սահմանի է ոչ անդրադարձիլ : Իսկ յոռութիւն սահմանի լինի յառաւելութենէ և 'ի նուազութենէ սահմանի . քանզի ոչ գոյ կարող սահմանն անդրադարձիլ 'ի սահմանելին՝ յառաւելուլն և 'ի նուազելն . որգոն, մարդ է կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ, քերական : Քանզի սա առաւելեալ ոչ անդրադարձի . քանզի որ միանգամ կենդանի մահկանացու է բանաւոր մտաց և մակացութեան ընդունակ քերական՝ նա մարդ է . ոչ որ միանգամ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և մակացութեան ընդունակ՝ նա և քերական . վասն զի

1 Երեք օրին. է արհեստ առողջութեան արարիչ :

ոչ ա՟մ մարդ քերական. նաև ոչ 'ի նուագելն իւր անդրադարձի առ սահմանելին ։ Որգոն, կենդանի բանաւոր նուագ գոլով, ոչ անդրադարձի. քանզի ոչ միայն մարդ է կենդանի բանաւոր, այլ և հրեշտակք և դևք ։ Նոյն այսոքիկ այսպէս ։

Բայց պարտ է խնդիր առնել, որք են 'ի նախասացելոց սահմանացս, որք կատարեալք գոն ։ Նոյն պարտ է գիտել, եթէ այսոքիկ են կատարեալ, որ յերկոցունց առնուն, յէնթակայէ և 'ի կատարմանէ. որգոն, հիւանդութիւն է արհեստ յաղագս փայտի եղեալ՝ անթառոյ արարչական ։ Իսկ որք յէնթակայէ միայն են, կամ 'ի կատարմանէ միայնոյ, բազումք և յոլովք 'ի նոցանէ ոչ գոն կատարեալք ։ Որգոն, յորժամ ասեմք, թէ բժշկութիւն է արհեստ յաղագս մարմնոյ մարդկայնոյ եղեալ, ոչ անդրադարձի. քանզի որ միանգամ բժշկականութիւն է՝ յաղագս մարդկային մարմնոյ եղեալ. այլ ոչ որ միանգամ յաղագս մարդկայնոյ մարմնոյ եղեալ՝ նա բժշկականութիւն է ։ Քանզի ոչ միայն բժշկականութիւն գոյ սակս մարդկային մարմնոյ եղեալ, այլ և սափրողականն, և երկգնահատականն ։

Դարձեալ յորժամ ասեմք 'ի կատարմանէ, եթէ ճարտասանութիւն է հաւանութեան արարչական. ոչ անդրադարձի ։ Քանզի ա՟մ որ ճարտասանական է՝ նա և հաւանութեան արարչական, այլ ոչ որ միանգամ հաւանութեան արարիչ՝ ճարտասանական է. քանզի ոչ միայն ճարտասանական է հաւանութեան արարչական, այլ և տրամաբանական իմաստասիրութիւն ։ Նոյն դարձեալ՝ բարկութիւն եռանդն զսրտիւն արեան, ոչ անդրադարձի. վասն զի ա՟մ բարկութիւն՝ եռանդն է զսրտիւն արեան. այլ ոչ որ միանգամ եռանդն է զսրտիւն արեանն՝ բարկութիւն է. քանզի և 'ի ջերմութենէ լինի եռանդն զսրտիւն արեան ։

Բայց որպէս վերագոյն ասացաք, եթէ բազումք և յոլովք՝ որ յէնթակայէ միայնոյ են, և կամ 'ի կատարմանէ, ոչ գոն կատարեալք. վասն այդորիկ առադրեցաք զբազումն և զյոլովս ։ Վասն զի է արհեստ, որ կատարեալ է յէնթակայէ միայնոյ. որպէս տպակէգործութիւն. քանզի դա միայն կատարեալ գոյ յէնթակայէ միայնոյ ։ Քանզի ա՟մ որ տպակէ-

գործութ̃ի է՝ սակս ապակւոյ գոյ եղեալ. և որ սակս ապակւոյ գոյ եղեալ՝ ապակեգործուե̃ի է ։ Իսկ իմաստասիրութ̃ե սահման՝ թէպէտ յենթակայէ միայնոյ առնու՝ և թէպէտ 'ի կատարմանէ՝ ամենեքեան կատարեալք գոն ։

Եւ պատճառք, եթէ զի միայն իմաստասիրութ̃ե սահմանք յենթակայէ միայնոյ և կամ 'ի կատարմանէ կատարեալ գոն՝ այսոքիկ են ։ Վասն զի ենթակայն իմաստասիրութ̃ե՝ այս ինքն ընդհանուր գոյք՝ ոչ կարողք գոն այլ արհեստի ենթակայ լինել. վասն զի ոչ ոք յայլ արհեստից կարող գոյ զընդհանուր գոյսս քննել և գիտել ։ Եւ կատարումն իմաստասիրութ̃ե, այս ինքն նմանիլ ա̃յ ըստ կարողութ̃ե մարդկան, ևս ոչ գոյ այլ արհեստի կատարումն. վասն զի ոչ ինչ կարող գոյ այլ արհեստ նմանեցուցանել զմարդ ա̃յ ըստ կարողութ̃ե մարդկան ։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ՊՐԱԿՔ

## ՊՐԱԿՔ Ե.

ՈՒՍԵԱԼՔ զհինգերորդ գլուխն, խնդրեսցուք և զվեցերորդն, յորում ասեմք քանի՞ք և որպիսի՞ք են սահմանք իմաստասիրութեան։ Եւ պարտ է գիտել, եթէ վեց են սահմանք իմաստասիրութեան, և են այսոքիկ։ Նախ և առաջին որ ասէ, թէ իմաստասիրութիւն է գիտութիւն գոյից ըստ որում գոյքն են։ Երկրորդ, գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց։ Երրորդ որ ասէ, իմաստասիրութիւն է խոկումն մահու։ Չորրորդ առ այսոքիւք է սահման որ ասէ, թէ իմաստասիրութիւն է նմանութիւն Աստուծոյ ըստ կարողութեան մարդկան։ Հինգերորդ որ ասէն, իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց։ Վեցերորդ 'ի վերայ այսոցիկ որ ասէն՝ իմաստասիրութիւն է սիրելութիւն իմաստութեան։ Զայսոսիկ վեցերորդ գլուխն։

Եւթներորդ գլուխ յորում ասեմք, թէ վասն էր այսքանի՞ք են սահմանք իմաստասիրութեան և ոչ են յոլովք և ոչ նուազք։ Վասն որոյ ասեմք երկուս պատճառս. զմինն 'ի բաժանմանէ, և զմին 'ի թուականութենէ. և 'ի բաժանմանէն այսպէս։ Են ոմանք որ ենթակայացեալք[1] գոն և ոչ անուանեալք. որպէս այնոքիկ որ 'ի խորս գոն, քանզի են ոմանք 'ի խորսն, որք գոյացութիւն[2] ունին և ոչ հանդիպելին անուանադրութեան առ 'ի մէնջ վասն ոչ տեսանելոյ զնոսա։

Եւ դարձեալ են ոմանք անուանեալք և ոչ ենթակայացեալք. որպէս Տրագելափն և Եղջերուաքաղն. որք անուանին, բայց ոչ են ենթակայացեալք։ Եւ

1 Երկու օրին. Ենթակացեալ։

2 Մի օրին. ուր գոյութիւն ունին։

դարձեալ են ոմանք, որ ենթակայցեալք են և անուանեալք. որպէս մարդ և արհեստ. քանզի մարդ և արհեստ՝ և անուանեալք են և ենթակայցեալք: Իսկ իմաստասիրութի՝ և անուանեալ է և ենթակայեալ. և որպէս յեթէութեան ուսաք՝ ընդ առաջինսն ունի ըզգոյութի. վասն զի իմաստասիրութի մայր է իմաստից և արհեստից և ընդհանուր մակացութեց. քանզի 'ի նմանէ առնուն առաջս և սկզբունս ամ արհեստք և մակացութիք: Որպէս երկրաչափն առնու խոստովանաբար, եթէ նշան է՝ որոյ մասն ոչ ինչ է, զորոյ զպատճառն՝ բնական իմաստասէրն գիտէ:

Նաև դարձեալ բժիշկն առնու խոստովանաբար, եթէ 'ի չորից տարերցդ բաղկացեալ գոյ մարմին. զորոյ զպատճառն՝ բնական իմաստասէրն գիտէ: Նաև դարձեալ քերթողն առնու խոստովանաբար, եթէ էն և ոմն բնութք երկարք են, իսկ զպատճառն՝ երաժշտական իմաստասէրն գիտէ:

Արդ իմաստասիրութի որպէս ասացաք՝ և անուանի և գոյութի ունի, և ընդ առաջինսն ունի զգոյութիւն: Նաև վասն զի անուանի՝ յանուանութէ[1]. այս ինքն 'ի ստուգաբանութենէ ունելով զսահմանն զայն որ ասէ, թէ իմաստասիրութի է սիրելութի իմաստութե: Նաև վասն զի ընդ առաջինսն ունի զգոյութի, ունի և զսահմանն զայն, որ յառաւելութենէ[2] որ սէ, իմաստասիրութի է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեց: Նաև վասն զի ենթակայացեալ է, ունի ենթակայ, ունի և կատարումն. քանզի արհեստ ամ և ամ մակացութի ունի ենթակայ ունի և կատարումն. և զիւրաքանչիւրոք 'ի դոցանէ կրկնակի. քանզի ունի հուպ ենթակայ և հեռի. և հուպ կատարումն և հեռի:

Նաև զի հաւաստի մեզ եղիցի ասացեալսդ՝ վարժեսցուք զբանդ 'ի վերայ նաւարարութե[3]. Նաև պարտ է գիտել, զի նաւարարութի ունի ենթակայ, ունի և կատարումն, և զիւրաքանչիւրոք կրկնակի. քանզի ունի հուպ ենթակայ և հեռի ենթակայ. և հուպ

1 Երկու օրին. յանուանադրութէ: յարփունութէ որ ասէ:
2 Երկու օրին. յառաւելութէ և
3 Այլ օրին. նաւարկութէ:

կատարումն և հեռի կատարումն ։ Եւ հուպ ենթակայ զընդհանուր փայտ. իսկ հեռի ենթակայ զայս անուն փայտ. և զպատշաճ առ 'ի լինել ողնափայտ և քեղի ։ Քանզի նախ և առաջին նաւակառոյցն առնու զընդհանուր փայտ. և ապա 'ի խնդիր գայ, եթէ ո՞ր փայտ պատշաճ գոյ ողնափայտ լինել և ո՞վ է որ քեղի գոյ պատշաճ ։

Եւ դարձեալ՝ հուպ կատարումն ունի առնել նաւ. իսկ հեռի կատարումն ունի առնել այսպիսի ինչ նաւ. որգոն այծեմնաձև, կամ ճրագաձև ։ Նոյնպէս և իմաստասիրութիւն ունի ենթակայ, ունի և կատարումն. և զիւրաքանչիւրոք կրկնակի. քանզի ունի և հուպ ենթակայ և հեռի ենթակայ, և հուպ կատարումն և հեռի կատարումն ։ Արդ հուպ ենթակայ ունի զընդհանուր գոյս. իսկ հեռի ենթակայ ունի, որգոն՝ զա̃ծայինս և զմարդկայինս իրողութի̃ս ։

Դարձեալ հուպ կատարումն ունի զխոկումն մահու, այս ինքն զմեռելութի̃ ախտից. իսկ հեռի կատարումն ունի 'ի ձեռն մեռելութի̃ առնելոյ ախտից՝ նմանել ա̃յ ըստ կարողութեան մարդկան ։ Եւ արդ վասն զի իմաստասիրութիւն ունի ենթակայ ունի և կատարումն, և զիւրաքանչիւրոք կրկնակի՝ որպէս և ասացաք, վասն այսորիկ և այլ քան զանունն և որոց յառաւելութենէն՝ չորս ևս սահմանս ունի ։ Երկուս յենթակայէ. մի 'ի հուպ ենթակայէն որ ասէ, եթէ իմաստասիրութի̃ է գիտութիւն էակաց ըստ որում էակք են. և զմինն 'ի հեռի ենթակայէն որ ասէ, իմաստասիրութիւն է գիտութիւն ա̃ծայնոց և մարդկայնոց իրողութեանց ։ Եւ երկուս դարձեալ 'ի կատարմանէ. զմին 'ի հուպ կատարմանէ որ ասէ՝ թէ իմաստասիրութի̃ է խոկումն մահու. իսկ զմիւսն 'ի հեռի կատարմանէ որ ասէն՝ թէ իմաստասիրութի̃ է նմանութի̃ ա̃յ ըստ կարողութե̃ մարդկան ։ Արդ այս է պատճառ որ 'ի բաժանմանէն է, թէ վասն է՞ր վեց են սահմանք իմաստասիրութե̃ ։

Իսկ 'ի թուականութենէն այսպիսի ինչ է. 'ի թուոցն ոմանք կատարեալք գոն, և ոմանք անկատարք, և ոմանք գերակատարք ։ Եւ կատարեալ թիւ է, որոյ մասունքն շարադրեալք հաւասարք գոն բոլորին, որպէս

*վեցին. քանզի վեցին մասունքն շարադրեալք զվեցն ծնանին. քանզի ունի կէս՝ զերիսն. և երրեակ՝ զերկուսն. և վեցեակ՝ զմին, որ լինի վեց: Քանզի զչորրորդն ոչ առնու. զի եթէ զչորրորդն առնու, հարկաւորի հատանել զմիակն. քանզի չորրորդն՝ վեցին մի և կէս է: Իսկ թուականք ոչ հատանեն զմիակն, այլ մինչև ցմիակն վարին:*

*Իսկ գերակատարութի̃ է թուոցն՝ որոց մասունքն շարադրեալք՝ գերազանցեալք զբոլորին գտանին, որպէս երկոտասանին. քանզի երկոտասանին մասունքն շարադրեալք՝ զտասն և զվեց թիւ բացակատարեն: Քանզի ունի կէս զվեցն. և երրորդ զչորսն. և չորրորդ զերիսն, որ լինի տասն և երեք. և վեցերորդ զերկուսն. և երկոտասաներորդ զմին, որք լինին տասն և վեց:*

*Իսկ անկատարութի̃ է՝ որոց մասունքն շարադրեալք՝ պակասագոյն քան զբոլորն գտանին, որպէս ութն. քանզի ութին մասունքն շարադրեալք՝ զեւթն թիւ բացակատարեն: Քանզի ունի կէս զչորսն. և չորրորդ զերկուսն. և ութերորդ զմին, որ լինի եւթն:*

*Արդ այսոցիկ այսպէս ունելով, վասն զի առաջին կատարեալ թիւ վեցն է. զի ոչ ոք է այլ յառաջ քան զսա կատարեալ թիւ, վասն այսորիկ վեց են սահմանք իմաստասիրութե̃: Քանզի պարտ է մօրն և պատճառին ամ̃ արհեստից որպէս կատարելագունի՝ կատարելագունիւ զարդարիլ թուով:*

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԵՒ ԱՌԸՆԹԵՐԱԿԱՑ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ Զ·

ՍԿԵՍՑՈՒՔ և յութերորդ գլուխն և ասասցուք զկարգաւորութիւն սահմանաց իմաստասիրութեան ։ Այլ պարտ է գիտել՝ եթէ վեց ելոց սահմանաց իմաստասիրութեան՝ հուսկ վերջինն է որ 'ի ստուգաբանութենէ էր որ ասէր, եթէ իմաստասիրութիւն է սիրելութիւն իմաստութեան ։ Իսկ այլոցն հնգից վերջինն է, որ յարտունութենէ է սահման. որ ասէն՝ թէ իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց ։ Իսկ այլոց չորից սահմանացն՝ առաջինք են որք յէնթակայէ, և վերջինք որք 'ի կատարմանէ. և երկաքանչիւրոցս այսոցիկ, որ 'ի հուպ ենթակայէ է՝ առաջին է. և վերջին է որ 'ի հեռի ենթակայէ ։ Նոյնպէս և որք 'ի կատարմանէ են, առաջին է որ 'ի հուպ կատարմանէ, և վերջին որ 'ի հեռի կատարմանէ. որոց կարգաւորութիւն է այսպիսի ինչ և ըստ այսմ օրինակի ։

Առաջին սահման իմաստասիրութեան որ 'ի հուպ ենթակայէն է այն որ ասէն, եթէ իմաստասիրութիւն է գիտութիւն էակաց ըստ որում էակք են ։ Երկրորդ սահման որ 'ի հեռի ենթակայէն է որ ասէ, թէ իմաստասիրութիւն է գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց ։ Երրորդ սահման իմաստասիրութեան որ 'ի հուպ կատարմանէն է որ ասէն, թէ իմաստասիրութիւն է խոկումն մահու ։ Չորրորդ սահման է 'ի հեռի կատարմանէն որ ասէն, իմաստասիրութիւն է նմանութիւն այ ըստ կարողութեան մարդկան ։ Հինգերորդ սահման որ յարտունութենէ որ ասէն, իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց ։ Վեցերորդ սահման իմաստասիրութեան 'ի ստուգաբանութենէ որ ասէն, իմաստասիրութիւն է

սիրելութիւն իմաստութեան ։ Զայս ասելով՝ եկեսցուք և ասասցուք զպատճառն կարգաւորութեան սահմանացս իմաստասիրութեան ։

Իսկ պարտ է գիտել, եթէ սահման իմաստասիրութեան որ 'ի ստուգաբանութենէն է որ ասէն, թէ իմաստասիրութիւն է սիրելութիւն իմաստութեան. վերջին կարգաւորութեան հանդիպելով, և յիրաւի ։ Վասն զի ամենայն իրի նախ պարտ է գոյանալ և ապա անուան հանդիպել. որգոն՝ նախ ծնանիլ և ապա 'ի վերջոյ դնիլ անուն ։ Նոյնպէս պարտ է նախ և առաջին գոյանալ իմաստասիրութեան, և ապա անուան հանդիպել և կոչիլ իմաստասիրութիւն ։ Արդ վասն զի անուն զվերջին դասումն ընաւորեցաւ ունել[1], վասն այսորիկ և որ 'ի ստուգաբանութենէց սահմանն է՝ զվերջին դասն ընկալաւ՝ որպէս զանուն իմաստասիրութեան ։

Իսկ որ յարտունութենէ է սահմանն որ ասէ, թէ իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց. որ 'ի վերջոյ այլոցն դասեցաւ վասն այսր պատճառանաց ։ Ամենայն իր, որ առհասարակ է՝ նախադասի յառաջ քան զյատուկն, որ յատկապէս ումեք գոյանայ ։ Որգոն, կենդանի առհասարակ իր գոլով՝ նախադասի բանականին և մահկանացուին. վասն զի 'ի յոլովս է կենդանին քան զբանականն և զմահկանացուն ։

Դարձեալ բանականն և մահկանացուն նախադասին մտաց և մակացութեան ընդունակին. վասն զի բանականն և մահկանացուն 'ի յոլովագոյնս են քան զմտաց և մակացութեան ընդունակն. վասն զի մտաց և մակացութեան ընդունակն՝ մարդոյն միայն է յատուկ ։ Արդ այսպէս որ առհասարակագոյնքն[2] են՝ նախադասեն այնոցիկ, որք յատկապէսն գոյանան ումեք ։

Արդ վասն զի առհասարակագոյնքն նախադասեն այնոցիկ, որք յատկապէսն գոյանան ումեք, վասն այսորիկ և այնոքիկ սահմանք, որ յենթակայէ են և 'ի կատարմանէ՝ նախադասեն յարտունութենէ սահմանին, վասն զի ենթակայ և կատարումն՝ և այլոց արհեստից

1 Երկու օրին. ընդունել.

2 Երեք օրին. հասարակագոյնք ։

և մակացութեանց գոյանայ ։ Իսկ արտունութիւն ոչ ումեք պատշաճի, բայց միայն իմաստասիրութեան ․ քանզի իմաստասիրութիւն միայն է գերազանցեալ ։ Այլ վասն այսորիկ որ յարտունութենէ սահման է՝ 'ի վերջոյ դասեալ է ․ զի յատկապէս իմաստասիրութեան միայն պատշաճի ։ Իսկ որ յենթակայէ սահմանք են՝ առաջինք են քան զայնս որ 'ի կատարմանէ ․ վասն զի նախ ենթակայ գոյանայ և ապա կատարումն ․ զի եթէ ոչ ենթակայի հիմնութեան նախ փայտն, ոչ կարէ առնել աթոռ որ է կատարումն ։

Դարձեալ որ 'ի հուպ ենթակայէն է սահման՝ նախադասի այնմ որ 'ի հեռի ենթակայէն է ․ վասն զի ընդհանուրն մասնականին գոյ նախադասեալ ։ Զի եթէ ոչ գոյր ընդհանուր փայտն, և ոչ մասնականն կարէ գոլ ․ այս ինքն ընկուզի՝ կամ տօսախ ։ Ըստ նմին օրինակի նախադասի սահմանն, որ 'ի հուպ ենթակայէ է որ ասէ, իմաստասիրութիւն է գիտութիւն էակացն ըստ որում էակք են ։

Այլ երկրորդ սահման զկնի դասի, որ 'ի հեռի ենթակայէն է որ ասէ, իմաստասիրութիւն է՝ գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց ․ վասն զի ընդհանուր էակք նախադասին մասնականաւ գոյացութեան ։ Նմանապէս և յետ այսոցիկ նախադասի սահմանն որ 'ի հուպ կատարմանէն է որ ասէն, իմաստասիրութիւն է խոկումն մահու ․ և յետ սորա 'ի հեռի կատարմանէն որ ասէ, իմաստասիրութիւն է նմանութիւն աստուծոյ ըստ կարողութեան մարդկան ։ Վասն զի խոկումն մահու առաջագոյն է քան զնմանել աստուծոյ ․ զի եթէ ոչ նախ խոկայ զմահ և մեռելութիւն բացակատարէ ախտից, ոչ կարէ նմանել աստուծոյ ։ Զայսոսիկ և ութերորդ գլուխն ․ եկեսցուք յիններորդ գլուխն և տեսցուք, ո՞յք են գտօղք սահմանացս այսոցիկ ։

Այլ պարտ է գիտել՝ եթէ երկուց սահմանացդ որ յենթակայէ են՝ և միոյ որ 'ի ստուգաբանութենէ՝ զՊիթագորաս ասեմք գտող ․ թէպէտ և ոչ կարեմք ցուցանել 'ի Պիթագորայ շարագրութեանց ։ Վասն զի ոչ կամեցաւ թողուլ շարագրածութիւն Պիթագորաս ասելով՝ եթէ ոչ կամիմ զիմ վարդապետութիւնս թողուլ յանշունչս, այլ 'ի շնչաւորս ․ անշունչս կոչելով

զգիրս. իսկ շնչաւորս՝ զաշակերտսն. որ եթէ ոք հարցանիցէ կամ տարակուսեսցի, կարողք գոն պատասխանատրել և լուծանել զտարակուսանս. իսկ գիրք միշտ զնոյն և զմի[1] ասելով՝ ոչ կարեն լուծանել զարտաքոյ իւրեանց տարակուսանս:

Արդ որպէս ասացաք՝ 'ի Պիւթագորայ շարագրութ̃եց ոչ կարեմք ցուցանել, բայց 'ի պիւթագորականացն ցուցանեմք: Քանզի Նիկոմաքոս պիւթագորական, որ զթուականութ̃ե տեսական եգիտ ասէր, եթէ Պիւթագորաս այսպէս սահմանեաց զիմաստասիրութ̃ի, եթէ իմաստասիրութ̃ի է գիտութ̃ի էակացն ըստ որում էակք են: Եւ դարձեալ իմաստասիրութ̃ի է գիտութ̃ի ա̃ծայնոց և մարդկայնոց իրողութ̃եց: Եւ դարձեալ, իմաստասիրութ̃ի է սիրելութ̃ի իմաստութ̃ե:

Իսկ երկու սահմանքն վերաբերին 'ի Պղատոն, որք 'ի կատարմանէն են. այն որ ասէն, թէ իմաստասիրութ̃ի է խոկումն մահու. և այն որ ասէն, թէ իմաստասիրութ̃ի է նմանութիւն ա̃յ ըստ կարողութ̃ե մարդկան: Քանզի 'ի Փեդոնի տրամաբանութեանն երևի Պղատոնի ասել զիմաստասիրութիւն խոկումն մահու: Որովք ասէ, տագնապին՝ որք միանգամ հանդիպին ուղղորդաբար մերձեցեալ յիմաստասիրութ̃ի, մոռանալ զնոքէնս իսկ զինքեանս և զայլսն. ոչ այլ ինչ խոկալով, քան թէ զմեռանելն և զմահանալն:

Իսկ 'ի Թէետի տրամաբանութ̃են երևի ասել զիմաստասիրութ̃է առ ոմն Թէոդորոս երկրաչափ, եթէ նմանութ̃ի է ա̃յ ըստ կարողութեան մարդկան: Յորոյ ձեռն և ասէ՝ որովհետև, ով Թէոդորէ, ոչ գոյ կարողութ̃ի կորուսանել զչարն, քանզի հարկ է ա̃մ իրօք ընդդէմ հակառակ ինչ գոլ և ոչ 'ի վերնագոյնսն զետեղել. բայց զայսր մահկանացու բնութ̃ և զայսր տեղօք պարագայիլ[2] հարկ է, վասն որոյ պարտ է փախչել աստուստ անդր զվաղագոյնսն: Եւ զինչ արդեօք իցէ փախուստն. նմանութ̃ի ա̃յ ըստ կարողութ̃ե մարդկան: Նմանութ̃ի ա̃յ է բարեպաշտն և արդարն գոլ հանդերձ խոհեմութ̃ք:

1 Երկք օրին. զմի և զնոյն:

2 Երկու օրին. պարագրիլ:

Իսկ որ յառաւելութե̃ սահմանն է՝ վերաբերի յԱրիստոտէլ. քանզի այնպէս երեւի զիմաստասիրութիւն սահմանել յետ ասացելոց բանականաց, թէ իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց։ Ը̃ այսոսիկ և հինգերորդ գլուխն։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ Է.

ՈՒՍԵԱԼՔ թէ քանիք և որպիսիք են սահմանք իմաստասիրութեան, և զպատճառս քանիօնութեան նոցա և զկարգաւորութիւն և զգաւողս նոցին, եկեսցուք և հաւաստեսցուք զմի մի 'ի նոցանէ 'ի մէջ ածելով։ Արդ առաջին սահմանն էր 'ի նոցանէ որ ասէր, թէ իմաստասիրութիւն է գիտութիւն էակացն ըստ որում էակք են։

Այլ պարտ է գիտել, թէ փոխանակ սեռի առեալ է գիտութիւն որպէս առհասարակ ինչ. իսկ էակացն՝ փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց, որք որոշեն զիմաստասիրութիւն յայլոց արհեստից։ Քանզի իմաստասիրութիւն ա̃մ գոյիցն է գիտութիւն. իսկ այլ արհեստք և մակացութիւնքն ոչ ա̃մ գոյիցն, այլ մասնականաց ոմանց։

Այլ տարակուսեն ոմանք, եթէ վասն էր ասաց արդեօք հանդերձ յօդիւն, եթէ գիտութիւն էակացն, և ոչ ասաց առանց յօդի, եթէ գիտութիւն էակաց։ Այլ են ոմանք որ ասեն՝ եթէ զի ցուցցէ 'ի ձեռն յօդին զհաղորդութիւն էիցն որ առ միմեանս. 'ի վերուստ արարչականաւն՝ և 'ի ներքուստ նիւթականաւն։

Վասն որոյ ասեմք, եթէ ոչ բարիոք ասէք։ Քանզի ոչ եթէ զհաղորդութիւն էակացն նշանակէ յօդ՝

այլ զնախագիտութիւն. քանզի յօդդ զվերաբերութիւն[1] և զվերստին յիշումն զոր յառաջագոյն ոք գիտէր՝ նշանակէ: Վասնզի յորժամ ասեմք առանց յօդի՝ թէ այր եկն, որպէս յաղագս անծանօթ իրի ասեմք. իսկ յորժամ ասեմք, թէ այրն եկն՝ զյառաջածանօթ իրս նշանակէ:

Բայց և աստանօր յօդս ոչ ինչ յայսպիսեացս նշանակէ. բայց եդաւ վասն յայտն առնելոյ զընդհանրութիւն եակաց: Վասնզի ունիմք ուսանել և գիտել յառաջիկայսդ՝ թէ առանց յօդի առաջարկութիւնք համազօրք են մասնականաց, իսկ հանդերձ յօդիւն՝ համազօրք գոն հանրականաց առաջարկութեանց:

Արդ զի յայտ արասցէ, թէ ո̃մ գոյիցն է գիտութիւն իմաստասիրութիւն, վասն այսորիկ հանդերձ յօդիւն ասաց՝ թէ գիտութիւն եակացն: Իսկ ըստ որում էակք են՝ յաւել զի յայտ արասցէ զզիարդ գիտելն իմաստասիրութեան զգոյսն. այս ինքն եթէ ոչ գիտէ զնոսա ըստ քանակութեան, այլ ըստ բնութեան: Եւ քանզի և ոչ է կարողութիւն զքանիօնութիւնս անհատիցն գիտել՝ այլ զբնութիւն. վասն այսորիկ զայս յայտ առնելով՝ թէ ըստ բնութեան գիտէ և ոչ ըստ քանակութեան, ասաց՝ ըստ որում էակքն են: Արդ յաղագս հաւաստութեան առաջին սահմանին այսչափ: Եկեսցուք յերկրորդ սահմանն և հաւաստեսցուք՝ որ ասէ, թէ իմաստասիրութիւն է գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց:

Եւ պարտ է գիտել, եթէ աստանօր գիտութիւնն որպէս հասարակ ինչ փոխանակ սեռի առաւ. իսկ աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց՝ փոխանակ բաղկացուցիչ զանազանութեանց, որք բաղկացուցանեն զիմաստասիրութիւն. քանզի միայն իմաստասիրութիւն է՝ որ յաղագս աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանցն եղանի: Եւ ոչ զաստուածայինսն արհամարհէ՝ լինելովն սակս մարդկայնոցն, և ոչ զմարդկայինս առնէ անփոյթ՝ լինելովն սակս աստուածայնոցն. այլ աստուածայնոցն հետեւի և աշակերտի, իսկ զմարդկայինսն յարդարէ և 'ի կատարումն[2] ածէ:

1 'Ի լուսանցս օրինակի միոյ. զվերբերութիւն:

2 Մի օրին. կատարէ և 'ի յարմարութիւն ածէ:

Նստուստ տարակուսեն ոմանք ասելով՝ եթէ զիա՞րդ ասէք վասն իմաստասիրութեան, թէ գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց ։ Վասն զի և այլ գոյից է գիտութիւն. երկնից և երկրի և ա՟ծ գոյից. և այնոցիկ որ ոչ աստուածայինք և ոչ մարդկայինք են ։ Նաև յաղագս բնութեան հոգւոյ ասէ իմաստասիրութիւն, որ ոչ աստուածային է և ոչ մարդկային ։

Ընդ այս տարակուսանս լուծանելով ասեմք, թէ վասն զի էակացն են ոմանք որ իմանալիք են՝ և են որ զգալիք. արդ իմանալեացն ծայր՝ աստուածայինքն են. և զգալեացն մարդկայինք ։ Արդ զծայրագոյնսն գոյից[1] ասելով՝ հանդերձ նոքումբք յարառոցեաց զիմանալիսն և զզգալիս ։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ Ը.

Երրորդ սահման է ՚ի հուպ կատարմանէ որ ասէ, իմաստասիրութիւն է խոկումն մահու. քանզի այսպէս սահմանէ զնա Պղատոն ՚ի Փեդոնի տրամաբանութեանն ։ Յորոյ ձեռն ասէ, թէ արդարև տագնապին այնոքիկ, որք հանդիպին ուղղորդաբար մերձեցեալք յիմաստասիրութիւն, մեռանելով զնոսին իսկ զինքեանս և զայլսն. ոչ այլ ինչ խոկալով, քան զմեռանելն և զէ մեռանելն ։ Եւ բարւոք առակայմանն երկոքեան՝ մեռանելն և է մեռանելն. քանզի ՚ի ձեռն մեռանելոյն՝ զգործական իմաստասիրութիւն մեկնեաց ։ Քանզի իմաստասէրն ՚ի մեռանելն իւրում ունի զգործականն. քանզի յայնժամ մեռելութիւն բացագործէ ախտից ։

1 Մի օրին. զծայրագոյնսն. և միւս այլ. զծայրս գոյիցն ։

Իսկ ասելով է մեռանել՝ զտեսականն յայտնեաց. քանզի է մեռանելն՝ զանցեալ ժամանակն նշանակեաց. և իմաստասիրի յետ մեռանելոյն է տեսականն: Վասնզի յետ մեռուցանելոյ զախտս՝ և մաքրելոյ և սրբելոյ զհոգին՝ վերաձգտի առ տեսութիւն, և սկիզբն առնէ ածաբանելոյ: Վասնզի եթէ ոչ մեռելութիւն բացագործիցէ ախտից՝ և սրբիցէ զհոգին, ոչ կարէ ածաբանել, վասն զի ըստ Պղատոնի՝ անսուրբն 'ի սբ հպիլ ոչ բարւոք և իրաւ: Այլ այսոքիկ այսպէս:

Բայց տարակուսեն ոմանք ասելով, թէ զիարդ Պղատոն զիմաստասիրութիւն խոկումն մահու ասէ գոլ. ասելով, թէ ո՛վ Պղատոն, զիարդ իմաստասէրն հմտասէր զինքն արտահանէ, այս ինքն 'ի բաց բառնայ, և հարստահարութիւն խոկայ ընդ դէմ արարչին. կամելով զկապն լուծանել, զոր նա կապեաց՝ այս ինքն զհոգւոյ և զմարմնոյ միաւորութիւն: Այլ որպէս զի ոչ է պարտ ումեք զինքն արտահանել, այս ինքն 'ի բաց բառնալ, ցուցանի 'ի բազում ձեռնարկութէ. Նախ 'ի նմին իսկ Պղատոնէ. քանզի և ասէ իսկ Պղատոն 'ի նոյնում տրամաբանութեան, թէ Որպէս ահա յուսեմն 'ի պահարանում եմք. և ոչ է պարտ յայնմանէ զինքն արտահանել և տարափախչել: Իսկ յերկրորդ ձեռնարկութէ ցուցանի, թէ արդարև իմաստասէրն նման է այ՝ որպէս յառաջագոյն ցուցաք. ցուցեալք զնա այնոքիւք կերպարանեալ՝ որովք և ածայինն: Իսկ նմանն այ՝ ոչ արտահանէ զինքն, այս ինքն 'ի բաց բառնայ. յայտ է թէ ոչ իմաստասէր է, որ 'ի բաց բառնայ զինքն, թէպէտ և խոկայ զմահ: Այլ զի նմանն այ ոչ 'ի բաց բառնայ զինքն՝ յայտ է թէ ամ, որ 'ի բաց բառնայ զինքն, ոչ միայն ոչ նման է այ, այլ և հակառակ նմին է. կամելով 'ի բաց բառնալ զինքն և լուծանէ զկապն զոր նայն կապեաց, և անջատէ զհոգի 'ի մարմնոյն: Իսկ յերրորդ ձեռնարկութենէ յայսմանէ, ածային բնութիւն ոչ երբէք որոշէ զինքն յերկրորդէն, այս ինքն 'ի մարդոյ, բայց եթէ յանպատկանաւորութէ մարդոյն. քանզի յանժամ թուի որոշել զինքն 'ի նմանէ:

Այլ արդ որպիսի ինչ է զոր ասեմքս. որպէս արե-

գակնային լոյս առ հաւասար զամենեսեան լուսաւո-րէ. բայց թէ յանպատկանաւորութէ տեսարանացն թուի զոմանս առաւել լուսաւորել և զոմանս նուազ։ Քանզի են ոմանք որ առողջ ունին զտեսարանսն, և են որ տկարք, և յայսմանէ թուի զոմանս առաւել լուսաւորել և զոմանս նուազս։ Այնպէս և ա̃ծայինն ոչ երբէք որոշէ զինքն 'ի մարդոյ, այլ ամենեցուն հաւասարապէս խնամէ. այլ վասն տկարութե ընդու-նողին և վասն ոչ սուրբն գոլոյ յախտից, թուի զինքն որոշել 'ի նմանէ։ Արդ այսպէս և իմաստասէր ոչ այն-պէս խոկայ զմահ, որպէս թէ անջատել զհոգին յեր-կրորդէն, այս ինքն 'ի մարմնոյն. քանզի մարմին որ-պէս ապականել՝ երկրորդ կոչի հոգւոյ։ Իսկ 'ի չոր-րորդ ձեռնարկութէ յայսմանէ, թէ արդարև առա-քինութի բարերջանկութի է, և մայր իմաստութե առաքինութի է. վասն զի 'ի ձեռն առաքինութեան ստանամք զիմաստասիրութի։

Իսկ բարերջանիկն՝ և այն որ ըստ առաքինութեան կեայ՝ ոչ տրտմի. ոչ 'ի վերայ մարմնականաց փորձու-թեանց՝ և ոչ 'ի վերայ արտաքնոց, այս ինքն ընչից. իսկ որ ոչն տրտմի 'ի վերայ մարմնականացն փորձու-թեանց և ոչ 'ի վերայ արտաքնոցն, այնպիսին և ոչ արտահանէ զինքն։ Այնպէս և իմաստասէրն ըստ առաքինութե կենցաղավարելով ոչ տրտմի. ոչ վասն մարմնականաց փորձութեց և ոչ վասն արտաքնոցն. իսկ որ տրտմին և տխրին 'ի վերայ մարմնականացն և արտաքնոցն, լսեն զասացեալսն առ 'ի Հիպոկրատայ[1], վասն օտար փորձութեց՝ իւրական ստանան զտրտ-մութիւնն։

Զայսոսիկ յայտ առնէ և Պղատոն, թէ Որ ըստ առաքինութե կենցաղավարի ոչ տրտմի. ոչ վասն մար-մնականաց փորձութեց և ոչ վասն արտաքնոցն։ Քան-զի և նա հարցեալ յումեմնէ՝ թէ Ողջ է ասա ինձ, ո՛վ Պղատոն՝ թէ այնպիսին որ յիւրում կենդանութե 'ի պատժականսն անկաւ փորձութիւնս, և զՍոլոն իւր ետես չարեօք ըմբռնեալ, և յետ վախճանին գտաւ անթաղ ընկեցեալ, բարերջանիկ գո՞յ թէ ոչ։ Պատաս-

1 Մի օրին. առ Հիպոկրատայ։

խառնեաց առելով, 'Ի բաց տար 'ի քումմէ կարճատե- սութենդ[1]. քանզի ոչ ինչ եղծանէ զհոգեկան առա- քինութիւնս :

Արդ այսոցիկ այսպէս գոլով, զինչ ունիմք ասել վասն Պղատոնի, որ երբեմն ասէ. պարտ է խոկալ ըզ- մահ, և երբեմն՝ թէ ոչ է պարտ զինքն արտահա- նել. ընդդիմանայր արդեօք ինքեան թէ ոչ. և ա- սեմք թէ ոչ: Նախ զի զայս ցուցցուք, եթէ ոչ ընդդի- մանայր ինքեան՝ ասասցուք դուզնաքեայ ինչ :

Պարտ է գիտել, եթէ կենդանութիւն է ունակութիւն և պատճառք գոլոյ. իսկ մահ՝ պակասութիւն և պատ- ճառք ոչ գոլոյ. և երկաքանչիւրոք 'ի սոցանէ երկա- կի ասի գոլ. 'քանզի և է իսկ երկակի կենդանութիւն. է որ բնական՝ և է որ յօժարական: Արդ բնական ասի՝ շարամերձութիւն հոգւոյ և մարմնոյ, ըստ որում ըզ- գայութիւն ասի տալ հոգի մարմնոյ և շարժումն. ըստ որում ամենեքեան ասիմք կեալ, ըստ որում մար- մինն կրեալ ասի զհոգին, ուստի և կապարան զմար- մինն բացակոչէ Հոմերոս. վասն որոյ մարմին կոչի, այս ինքն ընդարմ. վասն զի ընդարմացուցանէ զհո- գին և ընդարմանայ 'ի գերեզմանի : Իսկ յօժարա- կան կենդանութիւն է՝ յորժամ յոռեգոյնն յաղթէ լաւագունին. այս ինքն յորժամ հոգին յաղթի 'ի մարմնականաց հեշտախտութեանց. ըստ որս և անասնակ կեանք կոչեցան, այս ինքն ոչ ողջախոհ : Իսկ բնական մահ է՝ անջատումն հոգւոյ 'ի մարմնոյ. ըստ որում ամենեքեան վախճանիմք. իսկ յօժարական մահ է՝ ըստ առաքինութեան կենցաղավարութիւն. այս ինքն յաղթել կենդանւոյն՝ յորժամ խոկումն լինի մահու վասն մեռելութիւն գործելոյ ախտից : Արդ այսոցիկ այսպէս գոլով չորք այսոքիկ յայտացանէ. գոլն, ոչ գոլն. բարի գոլն, չարն գոլ :

Արդ գոլն՝ է բնաւորական կենդանութիւն. իսկ ոչ գոլն՝ բնաւորական մահ. և բարի գոլն՝ յօժարա- կան մահ. իսկ չար գոլն՝ ախորժական կենցաղավա- րութիւն : Արդ յորժամ ասէ Պղատոն, եթէ պարտ է խոկալ, զախորժական մահուանէն ասէ. այս ինքն թէ

1 Երկու օրէն. 'Ի փոքմէ կարճմտութենէդ :

պարտ է ըստ առաքինութեան կեալ և մտաւորութեան գործել ախտից ։ Իսկ յորժամ ասէ, թէ ոչ է պարտ արտահանել զկեանս՝ զբնաւորական մահն նշանակէ, ըստ որում ամենեքեան մեռանիմք ։ Եւ այսոքիկ այսպէս ։

Եւ պարտ է գիտել, եթէ ոմն Կղէոմբրոտոս Ամբրակիացի կարծելով, եթէ Պղատոն զբնաւորական մահուանէն հրամայէ խոկալ իմաստասիրելն, ընկեցեալ զինքն 'ի պարսպէն վախճանեցաւ. վասն որոյ ասէ Կալլիմաքոս, Ուրախացիր ով արեգակն, Կղէոմբրոտոս Ամբրակիացի վազեալ 'ի բարձրաբերձ պարսպաց 'ի դժոխս, արժանի ինչ ոչ ունեալ մահու, այլ չար զՊղատոնի զյաղագս հոգւոյ գիրն ընթերցեալ ։ Առ այսոսիկ ասաց Ողոմպիոդորոս փիլիսոփոս, եթէ ոչ պղատոնական գիրն զիմն նահանջէր զյարձակումն, այն ինչ ահա տաժանաբար լուծանէի զյոքնաթախանձ կապ կենցաղոյս ։ Արդ զի մի եղիցին բազում Կղէոմբրոտոսք՝ առաջարկեսցուք 'ի սահմանն զնոյն նշանակութիւն պահելով, ասասցուք այսպէս ։ Իմաստասիրութիւն է խոկումն մահու յապրիլ կենդանւոյն՝ որով հնարիցի զխոկումն մահու ։ Բայց մահ պարտ է աստանօր իմանալ ոչ զբնաւորական մահն՝ այլ զախորժականն, որով զմեռելութիւն գործէ ախտից ։

## ԸՆԴ ԱՑՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ Թ.

Եւ արդ վասն զի Պղատոն զիմաստասիրութիւն խոկումն մահու սահմանեաց, կարծեցեալ ստոյիկեանքն՝ թէ վասն բնաւորական մահուն ասէ, զանն և յարադրեն յեղանակս ոմանս, ըստ որոց յիրաւի ոք զինքն 'ի բաց բառնայ։ Եւ ասեն, եթէ վասն զի առաջիկայ կենցաղս այս մեծի երախանի նմանեալ գոյ՝ յայտ է եթէ ըստ որչափից յեղանակաց երախան լուծանի, ըստ այնքանեաց յիրաւի ոք զինքն արտահանէ։

Նա քանզի և ասեն իսկ, եթէ ըստ վեց յեղանակաց լուծանի երախանն. կամ վասն կարօտութեան կերակրոց. զի կարօտութեան եղեալ կերակրոց, յիրաւի յառնեն կոչեցեալքն և լուծանի երախանն։ Արդ այսպէս և վասն կարօտութեան ընչից՝ յիրաւի ոք զինքն արտահանէ, այս ինքն 'ի բաց բառնայ, ոչ կամելով ծախել 'ի սովոյ. որպէս և Թեոգնիս յայտ առնէ ցոյն Կիւռնոս ասելով՝ թէ պարտ է յաղքատութենէ փախչել և 'ի մեծակիտերն անկանել ծովն, և 'ի վիմաց, Կիւռնէ, հոսիլ յարեգակնակոխ։ Եւ արդ պարտ է գիտել, եթէ ոչ զայն ասէ, եթէ պարտ է տնանկին զինքն 'ի բաց բառնալ, այլ զայն ասէ, թէ պարտ է տնանկին տմ ուրեք սերմանել՝ և 'ի վիհս անկոխս. եթէ հնար ինչ իցէ և 'ի ծովու, որպէս զի ազատեսցի 'ի սովոյ։

Ըստ երկրորդ յեղանակի դարձեալ լուծանի երախանն՝ վասն լինելոյ չարահաւ զկերակուրսն և դեղս մակարդիցեալս. քանզի այսպիսեաց եղոց կերակրոց՝ յիրաւի յառնեն կոչեցեալքն և լուծանի երախանն։ Արդ այսպէս և մարմնոյ ուրուք չարահաւելոյ և անպատկանաւորելոյ առ 'ի յընդունելոյ զանձնաւորա-

կամ ապշութեամբ, յիրաւի արտահանէ 'ի բաց քերելով զինքն 'ի ցաւոյն ։ Որպէս և ոմն չնական փիլիսոփոս կիսադոս գոլով, մատեաւ առ Յուլիանոս թագաւոր ասելով, Կէս մարդոյ¹ խմոյ մեռաւ և կէս տեսանէ զտիւ. գթա՛ ով թագաւոր, 'ի կիսակոտոր չնականս. այս ինքն թէ հրամայեա՛ կամ բժշկել կամ սպանանել. առ որ ասաց, թէ Օ երկոսեան զրկես, և զՊղոտին և զՓայիթոն. յուսմնէ պակասեալ՝ և զոմն տակաւին ևս տեսանելով ։

Ըստ երրորդ յեղանակի դարձեալ լուծանի երախանն, յորժամ է վասն առանձնական տագնապի կոչնատեանն. քանզի կոչնատեանն կամ յանկարծակի հիւանդանալ՝ և կամ լսել զկորուստ սիրելւոյ, յառնեն կոչեցեալքն և լուծանի երախանն ։ Եւ արդ այսպէս՝ թէ առանձնական ումեք տագնապ հասանիցէ, յիրաւի 'ի բաց բառնայ զինքն. որպէս և արար պիթագորուհին Տիմիքայ, որ կոչեցաւ Թեանոսի ։ Քանզի նա անկեալ 'ի բուռն սիկիլացւոց բռնաւորին, և հարցեալ՝ թէ ընդէ՞ր ոչ ուտեն պիթագորականքն զմեծ ոլոռունս, ասէր՝ Կերայց քան թէ ասացից ։ Եւ յասել բռնաւորին, թէ կե՛ր, ասէր, Ասացից քան թէ կերայց. և այնպէս ծամելով զլեզուն վախճանեցաւ ։

Ըստ չորրորդ յեղանակի դարձեալ լուծանի երախանն վասն արբեցութեան. քանզի յարբեցութիւն անկելոց² կոչեցելոցն՝ յիրաւի լուծանի երախանն ։ Նոյնպէս յիրաւի ոք 'ի բաց բառնայ զինքն, յորժամ 'ի վերջինն հասանիցէ 'ի ծերութիւն և զառանցիցէ, և սկիզբն առնէ աղձատելոյ և բարբանջելոյ ։

Իսկ ըստ հինգերորդ յեղանակի դարձեալ լուծանի երախանն, յորժամ սկիզբն առնեն կռուելոյ կոչեցեալքն և անիրաւս առ միմեանս առնել ։ Նոյնպէս յիրաւի ոք 'ի բաց բառնայ զինքն, յորժամ ըմբռնեալ 'ի թշնամեաց՝ հրամայի առնել անիրաւ ինչ, կամ ընդ մօր անկանել կամ անպատեհս ինչ ուտել ։

Իսկ ըստ վեցերորդ յեղանակի լուծանի երախան վասն հասարակական տագնապի. քանզի հասարա-

¹ Երկու օրին. մարդոյս ։ ² Մի օրին. հանդիպելոյ ։

կակուն տագնապի հասելոյ, կամ հրայրեցութե կամ շարժման կամ արշաւանաց բարբարոսաց, յառնեն կոչեցեալքն և լուծանի երախանն։ Այսպէս յիրաւի ոք զինքն 'ի բաց բառնայ 'ի հասարակական տագնապէ հասելոյ, և թշնամեացն այն ինչ զքաղաքն առնուլ հուպ եղելոյ, և նորա յերկիւղէ անտի յաղթահարելոյ։ Արդ զայսոսիկ ստոյիկեանք։

Իսկ այլք երկուս միայն յեղանակս յարադրեն, ըստ որոց յիրաւի ոք 'ի բաց բառնայ զինքն։ Քանզի ասեն, թէ Առ 'ի կեալ՝ կենցաղս է կամ լաւ կամ յոռի կամ միջակ. արդ յորժամ ոք 'ի լաւումն կամ 'ի միջակումն գոլով և տեսանէ զինքն 'ի յոռին արտամիտեալ՝ յիրաւի 'ի բաց բառնայ զինքն։ Նաև դարձեալ յորժամ 'ի յոռեգունումն գոլով և տեսանէ զինքն ոչ երբէք 'ի լաւագոյնսն վերաթեւեալ՝ յիրաւի 'ի բաց բառնայ։ Նաև արդ այսոքիկ այսպէս։

Սակայն որոյ ասեմք՝ եթէ ոչ ըստ իրաւանց և ոչ ըստ անիրաւութե պարտ է զինքն 'ի բաց բառնալ ումեք. քանզի որք զայս այսպէսն կամին կամ խորհին, ընդդիմանան արարչին. հարստահարութք կամելով զկապն լուծանել զոր նայն կապեաց։ Նաև պարտ է հաւանել Պղատոնի որ ասէ, թէ Ահա որպէս յումեմն պահարանում եմք. և ոչ է պարտ յայսմանէ զինքն արտահանել և տարափախչել, այլ կալ մնալ կապողին մինչև նա լուծցէ։ Իսկ փորձութիք թէ ուրեք պատահիցեն՝ ոչ վասն այնորիկ որպէս թէ ումեք պարտ է զինքն 'ի բաց բառնալ, այլ վասն փորձելոյ զհոգին։ Քանզի որպէս լաւ նաւապետ ոչ 'ի հանդարտութե ծովուն, այլ 'ի յուզման ալեացն փորձի, նոյնպէս և վեհագոյն հոգի 'ի փորձութե նահատակի։ Սուտի և Ճեմականքն կամելով զժուժկալութի հոգւոյ ցուցանել՝ աղօթէին ասելով, Զեւս, տեղեա 'ի մեզ փորձութիւն։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ Ժ.

ՀԱՄԲԱՌՆԱՑ այսուհետեւ աստուստ Պղատոն 'ի հեռի կատարումն . եւ ոչ 'ի պարզաբար 'ի հեռի ; այլ յեւս 'ի հեռագոյնն՝ որ ոչ ինչ եւս է քան զնա անդր . քանզի սահմանէ զիմաստասիրութիւն՝ նմանութիւն ա̃յ ըստ կարողութեան մարդկան ։ Քանզի զի՞նչ այնպէս երանելի եւ վայելուչ կատարումն . որպէս զնմանել ա̃յ ըստ կարողութեան մարդկան ։ Վասն որոյ ասեն ոմանք , թէ ոչ կարէ իմաստասէրն որպէս մարդ գոլով նմանիլ ա̃յ . զոր նիւթեն այսպէս ։

Բնութիւն ա̃յ եւ մարդոյ զանազան է , որպէս եւ քերթողն յայտ առնէ ասելով . վասն զի ոչ ինչ ցեղ նման է ա̃ծոց անմահից եւ գետնակոխողաց[1] մահկանացու մարդկան ։ Իսկ որոց էութիւնքն զանազանք են՝ այսոցիկ եւ կատարելութիւնք զանազանք գոն . որգոն , այլ է էութիւն մարդոյ եւ այլ ձիոյ . եւ այլ կատարելութիւն մարդոյ եւ այլ ձիոյ ։ Արդ եթէ զանազան է էութիւն ա̃յ եւ մարդոյ , եւ որոց էութիւնքն զանազանք են՝ զանազանք են եւ կատարելութիւնքն . եւ յայտ է թէ այլ կատարելութիւն է ա̃յ եւ այլ մարդոյ . վասն որոյ ոչ կարէ իմաստասէրն նման գոլ ա̃յ ։

Արդ զի զտարակուսանս զայս լուծանել փութամք , ասասցուք , թէ ըստ որո՞ւմ նշանակութեան ասեմք աստանօր նման . այլ նախ ասասցուք եթէ ըստ քանի՞ յեղանակաց ասի նման ։ Եւ պարտ է գիտել թէ ըստ չորից յեղանակաց ասի նման . քանզի նման ասի այն՝ յորժամ նոյն որակութիւն 'ի բոլորումն տեսակումն տեսանի ։ Որգոն՝ յորժամ զբոլոր եթովպացիսն նմանս միմեանց ասեմք գոլ ըստ սեւոյն . եւ զձիւն կարապ նման միմեանց ըստ սպիտակին ։

1 Մի օրին . Գետնաքոխ մահկանացուաց ։

Դարձեալ ասի նման, յորժամ նոյն որակութ՟ի 'ի զանազան տեսակս տեսանի՝ ըստ առաւելութ՟ե և ըստ նուազութեան։ Որպէս զսպիտակ պղպիղ[1] և զսեաւ՝ նմանս միմեանց ասեմք գոլ ըստ ջերմայնոյն. քանզի երկոքեին ջերմինք են, այլ ըստ առաւելութ՟ե և նուազութ՟ե. քանզի սեաւն առաւել ջերմային է, իսկ սպիտակն նուազ։

Դարձեալ ասի նման և այն՝ յորժամ զանազան որակութ՟իք 'ի զանազան տեսակս գտանին[2]. որպէս զհաւփալն և զաղաւնին նմանս միմեանց ասեմք գոլ, զնոյն որակութ՟իս ունելով։ Քանզի որպէս հովփալն զանազան որակութ՟իս ունի զսպիտակն և զխարտեաշն և զսեաւն, նոյնպէս և զաղաւնին ասեմք զնոյն որակութ՟իս ունել։

Դարձեալ ասի նման միմեանց՝ որպէս պատկերն և յարացոյցն. քանզի ասեմք զպատկերն Սոկրատայ՝ նման գոլ Սոկրատում։ Նաև պարտ է գիտել, թէ յարացոյց ունել ասի նախատիպն, ըստ որում պատկերն եղև. որպէս յորժամ զՍոկրատէս յարացոյց ունելով՝ զպատկերն Սոկրատայ ասեմք նման գոլ Սոկրատում։

Արդ ըստ այսմ նշանակութ՟ե ասեմք զիմաստասէրն նման գոլ ա՟յ, որպէս զպատկերն Սոկրատայ Սոկրատում. թէպէտ և այլ է պատկերն Սոկրատայ՝ այլ Սոկրատէս. քանզի ոմն շնչաւոր և ոմն անշունչ. ըստ նմին օրինակի և նշանակութ՟ե, ասեմք զիմաստասէրն նման գոլ ա՟յ, թէպէտ և այլ էութ՟ի է ա՟յ և այլ մարդոյ։ Նաև զի իմաստասէրն նման է ա՟յ՝ աստուստ յայտ եղիցի. քանզի որովք կերպարանի աստուածայինն, նոքիմբք կերպարանի և կատարեալ իմաստասէրն։ Քանզի երիւք այսոքիւք ա՟ծայինն կերպարանի. բարեաւն և գիտութ՟բ և կարողութ՟բ. որպէս և քերթութ՟ին յայտ առնէ ասելով վասն բարւոյն՝ թէ Աստուածք տուօղք բարեաց են։ Վասն գիտականին՝ թէ Աստուածք զա՟մ ինչ գիտեն։ Իսկ վասն կարողութեան՝ թէ Աստուածք յա՟մի կարողք գոն։ Նոյնպէս և կատարեալ իմաստասէրն երիւքս այ-

1 Մի օրին. պղպեղ։ 2 Մի օրին. փեսանին։

ոգիւք կերպարանի. բարեաւն և գիտնականաւն և կարելեաւն ։

Այլ բարեաւն՝ զի որպէս ածայինն ամենեցուն խնամ ածէ, նոյնպէս և կատարեալ իմաստասէրն անկատար ոգւոց խնամ տանի, 'ի ձեռն գիտութեն զանկատար և զտգէտ հոգի 'ի կատարեալ գիտութի փոփոխելով ։ Իսկ գիտնականաւն կերպարանի՝ զի որպէս ածայինն զամ ինչ գիտէ, նոյնպէս և կատարեալ իմաստասէրն զամ ինչ խոստանայ գիտել ։ Իսկ կարելեաւն՝ զի որպէս ածայինն զամ ինչ կարէ և կամի, նոյնպէս և կատարեալ փիլիսոփոսն՝ որչափ ինչ կարող գոյ և կամի ։ Այլ այսոքիւք այսպէս ։

Աստ որոյ և ասեն ոմանք, թէ զիա՞րդ ասէք զիմաստասէրն նման գոլ այ բարեաւն և գիտականաւն և կարողութբն. որ ըստ քերթողին ոչ է նման ցեղ անմահից ածոց և գետնակոխողաց մարդկան ։ Առ որս ասեմք, թէ վասն այսորիկ առկայացաւ 'ի սահմանին՝ ըստ կարողութեան մարդկան. քանզի որչափ ինչ կարողութիւն է և հասումն մարդոյ՝ թուի նմանել իմաստասէրն այ ։ Աստ զի և ոչ նոյնպէս է՝ ոչ բարին և ոչ գիտականն և ոչ կարողն առ այ և առ մարդոյ. քանզի այլաբար է առ 'ի յայ բարին, և այլ առ 'ի մարդոյ. վասն զի բարին էակացեալ է առ այ, և էութի այ է բարին. ուստի և անկարելի է ընդունակ լինել չարին վասն առաւելութե բարւոյն ։ Որպէս արեգակն անընդունակ ասի լինել խաւարի, վս առաւելութե լուսոյն. իսկ մարդն ունակութբ ունի զբարին, ուստի և ընդունակ է չարութե. որպէս և օդդ ըստ ունակութե [2] ունել ասի լոյս, վասն զի 'ի ծագել արեգականն լուսաւորի, ուստի և ընդունակ ասի գոլ խաւարի. քանզի 'ի մտանել արեգականն խաւարի ։

Այլ դարձեալ այլաբար է գիտնականն առ 'ի յայ, և այլաբար առ 'ի մարդոյ ։ Քանզի ած միշտ և միաբան զամ գիտէ. և ոչ է ժամանակ յորում ոչ գիտէ. այլ միշտ և միաբան զամ գիտէ ։ Իսկ մարդ ոչ միշտ և ոչ միաբան զամ գիտէ. քանզի և ոչ տակաւին եւ

2 Երկու օրին. ընդունակութեն ։

ծնեալն գիտէ ինչ ազդմամբ[1]. այլ զօրութիւն ասի գիտել: Նոյն դարձեալ մարթ է այսօր ինչ՝ եթէ դէպ լինի գիտել ումեք, և այգուցն մոռանալ. և ոչ զամենայն միաբան գիտել, այլ ըստ մասին. քանզի յայսմ ժամանակի զայլ ինչ գիտէ՝ և յայլ ժամանակի այլ ինչ: Որպէս յայտ առնէ և Պղատոն ասելով՝ թէ Ախորժելի է, որում գէթ 'ի ծերութեան իմաստասիրութիւն և խոհեմութիւն առընթեր է:

Նոյն դարձեալ այլաբար է կարողութիւն ա̃յ՝ և այլաբար առ 'ի մարդոյ. քանզի անդրադարձի առ 'ի ա̃յ. վասն զի որչափ ինչ կամի և կարէ, և որչափ ինչ կարէ և կամի. և ոչ ինչ պատշաճիցի անկարութե առ 'ի ա̃յ: Իսկ առ իմաստասիրին ոչ անդրադարձի. քանզի որչափ ինչ կարէ և կամի, այլ ոչ որչափ ինչ կամի և կարէ. վասն զի թէ և կամիցի ձեռամբ բուռն հարկանել զարեգակնէ, և կամ ստեղծանել երկին, ոչ կարէ:

Ապա թէ ոք ասիցէ՝ թէ ոչ կամի անկարելի ինչ իւրի կատարեալ իմաստասէրն ցանկալ, այլ այնոցիկ տենչայ, որոց և հասանել կարող գոյ. քանզի ըստ ստոյիկեանցն մեծ կարօտութիւն է 'ի վաշխս տենչանացն անլրութիւն: Ասեմք, եթէ որպէս գիտելով զիւր տկարութիւն բնութեան ոչ տենչայ անհասիցն, այլ այնոցիկ տենչայ, որոց և հասանել կարող գոյ: Արդ այդոքիկ այսպէս:

Բայց տարակուսեն ոմանք ասելով թէ ո՞ւր սահմանեաց Պղատոն զիմաստասիրութիւն նմանութիւն ա̃յ ըստ կարողութեան մարդկան: Նոյն ասեմք, թէ 'ի Թէետիայ տրամաբանութեանն. քանզի անդ առ Թէոդորոս ոմն երկրաչափ առնելով զխօսս, ասէ այսպէս: Այլ վասն զի, ո՛վ Թէոդորէ, ոչ կորնչել չարեաց կարողութիւն գոյ, քանզի հակառակ իմն բարւոյ գոլ հարկաւոր, և ոչ առ ա̃ծ զնոսա զետեղել. զայսմ մահկանացու բնութիւն զայսոր տեղեաւ շրջաբերի 'ի հարկէ. վասն որոյ պարտ է ջանալ փախչել աստուստ անդր զվաղագոյնս: Արդ զի՞նչ է փախուստն. նմանութիւն ա̃յ ըստ կարողութեան մարդկան. իսկ նմա-

1 Երկու օրին. Ներգործութեամբ:

նութիւն է այս՝ սուրբն և արդարն գոլ համդերձ խո-
հեմութեամբ ։

Դարձեալ ասեն, թէ ոչ սահմանեաց զիմաստասի-
րութիւն, այլ զփախուստն 'ի չարեաց ։ Առ որս ասաս-
ցուք, թէ և փախուստն 'ի չարեաց ոչ այլ ինչ է, ե-
թէ ոչ իմաստասիրութիւն. վասն զի իմաստասիրութիւն
որ զմեռելութիւն ախտից բացագործէ. որպէս բազում
անգամ 'ի վերագոյն սահմանեցաք զնա խոկումն
մահու ։ Իսկ մեռելութիւն ախտից ոչ այլ ինչ է՝ եթէ
ոչ փախուստ 'ի չարեաց. և յայտ է թէ զիմաստա-
սիրութիւն սահմանեաց ։

Դարձեալ՝ թէ արդարև արդարութիւնք և խոհե-
մութիւնք առաքինութիւնք են. իսկ տեղի իմաստասի-
րութեան առաքինութեանն է. վասն զի 'ի ձեռն առաքի-
նութեան ստանամք զիմաստութիւն, յայտ է թէ 'ի ձեռն
ասելոյն՝ Լինել արդար համդերձ խոհեմութեամբ, զի-
մաստասիրութիւն սահմանեաց ։ Այլ և վասն ասելոյն՝
համդերձ խոհեմութեամբ, զտեսականն սահմանեաց.
վասն զի խոհեմութիւն կատարումն բանի է. իսկ կա-
տարումն տեսականին կատարելութիւն բանի է, այս
ինքն բանի գիտութիւն ։ Այլ յայտ է թէ ասելովն՝ Համ-
դերձ խոհեմութեամբ՝ զտեսականն նշանակեաց. իսկ ա-
սելովն՝ Սուրբն և արդարն գոլ՝ զգործականն սահմա-
նեաց. վասն զի սուրբն և արդարն՝ առաքինութիւնք
բարուց են, իսկ կատարումն գործականին առաքի-
նութիւնք զարդարունք բարուց ։ Արդ այսոքիկ այսպէս ։

Բայց խնդրեն ոմանք, թէ վասն էր առկայացան
երկոքինն՝ սուրբն և արդարն ։ Այլ ոմանք ասեն, թէ
սուրբն առաւելութիւն է արդարոյն, ուստի զանչափ
անիրաւն անսուրբ ասեմք գոլ ։ Բայց լաւագոյն է
ասելն, թէ զանազանին 'ի միմեանց սուրբն և ար-
դարն. վասն զի արդար այն ասի, որ զզուգաւո-
րութիւն համեմատ էակացն պահէ. իսկ սուրբ է՝ որ
ածայնոցն ունի փոյթ յանձին. և զի այսոքիկ 'ի մի-
մեանց զանազանին՝ յայտ առնէ Պղատոն գրելով եր-
կուս տրամաբանութիւնս. և 'ի միումն մակագրեաց՝
Յաղագս արդարոյ՝ կամ քաղաքավարութեան. և 'ի
միւսումն՝ Եւթիփռոն՝ Յաղագս սրբոյ. յորում վասն
ածայնոց իրաց ծանուցանէ ։ Այլ այսոքիկ այսպէս ։

Բայց տարակուսեն ոմանք ասելով, թէ վասն զի չորք առաքինութիւնք են հոգւոյ, արիութիւն արդարութիւն ողջախոհութիւն խոհեմութիւն. զի՞ զմին միայն աստանօր յիշեաց զարդարութիւն։

Առ որս ասեմք նախ առաջին, թէ և զխոհականութիւն յիշեաց. քանզի ասաց՝ թէ Արդարն և սուրբն գոլ հանդերձ խոհականութեամբ. երկրորդ՝ թէ և զարդարութիւն միայն յիշեաց, ոչ ինչ անտեղի լինին որպէս ցուցանեմք։ Այլ պարտ է գիտել՝ եթէ և երեքմասնեայ գոլով հոգի, քանզի ունի բան, ցասումն և ցանկութիւն, չորք են առաքինութիւնք հոգւոյ. արիութիւն[1], արդարութիւն, խոհականութիւն, ողջախոհութիւն։ Այլ այսպէս յիրաւի. վասն զի պարտ է զիւրաքանչիւր մասն հոգւոյ՝ իւրականն զարդարել առաքինութեամբ. ուստի բան խոհականութեամբ զարդարեալ գոյ. իսկ բարկութիւն արիութեամբ. իսկ ցանկութիւն ողջախոհութեամբ։ Այլ վասն զի ոչ միայն պարտ է իւրաքանչիւր մասին առանձնականաւ զարդարիլ առաքինութեամբ, այլ և յարմարութիւն առ միմեանս և բարեկարգութիւն պահել, վասն այսորիկ և արդարութիւն ընդ ամենեսեան անցեալ երևի. զի մի՛ միայն 'ի միում մասին, այլ և յամ 'ի մասունս տեսանելով յարմարութիւն և բարեկարգութիւն պահեսցի։

Այլ որպէս յամենայնութիւն տեսանեմք զոմանս միայն իշխան գոլ, որպէս զԱստուածայինն. և զոմանս իշխան և ընդ իշխանութեամբ, որպէս զմարդկայինս. քանզի մարդկայինք ընդ իշխանութեամբ են Աստուածայնոցն, և իշխան անասուն կենդանեաց. իսկ այլքն ընդ իշխանութեամբ միայն. որպէս նոքին իսկ անասուն կենդանիքն։ Ըստ նմին օրինակի և 'ի մարդում իբր 'ի փոքր աշխարհում ըստ Դիմոկրիտոսի՝ այսոքիկ տեսանին։ Ոմանք իշխան միայն՝ որպէս բան. և ոմանք իշխեն և իշխին՝ որպէս բարկութիւն. քանզի բարկութիւն իշխի 'ի բանէ, և իշխէ ցանկութեան. իսկ ոմանք միայն իշխին, որպէս ինքն ցանկութիւն։ Արդ այսոցիկ այսպէս ելոց, վասն զի արդարութիւն առաւելագոյն է քան զայլ առաքինութիւնս; որպէս թափանցեալ ընդ այլսն, և զաս-

1 Մի օրին. արութիւն։

րեկարգութե՟ն նոցա պահեալ, վասն այսորիկ որպէս կարեւոր ինչ զնա միայն յիշեաց։

Երրորդ առ այսոքիւք զարդարութիւն յիշելով, զայլ առաքինութիւնս միանգամայն առեալ եցոյց. քանզի մակացական առաքինութիւնքն հանդերձ պատճառաւ միմեանց հետեւին. քանզի որ պատճառաւ է ողջախոհ, այս ինքն գիտէ զպատճառն, թէ վասն է՞ր է ողջախոհ. թէ վասն զի յանառակութ՟է ժլատութի՟ք եւ անիրաւութիւնք լինին, այնպիսին 'ի հարկէ եւ արի գոյ, զախտսն ստորադասելով. այնպիսին եւ խոհեմ գոյ. վասն զի գիտէ զպատճառն թէ վասն է՞ր պարտ է լինել խոհեմ. այնպիսին եւ արդար գոյ. վասն զի 'ի մարմնականաց հեշտախտութեանց լինին անիրաւութի՟ք։

Իսկ մակացական առաքինութի՟ք ասացան՝ վասն բնականացն. իսկ բնականք ասին՝ որք միանգամ ըստ խառնուածոյ մարմնոյ գան, որք ոչ հետեւին միմեանց։ Քանզի որ 'ի խառնուածոյ մարմնոյ է ողջախոհ, ոչ ն՟մ իրօք եւ արի եւ խոհեմ եւ արդար գոյ. որք եւ ծառայականք կոչին եւ անբանք։ Այլ ծառայականք կոչին՝ որպէս 'ի հարկէ հետեւեալք խառնուածոյ մարմնոյն. քանզի որ 'ի ցուրտ խառնուածոյն է, նա 'ի հարկէ ողջախոհ գոյ։ Իսկ անբանք կոչին՝ վասն ոչ գիտելոյ զպատճառն, թէ զի՞ պարտ է ողջախոհ լինել. եւ դարձեալ անբանք կոչին՝ վասն զի եւ յանբանս կենդանիսն բնաւորեցաւ այսպիսի առաքինութի՟ տեսանել։ Որպէս յորժամ ասեմք զտատրակ 'ի բնութենէ ողջախոհ, եւ զուղտ խոհեմ, եւ զառիւծ արի, եւ զարագիլ արդար, վասն զի զծերացեալ հայրն կերակրէ։

Այլ դարձեալ մակացական առաքինութի՟ք ասացան՝ վասն բարոյականաց առաքինութեանց, որք յաւանդութ՟է եւ 'ի պատուիրելոյ։ Որպէս յորժամ ոք 'ի պատուիրելոյ գոյ ողջախոհ, ոչ գիտելով զպատճառն, որք ոչ հետեւին միմեանց. վասն զի մարթ գոյ ողջախոհ լինել յաւանդութ՟է եւ ոչ իմաստուն։

## ԸՆԴ ԱՑՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԱ.

Յետ Պղատոնի և Պիւթագորի երկակի սահմանելոյ զիմաստասիրութիւն, զոմն յէնթակայէ և զոմն ՚ի կատարմանէ, գայ ստագիրացին, այս ինքն Արիստոտէլ, և սահմանէ զիմաստասիրութիւն ոչ փոքր ինչ խորհելով. թէպէտ և միապատեսակ զնա սահմանէ, նոցա երկակի երկաքանչիւրոց զնա սահմանելով, այլ մեծ և բարձրագոյն իմն խորհելով։ Վասն զի յաւելութենէ զնա սահմանէ ասելով, եթէ իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց։

Այլ պարտ է խնդրել, եթէ զի՞նչ կամիցի երկաքանչիւրոցդ վերակրկնականութիւն. այս ինքն է, արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց. քանզի շատ է ասելն՝ թէ իմաստասիրութիւն է արհեստ և մակացութիւն։ Արդ խնդրելի է, թէ վասն էր առադրեաց՝ արհեստից և մակացութեանց։

Եւ պարտ է ասել, թէ ՚ի ձեռն առաջին կրկնապատկութեան, այս ինքն արհեստ արհեստից՝ թագաւորի նմանեցոյց զիմաստասիրութիւն. իսկ ՚ի ձեռն երկրորդ կրկնապատկութեան, այս ինքն մակացութիւն մակացութեանց՝ Աստուծոյ նմանեցոյց զիմաստասիրութիւն։ Քանզի յորժամ իշխանաց իշխան ասեմք, յայտ առնեմք զթագաւոր. ըստ նմին օրինակի և արհեստ արհեստից յորժամ ասեմք՝ թագաւորի նմանեցուցանեմք զիմաստասիրութիւն։ Իսկ յորժամ թագաւոր թագաւորաց ասեմք՝ զԱստուած յայտ առնեմք. ըստ նմին օրինակի և մակացութիւն մակացութեանց ասելով զիմաստասիրութիւն Աստուծոյ նմանեցուցանեմք. քանզի լաւագոյն է մակացութիւն քան զարհեստ. վասն զի մակացութիւն տայ անընդհատ սկզբամբունս [1] արհեստի։

1 Երկք օրին. [illegible]։

Նա քանզի և քերթողն գիտէ՝ թէ էն և ոչն ընութք երկարք են. թէպէտ և զպատճառսն ոչ գիտէ, այլ վերաձգէ յերաժշտականն իմաստասէրն: Նաև որպէս յորժամ թագաւոր ոչ աղտեղացուցանէ զինքն, որ ոչ անմիջականաբար[1] խօսի ընդ ամբոխն, այլ կացուցանէ իշխանս 'ի վերայ, յորոց ձեռն վերջագունից և տըրպագունիցն խնամ ածէ. ըստ նմին օրինակի և իմաստասիրութիւն յառաջ ածէ զարհեստս, յորոց 'ի ձեռն զենթակայս նոցա գիտէ:

Նաև դարձեալ որպէս ծայրինն ամենեւոյթ զօրութիւնս ումանս ունի, յորոց 'ի ձեռն աստեացս խնամ ածէ, նոյնպէս և իմաստասիրութիւն յառաջ ածէ զմակացութիւնս, որպէս զի 'ի ձեռն սոցա գիտասցէ զենթակայս նոցա:

Նաև դարձեալ վասն այնորիկ սահմանէ զիմաստասիրութիւն արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց, որպէս զի ցուցցէ, եթէ զնոյն բան ունին արհեստք և մակացութիւնք առ իմաստասիրութիւն, զոր բան և նոցա ենթակայն առ նոսա: Քանզի բժշկականութեան ենթակայ գոյ մարդկային մարմին. իսկ իմաստասիրութեան նոյն ինքն բժշկականութիւն է ենթակայ:

Նաև դարձեալ աստեղաբաշխութեան ենթակայ գոյ երկնային մարմինն, իսկ իմաստասիրութեան նոյն ինքն աստեղաբաշխութիւն է ենթակայ.

Նաև դարձեալ՝ վասն այսորիկ ասաց զիմաստասիրութիւն արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց, վասն զի իմաստասիրութիւն զբնութիւն էիցն գիտէ. իսկ զարտաքոյս բնութեանց և զհետևմունս՝ ետ գիտել արհեստից և մակացութեանց: Քանզի ինքն առնլով ըստ գիտութեան, զնիւթ և զտեսակ, սկզբունս ամենայնի բացակատարէ զչորս տարերս. և 'ի նոցանէ բացակատարէ զնմանամասնեայսն[2]. և 'ի նմանամասնեայցն զգործիականսն. և 'ի գործիականացն ըզմարդկային մարմինս: Նաև զայլսն ամենայն պատահմունս որ

1 'Ի լուսանցս միոյ օրինակի. անընդմիջականաբար: Նամանաւանդ, զոր և յաճախ կրկնէ զնոյն.

2 Մի օրին. 'Ի նոցա կատարէ զնմա.

'ի մարմնի՝ բժշկականութիւն եւս գիտել, այս ինքն զըղ-ցաւս եւ զառողջութիւնս. ոչ որպէս թէ ինքն ոչ գիտելով՝ գիտէ եւ զայնոսիկ, այլ որպէս ոչ կամելով զինքն աղտեղացուցանել մինչեւ 'ի հուսկ վերջինս հասանել։

Նաեւ դարձեալ իմաստասիրութիւն գիտէ զբնութիւնս ձայնից. իսկ զհետեւողս[1] ձայնի՝ եւս գիտել քերթողին, այս ինքն զոլորակս եւ զհագագս։

Նաեւ դարձեալ իմաստասիրութիւն գիտէ զբնութիւն գծի. իսկ զայլն թողլ եւս գիտել երկրաչափութեան։ Նաեւ դարձեալ՝ վասն այսորիկ ասաց զիմաստասիրութիւն արհեստ արհեստից եւ մակացութիւն մակացութեանց, վասն զի նա է որ տայն զա͞մ արհեստից եւ մակացութեանց սկզբունս։ Վասն զի քերականութիւն 'ի նմանէ առնու զէն եւ զուժ բնութեան երկար գոլ, զորոյ զպատճառսն իմաստասիրութիւն գիտէ. իսկ նա խոստովանաբար առնլով յիմաստասիրութենէ՝ յարդարէ զիւր արհեստ։

Դարձեալ բժշկականութիւն գիտէ, եթէ 'ի չորից տարերց է մարդկային մարմին, ոչ գիտելով զպատճառս թէ վասն էր են չորք տարերք, այլ խոստովանաբար առնլով յիմաստասիրութենէ՝ յարդարէ զիւր արհեստն։

Նաեւ դարձեալ ճարտասանութիւն պիտանանայ արդարոյ՝ այս ինքն քաղաքականութեան[2], անգիտանալով զբնութիւն արդարոյն. այլ խոստովանաբար յիմաստասիրութենէ առնլով յարդարէ զիւր արհեստն։ Վասն այսորիկ անգիտանալով ճարտասանք զբնութիւն արդարոյն՝ ընտրեն զզրկելն առաւել քան եթէ զզըրկիլն. իսկ իմաստասէրն որպէս գիտելով զբնութիւն արդարոյն՝ ոչ ընտրէ եւ ոչ զոք 'ի դոցանէ. իսկ եթէ դէպ լինիցի ընտրել՝ ընտրէ զզրկիլն առաւել քան եթէ զզրկելն. քանզի եւ ասէն իսկ, եթէ Ոչ ոք կարէ զհոգին ուրուք վնասել, եթէ ոչ ոք զիւրն վնասիցէ անիրաւս եւ անպատեհս գործելով. քանզի եթէ վնասէ ոք զոք՝ կամ զմարմինն վնասէ կամ զարտաքոյսն զինչսն յափշտակելով. իսկ զհոգին ոչ կարէ վնասել, այլ զգործարան նորա, այս ինքն զմարմինն. որպէս եւ

1 Մի օրին. հետեւմունս։

2 Մի օրին. քաղաքականին։

տեսն պիւթագորականքն, եթէ Այլ ես՝ և իմ՝ և իմոյն ։ Այլ ես՝ ասէին զհոգին ․ վասն զի 'ի հոգւոյն ունիմք զգոյութիւն ․ և իմ՝ ասէին զմարմինն, որպէս զգործի հոգւոյ ․ իսկ իմոյ՝ ասէին զարտաքոյսն, այս ինքն զստացուածս ։ Արդ որ փնասէն՝ բայց եթէ զիւրոյն փնասէ ․ այլ զայլոյն ոչ կարէ ։

Այս պարտ է գիտել, եթէ ոչ միայն բանական արհեստից և մակացութեանց տայ սկզբունս իմաստասիրութիւն, այլ և անբանից ․ որպէս զլարն հիւսանն, և դարբնութեան զհուրն ։ Իսկ անբան արհեստք լսին, այս ինքն ոչ անպատճառք ․ քանզի ոչինչ է արհեստ, որ ոչ ունի պատճառս, թէպէտ և արուեստաւորն անգիտանայ ․ այլ անբանք կոչին՝ վասն զի կարող գոյ որ ուսանին՝ ոչինչ բարբառել և ուսանել ․ քանզի կարող գոյ հիւսն առանց բարբառելոյ՝ աթոռ բացակատարել ։

Այս դարձեալ պարտ է գիտել, եթէ ոչ միայն զըսկըզբունս կարող գոյ տալ իմաստասիրութիւն ամ̃ արհեստից և մակացութեանց, այլ և վերստին ուղղել զսխալեալսն 'ի նոսա ։ Քանզի քերթողք 'ի սահմանել զձայն՝ վերաւորութի̃ օդոյ ասացին ․ իսկ վերստին ուղղէ իմաստասէրն ասելով, թէ յոռի է սահմանդ ․ վասն զի ոչ զուգադարձի ․ զի որ ձայն է՝ նա և վերաւորութի̃ օդոյ, այլ ոչ որ ինչ վերաւորութի̃ օդոյ՝ այն ինչ և ձայն ․ վասն զի ասերբ ոք եթէ զօդդ հարկանէ՝ ոչ բացակատարէ ձայն ։ Իսկ կատարեալ սահմանք այսոքիկ են, որ զուգադարձին առ սահմանելիսն ․ որգոն՝ ինչ որ միանգամ կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ՝ նա մարդ ․ և որ միանգամ մարդ՝ նա կենդանի բանաւոր մահկանացու մտաց և հանճարոյ ընդունակ է ․ վասն որոյ սահմանեն զձայն այսպէս ։ Ձայն է բացակատարումն գանչեցելոյ 'ի մէջ հագագի, և յերիւրեցելոյ ընդ խոշորութե̃ն շնչափողն[1], և տեսակարարեցելոյ լեզուաւ և մակալեզուաւ ։

Դարձեալ պարտ է ասել՝ վասն այսորիկ ասաց զիմաստասիրութի̃ արհեստ արհեստից և մակացութի̃

1 Մի օրին․ ընդ խոշորութե̃ն շնչափողին ։

մակացութեանց, վասն զի ա̃մ բանաւոր արհեստք՝ պէտս ունին բաժանմանց և սահմանաց և ապացուցից, որոց մայր իմաստասիրութի̃ն ճանաչի։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ ԺԲ.

Այլ վասն զի 'ի վերոյ անդ զբոլոր սահմանն որպէս բոլոր ուսաք, եկեսցուք այսուհետև 'ի մասունս նորա և քննեսցուք զմի մի 'ի նոցանէ 'ի մէջ ածելով։

Վասն որոյ և ասեն ոմանք՝ եթէ յոյժ տխմարաբար զիմաստասիրութի̃ արհեստ արհեստից ասացէք գոլ. քանզի եթէ արհեստ արհեստից է՝ յայտ է եթէ և արհեստ է. իսկ եթէ արհեստ է՝ յայտ է թէ և սխալական է, որ է անպատեհ։

Առ որս պարտ է ասել, եթէ ոչ ա̃մ իրօք, որք միանգամ միաբանք միաբանաբար ասին՝ նոքին և առանձնաբար ասին. քանզի ահա ասեմք մեռեալ մարդ, և առանձնաբար ոչ կարեմք ասել՝ եթէ մարդ է. վասն զի ոչ ունի զկատարելութիւնս մարդոյ. քանզի ոչ շնչաւոր է և ոչ զգայական։ Այլ դարձեալ ասեմք[1] քարեայ նաւ, և ոչ ասի նաւ. վասն զի ոչ վերաբերի 'ի ջուրց որպէս նաւ։

Այլ դարձեալ որպէս առասպելըն ասէ, թէ մարդ և ոչ մարդ, բայց սակայն մարդ. զհաւս և ոչ զհաւս, բայց սակայն զհաւս. 'ի վերայ փայտի և ոչ 'ի փայտի, այլ 'ի փայտի. քարիւ և ոչ քարիւ. այլ քարիւ հարեալ սատակեաց զչղջիկան 'ի վերայ կանչոխոյ[2] նստեալ։ Արդ որպէս յառաջագոյն ասացաք՝

1 Մի օրին. ասել ասեմք ... և երկու օրին. փոքր նաւ։

2 Մի օրին. կանչխոյ։ միւս օրին. կանձախոյ։

ոչ ամ իրօք միաբանաբար ասացեալքն, և առանձնաբար ասին. որպէս և յընդդիմէն, և ոչ ամենեքին առանձնաբար ասացեալքն և միաբանաբար ասիլ կարող գոն:

Արդ ստորակայեցի ումն Սիմոն արուեստիւ կարուակ. իսկ բարուք բարի՝ արուեստիւ յոռի: Արդ 'ի վերայ սորա առանձնաբար ասացեալքն ոչ կարող գոն միաբանաբար ասիլ. որգոն, յորժամ ասեմք Սիմոն կարուակ է, և Սիմոն բարի է: Արդ զայսոսիկ զառանձնաբար զասացեալսն՝ ոչ կարող գոյ միանգամայն յարելաբար ասել, եթէ Սիմոն կարուակ բարի է. վասն զի ըստ արուեստին փցուն զնա ստորագրեցաք:

Արդ այսպէս և 'ի վերայ իմաստասիրութեան. քանզի արհեստ արհեստից զնա ասել՝ մարթ գոյ, իսկ արհեստ միայն ասել՝ ոչ գոյ մարթ. որպէս յառաջագոյն ցուցաք, թէ ոչ կարող գոն միաբանաբար ասացեալքն և առանձնաբար ասիլ: Բայց սակայն եթէ և արհեստ ասեմք զիմաստասիրութիւն գոլ՝ ոչ ինչ է անտեղի. քանզի բազում անգամ զանուն արհեստից և 'ի վերայ մակացութեան առնուն. քանզի և Պղատոն 'ի Գորգեայ տրամաբանութեանն՝ զմակացութիւն արհեստ կոչէր. քանզի առ Նա ասէ, թէ Որոյ ըզքեզ ասասցուք արհեստի մակացու. այս ինքն մակացութեան. քանզի մակացու՝ մակացութեան է մակացու: Այլ և 'ի Սոփեստիայ տրամաբանութեանն՝ զարարիչն արուեստաւոր կոչեաց զանսխալաբար գիտողն ամենայնի:

Եւ դարձեալ, եթէ արդարև այս սահմանս, որ ասէ զիմաստասիրութիւն արհեստ արհեստից՝ յառաւելութենէ է. իսկ առաւելութիւն այլ է այսմ, առ որ զառաւելութիւն ունի, ապա և իմաստասիրութիւն ոչ է արհեստ, այլ առաւել քան զարհեստ: Արդ այսոքիկ այսպէս:

Դարձեալ ասեն ոմանք, եթէ զիա՞րդ ասացէք զիմաստասիրութիւն մակացութիւն մակացութեանց. միթէ այլ մակացութիւն է՞ աւելի քան զիմաստասիրութիւն:

Առ որս պարտ է ասել, եթէ երկակի է մակացութիւն. մին ներստորագրական՝ և միւսն աններստորա-

դրական։ Եւ ներստորադրական է՝ որ առնու սկզբամունս, որք պէտս ունին ապացուցութե, և զորոց ըզպատճառումն անգիտանայ. որպէս յորժամ երկրաչափն առնու խոստովանաբար, եթէ նշան է անմասն ինչ, զորոյ զպատճառումն ոչ գիտէ. այլ այն բնական իմաստասիրին է։ Իսկ աններստորադրական մակացութի է՝ որ առնու սկզբմունս զհասարակաց մտածութիս, որ ոչ ունին պէտս ապացուցութե. որպէս յորժամ ասեմք, թէ ա̄ծ բարի է. որ է հասարակ մտածութիւն. վասն զի ա̄մ ոք խոստովանի՝ թէ ա̄ծ բարի է, և ոչ ինչ ունի պէտս ապացուցութե։ Արդ այսոքիկ այսպէս։

Եւ վասն զի յիշումն տրամաբանք արհեստի և մակացութե, և վասն սոցա ասասցուք դուզնաքեայ ինչ. և նախ քան զսոցայն՝ յաղագս գիտութե ասասցուք։

Արդ պարտ է գիտել, եթէ գիտութի կամ ընդհանուր է կամ մասնական. կամ հանդերձ պատճառաւ կամ առանց պատճառի. յորոց լինին չորքս այսոքիկ. հմտութի, ներհմտութի, արհեստ, մակացութի։

Արդ հմտութի է՝ միոյ իրի անպատճառ գիտութի. որպէս յորժամ մի դեղ գիտելով, այնմ միայն պիտանանայ, ոչ գիտելով զպատճառն, եթէ որպէս պարտ է պիտանանալ նմա։

Իսկ ներհմտութի է՝ ընդհանուր անպատճառ գիտութի. որպէս այնք՝ որք 'ի ներհմտականաց բժշկացն են, որք բազում դեղս գիտելով՝ անգիտանան զպատճառս ներգործութե դեղոցն։ Եւ դարձեալ ներհմտութի է՝ յիշումն և անքան պահպանութիւն մարդկային, բազմաբար և նոյնաբար երևեցելոցն. քանզի ներհմտական բժիշկն յիշելով և պահելով բազում անգամ և զնոյնաբար երևեալսն 'ի դեղոցն՝ պիտանանայ այնոցիկ։

Իսկ արհեստ է՝ ընդհանուր գիտութի հանդերձ պատճառաւ. կամ արուեստ է՝ ունակութի ճանապարհորդեալ հանդերձ երևակայութբ. քանզի արուեստ ունակութի ոմն է և գիտութի. այլ և ճանապարհորդէ, այս ինքն զա̄մ ինչ ըստ կարգին առնէ։ Իսկ հանդերձ երևակայութեամբ ասացաւ վասն բնութե. վասն զի և բնութի ունակութի է. քանզի

ունի զգօնն յայնոսիկ, որք ունին զնա, այս ինքն 'ի մարդում և 'ի քարում և յայլսն. և ըստ կարգի յառաջագայի, բայց ոչ ըստ երևակայութեան՝ որպէս և արհեստ։ Վասնզի արուեստաւորն պիտանանալով բանի, յորժամ կամի ինչ առնել՝ այս ինքն պատճառին՝ նախ և առաջին տպաւորէ յինքեան և այնպէս բացակատարէ զբանն. իսկ բնութիւն ոչ երբեք յառաջագոյն տպաւորէ յինքեան։

Եւ դարձեալ արհեստ է՝ բաղկացութիւն 'ի հասողութենէ ներհմտութեամբ նախակրթեալ առ 'ի պիտանացու ինչ կատարումն, որ 'ի կենցաղումս. իսկ հաւաստութիւն սահմանիդ այս է։ Արհեստ է բաղկացութիւն, այս ինքն գումարութիւն յարադրութենէ. քանզի ոմանց զայս ինչ գիտելոց և ոմանց զայն ինչ՝ բացակատարեցաւ արհեստ։ Ներհմտութեամբ նախակրթեալ, այս ինքն փորձեալ բազում հմտութեամբք. քանզի բազում հմտութեամբք փորձեալ զտեսակս արհեստին՝ այնպէս ձօնէին զնոսա նորին արհեստի։ Իսկ առ ինչ պիտանի կատարումն, որ 'ի կենցաղումս ասացաւ, վասն ընդունայնարուեստութեանց և չարարուեստութեանց, որք ոչ ունին պիտանի կատարումն 'ի կենցաղումս։ Եւ ընդունայնարհեստութիւն է՝ լարախաղացութիւն, ձողախաղացութիւն. որ ոչ օգտեցուցանէ զկենցաղս և ոչ վնասէ։ Իսկ չարարուեստութիւն է՝ կախարդութիւն և դիւթութիւն. որ ոչ միայն ոչ օգտեցուցանեն զկենցաղս, այլ և վնասեն ևս։

Իսկ մակացութիւն է՝ ընդհանուր անսղալ և անփոփոխելի գիտութիւն. քանզի անսղալաբար գիտէ զգիտելիսն[1]։ Եւ դարձեալ մակացութիւն է՝ գիտութիւն անսղալ իւրոյ ենթակայինն իրողութեանց՝ ըստ որում ունին զէութիւն իրողութեանց. քանզի որպէս ունին զէութիւն իրողութեանց ենթակայ իրք՝ այնպէս գիտէ։ Արդ այսոքիկ այսպէս։

Բայց տարակուսեն ոմանք ասելով, եթէ մինչ արհեստ համանդերձ պատճառաւ գիտէ՝ և մակացութիւն համանդերձ պատճառաւ, ըստ որո՞ւմ իրաց զանազանին 'ի միմեանց։ Եւ ասեն ոմանք՝ եթէ վասն զի մա

1 Մի օրին. Գիտելին։

կացութիւն անսղալաբար գիտէ և անսխալ է. իսկ արհեստ սխալէ: Առ որս ասեմք, եթէ ոչ բարւոք ասէք. քանզի և արհեստ ըստ իւրում բանին անսխալ է. իսկ վասն ենթակային անպատկանութեան թուի սխալական գոլ:

Արդ զանազանին ՚ի միմեանց արհեստ և մակացութիւն այսու. վասն զի մակացութիւն և ենթակայն անսխալք են. որպէս երկիր և երկրաչափութիւն, աստեղագիտութիւն և աստեղք. քանզի և աստեղագիտութիւն անսղալ է, և ենթակայ նորին, այս ինքն աստեղք: Իսկ արհեստ ըստ իւրում բանին անսխալ է. իսկ ըստ ենթակային՝ վասն զի հոսանուտ է՝ թուի սղալական գոլ. որպէս հիւսնութիւն և փայտ նորին ենթակայ: Արդ հիւսնութիւն ըստ իւրում բանին անսխալ է. իսկ փայտն վասն զի ապականացու է և հոսանուտ՝ յառնել հիւսան աթոռ և կամ այլ ինչ՝ յանկարծօրէն բեկանի և սղալեցուցանէ զարուեստն:

Արդ որպէս յառաջագոյն ասացաք՝ այսոքիւք զանազանին ՚ի միմեանց արհեստ և մակացութիւն. վասն զի մակացութիւն և ըստ իւրում բանին անսխալ է և ըստ ենթակային: Իսկ արհեստ՝ ըստ իւրում բանին անսխալ է, իսկ ըստ ենթակային թուի սխալական գոլ:

## ԸՆԴ ԱՅՍՕՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ ԺԳ.

ՍԿԻԶԲՆ և կատարումն մեզ եղիցի Պիթագորաս. քանզի և սիրելի իսկ երեւի այսպիսում առն՝ զսկիզբն և զկատարումն 'ի նա անգել, որպէս 'ի բոլորում. քանզի 'ի բոլորումն շարակցեալ գոյ սկիզբն կատարման. արդ այսպէս և սա սկիզբն և կատարումն եղև մեզ: Այլ սկիզբն՝ վասն զի նորա են սահմանք, որ 'ի սկզբանն ասացան. այս ինքն թէ իմաստասիրութիւն է ծանօթութիւն էակացն ըստ որում էակք են. և դարձեալ՝ իմաստասիրութի̅ է գիտութի̅ ա̅ծայնոց և մարդկայնոց իրողութե̅ց: Իսկ կատարումն՝ վասն զի նորին առն սահման բացատրեցաւ 'ի կատարմանս որ ասէ, թէ իմաստասիրութի̅ է սիրելութիւն իմաստութեան:

Այլ պարտ է գիտել, եթէ ոմանք պախարակեն ըզբացատրութի̅ սահմանիս ասելով, թէ ա̅մ սահման զուգադարձի յիւր սահմանելին. իսկ առաջիկայ սահմանս ոչ զուգադարձի. քանզի որ ինչ իմաստասիրութի̅ է՝ սիրելութի̅ իմաստութե̅. այլ ոչ որ ինչ սիրելութիւն իմաստութե̅՝ նա և իմաստասիրութիւն. քանզի ա̅մ արհեստ սիրէ և տենչայ իւրում ենթակային: Վասն որոյ պարտ է ասել, թէ բարւոք է առաջիկայ սահմանդ, քանզի Պիւթագորի է. վասն զի նախ և առաջին Պիթագորաս զիմաստասիրութե̅ սահման եգիտ, որ վայրապար բերիւր և 'ի վերայ ձեռականաց արհեստից՝ որպէս և քերթօղն յայտ առնէ: Վասն զի իմաստունն, ասէ, յարմարեաց զանօթն, իմաստուն անուանեաց զհիւսն. իսկ Պիթագորաս զիմաստունն 'ի բաց որոշեալ 'ի վերայ ճշմարիտ գոյին գիտութե̅ եդ. քանզի նա առաջին անուանեաց իմաստութի̅ զգիտութի̅ ճշմարիտ գոյին, այս ինքն ա̅յ:

Այլ պարտ է գիտել, եթէ իմաստասիրութն բազում աստիճանաց պիտանանայ. քանզի և բազում աստիճանք են իմաստասիրութն։ Քանզի պարտ է գիտել զհինգ գիտական զօրութիս. զզգայութիւն, զերևակայութիւն, զկարծիս, զտրամախոհութիւն, զմիտս։

Այլ զգայութն է՝ առաջիկայ իրի մասնական գիտութն. վասն զի ամ զգայութն զմասնական գիտութիւն գիտէ։

Իսկ երևակայութիւն է՝ բացագոյիցն մասնական գիտութն։ Այլ զանազանի երևակայութիւն 'ի սոսկ մտածութենէ այսուիկ. վասն զի երևակայութիւն որպէս ասացաք՝ բացագոյիցն է յիշողութն, իսկ սոսկ մտածութն է՝ ոչ գոյիցն տրամատպաւորութն։ Որպէս յորժամ ոք զԱղջերուաքաղն ստեղծանիցէ յիւրում մտածութեն, որ ոչ է գոյ։

Իսկ կարծիք երկակի ասին. է որ պատճառաւ և է որ առանց պատճառի։ Այլ առանց պատճառի՝ որպէս յորժամ ոք զբանական հոգին կարծիցէ անմահ, ոչ գիտելով զպատճառն. իսկ պատճառաւ՝ յորժամ և զպատճառսն գիտէ զանմահութեն։ Այլ պարտ է գիտել, զի կարծիք հանդերձ պատճառաւ՝ եզրակացութն է առաջարկութեանց. որգոն, հոգի ինքնաշարժ. ինքնաշարժն մշտաշարժ. մշտաշարժն անմահ է։ Ահա եզրակացութն առաջարկութեց՝ այս ինքն հոգի անմահ. որ կոչեցաւ կարծիք հանդերձ պատճառաւ։

Իսկ տրամախոհութն է՝ ընդհանրականացն հանդերձ պատճառաւ գիտութն։ Վասն որոյ և տարակուսեն ոմանք ասելով, թէ յորժամ հանդերձ պատճառաւ կարծիք՝ գիտութն է ընդհանրական, և տրամախոհութն հանդերձ պատճառաւ՝ գիտութն ընդհանուր, զի՞նչ զանազանին 'ի միմեանց։

Աք որս պարտ է ասել, եթէ կարծիք հանդերձ պատճառաւ՝ եզրակացութն առաջարկութեց է. իսկ տրամախոհութն գտօղ առաջարկութեց 'ի հասարակաց խոստովանութեց է. և հիւսօղ և եզրացուցիչ։ Արդ այսոցիկ այսպէս եղելոց պարտ է գիտել, եթէ 'ի զգայութեց՝ ծնանի հմտութն, և յառանց

պատճառի կարծեաց՝ ներհմտութ՟ի. այլ և 'ի զգայու-
թենէ և յերևակայութենէ՝ ծնանի ներհմտութ՟ի:
Իսկ 'ի տրամախոհութ՟է և 'ի հանդերձ պատճառաւ
կարծեաց՝ ծնանի արհեստ. իսկ 'ի տրամախոհութ՟է
և 'ի մտաց՝ մակացութ՟ի:
Վասնզի յորժամ առնուն սկզբմունս՝ որ պէտս ու-
նին ապացուցութ՟ե, այն ինչ 'ի տրամախոհութենէ
ծնանի մակացութ՟ի. իսկ յորժամ առնու սկզբմունս՝
որք ոչ պիտոյանան ապացուցութ՟ե, այն ինչ 'ի մտաց
ասեմք ծնանիլ զմակացութ՟ի: Եւ արդ ահա որպէս
ասացաք՝ բազում աստիճանօք ցուցաւ իմաստասիրու-
թիւն պատուանացեալ. և եթէ լաւագոյն ամ՟ արհես-
տից և մակացութ՟եց է իմաստասիրութ՟ի. որպէս և
Պղատոն առ ոմն Թէոդորոս երկրաչափ յայտ առնէ
ասելով, եթէ Այսպիսի ինչ, ով Թէոդորէ, ոչ եկն
երբէք առ 'ի մարդիկ, և ոչ եկեսցէ երբէք պարգե-
ւեալ առ յա՟յ:
Արդ այսոցիկ այսպէս ելոց ծանեաք, եթէ վեց են
սահմանք իմաստասիրութ՟ե, և զպատճառսն գիտա-
ցաք. և ոչ միայն զսահմանսն, այլ և եթէ չորք են
զանազանութ՟իք սահմանաց իմաստասիրութ՟ե: Վասն-
զի ոմանք յենթակայէն առան՝ որպէս գիտութիւն
էակացն ըստ որում էակք են, և գիտութ՟ի ա՟ծայ-
նոց և մարդկայնոց իրողութեանց. և ոմանք 'ի կա-
տարմանէ՝ որպէս իմաստասիրութ՟ի խոկումն մահու
և նմանիլ ա՟յ ըստ կարողութեան մարդկան. և յա-
ռաւելութենէ՝ որպէս արհեստ արհեստից և մակա-
ցութ՟ի մակացութ՟եց. իսկ 'ի ստուգաբանութենէ՝
որպէս սիրելութիւն իմաստութեան:
Եւ վասն այսորիկ չորք են զանազանութ՟իք սահ-
մանաց իմաստասիրութ՟ե. վասն զի չորքդ մեծապա-
տիւք էին առ պիթագորեանսն, որպէս և ինքեանք
երդմունս կատարելով 'ի Պիթագորաս ասէին, Եր-
դուեալ յաւանդօղ մեզ զքառեակն և զմշտաբուղխ
աղբիւրն բնութ՟ե: Մշտաբուղխ կոչէին զչորս թիւդ՝
վասն չորից տարերցդ. և վասն այսորիկ մեծապատիւ
էր առ պիթագորեանսն չորրեակդ. կամ վասն չո-
րից տարերցդ, և կամ վասն չորից առաքինութեանց
հոգւոյ, և կամ վասն զի չորք թիւք հանդերձ շա-

բաղդրելով նախագումնիւքն իւրեանց՝ բացակատարեն զտասն թիւ ։ Վասնզի առնլովն երիս՝ բացակատարէ եւթն . և դարձեալ առնլով երկուս՝ բացակատարէ ինն . և առնլով մի՝ բացակատարէ տասն . իսկ տասն թիւդ կատարումն է , վասն զի ա̃մ միակ առանձնական անուամբ մինչև 'ի տասն գոյանայ , յետ այսորիկ 'ի նոյն շրջապատի [1] ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԴ.

ԵՒ վասն զի 'ի յառաջագոյն ասացեալսն թուական պատճառս ասացաք , եթէ վասն է՞ր վեց են սահմանք իմաստասիրութեան ։ Պարտ է գիտել , թէ թուականութե՛ երկու տեսակք են , դար և կոճատ ։ Եւ դար է՝ որ կարող գոյ յերկուս զոյգս բաժանել . որպէս չորք . որպէս վեց . որպէս ութ . որպէս տասն ։ Իսկ կոճատ՝ որ ոչ կարող գոյ յերկուս զոյգս բաժանել . որպէս երեք . որպէս հինգ . որպէս եւթն . որպէս ինն ։ Արդ ընդհանուր սկիզբն դարիցն և կոճատացն միակն է . իսկ դարի երկակն ։

Եւ տարակուսեն ոմանք , թէ երկակն թիւ գոլով , զիա՞րդ է սկիզբն ։ Առ որս ասեմք՝ եթէ ոչ գոյ թիւ . վասն զի ոչ ունի զյատկութիւնս թուոց յինքեան . վասն զի ա̃մ թիւ բազմապատկելով մեծ թիւ բացակատարէ քան զշարադրելովն . որգոն , երիցս երեք՝ ինն . և երեք և երեք՝ վեց ։ Ահաւադիկ բազմապատկելով մեծ թիւ արար ինն , քան թէ շարադրելով [2] որ է վեց . իսկ երկակդ ոչ այդպէս . քանզի բազմապատկելով և շարադրելով զնոյն թիւ բացակատա-

1 Մի օրին. շրջապատէ ։ 2 Յերիս օրինակս. քան թէ զշարադրելով ։

րէ զչորս․ երկիցս երկու՝ չորք․ երկու և երկու՝ չորք։ Աստի յայտ է թէ երկակդ ոչ է թիւ, այլ լոկ սկիզբն թուոյ։

Այսոցիկ այսպէս ելոց պարտ է գիտել, թէ եւթն թիւդ կոյս լսի, որպէս Աթենա և ժամանակ։ Եւ կոյս՝ վասն զի ոմ թիւ 'ի ներքոյ տասնեկիդ, կամ ծնանի զոք կամ ծնանի յումեքէ․ իսկ եւթնդ ոչ ծնանի զոք 'ի ներքոյ տասնեկիդ, և ոչ ծնանի յումեքէ։ Արդոն, երկուք ծնանին զչորս 'ի ձեռն բազմապատկութեանն, և երեք զինն․ իսկ չորք ծնանին յերկուց, և ծնանին զութ ըստ երկուց բազմապատկութեանց․ նոյնպէս և հինգն զտասն ծնանի 'ի ձեռն երկուց բազմապատկութեանց․ իսկ վեց ծնանի յերից ըստ նորին բազմապատկութեան։ Իսկ ութն ծնանի 'ի չորից ըստ նորին բազմապատկութեան․ իսկ ինն յերից ըստ երից բազմապատկութեան․ իսկ տասն 'ի հնգէ ըստ երկուց բազմապատկութեան։ Իսկ եւթն թիւդ՝ որպէս յառաջագոյն ասացաք, ոչ ծնանի յումեքէ և ոչ ծնանի զոք 'ի ներքոյ տասնեկիդ։

Արդ այսպէս և Աթենա կոյս լսի․ վասն զի ասէին արտաքինքն զԱթենայէ՝ եթէ 'ի գլխոյն Արամազդայ ծնաւ։ Իսկ ժամանակ կոչի, վասն զի և տղայք ծնանելով վեցամսայք և ութամսայք[3] ոչ ապրին․ իսկ եւթնամսայքն ապրին։ Եւ դարձեալ՝ վասն զի տղայք բնաւորեցան յեւթներորդ ամսեանն հանել ատամունս, և յեւթն ամին փոփոխել։

3 Երկու օրին․ ութամսեայք։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԵ.

Այլ վասն զի 'ի ձեռն սահմանաց որպէս մի ինչ գոյացեալ զիմաստասիրութիւն ուսաք, եկեսցուք այսուհետեւ և որպէս բազմամասն ինչ զնա գոլով ընդ բաժանմամբ ստորարկեսցուք. վասն զի 'ի ձեռն բաժանման՝ ստուգաբար զմասունս նորա իմանամք. իսկ 'ի ձեռն մասանցն՝ ստուգաբար զբոլորն գիտեմք: Այլ դարձեալ ստուգաբար գիտելով զմասունս նորա, կարող լինիմք ստուգաբար գիտել, եթէ որպիսի՞ շարադրութիւնք իմաստասիրութեան յորպիսի՞ մասունս վերաբերին. զի մի՛ որք 'ի տեսականն վերաբերին, առ տգիտութեան կարծեսցուք 'ի գործականն վերաբերիլ. և որք 'ի գործականն՝ 'ի տեսականն:

Այլ արդ վասն զի բաժանման յիշատակ արարաք, նախ եթէ զի՞նչ է բաժանումն և մակաբաժանումն և ստորաբաժանումն՝ ուսցուք: Այլ պարտ է գիտել, եթէ բաժանումն է առաջին հատումն ենթակայի իրողութեան. որգոն յորժա՛մ ասեմք, եթէ 'ի կենդանեացն ոմանք բանականք են և ոմանք անբանք:

Իսկ մակաբաժանումն է՝ երկրորդ հատումն նորին ենթակայի իրողութեան ըստ այլ յեղանակի եղեալ. որպէս յորժամ զկենդանիս վերստին բաժանելով ասեմք, եթէ 'ի կենդանեացն ոմանք մահկանացուք են և ոմանք անմահ:

Իսկ ստորաբաժանումն է՝ բաժանեցելոյ մասինն հատումն. որպէս յորժամ բաժանեցելոյ զկենդանին 'ի բանականն և յանբանն, դարձեալ զբանականն ստորաբաժանեմք 'ի մահկանացու և յանմահ. և դարձեալ զմահկանացուն բաժանեմք 'ի մարդ և 'ի ձի և յայսպիսիս: Նոյնպէս և իմաստասիրութիւն բաժանի 'ի տեսականն և 'ի գործականն. զի 'ի ձեռն տե-

սականին գիտասցուք զա՟մ գոյս. իսկ 'ի ձեռն գործականին ուղղութ՟ի արասցուք բարոյից մերոց ։

Եւ արժան է խնդրել, եթէ վասն է՞ր յերկուս բաժանի իմաստասիրութ՟ի, 'ի տեսականն ասեմ եւ 'ի գործնականն, եւ ոչ 'ի մի կամ 'ի բազումս ։ Եւ պարտ է ասել, եթէ 'ի մի ոչ կարող գոյ լինել բաժանումն. վասն զի ոչ երբեք բաժանումն վասն միոյ ուրուք բնաւորեցաւ լինել ։ Այլ եւ ոչ 'ի բազումս. քանզի բաժանումն լոկ երկատութիւն, այս ինքն յերկուս որոշել զայս ինչ յայսմանէ ընտրողաբար, եւ ոչ կոտորել 'ի բազումս շփոթմամբ. բայց բաժանեցաւ յերկուս իմաստասիրութ՟ի վասն երից պատճառաց ։

Նախ եւ առաջին այս՝ եթէ վասն այնորիկ իմաստասիրութ՟ի 'ի տեսականն եւ 'ի գործականն բաժանեցաւ, վասն զի էակացեալ է 'ի մեզ տեսականն եւ գործականն ։ Եւ տեսականն այսպէս, որպէս յայտ առնեն մանկունք ամենեքեան հարցասէրք գոլով 'ի զրոյցս, այս ինքն հետաքրքիրք գոլով. քանզի իւրաքանչիւր ոք 'ի մէնջ ախորժէ լսել ինչ ։ Իսկ եւ գործականն նոյնպէս էակացեալ է ընդ մեզ, որպէս յայտ առնէ հոգի ոչ երբեք դադարելով. քանզի 'ի մնջելն ոչ երբէք դադարէ յածելով ընդ երազս. այլ եւ յորժամ ոչ մնջեմք եւ ոչ ունիմք գործել ինչ՝ կամ մազ 'ի հերոյ ճողեմք, եւ կամ շիւղ ինչ շարժեմք ։ Արդ վասն զի էակացեալ է ընդ մեզ տեսականն եւ գործականն, վասն այնորիկ իմաստասիրութ՟ի յայսոսիկ բաժանի ։

Իսկ երկրորդ պատճառ այս է յերկուս բաժանելոյ, որպէս յառաջագոյն ասաք. իմաստասիրութ՟ի է նմանութ՟ի այ՟, որ ունի երկուս զօրութիւնս, զտեսականն եւ զգործականն ։ Տեսական է՝ ըստ որում զա՟մ գոյս ճանաչէ. իսկ գործական է՝ ըստ որում արարիչ գոյ. վասն այնորիկ եւ իմաստասիրութիւն յերկուս բաժանի, 'ի տեսականն եւ 'ի գործականն. զի 'ի ձեռն տեսականին՝ տպաւորեսցէ յինքեան զտեսական զօրութ՟ի Աստուածութ՟են. իսկ 'ի ձեռն գործականին՝ զգործական զօրութ՟ի՝ խնամ տանելով հոգւոց մարդկան եւ 'ի տգիտութենէ 'ի ճշմարիտ գիտութ՟ի ածելով ։

Երրորդ պատճառ այս է. իմաստասիրութիւն դիտաւորութիւն ունի զհոգիս մարդկան զարդարել. իսկ հոգիք մարդկան երկուս զօրութիւնս բնաւորեցան ունել, տեսական և կենդանական ։ Եւ տեսական է այս. տրամախոհութիւն, կարծիք, զգայութիւն, երեւակայութիւն, միտք, վասն որոյ և յառաջագոյն ասացաք ։ Իսկ կենդանականս ունի զայսոսիկ. կամաւորութիւն, ընտրողութիւն, յօժարութիւն, բաղկութիւն, ցանկութիւն ։ Վասն այսորիկ և իմաստասիրութիւնն յերկուս բաժանեցաւ, 'ի տեսականն և 'ի գործականն. որպէս զի 'ի ձեռն տեսականին զգիտնական զօրութիւնս հոգւոյն զարդարեսցէ, իսկ 'ի ձեռն գործնականին զկենդանականսն. վասն զի գործականն ուսուցանէ մեզ ոչ առնել ինչ ըստ բարկութեան, և ոչ ցանկանալ ինչ անպատեհից։ Արդ այսոքիկ՝ թէ վասն էր իմաստասիրութիւն յերկուս բաժանեցաւ 'ի տեսականն և 'ի գործականն ։

Եւ պարտ է գիտել, եթէ երկաքանչիւրոք 'ի սոցանէ յաղթահարէին 'ի միմեանց և յաղթահարեն զմիմեանս։ Քանզի տեսականն յաղթահարէ զգործականն ըստ ենթակային. քանզի տեսականին ամ̃ գոյք ենթակային առ 'ի գիտել, իսկ գործականին մարդկային միայն հոգիք. քանզի զմարդկային միայն զհոգիս զարդարէ, այլ ոչ և զանբանիցն. իսկ տեսականն՝ և զանբանիցն և զբանաւորաց զբնութիւնս գիտէ ։ Իսկ գործականն յաղթահարէ զտեսականն ըստ կատարմանն. վասն զի կատարումն տեսականին ճշմարտութիւն է, իսկ կատարումն գործականին բարին. վասն զի 'ի ձեռն գործականին զարդարէ զբարսն, 'ի բաց կտրելով զախտն գործելով զբարին ։ Իսկ 'ի ձեռն տեսականին զճշմարտութիւն. վասն զի տեսականն է՝ որ ուսուցանէ մեզ զճշմարտութիւն գոյիցն ։

Իսկ բարին պատուականագոյն է քան զճշմարիտն, որպէս ընդհանրականագոյն և ներպարունակական[1]. քանզի ամենայն որ ճշմարիտ է՝ նա և բարի է, այլ ոչ ամենայն բարի ճշմարիտ է. քանզի գտանեմք երբեմն և զսուտն բարի, որպէս զոր ասելոց եմք ։ Եւ

1 Երկու օրին. Ներպարունական ։

ումն ցումն յաւանդ սուսեր, և 'ի ժամանակի բարկութե̃ն չղջաւ խնդրել, որպէս զի սպանումն արասցէ. իսկ Նա ուրացաւ թէ ոչ ինչ ետուր ցիս՝ և ստեաց։ Այս աՀա սուտ՝ որ բարի գոյ[1]։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԶ.

Այս վասն զի զիմաստասիրութի̃ւն 'ի տեսականն և 'ի գործականն երկատեցաք, պարտ է գիտել՝ զի երկաքանչիւրոք յերկատելոց մասանցս ստորաբաժանի. և նախ և առաջին տեսականն, վասն զի պատուականագոյն քան զգործականն է. վասն զի տեսականին ա̃մ գոյք ենթակային, իսկ գործականին մարդկային միայն Հոգիք։

Այս պարտ է գիտել, եթէ այլաբար Պղատոն ստորաբաժանէ զտեսականն՝ և այլաբար Արիստոտէլ. քանզի Պղատոն ստորաբաժանէ զտեսականն 'ի բնաբանականն և յաստուածաբանականն. վասն զի ոչ կամի զուսումնականն մասն գոլ իմաստասիրութե̃ան, այլ նախակրթութի̃ւն ինչ. որպէս զքերթողականն և զճարտասանականն. ուստի և առաջի իւրում Համալսարանին մակագրեաց, Աներկրաչափ ոք մի ներսամտեսցէ[2]. արդ զայս մակագրեաց այսպէս, վասն զի բազում իրս Պղատոն ա̃ծաբանէ, և վասն ա̃ծաբանութե̃ն կաՀաւորի։ Իսկ ուսումնականն գործակից լինի առ 'ի գիտել զաստուածաբանութիւնն, որոյ մասն ինչ է երկրաչափութիւնն։

Իսկ Արիստոտէլ ստորաբաժանէ զտեսականն 'ի բնաբանականն, յուսումնականն, և յա̃ծաբանականն։

1 Երկու օրին. Գոյ։

2 Մի օրին. Ներսամտեսցէ։

Վասն զի և զուսուցմնականն որպէս մակացութիւն՝ մասն իմաստասիրութե̃ ստորագրէ ։ Եւ արդ այսո֊ քիկ այսպէս ։

Բայց պարտ է գիտել, թէ վասն էր յերիս բաժա֊ նի տեսականն ։ Վասն որոյ ասեմք, եթէ տեսականին ո̄մ գոյք ընթակային առ 'ի գիտել, իսկ ո̄մ գոյք եռակի են․ կամ ընթակայութ̃ք և մակամտածութ̃ք նիւթաւորք գոն, որպէս փայտ և քար և այլք ո̄մ 'ի տեսանելեաց․ քանզի այսոքիկ և ընթակայութ̃ք և մակամտածութ̃ք նիւթաւորք գոն․ վասն զի ոչ է կարողութի̃ զքար և զփայտ առանց նիւթոյ իմա֊ նալ ։ Եւ կամ ընթակայութ̃ք և մակամտածութ̃ք իսկ աննիւթք․ որպէս ա̄ծ, հրեշտակ, միտք, հոգի, քանզի այսոքիկ՝ և ընթակայութ̃ք աննիւթք են և մակամտածութ̃ք․ վասն զի ոչ գոյ կարողութի̃ նիւ֊ թաւոր իմանալ զա̄ծ կամ զհրեշտակս կամ զմիտս կամ զհոգի ։ Եւ կամ ընթակայութ̃ք նիւթաւորք գոն, իսկ մակամտածութ̃ք աննիւթք․ որպէս ձեւք, քանզի ձեւք ընթակայութեամբ նիւթաւորք գոն․ քանզի ոչ կարէ եռանկիւնին կամ քառանկիւնին և այլ ձեւք առանց նիւթոյ բաղկանալ․ այլ կամ 'ի քա֊ րում և կամ 'ի փայտում և կամ յայլ ինչ նիւթում ունին զգոյութիւն ։ Իսկ մակամտածութ̃ք աննիւթք գոն, քանզի յորժամ երեւակայէ ոք զձեւս 'ի տրա֊ մախոհութե̃, զնա ինքն զձեւն ըստ ինքեան տպաւո֊ րէ 'ի մակամտածութե̃․ քանզի որպէս մոմ, առա֊ տպելով[1] յինքեան զգիր մատանւոյ, զնոյն ինքն առ֊ անձին զգիրն առատպէ յինքն[2], և ոչ այլ ինչ նիւթ առնու 'ի մատանւոյն․ ըստ նմին օրինակի և տրա֊ մախոհութի̃ երեւակայելով յինքեան ձեւս, ոչ ինչ առնու 'ի նիւթոյ, այլ զնոյն ինքն զձեւս երեւակայէ և տրամատպաւորէ յինքեան ։ Եւ արդ վասն զի տե֊ սականին ո̄մ գոյք ընթակային առ 'ի գիտել, իսկ գոյքդ որպէս ասացաք եռակի են, վասն այսորիկ և տեսականն յերիս բաժանեցաւ․ 'ի բնաբանականն և յուսուցմնականն և յաստուածաբանականն ։

Եւ պարտ է գիտել՝ զի բնաբանականն կահաւորի

1 Մի օրին․ առատպելով ։

2 Մի օրին․ փոխառէ առ յինքն ։

վասն այնոցիկ, որք ենթակայութիւնք և մակամտածութիւնք նիւթաւորք գոն։ Իսկ ուսումնականն կահաւորի վասն այնոցիկ՝ որք ենթակայութիւն նիւթաւորք գոն, իսկ մակամտածութիւն աննիւթք։ Իսկ ա̃ծաբանականն՝ վասն[1] որք ենթակայութիւնք և մակամտածութիւնք աննիւթք։ Արդ այսոքիկ այսպէս եղեն, ասացաք և վասն դասաւորութեան նոցին։

Նաև պարտ է գիտել, զի բնաբանականն զառաջինն կալաւ դաս՝ որպէս մնողակից և հուպ 'ի մեզ, և որպէս ամենևին նիւթական։ Իսկ ուսումնականն զմիջինն ընկալաւ դասաւորութիւն, այս ինքն 'ի մէջ բնաբանականին և ա̃ծաբանականին՝ որպէս երկոցունց հաղորդ. վասն զի և նիւթաւոր է որպէս բնաբանականն, և աննիւթ որպէս ա̃ծաբանականն։ Իսկ ա̃ծաբանականն 'ի հարկէ զվերջինն ընկալաւ դասաւորութիւն. վասն զի ոչ է կարողութիւն յետ բնաբանականին յաստուածաբանականն ամբառնալ. վասն զի և ոչ պարտ է յամենևին նիւթականացն՝ այն ինչ յամենևին աննիւթականս մատչել, ապա եթէ ոչ՝ զնմանեալս կրեմք այնոցիկ, որք բազում ժամանակս յաղջամղջին տեղւոջ կացեալ, այն ինչ առ արեգակն հայել ձեռնարկեն, որք նոյն ժամայն կուրանան։ Արդ այսպէս և որք յամենևին նիւթականացն յամենևին աննիւթականսն ձեռնարկեն մատչել. զորս առակելով քերթութիւնն վասն Ովտոսի և Եփիալտոսի՝ որք զՕսա զլեառն 'ի վերայ Ողիմպիոսի յօժարեցան դնել, և 'ի վերայ Օսայ զտերևաշարժն Պեղիոն, որպէս զի երկինս ձեռնմարան եղիցի։ Որ նշանակէ ոչ այլ ինչ՝ այլ եթէ իմաստասէրք գոլով ձեռնարկեցին առանց ուսումնականին՝ յամենևին նիւթականացն յամենևին աննիւթականսն գալ, այս ինքն 'ի բնաբանականացն յա̃ծաբանականսն ամբառնալ։

Նաև պարտ է յետ բնաբանականին զուսումնականն 'ի կիր առնուլ՝ պատուիրեաց հրաշալին Պղատոնիոս ասելով, թէ Ուսանդելի է նորագունիցն զուսումնականն առ 'ի յընտանեցուցանել զանմարմին բնութիւն, յորոց ձեռն անմարմին բնութիւն գոյ 'ի գիտութիւն։

1 Մէ օրին. վասն այնոցիկ որք։

Բայց տարակուսեն ոմանք ասելով, եթէ վասն զի ոչ միայն ուսումնականն ուսանի առ ՚ի մէնջ, այլ և բնաբանական և ա̅ծաբանական, վասն էր սա միայն լոկ ուսումնական : Առ որս պատասխանեն պիւթագորականք ասելով, եթէ Յիրաւի սա միայն լոկ ուսումնական, վասն զի ՚ի տրամախոհութեան ունի ըզգոյութի : Իսկ որ ուսանիլն բնաւորեցաւ՝ տրամախոհութի միայն է . քանզի միտք պարզաբար ըմբռնումն գոյից են :

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԵ·

Բաժանեալ զտեսականն ՚ի բնաբանականն և յուսումնականն և յա̅ծաբանականն, եկեսցուք այսուհետև և զիւրաքանչիւրոքն ՚ի սոցանէ ստորաբաժանեսցուք : Այլ վասն զի երկատութի բնաբանականին և ա̅ծաբանականին բազմախիտ է, և մեծի լռողութե ունի պէտս, զայսոսիկ մեծագունիցն թողեալ իրողութեց, եկեսցուք և ասասցուք զերկատութի ուսումնականին զհաւաստատին . քանզի է և այլ բազմախիտ երկատութի, որք ՚ի խորագոյն իրողութիւնսն ասասցին : Բայց սակայն զոր ասելոցս եմք՝ ստոյգ և հաւաստի է . զոր պարտ է մեզ հինգ գլխովք յայտ առնել :

Մի նախ առաջին՝ եթէ ոյք և որչափ իցեն տեսակք ուսումնականին : Երկրորդ յորում ասեմք ըզպատճառս քանիօնութեան : Երրորդ յորում վասն դասաւորութե նորին տեսակաց ճառեմք : Չորրորդ յորում ասեմք, թէ ոյք են գտօղք տեսակաց ուսումնականին : Հինգերորդ յորում ասեմք, եթէ ոյք ոմանք տեսակք յարակայքին տեսակացս այսոցիկ :

Արդ եկեսցուք յառաջին գլուխն և ասասցուք, թէ ո՞յք և ո՛րչափ իցեն տեսակք ուսումնականին ։ Արդ պարտ է գիտել, թէ չորք են տեսակք . թուականն, երաժշտականն, երկրաչափականն, աստեղաբաշխականն ։

Եկեսցուք և յերկրորդ գլուխն և ասասցուք ըզպատճառս քանիօնութեն տեսակաց ուսումնականին ։ Արդ պարտ է գիտել, եթէ ուսումնականն քանակիւն գոյանայ . և այսորիկ կահաւորի, կամ թուականաւն՝ որպէս ինքն իսկ թուականն որ է քանակ . և կամ բաղադանութ՟ հնչմանց՝ որպէս երաժշտականն, քանզի և այս քանակ է . քանզի խնդրէ՝ եթէ ո՞ր է որ զերկպատիկ բան ունի, և ո՞ր է որ զկիսաբոլոր, և ո՞ր զմակերուակն, և ո՞ր զմակքառակն[1] ։ Արդ կամ տարակացութ՟ք երկրի, որպէս երկրաչափականն . քանզի և այս քանակ է ։ Արդ կամ շարժմամբ երկնային մարմնոյ, որպէս աստեղաբաշխականն . քանզի և այս քանակ է, քանզի ունին շարժմունս և տարակացութիք՝ ըստ որոց շարժին ։

Արդ այսոցիկ այսպէս եղոց և ծանուցելոց, եթէ ուսումնականն քանակիւն գոյանայ, պարտ է գիտել՝ եթէ քանակն երկակի է . կամ շարունակ է և կամ տարորոշ ։ Արդ շարունակ քանակ է՝ որոց մասունքն առ մի սահման շարամերձին . որպէս որմոյ քար՝ որ է շարունակ քանակ . քանզի եթէ զօրութ՟ հատանես և բաժանես ՚ի բազում տեղիս զն՟մ մասունսն նորա, հատեալքն և բաժանեալքն առ մի սահման շարամերձին . քանզի այս հատած յայն հատած շարամերձեալ իմանի՝ յորժամ իմանալի զգիծն առնուցուս ՚ի լինել բաժանման ։ Քանզի իմանալի գծին զօրութեամբն առնելով զբաժանմունսն, և միջակ գոլով զօրութ՟ բաժանեցելոցն՝ գտանի այս մասն շարամերձեալ իմանալի գծով յայն, և այն՝ իմանալի գծով յայլ . և ՚ի ձեռն իմանալի գծոյն շարամերձեալք գոն միմեանց ։ Բայց ասասցաք զօրութ՟ բաժանել զշարունակն և ոչ ազդմամբ . վասն զի ազդմամբ բաժանել տարորոշ առնէ և ընկենու ՚ի բնութէ շարունակէն ։

[1] Երկու օրէն . Ճանչառաքն ։

Իսկ տարորոշ քանակ է՝ տրամորոշեալն. և ոչ ինչ ունելով ընդ մէջ որով կարող գոյ շարամերձել զայս մասն առ այն, որպէս 'ի թիւսդ. քանզի տասն տարորոշեալ է, թէպէտ և 'ի միակացն առնու զնա շարակացեալ[1] 'ի հնգէ և 'ի հնգէ, ոչ ունի այլ թիւ 'ի մէջ հնգիցն որով շարամերձին առ միմեանս. քանզի եթէ առնու զմիակն 'ի մէջէ հնգիցն՝[2] անկանի 'ի տասն լինելոյ: Եւ արդ այսոքիկ այսպէս:

Բայց պարտ է գիտել, եթէ իւրաքանչիւրոք 'ի տեսակաց քանակիս՝ երկակի ասի գոլ. քանզի և տարորոշն երկակի ասի. վասն զի է որ ըստ ինքեան ասի, և է որ ըստ բաղդատութէ: Եւ ըստ ինքեան՝ որպէս յորժամ զթիւ ըստ ինքեան առանձինն առնումք. որգոն, յորժամ զտասնն ինքն ըստ ինքեան առնումք, ոչ բաղդատնելով զնա առ այլ թիւ: Իսկ ըստ բաղդատութէ է՝ յորժամ զոք մի[3] 'ի թուոց բաղդատնեմք առ այլ թիւ. որպէս զտասն առ հինգ, ասելով թէ տասն հնգին կրկնապատիկ է: Այլ և շարունակ քանակն երկակի է. քանզի է որ անշարժ է, և է որ շարժուն. անշարժ՝ որպէս երկիր. վասն զի ոչ շարժի յայսմ տեղւոյ յայլ տեղի, իսկ շարժուն՝ որպէս երկին, որ է մշտաշարժ:

Արդ այսոցիկ այսպէս ելոց, վասն զի ուսումնականն որպէս յառաջագոյն ասացաք քանակիւն բաղկանայ. իսկ զքանակն երկակի ասացաք, է որ տարորոշ և է որ շարունակ: Եւ դարձեալ զիւրաքանչիւրոք 'ի նոցանէ երկակի. զտարորոշն ըստ ինքեան և ըստ բաղդատութէ, և զշարունակն անշարժ և շարժուն. որք ընդ ամենայն չորք լինին տեսակք:

Արդ ըստ համեմատութէ այսց չորից տեսակաց քանակի՝ չորս ունի և ուսումնականն որ քանակիւն գոյանայ. զթուականն, զերաժշտականն, զերկրաչափականն, և զաստեղաբաշխականն: Յորոց թուականն բաղկանայ 'ի տարորոշ քանակէն որ ըստ ինքեան. իսկ երաժշտականն 'ի տարորոշ քանակէն որ ըստ բաղդատութեան. իսկ երկրաչափականն յան-

1 Մի օրին. շարակցեալ:
2 Երկու օրին. 'ի մէջ հնգիցն:
3 Մի օրին. զմի ոք:

շարժ[1] շարունակ քանակէ. իսկ աստեղաբաշխականն 'ի շարժումն շարունակ քանակէ. Ընդ այսոսիկ և երկրորդ գլուխն. եկեսցուք և յերրորդ գլուխն, և ասասցուք զկարգ դասաւորութեան տեսակաց ուսմնականին ։

Նաև պարտ է գիտել, եթէ թուականն և երաժըշտականն զառաջին կարգ դասաւորութե՛ ընկալան՝ քան զերկրաչափականն և զաստեղաբաշխականն. վ՟ն զի թուականն և երաժշտականն տարրորոշ քանակին բաղկանան. իսկ երկրաչափականն և աստեղաբաշխականն շարունակ քանակին բաղկանան. իսկ տարրորոշ քանակն պատուականագոյն է քան զշարունակն. վասն զի տարրորոշ քանակն կարող գոյ անշփոթաբար զանազան տեսակս ընդունել. որպէս քսան և հինգն տարրորոշ քանակ գոլով անշփոթաբար ընկալաւ զանազան տեսակս. բոլոր գոլով և քառանկիւնի ։ Նաև բոլոր՝ վասն զի որպէս 'ի բոլորումն սկիզբն շրջամբեձեալ գոյ կատարմանն, վասն զի կարող գոյ 'ի բոլորումն նոյն նշան՝ և սկիզբն լինել և կատարումն ։ Նոյնպէս և աստանօր 'ի հնգէ սկիզբն արարեալ բազմապատկաբար՝ աւարտեցաւ բոլորաբար 'ի նոյն հինգ. որպէս հնգիցս հինգ՝ քսան և հինգ. ահա 'ի հնգէ սկիզբն արարեալ և աւարտեցաւ 'ի հինգ ։

Իսկ քառանկիւնի դարձեալ, վասն զի ա՟մ թիւ յինքեան բազմապատկելով քառանկիւնի թիւն բացակատարէ. որպէս երիցս երեքն. չորիցս չորք վեշտասան. նոյնպէս և հնգիցս հինգ քսան և հինգ ։ Իսկ շարունակ քանակն ոչ կարէ անշփոթաբար տեսակս ընդունել զանազանս. վասն զի մոմ որ է շարունակ քանակ, եթէ ոք ստեղծանիցէ զնա ըստ Տիգրանայ կերպարանին, ոչ կարէ այլ կերպարան ընդունել՝ եթէ ոչ յառաջագոյն 'ի բաց եղանի. ապա եթէ ոչ՝ շփոթումն լինի ։ Արդ վասն զի տարրորոշ քանակն պատուականագոյն է քան զշարունակն, վասն այսորիկ թուականն և երաժշտականն տարրորոշ քանակին բաղկանալով զառաջին դասն ընկալան քան զերկրաչափականն և զաստեղաբաշխականն ։

1 Մի օրին. յանշարժուն ։

Իսկ թուականն դարձեալ յառաջադասի քան զերաժշտականն. վասն զի թուականն որպէս յառաջագոյն ասացաք՝ տարորոշ քանակիւն որ ըստ ինքեան է, բաղկանայ. իսկ երաժշտականն տարորոշ քանակիւն որ ըստ բաղադրութեան ։ Այլ նախագոյն է ըստ ինքեանն քան ըստ բաղադրութեան, քանզի և պարզաբար լինելն քան զայսպիսի լինելն. իսկ երկրաչափականն յառաջադասանայ [1] քան զաստեղաբաշխականն. վասն զի երկրաչափականն 'ի շարունակ քանակէն, որ անշարժն է բաղկանայ. իսկ աստեղաբաշխականն 'ի շարունակ քանակէն, որ շարժունն է ։ Իսկ անշարժն յառաջագոյն է քան զշարժունն. զի անշարժն սկիզբն է շարժման. զի ամենայն որ հանդերձեալ է շարժիլ՝ 'ի դադարմանէն և յանշարժէն ունի սկիզբն շարժման ։ Այսոքիկ և վասն դասաւորութեան տեսակաց ուսմնականին. Եկեսցուք այսուհետև և 'ի չորրորդ գլուխն և ասասցուք, եթէ ո՞յք ոմանք են գտողք այսոցիկ տեսակաց ։

Այլ պարտ է գիտել, եթէ զթուականն փիւնիկեցիք գտին, որպէս վաճառականք գոլով և թուականութեան պէտս ունելով առ 'ի համարել. իսկ զերաժշտականն թրակացիք. վասն զի անտի էր Որփէոս, զորմէ ասեն նախ գտանել զերաժշտականն. իսկ զաստեղաբաշխականն քաղդէացիք. վասն զի անամպ և հանապազ ջինջ գոլով օդոցն՝ դիւրաւ կարացին ըմբռնել զշարժմունս աստեղաց. իսկ զերկրաչափականն եգիպտացիք գտին 'ի հարկէ. քանզի Նեղոս գետոյ 'ի ծովանալ 'ի վերայ Եգիպտոսի և խառնակել զսահմանս արտավարացն՝ կուիւք և սպանմունք լինէին եգիպտացւոցն 'ի վերայ իւրաքանչիւր սահմանի. մինչև իմացան չափ մի՝ որում անուն էր Ապանակ, զայն դնելով գտանէին զսահմանս իւրաքանչիւր արտավարաց. ուստի ապա և երկրաչափութիւն գտաւ ։ Եկեսցուք այսուհետև 'ի հինգերորդ գլուխն և ասասցուք, թէ որպիսի՞ք իցեն տեսակք յարակացեալք այսոցիկ տեսակաց ։

Այլ պարտ է գիտել, եթէ թուականին յարակայ-

1 'ի լուսանցս միոյ օրին. յառաջագոյն է. միւս օրին. յառաջադասի ։

անայ համարողականն, բայց զանազանեին 'ի միմեանց. վասն զի թուականն զանութի թուոց խնդրէ և քննէ, և որ ըստ ինքեան իմանի թիւ այնու բաղկանայ և ոչ հատանէ զմիակն ։ Իսկ համարողականն զգալի թուականութիւն բաղկանայ, և զմիակն հատանէ 'ի կէս և յերրեակ և 'ի չորրեակ ։ Իսկ երաժշտականին յարակայանայ նիւթական երաժշտականն, այս ինքն փանդռուամբք[1] և փողովք և ծնծղայիւք բաղկանայ. իսկ ստոյգ երաժշտականն բանիւ միայն պիտանացեալ բաղկացուցանէ զինքն ։ Իսկ երկրաչափականին յարակայանայ երկրաբաժանականն. վասն զի երկրաչափականն բանիւ բաղկանայ, իսկ երկրաբաժանականն գործով ։ Իսկ աստեղաբաշխականին յարակայանայ գնդականն, և զանազանին 'ի միմեանց. վասն զի աստեղաբաշխականն գիտութ՟ երկնային մարմնոյն շարժմամբ բաղկանայ, իսկ գնդականն ըստ գնդաձև մարմնով և նոցին պատահմամբք. քանզի ասէ զպէսպէս հատմունս գնդաձևականաց ։

Եւ պարտ է գիտել, եթէ մեծ է զօրութի երաժշտականին, որպէս կրիւք ըմբռնելով զհոգին և տրամադրելով. որպէս յայտ առնեն մրմունջք և ողբք ըստ ինքեանց տրամադրելով զհոգին ։ Որպէս վիպասանեալ է ոմանց վասն Աղեքսանդրի, եթէ 'ի խրախութե՟ ելով երաժիշտն զպատերազմականն նըւագէր զմատն՝ և նա իսկոյն զինեալ արտաքս դիմեաց ։ Իսկ դարձեալ երաժշտին[2] զուրախականն բախեալ նուագս, նա անդրէն դարձեալ 'ի բազմականսն ձեմէր ։

1 Մի օրին. ֆընդուամբ ։
2 Մի օրին. Երաժշտաչին. և Երկուս օրին. Երաժշտականին ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԸ·

ՈՒՍԵԱԼՔ եթէ իմաստասիրութիւնն բաժանի 'ի տեսականն և 'ի գործականն, և տեսականն 'ի բնաբանականն և յուսումնականն և յաստուածաբանականն, եկեսցուք այսուհետև և ասասցուք՝ եթէ ըստ որում յեղանակի եղև բաժանումն այսոցիկ. քանզի զբաժանումն գործականին յետ այսորիկ ունիմք խօսել: Նախ զի զայսոսիկ ուսցուք՝ ասասցուք եթէ ո՛րչափ և որպիսիք իցեն բաժանման [1] յեղանակք:

Եւ պարտ է գիտել, եթէ ոմանք ութ յեղանակս ասեն գոլ բաժանման. և են այսոքիկ: Որպէս 'ի սեռէ 'ի տեսակս. որպէս 'ի տեսակէ յանհատս. որպէս 'ի բոլորէ 'ի մասունս, և այս երկակի. կամ 'ի նմանամասնայս լինի, կամ յաննմանամասնեայս: Որպէս 'ի հոմանուն ձայնէ 'ի զանազան նշանակեալս. որպէս յէութենէ 'ի պատահումն. որպէս 'ի պատահմանէ յէութիւն. որպէս 'ի պատահմանէ 'ի պատահումն. որպէս 'ի միջէ և առ մի:

Արդ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս՝ յորժամ բաժանեմք զկենդանին 'ի բանականն և յանբանն: Իսկ 'ի տեսակէ յանհատս՝ որպէս զհանուր մարդ բաժանեմք 'ի Սոկրատէս՝ 'ի Պղատոն՝ յԱլկիբիադ և յիւրաքանչիւր յանհատս: Իսկ 'ի բոլորէ 'ի մասունս նմանամասնաբար՝ որպէս յորժամ զբոլոր երակն բաժանեմք 'ի փոքր երակս, որք նմանամասնաբարք են բոլորին. վասն զի զնոյն բնութիւն բոլորին ունին: Իսկ 'ի բոլորէ 'ի մասունս աննմանամասնաբար՝ որպէս յորժամ զբոլոր գլուխն բաժանեմք յաչս՝ յականջս՝ յունչս՝ որք են աննմանք. վասն զի ոչ բոլորին և ոչ

1 Մի օրին. բաժանական.

նմանք միմեանց գոն ։ Իսկ 'ի հոմանուն ձայնէ 'ի զա-
նազան նշանակելոյ՝ որպէս յորժամ զշուն ձայնդ
բաժանեմք յերկնային և յերկրային և 'ի ծովային ։
Իսկ յէութենէ 'ի պատահումն՝ որպէս յորժամ ա-
սեմք, թէ 'ի մարդկանէ ոմանք սպիտակք են և ոմանք
սեաւք ։ Իսկ 'ի պատահմանէ յէութիւն՝ որպէս յոր-
ժամ ասեմք, թէ սպիտակէն [2] ոմանք ձիւն են և ո-
մանք բուռ ։ Իսկ 'ի պատահմանէ 'ի պատահումն՝
որպէս յորժամ ասեմք, եթէ սպիտակէն ոմանք ջերմ
են և ոմանք ցուրտ . ջերմ որպէս կիր . ցուրտ որ-
պէս ձիւն ։ Իսկ 'ի միոջէ՝ յորժամ ասեմք բժշկական
գիրք, բժշկական դեղք, բժշկական գործի ։ Իսկ առ
մին՝ յորժամ ասեմք առողջային գիրք, առողջային
տած, առողջային դեղք . վասն զի առ մին բացա-
հայելով՝ այս ինքն յառողջութիւն անուանեցաք զա-
ռողջայինսն ։ Եւ այսոքիկ այսպէս ։

Բայց պարտ է գիտել, եթէ յասացելոց յեղանա-
կացդ՝ երեք են ստուգապէս յեղանակք բաժանման .
որպէս 'ի սեռէ 'ի տեսակս, որպէս 'ի բոլորէ 'ի մա-
սունս, որպէս 'ի հոմանուն ձայնէ 'ի զանազան նշա-
նակեցելոյ ։ Իսկ այլ յեղանակքն ոչ կարող գոն բաղ-
կանալ, որպէս և առ 'ի մէնջ ցուցցին . վասն զի ոչ
կարէ որպէս 'ի տեսակէ յանհատս լինել բաժանումն .
զի անհատք անբաւք և անորոշք են առ 'ի թուել .
վասն զի ոմանք ապականին և ոմանք լինին, զորս ոչ
կարեմք ընդ թուով արկանել ։ Այլ և ոչ 'ի պատահ-
մանէ յէութիւն է իսկապէս յեղանակ բաժանման .
քանզի ասելն, եթէ սպիտակէն ոմն ձիւն է և ոմն
բուռ, չէ իսկապէս յեղանակ բաժանման . քանզի ոչ
եթէ զսպիտակն զինքն ըստ ինքեան առանց մարմնոյ
բաժանէ, այլ զմարմինն բաժանէ՝ յորում սպիտակն .
իսկ մարմինն էութիւն է, ապա ուրեմն զէութիւն յէու-
թիւն բաժանէ և ոչ զպատահումն յէութիւն ։

Եւ դարձեալ ամենայն որ բաժանի՝ 'ի նմանն բա-
ժանի և ոչ յաննմանն . վասն զի կենդանին բաժանե-
լով 'ի բանաւորն և յանբանն, 'ի կենդանի բանա-
ւորն և 'ի կենդանի անբանն բաժանեցաւ . այլ ոչ ե-

2 Երկու օրին . խայտակէն ։

թէ յոչ կենդանիսն որ է անշնչան․ իսկ պատահումն յէութի բաժանելով յանշնչանն բաժանի ։ Նոյն ըստ այսմ յարացուցի և ոչ էութիւն 'ի պատահումն բաժանելով իսկապէս յեղանակ բաժանման առի․ և ոչ դարձեալ պատահումն 'ի պատահումն բաժանելով․ քանզի ասեն՝ թէ սպիտակին ոմանք ջերմ են և ոմանք ցուրտ, ոչ եթէ զպատահումն ինքն ըստ ինքեան բաժանէ զըստ ինքեանց պատահմունս․ այլ զմարմինսն բաժանէ յորս պատահմունքն ։ Այլ և ոչ 'ի միոջէն և առ մին ասի յեղանակ բաժանման․ այլ որպէս թուի ինձ՝ վասն զի 'ի միոջէն անորոշք և անթիւք են, ըստ նմին բանի և առ մին․ ապա ուրեմն երեք են իսկապէս յեղանակք բաժանման․ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս, որպէս 'ի բոլորէ 'ի մասունս, որպէս 'ի համանուն ձայնէ 'ի զանազան նշանակեցեալս ։

Բայց պարտ է և զպատճառսն յեղանակաց բաժանման իսկիցն և անիսկիցն՝ 'ի բաժանմանէ յումեմնէ դատեալս [1] ասել այսպէս և ըստ այսմ օրինակի ։

Ամենայն որ միանգամ բաժանելի է և կամ բաժանի՝ կամ ըստ էութեան և ըստ ինքեան բաժանի, և կամ ըստ պատահման․ եթէ ըստ ինքեան բաժանի՝ կամ որպէս իր բաժանի, և կամ որպէս ձայն․ և եթէ որպէս իր բաժանի՝ այսոքիկ յեղանակք բաժանման լինին, որպէս 'ի սեռէ 'ի տեսակս, որպէս 'ի տեսակէ յանհատս, որպէս 'ի բոլորէ 'ի մասունս, և որպէս 'ի միոջէն և առ մին․ քանզի այսոքիկ որպէս իր բաժանիլ բնաւորեցան ։ Իսկ եթէ որպէս ձայն՝ յեղանակ բաժանմանն լինի, որպէս համանուն ձայն 'ի զանազան նշանակեցեալս ։ Իսկ եթէ ըստ պատահման բնաւորեցաւ բաժանիլ բաժանելին, այլք են և յեղանակք բաժանման լինին, որպէս էութի 'ի պատահումն, որպէս պատահումն յէութի, որպէս պատահումն 'ի պատահումն ։

1 Երկու օրին․ գտեալս ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԹ.

ԱՍԱՑԵԱԼՔ զտրամատական յեղանակս, եկեսցուք և ասասցուք ըստ որո՞ւմ յեղանակի բաժանի իմաստասիրութիւն 'ի տեսականն և 'ի գործականն: Այլ պարտ է գիտել, թէ որպէս սեռ 'ի տեսակս ոչ կարէ բաժանիլ. վասն զի յընդդիմաբաժանեալ տեսակսն ոչ գոյ տեսանել վերջին և առաջին. որպէս բաժանեցելոյ կենդանւոյն 'ի բանականն և յանբանն, ոչ գոյ ասել, եթէ բանականն յառաջագոյն է քան զանբանն, և կամ անբանն քան զբանականն. այլ զոյգք և համայնք գոն: Իսկ 'ի տեսականին և 'ի գործականին՝ է առաջին և վերջին. քանզի տեսականն առաջին է. վասն զի 'ի ձեռն տեսականին և բանի՝ գայ 'ի գործականն, զի մի՛ անբան և անպատճառ եղիցի գործականն: Այլ յայտ է թէ ոչ կարէ լինել բաժանումն 'ի տեսականն և 'ի գործականն՝ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս:

Երկրորդ վասն զի յընդդիմաբաժանեալ տեսակսն՝ ոչ ունի պէտս մինն միւսումն առ 'ի բաղկանալ. իսկ 'ի տեսականումն և 'ի գործականումն ոչ այսպէս, այլ պէտս ունի գործականն տեսականին, որով բաղկանայ և յարդարի, զի մի՛ անբան և անպատճառ եղիցի: Այլ պարտ է նախ տեսականաւն քննել զըստ բնութեան բարին, և այնպէս նովաւ բաղկացուցանել զգործականն: Ապա ուրեմն ոչ բաժանի իմաստասիրութիւն 'ի տեսականն և 'ի գործականն՝ որպէս սեռ 'ի տեսակս. այլ և ոչ որպէս տեսակ յանհատս, վասն զի անհատքն անբաւք և անպարունակելիք գոն. իսկ այսոքիկ ոչ են անբաւք, այլ երկուք միայն, տեսական և գործական:

Այլ դարձեալ անհատքն մասամբ ցուցանին, իսկ այսոքիկ ոչ. յայտ է եթէ ոչ կարող գոյ իմաստասի-

րութիւն որպէս տեսակ՝ յանհատս բաժանիլ 'ի տեսականն և 'ի գործական ։ Այլ և ոչ որպէս հոմանուն ձայնն 'ի զանազան նշանակեցեալսն ․ վասն զի 'ի հոմանունսն ոչ գոյ առաջին և վերջին ․ վասն զի ոչ ոք ասէ, եթէ երկնային շունն յառաջագոյն է քան զերկրայինն, կամ երկրայինն քան զծովայինն ․ իսկ աստ որպէս կանխաւ ցուցաք յառաջագոյն է տեսականն քան զգործականն ։ Ապա ուրեմն ոչ կարող գոյ իմաստասիրութիւն բաժանիլ 'ի տեսականն և 'ի գործականն՝ որպէս հոմանունն ձայն 'ի զանազան նշանակեցեալս,

Այլ և ոչ որպէս էութիւն 'ի պատահումն, և ոչ որպէս պատահումն յէութիւն ․ վասն զի իմաստասիրութիւն ոչ է էութիւն ․ և ոչ տեսականն և ոչ գործականն, այլ պատահմունք ։ Այլ և ոչ որպէս պատահումն 'ի պատահումն ․ վասն զի պատահումն 'ի պատահումն՝ կամ որպէս սեռ 'ի տեսակս բաժանի, կամ որպէս էութիւն յէութիւն ։ Արդ ցուցաք թէ ոչ որպէս սեռ 'ի տեսակս բաժանի, և ոչ որպէս էութիւն յէութիւն, վասն զի պատահումն է ։

Այլ և ոչ որպէս բոլոր 'ի մասունս, ոչ նմանամասնաբար, և ոչ աննմանամասնաբար ․ վասն զի նմանամասնաբարքն՝ և միմեանց հոմանունաբար[1] ասին և բոլորումն ․ իսկ տեսականն և գործականն թէպէտ և բոլորումն հոմանունաբար ասին, այլ ոչ և միմեանց ։ Այլ և ոչ աննմանամասնաբար ․ վասն զի աննմանամասնաբար բաժանեալքն՝ ոչ բոլորումն և ոչ միմեանց ասին հոմանունաբար ․ իսկ տեսականն և գործականն՝ թէպէտ և միմեանց ոչ ասին հոմանունաբար, այլ բոլորումն ասին, վասն զի և նա իմաստասիրութիւն և նոքա ։ Արդ իմանամք յասացելոցդ, թէ որպէս 'ի միջէ և առ մի եղև բաժանումն իմաստասիրութեան ․ քանզի որպէս 'ի միջէ ումեքէ իմաստասիրութենէ անուանեցան իմաստասիրութիւն և տեսականն և գործականն ։

Բայց սակայն Արիստոտէլ ասէ, եթէ որպէս բոլոր ինչ 'ի մասունս բաժանեցաւ ։ Եւ բարւոք ասէ ․

[1] Մի օրին․ համանունաբար ։

վասն զի տեսականն և գործականն՝ մասունք իմաստասիրութեան են. և որպէս միոյ մասին պակասելոյ՝ հարկ է զբոլորն անկատար գոլ, նոյն օրինակ և գործականին ոչ ելոյ՝ անկատար է իմաստասիրութիւն։ Վասնզի պարտ է կատարեալ իմաստասիրին՝ ոչ միայն տեսականաւն, այլ և գործականաւն զարդարիլ։

Այլ թէ ոք ասիցէ՝ յի՞նչ եղև բաժանումն. 'ի նմանամանականն՝ թէ յաննմանամանականն։ Ասեմք թէ 'ի նմանամանականն. քանզի և բոլորումն և միմեանց համանուանաբար ասին. որ է յատուկ և առանձին նմանամանեայց՝ բոլորին և ինքեանց հոմանուանաբար ասիլ. նմանապէս և աստ։ Զի որպէս իմաստասիրութիւն իմաստասիրութիւն ասի, այսպէս և տեսականն և գործականն իմաստասիրութիւն ասին. և ոչ միայն այս, այլ և կարող գոյ տեսականն գործական ասիլ, և գործականն տեսական։ Այլ տեսականն գործական ասի, վասն զի գործ մտաց է. իսկ գործականն տեսական՝ վասն զի ծնունդ տեսականին է գործականն. վասն զի նախ տեսականաւն գտեալ զողջախոհութիւն բարի գոլ, գործելով զնոյն յարդարեաց։

Արդ ուսեալք՝ եթէ որպէս իմաստասիրութիւն բաժանեցաւ, որպէս բոլոր 'ի մասունս նմանամանաբար, եկեսցուք այսուհետև և ասասցուք, թէ ըստ որո՞ւմ յեղանակի և տեսականն բաժանեցաւ 'ի բնաբանականն և յուսմնականն և յա̃ծաբանականն։ Այլ պարտ է գիտել, եթէ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս ոչ եղև բաժանումն. վասն զի յընդդիմաբաժանեալ տեսակսն ոչ է առաջին և վերջին։ Իսկ աստանօր վասն զի նախ և առաջին բնաբանականն, ապա ուսումնականն, և ապա աստուածաբանականն։

Այլ դարձեալ, թէ ոչ երբէք սեռ յերիս բնաւորեցաւ բաժանիլ, իսկ տեսականն յերիս. 'ի բնաբանականն, յուսումնականն, և յա̃ծաբանականն։ Այլ պարտ է գիտել, թէ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս ոչ եղև բաժանումն, վասն որոյ ասեն ոմանք, թէ զի՞արդ շնչականն սեռ գոլով յերիս բաժանեցաւ, 'ի կենդանին՝ 'ի կենդանաբոյսն՝ 'ի բոյս։ Առ որս ասասցուք թէ ցուցանել ունիմք՝ եթէ ոչ է բարւոք բաժանումն այդ։

Դարձեալ ընդդէմ դնելով ասեն, թէ ահա ճարտասանականն սեռ գոլով՝ յերիս բաժանի 'ի տեսակս. յատենականն՝ 'ի բաղխոհականն՝ 'ի կացրդականն: Առ որս ասասցուք, թէ ոչ է բարւոք բաժանումն. զի ոչ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս ասի բաժանիլ ճարտասանականն յայսոսիկ, վասն զի յընդդիմաբաժանեալ տեսակսն՝ ոչ գոյ ժամանակական զանազանութիւն, որպէս բանականն և անբանն բաժանեալ՝ ոչ ունին ժամանակական բաժանումն. քանզի ոչ ունիմք ասել՝ թէ բանականն յանցեալ ժամանակի, և անբանն 'ի ներկայում և կամ յապառնումն: Իսկ անուանեալ տեսակք ճարտասանականիդ՝ ժամանակական ունին առ միմեանս զանազանութիւն. վասն զի բաղխոհականն վասն ապառնւոյ ժամանակի ունի ըզգոյութի̃. վասն զի յորժամ ոք ումեք խորհրդակից գոյ՝ վասն հանդերձելոյն խորհի: Իսկ ատենականն վասն անցելոյ ժամանակին ունի զգոյութի̃. վասն զի ա̃մ որ դատի՝ վասն այնոցիկ դատի զորս գործեաց: Իսկ կացրդականն յաղագս ներկային գոյանայ. վասն զի զանձուն առընթերակայից բարեացն ունի յինքեան. ուստի յայտ է թէ ոչ են իսկապէս տեսակք 'ի սեռէ բաժանեալքն, վասն որոյ ոչ է բարւոք բաժանումն ճարտասանականին յասացեալ տեսակսդ:

Այլ և ոչ որպէս բոլոր 'ի մասունս ասի բաժանիլ տեսականն, ոչ 'ի նմանամասնականսն՝ և ոչ յաննմանամասնականսն: 'Ի նմանամասնականսն՝ վասն զի թէպէտ և միմեանց ոչ ասին համանունաբար, այլ բոլորումն ասին. վասն զի և բնաբանականն տեսական ասի՝ և ուսումնականն և ա̃ծաբանականն. վասն զի որպէս բազում անգամ ասացաք՝ նմանամասնականացն յատուկ այն է՝ և բոլորումն և միմեանց համանունաբար ասիլ: Այլ և ոչ աննմանամասնաբար՝ զի յատուկ աննմանամասնեայց է՝ ոչ բոլորումն համանունաբար ասիլ և ոչ միմեանց. իսկ սոքա թէպէտ և միմեանց ոչ ասին համանունաբար, այլ բոլորումն ասին:

Այլ և ոչ որպէս տեսակ յանհատս ասի բաժանիլ տեսականն, և ոչ որպէս էութի̃ 'ի պատահումն, և ոչ որպէս պատահումն յէութի̃, և ոչ որպէս պատա-

հումն 'ի պատահումն, և ոչ որպէս հոմանուն ձայն 'ի զանազան նշանակեցեալս, վասն ասացելոց յառաջագոյն պատճառացդ։ Այլ են որպէս 'ի միոջէ և առ մի. վասն զի բնաբանականն և ուսումնականն և աստուածաբանականն՝ որպէս մի 'ի միոջէ [1] 'ի տեսականէն անուանեցան տեսական իւրաքանչիւրոք։ Այլ այսոքիկ այսպէս։

Ակնեսցուք այսուհետև և ասասցուք, եթէ ըստ որում յեղանակի և ուսումնականն բաժանի 'ի թուականն՝ յերաժշտականն՝ յերկրաչափականն՝ յաստեղաբաշխականն։ Այլ ասելի, է թէ ոչ որպէս [2] սեռ 'ի տեսակս ոչ բաժանի. և ոչ որպէս տեսակ յանհատս, և ոչ որպէս բոլոր 'ի մասունս, և ոչ որպէս հոմանուն ձայն 'ի զանազան նշանակիցեալս, և ոչ որպէս էութ̃ի 'ի պատահումն, և ոչ որպէս պատահումն յէութ̃են, և ոչ որպէս պատահումն 'ի պատահումն, վասն ասացելոցդ յառաջագոյն պատճառացդ. Այլ որպէս 'ի միոջէ և առ մի. վասն զի թուականն և երաժշտականն և երկրաչափականն և աստեղաբաշխականն՝ որպէս 'ի միոջէ յուսումնականէն իւրաքանչիւրոք ուսումնական կոչեցաւ։

1 Երկու օրին, որպէս 'ի միոջէ։ 2 Ցերկուս օրինակս. Ոչ որպէս սեռ։

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ԲԱԺԱՆՈՒՄՆ ՏԵՍԱԿԱՆ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

### ԳՐԱԿՔ Ի·

ՅԵՏ ասելոյ զբաժանումն տեսականին, եկեսցուք և 'ի բաժանումն գործականին. զի թէպէտ և յետ տեսականին է, վասն զի 'ի ձեռն տեսականին յարդարի, և 'ի ձեռն բանի պաճուճէ զբարուականն [1] և հնազանդեցուցանէ զախտս, այլ սակայն ոչ է պարտ արհամարհել զնա. վասն զի որպէս ասէ Պղատոն՝ թէ Իմաստասէր կոչեմ ես, ոչ զայն որ շատն գիտէ՝ և ոչ որ բազում ինչ 'ի միտ առնուլ կարող է, այլ որ անբիծ և անաղտ կենցաղավարութիւն ստացեալ ունի յինքեան: Քանզի կատարեալ իմաստասէր է՝ ոչ որ բազում ինչ գիտէ, այլ որ զախտս կարող գոյ հնազանդեցուցանել: Արդ եկեսցուք և ասասցուք զբաժանումն գործականին:

Նաև պարտ է գիտել՝ թէ այլաբար բաժանեն զգործականն արիստոտելականքն, և այլաբար պղատոնականքն. քանզի արիստոտելականքն յերիս բաժանեն զնա. 'ի քաղաքականն 'ի տնտեսականն 'ի բարոյականն: Նաև յիրաւի յերիս բաժանի. վասն զի յորժամ զարդարէ ոք զբարս՝ կամ զմիոյ ուրուք զարդարէ զբարս՝ և լինի բարոյական, և կամ զտան՝ և լինի տնօրինական, և կամ զքաղաքի՝ և լինի քաղաքական: Նաև զի այսուքիկ յերիս բաժանին՝ ցուցանէ յիւրոց շարագրածաց Արիստոտէլ:

Վասն զի Արիստոտէլ գրեաց զբարոյականն՝ յորում վասն բարուց ճառէ. և վասն տան՝ յորում վասն տնտեսականին ճառէ, յորում ասէ, թէ չորք են ընթացակիցք առ 'ի տան կարգաւորութիւն [2]: Աիամնութի առն և կնոջ առ միմեանս. և սէր յոր-

1 Երկու օրէն. բարոյական:

2 Մի օրէն. կարգադրութիւն:

ղեաց վերայ. և երկիրդ 'ի վերայ ծառայից. և չափաւորութին եղեւմուց: Վասն զի երկաքանչիւրոցն անչափութի յոռեգոյն է. զի եթէ բազում են մուտք և դուզնաքեայ ելք, այնպիսին ընդ ագահս հաշուի. իսկ եթէ դուզնաքեայ մուտք և առաւել ելք, այնպիսին ընդ անառակս է: Բայց գրեաց և այլ քաղաքականս, յորում վասն կարգաւորութեան քաղաքի ճառէ. Նմանապէս և Պղատոն գրեաց քաղաքականս, և զնոյն կարգաւորութի ունի զԱրիստոտելին:

Նաև պարտ է գիտել, զի 'ի քաղաքական շարագրութեանց մի դիտաւորութի ունին Արիստոտել և Պղատոն. վասն զի իւրաքանչիւրոք 'ի դոցանէ ասէ, թէ զիարդ պարտ է կարգաւորել քաղաքի: Իսկ 'ի քաղաքականութեն զանազան է դիտաւորութի և շարագրութիւն և մակագրութիւն. վասն զի Պղատոն եզակի մակագրեաց՝ Ո քաղաքականութի. իսկ Արիստոտելէս յոքնակի՝ Ո քաղաքականութիք. վասն որոյ և դիտաւորութիւնն զանազան գոյ. քանզի Արիստոտել ասէ, թէ զիարդ քաղաքավարեցան առաջինքն. այս ինքն արգիացիք, և բիովտացիք, և այլք ամենայն Յոյնք. իսկ Պղատոնն ասէ, թէ զիարդ պարտ է քաղաքավարել:

Առաջուստ պարտ է գիտել, եթէ պղատոնականքն ընդդէմ ասեն արիստոտելականացն վասն բաժանման գործականին. ասեն՝ թէ ոչ բարւոք արարին զառաջիկայ բաժանումն յերիս բաժանելով, քանզի ոչ երբէք սեռ յերիս բաժանի, այլ յերկուս, որպէս կենդանին 'ի բանականն և յանբանն. գոյնն 'ի սպիտակն և 'ի սեաւն:

Երկրորդ՝ վասն զի ոչ ուրեք յընդդիմաբաժանեալ տեսակս մինն 'ի միւսումն տեսանի. քանզի ոչ երբէք բանականն յանբանումն տեսանի, և ոչ անբանն 'ի բանականումն: Իսկ աստանօր բարոյականն 'ի տնօրէնականումն տեսանի, և տնօրինականն 'ի քաղաքականումն:

Երրորդ առ այսոքիւք՝ ոչ երբէք մի տեսակն համակար գոյ սեռի. քանզի ոչ կարէ բանականն միայն համակար գոլ կենդանւոյն որ է սեռ, և ոչ անբանն միայն. այլ երկոքեան միանգամայն: Իսկ աստ քա-

ղաքականն միայն համակար գոյ գործականին. վասն զի որպէս ասեն արիստոտելականքն՝ գործականն բաժանի 'ի բարոյականն, 'ի տնօրինականն, 'ի քաղաքականն, որ պարունակեալ ունի յինքեան զբարոյականն և զտնօրինականն. վասն զի որ կարող գոյ զքաղաք կարգաւորել, այնպիսին և զտուն և զբարս. յայտ է եթէ համակար գոյ քաղաքականն գործականին, և տնօրինականն քաղաքականին: Իսկ եթէ այսոքիկ այսպէս, յայտ է թէ ոչ բարւոք արարին զբաժանումն գործականին:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ՊՐԱԿՔ

## ՊՐԱԿՔ ԻԱ.

Իսկ յետ ձեռնարկութեան պղատոնականացն որ ընդդէմ արիստոտելականացն, յաղագս բաժանմանն գործականին 'ի բարոյականն 'ի տնտեսականն 'ի քաղաքականն, ինքեանք այսուհետև ձեռնարկեն բաժանել զգործականն յերկուս միայն, յօրէնսդրականն և 'ի դատողականն: Իսկ յիրաւի. քանզի իմաստասէրն կամ դնէ օրէնս, որով միշտ զիւրն զարդարէ զբարս՝ և լինի օրէնսդրական. և կամ զայլս դատէ ըստ գրեցելոյ օրինացն՝ և լինի դատողական: Իսկ զոր բան ունի օրէնսդրականն առ քաղաքս պահելով 'ի նոսա զիրաւացին, զնոյն բան ունի և դատողականն առ օրէնսդրականն, պահելով զպատուիրեալսն 'ի նմա: Քանզի բարոյականն և տնօրինական և քաղաքականն զնիւթոյ զտեղի ունին առ օրէնսդրականն և դատողականն. քանզի օրինադրողն՝ կամ զմիոյ ուրուք զբարս զարդարէ, կամ զտան, կամ զքաղաքի վասն օրէնս դնելոյ՝ ըստ որում իւրաքանչիւրոք պարտի քաղաքավարել: Իսկ դատողն կամ զմի ոք դատի, կամ զտուն, կամ զքաղաք:

Նաև պարտ է գիտել, թէ ոչ եղև բաժանումն գործականին յօրէնսդրականն և 'ի դատողականն՝ որպէս 'ի սեռէ 'ի տեսակս. վասն զի անդ ոչ է առաջին և վերջին յընդդիմակայացեալ տեսակսն, իսկ աստ է. քանզի յառաջագոյն է օրէնսդրականն և ապա դատողականն, ըստ նմին օրինակի և ոչ ըստ միում յառացելոց յեղանակաց բաժանմանն, այլ են որպէս 'ի միոջէ և առ մի: Արդ ուսեալք, եթէ զինչ է իմաստասիրութիւն, եկեսցուք այսուհետև և ասասցուք, եթէ որպիսի ինչ է: Այլ և այն յայտնի եղև 'ի ձեռն յառաջասասցելոցդ. քանզի ուսաք 'ի ձեռն սահմանացդ և 'ի ձեռն բաժանմանն: Ի ձեռն բաժանմանն ուսաք, եթէ տեսական և գործական է. քանզի յայսոսիկ միայն բաժանի:

Ապա թէ ոք ասիցէ՝ եթէ ոչ միայն իմաստասիրութիւն է տեսական և գործական, այլ և այլ արհեստք գոն տեսական և գործական. քանզի ահա բժշկականն տեսական ասի, յորժամ գիտէ զախտս և ասէ զպատճառն՝ թէ ուստի եղև. այլ և գործական ասի, յորժամ մաղձադեղս տայ կամ արիւնս հանէ:

Առ որս ասեմք, թէ իսկապէս տեսական և գործական՝ իմաստասիրութիւն միայն է: Նաև տեսական միայն է իսկապէս՝ վասն զի այլ արուեստք ոչ զամենայն գոյսս գիտեն, այլ զայն որ զնիւթոյն միայն է, վասն զի աստուածաբանութիւնք ոչ յարդարին. իսկ իմաստասիրութիւն յաղագս ամենայն գոյից լինի և յաղագս աստուածայնոցն: Այլ և գործական միայն իմաստասիրութիւն իսկապէս ասի, վասն զի այլ արհեստ, կամ յաղագս մարմնոյ է՝ որպէս բժշկականն. կամ յաղագս այնոցիկ որ արտաքոյ մարմնոյ, որպէս հիւսնականն շինողականն դարբնականն. իսկ իմաստասիրութիւն յաղագս հոգւոյ եղանի. քանզի զհոգւոյ աչս կալեալս 'ի մարմնական հեշտախտութեանցն և խաւարեալս՝ 'ի ձեռն իմաստասիրութեան յարուցանել և լուսաւորել բնաւորեցաւ հոգի: Արդ որչափ պատուականագոյն է հոգի քան զմարմին, նոյնպէս և որ զհոգի զարդարէ իմաստասիրութիւն՝ պատուականագոյն է քան զայլ արհեստս մարմնոյ զարդարողս: Վասն այսորիկ գործական ասի քան զայլ արհեստս, զի սա զհոգւոյն ազդմունս զարդարէ:

Արդ ուսեալք 'ի ձեռն բաժանման, եթէ որպիսի ինչ է իմաստասիրութի՟, եթէ տեսական է և գործական ։ Այլ և 'ի ձեռն սահմանացն ծանեաք, թէ որպիսի ինչ է իմաստասիրութիւն․ քանզի 'ի ձեռն սահմանացն, որ յենթակայէն են՝ այս ինքն 'ի ձեռն այնր որ ասէ, իմաստասիրութի՟ է գիտութի՟ էակացն ըստ որում էակք, և իմաստասիրութի՟ է գիտութի՟ ա՟ծայնոց և մարդկայնոց իրողութե՟ց՝ ուսաք, եթէ տեսական է իմաստասիրութի՟ն ։ Իսկ 'ի ձեռն սահմանին՝ որ յառաւելութենէ որ ասէ, իմաստասիրութիւն է արհեստ արհեստից և մակացութի՟ մակացութե՟ց՝ ուսաք, եթէ իշխանական է իմաստասիրութիւն ։ Իսկ 'ի ձեռն սահմանին՝ որ 'ի հուպ կատարմանէ որ ասէ, թէ իմաստասիրութի՟ է խոկումն մահու՝ ուսաք, եթէ մաքրող ախտից է իմաստասիրութիւն ։ Իսկ 'ի ձեռն սահմանին՝ որ 'ի հեռի կատարմանէ որ ասէ, թէ իմաստասիրութի՟ է նմանութիւն ա՟յ ըստ կարողութե՟ մարդկան՝ ուսաք, թէ քաղաքական է իմաստասիրութիւն․ քանզի քաղաքական իմաստասէրն կամի և ըստ գիտութեան և ըստ գործոց որչափ կարողութի՟ է մարդոյ՝ նմանիլ ա՟յ ։

Նաև պարտ է փութապէս ասել, երկուց տեսակաց ելոց իմաստասիրութե՟՝ տեսականին և գործականին, և վեց սահմանաց, ոմանք 'ի տեսականն իմաստասիրութի՟ վերաբերին և ոմանք 'ի գործականն և ոմանք յերկաքանչիւրսն ։ Քանզի երկու սահմանք՝ որ յենթակայէ որ ասէ, իմաստասիրութի՟ է գիտութի՟ էակացն ըստ որում էակքն են, և որ ասէ, իմաստասիրութի՟ է գիտութի՟ ա՟ծայնոց և մարդկայնոց իրողութեանց․ և մի՝ որ յառաւելութենէ որ ասէ, իմաստասիրութի՟ է, արհեստ արհեստից և մակացութի՟ մակացութե՟ց, 'ի տեսական մասն իմաստասիրութե՟ վերաբերին ։ Իսկ մին՝ որ 'ի հուպ կատարմանէ որ ասէ, իմաստասիրութի՟ է խոկումն մահու․ և միւս ևս՝ որ 'ի ստուգաբանութենէ որ ասէ, իմաստասիրութի՟ է սիրելութի՟ իմաստութեան, 'ի գործական մասն վերաբերին ։ Իսկ որ 'ի հեռի կատարմանէ որ ասէ, իմաստասիրութի՟ է նմանութի՟ ա՟յ ըստ կարողութե՟ մարդկան, առ երկոսեան վերաբերի ։ Արդ

ուսեալք՝ եթէ որպիսի՛ ինչ է իմաստասիրութ՟ի, ասասցուք թէ վասն է՞ր է ։

Վասն զի ոչ վարկպարազի է իմաստասիրութիւն, որպէս յայտ առնէ Պղատոն առ ումն Թէոդորոս առնելով զբանս իւր ։ Այսպիսի ինչ բարի, ո՛վ Թէոդորէ, ոչ երևեցաւ երբէք 'ի մարդիկ առ 'ի յա՟յ՝ և ոչ երևելոց է ։ Այլ պարտ է գիտել, թէ վասն այսորիկ է իմաստասիրութ՟ի՝ վասն զարդարելոյ և պաճուճելոյ զմարդկային հոգիս, և փոփոխել զնա 'ի նիւթային և 'ի մառախղուտ կենցաղոյս յաստուածայինն և յաննիւթն ։

Այլ պարտ է գիտել, եթէ հոգի երկուս ունի զօրութ՟իս՝ գիտնականս և կենդանականս ։ Այլ գիտնականք են այսոքիկ․ միտք, տրամախոհութ՟ի, զգայութիւն, կարծիք, երևակայութ՟ի․ իսկ կենդանականքն այսոքիկ են․ կամք, ընտրողութ՟ի, յօժարութիւն, ցանկութ՟ի, բարկութ՟ի ։ Այլ յերկաքանչիւրս յայսոսիկ՝ ոմանք բանականք են և ոմանք անբանք․ քանզի և 'ի գիտնական զօրութիւնս հոգւոյ՝ ոմանք բանականք են և ոմանք անբանք ։ Այլ բանականք են միտք, տրամախոհութիւնք, կարծիք․ իսկ անբանք՝ զգայութիւնք, երևակայութ՟իք ։ Այլ 'ի կենդանականսն դարձեալ զօրութ՟իս՝ ոմանք բանականք են և ոմանք անբանք․ և բանականք ասին կամք, ընտրողութ՟ի, և յօժարութ՟ի․ իսկ անբանք՝ որպէս բարկութ՟ի, և ցանկութ՟ի ։

Արդ այսոցիկ այսպէս ելոց, շնորհեաց ա՟ծ զիմաստասիրութ՟ի վասն զարդարելոյ զմարդկային հոգի ։ Արդ զգիտնական զօրութիւնսն զարդարէ 'ի ձեռն տեսականին, իսկ զկենդանականսն 'ի ձեռն գործականին, որպէս զի մի՛ զսուտ գիտութ՟ի 'ի կարծեաց ընկալցուք, և մի՛ չար ինչ գործեսցուք ։

# ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ ԲԱՆ ԻՄԱՍՏՆՈՅՍ [1]

ԱՄԵՆԱՅՆ չար տանջելի. ոչ ոք տանջեալ անապական. ոչ ոք ապականացու անեղ. է չար ապականացու. չար ուրեմն ոչ է անեղ։ Ոչ ոք ըստ բնութ՟ե չար. և վասն զի չար՝ առարկութ՟ի է, ոչ ոք առարկութ՟ի [2] գոյացութ՟ի է. ապա ուրեմն չարն ոչ է գոյացութիւն։ Ամենայն ընդդիմակքն՝ միմեանց ապականիչք. հակառակքն ուրեմն ոչ են անապականք։

Ոչ ինչ անեղ փոփոխելի. և փոփոխելի բարին պարտեալ 'ի չարէն, բարի ուրեմն ոչ է անեղ։ Անեղն ոչ է ցանկացող ապականութ՟ե ուրուք և ոչ ապականիչ. իսկ չարն փափագող է ապականութ՟ե, չար ուրեմն ոչ է անեղ։ Իսկ ա՟ծային գիրք տանջանաց մատնեն ոչ միայն զայլ չարսն, այլ և զնոյն ինքն զբանսարկուն, ասեն և ա՟ծ տանջանաց մատնեալն այլայլելի է. ոչ ոք այլայլելի անեղ, ապա ուրեմն ոչ ինչ 'ի չարացն է անեղ։

Որք բոլորովին ընդդիմակքն են՝ ոչ ինչ ունին հաւասար, որպէս զի ա՟ծ հարկաւորութ՟ք, որ միումն է գոյացեալ՝ միւսումն և ոչ գոյանայ. և է գոյացեալ բարութ՟են գոլ անեղն. չար ուրեմն ոչ ինչ յայսցանէ գոյանայ, բայց միայն չարութ՟իւն։

Ամենայն որ իրաւացի փափագէ ուրուք, յարմարեալ ունի զփափագումն՝ եթէ դիւրաբնութ՟ք բաղձայցէ. ապա ուրեմն յապականացուացն է չարութ՟ի. և եթէ յապականացուացն է, ապականի և ինքն. և ապականեալն ոչ է անեղ. և եթէ անեղ իցէ չարութիւն՝ ըստ բնութ՟ե նմա գոյանայ չար գոլ։ Ոչ ոք

1 Զայս բան իմաստնոյ 'ի գիրս Յունաց և Լատինացւոց գտանեմք յանուն Գրիգորի Նիւսացւոյ կամ Նեմեսիոսի ուրումն. իսկ 'ի գիրս մեր միշտ Դաւթի ընծայի. թերևս թարգմանութիւն նորա իցէ, զորոյ և զմեկնութիւն արար Ներսէս Շնորհալի։

2 'Ի միում օրինակի. չար՝ առարկութիւն . . . ոչ ոք առարկութիւն։ Իսկ Յոյնն. որակութիւն։

ըստ բնութեն գործելով մեղանչէ․ չար ուրեմն մե֊ղանչէ․ և որ ոչն մեղանչէ՝ ոչ է ընդ բանբասանօք․ և ընդ բանբասանօք է Սատանայ, ապա ուրեմն ոչ է անեղ։

## ԱՅՍ ԳԾԱԾՔ ՀԱՆԴԻՍԱԴԻՐ ԽՄԲԻՑ ԱՌԱՋՆՈՑՆ ՏԱՌԻՑ ՏՐԱՄԱԽՈՀ ԻՄԱՍՏԱՍԷՐ ՄԱԿԱՑՈՒ ԱՐԱՆՑ․ ՆԵՐԲՈՂԵԱԼ Ի ԴԱՒԹԷ ԵՌԱՄԵԾԷ ԵՆԹԱԴՐԵՑԱՒ

# ՆՈՐԻՆ

# ԴԱՒԻԹԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

## ԱՌԱԾՔ ՀԻՆԳ

### ԹԷ ԶԻ՞ՆՉ ԱՐԴԵՕՔ ԻՑԷ ՍԱՀՄԱՆ, ԿԱՄ ԶԻ՞ՆՉ ԲՆԱՒՈՐԱԿԱՆ ՍԱՀՄԱՆ, ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՍՏՈՐԱԳՐԱԿԱՆ ՍԱՀՄԱՆ. ԵՒ ԿԱՄ Ո՞ՅՔ Ի ՍՈՑԱՆԷ ԶՈ՞ՅՍ ՈՄԱՆՍ ՎԻՃԱԿԵՑԱՆ Ի ԳՈՅԻՑՆ

ԱՐԴ սահման է "Բան համառօտ յայտնիչ գոյացութեան, յանկակայ իրողութեան". որպէս չորութիւն և ցրտութիւն զհողոյն յայտնեն զգոյացութիւն. իսկ առաւելութիւն չորութեան սեղմացեալ խստութիւն՝ զքարին: Նաև ասի բան համառօտ, վասն զի կարճառօտիւք յայտնէ զգոյացութիւն ենթակայ իրողութեան: Իսկ բնաւորական սահման է "Բան համառօտ յայտնիչ բնութեան ենթակայ իրողութեան". որպէս կենդանին, բանաւորն, մահկանացուն, մտաց և հանճարոյ ընդունակն մարդոյն: Իսկ ստորագրութիւն է "Բան համառօտ, յայտնիչ անանջատականաց պատահմանց ենթակայի իրողութեան". որպէս կենդանին, հետևակն, ուղղորդագնացն, լայնեղունգն. քանզի այսպէս ստորագրելն՝ ոչ թէ զբնութիւն մարդոյն յայտնէ, այլ զանանջատականս ոմանս պատահմունս, որք 'ի վերայ նիւթականաց տեսանին: Իսկ ստորագրական սահման է "Բան համա-

ւոտ յայտնիչ գոյացութեան [1] և բնութեան և պատահմանց ենթակայ իրողութե՟ „, որպէս յորժամ ոք զգոյացութե՟ցն և զբնութե՟ցն և զպատահմանցն ՚ի միասին հաւաքեալ ասիցէ ։

Արդ ընդհանուր տեսակացն ոմանք աննիւթք, և ոմանք նիւթաւորք բնաւորեցան գոլ ։ Եւ նիւթաւորացն ոմանք բուսականք են, և ոմանք անբուսականք. և սոցին այսոցիկ դարձեալ բուսականացն՝ ոմանք շնչականք որք և կենդանիք, և ոմանք չընչաբոյսք [2] ։ Արդ ըստ սահմանումն անբուսականաց տեսակացն աննիւթից և նիւթաւորացն գոյացութիւն՝ էակ ցուցանել զնոսին բնաւորեցան. որպէս գոյացութի՟ քարի զքար, և գոյացութի՟ արդարութեան զարդարութի՟, և իմաստութե՟ զիմաստութի՟ ։ Իսկ ըստ բնաւորականաց սահմանումն բուսականաց տեսակաց բնութի՟ զբուսականսն, և կենդանականաց տեսակացն աննիւթից և նիւթաւորաց զկենդանականսն. որպէս բնութի՟ հոգւոյ զհոգի, և բնութիւն մարդոյ զմարդ. նոյնպէս և ստորագրութե՟ սահման, որք աննիւթից և նիւթաւորաց ստորոգեալք իմանին ։

Բայց ասի բնաւորական սահման. ոչ միայն բնաւորականն, այլ և բնութի՟ և տեսակ. բնութի՟՝ սակս զի յարարչականութեմբ գոլով բնութե՟, որպէս բան և յարացոյց ըստ ինքեան յարածել զբուսականացն. և զկենդանականացն տեսակաց բնաւորեցոյց զանհատս. վասն զի անհնարին է արարչականութեն թարց բանի գոլ. այս ինքն՝ սահմանականի բնութե՟ ։ Իսկ տեսակ ասի գոլ. նոյն ինքն սահմանական բնութիդ, որպէս սահմանելով և անդրադարձելով, յայնոսիկ որք և տեսակք բնաւորեցան գոլ և կոչիլ. նա քանզի և սահմանէ իսկ զմարդ՝ որ կոչի տեսակ. կենդանի ասելով, և բանաւոր և մահկանացու և միտաց և հանճարոյ ընդունակ. այլ և անդրադարձի ևս. վասն զի ո՟մ կենդանի և բանաւոր, միտաց և հանճարոյ ընդունակ՝ այնպիսին մարդ ասի գոլ ։

1 Յերիս օրինակս գոյացողութէ, որպէս և այլուր զկնի ։

2 Յերիս օրին. չնչականք բոյսք ։

## ԵՐԿՐՈՐԴ ԱՌԱԾ

### ԶԻ՞ՆՉ Է ԳՈՅԱՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՈՐՊԻՍԵՕՔ ԻՐՕՔ ԶԱՆԱԶԱՆԻ ԲՆԱՒՈՐԵԱՑ ԲՆՈՒԹԵԱՆՆ

ԳՈՅԱՑՈՒԹԻՒՆ է « Յարադրութիւն գոյացուցանողաց ոմանց զանազանութեանց » . որ և սահմանն կոչելով ընդհանուր անբուսականացն աննիւթից և նիւթաւորաց . տեսակք և որ ընդ տեսակօք անհատքն գոյացանն : Իսկ եթէ որովք և ընութեան զանազանիցի իրօք , ՚ի Ճառեցելոցն իսկ ահա յայտնի եղև . քանզի որպէս ասացաք ըստ անբուսականացն և անշնչից տեսակացն բնաւորեցաւ բերել զգոյացութիւն[1] . իսկ ընութիւն ըստ բուսականաց և ըստ կենդանականացն տեսակաց :

## ԵՐՐՈՐԴ ԽՆԴԻՐ

### ԶԻ՞ՆՉ Է ՆՈՅՆ . ԵՒ ԶԻ՞ՆՉ Է ԱՅԼ . ԵՒ ՈՐՊԻՍԻՔ ՈՄԱՆՔ ԱՅՆՔ, ՈՐՔ ՆՈՅՆՔ ԱՍԻՆ, ԵՒ ՈՐՊԻՍԻՔ ԱՅՆՔ, ՈՐՔ ԱՅԼՔ

ՆՈՅՆ է սոյգ և իսկապէս նոյն , որ ըստ ինքեան իրողութեամբ ոչ ինչ զանազանութիւն իւրովքն առ այլս զանազանութեամբք , որպէս աննիւթքն և նիւթաւորեալքն . քանզի Հրեշտակ և մարդ իւրաքանչիւրոք ըստ ինքեան գոլով՝ ոչ ինչ ունի զանազանութիւն իւրովքն առ այլս զանազանութեամբք : Իսկ այլ է սոյգ և իսկապէս , յորժամ իրողութիւն ինչ ըստ ինքեան գոլով ոչ նոյն մնայ , այլ այլովք զանազանութեամբք երևի : Յետ այսորիկ և նոյնք ասեմք և զայնոսիկ ,

1 Յերիս օրինակս չիք զգոյացութիւն :

որք նովին գոյացութիւնք և էութիւնք են՝ ոչ ինչ ունելով առ միմեանս զանազանութիւն ըստ նորին գոյացութեան և էութեան առ այլս զանազանութեանց։ Իսկ այլք ասին դարձեալ այնոքիկ, որք ոչ են նորին գոյացութեան, այլ զանազանեալք գոն առ իրեարս ըստ իւրաքանչիւր զանազանութեանց։

# ՉՈՐՐՈՐԴ

## ԶԻ՞ՆՉ ՄԻ ԻՑԷ ԳՈՅԱՑՈՒԹԵԱՆ ԵՒ ԲՆՈՒԹԵԱՆՆ, ԵՒ Ո՞ՅՔ ԱՅՆՈՔԻԿ, ՈՐՔ ՄԻՈՅ ԱՍԻՆ ԳՈՅԱՑՈՒԹԵԱՆ ԵՒ ԲՆՈՒԹԵԱՆ

ԱՐԴ ոչ ապաքէն ընդհանուր եւս այսոքիկ ասացեալք, էացեալս և գոյացեալս և հանդերձ գոյութեամբ բնաւորեալս ստորագրութեամբ սահմանաւ, և բնաւորականաւ սահմանաւ. իսկ եթէ այսպէս՝ ապա ուրեմն և նոյնք՝ յորժամ ըստ նորին էութեան ասին գոլ նոյնք, հարկ է նոցա, կամ ըստ նորին սահմանութեան և կամ ըստ նորին բնաւորականութեան սահմանութեամբ ասի նոյն։ Վասն զի ոչ ինչ գոյ՝ որպէս խոստովանեցաք էութիւն թարց այսոցիկ, և կամ այն ընդ որով ոչ այնոքիկ. և կամ որք 'ի սոցանէ համայն։
Արդ միանգամ ըստ միութեան և ըստ նորին ստորագրութեան ասին գոլ նոյնք՝ այն եղ ասացի գոլ էութիւն. իսկ որք ըստ միում և ըստ նորին սահմանութեան՝ այն եղ գոյացութիւն յորջորջեցի. սապէս և մի բնութիւն և գոյացութիւն, այն ըստ որում յոքունք անհատք նոյն ասին գոլ միմեանց։ Արդ ուրեմն մի բնութիւն է ըստ առաջին նշանակութեան, ընդհանուր բնաւորական սահման, ըստ որում յոքունք նոյն բնաւորութեամբ գոյացեալք նովաւ։ Այն ասին գոլ ոչինչ 'ի միմեանց զանազանեալք, նորայնովք առ այս զանազանութեամբք։
Յայտնի եղև մեզ յայսոսիկ, թէ ո՞յք ոմանք և այնոքիկ իցեն, որք միոյ ասին գոլ բնութեան. վասն

զի նոյնք յոքնակի ասելովդ զյոքունս նշանակեն․ զի միով բնութեամբ նմանապէս գոյացեալս, և ոչ ինչ առ միմեանս զանազանեալս ըստ միումն իւրեանց բնութեան առ այլս զանազանութեանց․ իսկ յոքունքն՝ նախ և առաջին ըստ անհատից բնաւորեցան բերել, երկրորդ ըստ տեսակաց, երրորդ ըստ սեռից, չորրորդ ըստ սեռականագունիցն[1]։ Իսկ եթէ այսոքիկ այսպէս․ ապա ուրեմն նախ և առաջին անհատքն են, որ միայն ասին գոլ բնութեամբ․ զի նոյնք գոյացեալք ըստ իւրաքանչիւրոց նոյն արարողաց տեսակաց, միոյ ասին գոլ բնութեան․ ապա տեսակքն, ապա սեռքն, ապա սեռականագոյնքն․ ոմանք բնութեան, և ոմանք գոյացողութեան, և այլք էութեան միայն։

Արդ ըստ առաջնում նշանակութեան մի ասի բնութիւն, յորժամ բնաւորական սահմանն պարզ իրի գոլով սահման, և նոյն արարող յոքունց ըստ իւրոցն առ այլս զանազանութեանց՝ մի ասի գոլ բնութիւն․ որպէս, ընդհանուր հոգւոյ բնաւորական սահման պարզ իրի գոլով սահմանի, այս ինքն հոգւոցն նոցա՝ ցուցանող գոյ յոքունց և ըստ մասին հոգւոց։ Իսկ ըստ երկրորդումն նշանակութեան, մի ասի գոլ բնութիւն, յորժամ բնաւորական սահմանն շարադրական գոլով զօրութեամբ ՚ի զանազանից տեսակաց, ՚ի հոգւոյ ասեմ և ՚ի մարմնոյ, նոյն արարող գոյ յոգունց և ըստ մասին մարդկան։ Ապա ուրեմն ըստ երկուց նշանակութեանց ասի գոլ մի բնութիւն, ըստ պարզականին, յորում ոչ տեսանին զանազանութիւնք տեսակաց, որ է ստոյգ և իսկապէս մի բնութիւն․ և ըստ շարադրականին՝ յորում զանազանութիւնք տեսակաց տեսանին․ բայց զօրութեամբ որպէս ասացաք, և ոչ ազդմամբ ասոքիկ։

1 Յերկուս օրինակս սեռագունիցն ։

# ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԹԷ ԿԱՐՈՂ ԳՈ՞Յ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐՈՔ ՅԱՆՀԱՏԻՑՆ ՄԻ ԲՆՈՒԹԻՒՆ ԳՈԼ ԵՒ ԱՍԻԼ

ԱՐԴ անհատիցն ըստ նմանութեան միաբանութեան, ոմանք պարզականք բնաւորեցան գոլ, և ոմանք շարադրականք։ Արդ պարզականացն անհատից յապաղումն կալցի բանս, զի ոչ է առաջիկայիս դիտաւորութեան․ իսկ վասն շարադրականացն ասասցուք, եթէ ոչ արարողք գոն մի բնութի՟ ասել և գոլ։

Ասեմ զի մի բնութի՟ ասացաք զընդհանուր բնաւորական սահմանն․ իսկ անհատոն՝ ոչ ընդհանուր, այլ մասնական։ Երկրորդ ո՛չ ապաքէն ցուցաք յառաջագոյն զանհատան միոյ ասել բնութեան հանդերձ այլովք անհատիւք, նոյն և մի գոլ ասի բնութի՟։ Իսկ երրորդ զայն ասասցուք զնոյն շարադրական մի բնութիւն, նոյն արարող գոլ բնաւորիլ․ իսկ զանհատան ոչ նոյն արարող, այլ նոյն եղեալ հանդերձ այլովք անհատիւք․ արդ զիա՞րդ ասի գոլ մի բնութի՟։ Չորրորդ առ այսոքիւք նոյն շարադրական մի բնութի՟ զօրութե՟ ունել բնաւորեցաւ զանազանութիւս տեսակաց, իսկ անհատան արդեամբք, որպէս Պաւղոս անհատ գոլով զհոգին և զմարմին։ Հինգերորդ նոյն մի բնութի՟ տեսակ բնաւորեցաւ գոլ, և ըստ յոլովից բերիլ թուով զանազանեցելոց․ իսկ անհատան զիա՞րդ արդեօք լինիցի տեսակ, և ըստ յոլովից բերիցի։ Արդ ոչ գոյ կարող մի բնութի՟ ասել և գոլ․ զի ասացաւ իսկ վաղ ուրեմն, թէ որք միանգամ ոչ ունին զմի սահմանս, այնպիսիքն և ոչ նոյնք ասին գոլ երբեք ուրեք։

# ՛ՆՈՐԻ՛Ն

## ՎԱՍՆ ԲԱԺԱՆՄԱՆ

ԱՄԵՆԱՅՆ որ միանգամ բաժանեալ գոյ յայլոց գոյից, հարկ է նմա կամ մարմին գոլ, կամ անմարմին, կամ երկաքանչիւրոց միջակ։ Արդ անմարմնոյն և միջակին լռեցելոյ առ 'ի մէնջ յառաջիկայումս, մարմնոյն հարկ է 'ի համանիւթոյ մարմնոյ կամ յանհամանիւթոյ, մակերևութեամբ կամ գծիւ բաժանեալ գոլ։ Իսկ մակերևութեամբ բաժանեցելոցն՝ հարկ է ոմանց ընաւորականս գոլ և ոմանց անընաւորականս։ Եւ ընաւորականացն դարձեալ՝ ոմանց բուսականս գոլ, և ոմանց շնչականս, և այլոց շնչաբուսականս։ Իսկ սոցին դարձեալ այսոցիկ բուսականացս՝ հարկ է որոշաբար մասնաւորեալս միայն գոլ թարց յօդից. իսկ շնչականացն յօդիւք համդերձ. իսկ շնչաբուսականացն՝ ոչ յօդեալս և ոչ որոշաբար մասնաւորեալս։ Այլ և անընաւորականացն հարկ է ոմանց անարուեստացեալս գոլ, և ոմանց արուեստացեալս. և որոշաբար մասնաւորեալս՝ զարուեստացեալսն, իսկ անորոշաբար մասնաւորեալս՝ զանարուեստացեալսն։

Իսկ ասիցելոցս այսոցիկ հարկ է՝ ըստ իւրաքանչիւրոցս բոլոր ինչ գոլ. ոմանց անորոշաբար, և ըստ բոլորումն և ըստ մասանց, որպէս զանընաւորականսն արուեստացեալս. և ոմանց որոշաբար և ըստ բոլորումն և ըստ մասանց, որպէս զբուսականսն և զշնչականսն, և զանընաւորականսն արուեստացեալս. և այլոցն դարձեալ ըստ բոլորումն որոշաբար, իսկ ըստ մասանցն անորոշաբար, որպէս զշնչաբուսականսն։ Ո՞չ ապաքէն երևեցաւ ըստ երիցս ըստ այսոցիկ մակերևութի՛ և գիծ, բաժանեալ զհամանիւթս, և զանհամանիւթս մարմնոյ. ըստ պատահման ասեմ՝ որ-

պէս զանբնաւորականսն զանարուեստացելոցն, և ըստ բնութեան՝ որպէս զբուսականսն և զշնչականսն և զշնչաբուսականսն։ Արդ եթէ բաժանել ոք ձեռնարկեսցէ ազգմամբ զանբնաւորականսն անարուեստացելս, հարկ է ըստ պատահման սահման՝ սահմանաբար բաժանել 'ի մասունս։ Իսկ եթէ զանբնաւորականսն արուեստացելս, ըստ արհեստումն, որ լինի 'ի քակտումն. իսկ եթէ զբուսականսն և զշնչականսն և զշնչաբուսականսն՝ սահմանաբար ըստ յօդից և ըստ սկզբանց մասանց։

Արդ այսոցիկ որպէս բոլոր ինչ 'ի մասունս ասին բաժանիլ։ Նաև որք ազգմամբ որպէս բոլոր ինչ 'ի մասունս բաժանին, ոչ պահեն զառաջին տեսակ բոլորին, և ոչ մնայ բոլորն որպէս բոլոր. իսկ եթէ բոլորն 'ի մասունս բաժանելով՝ ոչ ապականէ զառաջին տեսակ բոլորին, այլ մնայ բոլորն իսկ և իսկ բոլոր. ապաքէն մտօք միայն բանիւ ասեմք կարող լեալ, այսպէս բաժանիլ և այնպէս մնալ։ Արդ այլ է այն, որ ազգմամբ 'ի ձեռն մակերևութեան և գծի բաժանի, և այլ է այն, որ մտօք միայն. զի ոմն պահէ զառաջին տեսակ բաժանեցելոցն, որպէս միտք. և ոմն ոչ գոյ կարող պահել, որպէս ազգումն 'ի ձեռն մակերևութեան և գծի։ Իսկ զանազանից իւրաց զանազանք պարտին գոլ անուանքն. զի ազգմամբ բաժանումն է՝ հատումն միաւորութեան մասանց, ըստ որում բոլոր 'ի մասանց ոչ բոլոր. իսկ ըստ մտաց որոշումն անշփոթաբար և ուրեք անյօդաբար միաւորեցելոց և աւարտեցելոց, զբոլորն ըստ որում բոլորն որպէս բոլոր բնաւորեցաւ պահել։

ԾԱՌ ՊՈՐՓԻՒՐԻ

Pr. Lit. Deyé.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

# ՊՈՐՓԻՒՐԻ

Լինելոյ հարկաւորի, Քրիսաւորիէ, և յառ'ս Արիստոտէլի ստորոգութեանցն վարդապետութիւն, գիտել՝ զի՞նչ սեռ և զի՞նչ տարբերութի և զի՞նչ տեսակ, զի՞նչ յատուկ և զի՞նչ պատահումն 'ի սահմանացն բացատրութիւն, և բոլորովին յաղագս բաժանման և ապացուցի պիտանացուի ելոյ սոցայցն տեսութի, համառօտ քեզ ընձեռութի առնելով՝[1] փորձեցայց 'ի ձեռն սակաւուց իբր ներածութե յեղանակի զառ ծերունեացն անցանել բանիւ, 'ի խորագունիցն 'ի բաց կալ 'ի խնդրոյ՝ և պարզագունիցն չափաւորապես հանդիպելով:

Արդ աստէն իսկ վաղվաղակի յաղագս սեռի և տեսակի. մի՝ զի թէ ենթակայացաւ, և թէ միայն 'ի սոսկ մտածութե կայ. և եթէ ենթակայացեալ՝ մարմինք են կամ անմարմինք. և եթէ արդեօք զատելիք կամ զգալիք, և յայսոսիկ ենթակայացեալք, հրաժարեցից ասել, խորագունի ելոյր այսպիսոյր իրողութեան, և այլ ևս պիտեցելոյ մեծի խուզման: Բայց զի՞արդ յաղագս սոցա և առաջիկայիցս բանականագոյն հինքն բուռն հարեալ ասացին, և կարի յաւէտ՝ որք 'ի Ճեմարանէն, այժմ քեզ փորձեցայց ցուցանել:

1 Մի օրին. առնլով: Բայց և Ցն. առնելով.

## Ա

## ՑԱՂԱԳՍ ՍԵՌԻ

ԲԱՅՑ երևեցաւ, եթէ ոչ սեռ և ոչ տեսակ պարզաբար ասէին. քանզի սեռ ասի, և ոմանց ունելով իմն առ մի ինչ և առ միմեանս հաւաքումն: Ըստ որում նշանակի՝ հերակլեանցն ասի սեռ 'ի միոջէն կալմանէ. և զայս ասեմ 'ի Հերակլեայ. բազմութեան՝ որք ունին իմն առ միմեանս զ'ի նմանէն ընդանութիւն, ըստ բացատրութեան զայլոցն սեռից կոչեցելոյ: Բայց ասի և այլ ազգ դարձեալ սեռ. իւրաքանչիւրոցն սերմանց սկիզբն կամ 'ի ծնողէն և կամ 'ի տեղւոյն՝ յորմէ ոք եղև. քանզի այսպէս զՈրեստէս 'ի Տանտալեայ ասեմք ունել զսեռն, և զՀիւլոն 'ի Հերակլեայ:

Եւ դարձեալ զՊինդարոս թեբայեցի գոլ զսեռն, և զՊղատոն աթենացի. քանզի գաւառն սկիզբն է իւրաքանչիւր սերման՝ որպէս ծնողն: Բայց այս երևեցաւ առձեռն են հանգամանակեալս. զի հերակլեանքն 'ի Հերակլեայ 'ի վայր կոյս իջանելով սեռն. և կեկրոպեանքն 'ի Կեկրոպեայ, և սոցայցքն[1] մերձաւորք: Եւ նախկին անուանեցաւ սեռն իւրաքանչիւր սերման սկիզբն. և զկնի այսորիկ բազմութիւն 'ի միոջայցն[2] սկսմանէ. որդւոն 'ի Հերակլեայ բացորոշելով և յայլոցն[3] մեկնելով. և ասացաք զբոլոր հաւաքումն հերակլեանցն սեռ:

Եւ այլ ազգ դարձեալ սեռ ասի, ընդ որով դասի տեսակն. ըստ նմանութեան թերևս սոցայցը ասացեալ: Եւ քանզի սկիզբն իմն է այսպիսի սեռս ընդ սովաւցն, և թուի և զբազմութիւն պարունակել զամ ընդ սովաւցն: Արդ եռակի սեռոյս ասացելոյ՝ յաղագս երրորդին առ իմաստասէրս է բան. զոր և նա թագրելովք բացատրեցին, սեռ գոլ ասելով զըստ

1 Երկու օրին. սոցայցն. մի օրին. միջոցացն: սոցանէքն. այլ օրին. սոցայէքն:

2 Երկու օրին. միոջացն. այլ օրին.

3 Երկու օրին. այլոցն:

բազմացն և տարբերեցելոցն տեսակաւ 'ի ներուստ զինչէն ստորոգեալ․ որգոն՝ կենդանին, քանզի ստորոգեցելոյն է ինչ՝ որ զմիոջէ ասի միայնոյ, որպէս անհատքն․ որգոն՝ Սոկրատէսն․ և սայն և այսն։ Իսկ որ զյոլովից իսկ սեռքն, և տեսակքն, և տարբերութիւնքն, և յատուկքն, և պատահքն հասարակաբար, այլ ոչ յատկապէս ումեք։ Այլ է սեռ, որգոն՝ կենդանին․ և տեսակ, հիկէն՝ մարդ․ և տարբերութիւն, որպակ՝ բանական․ և յատուկ, հիբար՝ ծիծաղական․ և պատահ, որգոն՝ սպիտակն, սեաւն, նստելն։

Արդ զմիոյր միայնոյր ստորոգեցելոյն տարբեր են սեռքն, այնու՝ որ զյոլովից է բացատուեալ ստորոգիլ ըստ յոլովից տեսակաց․ զի տեսակքն թէպէտ և ըստ յոլովից ստորոգին, այլ ոչ տեսակաւ տարբերեցելոց՝ այլ թուով․ քանզի մարդ տեսակ ելոյր՝ Սոկրատոյր և Պղատոնոյր ստորոգի, որք ոչ տեսակաւ են տարբերք, այլ թուով։ Իսկ կենդանին սեռ ելով, մարդոյր և ձիոյր և եզին ստորոգի, որք տարբերին և տեսակաւ 'ի միմեանց, այլ ոչ թուով միայն։

Այլ յատկոյն տարբեր է սեռն[1], զի յատուկն զմիոյր տեսակոյր, ոյր է յատուկ, ստորոգի՝ և զընդ տեսակաւն անհատիցն․ որպէս ծիծաղականն մարդոյր միայնոյր և զըստ մասանցն մարդոցն[2]․ բայց սեռն ոչ զմիոյր տեսակոյր ստորոգի․ այլ զյոլովից և զտարբերեցելոց տեսակաւ։

Իսկ զտարբերեցելոցն և զպատահիցն տարբեր է սեռն․ զի թէպէտ ըստ յոլովից և զտարբերեցելոց տեսակաւ ստորոգին տարբերքն, և հասարակաբարն պատահմունք, այլ ոչ 'ի ներուստ զինչէն ստորոգին․ հարցեալ մեր զայն՝ զորմէ ստորոգին այսոքիկ․ առաւել 'ի ներուստ որպիսիինչէին։ Քանզի 'ի հարցանելն որպիսի ինչ մարդն, ասեմք՝ թէ բանական․ և ներ՝[3] որպիսի ինչ ագռաւն, ասեմք՝ թէ սեաւ․ և է բանականն՝ տարբերութիւն, իսկ սեաւն՝ պատահումն։

Իսկ յորժամ զինչ է մարդն հարցանիցեմք, կենդանի՝ պատասխանեմք․ և է մարդոյր սեռոյր կեն-

1 Երկք օրին․ սեռին։

2 Երկու օրին․ զընդ քառանցն մար․ դոյքն․ այլ օրի․ ըստ մասանցն մարդոյր։

3 Ներ․ այսինքն 'ի հարցանելն։

դանելն ։ Իսկ ապա զյոլովիցն ասել զսեռն, զատուցանել զնա յայնցանէ, որ զմիոյը միայնոյը զանհատիցն ստորոգիցի ։ Իսկ զտարբերերեցելոցն տեսակաւ զատուցանել զայս յայնցանէ, իբրու թէ 'ի տեսակաց ստորոգիցելոց, կամ իբր 'ի յատկացն ․ իսկ 'ի ներքում զինչէն ստորոգեալ՝ մեկնէ 'ի տարբերերեցելոցն և 'ի հասարակաբար պատահեցելոցն ․ քանզի ոչ 'ի ներքում զինչէն, այլ 'ի ներքում որպիսիինչէն, կամ զիարդ ունի, ստորոգի [1] ։ Այլ ինչ ապա ուրեմն աւելորդ, և ոչ նուազ պարունակէ սեռոյս ճառեցեալս ենթագրութի մատածութե ։

## Բ

## ՑԱՂԱԳՍ ՏԵՍԱԿԻ

Տեսակ ասի և 'ի վերայ իւրաքանչիւրոյ կերպի՝ ըստ որում ասի, նախ տեսակ արժանի գոռոզութե ։ Այլ ասի տեսակ և այս՝ որ ընդ բացատրեալ սեռիւս է, ըստ որում սովորեցաք ասել զմարդ տեսակ կենդանւոյ՝ սեռոյը ելոյը կենդանւոյը ․ և սպիտակն գունոյ տեսակ, և եռանկիւնին ձևոյ տեսակ ։ Այլ եթէ զսեռն բացատրելով զտեսակն յիշեցաք, ասելով զյոլովիցն և զտարբերերեցելոց տեսակաւ 'ի ներքում զինչէն ստորոգեալ, և զտեսակն ասեմք զայն՝ որ ընդ բացատրեալ սեռիւն է ։ Գիտել պարտ է, վասն զի սեռն՝ որումն է սեռ, և տեսակն՝ որումն է տեսակ, երկաքանչիւր երկաքանչիւրոյը՝ հարկ է և ներկոցունց բանս վարիլ երկաքումբք ։

Մարդ բացատրեսն զտեսակն այսպէս ․ Տեսակ է դասեալ ընդ սեռիւ ․ տեսակ է՝ որում սեռն ստորոգի ։ Այլ ևս և այսպէս ․ տեսակ է զյոլովիցն և զտարբերացն թուով 'ի ներքում զինչէն ստորոգեալ ։ Այլ այս բացատրութի յատկագունին եղիցի, որ է միայն տեսակ ․ իսկ այլքն եղիցին արդեօք ոչ յատկագունին ․ և հաւաստի եղիցի ասացեալս զայս յեղանակ ըստ

1 Երկք օրին․ ըստ ՑՆ․ յաւելուն ոչ իւրաքանչիւրոյն ստորոգի,

երկաքանչիւր ստորոգութեանն. են ինչ սեռականագոյնք, և դարձեալ այլք յատկագոյնք. և ընդ մէջ սեռականագունիցն [1] և յատկագունիցն այլք: Եւ սեռականագոյն՝ քան զոր ոչ եղիցի այլ վերանցեալ սեռ. և յատկագոյն՝ որ է տեսակագոյն, քան զորոյ կնի ոչ եղիցի այլ վայրանցեալ տեսակ. և ընդ մէջ սեռականագունին և տեսակագունին՝ սեռք և տեսակք նոյնք. բայց սակայն առ այլ և առ այլ առեալք: Եւ եղիցի 'ի վերայ միոյ ստորոգութե հաւաստի ասացեալս:

Գոյացութի է սեռ, և ընդ սովաւ մարմին, և ընդ մարմնովն շնչաւոր մարմին, ընդ որով կենդանին, և ընդ կենդանեաւն բանական կենդանին, ընդ որով մարդն, և ընդ մարդովն Սոկրատէս, Պղատոն, և ըստ մասանց մարդկան: Այլ սոցա գոյացութի սեռականագոյն, որ միայն է սեռ. և մարդ յատկագոյն, որ միայն տեսակ է. և մարմին տեսակ գոյացութե, և սեռ շնչաւոր մարմնոյ. այլ և շնչաւոր մարմինն տեսակ է մարմնոյ, և սեռ կենդանոյ: Եւ դարձեալ կենդանին տեսակ է շնչաւոր մարմնոյ, և սեռ բանական կենդանոյ. և բանական կենդանին տեսակ է կենդանոյ, և սեռ մարդոյ. և մարդ տեսակ է բանականին կենդանոյ, բայց ոչ ևս է սեռ ըստ մասանցն մարդկան, այլ միայն տեսակ: Եւ ամէն առաջոյ [2] անհատիցն մերձաւորաբար՝ տեսակ ասի միայն, և ոչ ևս սեռ:

Արդ որպէս գոյացութի վերնագոյն ելով ոչ ինչ գոլ նախ քան զնա՝ սեռ էր սեռականագոյն, այսպէս և մարդն տեսակ ելով՝ յետ որոյ ոչ ինչ է այլ տեսակ, և ոչ ինչ յայնցանէ 'ի կոտորելոցն կարացելոց 'ի տեսակս՝ անհատից այլոց [3]. քանզի անհատ է Սոկրատէս և Պղատոն. և միայն տեսակ, և վերջին տեսակ. և որպէս ասացաք՝ յատկագոյն: Իսկ միջինքն յառաջ քան զնոսայցն եղիցեն տեսակք. իսկ զկնի սոցայցն՝ սեռք: Ապա ուրեմն այսոքիկ ունին երկուս կալմունս առ 'ի յառաջ քան զնոսայն, ըստ որում տեսակք ասին գոլ սոցա. իսկ առ զկնի սոցայն, ըստ

1 Մի օրին. փեռականագունիցն ։ օրին. ամ առաջնոյ ։
2 Մի օրին. ամէն առաջի. երկու
3 Մի օրին. անհափէց էլոց ։

որում սեռք սոցա ասին գոլ. բայց ծայրքն մի ունին կալումն ։ Քանզի սեռականագոյն իբրու թէ առ այն՝ որ ընդ նովաւն է, ունի կալումն՝ սեռ ելով ամենեցուն գերագոյն. իսկ իբրու առ որ նախ քան զինքն՝ ոչ ևս ունի՝ վերնագոյն ելով և առաջին սկիզբն ։ Իսկ յատկագոյնն մի ունի կալումն իբրու յառաջ քան զինքն, որոյ է տեսակ. իսկ իբրու առ զկնիս քան զինքն՝ ոչ այլ ազգ ունի. այլ և անհատիցն տեսակ ասի, և տեսակ անհատիցն իբրու պարունակելով զնոսա. և տեսակ դարձեալ առաջնոցն քան զինքն իբրու պարունակեալ ՚ի նոցանէ ։

Արդ բացորոշի սեռականագոյնն և այսպէս. որ սեռ է, ոչ է տեսակ. և դարձեալ գեր զոր ոչ ինչ եղիցի այլ վերանցեալ սեռ. և տեսակագոյնն, որ տեսակ ելով ոչ է սեռ, և որ տեսակ ելով՝ ոչ բաժանեսցուք ՚ի տեսակս ։ Նու ևս և որ զյոլովիցն և զտարբերաց թուով ՚ի ներքուստ զինչէն ստորոգի ։ Իսկ միջինքն ծայրիցն ընդ միմեամբք կոչին տեսակք և սեռք. և զիւրաքանչիւր նոցա տեսակ գոլ սեռ դնեն, բայց առ այլ և առ այլ առեալք ։ Իսկ առաջոյքս ՚ի յատկագունիցն մինչև ՚ի սեռականագոյնսն ելեալք ՚ի վեր՝ սեռք ասին և տեսակք. և ընդ միմեամբ սեռք, որպէս Ագամեմնոն, Ատրիդէս և Պեղոպիդէս և Տանտալիդէս, և վերջինն Արամազդայ, այլ ՚ի վերայ ազգաբանութեանցն ՚ի մի տարեալ հանեն, ե՛կ բեր ասել յԱրամազդ, զսկիզբն իբրու բազում անգամ ։ Իսկ ՚ի վերայ սեռիցն և տեսակացն ոչ այսպէս ունի. քանզի ոչ է հասարակ մի սեռ ամենեցունց էակն, և ոչ ամենայն հոմասեռ ըստ միում վերնագոյնն սեռի, որպէս ասէ Արիստոտելէս. այլ դիցի որպէս ՚ի ստորոգութիւնսն, առաջինքն տասն սեռքն, որգոն՝ սկզբունք տասունք առաջինք. և թէպէտ զամենայնն ոք էակս կոչեսցէ, հոմանունաբար, ասէ, կոչեսցէ, և ոչ փաղանունակի. քանզի եթէ մի էր ամենեցունց հասարակ սեռ էակն՝ փաղանունաբար ապաքէն ամենայնք էակքն ստորոգէին ։

Արդ տասն ելոյ առաջնոցն, հասարակութիւն ըստ անուանն միայն, և ոչ ևս ըստ բանին՝ որ ըստ անուանն ։ Արդ տասունք սեռականագոյնքն, և յատկագոյնքն

ներ թուեալին իմն են, այլ ոչ յանհնին: Իսկ անհատքն, որ էին զկնի քան զյատկագոյնսն, անհունք. վասն որոյ մինչև ցյատկագոյնսն 'ի սեռականագունիցն իջեալքն՝ հրաման տայր Պղատոն դադարել. և իջանել 'ի ձեռն միջնոցն[1] բաժանելով տեսակարարօք տարբերութեամբքն՝ զանհունսն ասէր թողուլ, քանզի ոչ գոյ լինել 'ի սոցանէ մակացութիւն. և իջանելով 'ի յատկագոյնսն, հարկ է բաժանելով՝ զնոսա միշտ ընդ բազումսն գնալ. և ելանելով 'ի սեռականագոյնսն, հարկ է շարունակել զբազմութիւն. քանզի 'ի մի վայր ամփոփէ[2] բազմացն 'ի մի բնութիւն տեսակն, և ևս առաւել սեռն: Իսկ ըստմասնեայքն և ըստ իւրաքանչիւրք ներհակք՝ 'ի բազմութիւն միշտ բաժանեալ լինին. քանզի տեսակին կցորդութեամբք բազում մարդիկ մի, իսկ ըստ մասամբք մու, և հասարակն յոլովք. քանզի բաժանական է միշտ իւրաքանչիւրն, և բաղձաձական և եզարար հասարակն:

Արդ բացատրեցելոյ սեռոյն և տեսակոյն՝ զինչ երկաքանչիւրն, սեռոյ եզոյ ելոյ՝ և տեսակացն յոլովից. քանզի միշտ 'ի յոլով[3] տեսակս կոտորումն սեռին. զի սեռն միշտ զտեսակէ ստորոգի, և ամենայնք վերնագոյնք զվայրնոցն: Եւ տեսակն և ոչ զմերձաւորէն իւրոյ սեռէ և ոչ զվերնոցն, քանզի ոչ հակադարձէ. քանզի պարտ և արժան է միշտ հանդէտքն զհանդիտից ստորոգիլ, որպէս խրխնջականն զձիոյ. կամ մեծ զնուազից, որպէս կենդանին զմարդոյ. և նուազքն զմեծից ոչ ևս. քանզի ոչ ևս զկենդանին ասասցես մարդ, որպէս զմարդն ասասցես կենդանի գոլ: Բայց զորոց տեսակն ստորոգիցի՝ զնոցանէ 'ի հարկէ և տեսակին սեռն ստորոգեսցի, և սեռի սեռն մինչև ցսեռականագոյնն: Քանզի եթէ ճշմարիտ է զՍոկրատէս մարդ ասել, և զմարդն կենդանի, և զկենդանին գոյացութիւն, ճշմարիտ և զՍոկրատէս մարդ կենդանի ասել և գոյացութիւն:

Արդ միշտ վերնագունիցն ստորոգիցելոց զվայրնոցն, և տեսակն զանհատէն ստորոգեսցի. և սեռն

1 Երկու օրին. Միջոցն:
2 Մի օրին. 'ի լուսանցսն փոփոխէ:
3 Երկու օրին. Մէջ յոլով:

զանհատէն և զտեսակէն. և սեռականագոյնն և զսեռէն կամ զսեռիցն՝ թէ յոլովագոյն իցեն միջակքն[1] և ընդմիմեամբքն, և զտեսակէն և զանհատէն. քանզի ասի սեռականագոյնն զամենեցունց զընդդինքեամբքն[2] սեռից և տեսակաց և անհատից: Այլ սեռ՝ որ յառաջ քան զյատկագոյնն է, զամենեցունց զյատկագունից և զանհատիցն. և միայն տեսակքն զամենեցունց զանհատիցն, և անհատքն 'ի վերայ միոյր միայնոյր զմասնայցն. և անհատ ասի Սոկրատէս, և այս ինչ սպիտակ, և այս անուն որ եկն առ մեզ Սոփրոնիսկոսի որդին, եթէ միայն նորա իցէ Սոկրատէս որդի: Արդ անհատք ասին այսպիսիքս, զի 'ի յատկութեանց բաղկացաւ իւրաքանչիւրն. որոց հաւաքումն ոչ 'ի վերայ այլոյ ուրուք եղիցի ըստ մասնեայցն. քանզի Սոկրատեայ յատկագոյնքն[3] ոչ և մակ այլոյ ուրուք լիցին ըստ մասամբն: Բայց սակայն մարդոյն զայս ասեմ հասարակին յատկութիւն եղիցի նոյն 'ի 'ի վերայ յոլովից, տի նա առաւել 'ի վերայց ամենեցուն ըստ մասինցն մարդոցը, ըստ որում մարդիկ:

Արդ պարունակի անհատն 'ի տեսակէն, և տեսակն 'ի սեռէն. քանզի բոլոր ինն սեռն է, և անհատն մասն, և տեսակն բոլոր և մասն, այլ մասն այլոյ. և բոլորն ոչ այլոյ՝ այլ այլոց. քանզի մասամբն բոլորն: Արդ յաղագս սեռի և տեսակի, և զինչ սեռականագոյնն, և զինչ յատկագոյնն, և զինչ սեռք՝ որք և տեսակք, և զինչ անհատք, և քանի օրինակ զսեռն և զտեսակն՝ ասացեալ է:

## Գ

## ՅԱՂԱԳՍ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ՝ հասարակաբար, և յատկապէս, և յատկեղ ասասցի. զի հասարակաբար տարբերիլ այլ այլոյ ասի այլութբ զանազանեալ՝ որպէս զիարդ

1 Մի օրին. միջնէկեն:
2 Մի օրին. ընդդիմեամբեն:
3 Մի օրին. յատուկեն:

և իցէ կամ առ ինքն կամ առ այլ. զի տարբեր է Սո-
կրատէս 'ի Պղատոնէ այլութբ, և ինքն ինքեան՝ ման-
կան ելոյր և այրացելոյր և ներգործելոյր ինչ կամ դա-
դարելոյր, և միշտ յիւր ինչ պէտս ունել այլութիւս.
և յատկապէս տարբերեալ[1] առի այլ այլոյ, յորժամ
անանջատելի պատահմամբ այլոյն տարբերիցէ. և
անանջատելի պատահումն՝ խաժակնութի, արծուըն-
կնութի և սպի 'ի վիրէ սևեռեալ: Իսկ յատկեղքն
տարբերիլ այլ այլոյ ասին, յորժամ տեսակարարաւ
տարբերութբ զանազանիցէ. որպէս՝ մարդ ձիոյ տե-
սակարարաւ տարբերութբ զանազանեալ գտաւ բա-
նականին որակութբ. և գրէ եթէ ընդհանուր ամե-
նայն տարբերութի այլայլակ առնէ առեգեալ ումեք.
այլ հասարակաբարն և յատկապէսն այլայլակ առ-
նեն, իսկ յատկեղքն այլ: Վասնզի տարբերացն են
ինչ՝ որ այլայլակ առնեն, և են որք այլ. արդ որք այլն
առնեն՝ տեսակարարք կոչին, իսկ որ այլայլակն՝ պար-
զաբար տարբերութիւն. քանզի կենդանոյն տարբե-
րութի առեալ բանականին՝ այլ է արար. տեսակ
մարդոյ կենդանւոյ է արար: Իսկ շարժելոյն այլայլակ
միայն առ դադարումն արար. իսկ ապա մին այլ, իսկ
միւսն այլայլակ միայն է արար: Արդ ըստ այլարա-
րակս[2] այսոքիկ բաժանմունք լինին 'ի սեռիցն 'ի տե-
սակսն. և սահմանքն բացատուեալ լինին 'ի սեռէ
ելով և յայսպիսեաց տարբերութեց: Իսկ ըստ միայն
այլայլուածն՝ այլայլութիւն միայն բաղկանայ, և որ-
պէսքն ունելով փոփոխմունք:

Արդ 'ի վերուստ դարձեալ սկսանելով ճառելի է.
'ի տարբերութեցն են ոմանք անջատականք, և ոմանք
անանջատելիք. քանզի շարժելն և դադարելն, և
ողջ ելն և հիւանդանալն, և որքան միանգամ սոցա
հաւասար ինչ է՝ անջատական է: Իսկ արծուունկն
գոլ, կամ պնչատ, կամ բանական, կամ անասուն,
անանջատականք են. և անանջատականիցն՝ են որ
ըստ ինքեանց են, և են որ ըստ պատահման: Վասն
զի բանականն ըստ ինքեան է մարդոյ, և մահկա-

1 Մի օրին. տարբերել:
2 Մի օրին. այլայլարարակս. այլ օրին. այլարարակսն:

նացուն և հանճարոյն գոլ ընդունականն . Իսկ արծուունկն կամ պնչատն գոլ՝ ըստ պատահման, և ոչ ըստ ինքեան : Արդ որք ըստ ինքեան առլինին՝ 'ի գոյացութե՟ առեալ լինին բանի, և առնեն այլ . իսկ ըստ պատահմանքն ոչ 'ի գոյացութե՟ առեալ լինին բանին, և ոչ առնեն այլ, այլ այլայլակ . և այնք որ ըստ ինքեանց են՝ ոչ ընդունին զառաւելն և զնուազն . իսկ ըստ պատահմանքն թէպէտ և անանջատելիք իցեն՝ սաստկութի՟ և նուազութիւն ընդունին . քանզի ոչ սեռն առաւել և նուազ ստորոգի՝ որոց իցէ սեռ, և ոչ սեռին տարբերութիւքն ըստ որս բաժանեալ որոշեցաւ . զի սոքա են որ զիւրաքանչիւր ուրուք զբանն լցեալ կատարեն . քանզի գոլն իւրաքանչիւր ումեք մի և նոյն՝ ոչ սաստկութի՟ և ոչ նուազութի՟ ընդունել է[1] . բայց առծուունկն գոլ, կամ պնչատ, կամ այլազգ օրինակ ինչ գոյ բերեալ՝ և սաստկանայ և նուազութի՟ բերէ :

Արդ երից տեսակաց տարբերութե՟ց տեսեցելոց, և ոմանց ելոց անանջատականաց, և ոմանց անջատելոց . և դարձեալ անանջատիցն՝ ոմանց ելոց ըստ ինքեանց և ոմանց ըստ պատահման . դարձեալ ըստ ինքեանցն տարբերութե՟ց՝ ոմանք են ըստ որս բաժանեմք զսեռն 'ի տեսակս, և ոմանք ըստ որս բաժանեալքն տեսակարարին, հիզան՝ ըստ ինքեան տարբերուե՟ ամենեցունցն այնպիսեաց՝ կենդանոյն ելոյր, շնչաւոր և զգայուն, բանական և անասուն, մահկանացու և անմահ . զի շնչաւորին և զգայնոյն տարբերութիւն ենթակայական է կենդանոյն գոյացութե՟ . քանզի կենդանւոյն գոյացութի՟ շնչաւոր զգայուն է : Իսկ մահկանացուին և անմահին զանազանութիւն, և բանականին և անասնոյ բաժանեալք են 'ի կենդանոյն զանազանութե՟ց . քանզի 'ի ձեռն սոցա զսեռն 'ի տեսակս բաժանեմք : Այլ այսք բաժանականք զանազանութիւքս՝ սեռիցն շարալրականք լինին, և բաղկացականք տեսակացն . քանզի կատարի կենդանին բանականին և անասնոյն զանազանութե՟ք . և դարձեալ մահկանացուին և անմահին տարբերութի՟ . այլ բա-

[1] Երկու օրին . ընդունելի է :

նականին և մահկանացուին տարբերութիւնք բաղկացականք լինին մարդոյն, և բանականին, և անմահին ա̃յ. իսկ անասնոյն և մահկանացուին՝ անասուն կենդանեաց։ Այսպէս և վերնագոյն գոյացութեան բաժանական եղոյր՝ շնչաւորին և անշնչին զանազանութիւնք, և զգայնոյն և անզգայնոյն՝ շնչաւորն և զգայունն շար առեալ ընդ գոյացութեան՝ բացակատարեցին զկենդանին։

Արդ վասն զի նոյնք՝ որպէս զխարդ առեալք լինին բաղկացականքն, և կամ զխարդ բաժանականք տեսակարարուք ամենեքեան կոչին. և սոցա յաւէտ պէտք են 'ի բաժանմունս սեռիցն և 'ի սահմանս, այլ ոչ ըստ պատահման անանջատից, որչափ ևս առաւել և անջատելոցն։ Զոր և որոշելով ասեն. Տարբերութիւն է՝ որով առաւելու տեսակն քան ըզսեռն. քանզի մարդն քան զկենդանին աւելի ունի զբանականն և զմահկանացուն, զի կենդանին և ոչ մի ինչ ոչ է յայսցանէ. ապա թէ ոչ՝ ուստի՞ տեսակքն կալցին զանազանութիւս. և ոչ զա̃մ զհակակայսն ունի, ապա թէ ոչ՝ նոյնն համանգամայն կալցի զհակակայսն։ Այլ որպէս արժանի առնեն զօրութեամբ զա̃մ ունել զընդդինքեամբն զանազանութիւնս, բայց ներգործութիւն և ոչ մի ոչ. և այսպէս և ոչ յոչնչէ ինչ լիցի. և ոչ հակակայքն ահա առ 'ի նմանէ։ Եւ որոշեն զնա և այսպէս. զանազանութիւն է զյոլովիցն և զտարբերեցելոց տեսակաւ 'ի ներում որպիսիինչէն ստորոգեալն։

Քանզի բանականն և մահկանացուն զմարդոյ ստորոգեալ՝ ներում որպիսի ինչ մարդն ասի, այլ ոչ ներում զինչէ. քանզի զինչն հարցեցելոյ [1], կենդանի, այլ ոչ եթէ բանական և մահկանացու ընտանեբար բացատրեսցուք։ Զի յիրաց 'ի նիւթոյ և 'ի տեսակէ բաղկացելոյ, կամ 'ի համեմատաբար տեսակաւ և նիւթով զբաղկացութիւն ունողացն. որպէս այրաձեռ [2] 'ի նիւթոյ՝ 'ի պղնձոյ, և 'ի տեսակէ՝ 'ի ձեւոյ. այսպէս և մարդն հասարակն և յատուկն 'ի նիւթոյ

1 Մի օրին. հարցիցելոյ. այլ օրինակ. հարցանելոյ։

2 Երկու օրին. այրաձև դէ 'ի նիւթոյ. Ցն. առնապատկեր։

համեմատաբար բաղկացաւ 'ի սեռէ, և 'ի կերպէ տարբերութեն. բայց բոլոր այս կենդանի բանական մահկանացու մարդն ասի, որպէս անդ այրաձեւն:

Բայց ենթադրեն զայսպիսի տարբերութիս և այսպէս. տարբերութիւն է, որ մեկնեն յաւելեալ է զընդ նոյն սեռիւ. զի բանականն և մահկանն ըզմարդն և զձին՝ որ է ընդ նովիմբ սեռիւ կենդանեաւն, մեկնէ: Եւ բացատրեն և այսպէս. տարբերութի է՝ որով իւիք տարբեր է իւրաքանչիւրն. զի ըստ սեռին ոչ ինչ զանազանեցաւ, քանզի կենդանիք և մեք և անասունքն. այլ բանականն առեալ՝ մեկնեաց զմեզ 'ի նոցանէ. և բանական մեք և Աստուածքն, այլ մահկանացուն առեալ՝ մեկնեաց զմեզ 'ի նոցանէ:

Եւ առարտագործելով զյաղագս տարբերութե, մի զդէպն ասել զմեկնողացն զընդ նովիմբ սեռիւ գոլ տարբերութի, այլ որ 'ի գոյն բաղադրեցէ զինչ էրն գոլ և որ իրին է մասն: Զի ոչ եթէ բնաւորեալն նաւել՝ տարբերութի է մարդոյ, թէպէտ և յատուկ մարդոյն է. քանզի ասասցուք 'ի կենդանեացն զոմանս նաւել բնաւորեալ և զոմանս ոչ՝ մեկնելով յայլոցն. այլ բնաւորեալն նաւել՝ ոչ է շարալըականն գոյացուէ և ոչ մասն նորա, այլ ճահողութիւն միայն վասն ոչն գոլոյ որպէս յատկապէս տեսակարարուքն ասացեալք տարբերութիւն: Արդ եղիցին տեսակարարուք տարբերութիք, որք այլ տեսակ առնեն, և որք ներում զինչէրն գոլ յարառոցին: Բայց արդ յաղագս տարբերութե շատ է այսքան:

## Դ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻ

ԶՅԱՏՈՒԿՆ բաժանեն քառակի. քանզի է որ միայնումն իմիք տեսակի պատահեաց, թէպէտ և ոչ ամի. որպէս մարդում բժշկելն կամ երկրաչափելն. և որ ամենայնին պատահեաց տեսակի, թէպէտ և ոչ միայնում, որպէս մարդումն գոլ երկոտանի. և որ միայնումն և ամենայնի և երբէք, որպէս մարդումն

ամենայնի ներածութեան ալեւորել: Եւ չորրորդն յոր֊ժամ 'ի մի վայր եկն ժողովեցաւ, և միայնումն և ա֊մենայնին և միշտ, որպէս և մարդոյ ծիծաղականն. քանզի թէպէտ և ոչ ծիծաղի, այլ ծիծաղական ասի՝ ոչ ահա ծիծաղելովն, այլ բնաւորելովն. և այս միշտ նմա բնակից է. որպէս և ձիոյ խրխնջականն: Քանզի այսոքիկ և իսկապէս յատուկք ասին, զի և հակա֊դարձէ. քանզի թէ ձի՝ խրխնջական, և եթէ խրխնջա֊կան՝ ձի:

## Ե

## ՅԱՂԱԳՍ ՊԱՏԱՀՄԱՆ

ՊԱՏԱՀՈՒՄՆ է՝ որ լինի և բացալինի առանց են֊թակային ապականութեան. և բաժանի յերկուս. քանզի է նորա՝ որ անջատական է, և է՝ որ անանջա֊տելի: Զի քունելն [1] անջատական պատահումն է, իսկ սեաւն գոլ՝ անանջատաբար ագռաւու և եթէով֊պացւոյ պատահեաց: Բայց կար է իմանալ և ընդ֊միտ ածել և ագռաւ սպիտակ, և եթէովպացւոյ 'ի բաց ընկեցեալ զգոյնն առանց ապականութեան են֊թակային: Եւ որոշեն և այսպէս. Պատահումն է՝ որ ներընդունի նոյնում գոլ կամ ոչ գոլ. որ և ոչ սեռ, և ոչ տարբերութիւն, և ոչ տեսակ, և ոչ յատուկ, բայց միշտ նենթակայում ենթակայացեալ: Բացորո֊շելոց ամենեցուն նախագրեցելոցն, և ասեմ՝ սեռի, տարբերութեն, տեսակի, յատկի, պատահման, ձա֊ռելի է զի՞նչ հասարակ առէ սոցա և զի՞նչ յատուկ:

[1] Մի օրին. քնելն:

## Զ

## ՅԱՂԱԳՍ ԱՌԵԻՑ ՀԱՄԱՐԱԿԱՑՆ ԵՒ ՅԱՏԿԻՑ՝ ՍԵՌԻՑՆ, ԵՒ ՏԵՍԱԿԱՑ, ԵՒ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ, ՅԱՏԿԻ ԵՒ ՊԱՏԱՀՄԱՆ

ՀԱՍԱՐԱԿ ամենեցուն զյոլովիցն ստորոգիլ, այլ սեռն զտեսակաց և զանհատից, և տարբերութ՛ի նոյնպէս. իսկ տեսակն զընդդիմքեամբ անհատիցն, և յատուկն զտեսակէն՝ որոյ էն յատուկ և զընդ տեսակաւն անհատիցն. և պատահումն՝ և զտեսակացն և զանհատիցն։ Վասնզի կենդանին զձիոյ և զարջառոյ ստորոգի տեսակացելոց, և զայսմանէ ձիոյ և զայսմանէ արջառոյ անհատիցելոց. իսկ անասունն զձիոյ և զարջառոյ ստորոգի և զըստմամանեց. բայց տեսակն, հիզան՝ մարդ, զըստմամանեցն միայն ստորոգի. և յատուկն՝ որգան ծիծաղականն և զմարդոյ և զըստմամանեցն. բայց սեւաւն և զտեսակէն, զագռաւուց և զըստմամանեցն, պատահումն ելով անանջատելի. և շարժիլն ըզմարդոյ և զձիոյ՝ անջատական ելով պատահումն, այլ նախապետաբար զանհատիցն. բայց ըստ երկրորդ բանի պարունակողացն զանհատս։

## Է

## ՅԱՂԱԳՍ ՀԱՄԱՐԱԿԱՑ ՍԵՌԻ ԵՒ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

ՀԱՍԱՐԱԿԱՑ սեռի և տարբերութ՛ն պարունականն զոլ տեսակաց. քանզի պարունակէ և տարբերութ՛ի զտեսակն, թէպէտ և ոչ զա՛մ, որպէս սեռն. քանզի բանականն թէպէտ և ոչ պարունակէ և զանասունն՝ որպէս կենդանին, այլ պարունակէ զա՛ծ և զմարդ՝ որք են տեսակք։ Որդ որքանք միանգամ ստորոգլին զսեռէն իբր զսեռէ՝ և զընդ նովաւ տեսակացն ստորոգեսցի. և որքան զտարբերութենէն իբր զտարբերութենէ, և զ՛ի նոցանէց տեսակացն ստորո

գեացի . քանզի սեռ է՝ զկենդանութիւն իբր զսեռէ ստորոգի գոյացութեն և շնչաւորին . այլ և զընդ կենդանեաւն տեսակաց զամենեցունց ստորոգելոց այսոքիկ մինչև ցանհատսն : Տարբերութեն ելոյր բանականին՝ ստորոգի իբր զտարբերութենէ բանիւն վարելու, այլ և ընդ բանականիւն տեսակաց ստորոգեսցի վարելն բանիւ : Բայց հասարակ է՝ և բացաբարձեցելոյ կամ սեռին կամ տարբերութեան՝ բացաբառնիլ զընդ նոքօքսն . քանզի ոչ ելոյր կենդանւոյ՝ ոչ է մարդ և ոչ ձի . այսպէս և ոչ ելոյր բանականին՝ ոչ ինչ եղեցի կենդանի որ բանիւ վարի :

## Ը

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻՑ ՍԵՌԻ ԵՒ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

ՅԱՏՈՒԿ է սեռի 'ի վերայ յոլովից ստորոգիլ՝ քան զորմէ տարբերութիւն, և տեսակն, և պատահումն, և յատուկն : Զի կենդանին զմարդոյր և ըզձիոյր և զհաւէ և զօձէ . իսկ քառոտանին 'ի վերայ միայն այնոցիկ՝ որ չորս ոտս ունին . և մարդն միայն 'ի վերայ միայնոց անհատիցն . և խրնջականն 'ի վերայ միայնոյր ձիոյ, և զըստմասնեցն . և պատահումն նմանապէս 'ի վերայ նուազից : Նաև պիտի տարբերութիւնս առնուլ՝ որովք կոտորի սեռն, ոչ զշարալրականս գոյացութեն սեռի : Նաև՝ սեռն պարունակէ զտարբերութիւն կարողութե . քանզի կենդանւոյն՝ որ է սեռ՝ է ինչ որ բանական է, և է ինչ որ անասուն : Նաև՝ սեռն յառաջագոյն է քան զընդ ինքեամբն տարբերութիւնս, վասն որոյ շարաբառնայ զնոսա, այլ ոչ շարաբառնի . քանզի 'ի բաց բարձեցելոյ կենդանւոյն՝ շարաբառնի բանականն և անասունն . իսկ տարբերութիւնքն ոչ ևս 'ի բաց բառնան զսեռն . և զի թէպէտ և ամենեքին 'ի բաց բարձցին, գոյացութի[1] շնչաւոր ըզգայունն իմացեալ լինի՝ որ է կենդանին : Նաև՝ սեռն 'ի ներքում զինչէն . իսկ տարբերութի 'ի ներքում որ-

[1] Այլ օրին . գոյութէ :

պխախինչէն, որպէս ասացեալ է, ստորոգի։ Նոյն զի սեռն մի է իւրաքանչիւրն տեսակի, որգոն մարդոյ՝ կենդանին. իսկ տարբերութիւնքն յոլովք, որգոն բանականն, մահկանացու, մտաց և մակացութեան ընդունակ, որովք քան զայլսն տարբերի։ Նոյն սեռն նմանեաց նիւթոյ և կերպի և տարբերութեան։ Ընկեցեալոց և այլոցն հասարակաց և յատկից՝ սեռի և տարբերութեան՝ շատ է այսքան։

## Թ

## ՑԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՍԵՌԻ ԵՒ ՏԵՍԱԿԻ

Սեռ և տեսակ հասարակ ունին՝ զյոլովիցն, որպէս ասացեալ է, ստորոգիլ։ Արդ առցի տեսակն որպէս տեսակ, այլ ոչ իբր սեռ՝ թէ իցէ նոյն և տեսակ և սեռ։ Նոյն հասարակ է և նոցա նախկինն գոլ՝ զորոց ստորոգինն, և բոլորն ինչ գոլ երկաքանչիւր։

## Ժ

## ՑԱՏԿԻՑ ՍԵՌԻ ԵՒ ՏԵՍԱԿԻ ՎԱՍՆ

ՏԱՐԲԵՐ է՝ որով սեռն պարունակէ զտեսակն, իսկ տեսակքն պարունակին և ոչ պարունակեն ըզսեռն. քանզի յոլով սեռն քան զտեսակն է, և սեռք յառաջագոյն ենթակայանալ պարտին, և կերպացեալք տեսակարարօք[1] տարբերութիւքն բացակատարել զտեսակսն. ուստի և յառաջագոյնք բնութեամբ սեռքն. և շարաբառնան, այլ ոչ շարաբառնին. և տեսակին եզր՝ է և սեռն, իսկ սեռոյն եզր՝ ոչ ամ իրօք է և տեսակն։ Նոյն սեռքն փաղանունաբար զտեսակացն ստորոգին, իսկ տեսակքն զսեռիցն ոչ ևս։ Նոյն սեռքն յոլովմամն ընդխնքեամբքն տեսակաց պարունակութեամբ, իսկ տեսակքն քան զսեռն յոլովմամն իւ-

1 Այլ օրին. փէսաչօփ:

րեանց տարբերութեան ։ Նաև՝ ոչ տեսակն եղիցի սե-ռականագոյն , և ոչ սեռն յատկագոյն ։

## ԺԱ

## ՅԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՍԵՌԻ ԵՒ ՅԱՏԿԻ

Սեռի և յատկի հասարակ է՝ հետևելն տեսակաց · քանզի մարդն՝ կենդանի , և թէ մարդն՝ ծիծաղական · և զոյգ՝ սեռն ստորոգիլ զտեսակաց՝ և յատուկն զիւրոց ընդունողաց · քանզի զոյգ և մարդ և արջառ կենդանի , և Նիկոս և Մելիտոն ծիծաղական ։ Նաև հասարակ՝ և փաղանունաբար ստորոգիլ , սեռն զիւրոց տեսակաց , և յատուկն՝ որոց իցէն յատուկ ։

## ԺԲ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻՑ ՍԵՌԻ ԵՒ ՅԱՏԿԻ

Տարբեր է , զի սեռն նախկին է , և յետոյ յատուկն · քանզի պարտ է գոլ կենդանի , ապա բաժանիլ տարբերութ̃ և յատկաւ ։ Նաև սեռքն զյոլովից տեսակաց ստորոգին , իսկ յատուկն զմիոյր տեսակէ՝ որոյ է յատուկ · և յատուկն հակաստորոգի՝ որոյ է յատուկ · իսկ սեռն ոչ զումքէ հակաստորոգի · քանզի ոչ եթէ որ կենդանի՝ մարդ , և ոչ եթէ որ կենդանի՝ ծիծաղական ։ Նաև նոր միասանգամ ևս՝ յատուկն ա̃մ տեսակին է՝ որոյ է յատուկ և միայնում և միշտ · իսկ սեռն՝ ա̃մի տեսակին՝ որոյ իցէ սեռ , և միշտ , այլ ոչ և միայնում ։ Նաև ևս՝ յատուկքն 'ի բաց բարձեալք ոչ շարաբառնան զսեռն · բայց սեռքն 'ի բաց բարձեալք՝ շարաբառնան զտեսակսն՝ որը իցեն յատուկքն · որոց 'ի բաց բարձելոց՝ և այնք շարաբառնին ։

## ԺԳ

## ՀԱՄԱՐԱԿԱՑ ՍԵՌԻ ԵՒ ՊԱՏԱՀԻՑ ՑԱՂԱԳՍ

Սեռի և պատահման հասարակ՝ զյոլովից, որպէս ասացեալ է, ստորոգիլ, թէ զանջատականացն և թէ զանանջատականացն իցէ։ Այլ քանզի շարժիլն զյոլովից, և սեւն զագռաւուց և զեթովպացւոց և զոմանց անշնչից։

## ԺԴ

## ՑԱՏԿԻՑ ՍԵՌԻ ԵՒ ՊԱՏԱՀԻՑ ՎԱՍՆ

Տարբեր է սեռն պատահմանն, զի սեռն նախկին է քան զտեսակսն. իսկ պատահմունքն քան զտեսակսն յետոյ. քանզի թէ և անանջատելի առցես պատահումն, այլ սակայն նախկին է քան զպատահումն այն՝ որում պատահեացն։ Այս՝ զսեռն զոյգ ընդունողք ընդունին, իսկ պատահմանն ոչ զոյգ. քանզի սաստկութիւն և թուլութիւն ընդունի պատահմանցն ընդունելութիւն, իսկ սեռն ոչ ևս։ Այլ պատահմունքն ՚ի վերայ անհատիցն նախապետաբար ենթակային, բայց սեռքն և տեսակքն բնութեամբ նախկինք քան զանհատսն գոյացութեանց։ Այլ սեռքն՝ ՚ի ներում զինչէն, ստորոգին զընդինքեամբքն. իսկ պատահմունքն՝ ՚ի ներում որպիսիինչէն, կամ զինչ պէտս ունի իւրաքանչիւր. քանզի որպիսի՞ ագռաւն, հարցեալ, ասասցես թէ սեւ. և զի՞նչ պէտս ունի Սոկրատէս, ասասցես, նստի կամ գնայ։

Արդ սեռն որով իւիք այլոցն չորից տարբեր է, ասացեալ է, և պատահեաց այլոցն իւրաքանչիւր տարբերիլ չորից իբրու հինգ ելոց, և միոյ յիւրաքանչիւրեացն տարբերեցելոյ քառակի հինգն, քսան զամենայնսն լինել տարբերութիւնս. այլ մի ըստ միոջէց թուեցելոց, և երկրորդացն միով պակաս ելոյ տար-

բերութիւնք վասն ահա առաւելն լինել։ Իսկ հնգիցն չորս [1] և չորիցն երիւք, և երից երկու, և երկուցն մի՝ տասն ամենայնքն լինին տարբերութիւնք՝ չորք, երեք, երկու, մի։ Վասնզի սեռն ուր ուրեք տարբեր է քան զտարբերութիւն և քան զտեսակն և քան զյատուկն և քան զպատահումն, ասացեալ է։ Իսկ ապա չորք են տարբերութիւնքն. և տարբերութիւն ուր ուրեք զանազանեաց քան զսեռն, ասացեալ է՝ յորժամ որով տարբեր է քան զնա սեռն՝ ասացաւ. և այսուհետև որովք տարբեր է քան զտեսակն և քան զյատուկն և քան զպատահումն, ճառեսցի. և լինին երեք։

Դարձեալ տեսակն որովք տարբեր է քան զտարբերութիւն և քան զսեռն, ճառեցաւ՝ յորժամ ուրանօր տարբերութիւն ել սեռն քան զտեսակն և քան զտարբերութիւն իւր։ Դարձեալ տեսակն և քան զյատուկն և քան զպատահումն ճառեսցի, և լինի երկրորդ։ Արդ այսուհետև ուր տարբեր է յատուկն քան զպատահումն՝ ճառեսցի. քանզի ուր քան զտեսակն և քան զտարբերութիւն և քան զսեռն տարբեր է՝ նախասացեալ է ներնայցն առ նա տարբերութեան։ Արդ քառից ելոց սեռին առ այլսն տարբերութեանց, և երից տարբերութեան, և երկուց տեսակին, և միոյ յատկին առ պատահումն՝ տասն եղիցին ամենայնք. որոց ըդչորսն՝ որք էին սեռին առ այլսն, յառաջեալ ասացաք։

## ԺԵ

## ՎԱՍՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՏԵՍԱԿԻ

Արդ հասարակ տարբերութեան և տեսակի՝ զոյգ ընդունել, քանզի մարդոյ զոյգ ընդունին ըստմասնեայքն մարդիկ զբանականին տարբերութիւն. բայց հասարակ է և միշտն յարագոլ ընդունողացն. քանզի միշտ Սոկրատէս բանական, և միշտ Սոկրատէս մարդ։

[1] 'Ի չորս օրինակս պակասի հնգիցն չորս ։ 'Ի ՑՆ. այլազգ է ։

## ԺԶ

## ՅԱՏԿԻՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՏԵՍԱԿԻ

Յատուկ է տարբերութեան ներում որպիսինչէն ստորոգիլ, և տեսակի 'ի ներում զինչէն. քանզի թէ մարդ իբր որակ ինչ առեալ լիցի, ոչ պարզաբար եղիցի որակ, այլ ըստ որում սեռին առէակեալք տարբերութիւնք ենթակացուցին զնա: Նա՝ զի տարբերութիւն 'ի վերայ յոլովից բազում անգամ տեսակաց տեսանի, որպէս քառոտանին 'ի վերայ յոլովից[1] կենդանեաց տեսակաւ տարբերեցելոցն, բայց տեսակն 'ի վերայ միայնոց այնոցիկ որ ընդ տեսակաւն: Նա՝ զի տարբերութիւն յառաջագոյն այնր՝ որ քան զնա տեսակն է, քանզի շարաբառնայ բանականն՝ բարձեալ զմարդն. իսկ մարդն 'ի բաց բարձեալ՝ ոչ բառնայ 'ի բաց զբանականն՝ ելցյր ա̃յ[2]: Նա՝ տարբերութիւն շարադրի ընդ այլում տարբերութեան. քանզի բանականն և մահկանացուն բաղադրեցաւ յէութակայութիւն մարդոյն: Բայց տեսակ ընդ տեսակի ոչ շարադրի՝ իբր թէ 'ի բաց ծնանել ինչ այլ տեսակ. քանզի ոմն ձի ընդ ումեմն իշոյ եկեալ 'ի միաբանութիւն յիշակիսոյն ծնունդ. բայց և ընդ իշոյ ոչ ևս շարադրեալ բացակատարեսցի իշակիսն:

## ԺԷ

## ՅԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՅԱՏԿԻ

Տարբերութիւն և յատուկ հասարակ ունին ըզզոյգն ընդունել ընդունողացն. քանզի զոյգ բանականքն բանականք, և ծիծաղականքն ծիծաղականք. և միշտն և ամենայնի յարագոյն՝ հասարակ երկոցունց:

1 Այլ օրին. 'ի վերայ այլոց կենդանեաց: 2 Ձն. հրեշտակի:

Վասնզի եթէ կրճատեսցի երկոտանին, այլ առ բնաւորեալն միշտ առի. վասն զի և ծիծաղականն բնաւորելովն ունի զմիշտն, այլ ոչ ծիծաղելովն միշտ։

## ԺԸ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԱՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՅԱՏԿԻ

ՅԱՏՈՒԿ տարբերութեան զի սեռ 'ի վերայ յոլովից տեսակաց ասի բազում անգամ, որգոն՝ բանականն 'ի վերայ այ և մարդոյ. իսկ յատուկն 'ի վերայ միոյ տեսակի՝ որոյ է յատուկ. և տարբերութիւն հետևի նոցա՝ որոց էին տարբերութիւն, այլ ոչ և հակադարձէ. իսկ յատուկքն հակաստորոգին՝ որոց էին յատուկք վասն հակադարձելոյն։

## ԺԹ

## ՅԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԱՏԱՀՄԱՆ

ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ և պատահմանն հասարակ է 'ի վերայ յոլովիցն ասել. և հասարակ և առ անանջատականսն պատահմունս միշտն և ամենայնին առգոլ. քանզի երկոտանին միշտ առէ ագռաւուց, և սևացն գոլ նմանապէս։

## Ի

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻՑ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԱՏԱՀՄԱՆ

ԱՅԼ տարբերին, զի տարբերութիւն պարունակէ և ոչ պարունակի. քանզի պարունակէ բանականն զմարդն և զած[1]. իսկ պատահմունքն յեղանակաւ իմն պարունակեն՝ ընդ յոլովմունսն գոլով. և յեղանակաւ իմն

1 Պակասէր յօրինակին զած. եդաւ ըստ յունին։

պարունակելն՝ ոչն միոյ պատահման ընդունականք գոլ ենթակայքն, այլ յոլովից ։ Նոյն տարբերութիւն անսաստկալի և աննուազելի ․ իսկ պատահմունքն զյաւէտն և զնուազն ընդունին ․ և անխառնք ներհականքն տարբերութիւնքն, և խառնեսցի երբեք ներհականքն պատահմունք ․ և այսոքիկ են հասարակութիւնք և յատկութիւնք տարբերութեան և այլոցն ։ Բայց տեսակն՝ որովք տարբերութեան և սեռոյր տարբեր է, ասացեալ է, յորում ասէաքն ուր ուրեք սեռն և տարբերութիւն տարբեր է յայլոցն ։

## ԻԱ

## ՎԱՍՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՏԵՍԱԿԻ ԵՒ ՅԱՏԿԻ

Տեսակի և յատկի հասարակ է զմիմեանցն հակաստորոգիլ ․ քանզի եթէ մարդ՝ ծիծաղական, և եթէ ծիծաղական՝ մարդ ։ Իսկ ծիծաղական՝ զըստ ծիծաղելն բնաւորեալ առնելի է, բազում անգամ ասացեալ է ։ Նոյն զոյգ՝ առգոյ տեսակն յընդունօղմն, և յատուկքն, որոց են յատուկք ։

## ԻԲ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԱՑ ՏԵՍԱԿԻ ԵՒ ՅԱՏԿԻ

Տարբեր է տեսակ ՚ի յատկէ ․ զի տեսակն կարէ և այլոց սեռ գոլ, իսկ յատուկն այլոց յատուկ գոլ՝ անկարելի ․ և տեսակն նախ ենթակայի քան զյատուկն, բայց յատուկն մակալինի տեսակումն ․ քանզի պարտ է մարդ գոլ, զի ծիծաղական իցէ ։ Նոյն տեսակն միշտ ներգործութեամբ յարէ յենթակայումն ․ իսկ յատուկն երբեք և զօրութեամբ ․ զի մարդ միշտ ներգործութեամբ Սոկրատէս է, բայց ծիծաղի ոչ միշտ, թէպէտ բնաւորեալ է միշտ ծիծաղական գոլ ։ Նոյս, որոց սահմանքն զանազանք, և նոքա զանազանք են ։ Նոյս, տեսակոյն ընդ սեռիւն գոլ, և զյոլովիցն տար-

բերութեանց թուով 'ի ներքում զինչէն ստորոգեալ գոլ, և որքան այսպիսիք են. և յատկի, միայնումն և միշտ և ամենայնի առգոլ։

## ԻԳ

## ՅԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՏԵՍԱԿԻ ԵՒ ՊԱՏԱՀԻ

ՏԵՍԱԿԻ և պատահման հասարակ՝ 'ի վերայ բազմաց ստորոգիլ. և դուն ուրեք այլք հասարակութիւնք՝ վասն կարի շատն 'ի միմեանց մեկուսի կալ պատահումն, և որում պատահեաց։

## ԻԴ

## ՎԱՍՆ ՅԱՏԿԱՑ ՏԵՍԱԿԻ ԵՒ ՊԱՏԱՀԻ

ՅԱՏՈՒԿ երկաքանչիւրոյ, տեսակոյն ներքում զինչ էն ստորոգիլն՝ որոց է տեսակ. իսկ պատահմանն ներքում զինչպիսինէ, կամ որպէս ունի։ Նաև զիւրաքանչիւր գոյացութիւն՝ միոյ տեսակի ընդունելութիւն առնել, և պատահմանց՝ յոլովից, և անջատականաց և անանջատից. և տեսակքն յառաջագոյն իմացեալ լինին պատահմանց՝ թէպէտ և անանջատականք իցեն. քանզի պարտ է գոլ զենթակայն՝ զի նմայն լինիչ պատահիցէ։ Իսկ պատահմունքն վերջասեռք բնաւորեցան, և յետամնական զբնութի ունին, և տեսակին ընդունելութի զոյգ. իսկ պատահմանն՝ թէպէտ անանջատական իցէ՝ ոչ զոյգ. քանզի եթէովպացի զեթէովպացւոյ ունի զգոյնն նուազագոյն և սաստկագոյն ըստ սևութե։ Սոյն ևս յաղագս յատկի և պատահման ասել. քանզի ում յատուկն քան զտեսակ և քան զտարբերութիւն և քան զսեռ զանազան գոյ, ասացեալ է։

## ԻԵ

## ՅԱՂԱԳՍ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՅԱՏԿԻ ԵՒ ՊԱՏԱՀԻ

ՀԱՍԱՐԱԿ յատկի և անանջատական պատահմանն՝ առանց նոցա ոչն ենթակայանալ այնց՝ յորոց վերայ տեսակն. քանզի որպէս 'ի վերայ ծիծաղականին ոչ ենթակայէ մարդ, և ոչ առանց սեւին ենթակայեացի եթովպացին։ Նաև որպէս ամենայնին և միշտ յարագոյ է յատուկն, այսպէս և անանջատական պատահումն։

## ԻԶ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻ[1] ԵՒ ՊԱՏԱՀԻ ՅԱՏԿՈՒԹԵԱՆՑ

ՍԻ՟ զանազանեաց. զի յատուկն միայնում տեսակի յարագոյ է, որպէս ծիծաղականն մարդում. իսկ անանջատական պատահումն, որգոն՝ սեաւն ոչ եթէ-ովպացւոյ միայնում, այլ և ագռաւոյ և արծւոյ առագոյ է, և եբենոսի, և այլոց ոմանց։ Նաև որոյ յատուկն հակադարձի՝ որոյ է յատուկ և զոյգ. իսկ անանջատական պատահումն ոչ հակադարձի։ Նաև յատկացն զոյգ ընդունելութի՟. բայց պատահմանցն է նինչ յաւէտ, և է նինչ նուազ։ Բայց են և այլք հասարակութի՟ք և յատկութի՟ք ասացելոցն. այլ շատ են և սոքա 'ի մեկնութի՟ սոցա և 'ի հասարակութե՟ յանդիմանակացութիւն։

1 Մի օրին. Յատկաց յաւելի. երկու օրին. յատկութեանց յաւելի։

# ԴԱՒԹԻ

# ՓԻԼԻՍՈՓԱՅԻ ՆԵՐԳԻՆԱՑԻՈՅ

## ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՆՆ ՊՈՐՓԻՒՐԻ [1]

ՃԱՆԴԻՐՁԵԱԼՔ հանդերձ Աստուծով սկիզբն առնել առաջիկայ շարադրութեանս, զսովորականն պատմողաց խնդրել զգլուխս՝ ութ գոլ թուով խնդրեսցուք. և են այսոքիկ. Դիտաւորութիւն. Պիտանացուն. Պատճառք մակագրութեան. Հարազատութիւն. Բաժանումն գլխոցն. Կարգն. Վարդապետական յեղանակն, Ընդ ինչ մասն վերաբերութեան: Եւ ոչ եթէ աւելորդ ինչ առնելով զայսոսիկ գլուխս, այլ վասն յօժարագոյն առնելոյ զընթերցողսն: Վն որոյ և զդիտաւորութիւն խնդրեն. վասն զի կարճառօտիւք պարունակեալ ունի յինքեան զամենայն ասացուածն առաջիկայ շարադրութեանս: Յիրաւի և զպիտանացուն խնդրեն, վասն գիտելոյ՝ թէ առ ինչ պէտս մտանէ առաջիկայ շարադրութեանն իրք, եւս յօժարագոյն լինի առ ՚ի յընթեռնուլ: Նմանապէս և զպատճառ մակագրութեան խնդրեն. զի թէպէտ և պիտի մակագրութիւն ձայնակից լինել դիտաւորութեան և կարճառօտիւք զնա պարունակել, այլ է ուրեք որ անհաւատի գոլով՝ պէտս խնդրոյ բացագործէ: Որպէս յորժամ մակագրէ Արիստոտէլ յաղագս ստորոգութեանց, յաղագս մեկնութեան, յաղագս վերլուծութեան.

1 Կայ նա և յունարէն և այս գործք Դաւթի, որպէս սահմանացն, այլ չեւ ևս տպագրեալ:

զորս բազումք ոչ կարող գոն գիտել՝ եթէ որպիսի՛ ինչ դիտաւորութի առաջիկայ շարագրութեն նշանակեն ։ Արդ վասն զի բազում անգամ, որպէս ասացաք, անհաւաստի գոն մակագրութիւնք, վասն այսորիկ պիտանանամք խնդրոյ ։ Յիրաւի և հարազատութիւնն խնդրի ․ վասն զի գիտելով եթէ հարազատ է առաջիկայ շարագրածն, զգիտութեան փառս ունողի վարդապետին յօժարութբ ընթեռնումք ։ Վասն զի բազումք ոչ գոլով կարօղք զճշմարիտն և զսուտն որոշել՝ զպիտանացուն և զանպէտն, լաւ համարին վասն պատուոյ և ձոխութեան վարդապետին յօժարագոյնս ընթեռնուլ, և որպէս սիրելի ինչ վարկանին զհետեւին կարծեաց վարդապետին ։

Այլ դարձեալ վասն այսորիկ խնդրեմք զհարազատութի առաջիկայ շարագրութեց, վասն զի բազում անգամ և խորթք շարագրածութիւնք գտանին ։ Այլ լինին խորթք շարագրածութիւնք ըստ չորից յեղանակաց ․ կամ վասն համանունութե, և այս երկակի ․ կամ վասն համանունութե շարագրողաց, և կամ վասն համանունութե շարագրածաց ։ Այլ վասն համանունութե շարագրողաց ․ որպէս յորժամ գտանին երկուք ոմանք համանունք, և գրէ իւրաքանչիւրոք շարագրածս, ոմն վասն հոգւոյ, և ոմն վասն երկնից ․ յայնժամ վասն համանունութե շարագրողացն ոչ ոք կարող գոյ որոշել, այլ զերկոսեան շարագրածսն միոյ առն կարծէ գոլ ։ Այլ կամ վասն համանունութե շարագրածութեցն, յորժամ գտանին երկուք ոմանք զանազան անուանս ունելով և առնեն շարագրածութիւնս վասն միոյ իրի՝ կամ վասն հոգւոյ կամ վասն երկնից ․ և յայնժամ ոչ ոք կարող գոյ որոշել՝ կամ զնորայն սորա կարծելով, կամ զսորայս նորա ։

Իսկ ըստ երկրորդ յեղանակի ասեն խորթք շարագրածութիւնք՝ որ լինին ՚ի ձեռն պատուասիրութեան, այս ինքն մնափառութե ։ Քանզի ոմանք մնափառք և աներեւելիք գոլով՝ անուամբ վարդապետութեան կամելով յարգել զիւրեանց շարագրածսն, մակագրեն յիւրեանց շարագրածսն զերեւելի ուրուք զանուն վարդապետի ։

Իսկ ըստ երրորդ յեղանակի լինին խորթք շարա-

գրածք վասն ժլատութե[1], որպէս եղև առ Պիսիստրատոսիւ բռնաւորին սիկիլացւոց։ Վասն զի առ նովաւ ցնդաբար[2] բերեցելոց հոմերականաց հագներգութեանց, կամ եղև նմա ժողովել զամենայն տաղս հոմերականս, և վարձս տանողացն բազում խոստանայր տալ։ Վասն որոյ բազումք տաղս ստեղծանելով մատուցանէին բռնաւորին՝ որպէս թէ հոմերոսի իցէ՝ վասն իւրեանց շահիցն։

Իսկ ըստ չորրորդ յեղանակի լինին խորթք շարագրածք վասն բարեմտութե աշակերտաց առ իւրեանց վարդապետսն. գրեն շարագրածս ոմանս, և մակագրեն զանուն վարդապետին. որպէս Պղատոն զՍոկրատայն 'ի վերայ իւրոց շարագրածաց մակագրեաց. և պիւթագորականքն զՊիւթագորին 'ի վերայ ոսկի ասացելոց առակացն։ Արդ վասն խորթ շարագրածութե յիրաւի զհարազատութեն խնդրեմք ամ առաջիկայ շարագրութե։ Բայց տարբորոշին և ճանաչին շարագրածք՝ թէ խորթք իցեն, թէ հարազատք, ըստ նիւթոյն և ըստ տեսակին։ Ըստ նիւթոյն՝ ըստ յարմարման և ըստ բառից. զի յարմարումն և բառք որպէս նիւթ են շարագրութե։ Իսկ ըստ տեսակի՝ ըստ մտածութե։

Յիրաւի և զ'ի գլուխն զբաժանումն խնդրեն. վասն զի գիտելով զգլուխն որպէս զմասունս՝ դիւրապէս և 'ի մասանցն զբոլորն կարող լինիմք գիտել։ Այլ և զկարգ շարագրութեն յիրաւի խնդրեն. զի մի զորս յառաջ պարտ է ընթեռնուլ՝ 'ի վերջէ ընթեռնուցումք և շփոթեմք զկարգ շարագրութեանցն։ Այլև զվարդապետական յեղանակն խնդրելով բարւոք առնեն. զի որպէս ուսանելոց եմք՝ բազում են յեղանակք վարդապետութե։ Յիրաւի և զառինչ մասն վերաբերութե խնդրեն. զի մի որ ինչ 'ի տեսականն վերաբերիցի շարագրած՝ զայն 'ի գործականն կարծիցեմք, և որ 'ի գործականն՝ զայն 'ի տեսականն։

1 Մի օրին. ժլատութէ։

2 Մի օրին. ցնորդաբար։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ ԵՐԿՐՈՐԴ

ՈՒՍԵԱԼՔ զամփոփականն առ 'ի յասել զգլուխս, եկեսցուք և զնոյն գլուխս և յառաջիկայ շարագրութեանս խնդրեսցուք. և նախ և առաջին՝ յաղագս դիտաւորութեան։ Այս պարտ է գիտել, եթէ դիտաւորութիւն առաջիկայ շարագրութեանս՝ և ձայնակցեալ է յոմանց, և տարաձայնեալ։ Այս ձայնակցեալ է, վասն զի ամենեքեան[1] խոստովանիմք, եթէ յաղագս հնգ ձայնիցն պատմէ, սեռի, տեսակի, տարբերութեան, յատկի, պատահման. որպէս և ինքն իսկ յիսկզբան շարագրութեանն պատմէ։ Իսկ տարաձայնեալ է նոյն շարագրութեան դիտաւորութիւնս. վասն զի ոմանք ասեն՝ թէ վասն նոցին իսկ հնգ ձայնիցդ առնու ցուցանելով զառ 'ի նոցանէ պէտս, և ոչ եթէ վասն պիտանացուաց յայլ իրս։ Իսկ այլք ասեն՝ եթէ վասն Արիստոտէլի ստորոգութեանցն առնու զբանս. վասն զի Արիստոտէլի ստորոգութիւքն վասն տասն գոյից վարդապետեն, յորս պիտանացու լինին մեզ այսոքիկ հընգեքին ձայնքս. վասն զի 'ի ձեռն ձայնիցս այսոցիկ յայտնին, վասն այսորիկ յաղագս նոցա առնու։ Այլք ասեն՝ վասն զի պիտանացու են մեզ հինգ ձայնքդ յամենայն իմաստասիրութիւն, վասն այնորիկ առնու յաղագս դոցա։ Զի որպէս քերդողք զտասն բան յութ մասն ժողովեցին, և ճարտասանքն զտասն քաղաքականսն 'ի տասն և 'ի չորս կացմունս յարդարեցին. և որպէս Արիստոտէլ զտասն գոյս 'ի տասն ստորոգութիւնս եգիտ յարադրելոյ, նոյնպէս և տասն իմաստասիրական ձայն հնգիւքս այսոքիւք գտանի յարդարելոյ։ Քանզի տասն իմաստասիրութեան ձայն՝ կամ

1 Մի օրին. ամենեքին։

սեռ է, կամ տեսակ, կամ տարբերութիւն, կամ յատուկ, կամ պատահումն ։ Արդ զի հինգ են այսոքիկ ձայնք, ցուցանի 'ի բաժանմանէ, որ ունի այսպէս և ըստ այսմ օրինակի ։

Ձայն երկակի է, կամ յօդեալ, կամ անյօդ. յօդեալ' որպէս մարդոյ, կամ անյօդ' որպէս անասնոյ և կամ որպէս անշնչիցն հնչմունք ։ Արդ երկաքանչիւրքն դարձեալ երկակի, կամ նշանական, կամ աննշանական. յօդեալ և նշանական' որպէս արծուի և եղջերու, վասն զի յօդեալ է սողոբայիւք, և նշանակեն զարծուիսն և զեղջերուն ։ Իսկ յօդեալ և աննշանական' որպէս ծիակապիկն և եղջերուաքաղն. քանզի այսոքիկ յօդեալ են, բայց նշանակեն և ոչ ինչ ։ Իսկ անյօդ և նշանական. որպէս հաչիւն շան. զի թէպէտ և անյօդ է' նշանակէ զգալուստ մարդոյ կամ գազանի ։ Իսկ անյօդ և աննշանական' որպէս հնչումն քարի կամ փայտի ։ Արդ այսոցիկ այսպէս եղելոց' իմաստասէրք ոչ վասն անյօդ ձայնի, և ոչ վասն յօդեցելոյն և աննշանականի' որպէս քերդողք առնուն 'ի կիր, այլ զյօդեալն և զնշանակեալն առնուն 'ի կիր ։

Իսկ յօդեալն ձայն և նշանական երկակի է, կամ հանուր, կամ մասնական. մասնական' որպէս Սոկրատէս. հանուր' որպէս մարդ, ձի, արծուի. այլ զմասնականն ձայն ոչ առնու 'ի կիր, վասն զի անսրիշք են և անթիւք, այլ զհանրականն առնու 'ի կիր ։ Արդ այս դարձեալ յօդեալս և նշանակեալս և հանրականս երկակի է, կամ եղուտ, կամ մակեղուտ. և ասի մակեղուտ ոմն պատահումն' որ յէութեան ունի զգոյն. և իւրաքանչիւրոք 'ի սոցանէ երկակի գոլ ։ Քանզի մակեղուտն երկակի գոյ, կամ միոյ բնութեան պատկանի, կամ բազմաց. և եթէ բազում բնութեան պատկանի' պատահումն լինի. որ է երկակի' անջատական և անանջատական. անջատական' որպէս նստել, գործել. և անանջատական' որպէս արծուունկն, պնչատ, որ բազում բնութեանց պատկանին ։ Իսկ եթէ միոյ բնութեան պատկանի, յատուկ լինի' որ է մակեղուտ. որպէս յորժամ մարդոյ ասեմք յատուկ գոլ զծիծաղականն ։

Ասի դարձեալ և եղուտն երկակի, քանզի կամ

միոյ բնութեան պատկանի, կամ բազմաց։ Նաեւ եթէ բազում բնութեանց պատկանաւորի, կամ 'ի զինչէութիւն ստորոգի, եւ լինի սեռ. քանզի հարցեալ՝ զի՞նչ է մարդ, կենդանի՝ պատասխանեմք, որ բազում բնութեանց պատկանաւորի։ Նաեւ կամ 'ի ներ որպիսութիւն ստորոգի, եւ լինի տարբերութիւն. քանզի հարցեալ՝ թէ որպիսի՞ ինչ է մարդ, զտարբերութիւնն պատասխանեմք, բանական. եւ այս բազում բնութեանց պատկանի։ Նաեւ կամ դարձեալ 'ի ներ զինչէութիւն ստորոգի, եւ լինի տեսակ. քանզի հարցեալք՝ թէ զի՞նչ է Սոկրատէս, ասեմք՝ թէ մարդ, զտեսակն պատասխանատրեմք, որ միում բնութեան պատկանաւորի. քանզի միայն մարդ ասի մարդ։ Նաեւ կամ 'ի ներ որպիսէութիւն ստորոգի, եւ լինի եղուտ յատուկ. որպէս յորժամ հարցեալք՝ որպիսի՞ ինչ է մարդ, պատասխանեմք՝ մտաց եւ մակացութեան ընդունակ, որ է յատուկ մարդոյ։

Արդ հինգ ելոց ձայնից, որպէս ցուցաք 'ի բաժանմանէ, այս ինքն սեռ, տեսակ, տարբերութիւն, յատուկ, պատահումն, հինգ են եւ յեղանակ ստորոգութեանց, որ յետ այսոցիկ ձայնից բերին[1]՝ եթէ է, զի՞նչ է, որպիսի՞ ինչ է, վասն է՞ր, եւ առ որպիսի՞ ինչ ունի։ Արդ սեռ եւ տեսակ՝ 'ի ներ զինչէութիւն ստորոգին. իսկ տարբերութիւն եւ եղուտ յատուկն՝ 'ի ներ որպէսինչէութիւն ստորոգին։ Իսկ մակեղուտ յատուկն եւ անանջատական պատահումն՝ նմանապէս յորպիսիինչէութիւն[2]. իսկ անջատական պատահումն՝ 'ի զիարդէութիւն։

Նաեւ պարտ է գիտել, թէ զի՞նչ եղուտն՝ եւ զի՞նչ մակեղուտն։ Նաեւ եղուտ է, որ առընթեր գոլով գոյացուցանէ, եւ ոչ գոլով ապականէ, որպէս բանականն. եւ մակեղուտ է, որ ոչ գոլով ոչ ապականէ, եւ գոլով՝ ոչ գոյացուցանէ, որպէս սեաւն, սպիտակն։

1 Մի օրին. ստորոգին եւ բերին։
2 Երկու օրին. նմանապէս որպէս յինչէութիւն։

## ԸՆԴ ԱՅՍՈՐԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՅ ՊՐԱԿՔ

### ՊՐԱԿՔ Գ

ՈՒՍԵԱԼՔ թէ զի՞նչ է դիտաւորութիւն առաջիկայ շարադրութեանս, եկեսցուք և 'ի պիտանացուն: Այլ գիտելի է, եթէ պիտանացուն առաջիկայ շարադրութեանս եռակի է. քանզի պիտանացու լինի մեզ առաջիկայ շարադրութիւնս և 'ի ստորոգութիւնս Արիստոտէլի և յամ իմաստասիրութիւն և 'ի տրամաբանական հնարս: Այլ 'ի ստորոգութիւնս Արիստոտէլի պիտանացու լինի, վասն զի 'ի ստորոգութիւնս ուսուցանէ զմեզ Արիստոտէլ յաղագս տասն սեռականագոյն սեռիցն. և ուսուցանէ և առաջիկայ շարադրութիւնս թէ զի՞նչ է սեռ:

Այլ դարձեալ սեռք՝ տեսակացն են սեռք, և 'ի ձեռն տարբերութեանց բաժանին 'ի տեսակս. որպէս կենդանին սեռ գոլով տեսակաց՝ 'ի ձեռն տարբերութեանց, այս ինքն բանականին և անբանին, բաժանի 'ի տեսակս: Իսկ առաջիկայ շարադրութիւնս ուսուցանէ զմեզ, եթէ զի՞նչ է տեսակ, և զի՞նչ զանազանութիւն: Այլ դարձեալ, զի սեռականագոյն սեռք ոչ ընդունին զսահմանս. վասն զի սահման 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութեանց բաղկանայ. իսկ սեռականագոյն սեռք ոչ ունին այլ սեռականագոյն սեռ՝ զոր պարտ է դնել 'ի սահմանս նոցա. և վասն այսորիկ ոչ սահմանին, այլ 'ի ձեռն յատկի յայտնին: Ուսուցանէ մեզ և առաջիկայ շարադրութիւնս՝ եթէ զի՞նչ յատուկ: Այլ դարձեալ, վասն զի յոլովք 'ի տասն սեռականագոյն սեռիցն պատահմունքն են, որպէս որակն և քանակն, և այլք ամ. իսկ առաջիկայ շարադրութիւնս ուսուցանէ մեզ՝ զի՞նչ է յատուկ, և զի՞նչ պատահումն:

Արդ այսպէս ցուցաք՝ եթէ զիա՞րդ պիտանացու է առաջիկայ շարադրութիւնս մեզ 'ի ստորոգութիւնս

Արիստոտէլի ։ Ցուցցուք և եթէ զիա՛րդ յամ իմաստասիրութիւնս պիտանացու է մեզ առաջիկայ շարագրութիւնս . և ցուցցուք այսպէս . եթէ ստորոգութիւնքն Արիստոտէլի յամ իմաստասիրութիս պիտոյանան . վասն զի ներածութիւք[1] են ամ իմաստասիրութե , վասն զի նոքօք ուսանիմք զամ զգոյս ։ Արդ եթէ ստորոգութիւքն Արիստոտէլի յամ իմաստասիրութիւնս պիտանանան , իսկ 'ի ստորոգութենս Արիստոտէլի պիտանանայ առաջիկայ շարագրութիս , ապա ուրեմն և յամ իմաստասիրութիս պիտանանայ առաջիկայ շարագրութիւնս ։

Այլ և 'ի տրամաբանական հնարս՝ որպէս ասացաք , պիտանացու գոյ ։ Բայց նախ և առաջին ասացուք, թէ վասն էր ասին տրամաբանական հնարք, և ապա թէ քանիք ինչ իցեն , և ապա զկարգն նոցա . և այնպէս ապացուցցուք՝ եթէ զիա՛րդ առաջիկայ շարագրութիս պիտանացու է 'ի տրամաբանական հնարս ։ Այլ գիտելի է , եթէ տրամաբանական այն է , յորժամ ոմն հարցանէ, և ոմն ասէ ։ Այլ 'ի տրամաբանելն երևին չորք այսոքիկ հնարք . քանզի էր ինչ , որ բաժանէին . և էր ինչ , որ սահմանէին. և էր ուրեք, որ ապացուցի պիտանանայրն , և վերլուծութե ։ Վասն որոյ չորք գոն տրամաբանական հնարք , և են այսոքիկ . բաժանականն , սահմանականն , ապացուցականն, և վերլուծականն ։ Այլ է գործ բաժանականին՝ առնուլ զսեռս և բաժանել 'ի տեսակս . իսկ սահմանականին՝ սահմանել զիւրաքանչիւրոք 'ի գոյից. իսկ ապացուցականին՝ ցուցանել և հաւատարմացուցանել այնպէս գոլ, որպէս էն ։

Իսկ հաւատալն եռակի գոյ , կամ 'ի հանրականացն զմասնականն ցուցանել և հաւատարմացուցանել , կամ 'ի մասնականացն զհանրականն , կամ 'ի զուգէն զզոյգն ։ Արդ յորժամ 'ի հանրականէն ըզմասնականն ցուցանէ և հաւատարմացուցանէ , իսկապէս ապացուցական կոչի . որպէս յորժամ կամելով ցուցանել՝ եթէ մարդ ներանձնական է՝ այս ինքն շնչական , յընթանրականացն զայսոսիկ ցուցանեմք և

[1] Մի օրին . Ներֆուրծութեն ։

հաւատարմացուցանեմք, եթէ մարդն կենդանի է. ա-մենայն կենդանի շնչական է, ապա ուրեմն և մարդն շնչական է։ Եւ յորժամ մասնականաւն զընթա-նուրն հաւատարմացուցանեմք, այնպիսին մակածա-կան կոչի. որպէս յորժամ կամելով զոք հաւատա-ցուցանել՝ թէ ա̃մ կենդանի զներքին կլափն շարժէ, ՚ի մասնականացն զայսոսիկ ցուցանեմք ասելով թէ վասն զի մարդ և ձի զներքին կլափն շարժեն, ապա ուրեմն ա̃մ կենդանի զներքին կլափն շարժէ։

Իսկ յորժամ հաւասարաւն զհաւասարն ցուցա-նեմք, յայնժամ յարացոյց կոչի. որպէս յորժամ ոք կամելով ոչ տալ Դիոնիսի մարմնապահս՝ ասելով. Արք աթենացիք, ոչ տացուք Դիոնեսի թիկնապահս. վասն զի և Պիսիստրատոս առեալ բռնացաւ։ Եւ պարտ է գիտել, եթէ որ համրականաւն զմասնա-կանսն հաւատարմացուցանէ, ա̃մ իրօք ճշմարիտ է. և նա է իսկապէս յեղանակ ապացուցութեան. որպէս զմարդ՝ մասնական գոլով, յորժամ կամիմք ցուցա-նել թէ շնչական է, համրականաւն՝ այս ինքն կենդա-նեաւն ցուցանեմք ասելով թէ մարդ կենդանի, և ա̃մ կենդանի շնչաւոր է, ապա ուրեմն և մարդ շըն-չաւոր է։

Իսկ յորժամ մասնականաւն զընդհամրականսն հաւանեցուցանեմք, ոչ է ամենևին ճշմարիտ. քան-զի յասելն՝ թէ վասն զի մարդ և ձի զներքին կլափն շարժեն, և ասել՝ թէ ապա ուրեմն և ամենայն կեն-դանի զներքին կլափն շարժէ, ոչ է ճշմարիտ. քան-զի Կոկորդիլոս գազանն և Փիւնիկն հաւ ոչ շարժեն զներքին կլափն, այլ զվերինն։ Եւ զի արդեօք ոչ է ճշմարիտ մասնականաւն զընթամրականսն հաւատա-ցուցանել, վասն զի մասնականքն անթիւք և ան-բաւք են, և ոչ կարեն յեզր ելանել, վասն այնորիկ ոչ գոն ճշմարիտ։ Այլ և ոչ յորժամ հաւասարաւն զհաւասարն հաւատացուցանեմք [1], գոյ ճշմարիտ. քանզի յասելն՝ թէ մի տացուք Դիոնեսի մարմնա-պահս, վասն զի և Պիսիստրատոս առեալ բռնացաւ,

1 Մի օրին. հաւատարմացուցանեմք։

ոչ է ճշմարիտ. քանզի ոչ եթէ յորժամ Պիսիստրատոս բռնացաւ, և Պիմենէսիոս բռնացաւ:

Իսկ վերլուծականին գործ քակտելն ինչ յայնս՝ յորոց և գոյացեալ գոյ. որպէս յորժամ առնլով ոք զմարդ՝[1] քակտէ զնա յոտս և 'ի ձեռս և 'ի գլուխս: Եւ զայսոսիկ դարձեալ 'ի մարմինս և յոսկերս և 'ի ջիլս, յերակս և 'ի նեարդս. և զսոսա դարձեալ 'ի չորս տարերս. և զտարերս 'ի նիւթ և 'ի տեսակ, յորոց և բաղկացեալ գոյ:

Արդ ասասցուք և վասն դասաւորութեան նոցա: Եւ պարտ է գիտել, եթէ նախադաս է բաժանականն քան զսահմանականն. վասն զի և բաժանումն յառաջագոյն է քան զսահման. վասն զի ա̃մ ոք առնլով զպիտանացուն 'ի բաժանմանէ բացակատարէ զսահմանն: Իսկ սահմանականն նախադաս է ապացուցականին. վասն զի որպէս ասէ Արիստոտէլ, սկիզբն ապացուցութեան սահման է. վասն զի ապացոյց համապազ զբնութիւն ենթակայ իրին յանդիման կացուցանէ, այլ և սահման զբնութիւն ենթակայ իրին յայտնէ: Իսկ վերլուծականն 'ի վերջոյ դասեցաւ, վասն զի հակադարձապէս ունի վերլուծութիւն առ բաժանումն. քանզի բաժանումն 'ի պարզագունէն սկսանի, և 'ի շարադրեալսն երթեալ յանգի. իսկ վերլուծականն 'ի շարադրելոցն սկսանելով 'ի պարզագոյնսն երթեալ յանգի: Իսկ առ սահմանականն և ապացուցականն հակադարձի, վասն զի նոքա զբազում բնութիւնս մի առնեն. իսկ վերլուծութիւն զմին 'ի բազումս բաժանէ:

Զայսոսիկ գիտելով եկեսցուք և ցուցցուք, եթէ զիարդ և առաջիկայ շարագրութիւնս և յայսոսիկ պիտանացու է: Եւ պարտ է գիտել, եթէ 'ի բաժանականն պիտանացու գոյ այսպէս. զի որպէս է տեսանել յայլսն զերիս զայսոսիկ, որ բաժանէն՝ և որ բաժանին, և յորս բաժանումն լինի. որպէս հիւսնականն զաղօցն և զփայտն և զմասունսն յորս փայտն բաժանեցաւ, նոյնպէս և աստանօր՝ է որ բաժանէն և է որ բաժանին և է յորս բաժանումն լինի: Արդ որ բաժանին աստ՝ սեռ է, և որ բաժանենն՝ բաղկացուցիչ

[1] Մի օրին. պտ. մարդ:

զանազանութիւնք. իսկ յորս բաժանումն եղև՝ այսո-քիկ տեսակք են ։

Արդ վասն զի բաժանումն 'ի սեռէ բնաւորեցաւ լինել 'ի տեսակս՝ 'ի ձեռն բաղկացուցիչ զանազանու-թեանց, պիտանացու է մեզ առաջիկայ շարագրու-թիւնս. վասն զի ուսուցանէ՝ եթէ զինչ է սեռ, և զինչ տեսակ, և զինչ բաղկացուցիչ զանազանութիւնք ։ Իսկ 'ի սահմանականն պիտանացու է, վասն զի սահման 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութեանց բաղկա-նայ. որպէս սահման մարդոյ՝ կենդանի բանաւոր, մահկանացու, մտաց և հանճարոյ ընդունակ ։ Այս է կենդանին սեռ, իսկ այլքն բաղկացուցիչ զանազա-նութիւնք. զորս ուսուցանէ մեզ առաջիկայ շարագրու-թիւնս՝ եթէ զինչ է սեռ և զինչ բաղկացուցիչ զանա-զանութիւնք ։

Իսկ եթէ 'ի սահմանականն պիտանացու է, ապա և յապացուցականն. վասն զի որպէս յառաջագոյն ասացաք՝ սկիզբն ապացուցի սահմանականն է ։ Իսկ 'ի վերլուծականն պիտանացու է. վասն զի ամենայն բնա-ւորական իր 'ի նիւթ և 'ի տեսակ վերլուծանի՝ յորոց և բաղկացեալ գոյ, իսկ համեմատի սեռ նիւթոյ ։ Զի որպէս նիւթ ամենայն բնաւորականացն առհասա-րակ է, նոյնպէս և սեռ ամենեցուն ընդ նովաւ տե-սակացն հասարակաց է. իսկ բաղկացուցիչ զանազա-նութիւնք՝ տեսակի ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԱՌԱՋԻԿԱՅ ՊՐԱԿՔ

## ՊՐԱԿՔ Դ

ՈՒՍԵԱԼՔ զդիտաւորութիւն և զպիտանացու առա-ջիկայ շարագրութեանս, ասասցուք և զպատճառ մա-կագրութեանն ։ Այս գիտելի է, զի մակագրեալ է առա-ջիկայ շարագրութիւնս “ Պորփիւրի ներածութիւն ”, Պորփիւրի փիւնիկեցոյ աշակերտի Պղատոնի լիկո-

պօլսեցւոյ. իսկ Նիկոպօլիս¹ յԷգիպտոս է. վասն որոյ ասացեալ է, Եթէ ոչ յոքունս եգիպտացիս, բայց յորժամ ծնանի՝ մեծ ծնանի: Վասն որոյ ասէ Պորփիւրիոս, եթէ Պղուտոնիոս մերային քատա-կեալ գոյր ամաչեցեալ, եթէ զիւրդ արդեօք 'ի մարմնում իցէ. և կամեցելոյ ոմանց յարուցանել նմա պատկեր՝ արգել ասելով. Շատ է ինձ՝ որ 'ի բնութենէս գոյ ստուերակերպութի, այլ ոչ ստուերակերպութեան ստուերակերպ կանգնել:

Ուսեալք յաղագս Պորփիւրի թէ ուստի, ուստի Յամղիքոս, յաղագս որոյ ասաց Պիւթիա, թէ Աստուածային Ասորին և բազմուսումն փիւնիկեցին: Բազմուսումն փիւնիկեցի զՊորփիւրիոս ասելով, և ածային ասորի զՅամղիքոս. վասն զի ածաբանութե միշտ պարապէր: Իսկ ներածութիւն մակագրեցաւ, վասն զի նա է որ 'ի ներքս ածէ զմեզ յամ իմաստասիրութի. քանզի ուսուցանէ յաղագս հինգ ձայնիցն՝ սեռի, տեսակի, տարբերութե, յատկի, պատահման, յորս ամ իմաստութե բարբառք վերաբերին: Նաև յիրաւի ներածութի գրեցաւ, և ոչ յաղագս ներածութե. զի ներածութիւն իսկապէս ինքն իսկ զիրն նշանակէ. իսկ յաղագս ներածութե՝ որպէս թէ այլ ինչ իր յաղագս նորա պատմէ:

Եկեսցուք և 'ի հարազատն. և գիտելի է՝ եթէ 'ի բազում իրաց ցուցանի հարազատ առաջիկայ շարագրութիս Պորփիւրի: Նախ և առաջին անդուստ իսկ 'ի նախերգանէն, յորում գրեալ է « Եղյր հարկաւորի, Քրիսաւորիէ »: Իսկ Քրիսաւորիս հիպատոս էր 'ի Հռոմ, որում զառաջիկայ շարագրութիս առձայնեաց, զորոյ յիշատակէ և յայլս իւր շարագրութիս: Նաև երկրորդ, վասն զի հոգ տանի հաւաստութե, որ է առանձին Պորփիւրի. վասն զի գրելոց յեղանակաց հաւաստութե, որպէս ուսանելոց եմք 'ի նախերգանի նորին շարագրութե, դա ինքն Պորփիւրիոս ամ հաւաստութե հոգ տանի. ընդ այսոսիկ և հարազատդ: Ընդ որս ասասցուք և զդասաւորութիւն նորին շարագրութե, և գիտելի է, զի ստո-

¹ Մի օրին. Նիկոպօլսեցւոյ: Նիկոպօլիս.

րոգութիւնքն Արիստոտէլի պիտոյ են մեզ յամենայն իմաստասիրութեան[1]։ Իսկ ներածութիւնքս Պորփիւրի պիտանանան մեզ ՚ի ստորոգութիւնքն Արիստոտէլի, որպէս ՚ի պիտանացութիւն ուսաք. ապա ուրեմն պարտ է զառաջիկայ շարագրութիւնս Արիստոտէլի շարագրութեանցն նախադասել. յետ որոյ ասասցուք զ՚ի գլուխսն բաժանումն։ Այս գիտելի է, զի յերկուս գլուխս բաժանի առաջիկայ շարագրութիւնս. յառաջնումն ուսուցանէ զմեզ՝ եթէ զինչ իւրաքանչիւրոք է ՚ի հինգ բարբառոցդ. իսկ յերկրորդումն զհաղորդութիւն դոցա առ միմեանս և զզանազանութիւնս։

Ասասցուք և զվարդապետական յեղանակն. և գիտելի է, եթէ չորից ելոց վարդապետական յեղանակաց՝ զչորեսինն ՚ի կիր արկանէ, և բաժանականին՝ յորժամ բաժանէ զհինգ բարբառսդ, և սահմանականին՝ յորժամ սահմանէ զնոսա, և ապացուցականին՝ յորժամ ցուցանէ զիւրաքանչիւրոք ՚ի նոցանէ։ Այլ և զվերլուծականն արկանէ ՚ի կիր՝ յորժամ զիւրաքանչիւր բարբառոյ ստորագրութիւն ՚ի բառս լուծանէ, և հաստատեցուցանէ զիւրաքանչիւրոք ՚ի բառից։

Յետ որոյ ասասցուք՝ եթէ յինչ մասն իմաստասիրութեան վերաբերի առաջիկայ շարագրութիւնս։ Այս գիտելի է՝ թէ ՚ի բանական մասն իմաստասիրութեան վերաբերի առաջիկայ շարագրութիւնս։ Իսկ բանականն՝ եթէ մա՞սն է իմաստասիրութեան, և եթէ գործի, ՚ի ստորոգութիւնսն Արիստոտէլի ուսցուք։

[1] Մի օրին. նախադասին ամ իմաստասիրութեան։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՇԱՐԱԳՐՈՒԹԻՒՆՍ

## ՊՐԱԿՔ Ե

«ԳՈԼՈՎ հարկաւորի, Քրիսաւորիէ»: Յանկումն ունելով նախերգանաց՝ յիրաւի կարծեցեալ. քանզի ամ ինչ յանկումն ունել բնաւորեցան՝ որք ըստ մեզս են, բայց միայն յառաքինութեանց. փութապէս զառաջիկայ հանդէս զգեցցուք, և եկեալք ՚ի նոյն ինքն ՚ի ներածութենն պատմութե, որ անդուստ իսկ ՚ի սկզբանն զերիս զայսոսիկ աւանդեաց՝ զգիտաւորութն, զպիտանացուն, զվարդապետականն յեղանակն: Եւ երկաքանչիւրոցս այսոցիկ առ ինքն յարաքարշելով դիտաւորութեն ասեմ և պիտանացուին, զընդ մէջ ճանապարհն ունելով Պորփիւրիոս՝ խառնեաց զերկաքանչիւրոց զգիտաւորութե և զպիտանացուն. և յերկուս բաժանեալ զպիտանացուն՝ ՚ի մէջ նոցին եդ զգիտաւորութե: Եւ ասի դիտաւորութե յարաքարշել զմեզ առ ինքն. վասն զի ըստ Պղատոնի մի է սկիզբն ճշմարիտ խորհելոյ՝ գիտել յաղագս ո՛յր է մտածութին. ապա թէ ոչ՝ հարկ է յամենայնէն վրիպել. քանզի որ զգիտաւորութի առաջիկայ շարագրութեն անգիտանայ, և ոչ ասացելոցն այնպիսին հետևիլ կարող գոյ:

Իսկ պիտանացուն ասի յարաքարշել զմեզ առ ինքն: Վասն զի գտանելով զպիտանացուն առաջիկայ շարագրութե՝ սքանչանամք. իսկ սքանչանք սկիզբն են իմաստասիրութե: Եւ զի սքանչանք սկիզբն են իմաստասիրութե՝ աստուստ պարտ է գիտել. վասն զի թէ ոչ սքանչանայ ոք՝ և ոչ ՚ի խնդիր անկանի և ոչ իմաստասիրէ. որգոն՝ յորժամ տեսանելով ոք զծիածանն, և ոչ սքանչանայ՝ եթէ զինչ իցէ և ուստի բաղկանայցեն խառնուածք նորին երփն երփն գունոցն, ոչ անկանի ՚ի խնդիր. իսկ եթէ սքանչանայ, ապա և ՚ի խնդիր անկանի, ապա և իմաստասիրել ձեռնարկէ: Ապա

ուրեմն պարտ է 'ի պիտանացուէն սկիզբն առնել. վասն զի որպ ասացաք, 'ի ձեռն սքանչմաննա է սկիզբն իմաստասիրութե։

Արդ երկաքանչիւրոցս այսոցիկ զմեզ առ ինքն յառաջարկելով դիտաւորութեն և պիտանացուին, զընդ մէջ ճանապարհն ունելով Պորփիւրիոս խառնեաց զերկոսին։ Եւ եռակի ելոյ պիտանացուին՝ նախ դնէ զառաջին մասն պիտանացուին, ասելով թէ « Եւ 'յառ'ս Արիստոտելի ստորոգութեցն վարդապետութի »։ Եւ յետ առաջին մասին պիտանացուին 'ի վերայ ածէ զգիտելն՝ եթէ Զինչ է սեռ, և զինչ տարբերութի, զինչ տեսակ, զինչ յատուկ, զինչ պատահումն՝ » որ է դիտաւորութի, այս ինքն եթէ յաղագս հնգիցս այսոցիկ է դիտաւորութի։

Իսկ ասելն՝ թէ « Ի սահմանացն բացատրութի, և ամենևին յաղագս բաժանման և ապացուցութե », զերրորդ մասն պիտանացուին ուսուցանէ, եթէ և 'ի տրամաբանական հնարս պիտանացու գոյ։ Իսկ ասելովն զեւն շաղկապ՝ թէ « Եւ յԱրիստոտելի ստորոգութեցն՝ վարդապետութի », յայտ արար թէ ոչ միայն առ 'ի գիտել զԱրիստոտելի ստորոգութիւն պիտանացու է, այլ և յամենայն իմաստասիրութի՝ որ է երկրորդ մասն պիտանացուին։ Դարձեալ ասելն՝ թէ « Եւ 'ի սահմանացն բացատրութի », ոչ միայն զերրորդ մասն պիտանացուին յայտ արար, այլ և զվարդապետական յեղանակն. վասն զի ամենայն վարդապետական յեղանակ՝ ըստ չորից տրամաբանական հնարից եղանի։

Բայց խնդրելի է՝ թէ զի՞ նախ զսեռ դասեաց, երկրորդ զտարբերութի, երրորդ զտեսակ, չորրորդ զյատուկ, հինգերորդ զպատահումն։ Բայց յառաջ քան զայս ասասցուք՝ թէ յէակացն ոմանք մասնականք են և ոմանք հանուրք։ Արդ մասնականացն և ենթալուսնեացն ոչ ինչ միշտ և նոյնպէս բնաւորեցան գոլ. իսկ հանրականքն միշտ և նոյնպէս բնաւորեցան գոլ։ Իսկ արդ զայս գիտելով իմաստասիրութի ըստ նմանութե բնութե զհանրականօքն եղանի, որք միշտ և նոյնպէս բնաւորեցան գոլ։ Իսկ մասնականքն որ կոչին անհատք՝ ոչ գոլով միշտ և նոյնպէս, վասն այնորիկ ոչ նոքօք բաղկանայ իմաստասիրութի. և ասէին մասնա

կանք Սոկրատէս, Պղատոն, Ալկիբիադ, որք և ան-հատք կոչին ։ Իսկ անհատք կոչին, վասն զի բաժա-նելով ոչ կարեն պահել զառաջին տեսակն, քանզի որ-պէս բոլոր 'ի մասունս բաժանի. զի ամենայն բոլոր 'ի մասունս բաժանելով ոչ պահէ զառաջին տեսակն ։

Արդ վասն զի ընդհանրականքն պատուականա-գոյնք են, որպէս միշտ և նոյնպէս գոլով, վասն այսորիկ նախ և առաջին զսեռ դասեաց Պորփիւրիոս՝ որպէս ընդ-հանրական քան զտարբերութի և զտեսակ։ Քանզի որ ինչ բանական է՝ որ է տարբերութի, նա և կենդանի է՝ որ է սեռ. այլ ոչ՝ որ ինչ կենդանի, նա և բանական։ Արդ վասն զի ընդհանրականագոյն է սեռ քան զտարբե-րութի, և վասն նորին և պատուականագոյն, վասն այ-սորիկ նախադասեցաւ ։ Իսկ զտարբերութի նախադա-սեաց տեսակի վասն նորին պատճառի. զի տարբե-րութի հանրականագոյն է քան զտեսակ. վասն զի որ ինչ մարդ է՝ որ է տեսակ, նա և բանական՝ որ է տար-բերութի. այլ ոչ՝ որ ինչ բանական, նա և մարդ. վասն այսորիկ նախադասեցաւ տարբերութի քան զտեսակ։

Իսկ զտեսակն նախադասեաց յատկի և պատահ-ման, վասն զի տեսակ եղուտ է. իսկ յատուկ և պա-տահումն՝ մակեղուտ. և պատուականագոյն է ե-ղուտն քան զմակեղուտն ։ Վասն որոյ տարակուսեն ոմանք ասելով, թէ և յատուկ՝ է ուրեք որ գտանի եղուտ՝ որպէս մտաց և հանճարոյ ընդունակ, վասն է՞ր նախադասեաց զտեսակն քան զեղուտ յատուկն ։ Առ այս տարակուսութի լուծանելով ասեմք, թէ վասն զի տեսակ համապազ եղուտ է. իսկ ոչ համապազ եղուտ է յատուկն՝ այլ և մակեղուտ, վասն այսորիկ նախադասեաց զհամապազ եղուտն ոչ համապազ եղ-տին ։ Իսկ զյատուկն նախադասեաց պատահման, վասն զի յատուկ՝ է ուրեք զի եղուտ գտանի, որպէս մտաց և հանճարոյ ընդունակն. իսկ պատահումն՝ համապազ մակեղուտ ։ Արդ այսոքիկ և վասն դա-սաւորութե հինգ բարբառոցդ ։

Այլ դարձեալ ըստ այլ յեղանակի նախադասի յա-տուկ պատահման, թէպէտ և պատահումն հանրակա-նագոյն է. վասն զի յատուկն անդրադարձի առ այն՝ որոյ է յատուկ, որգոն որ ինչ մարդ՝ նա ծիծաղա-

կան, և որ ինչ ծիծաղական՝ նա և մարդ։ Իսկ պատահումն ոչ անդրադարձի. քանզի որ ինչ ագռաւ՝ նա և սեաւ, այլ ոչ որ ինչ սեաւ՝ նա ագռաւ։

## ԸՆԴ ԱՅՍՄՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՊՐԱԿՔ Զ

«ԳՈԼՈՎ կարեւոր Բրխաւորիէ»։ Աստուստ տարակուսեն ոմանք, թէ ընդէ՞ր զգոլն կարեւորին նախադասեաց։ Առ որս ասեմք, թէ վասն զի պարտ է սկիզբն 'ի հանրականագունիցն առնել, զնոյն խորհելով և Պորփիւրիոս՝ 'ի գոյէն սկիզբն արար. իսկ կարեւորն բազմապատկաբար ասի։ Այլ պարտ է գիտել՝ եթէ երկուք այսոքիկ յարակայանան միմեանց՝ բարին և պիտանացուն։ Իսկ պիտանացուն բաժանի յերկուս՝ 'ի հոմանունն բարին և 'ի կարեւորն. և բարի այն է՝ որ վասն ինքեան է ընտրելի, որգոն՝ բարեպաշտութ̄ի, բարերջանկութ̄ի։ Իսկ հոմանունն որ հակորոշի կարեւորին, որ առընթեր գոլով ոչ գոյացուցանէ, և ոչ գոլով ոչ ապականէ. որպէս այսպիսի ինչ և կամ այնպիսի հանդերձ, կայճն և այծենակաճն։ Իսկ կարեւոր է՝ որ առընթեր գոլով գոյացուցանէ, և ոչ գոլով ապականէ։

Արդ այսպիսի կարեւոր վեցաբար ասի գոլ. կամ որպէս նիւթ, որպէս նաւակառուցի՝ տախտակք, և բրտին՝ կաւ. կամ ոպ̄ զանազանութ̄ի, ոպ̄ յորժամ ասեմք կարեւոր գոլ մարդոյ զբանականն. կամ բռնութ̄, որպէս յորժամ ասեմք՝ կարեւորապէս որ ընդմէջն կտրի՝ վախճանի, այս ինքն հարկաւորապէս. և կամ որպէս հետեւիլն, յորժամ ասեմք՝ եթէ կարեւորապէս հետեւի առաջարկութ̄եցն [1] եզրակացութ̄ին։ Բայց ասի կարեւոր, և որ վասն իւր փախչելի է, բայց

1 Մի օրին. առաջարկացութ̄ին։

վասն այլոյ ընտրելի, որպէս Երակահատն. քանզի Նըշտրակն վասն իւր ինքեան փախչելի է՝ վասն զի ցաւեցուցանէ. իսկ վասն առողջութեան ընտրելի ։ Ասի կարեւոր՝ և որ վասն իւր և վասն այլոյ ընտրելի է, որպէս զառողջութիւն. քանզի առողջութիւն վասն իւր ընտրելի է, և վասն այլոյ, այս ինքն վասն անձնաւորական ներգործութեանց. քանզի ոչ երբէք կանխեն առ 'ի յաղթել անձնաւորական ներգործութիւքն առանց առողջութեան ։ Արդ ըստ այսմ վերջին նշանակութեան կարեւոր՝ ասի գոլ և առաջինկայ շարագրութիւս կարեւոր. քանզի և վասն իւր է կարեւոր առ 'ի գիտել մեզ զիւրաքանչիւրոք 'ի հինգ բարբառոցդ. և վասն այլոց է ընտրելի, վասն Արիստոտէլի ստորոգութեանց և վասն ամ իմաստասիրութեան ։

"Խրիսաւորին", ։ Գիտեմք զԽրիսաւորին հիպատոս 'ի Հռոմ բարեկամ Պորփիւրի, առ որ զառաջինկայ շարագրութիւս առաձայնեաց ։ "Որ 'ի յԱրիստոտէլի ստորոգութեանցն վարդապետութի", ։ Աստանօր զերկակի պիտանացուն ցուցանէ՝ ըստ հաւաստոյն և ըստ անհաւաստոյն. ըստ հաւաստոյն՝ 'ի ձեռն ասելոյն՝ թէ "Ի ստորոգութիւնս Արիստոտէլի", . իսկ ըստ անհաւաստոյն, ըստ որում զևն շաղկապ դնէ՝ արտաքուստ յայտնէ զամ իմաստասիրութի ։ "Գիտել զինչ սեռ, զինչ տարբերութի. զինչ տեսակ, զինչ յատուկ և զինչ պատահումն", ։ Աստուստ զգիտաւորութի առաջինկայ շարագրութես յայտնէ ։ "Համառօտ քեզ ընձեռումն առնելով", ։ Աստուստ զեղանակ վարդապետութեն յայտնէ ասելով՝ եթէ դաժանագունից տեսութեանց ոչ կամիմ կաձառակից լինել. վասն զի յայսցանէ անհաւաստութի լինի ։ Այլ որովհետև զանհաւաստութի յիշեցաք, բեր այսուհետև ասացուք՝ թէ ըստ քանի յեղանակաց լինի անհաւաստութիւն ։

Արդ լինի անհաւաստութի կամ 'ի բառից կամ 'ի տեսութեանց. և 'ի տեսութեանց՝ որպ(էս) Հերակլիտեանք ասացուածք. քանզի այսոքիկ ասացուածք խորագոյնք և դժուարագոյնք գոլով, վասն որոյ ասացեալ է՝ Խորագունի պիտանանայ լուղորդի։ Իսկ 'ի բառից՝ երկակի լինի անհաւաստութի կամ երկայնութ(եամբ) աւաչոյն, որպէս

Գոյականք ստացուածքն. զի թէպէտ և դիւրալոյծք գոն, սակայն վասն երկայնութեան անհաւաստութեան 'ի ներքս անկանի. և կամ վասն որակութեան բառիցն, որպէս Արիստոգինեականքն. քանզի անդ հեշտացաւ և ներհամեմատացեալ[1] ասէ. արդ եթէ որպիսի ինչ հեշտացաւն և ներհամեմատացեալ՝ ոչ գիտեմք: Իսկ զի՞ զայսոսիկ այլուստ ձեռնարկեմք ցուցանել և ոչ 'ի մերոց առաջնորդապետաց և վերակացուաց իմաստասիրութեան. 'ի Պղատոնէ ասեմ և յԱրիստոտէլէ. քանզի 'ի սոցանէ ամն ըստ յարմարաբանութեան ախորժեաց առնել զանհաւաստութի. իսկ ամն ըստ տեսութեան: Քանզի արիստոտէլականքն տեսաւորութիւնք դիւրք են, իսկ յարմարաբանութիւնն դժուարապատում. քանզի եթէ ոք իմանայ զի՞նչ է ներաւարտ ունակութիւն և քանակ, զորութիւն հեշտ և դիւրալուր երևին ստացուածք. իսկ յարմարաբանութիւնքն են դըժուարք: Իսկ պղատոնականքն տեսաւորութիւնք ամենևին խորինք և դժուարք. իսկ յարմարաբանութիւնքն դիւր և ձոխ. զի պղատոնական տեսաւորութիւնքդ դժուարք և խորինք և յոյժ կարծիս հուպ անկեալք. և զի այս այսպէս գոյ, յայտ է զի յոյժ մեկնող ըստ իւրում կարծեաց ձևացուցանէ: Բայց եթէ զի՞ ախորժեցին առնել զանհաւաստութի, կատարելապէս 'ի ստորոգութիւնս Արիստոտէլի ուսանելոց եմք:

"Համառօտ քեզ ընձեռութեան առնելով": Տեսանես թէ որպէս յոյժ ուրեք զհաւաստութի կամի պահել. զի ասելովն՝ համառօտ յայտ արար՝ թէ 'ի ձեռն երկայն յարմարաբանութեան ոչ առնեմ անհաւաստութեան: "Փորձեցայց": Ոմանք մեղադրեն իմաստասիրին՝ եթէ զի՞ ասաց՝ փորձեցայց. քանզի օտար է այս իմաստասիրաց՝ երկբայաբար ասել ինչ: Վասն որոյ ասեմք եթէ զփորձեցայցն ասելով ոչ եթէ՝ վասն զի երկբայաբար ասելոց է, այլ չափաւորեալ ունելով զինքն, որ մանաւանդ վայել է իմաստասիրութեան: Իսկ դարձեալ՝ վասն զի Արիստոտէլէս այր գոլով զօրա-

[1] Երկու օրին. և 'ի ներհամեմփոփեալ:

վար և 'ի զօրավարութեան[1] իրս պարապեալ, և ոչ գոլով ամենևին հմուտ իմաստասիրական բանից, վասն այսորիկ ասաց «փորձեցայց» եթէ ըստ քում կարողութեան ասել և հաստուցանել:

«Իբր ներածութեան յեղանակի»: Այս աստուստ ևս փախչի 'ի յանհաւատութենէ. քանզի ասէր՝ իբր ներածութեամն յեղանակի, յայտ արար՝ եթէ ըստ որակութեան բառիցն ոչ առնեմ անհաւաստի. վասն զի ներածութիք ոչ կամին բերել յինքեանս զդժուարութիւն բառից: «Օ՛ առ ծերունեացն անցանել բանիւ»: Օ՛ հմուտն իմաստասիրաց պահեաց աստանօր՝ ոչ իւր առնել զայլոյ ասացուածս. քանզի ասէ՝ եթէ ոչ զիմ ասեմ, այլ զոր ինչ 'ի հնոցն շահեցայ: «'Ի խորագունիցն 'ի բաց կալ 'ի խնդրոյ, և պարզագունիցն չափաւորապէս հանդիպել». այս ինքն թէ խորագոյնս ասել ըստ տեսութեան ոչ կամիմ: «Արդ աստէն իսկ վաղվաղակի»: Ըստ իւրում խոստմանն գնալով ամ ուրեք իմաստասէրս հոգ տանի հաւատոյն. քանզի ասէ՝ եթէ խորագոյնս կարող գոմ ասել. վասն հինգ այսոցիկ բարբառոցս՝ եթէ են, և եթէ ոչ են, եթէ 'ի մակամտածութեան[2] միայն են, եթէ ենթակայացեալք: Այլ եթէ զի՛նչ է մակամտածութիւն, ասասցուք:

Մակամտածութիւն է որոյ լինելութիւն՝ մեր տրամախոհութիս է, և ապականութիւն՝ մեր մոռացումն. որգոն՝ յորժամ մակամտածէ ոք յիւրում տրամախոհութեան զԱնդղջերուաքաղն՝ զոր բնութիւն ոչ եստեղծ, այլ մեր մակամտածութիւն բռնադատեալ բնութիւն[3] իմացաւ կենդանի ինչ յեղջերուէ և 'ի քաղէ, զոր բնութիւն ոչ գիտէ. զոր յիշելով 'ի մակամտածութեան լինելութիւն առնէ, իսկ մոռանալով ապականութիւն: Իսկ ենթակայացեալ ասեմք՝ զոր բնութիւն եստեղծ և գիտէ, որպէս մարդ, ձի, արծուի, որք ոչ ունին զլինելութիւնս 'ի մակամտածութեան:

Արդ բարւոք ասաց՝ եթէ ոչ խնդրեմք՝ եթէ են հինգ բարբառքդ, եթէ չեն, զի մի՛ 'ի խորագոյնս

1 Մի օրին. 'ի զօրավարական:
2 Մի օրին. 'ի մակացութեան. տպ. ևզկնի:
3 Մի օրին. բնութիւն:

քննութե՟ մտից։ Նոյն զի մի ոք ասիցէ եւ տարակուսես-
ցի՝ եթէ զի՞նչ պէտք էին այսպիսի խնդրոց, մի՛թէ
երկբայու՟ն ի՞նչ է յաղագս գոլոյ կամ ոչ գոլոյ հինգ-
բարբառոցդ. ասեմք՝ եթէ երկբայու՟ն էր ոմանց առ
'ի հնոցն՝ որպէս Անտիսթենեայ։ Քանզի ասէր Ան-
տիսթենէս. Մարդ տեսանեմ, մարդու՟ն ոչ. ձի տե-
սանեմ, ձիու՟ն ոչ. արջառ տեսանեմ, արջառութ՟ն
ոչ։ Զայս ասէր յայտ առնելով թէ մասնաւորքս եւ
զգալիքս են, իսկ ընդհանուրքն եւ իմանալիքն չեն.
զոր յանդիմանելով ասեմք, եթէ ոչ ա՟մ ինչ յէիցն
ընդ զգայութ՟բ անկանի։ Զի եթէ որք ընդ զգայ-
ութ՟բ անկանին՝ նոքա միայն են գոյք, ապա վասն
զի ա՟ծայինն եւ միտք եւ հոգի ոչ անկանին ընդ զգայ-
ութ՟բ, ապա ուրեմն ոչ են գոյք։ Նա եւ պարտիմք
իսկ ոչ զգայութե՟ցդ հաւատալ, վասն զի ոչ ճշմար-
տեն. ահաւասիկ արեգակն բազմապատիկ մեծ գո-
լով քան զերկիր՝ թզաչափաբար տեսանի, եւ զցեկ
նաւի 'ի ջուր՝ բեկեալ տեսանեն զգայութի՟ք։

Արդ ցուցեալք՝ եթէ անիրաւաբար 'ի բաց բառ-
նայ Անտիսթենէս զընդհանրականսն, ասասցուք՝ ե-
թէ զի՞նչ է ընդհանուր։ Ընդհանուր է՝ մի թուով
ըստ տեսակի 'ի բազմաց ընկալեալ. արդ մի թուով
ասացաք, վասն զի մի ինչ է. իսկ վասն զի եւ նիւթ
մի ինչ է, առաջարկեցաք զըստ տեսակին։ Վասն զի
նիւթ թէպէտ մի ինչ է, այլ ոչ ըստ տեսակի. եւ զի
ոչ ընդհանրական ինչ է նիւթ եւ ոչ մասնական, կա-
տարելապէս հանդերձ Աստուծով 'ի բնաբանութե՟ն
Արիստոտելի ուսցուք։ Իսկ 'ի բազմաց ընկալեալ ա-
սացաք, վասն զի մի գոլով 'ի բազումս տեսանի. եւ
եթէ զի՞արդ մի գոլով 'ի բազումս տեսանի, ասաս-
ցուք։

Ընդհանուրքն ա՟մ իրօք հաղորդին միմեանց՝ կամ ըստ
նոյնին, կամ ըստ նմանին, որգոն՝ Սոկրատէս, Ալ-
կիպիադ, Պղատոն. բայց եթէ ըստ իրի միում հա-
ղորդին միմեանց։ Արդ կամ ըստ նոյնին ունեք հա-
ղորդին, կամ ըստ նմանին. արդ եթէ ըստ նոյնին՝
գտաք զխնդրելին՝ եթէ մի է ըստ տեսակին 'ի բազ-
մաց ընկալեալ։ Իսկ եթէ ըստ նմանին հաղորդին,
կամ ըստ միոյ եւ կամ ըստ բազմաց. արդ եթէ ըստ

միոյ՝ նոյնպէս գտաք զխնդրելին. իսկ եթէ ըստ բազմաց՝ դարձեալ բազումքն կամ ըստ միոյ հաղորդին, կամ ըստ բազմաց. և վասն զի այս յանհունս, և ոչ ինչ է որ յանհունս է. ապա ուրեմն հարկ է բազմացն ըստ միոյ ումեք հաղորդիլ: Արդ բարւոք ուրեմն բացատրեցաւ սահմանն հանրականին մի գոլ ըստ տեսակին, կամ որպէս կենդանին, կամ որպէս շնչականն:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ Է

ԱՂԲԻՒՐ հաւաստութեան ցուցեր զշարադրութիւնդ քո, ով Պորփիւրիէ, զամ ուրեք խնամելով[1] 'ի նորագոյնսն. քանզի ասես կարող գոլ զքեզ ինքն՝ կամ 'ի սոսկ մտածութեանց գոլ զառաջիկայս, որպէս կարծեցին գոլ Բնականքն. և կամ ենթակայացեալք, խնդրել և քննել: Այլ և եթէ խոստովանաբար գոն ենթակայացեալք՝ ասես կարող գոլ կարի յոյժ խորագունաբար և բարձրաբար յաղագս նոցա խնդրել: Քանզի յենթակայացելոցն ոմանք անմարմինք են, և ոմանք եռակի տրամակայեալք. և կարող գոյիր յաղագս այսոցիկ՝ թէ մարմինք են և եթէ անմարմինք են, խնդրել. քանզի և կարեւոր գոյ յաղագս այսոցիկ խնդիր: Եւ յայտ յայնցանէ է, վասն զի Ստոյիկեանքն զամ ինչ մարմին ենթադնեն[2]. այլք երկրածինք և սերմանեալք 'ի կաղնոյ և 'ի վիմէ՝ ըստ քերթութեան. որք և ոչ զիմաստասիրութեան ականջաւն արժանիք էին ընդունել, եթէ ոչ մեծաբանութեան անուամբ զնա զարդարեալ էր[3]: Քանզի ասեն զի-

1 Երկու օրին. խնայելով:
2 Մի օրին. ենթադնէն:
3 Մի օրին. զարդարեալ էր:

մաստասէրն միայն հարուստ, միայն Թագաւոր, միայն բարեբախտ, միայն փարթամ, վասն զի իւրովքն միայն շատանայ, և այլոց պէտս ոչ ունի. քանզի այս է փարթամն, ոչ այլ ումեք պէտս ունել. Թէպէտ և առաջիկայ ժամանակս զայսոսիկ խորթացոյց՝ յանկուցմն շահելոյն ոչ ունել[1] փարթամաց։ Միայն Թագաւոր, վասն զի զպատերազմօղսն հնազանդեցուցանէ, որ միայնոյ է Թագաւորի։ Միայն բարեբախտ, վասն զի որոյ բաղձայն՝ և հասանօղ գոյ. և որոյ հասանօղ գոյ՝ նմին և բաղձայ. քանզի բաղձայ միշտ առաքինուեց, որոյ և հասանել կարօղ գոյ։ Այլ սոքա երկաքանչիւրովքս պերճացեալք՝ ըստ գիտուն երկրաքարշ և գձուձք, ասելով զմարդ գոյս մարմին. ըստ որոց ա̃ծայինն նրբաբար մարմին գոլով ընդ ամենայնն Թափանցեալք. քանզի այս է նոցա պարկեշտագոյնն։ Իսկ ըստ կենցաղավարութե առաւելեալ՝ ասելով զիմաստասէրն միայն Թագաւոր, միայն փարթամ։

Արդ վասն զի այսպիսի խնդիրք և երկբայութիւն 'ի հնոցն եղեն յարիստոտելականաց և 'ի պղատոնականաց, ասելով թէ ոմանք անմարմինք են, և ոմանք եռակի տրամակացեալք։ Իսկ ստոյիկեանքն զմարդ էակս մարմին կարծելով, բեր ըստ սովորական վարդապետութեն զհինգ բարբառսդ ցուցցուք անմարմին ըստ չորից այսոցիկ յեղանակաց։ Նախ և առաջին՝ մարմին 'ի մեծամեծս և 'ի փոքունս ոչ նոյնաբար յայսոցիկ ունի, որգան՝ փղի և մրջման ոչ նոյն մեծութի գլխոյ տեսանի, և ոչ Անտեայ և Տիւեայ նոյն բազուկ տեսանի։ Իսկ սեռ և տարբերութի և տեսակ և այլք 'ի բարբառոցն՝ նոյնաբար տեսանին յընդունօղսն. քանզի ոչ ոք ասէ եթէ՝ սա առաւել կենդանի է քան զնա. կամ Պլատոն առաւել մարդկութիւն ունի քան զՏիւդէս. ապա ուրեմն յայտ է՝ թէ անմարմինք են։ Ուստի յայտ եղև, թէ և բաղադանութիւքն անմարմինք են. զինչ են բազաւանութիւքն, կրկնապատիկն առ կէսն, և կիսոյն առ կրկնապատիկն։

1 Մի օրին. ուչ էլով։

Երկրորդ, ոչ երբեք մարմին բոլորն որպէս բոլոր յամենեցունց ունականեայ. որգոն՝ 'ի սափորոյ [1] գինւոյ՝ եթէ առնուցուս զկէսն՝ ոչ բոլոր սափորն որպէս բոլոր 'ի կիսումն տեսանի. իսկ սեռ և տեսակ յամենեսեան բոլոր որպէս բոլոր տեսանի. քանզի մարդութիւն, բոլորն որպէս բոլոր տեսանի յիս և յայլում. նոյնպէս և կենդանին. յայտ է թէ անմարմինք են: Այստուստ յայտ եղև՝ թէ և ձայն անմարմին է, զի բոլորն որպէս բոլոր յամենիսեան տեսանի:

Երրորդ առ այսոքիւք ամենայն մարմին մարմնում առադրելով՝ աճումն առընդունողին լինի յաւելուածն [2]. որգոն՝ եթէ կաթիլ մի գինի զեղցեն յայլ գինի, կրկնապատիկ լինի ընկալեալն: Իսկ սեռ և տեսակ և այլքն ամենայն առադրեալ Սոկրատումն, ոչ ինչ յաւելուն. յայտ է թէ անմարմինք են:

Չորրորդ առ այսոքիւք՝ ոչ երբեք նոյն մարմին 'ի նոյն ժամանակում 'ի բազումս տեսանի. զի թէպէտ և նմանն տեսանի, այլ ոչ նոյն: Իսկ սեռ և տեսակ նոյնք 'ի նոյնում ժամանակի 'ի բազումս տեսանին. յայտ է թէ անմարմինք են. ուստի և ուսանիմք, թէ և անտեսակ նիւթ՝ անմարմին է:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ Ը

Եւ բազում գովութեանց արժանի է իմաստասէրս՝ վասն հաւաստութեան առաջիկայ շարագրութեանս. քանզի ասէ՝ թէպէտ և անմարմինս գոլ զդոսա 'ի խնդրոց և 'ի քննութեանց դատաք, սակայն կարող գոյ և այլապէս 'ի խորագոյն խնդիրս անկանել և ասել՝ թէ

1 Հնագոյն օրին. 'ի սափոր գինւոյ:

2 Մի օրին. աճումն առնէ ընդունողին յաւելուածն:

«Նախ քան զբազումսն են, և թէ՛ ՚ի բազումսն, և՛ ՚ի վերայ բազմաց»։ Եւ է նախ քան զբազումսն՝ որ զպատճառսն ունի առ՚ ՚ի յԱստուծոյ արարչութենն. իսկ ՚ի բազումսն է՝ որ ՚ի նիւթում տեսանի. իսկ ՚ի վերայ բազմաց է՝ որ ՚ի գիտութիւն մեր տրամախոհութեանս գոյ։ Եւ վասն զի դժուարիմանալիք են ասացեալքդ, յարացուցիւ հաւաստեսցուք զնոյնս։ Եղիցի ոսկի մատանի՝ զքաջի ուրուք ունելով զտպաւորութի, և զսա դարձեալ ՚ի բազում մոմս տպաւորեալ. և ոմն մի զայսոսիկ զտպաւորութիս տեսեալ, և յիւրում ՚ի միտսն զամենայն տպաւորութիւնս խորհելով։ Արդ ասի մատանին նախ քան զբազումսն, քանզի նա նախ է քան զտպաւորութիւնս որ ՚ի մոմսն. իսկ տպաւորութիքն որ ՚ի մոմսն եղեն՝ ՚ի բազումսն ասին գոլ. իսկ զտեսեալ զտպաւորութիւնս և յիւրում տան[1] խորհեալ՝ ՚ի վերայ բազմաց ասի։

Արդ վասն զի ցուցաք ՚ի տարացուցէդ՝ թէ զինչ է ասացեալդ, բե՛ր և որ ինչ յաղագս այսոցիկ տարաձայնութի է Պղատոնի և Արիստոտէլի՝ ասասցուք, և ՚ի վերջոյ դասեսցուք զնոսա։ Եւ սքանչելի իմն հանդիպեցաւ միում ՚ի բաժանմանն[2]. քանզի յայլ բաժանմունսն՝ ոչ կարէ ՚ի հակաբաժանեալսն սուտ լինել և ճշմարիտ։ Քանզի ոչ կարէ ստել և ասել՝ եթէ ոչ ենթակայացաւ, և ոչ ՚ի սոսկ մտածութեան է. և ոչ ճշմարտել և ասել՝ թէ ենթակայացեալ է և՛ ՚ի սոսկ մտածութեան է. և ոչ ստել՝ թէ մարմինք և անմարմինք են. և ոչ ճշմարտել՝ թէ մարմինք են կամ անմարմինք։ Իսկ ՚ի վերայ առաջիկայիցս կարող գոյ յերկաքանչիւրսն ճշմարիտ լինել. քանզի եթէ ոչ միոյն ճշմարիտ ելոյ՝ միւսն սուտ ցուցանի. զի կարող գոյ ասել՝ թէ յառաջ քան զբազումսն է, ՚ի բազումսն, և ՚ի վերայ բազմաց. քանզի այսպէս և Պղատոն ասէ՝ թէ լինի, և է, և ՚ի բաղազանութեան է։ Եւ վասն ասելոյն լինել՝ յայտնեաց զնա նախ քան զբազումսն, որպէս զի իմացիս զմատանին նախ քան ըզ-

1 Երկու ընտիր օրինն. ՚ի լուսանցային, յիւրում մտին։

2 Երկու օրինն. ՚ի յայսմ բաժանման։

կնիքն ։ Իսկ ասելն և է՝ յայտ արար թէ 'ի բազումս է, այս ինքն 'ի նիւթում ։ Իսկ ասելն՝ թէ 'ի բազազանութեան է՝ յայտ արար, թէ 'ի վերայ բազմաց է, այս ինքն 'ի գիտութե ։ Իսկ Արիստոտէլ զ'ի՛բազումնն գոլ կարծէ, այլ ոչ յառաջ քան զբազումս ։ քանզի ասէ, թէ 'Ի ներգործութեանցն ոմանք են եղուտք, և ոմանք մակեղուտք ։ և եղուտքն ներգործութիք են բնութե ։ քանզի այսոքիկ պէտս ոչ ունին բանին ։ իսկ գիտութի ամենայն իրօք բանիւ լինի ։ Իսկ մակեղուտք ներգործութիք են 'ի հիւսանց և 'ի նմանեացն ։ քանզի այսոքիկ բանի պիտանան ։ Արդ որ զայսոսիկ ասեն՝ սուտ ասեն վասն Արիստոտէլի ։ քանզի և ոչ նա ասէ զգործն առանց գիտութեան, և ոչ զգիտութի առանց գործոց ։

Այլ արդ ուստի երբէք եղև այս երկբայութիւն՝ պարտ է ասել, եթէ ոչ սակաւ զանազանութիք են պղատոնականացն առ միմեանս ։ Քանզի ոմանք աասեն, թէ ըստ այսմ ասելք յառաջ քան զբազումս, վասն զի 'ի ձեռն բանի ստեղծանէ Աստուած զայսպիսիս ։ Իսկ այլք ասեն, թէ ոմանք տեսակք ինքնաստորակայք բան ոչ ունելով բայց զգայութի ունին, ըստ որոց կերպարանի զամենայն ստեղծանէ Աստուած ։ Իսկ այլք ասեն, թէ են ոմանք տեսակք՝ որ զգայութիւս ոչ ունին ։ ըստ որում զամենայնս ստեղծանէ Աստուած ։ Բայց ոչ հաւանի Արիստոտէլ ։ վասն այսորիկ ոչ ասէ՝ յառաջ քան զբազումս ։ Իսկ որք ասեն՝ թէ բանիւ ստեղծանէ զամենայն Աստուած՝ այնոցիկ հաւանի, և ասէ զյառաջ քան զբազումս, այս ինքն է գիտութին Աստուծոյ ։ Այլ ոչ միայն յառաջ քան զբազումս, այլ և 'ի բազումս ։ քանզի յետ քան զնմականացն յաղագս այսոցիկ ասելոյ՝ յարացոյց նոցին ասէ, ասելով թէ Որպէս իշխան ունի յինքեան զկարգաւորութի և 'ի նմանէ 'ի զօրսն լինի, նոյնպէս և այսպիսի իրք առ 'ի յայյ ։ ապա և 'ի վերջոյ 'ի նիւթում ։ նախ գիտէ ած, և ապա ստեղծանէ զնո բնութիս ։ Արդ յորժամ ասէ Արիստոտէլ ստեղծանել բնութեն զայսոսիկ առանց բանի՝ զայս ցուցանելով թէ ինքն բնութին ոչ գիտէ զտեսակս ։ բայց ստեղծելով ոչ թաքչի յայյ ։ զի այյ գիտութին առնէ բնութի, և ոչ իւրովն ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՊՐԱԿՔ Թ

ՈՉ ՀԱՆԴԻՍԱՍԻՐԱՑՆ զպարգևս հանրականացն[1] եռակի շնորհեալ, եթէ ոչ սոսկ 'ի մտածութեան են, այլ ենթակայացեալք. և եթէ ոչ են մարմինք, այլ անմարմինք. և եթէ յառաջ քան զբազումս են, և 'ի բազումս, և 'ի վերայ բազմաց. բեր այսուհետև և զընդդէմսն նոցա եղեալ՝ զստոյգն ուսցուք։ Բանզի ոմանք ասեն, թէ ոչ են ենթակայացեալք, այլ 'ի սոսկ մտածութեան են. և ոչ են անմարմինք, այլ մարմինք. յառաջ քան զբազումս, և 'ի բազումս ոչ ասեն լինել, այլ 'ի վերայ բազմաց։ Եւ զառաջինն այսպէս ասեն, թէ 'ի սոսկ մտածութեան են, և ոչ են ենթակայացեալք. քանզի որք ոչ են 'ի բնութէ ստեղծեալ, այլ ապաւէն իւրեանց լինելութեան զմեր տրամախոհութիւնս ունին, զայսոսիկ ասեմք 'ի սոսկ մտածութեան, որպէս զԵղջերուաքաղն։

Իսկ առ երկրորդն ընդդիմաբանեն ասելով՝ թէ մարմինք են ընդհանուրքն, զի զնոյն բնութիւն ընդունին զմասնականացն և զնոյն սահմանս։ Արդ եթէ ընդհանուրն մարդ՝ պարտ է և զսահմանն ընդունել զմասնական մարդոյ. և եթէ ոչ ընդունի զմասնականին սահման, ապա և ոչ ընդհանուր. իսկ եթէ ընդունի՝ մարմին է ամենայն իրօք. քանզի կենդանի բանաւոր մահկանացու, մտաց և մակացութեան ընդունակ՝ ամենայն իրօք զմարմնաւոր յայտնէ։

Իսկ առ երրորդն ասեն՝ թէ ոչ է նախ քան զբազումս, որպէս յայտ առնէ Արիստոտէլ ասելով թէ Տեսակք 'ի բաց երթիցեն, քանզի ընդհանրականն ոչ է. զի յերկբայս է վասն այսորիկ Արիստոտէլ. ապա

1 Մի օրին. 'ի լուսանցսն հանրականագոյն ։

թէ է՝ 'ի մերում տրամախոհութեան միայն է։ Այլ և ոչ 'ի բազումս ասեն գոլ. քանզի ասեն, կամ զմի բնութի ենթակայացեալ և 'ի բազմաց ունակացեալ, կամ զբազումս 'ի բազումս տեսանել։ Այլ եթէ մի բնութի ասեն ըստ ինքեան ենթակացեալ, սուտ ասեն. քանզի յանդիմանեցաւ յառաջնումն ճառնարկութեն. իսկ եթէ բազումս, ես անկարելի է՝ զ'ի վերայ բազմացն՝ միայն ասել։ Այլ բարւոք ասեն. քանզի այս որ 'ի վերայ բազմացս է ընդհանուր, ոչ եթէ վասն զի 'ի բազումս է՝ վասն այնորիկ ընդհանուր է. քանզի կարող գոյ և 'ի Սոկրատումն միայն տեսանիլ. այլ վասն զի 'ի Պղատոն հայելով և 'ի յառաջագոյնսն քան զնա, նոյնպէս էին և որ 'ի վերջոյ քան զնա։ Այլ համայն իսկ ասել՝ թէ վասն զի նախ եղելոցն, և որ լինելոցն են, և որ ենս պատկանին, վասն այնորիկ ասի գոլ ընդհանուր։ Իսկ այս ապրի և լինի 'ի մերում տրամախոհութես. քանզի հայելով 'ի Սոկրատէս և 'ի միւսն՝ որք զնոյն բնութի ունին, ասեմք գոլ զընդհանուրն։

Այլ արդ զի՞նչ ասասցուք. բարւոք տարակուսեցին առ ամենայնն։ Ասասցուք՝ թէ ոչ. քանզի և ոչ 'ի սոսկ մտածութե են՝ որպէս ասեն, այլ ենթակայացեալ են. ոչ ըստ ինքեան, այլ 'ի մերում տրամախոհութեանս. քանզի եթէ զոչ գոյն ասեմք 'ի սոսկ մտածութե, այս ինքն զԱղջերուաքաղն. ապա թէ այդպէս է, ընդհանուրն ոչ է 'ի սոսկ մտածութե. քանզի 'ի գոյից ճանաչեմք զհանուրն. իսկ այսպիսիս՝ 'ի մերում մտածութե ապրի, այլ ոչ եթէ ըստ ինքեան ենթակայանայ։ Իսկ առ երկրորդն՝ թէ մարմինք են և եթէ անմարմինք՝ ոչ ինչ է մեզ փոյթ. քանզի ենթակայանայ 'ի մերում տրամախոհութեան, որ է 'ի վերայ բազմաց։ Իսկ առ երրորդն բարւոք ասացին, ոչ գոլ յառաջ քան զբազումս. քանզի ոչ գոն ենթակացեալք, բայց եթէ ըստ գիտութե Աստուծոյ, որպէս ասէ Արիստոտէլ։ Իսկ 'ի բազումսն գոլ ոչ է, զի և ոչ 'ի գիտութե. քանզի գիտութի 'ի մեզ է, կամ յարարչին, որ է յառաջ քան զբազումս։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՊՐԱԿՔ Ժ

Արդ աստէն իսկ վաղվաղակի ոչ սակաւ տեսաւորութե՟ ասացելոյ՝ եկեսցուք 'ի նոյն իսկ յառաջիկայ բարբառումն, որ ունի այսպէս ։ « Բայց արդէն իսկ վաղվաղակի յաղագս սեռից և տեսակաց », մինչև ցբուն իսկ նախերգանոդ։ Բայց խնդիր է՝ թէ վասն էր առաջի կացելոյ Պորփիւրի ասել և 'ի կիր առնուլ զհինգ բարբառսդ՝ զսեռ միայն յիշէ և զտեսակ, զտարբերութիւն և զյատուկ և զպատահումն ոչ յիշեաց։

Եւ ասեմք՝ թէ յիրաւի զտարբերութի՟ և զյատուկ և զպատահումն ոչ երբէք յիշեաց, վն՟ զի բաւական էր նմա յիշել զսեռ միայն և զտեսակ․ քանզի սեռ և տեսակ թափանցեալք գոն ընդ այլ երիսն ևս։ Արդ ասելով զսեռ և զտեսակ, պարունակեալ առնու և զայլսն․ քանզի ունի տարբերութի՟ սեռ և տեսակ․ սեռ, որպէս զի ասեն զտարբերութի՟ որ յիմն է և 'ի ձիումն և յարծուումն և յայլ տեսակս․ արդ որ ստորոգի տեսակաց՝ նա սեռ է․ իսկ զանազանութի՟՝ տեսակաց ստորոգի․ ապա ուրեմն կարող գոյ տարբերութի՟ սեռ լինել։ Իսկ տեսակ՝ յորժամ անհատեսցես զնա 'ի բազմաց, որպէս բանաւորութի՟․ քանզի բանաւորութիւն անհատից ստորոգի ։ Այլ և 'ի յատկում տեսանի սեռ և տեսակ․ սեռ՝ որպէս յորժամ իմասցիս զբոլոր յատկութի՟ն յամենայն տեսակս․ քանզի որպէս ասացաք՝ որ տեսակացն ստորոգի, նա սեռ է․ իսկ տեսակ՝ յորժամ անհատեսցես զմի յատուկն, որպէս զծիծաղականն․ ըստ նմին օրինակի իմասցիս և յաղագս պատահմանն ։ Այլ վասն այսորիկ զսեռ և զտեսակ միայն յիշեաց, վասն զի սոքա՝ որպէս ասացաք, յայլսն տեսանին ։

« Մի՛ զի թէ ենթակայաւ, եթէ միայն 'ի սոսկ մտածութե՟ կայ »։ Բարւոք յառաջագոյն դասեաց զենթակայացաւն՝ սոսկ մտածութեանն, զգոյն՝ ոչ գոյին, և զճշմարիտն՝ ստութեանն։ « Եւ եթէ ենթակայացեալք՝ մարմինք են կամ անմարմինք »։ Խնդրելի է դարձեալ, եթէ զի՞ զմարմինս դասեաց նախ անմարմնոցն. և ասեմ թէ վասն ներածիցելոցն. վասն զի նոցա ստուգագոյն է մարմինն քան զանմարմինն։ « Եւ եթէ արդեօք զատելիք՝ կամ 'ի զգալիս, և յայսոսիկ ենթակայացեալք »։ Արդ զատելիս ասելով՝ յայտնեաց զյառաջ քան զբազումն. քանզի յառաջ քան զբազումն զատուցեալք են 'ի զգալեացս։ Իսկ 'ի զգալիս ասելով՝ յայտ արար զ'ի բազումն. քանզի որք 'ի նիւթումն են՝ զգալիք են։ Եւ դարձեալ՝ ասելով յայսոսիկ ենթակայացեալք, յայտ արար զ'ի վերայ բազմացն, որք 'ի մերում մտածութեանս են։

« Բայց զիա՛րդ յաղագս սոցա և առաջիկայիցս »։ Արդ ասելով առաջիկայիցս, յայտ արար զայլ ևս երիս բարբառսն՝ զտարբերութիւն, զատուկ և զպատահումն։ « Բանականագոյնք հինքն՝ բուռն հարեալ »։ Երկակի յայսոսիկ ելոյ խնդրոյ, ոմանք աստուածաբանաբար, և ոմանք տրամաբանաբար։ Արդ ասէ՝ թէ աստուածաբանաբար ոչ կամիմ խնդրել. քանզի դըժուարագոյն է այսպիսի խնդիր, այլ տրամաբանաբար. քանզի անխիտ և պարզ է նա։ Արդ եթէ զի՞նչ աստուածաբանաբար է, և զի՞նչ տրամաբանաբար՝ ասասցուք։ Աստուածաբանաբար խնդիր՝ յորժամ խնդրեմք, թէ մշտնջենաւո՞ր է Աստուած՝ եթէ 'ի լինելութե՟ և յապականութե՟. և եթէ անմիջաբա՞ր [1] Աստուած ստեղծանէ, եթէ միջնորդութե՟բ բնութե՟ն։ Իսկ տրամաբանաբար է, յորժամ խնդրեմք՝ եթէ հոմանունք իցեն բարբառքն, և եթէ բազում նշանակութիւնս ունին։ Եւ պարտ է գիտել՝ եթէ տրամաբանաբար աստանօր զբանականն կոչէ։

« Եւ այսոցիկ յաւէտ որք 'ի ձեմարանէն »։ Ո՛ ձեմականն յիշէ, որպէս ոմանք ասեն, վասն զի ձեմա-

1 Մի օրին. անընդմիջաբար ։

կանքն զօրաւորք էին բանականաւն . այլք ասեն՝ թէ վասն զի պղատոնական է, կամեցաւ ցուցանել՝ թէ և արիստոտելականացն հետևի . վասն այսորիկ յիշեաց։ Իսկ Ճեմական կոչեցաւ Արիստոտէլ, վասն զի Պղատոնի տակաւին ևս կենդանւոյ գոլով ոչ իշխէր նստել և ուսուցանել, այլ Ճեմէր . այլք ասեն ոչ, այլ հակառակէր Պղատոնի . զի նա նստեալ գոլով ինքն յոտն կայցէ ։ Որ զայդ ասեն, սուտ ասեն . այլ և պատուէր զնա և պաշտէր . որպէս և ուրեմն բագին կանգնեաց, և մակագրեաց այսպէս . “ Բագինս այս Պղատոնի, զոր կանգնեաց Արիստոտէլ առն՝ զոր չարք և ոչ գովելոյ զնա արժանի են „ ։

## ՍԿԻԶԲՆ ԱՍՏՈՒԾՈՎ

## ՑԱՂԱԳՍ ՍԵՌԻ

### ՊՐԱԿՔ ԺԱ

Յետ երկակի նախերգութե̃ իմաստասիրիս և մեր, օգնականութ̅ լուսագունին բուռն հարցուք զնոցին իսկ զհանդիսիցն, սկիզբն առնելով՝ի վարդապետութե̃ որ յաղագս սեռին, զոր ուսուցանէ մեզ Պորփիւրիոս։ Նախ և առաջին արիստոտէլական բացորոշմանցն հետևիլ լուսագոյն համարի . և զհոմանունութի̃ ընդ երիւք այսոքիւք արկանել սահմանօք ։ Նախ եթէ քանի՜ նշանակութիւնք են սեռի ։ Երկրորդ եթէ յաղագս որո՞յ նշանակութե̃ բանն է ։ Երրորդ ստորագրել և սահմանել զայն, յաղագս որոյ բանն է։ Ապա եթէ ոչ կամիցի ըստ այսմ բացորոշութե̃ց առնել, յանհուն երկբայութի̃ս անկեալ ցնդի . վասն զի հոմանունութի̃ մայր է մոլորութե̃ և երկբայութե̃։ Արդ այսմ բացորոշութե̃ հետևելով Պորփիւրիոս՝ նախ և առաջին տարորոշէ զհոմանունութի̃ . և ասէ թէ քա-

նն նշանակութիւնք են սեռի. և երկրորդ ասելով՝ թէ յաղագս որոյ է նորա խնդիրն. և երրորդ յետ այսորիկ ասելոց է զվարդապետութիւն՝ յաղագս որոյ խնդիրն է ։

Արդ ասէ թէ “Նախ առաջին սեռ է, որ 'ի միջէ յարանուանեալ է՝ և յառաջ եկեալ. որպէս հերակլեանքն 'ի Հերակլեայ՝ յարանուանաբար ասացեալք, և յառաջ եկեալք 'ի Հերակլեայ „ ։ Նաև բարիոք առընթեր եդաք զյառաջ եկեալն. քանզի են ոմանք 'ի միջէ յարանուանեալք, այլ ոչ ասին սեռք. վասն զի ոչ են 'ի միջէն յառաջ եկեալ, որպէս պիթագորեանքն 'ի Պիթագորէ, և պղատոնականքն 'ի Պղատոնէ. բայց ոչ ասին այսպիսիքս սեռք, վասն զի ոչ են յառաջ եկեալք՝ ոչ պղատոնականքն 'ի Պղատոնէ, և ոչ պիթագորականքն 'ի Պիթագորէ, որպէս հերակլեանքն 'ի Հերակլեայ։ Այս առաջին նշանակութիւնք են սեռի՝ որ ունի երիս բաղադրութիւնս. 'ի Հերակլեայ՝ առ բազմութիւն հերակլեանց, և 'ի բազմութենէ հերակլեանց առ Հերակլէս, և 'ի հերակլեանց առ միմեանս ։

Երկրորդ սեռ ասի՝ սկիզբն իւրաքանչիւրոյ լինելութեան. իսկ սկիզբն ասեմ լինելութեան՝ կամ զհայրն կամ զհայրենիսն ։ Նաև այս երկակի. քանզի է որ հուպ է, և է որ հեռի, և 'ի վերայ հօր և 'ի վերայ հայրենեաց. զորս միով յարացուցիւ հաւաստեսցուք ։ Աքիլեւս հուպ ունի զսեռն 'ի հայրենեացն, որպէս յորժամ ասեմք զնա նափտիովտացի. իսկ հեռի՝ յորժամ ասեմք զնա թեսաղացի. իսկ 'ի հօրէ հուպ սեռ՝ որպէս յորժամ տսեմք զնա որդի Պեղեայ. իսկ հեռի, որպէս յորժամ ասեմք զնա որդի Յեակսեայ ։

Երրորդ սեռ ասի այն՝ որ ըստ իմաստասիրութեան է 'ի յոգունս տարածեալ, որպէս զկենդանին. քանզի սա 'ի յոգունս տարածի, քանզի ասի և ձի, և շուն ։ Նաև նմանեալ է սա երկուց սեռից. նախ այնմ՝ որ 'ի միջէն յարանուանեալ. քանզի որպէս նա մի գոլով զբազումս պարունակեալ ունի, նոյնպէս և կենդանին մի գոլով՝ զբազումս տեսակս պարունակեալ ունի ։ Իսկ այնմ սեռի որ սկիզբն գոյ, որպէս հայրն՝ նմանեցաւ, վասն զի և կենդանին սկիզբն ասի իւրաքանչիւր տեսակի ։

«Բայց երևեցաւ՝ թէ ոչ սեռ և ոչ տեսակ պարզաբար ասի»: Արդ վասն զի են բարբառք՝ որ մի նշանակութիւն ունին, և են՝ որ բազումս. արդ ասէ՝ թէ սեռ ոչ մի նշանակութիւն ունի, այլ բազում. վասն այսորիկ ասաց՝ թէ ոչ սեռ և ոչ տեսակ պարզաբար ասին. այս ինքն ոչ միայնաբար, այլ բազմաբար: Տարակուսեն ոմանք ասելով՝ թէ զի՞ զսեռէ բուռն հարեալ՝ ըզտեսակ յիշեաց. ասեմք՝ թէ ոչ ինչ անտեղի արար, քանզի այսոքիկ առինչունակին են. իսկ առինչունակն՝ որքանաբար մինն ասի, նոյնքանաբար և միւսն ևս: Արդ վասն զի բազմաբար ասի սեռ, նմանապէս և տեսակ բազմաբար ասի: «Քանզի սեռ ասի՝ և ոմանց ունելով առ մի ինչ իմն և առ միմեանս հաւաքումն»: Այս բարիոք ասաց զիմն. քանզի յայտ արար թէ ոչ յարանուանիլն յումեքէ միայն բաւական է սեռ ասիլ, այլ և յառաջին գալ ՚ի նմանէ յորմէ անուանեցանն. քանզի ասէ՝ թէ սեռ ասի հաւաքումն, որ ունի իմն առ միմեանս ընտանութիւն սեռի: Այս ՚ի վերայ ածէ՝ թէ «Այս ասեմք ՚ի Հերակլեայ». աստուստ զմիոյ առ բազումս զբաղադանութիւն նշանակէ: «Որք ունին առ միմեանս». աստուստ զառ միմեանս բաղադանութիւն նշանակէ: «Բայց ասի և այլ ազգ դարձեալ սեռ իւրաքանչիւրոյն սերման սկիզբն». աստուստ երկրորդ նշանակութիւն սեռի: «Քանզի այսպէս զՈվրեստէս ՚ի Տանտալեայ ասեմք, և զՀիւլոն ՚ի Հերակլեայ»: Արդ ասելով զՈվրեստէս ՚ի Տանտալեայ՝ զհեռի սեռն նշանակեաց. իսկ զՀիւլոն ՚ի Հերակլեայ՝ զհուպն: Այս դարձեալ ասելով, զՊինդարոս թեբայեցի զհեռի սեռ՝ հայրենի նշանակեաց. իսկ ասելով զՊղատոն աթենացի՝ զհուպ սեռ հայրենեացն: Այս զի մի՛ ոք ասիցէ՝ թէ և հայրենիքն սեռք են, այո՛ ասէ, և կարի քաջ. վասն զի անտի է սկիզբն լինելութեան սերմանն. և նա է որ ուսուցանէ բարս պիտանացուս և օրէնս և կրօնս՝ առ ՚ի բարիոք կենցաղավարութիւն:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՅ ԳՐԱԿՔ

## ԳՐԱԿՔ ԺԲ

*«Արդ եռակի սեռ ասացելոյ՝ յաղագս երրորդին առ իմաստասէրս է բան»: Յետ անջատելոյ զհոմանունութիւն և յայտնելոյ, թէ զորմէ նշանակութենէ բուռն հարկանէ, յիրաւի 'ի նորին վարդապետութիւն խաղայ: Խնդրեալ զեթէ էն՝ 'ի զինչէէն սկիզբն արասցուք. քանզի խոստացաք իսկ ոչ զայս խնդրել՝ եթէ 'ի սոսկ մտածութեան են, և եթէ ենթակայացեալք. և վասն զի զինչէն՝ կամ 'ի ձեռն ստորագրութեան[1], կամ 'ի ձեռն սահմանի յայտնի, նախ առաջին տեսցուք, թէ զի՞նչ արդեօք առնէ Պորփիւրիոս. ստորագրիցէ՞, եթէ սահմանիցէ. Եւ ասեն ոմանք՝ ստորագրէ. առ որս տարակուսեմք ասելով, եթէ վասն է՞ր ոչ առաւել սահմանէ, այլ ստորագրէ: Եւ ասեն թէ յիրաւի ոչ սահմանէ, այլ ստորագրէ. քանզի՝ թէ ասացաք զնմանէ փախչել 'ի խնդրոյն յաղագս եթէէին և կամ ոչէին. իսկ սահման ամենայն իրօք 'ի վերայ գոյից առնու: Յիրաւի ոչ սահմանեաց, զի մի 'ի ձեռն սահմանին ցուցցէ զսեռն՝ թէ 'ի գոյից իցէ. այլ ստորագրեաց, վասն զի ստորագրութիւն կարող գոյ՝ և 'ի վերայ գոյից և 'ի վերայ ոչ գոյից առնուլ: Եւ ևս ասեն՝ թէ ոչ կարող գոյ սահմանել. վասն զի սահմանելոյն պէտք են գերազանցեալ սեռ ունելով. իսկ ընդհանրական սեռի ոչ ինչ է այլ գերազանցեալ սեռ՝ որով սահմանի. և զի այսոքիկ այսպէս են, յայտ է 'ի զանազանութենէ. և վասն զի ընդհանուր զանազանութիւն ոչ ընդունի այլ զանազանութիւն, որովք սահմանի, փախչի 'ի սահմանելոյ:*

*Առ որս ասասցուք, եթէ ոչ է ճշմարիտ բանդ. քանզի*

1 Մի օրին. ստորագրութենէ:

ասեմք, եթէ վասն ոչ ունելոյ դերազանցեալ սեռ՝ ոչ սահմանեցաւ, այլ և ոչ տարբերութի, ընդէ՞ր այլքն 'ի բարբառոցն ունելով սեռ՝ ոչ սահմանեցան, այլ ստորագրեցան:

Առ այսոսիկ ընդհանրական պատասխանատրութի ասեն յաղագս հինգ բարբառոցդ՝ եթէ ոչ կարող գոյր սահմանել. վասն զի հինգ բարբառքդ այդոքիկ հոմանունք են, իսկ հոմանունք գոլով՝ բազում նշանակութիս բնութեց յայտնեն. իսկ սահման մի բնութի բնաւորեցաւ նշանակել. զի՞արդ կարէր սահման 'ի վերայ նոցա առնուլ՝ որք բազում բնութիս նշանակեն: Այլ և եթէ ասէ ոք՝ եթէ կարող գոյր զհոմանուն ձայնն սահմանել՝ եթէ որոշուէ հանդիպին, ասեն՝ թէ Պորփիւրիոս զայսոսիկ բարբառս զբոլորս՝ որպէս զբոլոր կամեցաւ ստորագրել: Առ որս ասեմք, եթէ ընդունայն բարբառիք. քանզի ըստ այդմ բանի զոր ասացէքդ՝ և ոչ ստորագրել արժան էր. քանզի պատկեր սահմանի է ստորագրութի. արդ եթէ սահման մի բնութի յայտնէ, ապա և ստորագրութի: Իսկ եթէ ոչ սահմանին առաջիկայ բարբառքս վասն բազում բնութիս յայտնելոյ՝ քանզի հոմանունք են, ապա և ոչ ստորագրիլ պարտ էր, վասն զմի բնութիւն յայտնելոյ: Այլք ասեն, եթէ պարտ էր ըստ բաղազանութեանցն՝ զոր ունին առ միմեանս հինգ բարբառքդ, սահմանել: Այլ ոմանք ասեն, եթէ ոչ կարեն 'ի ձեռն բաղազանութէ սահմանիլ. վասն զի ոչ է ընդունելի այդպիսի սահման առ 'ի յիմաստասիրաց. և ապացոյց՝ վասն զի 'ի խնդրելոյն զխնդրելին յարկացոյցեն [1]: Առ որս ասեմք, թէպէտ յայլ իրս ոչ է ընդունելի, այլ յայնոսիկ որ առինչունակին է, յոյժ ընդունելի է. քանզի այսոքիկ առ միմեանս ունին ընտանութի, և 'ի ձեռն միմեանց նշանակին:

Արդ զի՞նչ ասիցեմք մեք. ասեմք, եթէ զբաղազանութին սահմանեաց՝ որպէս ցուցանելոց եմք. իսկ զիրսն՝ յորս բաղազանութիւնքն տեսանին, ստորագրեաց: Քանզի և եթէ զսպիտակն որ 'ի մարմնում սահմանեմք, որպէս առ սպիտակն սահման ասեմք գոլ, իսկ

1 Մի օրին. յար կացուցանեն:

որպէս առ մարմինն՝ ստորագրու̃ն . վասն զի ամենայն սպիտակ 'ի մարմնում, նոյնպէս և աստանօր որպէս առ բաղազանութ̃իս բարբառոցդ զորս ունին առ մի-մեանս՝ սահման ասեմք գոլ . իսկ որպէս առ իրսն յորս բաղազանութ̃իքն՝ ստորագրու̃ն ասեմք գոլ:

## ԸՆԴ ԱՑՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՊՐԱԿՔ ԺԴ

ՍԱՍՆ զի խոստացաք յառաջագոյն խնդրել, եթէ զինչ է սեռ, բե՛ր ըստ մերում խոստմանն սահմանեսցուք: «Սեռ է, որ ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաց՝ 'ի ներում զինչէն ստորոգեալ»: Այլ վասն զի առաքինութ̃ի սահմանի ասացաք գոլ զանդրադարձիլն 'ի սահմանելին, տեսցուք և յառաջիկայում սահմանիս՝ եթէ նոյն առաքինութ̃ի սահմանի պահի՞: Այլ ասեմք թէ աներկբայաբար պահի. քանզի ունիմք ցուցանել եթէ ամենայնում սեռի և միայնում պատկանի բացատրեալդ սահման: Այլ գիտելի է, զի եօթն են ձայնք . աննշանական՝ ո̃պ Մրալէզն, իսկ նշանականն երկակի, մասնական և ընդհանուր . իսկ ընդհանրականին հինգ են, որպէս յառաջագոյն ասացաք, սեռ, տարբերու̃ն, տեսակ, յատուկ, պատահումն: Արդ են վեց ձայնք նշանականք, հինգ հանրականն, մին մասնական, և այն որ աննշանականն է. յայսմ եօթեանցս սեռում միայն պատկանի բացատրեալդ սահման՝ զամենեսեան տարորոշելով 'ի նմանէ: Քանզի յասելն ստորոգեալ[1] տարորոշէ յաննշանական ձայնէն. քանզի աննշանական գոլով ոչ ունեք ստորոգի: Իսկ յասելն ըստ յոլովից՝ տարադատէ, այս ինքն որոշէ զմասնականն 'ի հան-

1 Մի օրին̃ . ստորագրեալ:

րականացն. իսկ աննշանականին և մասնականին արտաքսեցելոյ՝ հինգքն ընդհանուրքն մնացին ։

Արդ ասելով 'ի ներքում զինչէին ստորոգեալ՝ զերիսն 'ի նոցանէ արտաքս հանէ՝ զտարբերութիւն, զյատուկ, և զպատահումն. քանզի այսոքիկ ոչ 'ի ներքում զինչէին ստորոգին, այլ 'ի ներքում որպիսինչէին ։ Վասնզի հարցեալք որպիսի՞ ինչ մարդ, պատասխանատրեմք՝ բանական, որ է տարբերութի. և որպիսի՞ ինչ է, պատասխանատրեմք՝ ծիծաղական, որ է յատուկ. և դարձեալ սեաւ կամ սպիտակ, որ է պատահումն ։ Իսկ յասելն՝ տարբերեցելոց տեսակաւ, որոշէ զնա 'ի տեսակէ. զի տեսակ թէպէտ և զյոլովից ստորոգի և 'ի ներքում զինչէին, այլ ոչ տեսակաւ տարբերեցելոց, այլ թուով ։ Արդ այսպէս յամենեցունց յայլոց ձայնիցն որոշեալ և զատուցեալ զսահմանդ՝ ցուցաք եթէ ամենայնում սեռի և միայնում յարմարի ։

Աստուստ մեղադրեն ոմանք վասն կարգի որոշմանցդ, և թուի թէ բարուոք ։ Վասնզի ասեն՝ թէ պարտ է նախ զհեռագոյնն որոշել, և այնպէս ապա զմօտոյն՝ որպէս 'ի մարդում սահմանում ։ Վասնզի անդ նախ զհեռուն որոշեմք ասելով կենդանի. քանզի ասելով կենդանի, որոշեմք զնա յոչ կենդանուոյն, այս ինքն յանշնչականէն՝ որ է հեռագոյն 'ի մարդոյ. իսկ բանական ասելով որոշեմք զնա 'ի մօտագունիցն, այս ինքն 'ի ձիոյ և յարծուոյ և յայլոցն՝ որ են մօտագոյն 'ի մարդն. որպէս չնչականք ։ Նոյնպէս և յայսմ սահմանում պարտ էր նախ զհեռագոյնն որոշել. այս ինքն զաննշանական ձայնն, և այնպէս ապա զնըշանականսն ։ Արդ պարտ էր ասեն այսպէս սահմանել, եթէ Սեռ է որ ստորոգի ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ 'ի ներքում զինչէին. զի ասելովն ստորոգեալ՝ հանէր զաննշանական ձայնն, որ է հեռագոյն ։ Իսկ ըստ յոլովիցն ասելով զմասնականն. իսկ տարբերեցելոցն տեսակաւ՝ որոշէ 'ի տեսակէ. իսկ յասելն 'ի ներքում զինչէին, որոշէ 'ի տարբերութէ, 'ի յատկէ և 'ի պատահմանէ ։

Աստուստ դարձեալ են ոմանք որ ասեն. եթէ բացատրեալդ սահման պարունակէ յինքեան զհինգ

պղատոնական սեռումն. և ասեմք թէ ոչ պարունակէ, վասն զի այս սեռ ՚ի ներ զինչէումն ստորոգի. իսկ պղատոնականքն սեռք ՚ի ներ որպիսինչէումն ստորոգին. և զիա՞րդ նոքա ՚ի ներ որպիսինչէումն ստորոգին: Արդ ասելի է, եթէ վասն զի նոքա զնմանութի զաստեացս նշանակեն. իսկ ամենայն նմանութի ըստ որակութբ է, և ներ որպիսինչէն՝ ըստ որակութեամբ է: Արդ յայտ է՝ թէ և պղատոնական սեռքն ՚ի ներ որպիսինչէին ստորոգին. ապա որբեմն ոչ պարունակեալ ունի յինքեան բացատրեալդ սահման զհինգ պղատոնական սեռումն:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ ԺԴ

ԹԷՊԷՏ և ստոյգ է սահմանն և բանն որ յաղագս սեռին է, այլ սակայն տագնապ հասանէ ՚ի հակառակորդաց ճշմարտութեն, որք սովորեցան ընդդէմ ասել ճշմարտութեն. քանզի ոչ եթէ վարկպարազի տարակուսանօք ընդդէմ զինին, այլ և յոյժ ուժգնագոյնիւք և դժուարալուծիւք, Վասնզի ասեն, եթէ սահմանս այս՝ որ ընդհանուր սեռի է՝ ոչ կարէ պարունակել յինքեան և զգերազանցեալ սեռն, այս ինքն զստորոգեալն: քանզի ստորոգեալն գերազանցեալ է քան զսեռն. քանզի ասեմք, եթէ սեռ է ստորոգեալ ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ ՚ի ներում զինչէին: Արդ որովհետև ասացաք սեռ է ստորոգեալն, յայտ արարաք թէ՝ գերազանցեալ է ստորոգեալն քան զսեռն. և ոչ պարունակէ զնա բացատրեալդ սահման: Զայս տարակուսութե լուծանելով ասեմք, եթէ որպէս սահմանի սահման ոչ միայն զայլոյն սահմանէ, այլ և զինքն, վասն զի և զինքն սահմանէ. նոյնպէս և աստանօր բացատրեալդ սահ-

մանն ոչ միայն զինքն, այլ և զհանուրն և զգերազանցեալն պարունակէ ։

Իսկ երկրորդ տարակուսին ընդդիմակացուք ճշմարտութեն ասելով, եթէ նուազ է բացատրեալ սահմանդ. քանզի ստորոգեալն որ է գերազանցեալ՝ ոչ ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ միայն, այլ և սեռիւ. որգոն՝ գոյն ստորոգի մարմնոյ և անմարմնոյ. իսկ մարմին ստորոգի շնչականի և անշնչականի ։ Արդ մարմին և անմարմին ոչ որպէս տեսակք միայն զանազանին, այլ և որպէս սեռք. վասն զի մարմինն՝ շնչականին է սեռ, իսկ անմարմին՝ անձին և մտաց ։ Արդ պարտ է յաւելուլ 'ի սահմանդ և ասել, թէ Սեռ է ստորոգեալն ըստ յոլովից և տարբերեցելոցն ոչ միայն տեսակաւ, այլ և սեռիւ 'ի ներում զինչէին ։ Զայս տարակուսութի լուծանելով ասեմք, եթէ բացատրեալ սահմանդ առ 'ի Պորփիւրէ՝ զամենայնսն պարունակէ, եթէ գերազանցեալ և եթէ ոչ ։ Իսկ բացատրեալդ առ 'ի ձէնջ՝ ոչ ամենայն սեռի պատկանի. վասն զի և ոչ կենդանւոյն. քանզի կենդանին սեռ գոլով ստորոգի բանականին և անբանին, որ տեսակք գոլով տեսակաւ միայն զանազանին 'ի միմեանց, այլ ոչ սեռիւ, վասն զի ոչ կարեն սեռք գոլ ։ Արդ լաւագոյն և հաստատագոյն է բացատրեալ սահմանդ առ 'ի Պորփիւրէ, վասն զի ամենեցուն պատկանի. և այդ է առաջինութի սահմանի ամենեցունց պատկանիլ, և միշտ և նոյնպէս գոլն. այլ ոչ որպէս բացատրեալդ առ 'ի ձէնջ, վասն զի դա ոչ ամենեցուն պատկանի ։

Երրորդ առ այսոքիւք տարակուսեն՝ եթէ ոչ բարւոք է սահմանդ, վասն զի տեսակի և տարբերութե պատկանի և այլոց բարբառոցն. քանզի և ընդհանուր տեսակ և տարբերութի՝ ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ ստորոգին. նոյնպէս և ընդհանուր յատուկըն, նոյնպէս և ընդհանուր պատահումն ։ Առ որ ասեմք, եթէ ընդհանուր տեսակն թէպէտ և ստորոգի ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ, այլ յայնժամ ոչ որպէս տեսակ, այլ որպէս սեռացեալ գոլով՝ սեռային բաղազանութեն ստորոգի, այլ ոչ որպէս տեսակ ։

“Զոր և ենթադրելովք բացատրեցին ”։ Իսկ զի

ոչ ասաց ենթադրելով՝ այլ ենթադրելովք, զի ցուցցէ՝ թէ ոչ իւր է բացատրեալ սահմանն, այլ այնոցիկ որք 'ի Ճեմարանէն։ Բայց մեք ասացաք 'ի տեսութ՟, թէ զկարգ պարտ է նախ և առաջին զաննշանականն 'ի նշանականէն որոշել, և այնպէս ապա զնշանականն. իսկ Պորփիւրիոս նախ զնշանականն, և ապա զաննշանականն. և է նշանականն կամ հանուր կամ մասնական. այլ այսպէս բաժանեալն՝ նուազ ցուցանէ զբաժանումն. քանզի ոչ պարունակեալ ունին յինքեան զիւրաքանչիւրսն. վասն զի այլ է մասնականն, և այլ է իւրաքանչիւրն. քանզի մասնականն անորոշ է. որգոն՝ իք մարդ. իսկ իւրաքանչիւրն որոշեալ և սահմանեալ, որգոն՝ Սոկրատէս, Պղատոն։ Արդ եթէ այդպէս բաժանեմք՝ եթէ նշանական ձայնն կամ հանուր է կամ մասնական, նուազ առնեմք զբաժանումն և ոչ առողջ. բայց պարտ է այսպէս ասել՝ եթէ նշանական ձայնն կամ հանուր է կամ ըստ միոյ. քանզի ասելով ըստ միոյ՝ պարունակես և զիւրաքանչիւրսն՝ և զմասնականսն. քանզի մի ինչ նշանակէն իւրաքանչիւրն և մասնականն. ուստի և հակասահմանին միմեանց. քանզի զինչ է մասնականն՝ եթէ ոչ անորոշ իւրաքանչիւր. և զինչ իւրաքանչիւր՝ եթէ ոչ որոշեալ մասնական։

Այլ և դարձեալ այսպէս բաժանելով նոյնպէս նուազ առնեմք զբաժանումն. քանզի զհոմանունս ձայնիցն ոչ պարունակեցաք. վ՟ զի ոչ ըստ միոյն նոքա՝ և ոչ ըստ հանրականին. և ըստ միոյն ոչ են, վասն զի բազում բնութ՟ի նշանակեն. այլ և ոչ ըստ հանրականին, վասն զի հանրականն և փաղանունաբար ստորոգի. իսկ հոմանունքն 'ի ձայնիցն ոչ փաղանունաբար, այլ հոմանունաբար ստորոգին։ Իսկ եթէ զինչ հոմանունն է և զինչ փաղանունն՝ ստուգապէս 'ի ստորոգութ՟ս Արիստոտէլի ուսցուք։ Ապա ուրեմն այսպէս պարտ է բաժանել. եթէ նշանական ձայնն կամ ըստ յոլովից ստորոգի, կամ ըստ միոյ. քանզի ասելով ըստ յոլովից՝ ոչ միայն զհանրականն պարունակէ, այլ և զհոմանունսն 'ի ձայնիցն։

“ Քանզի ստորոգիցելոյն՝ է ինչ որ զմիոջէ ասի միայնոյ ”։ Բարւոք ասաց զմիայնոյ, զի եթէ զմաս-

նմկանէ ասացեալ էր, զիւրաքանչիւրն թողոյր։ Բարւոք ասաց եւ զյոլովից. վասն զի թէ եւ ասացեալ էր զհանրականացն, թողոյր եւ ոչ պարունակէր զհոմանունս 'ի ձայնիցն։ «Որգոն՝ Սոկրատէս, եւ սայն, եւ այն»։ 'Ի ձեռն յարացուցիցս յայտ արար զիւրաքանչիւրսն. Սոկրատէս ասելովն, եւ զմասնականսն սայն եւ այն յատուկ ասելովն։ «Եւ պատահմունքն հասարակաբար, այլ ոչ յատկապէս»։ Բարիոք ասաց հասարակաբար. քանզի հասարակաբարն կարող գոյ յոլովից ստորոգիլ, այլ ոչ յատկապէսն։ «Եւ պատահն, որգոն՝ սպիտակն, սեաւն, նստեալն»։ Խնդրելի է թէ վասն էր 'ի վերայ այլոցն մի մի յարացոյց ասաց, իսկ 'ի վերայ պատահման երիս. սպիտակն, սեաւն, նստեալն։ Եւ ասելի է, թէ պատահումն երկակի ասի, անջատական, եւ անանջատական. արդ զանանջատականսն 'ի ձեռն սպիտակին եւ սեւոյն յայտնեաց, իսկ զանջատականսն՝ 'ի նստելոյն։

«Արդ զմիոյ միայնոյ ստորոգիցելոյն տարբեր է սեռն, այնու՝ որ զյոլովից բացատուեալ է ստորոգիլ»։ Այս ինքն թէ 'ի մասնականէն որոշեալ է սեռն. զի սեռ զյոլովից ստորոգի, իսկ մասնականն եւ ոչ երբէք։ Նմանապէս ասէ եւ զորոշումն յայլոց բարբառոցն, զոր մեք յառաջագոյն 'ի տեսութե ասացաք։ «Ոչ ինչ ապա ուրեմն աւելորդ՝ եւ ոչ նուազ պարունակէ սեռիս՝ ճառեցեալս ենթադրուի մտածուե»։ Ըստ մերում խոստմանն բե՛ր ասասցուք՝ եթէ զիա՛րդ սահմանն է՝ եւ ոչ ենթադրուի առաջիկայ բացատրուես։ Վասն զի ենթադրուե կարողուի է՝ միոյ բառի 'ի բաց բարձեցելոյ՝ ամբողջ պահիլ ենթադրութեն. որգոն՝ յորժամ ասեմք, մարդ է հետեւակ երկոտանի, ուղորդագնաց՝ լայնեղունկն. արդ եթէ զայլսն ասելով զլայնեղունկն 'ի բաց բառնայ, ոչինչ նուազ գոյանի ենթադրութի մարդոյն։ Իսկ յորժամ սահմանեմք զմարդ եւ ասեմք. կենդանի բանաւոր, մահկանացու, մտաց եւ մակացութե ընդունակ, եւ զբանաւորն 'ի բաց բարձեալ՝ զայլսն ասեմք, ոչ ասեմք սահման մարդոյ գոլ զնա. վասն զի ոչ գոյ կարող մարդ՝ լինել մարդ առանց բանաւորութե. Նոյնպէս եւ 'ի բացատրեալ սահմանէն սեռի. քանզի եթէ զյոլովից կամ զտարբե-

րեցելոցն տեսակաւ, և կամ զ'ի ներքում զինչ էին ստորոգելին 'ի բաց բառնաս, ոչ գոն կարող մնացեալքն սահմանն գոլ սեռի. վասն զի ոչ լիով յարկացոյց ըզ-տեսութեան նորա։ Արդ ուրեմն յայտ է և յասացելոցս, թէ բացադրեալդ 'ի վերայ սեռի՝ ոչ է ստորագրութիւն, այլ սահման։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ

# ՅԱՂԱԳՍ ՏԵՍԱԿԻ

## ՊՐԱԿՔ ԺԵ

ԶԿԱՐԳ իմաստասիրիս որպէս բնական ինչ հետևւող իրողութեանս 'ի պէտս առեալք՝ յիրաւի յետ սեռին վարդապետութեան 'ի տեսակին վարդապետութիւն իջցուք։ Այլ աստուստ մեզ տարակուսեն ոմանք ասելով եթէ պարտ էր դմա զտարբերութիւն յառաջ քան զտեսակն նախադասել՝ որպէս անդ ուրեմն 'ի վերն. արդ կամ զտեսակ պարտ էր անդ նախադասել յառաջ քան զտարբերութիւն, և կամ որպէս անդ նախադասեաց զտարբերութիւն, պարտ էր և աստ նախադասել. արդ փոփոխելով զկարգն՝ անհետևողութիւն արար վարդապետութեանն։ Առ որս ասեմք, եթէ անդ զտարբերութիւն յիրաւի նախադասեաց, իսկ աստ զտեսակ. վասն զի անդ առաջին կարգաւորութիւն էր, յիրաւի առաջին դասաւորութիւն տուաւ 'ի բնութենէ տարբերութեան. վասն զի բնականաբար նախադասեցաւ յառաջ քան զտեսակ, վասն զի ընդհանրականագոյն է քան զտեսակ և պարզագոյն. այլ և պատճառ նորին է, վասն զի նա բաժանէ զսեռ 'ի տեսակս։ Իսկ աստ յիրաւի զտեսակ քան զտարբերութիւն նախադասեաց, վասն զի առինչունակին են տեսակ և սեռ։

Արդ 'ի սահմանի սեռի ամենայն իրօք յիշումն տեսակի լինի. քանզի քարշէ յինքն սեռ զտեսակ։ Արդ վասն զի սակաւ ինչ յառաջագոյն զսեռ սահմանեցաք՝ հարկ է և զտեսակ սահմանել. քանզի է մի և նոյն վարդապետութիւն սեռի և տեսակի, վասն զի առնչունականք են։ Արդ ուսեալք զկարգ նախադասութեան նոցա, եկեսցուք և 'ի վարդապետութիւն տեսակին։ Նախ և առաջին արիստոտելական բացորոշութեանցն հաւանեալք՝ տարորոշեմք զհոմանունութիւն, և ասեմք՝ եթէ քանի նշանակութիւնք են տեսակի։ Երկրորդ՝ եթէ յաղագս որոյ նշանակութեան են բանքս. և ապա զյաղագս այնորիկ զվարդապետութիւն յառաջ ածցուք։

Արդ երկակի է տեսակ, քանզի տեսակ ասի և կերպարան[1]. որպէս Եւրիպիդէս ողբերգակ ասէ. նախ և առաջին տեսակ՝ արժանի բռնաւորութեան։ Բայց ասի և ստորադասեալն սեռում, որպէս մարդ տեսակ կենդանոյն ասի։ Արդ որովհետև գիտացաք՝ եթէ քանաբար ասի տեսակ, բեր ասասցուք եթէ յաղագս որո՞յ նշանակութեան է բանս։ Եւ պարտ է գիտել՝ եթէ յաղագս այնորիկ որ ըստ իմաստասիրութեան է; զոր և երրակի սահմանէ։ Եւ նախ և առաջին այսպէս՝ թէ Տեսակ է ստորադասեալն սեռում. երկրորդ՝ թէ Տեսակ է որում սեռն ստորոգի. երրորդ՝ թէ Տեսակ է որ ըստ յոլովից և տարբերեցելոց թուով 'ի ներքում զինչէին ստորոգեալ։ Եւ գիտելի է՝ թէ առաջինն և երկրորդ սահմանքն հաղորդութիւն ունին առ միմեանս, և զանազանութիւն։ Եւ հաղորդութիւն, վասն զի երկոքեան զտեսակ սահմանեն. իսկ զանազանութիւն, վասն զի ոմն ունի զբաղդատութիւն՝ որպէս 'ի տեսակէ առ սեռ. իսկ ոմն որպէս 'ի սեռէ առ տեսակ։ Այլ և երրորդ սահմանն ունի առ նոսին հաղորդութիւն և զանազանութիւն. հաղորդութիւն, վասն զի և նա զտեսակ սահմանէ. և զանազանութիւն, վասն զի նա զյատկագոյն տեսակն սահմանէ. իսկ նոքա զմիմեանց վերայն։

“Իսկ յատկագոյն տեսակ է, որ զյոլովից և զզա-

1 Երկու օրինակք յաւելուն. մարդոյ և ձիոյ։

նազանեցելոց թուով 'ի ներքում զինչէին ստորոգեալ»։ Արդ այսպիսի սահմանս զմարդն և զձին սահմանէ. քանզի մարդ տեսակ գոլովին և զզանազանեցելոց թուով 'ի ներքում զինչէին ստորոգեալ՝ որ է յատկագոյն. վասն զի ոչ բաժանի յայլ տեսակս։ Իսկ 'ի վերայ միմեանց ստորոգելին տեսակք՝ որք ոչ սահմանեն զըստ յոլովից և տարբերեցելոցն թուով 'ի ներքում զինչէին ստորոգեալն, այլ զայն տեսակն սահմանեն զստորոգեալն սեռում, և որում սեռն ստորոգի։ Քանզի զայս կարող գոյ՝ և 'ի վերայ մարդոյ ասել և 'ի վերայ կենդանւոյ. քանզի և կենդանին տեսակ է՝ ստորադասեալ սեռի, այս ինքն շնչականին։

Եւ պարտ է գիտել՝ եթէ երեք սահմանքն տեսակի երիս բաղդատութիւնս յայտնեն. զմին՝ ոպ̃ 'ի տեսակէ առ սեռ, և զմին՝ որպէս 'ի սեռէ առ տեսակ. իսկ զերրորդն՝ որպէս 'ի տեսակէ առ անհատսն։ Բայց ոչ ոք 'ի դոցանէ գոյ աւարտեալ, քանզի և ոչ առաջինքն յիշատակեն վասն բաղդատութեան անհատի՝[1] որ առ նոսա, և ոչ վերջագոյնն յիշատակէ սեռ, զոր պարտ է յիշատակել վասն բաղդատութեան տեսակի առ սեռն։ Վասն այսորիկ պարտ է մանաւանդ այսպէս սահմանել. «Տեսակ է՝ ստորադասեալ ընդ սեռում ըստ յոլովից և տարբերեցելոց թուով 'ի ներքում զինչէին ստորոգեալ»։

«Իսկ եթէ զսեռն բացատրելով զտեսակն յիշեցաք՝ ասելով ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաց 'ի ներքում զինչէին ստորոգեալ, և զտեսակն ասեմ զայն՝ որ ընդ բացատրեալ սեռիւ է, գիտել պարտ է, վասն զի սեռ՝ է որումն սեռ, և տեսակ որումն տեսակ»։ Զայս ասելով յայտ առնէ, թէպէտ և սահմանելով զսեռ՝ զտեսակ յիշեցաք, և զտեսակ սահմանելով զսեռ յիշեցաք, մի կարծեսցի յըստ միմեանց բանս. քանզի այսոքիկ առինչունակին են, յորում պիտանան յըստ միմեանց բանն։ «Բացատրեն»․ այս ինքն սահմանեն. իսկ այլքն եղիցին թերևս արդեօք և ոչ տեսակագունիցն. այս ինքն, թէ այլ սահմանքն ոչ միայն տեսակագունիցն տեսակացն են՝ այլ և ընդ միմեամբքն։

1 Մի օրին. 'ի լուսանցսն փչէսանէ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ ԺԶ

ՔԱՌԱԿԱԲԱՐ ասացեալ յաղագս սեռի և տեսակի 'ի յառաջագոյնսն՝ ըստ այսու հետև և յաղագս հաստատուն յարացուցիւ յայտ արասցուք, և մանաւանդ արիստոտելականօք ընտրագունիւք [1] յայսպիսաս. բայց յառաջ քան զարիստոտելական բաժանումն, ըստ յառաջագոյն բացորոշել ինչ, որ զբաժանումն բացորոշէ՝ ասասցուք։ Սեռ երկակի ասի. քանզի ասի սեռ և սեռականագոյնն, ասի և ընդ միմեամբքն։ Նոյն և տեսակ երկակի ասի. քանզի առինչունակին են. իսկ առինչունակին որքանաբար միոյն ասի, նոյնքանաբար և միւսն ես. արդ վասն զի սեռ երկակի ասի, հարկ է և տեսակին երկակի գոլ. քանզի ասի տեսակ՝ և տեսակագոյնն, ասի և ընդ միմեամբքն։ Արդ սեռականագոյն սեռ ասի, որ ոչ ունի վերագոյն քան զինքն սեռ. և դարձեալ տեսակագոյն տեսակ ասի՝ որ ոչ ունի քան զինքն այլ տեսակ 'ի ներքոյ։ Իսկ ընդ միմեամբք սեռ է, որ և սեռ, կարող գոյ գոլ և տեսակ. նոյնպէս և ընդ միմեամբք տեսակ ասի՝ որ և տեսակ՝ կարող գոյ գոլ և սեռ։ Արդ ծայրագոյն սեռ՝ սեռականագոյն ասի. իսկ ծայրագոյն տեսակ՝ տեսակագոյնն. իսկ միջն սեռ՝ ընդ միմեամբքն սեռ, իսկ միջն տեսակ, ընդ միմեամբքն տեսակ։ Արդ է տեսանել երիս իրողութիւնս, և չորս բաղադանութիւնս. երկու ծայրք՝ և մի միջն։ Իսկ բաղադանութիւն՝ մի 'ի սեռականագունիցն սեռէ՝ առ սառորնագոյնն. այս ինքն տեսակագոյնն, և մի 'ի տեսակագունէն առ վերագոյնն։ Այլ երկու ընդ միմեամբքն, քանզի ունի

1 Երկու օրին. ընտրելագունիւք։

մի առ վերագոյնն քան զնա, և միւս առ ստորագոյնն քան զնա։ Արդ վասն զի գիտացաք երիս գոլ զիրսն, և չորս զբաղազանութիւնս, բե՛ր այսուհետև տեսցուք՝ վասն է՛ր ընդ միմեամբք առնն այսոքիկ։ Նաև պարտ է գիտել, եթէ ընդ միմեամբք առնն, վասն զի կարող գոն և սեռ գոլ և տեսակ. տեսակ այնր՝ որ 'ի վերոյ քան զնա, և սեռ՝ որ 'ի ներքոյ քան զնա։

Արդ ուսեալք՝ եթէ զի՞նչ է սեռականագոյնն՝ և զի՞նչ տեսակագոյնն, և զի՞նչ ընդ միմեամբքն՝ բե՛ր զարիստոտելական բաժանումն յարադրեսցուք, զի զստուգագոյնն ուսցուք յաղագս այսոցիկ։

Արդ բաժանեն արիստոտելականքն զսեռականագոյն սեռն այսպէս. “ Գոյացութիւն բաժանի 'ի մարմին և յանմարմին. մարմինն՝ 'ի շնչական և յանշնչական. շնչականն՝ 'ի կենդանաբոյս, և 'ի բոյս, և 'ի կենդանի. կենդանին՝ 'ի բանաւոր և յանբան. բանաւորն 'ի մահկանացու և յանմահ. մահկանացուն՝ 'ի մարդ և յարջառ „։ Արդ զգոյացութիւն առեն սեռականագոյն սեռ. վասն զի ոչ ունի քան զինքն գերազանցեալ սեռ։ Իսկ տեսակագոյն տեսակ առեն ըզզմարդն՝ որ ոչ գոյ 'ի ներքոյ այլ տեսակ, քանզի այն է վերջագոյն։ Իսկ զկենդանին և զշնչականն ընդ միմեամբք սեռ կոչեն, և ընդ միմեամբք տեսակ. քանզի 'ի միջի գոլով կարողք գոն և սեռք գոլ և տեսակք. այսոքիկ այսպէս։

Արդ տեսցուք՝ զի՞նչ է կենդանին, կենդանաբոյս, և բոյս։ Արդ բոյս է՝ որ ունի երիս զանազանութիւնս. զծննդականն, զաճողականն, զսննդականն. և վա՛շ արարչականին բնութեան, զի 'ի շնորհելն մեզ զծննդականն՝ շնորհեաց և զաճողականն. զի 'ի ձեռն նորա կատարեալք լինելով կարասցուք զնմանն ծնանել. և վասն զի աճողականն պէտս ունի սննդականին՝ վասն այսորիկ և զսննդականն շնորհեաց մեզ։ Արդ այսոցիկ երեցս զմի 'ի զգայութեանցն ընդունելով այս ինքն զշօշափականն՝ լինի կենդանաբոյսն. և զի կենդանաբոյսն զշօշափականն միայն ունի՝ աստուստ է յայտ, զի 'ի ծագել արեգականն 'ի ջուրս ծովուն՝ բանայ զպատենկուռսն և հեշտանայ, և հարելոյ շողոյն՝ ամփոփի. և 'ի վերայ այսոցիկ այլ ևս չորք զգայութիւնքն

'ի ներս եկեալ համդերձ շարժումն զկենդանւոյն բաղկացուցանեն։ Այլ գիտելի է՝ եթէ ուր շարժողութիւն է, անդ և զգայութիւն, այլ ոչ ուր զգայութիւն է, անդ և շարժողութիւն. վասն զի որպէս տրպագոյն[1] ինչ զգայութիւն ստորադասեալ է ընդ շարժողութեամբ։

Այլ թերևս ուրեք տարակուսեսցի ոք ասելով, եթէ ուստի՞ յայտ է՝ թէ ա̃մ շարժումն զգայութիւն ունի. ասեմք՝ եթէ վասն զի ոչ ինչ ընդ վայր առնէ բնութիւն։ Արդ եթէ արտաքոյ զգայութեան շնորհեալ էր զշարժումն, այն ինչ համդերձեալ էր սատակիլ, 'ի քարանձաւաց հոսիլ, կամ 'ի գուբս անկանիլ. զոր ոչ կամի բնութիւն, որպէս արարիչ յետ արարչին. ուստի այնպէս իւրոց արարածոց խնամ տանի բնութիւն, մինչ զի զորդն որ ոչ ունի զգայութիւն՝ անոսկր և կակղագոյն եստեղծ՝ զի մի 'ի բարձունէ ուստեք անկեալ սատակեսցի։ Արդ ուսեալք յասացելոցդ՝ թէ նուաղ է սահմանդ կենդանւոյն. և պարտ է այսպէս սահմանել, Գոյացութիւն ներշնչական, զգայական, ինքնաշարժ. շարժումն ասեմ զտեղի 'ի տեղւոջէ փոխումն։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ ԺԷ

ՀԱՍԵԱԼ է Պորփիւրիոս յաղագս նոցին վարդապետութիւն առնել. նախ յաղագս ծայրիցն ուսուցանելով, և ապա յաղագս միջոցացն. այս ինքն յաղագս ընդմիմեամբքն, և ապա յաղագս տեսակագունիցն։ Արտուստ տարակուսեն ոմանք, եթէ էակն որպէս սեռ ստորոգի զսեռականագունից սեռիցն, այս ինքն զտասն ստորոգութեցն։ Արդ որս ասեմք, եթէ ոչ որ-

1 Մի օրին. փոքրագոյն։

պէս սեռ՝ և ոչ որպէս այլքն 'ի բաժանելեացն՝ որք ըստ վեց յեղանակաց բաժանին՝ կարող գոյ բաժանիլ այսպէս և ըստ այսմ օրինակի ։ Նաև որպէս տեսակ բաժանիլ ոչ կարէ ․ քանզի տեսակն յանհատս բաժանի, իսկ անհատք մի բնութեամբ յայտնեն, իսկ սեռականագոյն սեռքն բազում բնութիւնս յայտնեն, ապա ուրեմն ամենայն իրօք էակն ոչ կարող գոյ՝ որպէս տեսակ բաժանիլ յանհատս ։ Այլ մի՛ գուցէ որպէս բոլոր 'ի մասունս բաժանի ․ այլ և ոչ այս է ճշմարիտ ․ քանզի բոլոր՝ կամ 'ի նմանամասնայս բաժանի, կամ յաննմանամասնայս ․ 'ի նմանամասնայս՝ որպէս փայտ 'ի բազում փայտս ․ իսկ յաննմանամասնայս՝ որպէս Սոկրատէս 'ի ձեռս և յոտս և 'ի գլուխս ։ Իսկ էակ 'ի սեռականագոյն սեռսն, ոչ որպէս 'ի նմանամասնայս բաժանի ․ քանզի նմանամասնայքն և անուան հաղորդին և իրի, այնմ որ բաժանեցաւ 'ի նմանամասնեայս ։ Իսկ սեռականագոյն սեռքն՝ թէպէտ և անուան հաղորդին էակին, այլ և ոչ իրի ։ Այլ և ոչ աննմանամասնաբար կարող գոյ բաժանիլ ․ վասն զի աննմանամասնաբար բաժանեալքն՝ ոչ անուան և ոչ իրի հաղորդին ․ իսկ սեռականագոյն սեռքն՝ թէպէտ և ոչ իրի, այլ սակայն անուան հաղորդին, քանզի էակք ասին ։ Այլ և ոչ որպէս համանուն ձայն բաժանի ․ զի համանունքն՝ անուան միայն հաղորդութիւն տայ ․ իսկ էակն և անուան և իրի հաղորդութիւն տայ՝ տասն սեռականագոյն սեռիցն ։

Երկրորդ՝ վասն զի համանուն ձայն հասարակաբար հաղորդութիւն տայ որք ընդ նովաւն են ․ իսկ էակն՝ սեռականագոյն սեռիցն ոչ այսպէս ․ քանզի գոյացութիւն առաւելագոյն էակ քան զայլսն ․ զի պատահմունքն նուազագոյնք են ։ Այլ մի՛ արդեօք որպէս էութիւն 'ի պատահումն բաժանի ․ այլ և ոչ այս ճշմարիտ ․ վասն զի և ոչ գոյ՝ պատահումն, և ոչ պատահմունքն՝ գոյ ․ ապա եթէ ոչ կոչին՝ ապա և ոչ կարող գոյ էակն որպէս 'ի պատահումն բաժանիլ ․ այլ և ոչ որպէս պատահումն յէութիւն ․ այլ և ոչ որպէս պատահումն՝ 'ի պատահումն ։ Յորոց պակաս է ցուցանել՝ թէ և ոչ որպէս սեռ է 'ի տեսակս, վասն զի յընդդիմաբաժանեալ տեսակսն՝ ոչ է բնութեամբ

առաջին և վերջին, իսկ առ ըմբռնումն առաջին է գոյ, և վերջին պատահմունքն. ապա ուրեմն ոչ կարէ որպէս սեռ՝ ՚ի տեսակս բաժանիլ: Բայց ասասցուք՝ եթէ զի՞նչ է ըմբռնումն առաջին, և ըմբռնումն վերջին. ըմբռնումն առաջին է, որ շարաբերի՝ և ոչ շարաբերէ, շարաբառնայ՝ և ոչ շարաբառնի. որգոն՝ ըմբռնումն առաջին է կենդանւոյն. քանզի յորժամ ասես մարդ՝ շարաբերի կենդանին, այս ինքն թէ և կենդանի է. իսկ յորժամ ասես թէ կենդանի՝ ոչ շարաբերի մարդն. քանզի ոչ միանգամ որ կենդանի է՝ մարդ է: Նոյն շարաբառնայ՝ և ոչ շարաբառնի. վասն զի եթէ ՚ի բաց բառնի կենդանին՝ ամենայն տեսակքն շարաբառնին. իսկ եթէ ՚ի բաց բառնի մարդն և արծուին՝ ոչ շարաբառնի կենդանին: Նոյնպէս և գոյ՝ ըմբռնումն առաջին է. վասն զի շարաբերի՝ և ոչ շարաբերէ. շարաբառնայ՝ և ոչ շարաբառնի. ապա ուրեմն յասացելոցս երևի՝ թէ ոչ կարող գոյ եակն սեռ գոլ: Բաւ արդ այսոքիկ յաղագս ոչ գոլոյ զեակն սեռ. երթիցուք այսուհետև ՚ի մեկնութիւն առաջիկային:

« Որպէս ասէ Արիստոտէլ »: Կամի յարիստոտէլական կարծեաց ցուցանել՝ թէ ոչ է եակն սեռ, այլ համանուն ձայն. զի անուան հաղորդութիւն տայ սեռականագոյն [1] սեռիցն՝ այլ և ոչ իրողութեան: « Թէպէտ զամենայն ոք եակս կոչէ, համանունաբար, այլ ոչ փաղանունաբար »: Արդ ասէ, թէ արդարև սեռ է եակն, պարտ է նմա և անուան հաղորդութիւն տալ և իրի, արդ որովհետև ոչ տայ, ոչ կարող գոյ: Արդ որպէս Պղատոն ասէ, եակն սեռ գոյ տասն սեռականագոյն սեռիցն. և վասն զի ոչ պարտ է զՊղատոնի կարծեօքն զանց առնել զառն զիմաստասիրութիւն ՚ի լոյս բերիցելոյ, բե՛ր ասացութիւն ինչ յաղագս սորա զեակն սեռ ասելոյ՝ արտադրեսցուք: Քանզի ասէ՝ եթէ եակն սեռ է. քանզի որ անուան և իրի հասարակութիւն ունի ընդհանրականաց ոմանց, սեռ կոչի. արդ եթէ եակն տասն սեռականագունից սեռիցն և անուան և իրի հասարակութիւն ունի, յայտնապէս սեռ է: Իսկ ընդհանրականաց ոմանց ասացաւ, վասն տեսակագոյն

1 Մի օրին. պէտականագոյն:

տեսակի. քանզի և նա անուան և իրի հասարակուե̃ ունի անհատիցն, բայց ոչ է սեռ։

Բայց Արիստոտէլ տարաձայն է առ այսոսիկ, որպէս և յառաջագոյն Պորփիւրիոս ասաց, եթէ Սէ է սեռ էակն՝ այլ համանուն ձայն։ Նա արդ զի ոչ սեռ է և ոչ համանուն ձայն, կատարելաբար 'ի ստորոգու̃իւն Արիստոտէլի ուսցուք։ Սեռ ոչ կարէ գոլ էակն, որպէս ասէ Արիստոտէլ, վասն յառաջասացելոցն պատճառաց. այլ և ոչ համանուն ձայն կարող գոյ գոլ, որպէս ասէ Պղատոն, վասն յառաջասացելոց պատճառացն։ Նա արդ զի՞նչ ասասցուք, տարաձայնեցի՞ն արդեօք առ միմեանս իմաստասէրքդ թէ ոչ. քանզի իւրաքանչիւր ոք զծայրս նոցին յայտ արար զմիջէն և առ մին։ Արդ ստուգաբար փաղանուն ոչ կարէ գոլ. վասն զի 'ի փաղանունսն ոչ գոյ առաւել և նուազ. իսկ աստ առաւել է գոյացուե̃ քան զայլ ստորոգու̃իւնս։ Նա դարձեալ փաղանունքն հասարակաբար տան անուան և իրի հաղորդութի̃. իսկ էակն ոչ հասարակաբար տայ, քանզի գոյացուե̃ առաւել էակ է, և անուամբ և իրօք քան զայլ ստորոգութիւնս. արդ ոչ փաղանուն ստուգաբար կարէ գոլ, այլ և ոչ համանուն, այլ որպէս 'ի միջէ և առ մի։ 'Ի միջէ էակէ անուանեցան [1] տասն սեռականագոյն սեռքն՝ էակք. և առ մին առ նոյն ինքն էակն. վասն զի իւրաքանչիւրոք 'ի տասն սեռականագոյն սեռիցն բաղձայ՝ է գոլ և կոչիլ։

Արդ ուսեալք յաղագս էակին՝ եթէ ո՞րպէս և ըստ որո՞ւմ յեղանակի բաժանի էակն 'ի տասն սեռականագոյն սեռսն, ասասցուք եթէ քանաբար ասի էակն։ Նա պարտ է գիտել՝ եթէ եռակի ասի էակն։ Քանզի էակն՝ կամ ըստ գիտուե̃ և ըստ բնուե̃ եզերեալ գոյ, կամ ըստ գիտութե̃ և ըստ բնութեան անեզր. կամ բնութեամբ անեզր, և գիտութեամբ եզերեալ, և կամ գիտութեամբ անեզր, և բնութ̃ եզերեալ։ Արդ մինդ 'ի դոցանէ ոչ կարէ գոյանալ, քանզի ուր համանէ գիտութիւն, ուր ոչ համանէ բնութիւն։ Արդ եզերեալ և գիտութեամբ և բնութեամբ տասն սե-

1 Մի օրին. տասնդէցան ։

ռականագոյն սեռքն. որ գլխոյքն եղերեալ են, վ՛ն զի գլխաւորք զնոսա, թէ տասն են. իսկ ոչ եղերեալ, ոչ ըստ գիտուե և ոչ ըստ բնութե անհատքն. քանզի այսուքիկ ոչ ըստ բնութե են եղերեալ և ոչ ըստ գի-տուե. և ըստ բնուե՝ զի հանապազ և միշտ եղանին. Արդ որ միշտ եղանի, ոչ է եղերեալ ըստ բնութե, այլ և ոչ ըստ գիտուե. քանզի որ ըստ բնութե ոչ է եղերեալ, և ևս առաւել ըստ գիտութե: Արդ ան-հունս ասեմ զանհատսն, ոչ եթէ անեղանելիք ՚ի հը-նէն. քանզի ամենայն ուրեք եղերեալք են յեղերեցե-լում տեղւոջ՝ այս ինքն յաշխարհի. այլ վասն զի միշտ եղանին, վ՛նկ ասեմք յանհունս գոլ: Իսկ եղերեալ ըստ բնուե՝ և անհունս ըստ գիտուե ասեմք զտեսակ-սըն. և վասն զի տեսակք ըստ բնութեան եղերեալք են, իսկ ըստ գիտուե անհունք. քանզի են տեսակք, զորս ոչ գիտեմք, որք են ՚ի խորս ծովու և յանկոխ լե-րինս, որք և ոչ անուամն հանդիպեցան առ ՚ի մէնջ: Արդ յայտ ուրեմն է յասացելոցս, եթէ է՝ և եռակի իմանի էակն. սեռականագոյնքն սեռքն, և անհատ-քըն, և տեսակքն:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՊՐԱԿՔ ԺԲ

Թէպէտ և հետևիլ Ստագիրացւոյն խոստացաւ իմաստասէրս, բայց սակայն ոչ ամենևին առանց յի-շելոյ թողու զիւր վարդապետին զպատուէր, այս ինքն զՊղատոնի. քանզի երկս յեղանակս բաժանման ա-ւանդէ մեզ Պղատոն. որոց առաջինն այս է: Ասէ թէ պարտ է զբաժանումն ՚ի սեռականագունիցն լինել մինչ ցտեսակագոյնսն, և յանկոյս տեսակագունիցն ոչ անցանել: Այլ խնդրելի է, թէ վ՛ն էր մինչև ցտե-սակագոյնսն հրամայէ իջանել, և ոչ ևս յանկոյս

յանհատոմն անցանել։ Այլ ասելի է, թէ վասն այնա-
րիկ ոչ հրամայէ յանհատոմն անցանել, զի մի՛ գոցի
յանհատոմն առնել զբաժանումն, որք ոչ ունին զմշտըն-
ջենաւորութ։ Վասնզի եթէ ասես, եթէ մարդ բա-
ժանի 'ի Սոկրատէս, 'ի Պղատոն, և յԱղկիբիադ. ոչ
ևս մնացական[1] և մշտնջենաւորս, այլ յայնոսիկ՝
որ այսօր իցեն արդեօք՝ և վաղիւ ոչ ևս։ Իսկ բաժա-
նումն պարտ է 'ի մշտնջենաւորսն լինել, որպէս՝ գոյ-
ացութի 'ի մարմինս և յանմարմինս, կենդանիսն՝ 'ի բա-
նաւորս և յանբանս. վասն զի հաստատուն դիտաւորութ
քան մշտնջենաւորաց լինի և որք միշտ և նոյնպէս գոն։
Այլք ասեն, թէ պարտ է զբաժանումն ոչ յայսպիսի
և յայսպիսի լինել յանհատս, այս ինքն Թեմիստոկլի,
և յԱղկիբիադ, այլ յընդհանուր յանհատոմն։ Եւ որ
ասեմք, եթէ ընդհանուր անհատոմն ոչ այլ ինչ է՝ այլ
տեսականագոյն տեսակ։

Երկրորդ յեղանակ բաժանմանն՝ զոր պատուիրէ
Պղատոն պահել, ասելովն թէ Պարտ է որ բաժանեն՝
ոճով բաժանել և առնել զբաժանումն, ոչ գերազան-
ցական աստիճանաւ քայլափոխել. որպէս՝ պարտ է
զգոյացութիւն նախ 'ի մարմինս և յանմարմինս բաժանել,
այլ ոչ 'ի կենդանի, 'ի կենդանաբոյսն և 'ի բոյսն, զի
մի՛ թողցէ որ 'ի միջոցին. և զի ախորժելի է Պղա-
տոնի ոճով առնել զբաժանումն, ինքն իսկ յայտ արար
ասելով, Օ՛ի ըստ բաժանականն, ասէ, հնարս՝ ոչ ինչ
պանծացի փախչել։

Երրորդ յեղանակ, զոր պատուիրէ յեղուտոմն առ-
նուլ զբաժանումն, այլ ոչ 'ի մակեղուտոմն. զի մակե-
ղուտքն անհունք են, և ոչ ենթակացուցանեն զբնութ
որպէս և եղուտքն։ Իսկ յանհունս բարբառոցն և
յայնոսիկ՝ որք ոչ յայտնեն զբնութի ենթակայ իրին՝
ոչ է պարտ առնել զբաժանումն. քանզի անար-
հեստ և անմակացական է, որպէս ինքն իսկ ասէ և
յայտ առնէ 'ի Փիլիպպէի տրամաբանութեան, ա-
սելով թէ Որ առնէ զբաժանումն յեղուտ ձայնի-
ցըն, նման է արուեստաւոր խոհակերի[2] որ ըստ յօ-
դից առնէ զքակտումն. իսկ որ 'ի մակեղուտոմն

1 Երկու օրին. մնացական։ 2 Մի օրին. մսագործի։

առնէ՝ նման է փցուն խոհակերի, որ ոչ ըստ յօդից առնէ զքակմունսն, այլ վայրապար: Այս են երեք յեղանակ բաժանման՝ զորս հարկ է յամենայն բաժանման պահել: Նաև պարտ է գիտել՝ թէ յամենայն բաժանման՝ ել է և էջ. և էջ 'ի սեռականագունից 'ի տեսակագոյնսն, և որ ընդարձակէ զբաժանումն. իսկ ելն 'ի տեսակագունից 'ի սեռականագոյնսն, որ նեղէ զբաժանումն, որք քատակեցան անհատի և բազմութեան. քանզի 'ի սեռականագունից 'ի տեսակագոյնսն իջանել բազմութեն քատակի. իսկ 'ի տեսակագունից 'ի սեռականագոյնսն ելանել՝ անհատի:

«Արդ տասունք սեռականագոյնք»: Զայս ասելով Պորփիւրիոս՝ յայտ առնէ զեզերեալսն և ըստ բնութե և ըստ գիտութե. այս ինքն զսեռականագոյնսն. քանզի ասելով տասն՝ յայտ առնէ՝ թէ գիտեմք զնոսա, և բնութբ եզերեալք գոն: «Իսկ տեսակագոյնքն ներ թուով իմն են՝ այլ ոչ յանհունս»: Պարզեալ աստանօր յայտ առնէ և զայն՝ որ ըստ բնութե եզերեալք են, և անհունն ըստ գիտութե. քանզի յասելն՝ թէ «Ներ թուով իմն են», յայտ առնէ թէ եզերեալք են ըստ բնութե. իսկ յասելն՝ «Այլ ոչ յանհունս», յայտ առնէ՝ թէ անհունք են ըստ գիտութե. որպէս զի ասիցէ՝ թէպէտ և ըստ մերում գիտութե անհունք են, այլ ոչ են յանհունս: «Իսկ անհատքն որ էին զկնի քան զտեսակագոյնսն անհունք»: Ամենք ասեն թէ անհունն ասէ զանորիշսն, և յայտ առնէ զայն՝ որ ոչ ըստ բնութե և ոչ ըստ գիտութե եզերեալ են. քանզի երկակի է անհունն՝ անեղանելին և անորիշն. արդ ասեն, եթէ ոչ վասն անլինելոյն է անհուն, այլ վասն զի 'ի ներկայումն են, և անորիշք են. և զիա՞րդ են անորիշք՝ աստուստ յայտ է, բնուի ամենայն ուրեք զամենայնի զծայրսն ունի. քանզի չափ ունի և սակաւուց և յոլովից և փոքունցն և մեծամեծաց: Նաև զոր ինչ և ասեմք, ասեն, այսպիսի ինչ է. սահմանեաց բնութի զկատարումն հասակի՝ զչափ ունել զչորեքկանգնեան, և ոչ ևս աւելի 'ի մեծագոյնսն ետ անցանել. և դարձեալ զփոքրագոյնն հասակ որոշեաց երկուկանգնեան, և 'ի նուազագոյնսն ոչ ետ անցանել. իսկ զմիջինսն

անորիշ եթող։ ՚Նոյնպէս և ըստ սակաւուց, և ըստ յոլովից. քանզի սահմանեաց զյոլովիցն, որպէս զի ստացես զկատարեալ բազմութիւն հազար. իսկ զկատարեալ պակասութիւն հարիւր. իսկ զմիջին քանակութիւն՝ անորիշ։ Արդ ըստ այսմ բանի ասէ Պորփիւրիոս զանհատսն անհունս. քանզի ասէ՝ եթէ սահմանեալ են. վասն զի որոց ծայրքն եզերեալք են, այնոցիկ և մէջն. այլ անհունն ասին, վասն անորոշութե[1]. այլ ոչ որպէս անեղանելիք ։

“Վասն որոյ ՚ի սեռականագունիցն ՚ի տեսակագոյնսն ՚իջեալ հրամանն տայր Պղատոն դադարել”. և այս առաջին յեղանակ և պատուէր Պղատոնի յաղագս բաժանման ։ “Եւ իջանելով ՚ի ձեռն միջնոցն բաժանելով տեսակարարօք տարբերութեամբք”. այս երկրորդ յեղանակ բաժանման, զոր հրամայէ Պղատոն. այս ինքն՝ եթէ պարտ է ոճով իջանել ՚ի տեսակագոյն տեսակսն, և ոչ գերազանց աստիճանի ոտամբ ։ “Եւ բաժանելով տեսակարարօք տարբերութեամբք”. այս երրորդ յեղանակ զոր պատուիրէ Պղատոն, եթէ պարտ է յեղուտսն առնել զբաժանումն, և ոչ ՚ի մակեղուտսն, զի անմակացելի են. և զանհունսն ասէր թողուլ. քանզի ոչ գոյ լինել ՚ի սոցանէ մակացութի, այս ինքն եթէ յորժամ անորիշք են և անհունք՝ անորոշիցն և անհնիցն ոչ գոյ մակացութի և արհեստ ։

1 Մի օրին. անորոշութե ։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ
ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՊՐԱԿՔ ԺԹ

ՈԻՒՐ զդիտաւորութիւն ամ իրօք պահելով իմաստասէրս՝ բանականագոյն խնդրել յանձն առեալ. քանզի մտ արմատոյ և հիման բանականին այժմ զվարդապետութիւն առնէ, այս ինքն յաղագս ստորոգելոյ և ենթակայի. և զի այսոքիկ երկոքեան արմատ և հիմն են բանականին, այս ինքն ստորոգեալն և ենթակայն, յայտնի է յասացելոցս: Բանականին կատարումն ունի զապացուցականն, իսկ ապացուցականն 'ի շարաբանութեացն բաղկանայ, իսկ շարաբանութիւքն 'ի նախադասութեանց, իսկ նախադասութիւքն 'ի ստորոգելոյ և յենթակայէ. իսկ ապացուցականն է հաստատութիւն և անդիմամարտելի. և շարաբանութիւն է՝ շարադրեալ բան, մարդ կենդանի է, իսկ կենդանին գոյ. իսկ մասունք շարաբանութեան են նախադասութիւնք: Առաջին նախադասութիւն՝ մարդ կենդանի, երկրորդ նախադասութիւն՝ կենդանին գոյ: Բայց ունի նախադասութիւն՝ ենթակայ և ստորոգեալ. ենթակայ ունի առաջին նախադասութիւն զմարդն, իսկ ստորոգեալ զկենդանին: Իսկ երկրորդ նախադասութիւն, ենթակայ ունի զկենդանին, իսկ ստորոգեալ զգոյն:

Արդ ստորոգեալն կամ յոլովագոյն պարտի գոլ քան զենթակայն՝ կամ հանգէտ նորին. բայց նուազ և ոչ երբէք: Իսկ ենթակայն՝ կամ հանգէտ կամ նուազ. բայց յոլով ոչ երբէք քան զստորոգեալն: Արդ յոլովագոյն ստորոգեալն քան զենթակայն, որպէս կենդանին քան զմարդն: Իսկ հանգէտ ստորոգիլ ասեմք ենթակայիս՝ այս ինքն մարդոյ զծիծաղականն. քանզի հանգիտանիւթք են միմեանց ծիծաղականն և մարդն, և հակադարձին առ միմեանս: Եւ յա-

րացոյց ասացելոցդ՝ նախաձառեցեալ բաժանումն · քանզի գոյացութիւն՝ ստորոգեալ միայն է · իսկ անհատաքըն ենթակայ · իսկ միջինքն ստորոգեալք են և ենթակայք · այլ տեսակագոյնն՝ ենթակայ առաւել գոյ քան ստորոգեալ, զի անհատիցն միայն ստորոգի, բայց ենթակայացեալ և տարընկղմեալ ամենեցուն վերնոցն · իսկ ընդմիմեամբքն՝ ստորոգեալք առաւել քան ենթակացեալք ։

Աստուսա տարակուսեն ոմանք ասելով, եթէ զիարդ ասէք զգոյացութիւն միայն ստորոգեալ · քանզի ահա տեսանեմք զսպիտակն, այս ինքն զպատահումն ստորոգեալ գոյացութեան · և է կաթն գոյացութիւն, իսկ սպիտակն պատահումն · ապա ուրեմն ոչ բարւոք ասէք զգոյացութիւնն՝ թէ ստորոգի միայն, քանզի ահա և ենթակայանայ պատահմանց ։ Առ այսոսիկ ասեմք, եթէ ոչ ասեմք զնա ամենայն գոյիցն ստորոգիլ, այլ այնոցիկ միայն որք ընդ նովաւն են, քանզի այնոցիկ որք ընդ նովաւն են, ոչ ումեք ենթակայանայ՝ այլ միշտ ստորոգի · և յարացոյց ասացելոցդ՝ զնոյն բաժանումն ստորարկեսցուք · և եղիցի գոյացութիւն, որպէս բոլոր ինչ · իսկ անհատքն որպէս մասունք · իսկ միջինքն՝ և բոլորք և մասունք · այլ տեսակագոյն առաւել մասն քան թէ բոլոր · իսկ ընդմիմեամբքն առաւել բոլոր քան թէ մասունք ։ Արդ որպէս բոլորն զամենայն ընդ ինքեամբ ունի զմասունս, նոյնպէս և գոյացութիւն[1] ընդ ինքեամբք ունի զամենայն բաժանեալսն 'ի նմանէ ։ Արդ բոլորն և գոյացութիւն՝ թէպէտ նմանք միմեանց են ասացելովքդ՝ բայց սակայն այլ է բոլոր՝ և այլ է գոյացութիւն · քանզի գոյացութիւն իւրով ենթադրութեամբն կարող գոյ յայնսն տեսանիլ՝ որք 'ի նմանէն բաժանեալք են, իսկ բոլորն իւրով ենթադրութեամբ՝ ոչ կարող գոյ որպէս բոլոր տեսանիլ յիւր մասունս · քանզի ոչ կարող գոն ձեռն և ոտն 'ի գլուխ տեսանիլ ։

Արդ՝ ասացեալ Պորփիւրի յաղագս սեռականագունիցն և տեսակագունիցն, և ընդմիմեամբցն[2], ոչ անտես առնէ և զանհատսն, այլ սահմանէ և զնա

1 Երկու օրին · գոյութիւն ։

2 Մի օրին · ընդմիմեամբքն ։

ասելով, եթէ « Ընդհատ է 'ի յատկութեանց բաղկացեալն, որոց հաւաքումն ոչ երբէք 'ի վերայ այլոց տեսցի »։ այս է սահման անհատի։ Նաւ յարացոյց իմաստասէր եբեր զՍոկրատէս. քանզի նա անհատ գոլով 'ի յատկութեանց գոյ բաղկացեալ. այս ինքն 'ի կընտութենէ, և յառաջաքաղերթութենէ և յուշիմութենէ, և 'ի գոլոյ Սոփրոնիսկոսի որդի։ Արդ այսոցիկ հաւաքումն, ոչ երբէք միաբան յայլոց վերայ տեսանի. քանզի թէ կունդ է, քաղրթեղ չէ, թէ քաղրթեղ է՝ ուշիմ չէ, թէ ուշիմ գոյ՝ Սոփրոնիսկոսի որդի ոչ կարէ գոլ։

Այսուստ տարակուսեն Ձեմականքն, եթէ ըստ երկուց յեղանակաց յանցեաւ Պորփիւրիոս, զանհատըն 'ի պատահմանցն ասելով լինել. զոր Արիստոտէլ նախ և լաւագոյն և պատուականագոյն ասէ գոլ գոյացութիւն 'ի ստորոգութիւնս. յայտ է թէ յոյժ սղալեաց յայսոսիկ Պորփիւրիոս. քանզի եղուսն յեղտիցն լնանեն, և ոչ 'ի մակեղտիցն։ Այլ և ընդդէմ այսորիկ, քանզի ինքնաստորակայքն բաղկացուցանեն զայլաստորակայսն, իսկ ըստ Պորփիւրի՝ այլաստորակայքն բաղկացուցանեն զինքնաստորակայսն՝ որ է անհնարին։ Քանզի ինքն Պորփիւրիոս ասէ՝ թէ « Պատահումն է՝ որ լինի և բացալինի առանց ենթակային ապականութեան »։ Արդ եթէ 'ի պատահմանց բաղկացեալ է անհատն, հարկ է ապականիլ ենթակային յապականիլ պատահմանցն։ Առ այսոսիկ պատասխանատրեն պղատոնականքն ասելով, թէ Ոչ ասէ 'ի պատահմանց բաղկանալ անհատին, այլ ճանաչիլ. արդ այսպէս պղատոնականքն։ Իսկ դուք, ով Ձեմականք, զի՞նչ ասիցէք. և նոքա ոչ ինչ անտեղի ասեն լինել զէութիւն 'ի պատահմանց, և առ այլ գոլ էութիւն, և առ այլ պատահումն. քանզի որպէս ջերմութիւն 'ի հուր, և էութիւն ասի գոլ՝ և պատահումն. քանզի որպէս առ անորակ մարմինն՝ պատահումն, իսկ առ հուրն էութիւն. քանզի գոյութիւն [1] հրոյ՝ ջերմութիւն է. նոյնպէս և կնտութիւն որպէս մարդոյ ելոյ պատահումն ասեմք. իսկ որպէս առ Սոկրատէս գոյացութիւն։

« Արդ բացատրելոյ սեռի և տեսակի զինչ իւրա-

1 Երկու օրին. գոյացութիւն։

քանչիւր ոք է »: Աստուստ զենթադրութենէ սեռակա-նագունիցն և տեսակագունիցն ճառէ: « Վասնզի պարտ և արժան է, կամ հանգէտք զհանգիտոց ստո-րոգիլ և կամ մեծն զնուազէն, որպէս խրխնջականն ձիոյ, իսկ մեծն՝ կենդանին զմարդոյ »: Աստուստ զարմատոյ և զհիմանէ բանականին ճառէ, զստորո-գելոյ և զենթակայէ. և ասէ՝ թէ ամենայն նախա-դասութիւն ստորոգեալ և ենթակայ ունի. և ստորո-գեալն կամ մեծագոյն քան զենթակայն՝ կամ հան-գէտ, բայց նուազ և ոչ երբէք. իսկ ենթակայն կամ հանգէտ ստորոգելոյն է՝ կամ նուազ, բայց յոլով և ոչ երբէք: « Վասնզի բոլոր իմն սեռն է, իսկ անհատն մասն »: Աստուստ ասէ՝ թէ որ ստորոգին միայն, բո-լորումն ստորոգեալ է, իսկ անհատն մասին. որպէս 'ի տեսութեան յառաջագոյն ասացաք, զի՞նչ զանազանին բոլորն՝ և որ ստորոգին միայն: Եւ արդ ասասցուք, թէ զի՞նչ զանազանի մասն յանհատէն. արդ զանա-զանի, վասն զի մասն ոչ կարէ ընդունել զենթադրու-թիւն բոլորին. այսինքն՝ ձեռն մասն գոլով ոչ ընդունի զենթադրութիւն ոտից և գլխոյ, իսկ անհատն ընդունի զենթադրութիւն գոյացութեան: Այսքիկ մեզ և յա-ղագս տեսակի վարդապետեցան:

# ՅԱՂԱԳՍ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

## ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ Ի ԴԱՒԹԷ

### ՊՐԱԿՔ Ի

Յետ երկաքանչիւրոց ծայրից վարդապետութեան՝ եկեսցուք և 'ի տարբերութիւն, որ ունի երրորդ դասաւորութիւն, թէպէտ և բնութեամբ յառաջագոյն է քան զտեսակ. այլ զի մի օգտեսցի վարդապետութիւն սեռին և տեսակին 'ի միմեանց, քանզի նոքա 'ի ներում զինչէին ստորոգին, իսկ տարբերութիւն և յատուկ և պատահումն՝ 'ի ներում որպիսինչէին, վասն այսորիկ զերրորդն ընկալաւ աստիճան: Արդ սկիզբն առնելով վարդապետութեան՝ որ յաղագս տարբերութեան՝ նախ ըստ սովորութեանց զբացորոշութեանցն Արիստոտելի զհոմանունութիւն բացորոշեսցուք. քանզի հոմանուն՝ ձայնիցն[1] է տարբերութիւն: Արդ ասի տարբերութիւն եռակի, քանզի է "Տարբերութիւն հասարակաբար, յատկապէս և յատկեղ": Այլ հասարակաբար է՝ որ նշանակէ անջատական պատահումն. իսկ յատկապէս՝ որ նշանակէ անանջատական, իսկ յատկեղ՝ որ զգոյացութիւն յարկացուցէ: Այլ արդ առաջնոյն յարացոյց սպիտակն՝ որ է յիս. որ է անջատական և կարող գոյ լինել սեաւ. իսկ երկրորդին՝ խաժակնութիւն որ է յիս, այս է անանջատականն. իսկ երրորդին՝ բանականն, որ տարադատէ զմեզ յանբանիցն. արդ այս տարբերութիւն գոյացութիւն յայտնէ: Բայց պարտ է գիտել, եթէ զի՞ են երեք տարբերութիւնք՝ և ոչ յոլովագոյնք և ոչ նուազ քան զերիս. զոր արժան է ասել, և ապա 'ի վերջոյ՝ թէ վասն էր այսպիսի անուանց հանդիպեցան:

Երկու են իրողութիւնք. կամ պատահումն կամ գոյ-

1 Մի օրին. 'ի հոմաձայնիցն:

ացութիւն։ Իսկ պատահումն, կամ անջատական, կամ անանջատական. արդ եթէ անջատական է, առնէ զհասարակական պատահումն. իսկ եթէ անանջատական՝ առնէ զյատկապէսն։ Իսկ եթէ գոյացութիւն՝ առնէ զյատկեղն, որպէս բանականն և մահկանացուն, որք են գոյացութիւնք մեր։ Արդ եթէ երկակի խորհրդութիւնք են՝ և յերիս բաժանեալ են, յիրաւի երեք են տարբերութիւնք։ Երկրորդ պատճառ, զոր և Պորփիւրիոս ասէ՝ և այս է։ Գոյացութիւն է այլ, իսկ պատահումն՝ որ է այլայլակ. և եթէ զիարդ գոյացութիւն այլ է, իսկ պատահումն այլայլակ, առաջիկայ շարագրութիւն ուսուցանէ զմեզ։

Արդ իւրաքանչիւր ոք 'ի դոցանէ առնէ երկուս լծակցութիւնս. այլ անջատական, և այլ անանջատական. այլայլակ անջատական, և այլայլակ անանջատական։ Են և այլ երկուս. այլ, և այլայլակ. անջատական, և անանջատական, որք լինին վեց։ Եւ 'ի սոցանէ երեքն բաղկանան, և երեքն ոչ. և բաղկանան ընդ միմեամբքն, և մի այն՝ որ 'ի տրամանգեանցն է. իսկ ոչ բաղկանան՝ ընդդիմակքն. և մի՝ 'ի տրամանգեանցն։ Վասնզի ոչ բաղկանայ այն՝ որ ասէ. այլ, և այլայլակ. և ոչ որ ասէն անջատական, և անանջատական, և ոչ մի 'ի տրամանկեանցն՝ որ ասէ, այլ անջատական։ Իսկ բաղկանայ այն՝ որ ասէ, այլ անանջատական, և որ ասէ այլայլակ անջատական, և այլայլակ անանջատական։ Արդ այլայլակ անջատականն՝ առնէ զհասարակաբար պատահումն. իսկ այլայլակ անանջատականն՝ առնէ զյատկապէսն. իսկ այլ անանջատականն՝ առնէ զյատկեղն։

Արդ ուսեալք՝ եթէ վասն էր երեք են տարբերութիւնք՝ բե՛ր ըստ մերում խոստմանն ասասցուք, եթէ վասն էր այդպիսում հանդիպեցան անուանց։ Արդ հասարակաբար կոչեցաւ տարբերութիւն որ յայտնէ անջատական պատահումն. վասն զի հասարակաբար ընդունի զընդդիմականն, թէպէտ և ոչ 'ի միում ժամանակի. քանզի կարող է՝ որ սպիտակն է, յայլ և յայլ ժամանակի սեաւ գոլ. և որ շարժին, կարող գոյ դադարել յայլ և յայլ ժամանակի։ Իսկ յատկապէս տարբերութիւն կոչեցաւ՝ որ անանջատական պա-

տահուածն յայտնէ. վասն զի ոչ կարողք գոն ընդդիմակքն 'ի միում և 'ի նոյնում տեսանիլ. քանզի ոչ կարող գոն կնտութիւն և հերաւորութիւն՝ 'ի միում և 'ի նոյնում մասին տեսանիլ. և վասն զի ոչ երբէք անջատի կնտութիւն, վասն այսորիկ յատկապէս տարբերութիւն կոչեցաւ:

Իսկ յատկեղ կոչեցաւ տարբերութիւն, անանջատական՝ այլն. որպէս բանականն. վասն զի բանական գոլով մարդոյ՝ ոչ երբէք բաժանի, ոչ ազդմամբ և ոչ մտածութեամբ. վասն այսորիկ յատկեղ տարբերութիւն կոչեցաւ, վասն զի զխաժակնն մարթ գոյ մտածութեամբ սեաւակնն իմանալ. իսկ զմարդ՝ առանց բանականին անհնար է մարդ իմանալ:

“Տարբերութիւն հասարակաբար՝ և յատկապէս և յատկեղ ասասցի„: Երեւի թէ հրամայելով ասէ, թէ ասասցի. ուստի յայտ է՝ թէ իւր են անուանքդ այսպիսի տարբերութեանց. զի վասն այսորիկ ասաց՝ թէ ասասցի, ոչ ասաց թէ ասի, այլ թէ ասասցի: Ասեն ոմանք՝ եթէ ոչ բարւոք նախադասեցան սեռ և տեսակ տարբերութեան, վասն զի հանրականագոյն է տարբերութիւն քան զտեսակ: Ասեմք՝ եթէ բարւոք նախադասեցան, վասն զի առինչունականին են. և ոչ միայն զտեսակն, այլ և զանհատսն պարտ է նախադասել տարբերութեան. զի այսոքիկ առինչունակին են, և առինչունակն համանդամայն պարտի գոլ:

“Որպէս զիարդ և իցէ կամ առ ինքն, կամ առ այլ„: Բարիոք ասէ. բայց ոմանք ասեն, եթէ զառ ինքն ասելով գոլ՝ ոչ բարւոք ասաց, քանզի տարբերութիւն մինչ յոյժ պակաս յերկուս տեսանի, 'ի միում և ոչ երբէք. քանզի զիարդ ինքն ինքեան տարբեր է: Ասեմք, եթէ բարիոք ասաց. քանզի տարբեր է ինքն ինքեան յայլ և այլ ժամանակի, այլ ոչ 'ի միում՝ որ է անհնարին, որպէս ինքն ասէ: „Մանկան ելոյր՝ և այրացելոյ և ներգործելոյ՝ և դադարեցելոյ„: Աստուստ պարտ է գիտել եթէ անջատականին պատահման՝ ոմանք դիւրանջատականք են, և ոմանք դժուարանջատականք: Քանզի ներգործել ինչ և կամ դադարել՝ դիւրանջատականք, իսկ մանկան ելոյր՝ այրանալ, դժուարանջատական, քանզի միշտ յիւր ինչ

պէտս ասելով զդիւրանջատական պատահումն ասաց։ Նոյն և անանջատականն երկակի է, քանզի ոմն 'ի ծնէ, որպէս խաժակն և կորունչ. և է ինչ որ ժամանակաւոր, որպէս և կնդուն, և սպի 'ի վէրէ սևեռեալ։ Զայս ասելով յայտնէ զերկակին գոլ և անանջատականին պատահման։

“Իսկ յատկեղքն՝ տարբերել այլայլոյ ասին. յորժամ տեսակարարաւ տարբերութ՟ զանազանիցէ՝ որպէս մարդ ձիոյ„։ Բարւոք ասաց՝ տեսակարարաւ տարբերութ՟. քանզի տեսակարար տարբերուն՟ եղեալ գոլով զմեր գոյացութ՟իս կերպարանէ։ Նաև պարտ է գիտել՝ թէ և տեսակարար տարբերութիւնք երկակի գոն. ոմանք բաժանականք՝ և ոմանք բաղկացականք. և բաժանականք են՝ ընդդիմակայքն, որգոն՝ բանականն, և անբանն։ Իսկ բաղկացականքն են նոյնք. այլ զընդդիմեամբքն առնլով, որպէս բանականն, և մահկանացուն։

“Նոյն հասարակաբար և յատկապէս այլայլակ առնէ„. այս 'ինքն է՝ թէ պատահմունքն զտեսակսն ոչ կարեն փոխել՝ որ են տափընչութ՟իք, սպիտակութ՟իք։ “Իսկ յատկեղքն այլ„. այս ինքն եղեալ գոլով փոխեն զտեսակսն, և առնեն զոմն բանական կենդանի, և զոմն անբան։ “Արդ ըստ այլարարակս բաժանմունք լինին սեռից, 'ի տեսակս, և սահմանք բացատրեալ լինին 'ի սեռէ ելով և յայսպիսեաց տարբերութ՟եց„։ Աստի յայտ առնէ՝ եթէ երկակի տեսակարարողքն են. ոմանք բաժանականք, և ոմանք բաղկացականք։

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

# ՊՐԱԿՔ ԻԱ

ՀԱՆԴԵՐՁԵԱԼ Պորփիւրիոս և երկրորդ բաժա-
նումն առնել. զոր և մեք յայնմ 'ի տեսութեան
թողեալք՝ այժմ կարևոր համարեցաք 'ի կիր արկա-
նել. որ է ըստ այսմ օրինակի. "Ղակացն ոմանք ան-
ջատականք են, և ոմանք անանջատականք". և վասն
զի ոչ լիով եանց ընդ այսպիսի բաժանումն՝ բե՛ր զնո-
ւազն 'ի կիր արկցուք. նախ ուսանելով թէ զինչ
զանազանութիւն է գոյացութեան և գոյեղտին,
պատահման և մակագոյեղտին. քանզի զայսոսիկ
ուսանելով գիտեմք և զնուազուն բաժանմանն՝ զոր
արար Պորփիւրիոս. Արդ զանազանեալ է գոյացու-
թիւն 'ի գոյեղէն, վասն զի գոյեղն և 'ի վերայ պա-
տահման առնու. իսկ գոյն, և ոչ երբէք. Արդ եթէ
նոյն էր գոյեղն և գոյն, պարտ էր գոյին տեսանիլ
ուր գոյեղն է.

Բայց թէ զիա՞րդ 'ի վերայ պատահման առնու
գոյեղն՝ ասասցուք. Գոյնն պատահումն է. և սեւ է
սպիտակին. և ստորոգի գոյնն սպիտակին գոյեղա-
բար, քանզի թէ ոչ է կարողութն զսպիտակն ոչ մտա-
ծութբ և ոչ ազդմամբ առանց գունոյ իմանալ, յայտ
է՝ թէ գոյեղաբար ստորոգի գոյնն սպիտակին. Քան-
զի այսպէս բնաւորեցան ստորոգիլ այնոքիկ, որ ոչ
կարող գոն կամ մտածութբ կամ ազդմամբ անջա-
տիլ. Արդ եթէ տեսանի գոյեղն անդ՝ ուր ոչ կարող
գոյ գոյն տեսանիլ՝ ամենայն իրօք ոչ գոյ նոյնն. Ըստ
նմին օրինակի որոշեալ զանազանի և մակագոյեղն 'ի
պատահմանէ. քանզի մակագոյեղն գոյացուէ ստորո-
գի, իսկ պատահումն գոյացութն ոչ երբէք ստորո-
գի, եթէ ոչ՝ յորժամ ասեմք, Սոկրատէս սպիտակ է,

ոչ ասեմք՝ եթէ Սոկրատէս փոխանակ Սոկրատէս գոլոյ՝ սպիտակ է, այլ այնպէս իմանամք ստորոգիլ, որպէս թէ սպիտակն ՚ի Սոկրատում է։ Այն իսկ յորժամ ասեմք, եթէ Սոկրատէս սպիտակ ոչ է, այս ինքն, թէ զսահման սպիտակին ոչ ընդունի, որպէս զկենդանոյն, յայնժամ ոչ ստորոգի պատահումն գոյացութեան։ Ըստ այսմ յեղանակի ասացաւ ոչ ստորոգիլ զպատահումն գոյացութեան։

Բայց եթէ զիւ՛րդ ստորոգի մակագոյեղն գոյացութեան, որպէս յորժամ ասես՝ ծառայի և տեառն ըղմարդն ստորոգիլ. քանզի որպէս ստորոգի մարդում կենդանին, այսպէս և ՚ի տէրումն և ՚ի ծառայումն մարդ։ Վասնզի ուր տէր, անդ և մարդն, բայց ոչ զնոյն ստորոգութիւն ասեմ. քանզի կենդանոյն առ մարդն գոյեղ է. իսկ մարդոյն առ տէրն, մակագոյեղ։ Արդ եթէ տեսանի մակագոյեղն անդ՝ ուր ոչ տեսանի պատահումն, ամենայն իրօք ոչ նոյն է մակագոյեղն և պատահումն։ Արդ ուսեալք զոցա զանազանութիւնս, եկեսցուք և ՚ի բանս իմաստասիրին։

Արդ ասէ՝ թէ «Զանազանին յատկեղն և հասարակաբարն, և յատկապէսն. քանզի ոմանք ունին զառաւելն և զնուազն, զսպիտակն և զսպիտակագոյն, իսկ ոմն ոչ»։ Ոչ բարւոք ասէ. քանզի ցուցանի՝ եթէ հասարակաբարն և յատկապէսն ոչ ունին զառաւելն և զնուազն, իսկ յատկեղն ունի։ Վասնզի ահա հասարակաբարն ոչ ընդունի զառաւելն և զնուազն. որպէս յորժամ ասեմք զեռանկիւնին, և զքառանկիւնին ՚ի նմին գոլ. քանզի նա ընդունելով զեռանկիւնին և զքառանկիւնին՝ ոչ տեսանի ՚ի նոսա առաւելն և նուազն. քանզի ոչ է եռանկիւնի եռանկիւնոյ առաւել և նուազ. ապա ուրեմն ոչ ամենայն ուրեք ՚ի հասարակաբար տարբերութիւն տեսանի առաւելն և նուազն։ Այլ և ոչ յատկապէսն ամենայն ուրեք ընդունի զառաւելն և զնուազն. քանզի ահա աթենացի գոլ՝ անանջատական է պատահումն. իսկ աթենացի առ աթենացի՝ ոչ ունի զառաւելն և զնուազն. իսկ յատկեղն ունի զառաւելն և զնուազն. և թէ զիւ՛րդ՝ ասասցուք։

Յատկեղն՝ նշանակէ և զգոյ, և զգոյեղ. զգոյ՝ որ

պէս զի ասես զբանականն. իսկ զգոյեղն՝ որպէս զսպիտակն. քանզի ուսաք՝ եթէ զի՞արդ զանազանի գոյացութիւնն գոյեղէն։ Արդ եթէ յատկեղն առնու 'ի վերայ գոյին և գոյեղէն, իսկ գոյեղն իմանի 'ի վերայ պատահման, յայտ է՝ թէ յատկեղէն ճանաչի առաւելն և նուազ։ Քանզի ասեմք զսպիտակն յոյժ սպիտակ, և նուազ սպիտակ. իսկ ասացաք և զգոյնն գոյեղաբար ստորոգիլ սպիտակէն։ Բայց ասէ զյատկեղն ոչ ունել զառաւելն և զնուազն. իսկ զհասարակաբարն և զյատկապէսն ունել։ Բեր յարադրեսցուք զբանս իմաստասիրիս։

Արդ ասէ, թէ « Յատկեղն յիրաւի ոչ ընդունի զառաւելն և զնուազն. վ՛ն զի մի տեսակ յայտնէ՝ որ կերպարանողական գոյ մեր՝ որպէս բանականն։ Իսկ մին և նոյնն զի՞արդ կարող գոյ ընդունել զընդդիմակսըն, այս ինքն՝ զառաւելն և զնուազն. քանզի եթէ ընդունի, փոփոխի. իսկ բանական ասէ զգոյեղն՝ որ միշտ և նոյնպէս իւրաքանչիւր ումեք գոյ »։ Ապա թէ ոք ասէ՝ թէ ասեմք բանականագոյն, ասեմք թէ համաձարոյ և մակացուն է ընդունել զառաւելն և զնուազն, այս ինքն զբանականն։

Բայց է և այլազգ յանդիմանել զիմաստասէրս. քանզի ասեմք՝ եթէ ըստ այդմ բանի և ոչ մի ոք 'ի զանազանութեանցդ ընդունի զառաւելն և զնուազն. քանզի եթէ վասն գոլոյ մի տեսակ բանականին ոչ ընդունի զառաւելն և զնուազն, ապա և ոչ որ հասարակաբարն է՝ պարտ է ընդունել, և ոչ որ յատկապէսն։ Քանզի սպիտակն որպէս 'ի սպիտակում մարմնում, տեսակ է սպիտակ մարմնոյ, և ոչ գոյ կարողութ զսպիտակ մարմին արտաքոյ սպիտակութ իմանալ։ Սա է մի տեսակ սպիտակն, սպիտակ մարմնոյն. վասն զի առ սպիտակ մարմինն՝ տեսակ է սպիտակն. իսկ առ հանուր մարմին ոչ երբէք։ Արդ ոչ պարտ է սպիտակին՝ որ է մի տեսակ սպիտակ մարմնոյն, ընդունել զառաւելն և զնուազն. քանզի պարտ է սպիտակին՝ որ է սպիտակ նոյնպէս գոլ. ապա ուրեմն ոչ է ընդունելի բան իմաստասիրիս։

Իսկ արդ զի՞նչ և մեք ասասցուք. ասեմք՝ թէ պարտ է այսպէս ասել, թէ անլայն իրս նշանակէ տարբե-

րութն. որպէս զեռանկիւնին և զքառանկիւնին, քանզի այսոքիկ անլայն են խառնուածով, և ոչ ընդունին զառաւելն և զնուազն. Նոյնպէս և աթենացին անլայնական գոլով ըստ խառնուածս, ոչ ընդունին զառաւելն և զնուազն. Նոյնպէս և բանականն միշտ և նոյնպէս գոլով և ոչ ունելով լայնութեն խառնուածոյ, ոչ ընդունին զառաւելն և զնուազն։ Իսկ եթէ լայնութի խառնուածոյ ունի՝ յայնժամ ընդունին զառաւելն և ըզնուազն, որգոն՝ սպիտակն կարող գոյ առաւել սպիտակ գոլ և նուազն։ Վասն այսորիկ ընդունին զառաւելն և նուազն։

“Իսկ ըստ երկրորդ յեղանակի զանազանի յատկեղն ՚ի հասարակաբար և ՚ի յատկապէս տարբերութէ. քանզի նոքա յենթագրութիս յարառոցին, իսկ յատկեղքըն ՚ի սահմանս„։ Այս ճշմարիտ ասէ. և տես զիարդ յայտ արար աստանօր՝ եթէ յատկեղն և զգոյացութի նշանակէ և զգոյեղ. քանզի ասելն՝ եթէ յատկեղն ՚ի սահմանս յարառոցին՝ յայտ արար, եթէ ՚ի վերայ պատահմանց ասի գոյեղն։ Քանզի սահմանեմք և զպատահմունս. իսկ սահմանն՝ ՚ի գոյեղէցն բաղկանուն ձայնից. յայտ է թէ և ձայնք ՚ի վերայ սահմանաց պատահմանց գոյեղք գոն. քանզի ասեմք՝ եթէ սպիտակն գոյն է արտաղատող[1] աչաց։ Երրորդու այսոքիւք ասէ՝ եթէ զանազանի յատկեղն ՚ի հասարակաբար և ՚ի յատկապէս տարբերութեց. քանզի նոքա այլայլակ առնեն՝ իսկ յատկեղքն այլ։

1 Երեք օրէն. փարատատող ։

## ԸՆԴ ԱՅՍՄՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ԳՐԱԿՔ ԻԲ

ԻՄԱՑՈՒՔ եթէ ըստ որո՞ց իրաց զանազանին 'ի միմեանց տարբերութիւքս․ ասասցուք թէ զի՞նչ զանազանութի ունի առ ինքն յատկերն՝ յայտնելով զբաղկացականս և զբաժանականս տարբերութիս։ Վասն որոյ ասեն ոմանք՝ թէ նոյնք են․ և զի ոչ են նոյնք՝ յասացելոցս յայտ է․ սեռականագունից սեռիցն ոչ են բաղկացուցիչ զանազանութիւք, բայց միայն բաժանականքն․ և դարձեալ տեսակագունից տեսակացն ոչ գոն բաժանականք տարբերութիւք, այլ բաղկացուցիչ զանազանութիւք։ Արդ եթէ նոյնք էին՝ պարտ էր 'ի միում մասին տեսանել զերկաքանչիւրսն, իսկ եթէ ոչ տեսանին, յայտ է՝ թէ ոչ են նոյնք։ Եւ ունիմք աստուստ երկուս առածս․ մի՝ թէ Սեռականագոյն սեռն՝ ոչ սահմանի, վասն զի ոչ ունի բաղկացուցիչ զանազանութիս․ նա քանզի և ամենայն սահման 'ի սեռէ և 'ի բաղկացուցիչ զանազանութեց լինի, և եթէ ըստ այսմ բանի՝ և ոչ տեսակագոյն տեսակն բաժանի․ քանզի այսպէս ասէ Պղատոն․ ՙՆախ պարտ է զբաժանումն 'ի սեռականագունիցն մինչև ցտեսակագոյնսն լինել, և ոչ անցանել յանկոյս յանհատսն[1]։

Երկրորդ՝ Բաժանականքն սեռիցն՝ սեռիցն միայն են, ոչ երբէք և տեսակացն․ իսկ բաղկացականքն՝ տեսակացն միայն են, ոչ ևս և սեռիցն․ և թէպէտ ասէ ոք, թէ և սեռիցն են բաղկացականքն․ ապա ուրեմն պարտ էր և ամենայն սեռի գոլ, զի որք նոյն տեսակի գոյեղաբար գոն, և ամենեցուն նմանեացն գոյեղաբար գոն։

Արդ եթէ միում սեռի բաղկացականք գոն զանա-

1 Ցերկուս հնագոյն օրինակսն պակասէր ամբողջ բանն Պղատոնի։

զանուՆք՝ պարտ է և ամենայն սեռի գոլ. իսկ եթէ ոչ գոյ, քանզի սեռականագունիցն ոչ գոն բաղկացականք, ապա ուրեմն ամ̃ իրօք ոչ նոյնք են բաղկացականք և բաժանականք տարբերութիւնքն։ Նաև յընդդիմակէն մարթ գոյ հակադարձել զբանն, և զնոյն ասել 'ի վերայ բաժանականացն։ Եթէ էին բաժանականք տարբերութիւնք տեսակի՝ պարտ էր և ամենայն տեսակի. իսկ եթէ ոչ են, քանզի տեսակագոյնքն ոչ ունին բաժանականս, ապա ուրեմն ամենայն իրօք ոչ են նոյնք. քանզի ոչ կարող գոն 'ի միում և 'ի նոյնում տեսանիլ։

Երրորդ և հաստատագոյն՝ եթէ ոչ նոյնք են. վասն զի կենդանոյն բաղկացականք են՝ գոյացութի̃, ներշնչաւորն, և զգայականն. իսկ բաժանականք կենդանոյն՝ բանականն, և անբանն։ Չորրորդ՝ թէպէտ և նոյնք էին՝ ամենայն իրօք բաղկացականքն 'ի բաժանականացն լինէին. բայց սակայն ոչ 'ի նոյնում և 'ի միում կարող գոյ տեսանիլ. քանզի կենդանոյն բաժանական՝ բանականն և մահկանացուն, մարդոյն բաղկացականք գոն։ Հինգերորդ՝ բաղկացականքն հանրականագոյնք են, իսկ բաժանականքն՝ մասնականագոյնք. և զի բաղկացականքն հանրականագոյնք են, յայտնի է 'ի բաժանելն մեր զնոսա։ Քանզի ասեմք՝ եթէ կենդանին գոյացութի̃ ներշնչական զգայական. արդ վ̃ս զի ներշնչականն 'ի յոլովագոյնս հասեալ գոյ քան զկենդանին, բաժանեմք զնա 'ի զգայականն, և յանզգայականն. և դարձեալ վասն զի զգայականն յոլովագոյն է քան զկենդանին՝ բաժանեմք զնա յինքնաշարժն և յանշարժն։

Վեցերորդ՝ բաժանականքն ապականութե̃ գոն արարչականք, իսկ բաղկացականքն՝ բաղկացութե̃. քանզի ոմանք բաժանելով զկենդանին 'ի բանականն և յանբանն, կարծիս ապականութե̃ տան. իսկ բաղկացուցիչքն բաղկացութե̃։ Եօթներորդ՝ բաժանականքն 'ի հակակայս տեսանին, բանականն և անբանն. իսկ բաղկացուցիչքն՝ և ոչ երբէք. քանզի ոչ ոք ասէ՝ եթէ մարդ է կենդանի բանական և անբան։

Նաև պարտ է գիտել՝ թէ Պորփիւրիոս միով անուամբ զբաղկացականսն՝ բաժանականս կոչէ, և զբաժանա

կանոնն՝ բաղկացականս։ Քանզի պատուականագոյն է բաղկացականն քան զբաժանականսն։ Եւս և առաջին աստուստ․ զի բաղկացականքն պատուականագոյնք են քան զբաժանականսն․ վասն զի բաղկացականքն հանրականագոյնք են, իսկ բաժանականքն մասնականագոյնք։ Իսկ պատուականագոյն է հանրականն քան զմասնականն։

Երկրորդ՝ վասն զի բաժանականքն՝ զօրութք են, իսկ բաղկացականքն՝ ներգործութք, և պատուականագոյն է ներգործութն քան զզօրութն․ վասն զի կենդանւոյն զբաժանականն, այս ինքն զբանականն և զմահականացուն՝ զօրութ ունի յինքեան։ Իսկ մարդն ներգործութք, վասն այսորիկ պատուականագոյն է բաղկացականն՝ քան զբաժանականն։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՊՐԱԿՔ ԻԴ

«Արդ 'ի վերուստ դարձեալ սկսանելով ճառելի է»։ Յասելն 'ի վերուստ սկսանելովն յայտ արար երկրորդ բաժանումն առնել էակացն, յանջատականն և յանանջատականն։ «Եւ անանջատականացն՝ են որ ըստ ինքեանց են, և են որ ըստ պատահմանց»։ Զանանջատականն աստուստ բաժանէ 'ի գոյացութի և 'ի պատահումն․ քանզի ըստ ինքեան ասելովն զգոյացութի նշանակեաց․ քանզի սովորութ է Արիստոտելի՝ զինուն ըստ ինքեան անուանել՝ որպէս ինքնագոյ։ «Իսկ ըստպատահմանքն՝ ոչ առեալ լինին 'ի գոյացութեն բանի, և ոչ առնեն այլ, այլ այլայլակ»։

Արդ տես աստանօր զիարդ զգուշաբար ասաց․ քանզի վասն գոյեղինացն՝ որք 'ի սահմանս առնուն և յենթագրուն, ոչ քննեաց և ասաց՝ թէ 'ի գոյացութն միայն բանի առնու, զի ցուցցէ՝ թէ և յենթա-

գրութիւնս պատկանաւորք գոն։ Իսկ վասն պատահմանցն՝ որք ոչ առնուն 'ի գոյացութենէ բանի՝ այլ յենթագրութենէ, զի ցուցցէ՝ թէ յենթագրութենէ միայն գոն պատկանաւորք, ասաց՝ եթէ ոչ առնեն այլ, այլ այլայլակ։

«Դարձեալ ըստ ինքեանցն տարբերութեանց՝ ոմանք են ըստ որս բաժանեմք զսեռն 'ի տեսակս, և ոմանք ըստ որս բաժանեալքն տեսակարարին»։ Աստուստ յաղագս բաժանականաց և բաղկացուցչաց զանազանութեանցն Ճառէ։ «Ո՛ի շնչաւորին և զգայնոյն տարբերութիւն ենթակայական է կենդանւոյն գոյացութեան»։ Աստուստ ցուցանէ՝ թէ ոչ նոյն տարբերութիւնք են բաղկացականք և բաժանականք, վասն զի ոչ 'ի վերայ միոյ առեալ տեսանին։ «Այլ բանականն և մահկանացուն՝ բաղկացականք լինին մարդոյ»։

Յայսմ բաժանմանէ՝ վեց լինին լծակցութիւնք. բանական և անբանն. մահկանացուն և անմահն. բանական մահկանացուն, բանական անմահն. անբան մահկանացուն, անբան անմահն. յորոց ըստ ոմանց՝ երկու անբաղկացելիք են, իսկ չորք բաղկացելիք. իսկ ըստ այլոց՝ երեք են բաղկացելիք. և յերիցն երկուքն գտանին ընդդիմեամբք և միւնն տրամանկիւնի։ Իսկ եթէ չորք են բաղկացելիք, երկու տրամանկիւնիքն, և երկու ընդդիմեամբքն. արդ ըստ Պղատոնի չորս են բաղկացելիքն. բանական անմահ, բանական մահկանացու, անբան մահկանացու, անբան անմահ։ Իսկ զընդդիմական անբաղկացելիս զբանականին և զանբանին, զմահկանացուին և զանմահին։ Իսկ Արիստոտէլ զանբան անմահն ոչ ընդունի, այլ երիս բաղկացելիս. որում հետևի և խոստացաւ Պորփիւրիոս։ Այսպէս է վերնագոյն գոյացութեան։

Արդ այսպէս ունի և գոյացութիւն, քանզի բաժանի 'ի շնչականն և յանշունչն, 'ի զգայունն և յանզգայն, որք լինին և յայսմ բաժանմանէ վեց լծակցութիւնք. շնչականն և անշունչ, զգայուն և անզգայ, շնչական զգայուն, շնչական անզգայ, անշնչական զգայուն, անշնչական անզգայուն. որոց տրամագծութիւնք լինին այսպէս և ըստ այսմ օրինակի, զոր վերոյ ասացաք։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՊՐԱԿՔ ԻԴ

Եթէ 'ի գլխումն իրողութեանց սահմանք գոյանան, եկեսցուք այսուհետեւ և զտարբերութիւն սահմանեսցուք. ասացեալ եթէ զի՞նչ է հասարակաբարն, և զի՞նչ յատկապէսն, և զի՞նչ յատկեղն, և զիա՞րդ յատկեղն զգոյացութիւն և զգոյեղ նշանակէ. և զիա՞րդ բաղկացաբար և բաժանաբար առեալ գոյ: "Արդ ասի տարբերութիւն՝ որով առաւելու տեսակն քան զսեռն ,,: Եւ բարւոք ասաց՝ թէ որով առաւելու տեսակն քան զսեռն. վասն զի 'ի տեսակումն առաւելուն տարբերութիւնք, իսկ 'ի սեռումն և ոչ երբէք. քանզի սեռն որպէս սեռ անբաժանելի գոլով՝ ոչ ունի զանազանութիւնս:

Ապա եթէ ասիցէ ոք, այո ունի. քանզի ահա ասեմք, գոյացութիւն ներշնչական, զգայական. ասասցուք, եթէ ոչ ունի զտարբերութիւնս զայս որպէս սեռ, այլ որպէս տեսակ. և այս նախ յայտնի յայտնեցիկ, զի բաղկացականք գոն զանազանութիւնքն. իսկ բաղկացականք տարբերութիւնք՝ ոչ գոն սեռոցն, այլ տեսակացն: Ապա եթէ վիճաբար ոք 'ի ներս գայցէ՝ եթէ տմ իրօք սեռ ունի տարբերութիւնս, այլ ոչ եթէ զհանգէտս և զնոյնս թուով տեսակի. քանզի տեսակն ունի և զիւր տարբերութիւնսն, ունի և զսեռոյն. քանզի գոյացութիւն ներշնչական, զգայական՝ ասի և 'ի վերայ մարդոյ՝ որ է տեսակ. և բանականն և մահկանացուն, այլ և ներգործութիւն գոն 'ի տեսակումն, զօրութիւն 'ի սեռումն; յորժամ և թողլ տացէ ոք զբանականն; զանազանութիւն գոլ սեռումն որպէս սեռումն: Բայց զայս ասեմ, զի անբաժանելի գոլով սեռի՝ ոչ ունի զբանականն յիւրմէ բաժանեալ: Եւ մի ոք կարծեսցէ՝ եթէ տեսակ յոլովագոյն ունելով տարբերութիւնս, համբա-

կանխագոյն է քան զսեռ. քանզի ուր յոլովք են տարբերութիւնք՝ անդ սուղ և նուազ գոյ սահմանեալն. քանզի առհաս յանհատսն տարածանելով մարդ՝ ոչ այնչափ ինչ ունի զանազանութիւն որչափ անհատն. քանզի ասելով, մարդ կենդանի, բանաւոր, մահկանացու, մտաց և հանճարոյ ընդունակ, և զընդհանուրն սահմանէ. իսկ եթէ կամիցի զմի յանհատիցն՝ այս ինքն զմանականմն, յաւելու և այլ զանազանութիւս առ 'ի յանհատել զհանուր մարդն. քանզի ասեմք զՍոկրատէս մարդ կենդանի, բանաւոր, մահկանացու, մտաց և հանճարոյ ընդունակ, լայնեղունկն, յառաջաքաղերթ. և այսպէս 'ի ձեռն յոլովից զանազանութեանց անհատի ընդհանուր մարդն:

Ուստուստ քննեն ոմանք, եթէ վասն էր Պորփիւրիոս զտարբերութիւն սեռի և տեսակաց սահմանեաց. իսկ զտեսակ և զսեռ ոչ 'ի ձեռն միմեանց աւանդեաց. և այն զի կարող գոյր տեսակ՝ տարբերութ̄ և սեռիւ սահմանիլ. որպէս զի յորժամ ասէ ոք, տեսակ է՝ որ յոլով զանազանութիւս ունի քան զսեռ. նմանապէս և սեռ կարող գոյր բացադայիլ[1] տեսակաւ և զանազանութ̄. որպէս յորժամ ասէ ոք, սեռ է որ 'ի տեսակում տեսանի, և ոչ 'ի տարբերութ̄ երբէք. քանզի զմարդ՝ կենդանի ասեմք, իսկ զբանաւորութիւն ոչ կենդանութիւն: Բայց է առ այսոսիկ այսպէս պատասխանատրել. չորք են որ ներանիւթ են. երեք անբաղկացելիք և մին բաղկացելի. խոստովանեալ 'ի խոստովանելոյ, երկբայ յերկբայէ, խոստովանեալ յերկբայէ, երկբայ 'ի խոստովանելոյ. և 'ի սոցանէ երեքն՝ որպէս ասացաք՝ անբաղկացելի, և մին բաղկացելի: Իսկ ո՞րք ոմանք այսոքիկ են, ասասցուք: Խոստովանեալն 'ի խոստովանելոյ ոչ կարէ բաղկանալ. վասն զի ոչ մարթ գոյ ներանիւթել զխոստովանեալն 'ի խոստովանելոյ, և ոչ զերկբայն յերկբայէ. քանզի այսպիսիս ընդ միմեանց գոյ բան. այլ և ոչ զխոստովանեալն յերկբայէն, զի եթէ զխոստովանեալն 'ի խոստովանելոյն ոչ մարթի ներանիւթել, զիա՞րդ ըզխոստովանեալն յերկբայէն: Իսկ զերկբայն 'ի խոս-

1 Երկու օրին. բացադայիլ:

տովանելոյն ներհակութեանն և հաւանեցուցանել մարթ գոյ ։ Արդ այսոցիկ այսպէս ելոց, բնաւորական հնարի պիտանացեալ Պորփիւրիոս, ոչ սահմանէ զխոստովանեալն յերկբայէն. քանզի զսեռ սահմանելով՝ ոչ կարող գոյ տարբերութ̃ և տեսակաւ զնա բացատրել. քանզի տակաւին ևս տեսակ և տարբերութ̃ երկբայականն առ 'ի մէնջ ։ Այլ և ոչ զտեսակ տարբերութ̃ և սեռի. քանզի տակաւին ևս անգիտանիւր առ 'ի մէնջ տարբերութ̃ ։ Իսկ զտարբերութ̃ սեռի և տեսակաւ բացատրեաց, զերկբայացեալն 'ի մէնջ 'ի խոստովանեցելոցն ։ Եւ վասն զի ոմանք ներհակութիւնս ոչ գոլ զտարբերութ̃, բեր նախ զներհակութիւնն նոցա ուսցուք, և ապա ցուցցուք զնա գոլ 'ի գոյից ։

Արդ ներհակութիւնն 'ի ձեռն երկուց այսոցիկ առածից. որոց առաջինն է այս ։ Ոչ երբէք ընդդիմակքն 'ի միում և 'ի նոյնում ըստ թուոյ, 'ի նորին մասին, 'ի նոյնում ժամանակի տեսանին. որգոն՝ սպիտակն և սեաւն 'ի միում ըստ թուոյ 'ի նորին մասին 'ի նոյնում ժամանակի տեսանիլ ոչ կարէ. և վասն զի կարող գոյ 'ի նոյնում ըստ տեսակի [1], զի եղիցի 'ի Սոկրատում սեաւն, իսկ 'ի Պղատոնում սպիտակն. և վասն այնորիկ յաւելլին ըստ թուոյ՝ զի զմին յայտնեացեն ։ Եւ քանզի 'ի միասին կարողք գոն ընդդիմակքն տեսանիլ, յոտսն ցուրտ, իսկ 'ի գլուխն ջերմ. վասն այսորիկ յաւելլին՝ 'ի նոյն մասին ։ Եւ դարձեալ վասն զի յայլ և այլ ժամանակի կարող գոն 'ի նոյն մասին ընդդիմակքն տեսանիլ, վ̃ն այսորիկ յաւելլին 'ի նոյն 'ի նմին ժամանակի ։ Իսկ երկրորդ առածն ունի ըստ այսմ օրինակի ։ Ոչ երբէք յոչէէ և յոչնչէ գտանի ինչ եղեալ. քանզի ամենայն գոյք 'ի գոյից ունին զլինելն ։ Եւ գիտելի է թէ այլազգ ասէ Պղատոն զոչ երբէք ոչ ուրեք, և այլազգ Արիստոտէլ. քանզի Պղատոն զոչն երբէք ոչ ուրեք, ոչ մտածութ̃ և ոչ ներգործութ̃ ասէ գոլ. ուստի զԱրալեզն ասէր ամենեւին ոչ ուրեք ոչ երբէք, վասն զի ունի զգոյն և ոչ մտածութ̃ ։ Իսկ Արիստոտէլ զոչն երբէք ոչ ուրեք, է որ մտածութ̃ է, բայց ներգործութ̃ ոչ ։ Արդ այ-

1 Մի օրին. փեսանիլ ։

տոցիկ այսպէս ելոց, ասեն վասն տարբերուե ոչ գոլ. քանզի ո՞ւր են ասեն. քանզի թէ ասէք՝ եթէ ՚ի սեռուում գոն՝ սուտ ասէք. քանզի զայսոսիկ ներանիւթեաց առաջին առածն՝ զընդդիմակսն ոչ երբէք ՚ի նոյնում ըստ միում թուոյ՝ ՚ի նոյնում մասին ՚ի նոյնում ժամանակի գոլ։ Արդ եթէ կենդանին մի և նոյն է ըստ թուոյ՝ անմաման է ըստ որում սեռ է. վն զի սեռք անմարմինք են ընդհանուր գոլով. իսկ անմարմինք՝ անմասունք են. ապա զիա՞րդ կարող գոյ ՚ի նոյն ժամանակի ընդունել զընդդիմակսն, այս ինքն զբանականն և զանբանն, զմահկանացուն և զանմահըն. այլ թէպէտ և ասին գոլ տարբերութիւք ՚ի սեռուում՝ ամենայն իրօք և ըստ նոյնում ժամանակի գոն. քանզի ոչ գոյ մարթ այսօր բանական իմանալ զկենդանին, և այգուն անբան։ Արդ եթէ ոչ են տարբերութիւք ՚ի սեռսն, ապա ուրեմն յոչերբէքէն յոչուրեքէն գոն. զոր երկրորդ առածն արգելու յոչերբէքէն յոչուրեքէն գոլ ինչ. և թէպէտ և ասես զջուր ՚ի հրոյ լինել, սակայն յառաջագոյն գոյր հուրն. եթէ ասես ՚ի ջրոյ լինել օդ, այլ սակայն յառաջագոյն գոյր ջուրն։

Արդ յաղագս այսոցիկ պատասխանատրուի՝ եթէ է ինչ մէջ, որ ոչ յոչուրեքէ յոչերբէքէն է, և ոչ դարձեալ զգոյն ունի յինքեան, այլ ընդ մէջ երկաքանչիւրոց ծայրիցն է՝ որ զօրութի կոչի, որպէս մանուկն՝ որ զօրութի քերթող ասի. արդ այսպիսիս ոչ ՚ի գոյիցն է, վասն զի ոչ է և ոչ ասի՝ այլ և ոչ յոչերբէքէ յոչուրեքէն է, վասն զի զօրութի ունի զգոլ։ Արդ այսպիսիս զերկոսեան զտարակուսանսն լուծանէ. քանզի է ասել՝ եթէ տարբերութիւք ՚ի սեռսն ոչ են ներգործութի, այլ զօրութի. այս ինքն յորակութե կարող գոյ տեսանել զօրութի զջերմ և զցուրտ. քանզի, իք ջերմ և ցուրտ, այս ինքն ոմն ցուրտ զօրութի և ջերմ, զոր և ՚ի վերայ ձիթոյ է տեսանել. քանզի ձէթ՝ զօրութի ունի յինքեան զջերմ և զցուրտ, և որչափ ինչ ժամանակս ինքն ըստ ինքեան մնայ՝ զօրութի ասի ունել զջերմ և զցուրտ. իսկ եթէ խառնի յինչ՝ փոփոխէ զմին ՚ի միւսն։ Քանզի եթէ խառնի ընդ վարդում, փոփոխէ զջերմ ՚ի ցուրտ. իսկ եթէ ընդ կո-

չեցելումն գնդածաղիկ[1] խառնեսցի, յայնժամ 'ի ջերմն փոխէ զցուրտն :

Արդ այսոցիկ այսպէս ելոց, ցուցանի՝ թէ սեռ զօրութ ունի զտարբերութ յինքեան. թէպէտ և հակակայք միմեանց գոն տարբերութիւնքն : Վասնզի գոյն սեռ գոլով, զօրութ ունի յինքեան զընդդիմակսն, այս ինքն զսեւուն և զսպիտակն. իսկ որակութ զջերմ և զցուրտ. իսկ կենդանին զբանականն և զանբանն : Աստուստ ունիմք, եթէ կարօղք գոն ընդդիմակք միմեանց գոլով տարբերութիւնք՝ զօրութեամբ տեսանիլ 'ի սեռսն. որով և երկրորդ տարակուսումն լուծանի. զի թէ տարբերութիւնքն 'ի սեռսն զօրութ գոն՝ յայտ է թէ ոչ են յոչերբէքէն յոչուրեքէն :

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՊՐԱԿՔ ԻԵ

ՕՃԵՄԱԿԱՆԱՑՆ զկարծիս անարգել պղատոնականքն կամելով փորձին ներգործութ ցուցանել ըզտարբերութիւնս 'ի սեռսն. քանզի զօրութ ասել խրարեն զտարբերութիւնս 'ի սեռսն, ասելով եթէ զօրութ ասեմք զտարբերութիւս 'ի սեռսն, իսկ ներգործութ 'ի տեսակսն, եղիցին տեսակքն լաւագոյն քան զսեռսն, վասն զի լաւագոյն է ներգործութիւն, քան զզօրութիւն : Երկրորդ՝ վասն զի և ոչ ընդդիմակք միմեանց են այսոքիկ, վասն զի ոչ ունին ընդդիմութի բանականն և անբանն, քանզի գոյացութիւնք են : Իսկ գոյացութիւնք ոչ ունին ընդդիմակս. վասն զի ոչ են յենթակայում, այլ ենթակայք, որպէս հանդեր-

1. Ի լուսանցսն գրի. զաղամնիճ իբրև բացատրութ բառիս գնդածաղիկին :

ձեալ եմք ուսանել 'ի ստորոգութիւնս Արիստոտելի․ ապա եթէ էին այսոքիկ ընդդիմակք միմեանց՝ ոչ կարէին ներգործութեամբ 'ի միում իմիք տեսանիլ․ իսկ այժմ քանակամն և անքամն 'ի մարդում տեսանին, և ոչ ապականեն զմիմեանս, որոց պարտ էր ապականել, և ոչ փոփոխին 'ի միմեանց, որոց պարտ էր փոփոխիլ ըստ օրինաց ընդդիմութեան [1]: Երրորդ առ այսոքիւք՝ թէ և էին ընդդիմակք միմեանց այսոքիկ, պարտ էր 'ի միում և 'ի նոյնում տեսանիլ․ քանզի աւհա ցուրտն և ջերմն, սպիտակն և սեաւն, և բոլոր տեսակք յամենայն տեսակում նիւթում [2] տեսանին: Զորրորդ և զի ընդդիմակք միմեանց 'ի միում և 'ի նոյնում տեսանին, որպէս և 'ի նոյն իսկ 'ի զգայութեց յայտնի գոյ․ քանզի համայն տեսութի զընդդիմակացն բուռն հարկանէ զսեւէն և զսպիտակէն․ և հաւատի գոյ բանդ՝ յորոշելոյ զսեւն 'ի սպիտակէն, որպէս 'ի քարտիսի գգիրն:

Բայց է յաղագս Հեմականացն այսպէս պատասխանատրել, և առ առաջինն այսպէս ասել՝ եթէ մի, որ ինչ արիստոտելականացն թուի՝ զնոյն 'ի կործանումն նոցին առնուք, ով պղատոնականք․ քանզի նոցա թուին տեսակքն լաւագոյնք քան զսեռսն․ քանզի թէ ասիցէ ոք՝ եթէ մարդ բանական է, ոչ պարտիմք մեղադրել՝ եթէ զի՞ ասաց զմարդ բանական, այլ ցուցանել, եթէ էր կարողութի, 'ի ձեռն այլոց ապացուցից՝ եթէ ոչ է բանական: Արդ եթէ թուի արիստոտելականաց վասն տեսակացն եթէ լաւագոյնք են քան զսեռսն, և անհատքն քան զտեսակսն, որպէս և Արիստոտել ցուցանէ 'ի ստորոգութիւնս, ոչ է պարտ 'ի նոցա կարծեացն անպատեհացուցանել և ասել՝ թէ վասն էր տեսակք լաւագոյն են քան զսեռսն․ վասն զի այնպէս գիտէ և Հշմարտութիւն:

Իսկ առ երկրորդն ասեմք, թէ և գոյեղ զանազանութիւքն ոչ են ընդդիմակք միմեանց՝ բանականն և անբանն․ այլ սակայն պատահականք տարբերութիւնքն՝ ընդդիմակք միմեանց են՝ ջերմն և ցուրտն, սպիտակն և սեաւն, որք ոչ կարող գոն համայն 'ի

1 Երկու օրինի․ ընդդիմակացն է:　2 Մի օրինի․ յամ սեռամ և նիւթեամ:

միում տեսանիլ ։ Որգ եթէ խոստովանաբար այսոքիկ համայն 'ի միում մասին 'ի միում ժամանակի ոչ կարող եք գոն գոլ, ապա և ոչ այնոքիկ՝ յաղագս որոյ յերկբայս եմք, այս ինքն բանականն և անբանն՝ կարող եք գոն ներգործութ՟ տեսանիլ համայն 'ի միում ․ վասն զի և զերկբայն՝ 'ի խոստովանեցելոյն նեքանիւթել բնաւորեցաք ։

Իսկ առ երրորդն ասասցուք, որ ասացէք՝ եթէ ընդդիմակքն յամենայն տեսակում նիւթում տեսանին ։ Որգ թէպէտ և տեսանին 'ի նմա, ոչ ներգործութ՟՝ այլ զօրութ՟ ․ քանզի զի՞նչ ասեմք յաղագս նիւթոյն որ 'ի Սոկրատումն է, և յաղագս այնորիկ որ յամենայնումն է ․ քանզի որ 'ի Սոկրատումն է՝ նա ոչ երբէք է ներգործութ՟ ձիոյ և շան, բայց զօրութ՟ է ձիոյ և շան ․ իսկ ներգործութ՟ Սոկրատայ ։ Իսկ եթէ զայն նիւթ ասէք՝ որ յամենայնումն է, անհնարին է նմա ներգործութ՟ զՍոկրատէս ունել և զձին, բայց զօրութ՟ ։

Իսկ առ չորրորդն ասեմք, թէ ոչ է պարտ տարակուսանօք զտարակուսանս լուծանել ․ քանզի եթէ տարակուսեմք՝ եթէ զի՞ է բանական մարդ, ոչ պարտիք ասել՝ եթէ վասն զի աստուածայինքն բանականք են ․ քանզի տարակուսի և ձեզ ինքեանց՝ թէ վասն զի 'ի տեսուէց ընդդիմակքն ներգործութ՟, քանզի 'ի վերայ անմարմնոցն ասին ընդդիմակքն ազգմամբ տեսանիլ ․ իսկ 'ի վերայ մարմնոցն ոչ երբէք ։ Նաև տարակուսեցաւ ձեզ՝ եթէ զի՞արդ համայն բուռն հարկանէ զընդդիմակացն տեսութ՟՝ մարմին գոլով ․ զայս տարակուսանս 'ի լուծումն երկբայեցելոցն ոչ է պարտ ձեզ ածել ։ Որգ եթէ զի՞արդ տեսութ՟ զընդդիմակացն համայն բուռն հարկանէ 'ի մեծամեծս իրողութեցն՝ ուսցուք ։ “ Զորս և որոշելով, այս ինքն, սահմանելով ասեն, տարբերութ՟ է որով առաւելու տեսակն քան զսեռն „ ։ Սահմանս այս ոչ է Պորփիւրի՝ այլ ձեմականացն ․ վասն որոյ ասաց՝ թէ ասեն, այլ ոչ թէ ասեմ ։ “ Քանզի մարդն քան զկենդանին աւելի ունի զբանականն „ ։ Յաւելով ասելով յայտ արար թէ ներգործութ՟ ունի տեսակն զտարբերութ՟, իսկ սեռն զօրութ՟ ։ “ Զի կենդանին և ոչ մի ինչ ոչ

է յայտնական ,, ։ Այս ինքն եթէ սեռ ոչ երբէք ոչ ունի , այլ ունի . քանզի երկու բացասութիւք , որպէս ասնիմք ուսանել , մի ստորասութի առնէ ։ Այսուիկ առակէ զերկուս ձեռնարկութիւնս զայնոսիկ, և ասէ՝ եթէ զօրութ ունի զդոսա , ապա թէ ոչ յոչէրբեքէն յոչուրեքէն տեսանելին ։ " Իսկ ոչ զամենայն զհակակայսն ունի ,, ։ Այսինքն ոմանք՝ եթէ ոչ բարուոք ասաց զամենայն զհակակայսն . որպէս թէ յայտ արար՝ թէ զոմանս ընդունի ։ Ոչ բարուոք մեղադրեն իմաստասիրիս . վասն զի ցուցեալ է Արիստոտելի զայսպիսիս զանստարորոշս նախադասութիւնս հանգիտակարգս գոլ մասնականաց ։

" Այլ որպէս արժանի առնեն զօրութիւն զամենայն ունի ,, ։ Ոմանք աստուստ ձեռնարկեն 'ի համաձայնութիւն [1] ածել զԱրիստոտել և զՊղատոն. զի Պղատոն ներգործութ ասէ առնել զտարրերուն , և Արիստոտել զօրութ ։ Է ինչ զօրութիւն առաջին , և է ինչ երկրորդ զօրութ , զոր և միջակ ասեմք . և է ինչ առաջին ներգործութիւն , և է ինչ առ երկրորդ ։ Առաջին զօրութ ասեմք զմանուկն որ քերթող [2] , այս ինքն ըստ ճահաւորութ . զի եթէ ոչ պակասէ ժամանակն, կարող գոյ զամենայն մակացութիւս ընդունել ։ Երկրորդ զօրութ ասեմք զայն՝ որ իւրաց ինչ ունակութիւ ունելով ոչ ներգործէ ։ Իսկ առաջին ներգործութիւն ասեմք, որ քերթեւն կարող գոյ՝ ննջիցէ և ոչ կամիցի քերթել ։ Իսկ երկրորդ ներգործութեամբ ասեմք զքերթողն , որ ներգործութեամբ ուսուցանէ , այս ինքն ըստ պատրաստութ ։ Արդ տե՛ս զի նոյն է երկրորդ զօրութեամբ և առաջին ներգործութեամբ . քանզի երկրորդ զօրութիւն ասեմք զքերթօղն ունակութի ունել , բայց ներգործել ոչ երբէք . զնոյն և առաջին ներգործութեամբն ունի ։ Արդ եթէ նոյն են երկրորդ զօրութն և առաջին ներգործութեամբ՝ ձայնակից գոն Արիստոտել և Պղատոն . քանզի ոմն ասէ զերկրորդ զօրութն , և ոմն զառաջին ներգործութեամբն . և երկոքին 'ի նոյն ժողովին ։

Իսկ ոմանք բարուոք ընդդիմանալով ասեն , եթէ

1 Երեք օրին. համաձայնութիւն ։ 2 Մի օրին. որպէս քերթողք .

նոյն է և ունակութիւն ունել զքերթելն՝ և ներգործել քերթողին. զի ՚ի բազում իրս զնոյն ցուցանէ Արիստոտէլ ասելով՝ եթէ Որ ունակութեամբ ոք ունի և անմիջաբար գործէ. քանզի ոչ եթէ այլ ասեմ զայն որ ունակութեամբ քերթող, և այլ որ ներգործութեամբ, այլ նոյն ինքն է. ապա եթէ այսոքիկ այսպէս գոն՝ ա՛յլ է ներգործութիւն և այլ զօրութիւն. քանզի զօրութիւն ասէ Արիստոտէլ զայն՝ որ ոչ և ունակութիւն. վասն զի նա նոյն ժամայն ներգործէ. իսկ Պղատոն զունակութիւն ներգործութիւն ասէ: Այլ պարտ է գիտել, եթէ զօրութիւն՝ յորժամ ունակութիւն եղանի, ոչ նոյն մնայ. քանզի մանուկն՝ որ զօրութիւն քերթողն է, յորժամ ունակութիւն սկիզբն առնէ ներգործել՝ ոչ նոյն մնայ:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԳՐԱԿՔ ԻԶ

ԱՅՍՈՒՍՏ այլազգաբար մեզ սահմանեցելոյ զտարբերութիւն Պորփիւրի: Քանզի ասէ՝ եթէ «Տարբերութիւն է՝ որ ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաւ ՚ի ներքուստ որպիսիինչէն ստորոգեալ»: Այլ մեք զի յաղագս ներքուստ որպիսիինչէին կամի ուսուցանել, զայլս որպէս այն ինչ ծանուցեալս, ՚ի բաց թողեալս. բայց ըստ սովորութեան որ ՚ի թողեալսն՝ գոն տարակուսանք՝ զայնոսիկ լուծցուք: Քանզի ասեն ոմանք, եթէ ոչ բարւոք ասաց ըստ յոլովից. քանզի եթէ ըստ յոլովից բերի՝ հասարակութիւն նշանակէ և ոչ տարբերութիւն. արդ ամենայն իրք յաւելպէս բացատրեալ գոյ սահմանդ:

Այլ որս պարտ է այսպէս պատասխանատրել. եթէ

տարբերութեանցն ոմանք են հանրականք, և ոմանք մասնականք. և մասնականք, որպէս յորժամ ասեմք ըղկնտութի՟ 'ի Սոկրատում. իսկ հանրական, որպէս յորժամ ասեմք զբանականն 'ի մարդում, և 'ի հրեշտակում: Արդ յաղագս մասնականացն և ոչ մի ինչ բան յառ իմաստասիրացն՝ բայց յաղագս հանրականացն. արդ սահմանէ Պորփիւրիոս՝ ոչ զմասնականն, այլ զհանուրն. և վասն զի ընդհանուր է, մ՟ այսորիկ ըստ յոլովից բերի[1]. վասն որոյ և ոչ որպէս տարբերութի՟ ըստ յոլովից ստորոգի, այլ որպէս ընթանուր. զի թէ որպէս տարբերութի՟, պարտ էր ապա և նմ՟ տարբերութ՟ ըստ յոլովից ստորոգիլ. քանզի մասնականն՝ Սոկրատում միայն ստորոգի. և յայտ է թէ ոչ որպ՟ տարբերութ՟ ը՟ս յոլովից ստորոգի, այլ որպ՟ ը՟հանուր:

Դարձեալ տարակուսին ևասեն, եթէ նուազ է բացատրեալ սահմանդ. քանզի ոչ բարւոք ասաց ըստ յոլովից և տարբերեցելոց տեսակաց, քանզի ստորոգի ոչ միայն տարբերեցելոց տեսակաց, այլ և թուով: Քանզի մտաց և հանճարոյ ընդունակն՝ ոչ գոյ 'ի տարբերեցելոցն տեսակաց, այլ տարբերութեանցն թուով: Քանզի և ոչ վերնագոյն գոյացութեան է մտաց և հանճարոյ ընդունակն գոլ. վասն զի ոչ ունի պէտս. և ոչ դարձեալ յոռագունին. մ՟ զի ոչ գոյ կարող: Բարւոք տարակուսեցին. բայց գըտանի 'ի բազում գիրս ներածութեանց Պորփիւրի, և շաղկապ որ ունի այսպէս. եթէ Տարբերութի՟ է որ ըստ յոլովից և տարբերեցելոց և տեսակաց է. վասն զի և շաղկապդ յայտ արար, թէ և թուով:

Արդ եկեսցուք 'ի պատմութի՟ իմաստասիրիս՝ որ 'ի ձեռն երկու ձեռնարկութեանց ցուցանէ, եթէ 'ի ներրում որպիսիինչէին ստորոգի տարբերութի՟: Որոց առաջինն այսպէս է. 'ի հարցանելն մերում՝ թէ որպիսի՞ ինչ մարդ կամ ձի կամ արծուի, ոչ պատասխանէ՝ կենդանի, այլ այսպիսի ինչ կենդանի, բանական կամ անբան. ապա ուրեմն 'ի հարցմանէ պատասխանին, իսկ 'ի պատասխանոյն ստորոգութիւն յայտնի: Իսկ երկրորդն է այսպիսի ինչ. ամենայն իր՝ 'ի նիւ-

1 Այլ օրին. ստորոգի:

թոյ և 'ի տեսակէ բաղկանայ, կամ 'ի համեմատու-թէ նոցին. իսկ համեմատի նիւթոյ՝ սեռ, իսկ տե-սակի՝ այս ինքն կերպարանի՝ տարբերութի. արդ զոր օրինակ նիւթ 'ի բազումս տարածեալ գոյ, նոյնօրի-նակ սեռ. և զոր օրինակ 'ի վերայ նիւթոյ կերպա-րանք գոլով անհատեն զնիւթն և յանհունս զնա բաժանեն, ըստ նմին օրինակի տարբերութիք 'ի վե-րայ սեռի գոլով անհատեն զնա: Արդ եթէ համե-մատի տարբերութի կերպարանի, իսկ կերպարան՝ որ-պիսի ինչ է է, որպէս ասէ Արիստոտէլ 'ի ստորոգու-թիսն, յայտ է թէ և տարբերութի որակ է, այս ինքն որպիսութիւն:

« Բայց ենթագրեն զնա և այսպէս »: Պարտ է գիտել, եթէ 'ի վերայ հինգ բարբառոցդ այդոցիկ երբեմն սահման ասէ Պորփիւրիոս, և երբեմն ստո-րագրութի, ուսուցանելով զմեզ՝ թէ և ենթագրութի կարող են ասիլ և սահման. ենթագրութիւն որպէս առ իրս. իսկ սահման որպէս առ կալմունս իրաց զոր առ միմեանս ունին:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՊՐԱԿՔ ԻԵ

ԱՍՏԱՆՕՐ դարձեալ այլազգաբար բացատրէ մեզ զենթագրութի տարբերութե ասելով, եթէ « Տարբե-րութի է անջատելըն բնաւորեալ զընդ նոյն սեռիւ ». և պարտ է յաւելուլ եթէ գոյեղաբար՝ և բարւոք է բացատրութի սահմանիս: Քանզի յայտնէ եթէ տար-բերութի է՝ որ անջատէ զայնս որք ընդ նովին սեռիւ են, բանականն և անբանն, մահկանացուն և անմա-հըն. և այլազգաբար դարձեալ բացատրէ եթէ « Տար-

բերութիւն է, որով եւեթ տարբեր է իւրաքանչիւր »: Այսուստ խնդրեն ոմանք ասելով, եթէ ընդէ՞ր ըզտարբերութենէ միայն քառակի ենթադրեաց: Յաղագս որոյ ասեմք, եթէ ոչ մի ոք 'ի սահմանացդ ընդ թախանձուէ մեղադրանօք անկանի. քանզի ամենեքեան կարեւոր բացատրեցան:

Արդ առաջինն պարունակէ զբաժանականն եւ ըզբաղկացականն տարբերութիւնս[1]. քանզի ասէ՝ թէ « Որով առաւելու տեսակն քան զսեռն »: Եւ արդ 'ի յայտնելն թէ գոն 'ի սեռում տարբերութիւնք, զբաժանականն նշանակեաց. քանզի 'ի սեռում տարբերութիւնք բաժանականք են. իսկ 'ի յայտնելն 'ի տեսակում զտարբերութիւնս՝ զբաղկացականն նշանակեաց. քանզի բաղկացականք տեսակացն են: Այս առաջին ենթադրութեան տարբերութեան որ բաժանեցան երկրորդ եւ երրորդ:

Երկրորդ զբաղկացականն յայտնելով. քանզի յասելն Աստ յոլովից եւ տարբերեցելոց տեսակաց, զբաղկացականն յայտնեաց. քանզի որ 'ի տեսակն ստորոգին տարբերութիւնք՝ բաղկացականք են: Իսկ երրորդ զբաժանականն պարունակէ. քանզի ասէ՝ եթէ Տարբերութիւն է անջատեալն բնաւորեալ զայնս՝ որք ընդ նոյն սեռիւ են գոյեղաբար. եւ յայտ է թէ անջատեալն ասել՝ զբաժանականն նշանակեաց:

Իսկ չորրորդ զընդհանրական եւ զպարզ տարբերութիւն յայտնէ. եւ մի ոք կարծեսցէ, եթէ որովհետեւ 'ի վերջէ բացատրեցաւ՝ եւ յիւրմէ ներգործութենէ նմանաբար ընկալաւ զանուանակոչութիւն, նուազագոյն ինչ է նախասացելոցն, այլ լաւագոյն է քան զայլ երիսն եւս, որպէս իւր Պորփիւրի թուի. քանզի զառաջին ենթադրութիւն ոչ ընդունի. քանզի ասէ՝ թէ որպէս ասեն: Իսկ զերկրորդն յոյժ գոլ մեք ցուցաք, թէպէտ եւ զնն շաղկապ առնու. քանզի երբեմն տարբերեցելոց տեսակաց, եւ երբեմն թուով, որ է անվայելուչ սահմանի. քանզի ոչ վայել է սահմանի երբեմն այսպէս եւ երբեմն այնպէս: Իսկ երրորդն նուազագոյ,

1 Մի օրին. առաջինն պարունա- ցական տարբերութիւնս յայտնէ: կան է, զի զբաժանական եւ զբաղկա-

քանզի ասացաք՝ եթէ պարտ է յաւելուլ զգոյեղաւ-ցարն ։ Իսկ չորրորդն յայսպիսեաց ինչ ոչ ունի, այլ զամենայն տարբերութիւն յայտնէ ։

Արդ ասացեալք զիւրաքանչիւր ուրուք 'ի չորից սահմանացս զիւրն, յայլ խնդիր զբանն ուղղեսցուք . քանզի խնդրի՝ թէ վասն էր յաւել զգոյեղն յերրորդ սահմանն . բայց ինքն իսկ Պորփիւրիոս ասէ՝ եթէ զգոյեղն պարտ է յաւելուլ, զի զգոյեղագոյնն յայտնեսցուք . վասն զի և պատահականք տարբերութիւնք տարանջատեն զընդ նոյն սեռիւ . քանզի նաւելն՝ տարանջատէ զմարդ յայլոց կենդանեաց, և ծիծաղելն և լայնեղունկնն . վասն զի այսոքիկ 'ի վերայ մարդոյ ասին ։

Աստուստ դարձեալ երկրորդ տարակուսանս վերաբուսանին մեզ, այս ինքն խնդիրս . որոց առաջինն այսպիսի ինչ է խնդիրս . ասեն՝ թէ զիա՞րդ մարդոյ միայն գոյ նաւելն, քանզի և այլ կենդանիքն լողել գիտեն ։ Առ այսոսիկ ասեմք այսպէս, ոչ ասէ Պորփիւրիոս զնաւելն լողել՝ այլ զհիւսնելն նաւել . քանզի հիւսնելն մարդում միայն գոյ ։

Աստուստ դարձեալ երկրորդ տարակուսութիւն ըզմեզ ընդունի . քանզի ասեն՝ եթէ զնաւելն հիւսնել ասէ Պորփիւրիոս, վասն էր զհիւսնելն պատահումն ասէ՝ և ոչ գոյեղ, և զի հիւսնելն գոյացուն մարդոյ է՝ սահմանք մարդոյն յայտնեն . քանզի ասեմք՝ կենդանի բանաւոր մահկանացու, մտաց և մակացութեան ընդունակ . իսկ կարելն հիւսնել՝ մասն է ընդունականին . քանզի ամենայն մարդ ընդունակ է հիւսնութեան . իսկ եթէ մասն է ընդունականին՝ մակացութեան ումն է, և յայտ է՝ թէ գոյացուն . քանզի մասունք գոյացութեան գոյացութիւն են, որպէս ասէ Արիստոտէլ 'ի ստորոգութիւնս . արդ զիա՞րդ զնաւելն պատահումն ասէ Պորփիւրիոս ։

Առ այսոսիկ այսպէս ասել պարտ է . եթէ է ինչ առաջին, և՛ է ինչ երկրորդ . առաջին մարդ, երկրորդ այսպիսի ինչ մարդ, որգոն՝ քերթող, կամ կարճ, կամ երկայն . և է ինչ դարձեալ որ ըստ ինքեան է, և է որ ըստ պատահման . և ըստ ինքեան կենդանին, իսկ ըստ պատահման սպիտակն ։ Արդ եթէ այսոքիկ

այսպէս, եթէ մարդ առաջին է, իսկ քերթօղն գոլ երկրորդ. արդ ուշ ունելով երկրորդին Պորփիւրիոս, ասէ մակագոյեղս զայսպիսիս. որպէս երկրորդ ինչ մարդոյն. քանզի զերկրորդ մարդ մարդոյն և կամ կենդանոյն՝ մակագոյեղս կոչեն: Նաև պարտ է գիտել՝ եթէ սահմանս այս ոչ նշանակէ զաննմանասեռսն, այլ զնմանասեռսն, քանզի յասելն զընդ նոյն սեռիւ՝ զայս նշանակեաց:

Արդ երկուս ևս տարակուսանս տարակուսեալ՝ դադարեցուսցուք զյաղագս այսոցիկ զխնդիրն: Նախ եթէ մինչ փաղանունքն տան անուանն և իրի հաղորդութի, և ո՞մ ոք ասէ փաղանունաբար ստորոգիլ զտարբերութիս տեսակացն, զի ոչ տան տեսակացն և անուանն և իրի հաղորդութի, այլ իրի միայն. քանզի ոչ ասեմք զանքանութի բանականն, և զմահկանացուն անմահութի: Առ այսոսիկ ասեմ՝ եթէ որ փաղանունաբար ստորոգին երկակի են. են որք անուանն և իրի տան, որպէս կենդանին մարդոյն. և են որք իրի միայն, որպէս տարբերութիք. ապա ուրեմն այլ է տարբերութի, և այլ տեսակ: Վասնզի և որ անջատին՝ այլ է այնմ, որ անջատեն զնա. արդ որ անջատեն տարբերութի է, իսկ որ անջատին՝ տեսակք. ապա ուրեմն ամենայն իրօք այլ է տարբերութիւն՝ և այլ տեսակ:

Բայց ենթագրեն զայսպիսի տարբերութի և այսպէս. "Տարբերութի է անջատեալն բնաւորեալ զընդ նոյն սեռիւ": Զայս սահմանի պակասութի յետ սակաւ իմիոյ բացատրէ ասելով, "Նաև առարտագործելով զյաղագս տարբերութե մի զվայրապար դէպն ասել անջատողացն զընդ նովին սեռիւ գոլ տարբերութի": Որոց շարադրութի նշանակէ զայս, թէ ոչ զվայրապար անջատողն զընդ նովին սեռիւ պարտ է ասել տարբերութի, այլ զգոյեղաբարն անջատող, զոր Պորփիւրիոս որ 'ի գոլն բաղարկոցէ ասաց. քանզի ասելովն, "Որ 'ի գոլն բաղարկոցէ՝" զգոյեղ տարբերութի նշանակեաց: "Նաև զզինչէրն գոլ": Այս արիստոտէլական աւանդութի 'ի վերայ գոյեղիցն ասացեալ: "Նաև որ իրին է մասն": Նարուղք ասէ. զի բանականն մասն է մարդոյ. քանզի բաղարկոցի 'ի սահմանս մարդոյ: "Վասն զի ոչ եթէ բնաւորեալն նաև՝ տարբերութի է մար-

դոյ. Թէպէտ և յատուկ մարդոյ է»: Այս ինքն թէ պարտ է առաջդրել 'ի սահմանդ զգոյեղաբարն. քանզի թէ ոչ առաջդրեմք զգոյեղաբարն՝ գտանեմք պարունակեալ և զյատուկն, քանզի և յատուկն մարդոյ՝ որոշէ զնա 'ի ձիոյն, և յատուկն ձիոյն՝ յայլոց կենդանեաց: Իսկ այսպիսիք ոչ են նշանակեալք գոյացութեն, ոչ մարդոյն և ոչ այլոց կենդանեաց:

# ՅԱՂԱԳՍ ՅԱՏԿԻ

## ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ Ի ԴԱՒԹԷ

### ՊՐԱԿՔ ԻԲ

ԶՄԻԱՀԱՄՈՒՌ փոփոխմունս, ոչ միայն յիրս՝ այլ 'ի ձայնս տալ գոլ ծանուցեալ Պորփիւրիոս, չունել 'ի պատահմունս կոյս հեղգացաւ. քանզի պատահմունքն մակագոյեղ գոլով, միահամուռ 'ի գոյեղից անմիջակաբար 'ի մակագոյեղս գոլ ոչ էր կարողուն. յիրաւի ուրեմն ապա 'ի յատուկն կոյս խաղաց. վասն զի որչափ ինչ 'ի մակագոյեղմն հասեալ է՝ գոյեղ գոյ յատուկն: Այս առաջին պատճառ է, թէ վասն էր զյատկէ բուռն եհար Պորփիւրիոս:

Երկրորդն այսպիսի ինչ է. յատուկն 'ի միջի տարբերութեն և պատահման տեսանի. վասն զի երբեմն գոյեղաբար առնու, և երբեմն մակագոյեղաբար. գոյեղաբար՝ յորժամ ասես, մտաց և հանճարոյ ընդունակ՝ որ է յատուկ մարդոյ. իսկ մակագոյեղաբար առնու՝ որպէս յորժամ ասես զծիծաղականն յատուկ գոլ մարդոյ. քանզի պատահումն է: Իսկ արդ եթէ այսօրինակ այսպէս գոն, յիրաւի ուրեմն ապա նախադասեաց զյատուկն պատահմանն:

Երրորդ պատճառն այսպիսի ինչ է. պարտ էր յատ-

կին յառաջ քան զչորս բարբառսն նախադասել ։ Քանզի եթէ 'ի ձեռն ենթադրութեց ուսուցանէ ըզ-սեռս, և զտեսակ, և զտարբերութի, իսկ ենթադրութիւնք 'ի հակադարձից յատկեցն ամենայն երեք առնուն, ապա ուրեմն պարտ էր նախ և առաջին յաղագս յատկեցն բուռն հարկանել, և ապա յաղագս սեռի ուսուցանել. այլ վասն զի նոքա յատկեղք են, վասն այսորիկ թողեալ նոցա նախադասել յաղագս պատուականութե, իսկ մակադրեղեցն՝ վասն զի հանգիտապատիւք են՝ և ոչ երբեք ։ Արդ ուսեալք զնախադասութեցն բան՝ բեր այսուհետև 'ի նորին վարդապետութի խաղացուք. բայց նմանապէս և աստանօր ըստ արհեստաւորականացն բացորոշութեց՝ զհոմանունութի տարորոշեսցուք, և յաղագս որոյ նշանակութ է մեղ բանն. և այսպէս ապա 'ի նորին վարդապետութիւն խաղացուք ։

«Արդ ասի յատուկն քառակի. կամ ամենայնում տեսակում, որպէս երկոտանին գոլ. և կամ միայնում տեսակում՝, որպէս լինտութիւն. քանզի մարդում միայնում լինտութն. կամ ամենայնում և միայնում, բայց ոչ միշտ, որպէս ալեորելն. քանզի ամենայնում մարդում և միայնում է ալեորելն ոչ պակասելով ժամանակին. կամ ամենայնում և միայնում և և միշտ, որպէս ծիծաղականն. քանզի միայնում մարդում, և ամենայնում յատուկ գոյ և միշտ»։ Բայց ասացաք ամենայնում տեսակում գոլ զերկոտանին՝ առ որոշումն հոմասեռից. զի մի առցէ երկոտանին զՍոկրատէս և զՊղատոն միայն՝ այլ և զհաւս ։ Երկրորդումն ասացաք միայնում, վս անմանն սեռից. քանզի մարդում միայնում է կուռնտն գոլ՝ յայլոց կենդանեաց ։ Իսկ այլքն ամենայն յայտնիք են. քանզի ամենայնում մարդում և միայնում է ալեորելն և ծիծաղականն. այլ մին ոչ միշտ՝ որպէս ալեորելն. իսկ միւսն միշտ՝ որպէս ծիծաղականն ։ Նա և զիմրդ 'ի նուազագունիցն 'ի յոյժ յատուկն խաղաց կարգաւորութիւս. քանզի ամենայնում տեսակում գոլ յատուկ՝ գրէ թէ ոչ էր յատուկ. քանզի հաւասարութի իմն առնէ այսպիսի յատուկ, վասն այսորիկ որպէս փնուազ ինչ զնա նախադասեաց ։

Իսկ երկրորդ յատուկ ասացաւ՝ որ միայնում գոյր, թէպէտ և ոչ ամենայնում. և յիրաւի. զի այս յայտնագոյն քան զառաջինն. քանզի ունի զմիայնն, որ պատշաճ է յատկի։ Իսկ երրորդն՝ երկրորդին յայտնագոյն. վասն զի զերկոսեան ունի. և զամենայնում, և զմիայնումն։ Իսկ չորրորդն՝ երրորդին է յայտնագոյն. վասն զի ունի զմիշտն. քանզի ծիծաղականն՝ միշտ գոյ մեզ։

Իսկ արդ յաղագս որոյ է բանս. ասեմք եթէ յաղագս վերջնոյն. քանզի նա է միշտ և միում տեսակում ստորոգեալ. քանզի և այլք թէպէտ և են ընդհանրական և միշտ, որպէս երկոտանին գոլ. կամ ամենայնում և միայնում, այլ ոչ միշտ, որպէս ալեւորելն. իսկ սա և ամենայնում և միայնում և միշտ։ Իսկ այլազգ դարձեալ, առաջինքն ոչ հակադարձին, իսկ սա հակադարձի. քանզի որ ինչ մարդ՝ նա ծիծաղական, և որ ինչ ծիծաղական՝ նա և մարդ։ Արդ եկեսցուք և 'ի սորին վարդապետութիւն։

Ոմանք այսպէս սահմանեն զնա։ Որ ամենայնում, և միայնում և միշտ գոյ։ Իսկ կարի յոռապէս. վասն զի զոր պատմեցին վասն նորա՝ 'ի ձեռն նորին և սահմանեն։ Իսկ այլք այսպէս բացատրեն զնա։ Յատուկ է՝ կամ գոյեղ, կամ պատահումն հակադարձեալ. արդ որ այսպէս սահմանեն՝ յերկուս սղալանս անկանին։ Նախ և առաջին, եթէ ոչ երբէք գոյացութեան ասեմք զյատուկն՝ այլ պատահումն. ապա ուրեմն յորժամ ասեմք զնմանէ, եթէ գոյացութիւն յայտնէ՝ մտօք և հանճարոյ ընդունականաւն՝ դիւրակործանելի է. բայց պիտակաբար ասեմք զնմանէ գոյացութիւն նշանակել։ Երկրորդ՝ ոչ երբէք սահման ողջաբար ունելով երբեմն զայս և երբեմն զայն յայտնէ, որպէս բացատրեալդ։

Բայց արդ է այսպէս բացատրել. Յատուկ է՝ պատահումն հակադառնալով. և բարւոք բացատրեցաւ սահմանդ, քանզի թէ ոչ աւելի և նուազ ունելով սահմանդ՝ հանգէտ գոյ սահմանելոյն, իսկ հանգէտ հակադարձի. ապա ուրեմն որ ասեն՝ ամենայնում և միայնում գոյ յատուկ՝ հանգէտ է, վասն զի ոչ աւաւելութի և ոչ նուազութի ունի. նուազուի ոչ ունի,

վասն զի ամենայնում է. առաւելութիւն ոչ ունի, վասն զի միայնում է. իսկ հանգէտ գոլով հակադարձի, ապա ուրեմն բարուոք գոյ բացատրեալ սահմանդ։

«Զյատուկն բաժանեն քառակի»։ Ոչ պահէ ըզկարգ բացատրութեն Պորփիւրիոս՝ որպէս մեք 'ի տեսութեն. քանզի ասէ՝ եթէ Զայն ասեմք յատուկ գոլ մարդոյ, որ միայնում ասի և ոչ ամենայնում. որպէս բժշկելն. քանզի բժշկելն միայնում մարդոյ գոյ, այլ ոչ ամենայնում։ Իսկ դարձեալ զընդդէմն նորին յատուկ ասեմ՝ որ ամենայնում մարդոյ գոյ և ոչ միայնում. որպէս երկոտանին. քանզի ոչ մարդոյ միայնում, այլ՝ և այլ տեսակաց։ «Քանզի թէպէտ և ոչ ծիծաղի՝ ծիծաղական ասի, ոչ ահա ծիծաղելովն, այլ բնաւորելովն»։ Աստուստ ումանք ասեն՝ թէ բնաւորեցաւ մարդ ծիծաղել, ապա գոյացութի մեր է ծիծաղականն, որպէս բանականն. քանզի թէպէտ և ոչ ծիծաղիմք, ասեն, այլ զօրութ ունիմք այսպիսի։

Առ որս ասասցուք և ցուցցուք՝ թէ չէ գոյացութի ծիծաղականն՝ այլ մակադրեալ. և եթէ զիարդ լինի ծիծաղականն, և աստուստ ցուցցուք՝ թէ ոչ է գոյեղ։ Նախ և առաջին ցուցանելի է, եթէ գոյեղքըն կատարելականք գոն մեր, և որչափ ինչ աճեն՝ նոյնչափ և կատարելականք գոն։ Քանզի յոլովագոյնս բնաւորեալ է գոյացութի մարդոյ. արդ եթէ էր ծիծականն գոյեղ՝ պարտ էր նմա կատարողական[1] լինել մեզ, արդ կատարողական ոչ գոյ, այլ և հրաժարական, քանզի ասէ՝ թէ Իսկ մի ծաղր յանդուգն։

Երկրորդ ոչ երբէք ընդդիմակըն՝ նորին իբր բաղկացականք գոն. որգոն՝ մահկանացուն և անմահն, բանականն և անբանն. արդ եթէ էր ծիծաղականն գոյեղ 'ի մեզ բաղկացական՝ ապա և լալականն, վասն զի և նա միայնում մարդոյ գոյ. արդ գոյեղ ասասցի և նա՝ որպէս ծիծաղականն, վասն զի որպէս մին ունի և է 'ի հակակայիցն՝ նոյնպէս և միւսն ևս. բայց անկարելի է երկուցն ընդդիմակացն բաղկացականս գոլ մեզ։

1 Երկու օրին. կատարելական։

Այլ թերևս ասիցէք, թէ ոչ են այսոքիկ ընդդիմակք միմեանց. քանզի գոյացութիւնք են. իսկ դուք՝ որպէս զի խոստովանաբար մակադրեալք են՝ այսպէս ներամփոփեցէք ։ Առ որս ասեմք, թէպէտ և ոչ են ընդդիմակք, սակայն անկար է երկոցունց բաղկացականս գոլ. քանզի ահա բանականն և անբանն ընդդիմաբաժանեալք են, սակայն բանականն բաղկացական է մեր, և այն զի անբան ևս ունիմք շունչ. իսկ ծիծաղականն և լալականն ընդդիմակք միմեանց են. վասն զի և փոփոխին 'ի միմեանս. արդ եթէ այսոքիկ այսպէս, յայտնի է՝ թէ ծիծաղականն 'ի մեզ ոչ է բաղկացական ։

Երրորդ ոչ երբէք գոյեղք աճելովն 'ի բաց բառնան զայն՝ որում՝ ստորոգին. որգոն՝ բանականն աճելով ոչ 'ի բաց բառնայ զմարդ, այլ և զընդդէմսն ևս աճեցուցանէ ։ Իսկ եթէ ծիծաղականն 'ի բաց բառնայ զմարդ աճելովն՝ զիա՞րդ իցէ գոյեղ, ուր և առ Պարսից գտան դատապարտութիւնք՝ ծաղու սաստկել զդատապարտեալսն ։

Չորրորդ առ այսոքիւք՝ եթէ ոչ զորո՞ւք ունիմք զծիծաղականն, ուր և ոմանք ընդ Սոփոնիոսն անցեալք՝ յայնմ հետէ և առ յապա առանց ծիծաղելոյ մնացին ։ Բայց ասելի է ըստ մեր խոստմանն, թէ զիա՞րդ լինի ծաղր. և ոմանք ասեն թէ անբան շնչովն լինի որոց դաշնակից գումք. քանզի ծիծաղեն 'ի ձեռն մկանց և ջլաց լինի, որ անբան շնչոյն են, և զի ոչ 'ի ձեռն բանական հոգւոյ ։ Բայց տարակուսեն ոմանք ասելով եթէ 'ի ձեռն անբան շնչոյն ծաղրն լինի, վասն զի և մկունքն և ջիլքն 'ի միմեանս գոլով[1] առնեն զծաղրն, ապա պարտ է նմա և յանբանսն տեսանիլ. վասն զի ունին մկունս և ջիլս ։ Այլ այսոսիկ ընդդիմաբանելով ասեմք, թէ և այլ կենդանիք են ծիծաղական՝ որպէս վկայէ Արիստոտէլ յաղագս կենդանեաց, յորոց մի է և տառեղն ։ Երկրորդ՝ թէ ոչ յամ կենդանիս նմանապէս ներգործէ անբան շունչն, ապա թէ ոչ՝ պարտ էր հաջուլ[2] շան և յայլ

1 Երկու օրին. գոլ. այլ օրին. գալով։ 2 Երկու օրին. հաջողութէ ։

կենդանիս տեսանիլ. քանզի այսպիսիկ յատկութիւնք են չնչոյն յիւրաքանչիւրում տեսակի. և զի ոչ բուսականին[1] է ծիծաղականն՝ յամենեցունց խոստովանեալ է, վասն զի երիս ունի զօրութիս, զաճողականն՝ զսննդականն, զծննդականն. և մի ոք յայսց զօրութեանց ոչ ներգործէ զծիծաղականն :

## ՅԱՂԱԳՍ ՊԱՏԱՀՄԱՆ

### ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ Ի ԴԱՒԹԷ

### ՊՐԱԿՔ ԺԹ

ՍԱՀՄԱՆՔ պատահմանն՝ բացատրեն նմա զբուն արժանոյն կարգ, քանզի յայտնեն՝ եթէ վերջին է, և նուազ և տկար : "Քանզի զի՞նչ է պատահումն. որ լինի և բացալինի թարց ենթակային ապականութեան" : Այլ տարակուսեն ոմանք ասելով՝ եթէ վասն է՞ր 'ի պատահման միայն զանց արար զբացորոշութեան Արիստոտէլի. ոչ ասաց՝ եթէ քանի՞ նշանակութիւնք են պատահման. և եթէ յաղագս որո՛յ նշանակութեան է բանն. այլ նոյնժամայն 'ի վերայ ածէ զվարդապետական յեղանակն :

Առ որս ասեմք, եթէ զքանաբարն ասել եթող, վասն զի յառաջ քան զայսոսիկ ասաց՝ եթէ պատահումն երկակի է, կամ անջատական կամ անանջատական : Իսկ յաղագս որո՛յ նշանակութեան ոչ արտադրեաց, կամելով զամենայն պատահմանէ բուռն հարկանել. քանզի յայնժամ ասեմք յաղագս որո՛յ նշանակութեան է բանն, յորժամ զմիոջէ բուռն հարկանեմք, և յորժամ ոչ վասն բազմաց ուսուցանեմք :

1 Երկու հնագոյն օրինակքն բաժանեն :

Արդ եռակի բացատրելով ասէ, թէ «Պատա-հումն է որ լինի և բացալինի առանց ենթակային ապականութեան». և այլազգաբար. թէ «Պատահումն է որ ընդունի՝ նոյնում գոլ կամ ոչ գոլ»։ Իսկ 'ի բա-ցասութէ ենթագրէ այսպէս, թէ պատահումն է որ ոչ սեռ է և ոչ տեսակ և ոչ տարբերութիւն և ոչ յատուկ։ Այլ վասն զի ոմանք փորձին յոյժ ցուցանել զբացա-տրեալ սահմանդ՝ բե՛ր զառ 'ի նոցանէ ասացեալսն յարադրեսցուք. և այնպէս ապա 'ի վերջէ՝ նոցա ա-սացելոցն վայելչական պատասխանատուութիւն բա-ցատրեսցուք։

Ասեն ոմանք զառաջինն սահմանէն, թէ նուազ գոյ և աւելորդ։ Այլ նուազ այսպէս, եթէ սահմանս այս զեղեալսն և զբացեղեալսն պատահումն նշանակէ՝ յայտ է թէ զանջատական պատահումն միայն նշանակէ. որգոն՝ զսպիտակն որ կարող գոյ յիս լինել և բացալի-նել առանց ենթակային ապականութեան. քանզի ոչ բա-ցալինի սեաւն եթէովպացւոյն՝ տակաւին ևս գոլով եթէովպացւոյն, և ոչ դարձեալ ագռաւուն։

Այլ որս դարձեալ ասեմք, եթէ պատահմանցն ո-մանք ներգործութիւնք անջատելին յենթակայէն, իսկ ոմանք մտածութիւնք միայն։ Արդ ներգործութիւնք և մտա-ծութիւնք անջատականքն. քանզի կարող գոյ և ներգոր-ծութիւնք անջատել սպիտակն՝ որ յիս, կարող գոյ և մտա-ծութիւնք. իսկ մտածութիւնք միայն՝ զանանջատական պա-տահմունսն. քանզի զսեաւն եթէովպացւոյն կարող գոյ մտածութիւնք իմանալ 'ի բաց եղեալ՝ առանց ենթա-կային ապականութեան։ Քանզի եթէ իմանաս սպի-տակ զեթովպացին՝ ոչ ապականի ենթակայն. վասն որոյ պարտ է յաւելուլ 'ի սահմանդ մտածութեամբ և ներգործութեամբ, և ոչ գտանի նուազ, թէ Պատա-հումն է որ լինի և բացալինի առանց ենթակային ա-պականութեան, ներգործութիւնք և մտածութիւնք։

Իսկ առաւելուլ զնմանէ ասեն այսպէս. եթէ զայս ասեմք պատահումն, որ լինի և բացալինի առանց են-թակային ապականութեան. արդ ոչ միայն զպատա-հումն պարունակեաց սահմանս այս, այլ և գոյացու-թիւս ոմանս. քանզի ահա ջերմութիւն հրոյ՝ լինի և բացալինի առանց ենթակային ապականութեան, որ

է էութ̃ի հրոյ ։ Այլ թէ ոք ասիցէ, թէ զիա՞րդ բա-
ցալինի ջերմութ̃ի 'ի հրոյն, և ոչ ապականի ընթա-
կայն. քանզի անորակ մարմին է, իսկ անորակ մար-
մին ոչ ապականի ։

Առ որս ասեմք եթէ ոչինչ է տարակուսութ̃իդ. քանզի յայտնի է լուծումն. քանզի ջերմութ̃ի՝ էութ̃ի է և պատահումն. քանզի որպէս առ հուրն՝ էութ̃ի է ջերմութիւն, իսկ որպէս առ մարմինն հրոյն՝ պատահումն ։ Նաև այլազգ դարձեալ ասելի է, թէ և ոչ պարունակեաց զայսոսիկ սահմանդ. քանզի յասելն առանց ընթակային ապականութ̃ե, յայտ առնէ՝ թէ ապականելի է ընթակայն. քանզի որոց բան ունի ապականիլ ընթակայն՝ ա̃մ իրօք ապականի, թէ պէտ և ոչ բացալինի ։ Արդ եթէ այսոքիկ այսպէս ունին. վասն զի ընթակայն հրոյ և ջրոյ անապականելի են, քանզի անորակ մարմին են, յայտ է թէ ոչ պարունակեաց զայսոսիկ սահմանդ. քանզի ասէն զընթակայն ապականելի. իսկ այսոցիկ անապականելի է ընթակայն ։

Արդ յայսպիսեաց կարծեաց ազատեալ զսահմանդ, բե՛ր յայլ երթիցուք տարակուսանս ։ Քանզի ասեն ոմանք՝ եթէ վասն զի ոչ երբէք ինչ յէիցն ինքեան կորստեան բաղձայ. քանզի ասեմք զանբանիցն, եթէ զինքեանս կորուսանեն 'ի քարանձաւաց վազելով և 'ի ջուրս անկանելով ոչ եթէ կորստեան ինքեանց բաղձալով զայսոսիկ առնեն, այլ կամ վասն փախչելոյ յուժեքէ, և կամ վասն բարկութ̃ե ըստ պատահման զինքեանս կորուսանեն. զիա՞րդ պատահմունքն զինքեանս կորուսանել բաղձան ։ Նաև զի զինքեանս կորուսանեն՝ աստուստ է յայտ. զի եթէ յընթակայումն են պատահմունքն՝ և զընթակայն կորուսանեն խոտորմանաբար և զինքեանս կորուսանեն. և եթէ զիա՞րդ կորուսանեն զընթակայն՝ ասասցուք ։ Ունական ջերմութիւնն կորուսանէ զընթակայն. քանզի անհնար է բացալինել նմա առանց ապականութ̃ե ընթակային, արդ որովհետև զընթակայն կորուսանէ՝ ապա և զինքն ընդ նմա ։

Առ որս ասեմք. եթէ ոչինչ 'ի պատահմանց՝ իւրում ապականութ̃ե տենչայ, այլ և ոչ զընթակայն

ապականել տենչայ. քանզի ըստ պատահման ապականէ զնա, և ոչ կամօք. և յայտ է աստուստ, եթէ ունական ջերմն՝ անչափութիւն է, իսկ առողջ խառնուածն՝ չափակցութիւնքն. իսկ այսոքիկ ընդդէմ միմեանց են. արդ անչափութիւն փութայ ապականել զչափակցութիւն. և ապականելով զնա, ըստ պատահման ապականէ և զէնթակայն. իսկ ապականելով զէնթակայն՝ և զինքն ապականէ:

Իսկ երկրորդ սահման անկատարելաբար ունի, քանզի ասէ՝ թէ «Պատահումն է, որ ընդունի նոյնումն գոլ՝ կամ ոչ գոլ». և սա ոչ պարունակէ զանանջատելի պատահումն. քանզի և ոչ մարթ գոյ՝ գոլ և ոչ գոլ նոյնում. քանզի սեաւ՝ ոչ մարթի ոչ գոլ եթովպացւոյն. վասն որոյ պարտ է առադրել որպէս առաջնումն, կամ ներգործութեամբ կամ մտածութեամբ: Իսկ առ երրորդն գրէ թէ և սահման իսկ ոչ է, վասն զի ոչ ասի որ էն՝ այլ որ ոչն է:

Աստուստ ոմանք ասեն. թէ ընդէ՞ր ոչ և զայլսն սահմանեաց այսպիսի բացասութեամբ: Առ որս ասեմք՝ թէ ոչ կամէր զերկբայսն յերկբայիցն սահմանել. մ̃ զի տակաւին ևս յերկբայս էին սեռ և տեսակ և տարբերութիւն. և ոչ կարէր ասել՝ եթէ սեռ է, որ ոչ տեսակ է և ոչ տարբերութիւն. մ̃ զի տակաւին ևս անգիտանային առ 'ի մէնջ. իսկ որպէս զայլսն զա̃մ սահմանսն ծանոյց մեզ, և պատահումն միայն գոյր մնացեալ՝ յիրաւի բացասութեամբ ծանուցելոցն սահմանեաց:

«Բայց կարէ ընդ միտ ածել և իմանալ ագռաւսպիտակ՝ և եթովպացի 'ի բաց ընկեցեալ զգոյնն առանց ենթակային ապականութեան»: Բազում անգամ ասացաք վասն սահմանաց պատահմանց՝ թէ ոչ ոք 'ի դոցանէ ողջաբար ունի. քանզի յառաջին սահմանն որ ասէր, թէ «Պատահումն է՝ որ լինի և բացալինի առանց ենթակային ապականութեան», առադրեցաք, թէ կամ ներգործութեամբ, կամ մտածութեամբ: Արդ՝ կամս այս, կամ բաղհիւսական է շաղկապ, կամ տարալուծական. և եթէ բաղհիւսական է որպէս գոլ՝ թէ և ներգործութեամբ և մտածութեամբ սուտ է սահմանդ 'ի վերայ անանջատականաց պատահ-

մանց. քանզի անանջատականքն ոչ լինին և բացալինին ներգործութք և մտածութք առանց ենթակային ապականութե։ Իսկ եթէ տարալուծական է, ոչ ասի գոլ սահման՝ այլ բաժանումն. քանզի սահմանի գործ է՝ ժողովել զբազումն և միացուցանել. իսկ բաժանման, զմին ՚ի բազումն ցուցանել. արդ այսպէս առաջին սահմանն, քանզի ասէ, կամ ներգործութք կամ մտածութք։ Նոյն բան ասի և ՚ի վերայ երկրորդին։ Իսկ վասն երրորդին անդէն իսկ ՚ի տեսութե ցուցաք թէ որպէս յառի գոյ։

## ԿԱՏԱՐՈՒՄՆ ԵՂԵՒ ԳՐԵԼՈՑ
## ՄԻՈՅ ՄԱՍԻՆ ԱՌԱՋԻԿԱՑ ՇԱՐԱԳՐՈՒԹԵԱՆ
## ՊՈՐՓԻՒՐԻ

# ՅԱՂԱԳՍ ՀԱՆՐԱԿԱՆԱՑ ՍԵՌԻՑ ԵՒ ՏԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

## ԱՌԱՋԻԿԱՅ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ԱՌԱՋԻՆ

ԸՍՏ խոստմանն մերում յետ բանիւ ստեղծանելոյ զհինգ բարբառսդ, իբր զհասարակութիւնս նոցին եւ զզանազանութիւնս յարադրեսցուք ։ Եւ պարտ էր՝ որովհետեւ կատարելապէս ուսաք՝ կատարումն առնել առաջիկայ շարագրութեանս. քանզի որ գիտէ զհինգ բարբառսդ եւ զնոցին ենթագրութիւնս՝ գիտէ եւ զնոցին հասարակութիւնս եւ զանազանութիւնսն, այլ վասն զի առ ներածականս առնէ զբանս իւր, կարեւոր համարեցաւ զայսոսիկ աւանդել։ Եւ գիտելի է, զի իրողութիւք ամ՝ ոչ ամենայն ուրեք հասարակութիւնս ունին առ միմեանս եւ ոչ զանազանութիւնս. այլ ըստ իւրաց ինչ հասարակութիւնս ունին, եւ ըստ իւրաց ինչ զանազանութիւնս ։ Արդ հասարակութիւն ունին, վասն զի զմիոջէ իսկզբանէ կախեալ գոն. իսկ զանազանութիւն ունին ըստ նիւթոյն ։ Արդ երկուց եղելոց զանազանութեանց եւ հասարակութեանց՝ ընդհանրականաց եւ մասնականաց, զառաջին նախադասութիւն հանրականացն շնորհէ. իսկ զանազանութիւնն նախադասէ զհասարակութիւն ։ Ուստի եւ տարակուսեն ոմանք, թէ ոչ ինչ հասարակութիւն ունին առ միմեանս հինգ բարբառքդ. բայց եթէ ըստ միում իմիք ունին հասարակութիւն ։ Իսկ մի ինչ առնել զհինգ բարբառսդ տարակուսութիւն է. վասն զի տարակուսել արժան է թէ վասն էր հինգ բարբառքդ մի գոն ։

Արդ նմանեցաւ տարակուսութիւն հասարակութիւն,

իսկ լուծման զանազանութիւն. քանզի ցուցանէ թէ ոչ գոն մի ինչ. և 'ի ցուցանելն թէ ոչ գոն մի ինչ՝ զտարակուսութիւն լուծանէ: Արդ վասն զի նմանեցաւ ոմն տարակուսութեան և ոմն լուծման, և առաջին է տարակուսութիւն քան զլուծումն, առաջին է և հասարակութիւն քան զզանազանութիւն: Արդ ասէ Պորփիւրիոս, թէ ընդհանրական հասարակութիւն ամենեցուն՝ ըստ յոլովիցն ստորոգիլ: Իսկ զանազանելն՝ վասն զի ոչ ամենեքեան նոյն ենթակային ստորոգին. քանզի ոմանք 'ի նոցանէ տեսակաց ստորոգին. որպէս սեռ, և տարբերութիւն, և պատահումն: Իսկ ոմանք անհատից, որպէս տեսակ, և յատուկ: Այլ ինքն Պորփիւրիոս մի հասարակութիւն և մի զանազանութիւն յարադրեաց. իսկ մեք առադրեսցուք յերկաքանչիւրոց, բացատրելով զընդհանրականս ոմանս հասարակութիւնս և զանազանութիւնս:

Այլ նախ առաջին զհասարակութիւնս: Դարձեալ՝ ունին ամենեքեան հասարակութիւնս, վասն զի ամենեքեան հոմանունք են: Երրորդ հասարակութիւն, վասն զի ամենեքեան 'ի միում ստորոգութեան տեսանին, քանզի եթէ սեռք են ստորոգութիւնք, ամենայն իրօք է և այլքն 'ի բարբառոցն: Չորրորդ առ այսոքիւք տեսանեմք հասարակութիւն, վասն զի ամենեքեան սահման և եզերք են իմաստասիրականաց[1] ձայնից. քանզի ամենայնք իմաստասիրականք ձայնք յայտնիկ բարբառս եզերին, և ոչ ինչ է արտաքոյ սոցին: Հինգերորդ հասարակութիւն տեսանի՝ զմիմեանս 'ի ներքս ածելովն և զմիմեանս բառնալովն. զի ուր մի ոք իցէ 'ի դոցանէ, անդէն ամենեքեան. և ուր մին պակասէ՝ ամենեքին նուազեն: Արդ ասացեալք զհասարակութիւն՝ ասասցուք և զզանազանութիւնս նոցա:

Երկրորդ զանազանութիւն է նոցա՝ յեղանակ ստորոգութեան. քանզի ոմանք 'ի ներքուստ զինչէին ստորոգին, և ոմանք 'ի ներքուստ որպիսիինչէին: Երրորդ զանազանութիւն է նոցա՝ սահմանք. զի որոց սահմանքն զանազանք են՝ նոքա և գոյացութիւնքն: Չորրորդ զանազանութիւն է նոցա զատ 'ի բաժանմանէն գոլ. քան-

1 Մի օրին. իմաստասիրաց:

զի որք 'ի բաժանմանն են՝ զանազանք գոն, քանզի ոչ ոք ինքն յինքեան բաժանի։ Հինգերորդ զանազանութիւն ոչ նշանակելն զմիմեանս ըստ նմին իրի. քանզի սեռն ոչ նշանակէ զտեսակ որպէս զսեռ։

«Հասարակ ամենեցուն ըստ յոլովից ստորոգիլն»։ Ի հասարակութենէ մտացաբար՝ և զզանազանութին աւանդէ Պորփիւրիոս, քանզի ասէ՝ եթէ Ստորոգելն ըստ յոլովից՝ այլ ոչ նմանաբար. քանզի սեռ և տարբերութիւն և պատահ՝ տեսակաց և անհատից ստորոգին. իսկ յատուկն և տեսակն անհատիցն միայն։ Արդ ոչ բարւոք ասեն այնոքիկ որ ասեն՝ թէ յերիս հատածս բաժանի առաջիկայ շարադրութիւնս. և յառաջնումն զգոյացութիւն նոցա ուսուցանէ. իսկ յերկրորդումն զհասարակութիւն. իսկ յերրորդումն զզանազանութիւն. սուտ ասեն, քանզի միանգամայն զհասարակութիւն և զզանազանութիւն նոցա բացատրէ։ «Իսկ անհասուն, որ է տարբերութիւն՝ պիտակաբար ասաց, որ է անբանութիւն. այլ նախապետաբար զանհատիցն, իսկ ըստ երկրորդ բանի, պարունակողացն զանհատսն»։

Արդ ասէ՝ թէ յանհատսն նախ և առաջին տեսանի պատահումն, յետ այսորիկ ապա 'ի տեսակս. քանզի ջերմն և սպիտակն նախ 'ի Սոկրատէս տեսանի. աստուստ ապա և զմարդն ասեմք սպիտակ և ջերմ։ Այսոքիկ են դոցա ընդհանուր հասարակութիւնք և զանազանութիւնք հինգ բարբառոցդ։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՅ ԳՈՐԾԱՒՈՐՈՒԹԻՒՆՍ

### ԵՐԿՐՈՐԴ

Ասացեալ Պորփիւրի յաղագս հանրականաց հասարակութեանց՝ գայ և 'ի մասնականսն. և նախ և առաջին զհասարակութիւն և զզանազանութիւն սեռի առ տարբերութիւնն ասէ։ Այլ տե՛ս զիա՛րդ յորժամ վասն հասարակականացն է բան, զտարբերութիւն յետ սեռի դասէ. իսկ յորժամ վասն գոյացութեան սոցա կամի ցուցանել, յայնժամ զտեսակն նախադասէ ընդ սեռիւ, վասն զի առնչունակքն են. իսկ զառնչունակն՝ համանգամայն պարտ է ուսանել։

Արդ ասէ՝ եթէ «Հասարակ սեռի և տարբերութեանն ստորոգիլն տեսակացն. և ևս հասարակութիւն ունին. զի որք ստորոգին սեռի որպէս սեռի, այնոքիկ և զընդ սեռիւն տեսակաց. և որք ստորոգին տարբերութեան որպէս տարբերութեան, այնոքիկ և զընդտարբերութեան տեսակացն ստորոգին»։ Այլ բարւոք ասէ՝ թէ որպէս սեռի. քանզի զայս ասէ՝ թէ ամենայն՝ որ միանգամ սեռին ստորոգին գոյեղաբար, այնոքիկ և զընդ նովաւ տեսակացն ստորոգին. որգոն՝ գոյացութիւն սեռի գոյեղաբար ստորոգի, իսկ այս և մարդում ստորոգի։

Դարձեալ ներշնչականն և զգայականն կենդանւոյն ստորոգին, այսոքիկ և տեսակի ստորոգեսցին և անհատի։ Քանզի թէ ոչ զայսոսիկ առցուք 'ի վերայ սեռի՝ այլ զպատահմունսն, այս ինքն զմիափաղառականն գոլ, և կամ զկոչելն նմա սեռ՝ ընդ հանրականսպէս զայս առնուլ ոչ բաղկասցի բանն. քանզի այսոքիկ գոյացութեան ներշնչականութիւն և զգայականութիւն պատահեաց, պատահումն և կոչելն սեռ, և միափաղառական գոլ. որգոն՝ կենդանւոյ հանրականապէս առնուլն՝ այսոքիկ մարդոյ ոչ ստորոգեսցին. վասն զի

գոյեղաբար սեռի՝ այս ինքն գոյացութեան ներընչականութեան զգայականութեան ստորոգի : Նոյն բան և 'ի վերայ տարբերութե . քանզի որք գոյեղաբարն ստորոգին, այսոքիկ և զընդ նովաւ տեսակացն ստորոգեսցին . քանզի գոյացութի ունի տարբերութի՝ զպիտանանալն բանում, այս ինքն ներգրականում, որ և մարդում և անհատում ստորոգեսցի : Արդ թէ ոք ասէ՝ թէ պատահումն քառափաղառական գոյ, այս ոչ ստորոգի մարդոյ . քանզի ոչ է էութի նորա : Դարձեալ հասարակութի ունին զայն . զի որպէս 'ի բաց բարձեցելոյ սեռի, 'ի բաց բառնին և որ ընդ նովաւ են տեսակք, այսպէս տարբերութե 'ի բաց բարձեցելոյ, 'ի բաց բառնին և որ ընդ նովաւ տեսակք :

Արդ ասացեալ Պորփիւրի յաղագս հասարակութե սեռի և տարբերութե, բուռն հարկանէ և ըզզանազանութէ նոցին և ասէ՝ թէ Զանազանի սեռ տարբերութե, զի սեռ բնութեամբ առաջին է քան զտարբերութի : Եւ ևս, զանազանի սեռ տարբերութե, վասն զի սեռ զօրութբ ունի զտարբերութի, իսկ տարբերութիւն ոչ զօրութբ պարունակէ զսեռ : Եւ ևս տարբեր է սեռ, քանզի սեռ 'ի ներուն զինչէն ստորոգի . իսկ տարբերութի 'ի ներուն որպիսինչէն : Եւ ևս զանազանի սեռ տարբերութե . քանզի իւրաքանչիւր տեսակի սեռ՝ մի գոյ, իսկ տարբերութի՝ յոլով . քանզի ահա 'ի մարդում մի է կենդանին, իսկ տարբերութի յոլով, որ է կենդանի բանաւոր մահկանացու, մտաց և հանճարոյ ընդունակ :

ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՑՈՒԾՈՎ

ԱՌԱՋԻԿԱՅՍ ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ԵՐՐՈՐԴ

ԶՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ տարբերութեան ընկալու տեսակ, ընդ որում և վասն նախադասութեան հակառակի։ Արդ յարադրէ Պորփիւրիոս զսեռի և զտեսակի հասարակութիւն, երիս հասարակութիւնս, և չորս զանազանութիւնս։ Եւ վասն զի պէտս ունի առ տարորոշութեան մի մի 'ի զանազանութեանցն, բե՛ր նախ քան զզանազանութեանցն վարդապետութիւն սակաւ ինչ վասն նորա համգամանակեցուք։

Արդ ասէ՝ եթէ «Զանազանի սեռ 'ի տեսակէ». վասն զի բնութեամբ նախադասագոյն է սեռ քան զտեսակ։ Արդ այսոցիկ այսպէս ունելով, եթէ է ինչ սեռ և տեսակ, մի՛ առցես զսեռ և զտեսակ ըստ միում և ըստ նոյնում. որգոն՝ զկենդանին մի՛ առցես սեռ և տեսակ. ապա թէ ոչ՝ ինքն ինքեան եղիցի բնութեամբ առաջին[1]. այլ զներշնչականն առցես սեռ, և զկենդանին տեսակ, և այնպէս գտանի բանդ ճշմարիտ։ Երկրորդ առ տարորոշութիւն մի՛ առցես զսեռ ըստ այլում իրի տեսակ՝ և զտեսակ սեռ, այլ նոյնպէս. ապա եթէ առնուցուս զներշնչականն՝ որպէս տեսակ, և զկենդանին՝ որպէս սեռ, գտանի տեսակն բնութեամբ առաջին քան զսեռ։ Վասն այսորիկ ասացաք՝ մնասցէ սեռն որպէս սեռ, և տեսակն որպէս տեսակ։

Երրորդ՝ առ տարորոշութեան, թէ յառաջագոյն է սեռ քան զտեսակ՝ ոչ ըստ սեռականի և տեսականի զանազանութեանց. և զայս ասեմ, ոչ թէ սեռ որպէս սեռ յառաջագոյն է քան զտեսակ, քանզի առինչունակ է, իսկ առինչունակացն համանգամայն պարտ է գոլ և լինել, այլ որպէս իր. քանզի որպէս հայր, ոչ յառաջագոյն է քան զորդի որպէս հայր, քանզի հաւ

1 Մի օրին. 'ի լուսանցսն և վերջին։

մանգամայն են հայր և որդի ըստ օրինակի առնչունակին. այլ որպէս մարդ յառաջագոյն է Սոփրոնիսկոս Սոկրատայ: Նոյնպէս և սեռ յառաջագոյն է քան զտեսակ, ոչ որպէս սեռ՝ այլ որպէս իր. որգոն՝ գոյացուն ներընչական զգայական, արդ որպէս իր յառաջ է մարդոյ. քանզի յառաջ է քան զմարդ: Ասացեալք զառ տարորոշունս այսպիսի զանազանութեց, բեր զհասարակութիւնս նոցա ասասցուք, և ապա յետ այսորիկ զզանազանութիւնս:

Արդ հասարակ են սեռ և տեսակ, ըստ որում յոլովից ստորոգին. և ևս հասարակութիւն ունին, վասն զի երկոքեան յառաջագոյն են քան զանհատն. և ևս հասարակութիւն ունին, զի ոչ բոլոր ինչ են: Այլ վասն էր ասացաք որպէս բոլոր ինչ և ոչ բոլոր. մի զի բոլորն՝ ոչ բոլոր համայն յիւր մասունս ոչ կարէ տեսանիլ. ապա եթէ ոչ, եղիցի իւրաքանչիւրոք 'ի մասանցն՝ բոլորն: Իսկ տեսակն և սեռն բոլորն որպէս բոլոր յանհատումն տեսանի: Իսկ զանազանին՝ վասն զի սեռն յառաջագոյն է բնութ քան զտեսակ. և եթէ զիա՞րդ և որո՞վ յեղանակաւ է՝ ասացաք: Այլ և ս զանազանին. զի սեռ նիւթում քատակեցաւ, իսկ տեսակ կերպարանում. և եթէ զիա՞րդ նմանեցաւ սեռ նիւթում և տեսակ կերպարանում. որպէս զի իմացիս ինձ զայրաձեւն պղընձի. քանզի 'ի նիւթոյ 'ի պղղընձոյ և 'ի կերպարանէ մարդոյ բացատրեալ է:

Են և այլ ևս երկուս զանազանութիւնս սեռի և տեսակի. զմին յանընդդիմահաւասարութենէ ստորասութեն, և զմին յանընդդիմահաւասարութենէ բացասութեն: Արդ յանընդդիմահաւասարութենէ ստորասութեն զանազանի սեռ 'ի տեսակէ, վասն զի սեռ յոլովագոյնս ունի զօրութ զբաժանականս տարբերութիւնս. իսկ տեսակ ոչ ևս զբաժանականս. բայց յոլովագոյնս ունի զնոսա ներգործութ, որպէս բաղկացականս. բայց զստորասականն ասացաք: Այլ բացասականն՝ վասն զի ասելն սեռականագոյն ոչ ունի բաղկացականս տարբերութիւնս, և տեսականագոյնն ոչ ունի բաժանականս. իսկ ստորասական և բացասական է՝ յորժամ ասեմք, սեռն ոչ ունի բաղկացականս, և տեսակն ոչ ունի բաժանականս:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

## ԶՈՐՐՈՐԴ

ԵԿԵՍՑՈՒՔ այսուհետև և զհասարակութիւն սեռի և յատկի տեսցուք, և զզանազանութիւնս։ Արդ ունին հասարակութիւն սեռ և յատուկ. վասն զի երկաքանչիւրոք 'ի դոցանէ շարաբերի յայնցանէ յորոց ստորոգին. քանզի մարդն շարաբերէ, և կենդանին շարաբերի, և ծիծաղականն. քանզի որ ինչ մարդ՝ նա կենդանի. և որ ինչ մարդ՝ նա և ծիծաղական։ Եւ ևս հասարակութիւն ունին. վասն զի հանգիտաբար ունականաց յայնցանէ՝ որոց ստորոգին. քանզի կենդանի՝ հանգիտաբար և ձիում և մարդում ստորոգի, և ծիծաղականն նմանաբար Պղատոնի և Սոկրատայ։ Եւ ևս հասարակութիւն ունին սեռ և յատուկ. վասն զի փաղանունաբար ստորոգին որոց ստորոգինն. վասն զի որպէս կենդանին փաղանունաբար ստորոգի որոց ստորոգի, զի անուան և իրի տայ հաղորդութիւն, նոյնպէս և ծիծաղականն փաղանունաբար ստորոգի Պղատոնի. քանզի անուան և իրի տայ հաղորդութիւն այնմ՝ որ ունի զնա։

Իսկ զանազանի սեռ 'ի յատկէ, վասն զի սեռ յառաջագոյն է քան զյատուկ. քանզի սեռ նախ է, երկրորդ տեսակ, ապա յատուկ։ Եւ ևս զանազանի սեռ 'ի յատկէ. զի սեռն բազում տեսակաց ստորոգի, իսկ յատուկն միում որոյ է յատուկ։ Եւ ևս զանազանի սեռ 'ի յատկէ. վասն զի յատուկ հակադարձի այնմ որոյ յատուկն է, իսկ սեռ ոչ հակադարձի։

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

### ՀԻՆԳԵՐՈՐԴ

ՀԵՏԵՒՈՐԱԿԱՆ *կարգի պիտանացեալք, եկեսցուք և զսեռի և զպատահման հասարակուի և զզանազանուի՟ ասասցուք, այլ ոչ հանգէտ թուով զհասարակութի՟ և զզանազանուի՟. քանզի մի հասարակուի՟ ունիմք բացատրել և երիս զանազանուիս՟։ Այլ տարակուսեն ոմանք ասելով թէ վասն է՞ր 'ի վերայ այլոց բարբառոցդ բազում հասարակութիւն սեռի յարադրեաց, իսկ առ պատահումն մի հասարակուի՟։*

*Առ որ ասեմք՝ եթէ վասն զի յոյժ հեռագոյնս 'ի միմեանց տարակացան սեռ և պատահումն. վասն զի սեռ ծայր գոյացութեան է, իսկ պատահումն ծայր մակագոյեղ. և ըստ այլոց ոմանց կարողուի՟ է ցուցանել, եթէ յոյժ հեռի գոն 'ի միմեանց, վասն որոյ յոյժ գիտնոյ է գտանել զհեռագունիցն հասարակուի՟։ Արդ ասէ՝ թէ «Հասարակ է սեռի և պատահման ըստ յոլովիցն ստորոգիլ». զայսասիկ Պորփիւրիոս։ Իսկ մեք արտաքուստ, այլ հասարակութի՟ սեռի և պատահման բացատրեսցուք։*

*Արդ է հասարակուի՟ սեռի և պատահման. վասն զի երկաքանչիւրոք 'ի դոցանէ, և տեսակաց և անհատից ստորոգի։ Իսկ զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ յառաջագոյն է քան զտեսակն, և տեսակ յառաջագոյն է քան զպատահումն. քանզի ամենայն պատահումն յառաջագոյն ունի տեսակ՝ որոյ պատահումն է։ Այլ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ հանգիտաբար ստորոգի որոց ստորոգի. իսկ պատահումն ոչ հանգիտաբար՝ այլ ըստ առաւելումն և նուազումն։ Այլ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ նախ տեսակաց ստորոգի, և ապա անհատից. իսկ պատահումն նախ անհատիցն, և ապա տեսակաց։ Այլ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ 'ի ներում զինչէին ստորոգի, իսկ պատահումն 'ի ներում որպիսինչէին։*

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՎԵՑԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ տարբերութեան և տեսակի. եթէ համագիտաբար ունականեան, եթէ միշտ առընթեր գոն որոց ընդունականն գոն ։ Զանազանութիւն տարբերութեան և տեսակի, եթէ տարբերութիւն 'ի ներումն որպիսինչէութեանն ստորոգի . իսկ տեսակ 'ի ներում զինչ էին . եթէ տարբերութիւն յոլովս 'ի տեսակացն պարունակէ, և զտեսակացն անհատոն . իսկ տեսակ զընդ իւրեաւ միայն անհատոն ։

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ԵՕԹՆԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ տարբերութեան և յատկի . եթէ տարբերութիւնք հասարակաբար ստորոգի որոց ստորոգին, նոյնպէս և յատուկ, եթէ միշտ առընթեր գոն որոց ստորոգին ։ Զանազանութիւն տարբերութեան և յատկի . եթէ տարբերութիւնք յոլով տեսակս պարունակէ՝ իսկ յատուկն մի ։ Եթէ տարբերութիւն ոչ հակադարձի տեսակի . իսկ յատուկն հակադարձի ։

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

### ՈՒԹԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տարբերութեան և պատահման. եթէ 'ի վերայ յոլովից ասիլ. եթէ առ անանջատական պատահմունսն միշտ և ամենայնին առ գոլ: Զանազանութիւն տարբերութեան և պատահման. եթէ տարբերութիւնք պարունակեն և պարունակին, իսկ պատահմունքն պարունակեն և պարունակին. եթէ տարբերութիւնք զառաւելն և զնուազն ոչ ընդունին, իսկ պատահմունքն ընդունին:*

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

### ԻՆՆԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տեսակի և յատկի. եթէ միմեանց ստորոգին, եթէ հանգիտաբար ունականան: Զանազանութիւն տեսակի և յատկի. եթէ տեսակ կարող գոյ այլոց որպէս սեռ լինել, իսկ յատուկն ոչ. եթէ տեսակ գոյեղ գոյ, իսկ յատուկն մակագոյեղ:*

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

### ՏԱՍՆԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տեսակի և պատահման ըստ յոլովից ստորոգիլ: Զանազանութիւն տեսակի և պատահման, եթէ տեսակ 'ի ներ զինչէին ստորոգին, իսկ պատահումն 'ի ներ որպիսինչէին: Եթէ տեսակ բնութեամբ յառաջագոյն է պատահմանցն, իսկ պատահմունքն վերջագոյնք:*

ԱՍՑՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ յատկի և պատահման, թէ ոչ առանց նոցա բաղկանան այնոքիկ որոց նոքայն գոյանանն. եթէ է համապազ առընթեր գոն երկոքեանն: Զանազանին յատկի և պատահման, թէ յատուկ միում տեսակում գոյանայ, իսկ պատահումն յոլովից: Եթէ յատուկն հակադարձի տեսակի, իսկ պատահումն ոչ երբէք:

ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

# ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

ՀՈՄԱՆՈՒԱՆՔ ասին՝ որոց անուանքն միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութեան այլ. որպան՝ կենդանի՝ մարդն, և գրեալն։ Քանզի սոցայց անուն միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութեն այլ. քանզի եթէ բացատրեսցէ ոք՝ զի՞նչ է նոցա երկաքանչիւր ուրուք կենդանեին գոլ, յատուկ իւրաքանչիւր ումեք բան բացատրեսցէ։

Եւ փաղանուանք ասին՝ որոց անունն հասարակ, և ըստ անուանն բան գոյացութեն նոյն. որպան՝ կենդանի՝ մարդն և արջառն. քանզի մարդն և արջառն հասարակ անուամբ առասին կենդանի, և բան գոյացութեանն նոյն է. քանզի եթէ բացատրեսցէ ոք զերկաքանչիւր ուրուք զբանն, զի՞նչ նոցա երկաքանչիւր ումեք կենդանեին գոլ, զնոյն բան բացատրեսցէ։

Եւ յարանուանք ասին, որք միանգամ յումեքէ տարբերեալք հոլովիւ զըստ անուանն զառասութի ունին. որպան՝ 'ի քերականութէն՝ քերականն, և յարութենէն՝ արին։

Յասիցելոցս, է ինչ որ ըստ շարամանութե ասի՝ և է ինչ որ առանց շարամանութե։ Որդ. ըստշարամանութեքն, որպան՝ մարդ ընթանայ, մարդ յաղթէ։

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ



ՀՈՄԱՆՈՒԱՆՔ ասին՝ որոց անուանքն մի
հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյա
թեան այլ. որպէս՝ կենդանի՝ մարդն, և գրե
Վասնզի սոցայց անուն միայն հասարակ, իսկ
անուանն բան գոյացութե այլ. քանզի եթէ բա
տրեսցէ ոք՝ զինչ է նոցա երկաքանչիւր ուրուք կ
դանին գոլ, յատուկ իւրաքանչիւր ումեք բան
ցատրեսցէ:

Եւ փաղանուանք ասին՝ որոց անունն հասարակ
ըստ անուանն բան գոյացութեն նոյն. հիպէս՝ կ
դանի՝ մարդն և արջառն. քանզի մարդն և արջ
հասարակ անուամբ առասին կենդանի, և բան
ացութեանն նոյն է. քանզի եթէ բացատրեսցէ
զերկաքանչիւր ուրուք զբանն, զինչ նոցա երկաք
չիւր ումեք կենդանին գոլ, զնոյն բան բացատրե

Եւ յարանուանք ասին, որք միանգամ յում
տարբերեալք հոլովիւ զըստ անուանն զառասու
ունին. որպէս՝ 'ի քերականութենէն՝ քերականն, և
րութենէն՝ արին:

Յասիցելոցս, է ինչ որ ըստ շարամանութե ա
և է ինչ որ առանց շարամանութե: Արդ ըստշա
մանութեքն, որպէս՝ մարդ ընթանայ, մարդ յաղթ

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԱՌԱՋԻԿԱՅՍ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ԵՐՐՈՐԴ

ԶՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ տարբերութեան ընկալաւ տեսակ, ընդ որում և վասն նախադասութեան հակառակի: Արդ յարադրէ Պորփիւրիոս զսեռի և զտեսակի հասարակութիւն, երիս հասարակութիւնս, և չորս զանազանութիւնս: Եւ վասն զի պէտս ունի առ տարորոշութիւն մի մի 'ի զանազանութեանցն, բեր նախ քան զզանազանութեանցն վարդապետութիւն սակաւ ինչ վասն նորա հանգամանակերացուք:

Արդ ասէ՝ եթէ «Զանազանի սեռ 'ի տեսակէ», վասն զի բնութեամբ նախադասին է սեռ քան զտեսակ: Արդ այսոցիկ այսպէս ունելով, եթէ է ինչ սեռ և տեսակ, մի առցես զսեռ և զտեսակ ըստ միում և ըստ նոյնում. որգոն՝ զկենդանին մի առցես սեռ և տեսակ. ապա թէ ոչ՝ ինքն ինքեան եղիցի բնութեամբ առաջին[1]. այլ զներընչականն առցես սեռ, և զկենդանին տեսակ, և այնպէս գտանի բանդ ճշմարիտ: Երկրորդ առ տարորոշումն մի առցես զսեռ ըստ այլում երբ տեսակ՝ և զտեսակ սեռ, այլ նոյնպէս. ապա եթէ առնուցուս զներընչականն՝ որպէս տեսակ, և զկենդանին՝ որպէս սեռ, գտանի տեսակն բնութեամբ առաջին քան զսեռ: Վասն այսորիկ ասացաք՝ մնասցէ սեռն որպէս սեռ, և տեսակն որպէս տեսակ:

Երրորդ՝ առ տարորոշութիւն, թէ յառաջագոյն է սեռ քան զտեսակ՝ ոչ ըստ սեռականի և տեսականի զանազանութեանց. և զայս ասեմ, ոչ թէ սեռ որպէս սեռ յառաջագոյն է քան զտեսակ, քանզի առնչունակ է, իսկ առնչունակացն համանգամայն պարտ է գոլ և լինել, այլ որպէս իր. քանզի որպէս հայր, ոչ յառաջագոյն է քան զորդի որպէս հայր, քանզի հայ

1 Մի օրին. 'ի լուսանցսն և վերջին:

*մանգամայն են հայր և որդի ըստ օրինակի առնչունակին. այլ որպէս մարդ յառաջագոյն է Սոփրոնիսկոս Սոկրատայ: Նոյնպէս և սեռ յառաջագոյն է քան զտեսակ, ոչ որպէս սեռ՝ այլ որպէս իր. որգոն՝ գոյացուն ներընչական զգայական, արդ որպէս իր յառաջ է մարդոյ. քանզի յառաջ է քան զմարդ: Ասացեալք զառ տարորոշութիս այսպիսի զանազանութեց, բեր զհասարակութիս նոցա ասասցուք, և ապա յետ այսորիկ զզանազանութիւնս:*

*Արդ հասարակ են սեռ և տեսակ, ըստ որում յոլովից ստորոգին. և ևս հասարակութիւն ունին, վասն զի երկոքեան յառաջագոյն են քան զանհատս. և ևս հասարակութիւն ունին, զի ամ̃ բոլոր ինչ են: Այլ վասն էր ասացաք որպէս բոլոր ինչ և ոչ բոլոր. վն̃ զի բոլորն՝ ամ̃ բոլոր համայն յիւր մասունսն ոչ կարէ տեսանիլ. ապա եթէ ոչ, եղիցի իւրաքանչիւրոք 'ի մասանցն՝ բոլորն: Իսկ տեսակն և սեռն բոլորն որպէս բոլոր յանհատումն տեսանի: Իսկ զանազանին՝ վասն զի սեռն յառաջագոյն է բնութ. քան զտեսակ. և եթէ զիա՞րդ և որո՞վ յեղանակաւ է՝ ասացաք: Այլ ևս զանազանին. զի սեռ նիւթում քատակեցաւ, իսկ տեսակ կերպարանում. և եթէ զիա՞րդ նմանեցաւ սեռ նիւթում և տեսակ կերպարանում. որպէս զի իմասցիս ինձ զայրաձևն պղնձի. քանզի 'ի նիւթոյ 'ի պղղնձոյ և 'ի կերպարանէ մարդոյ բաղադրեալ է:*

*Եւ այլ ևս երկուս զանազանութիս սեռի և տեսակի. զմին յանընդդիմահաւասարութենէ ստորասութե, և զմին յանընդդիմահաւասարութէ բացասութե: Արդ յանընդդիմահաւասարութէ ստորասուէ զանազանի սեռ 'ի տեսակէ, վասն զի սեռ յոլովագոյնս ունի զօրութ. զբաժանականսն տարբերութիս. իսկ տեսակ ոչ ևս զբաժանականսն. բայց յոլովագոյնս ունի զնոսա ներգործութ., որպէս բաղկացականս. բայց զստորասականն ասացաք: Այլ բացասական՝ վասն զի ասելն սեռականագոյն ոչ ունի բաղկացականս տարբերութիս, և տեսակագոյնն ոչ ունի բաժանականս. իսկ ստորասական և բացասական է՝ յորժամ ասեմք, սեռն ոչ ունի բաղկացականս, և տեսակն ոչ ունի բաժանականս:*

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՑՈՒԾՈՎ

## ՉՈՐՐՈՐԴ

ՍԿԵՍՑՈՒՔ այսուհետև և զհասարակուն սեռի և յատկի ասասցուք, և զզանազանութիւնս։ Արդ ունին հասարակուն սեռ և յատուկ. վասն զի երկաքանչիւրոքն 'ի դոցանէ շարաբերի յայնցանէ յորոց ստորոգին. քանզի մարդն շարաբերէ, և կենդանին շարաբերի, և ծիծաղականն. քանզի որ ինչ մարդ՝ նա կենդանի. և որ ինչ մարդ՝ նա և ծիծաղական։ Այլ և հասարակութիւն ունին. վասն զի հանգիտաբար ունականան յայնցանէ՝ որոց ստորոգին. քանզի կենդանի՝ հանգիտաբար և ձիում և մարդում ստորոգի, և ծիծաղականն նմանաբար Պղատոնի և Սոկրատայ։ Այլ և հասարակութն ունին սեռ և յատուկ. վասն զի փաղանունաբար ստորոգին որոց ստորոգինն. վասն զի որպէս կենդանին փաղանունաբար ստորոգի որոց ստորոգի, զի անուանն և իբր տայ հաղորդուն, նոյնպէս և ծիծաղականն փաղանունաբար ստորոգի Պղատոնի. քանզի անուանն և իբր տայ հաղորդութիւն այնմ՝ որ ունի զնա։

Իսկ զանազանի սեռ 'ի յատկէ, վասն զի սեռ յառաջագոյն է քան զյատուկ. քանզի սեռ նախ է, երկրորդ տեսակ, ապա յատուկ։ Այլ և զանազանի սեռ 'ի յատկէ. զի սեռն բազում տեսակաց ստորոգի, իսկ յատուկն միում որոյ է յատուկ։ Այլ և զանազանի սեռ 'ի յատկէ. վասն զի յատուկ հակադարձի այնմ որոյ յատուկն է, իսկ սեռ ոչ հակադարձի։

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

### ՀԻՆԳԵՐՈՐԴ

ՀԵՏԵՒՈՐԱԿԱՆ *կարգի պիտանացեալք, երկեցուք և զսեռի և զպատահման հասարակուն և զզանազանութն ասասցուք, այլ ոչ հանդէտ թուով զհասարակութն և զզանազանութն. քանզի մի հասարակութն ունիմք բացատրել և երիս զանազանութիս: Եւ տարակուսեն ոմանք ասելով թէ վասն էր 'ի վերայ այլոց բարբառոցդ բազում հասարակութիւն սեռի յարադրեաց, իսկ առ պատահումն մի հասարակութն:*

*Առ որ ասեմք՝ եթէ վասն զի յոյժ հեռագոյնս 'ի միմեանց տարակացան սեռ և պատահումն. վասն զի սեռ ծայր գոյացութեան է, իսկ պատահումն ծայր մակագոյեղ. և ըստ այլոց ոմանց կարողութն է ցուցանել, եթէ յոյժ հեռի գոն 'ի միմեանց, վասն որոյ յոյժ գիտնոյ է գտանել զհեռագունիցն հասարակութն: Արդ ասէ՝ թէ “Հասարակ է սեռի և պատահման ըստ յոլովիցն ստորոգիլ„. զայսոսիկ Պորփիւրիոս: Իսկ մեք արտաքուստ, այլ հասարակութի սեռի և պատահման բացատրեսցուք:*

*Արդ է հասարակութն սեռի և պատահման. վասն զի երկաքանչիւրոք 'ի դոցանէ, և տեսակաց և անհատից ստորոգի: Իսկ զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ յառաջագոյն է քան զտեսակն, և տեսակ յառաջագոյն է քան զպատահումն. քանզի ամենայն պատահումն յառաջագոյն ունի տեսակ՝ որոյ պատահումն է: Եւ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ հանդիտաբար ստորոգի որոց ստորոգի. իսկ պատահումն ոչ հանդիտաբար՝ այլ ըստ առաւելումն և նուազումն: Եւ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ նախ տեսակաց ստորոգի, և ապա անհատից. իսկ պատահումն նախ անհատիցն, և ապա տեսակաց: Եւ ևս զանազանի սեռ 'ի պատահմանէ. վասն զի սեռ 'ի ներքում զինչէին ստորոգի, իսկ պատահումն 'ի ներքում որպիսիինչէին:*

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ՎԵՑԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տարբերութեան և տեսակի. եթէ համգիտաբար ունականան, եթէ միշտ առընթեր գոն որոց ընդունականն գոն : Զանազանութիւն տարբերութեան և տեսակի, եթէ տարբերութիւն 'ի ներումն որպիսիինչէութեան ստորոգի. իսկ տեսակ 'ի ներում զինչէին. եթէ տարբերութիւն յոլովս 'ի տեսակացն պարունակէ, և զտեսակացն անհատսն. իսկ տեսակ զընդիւրեաւ միայն անհատսն :*

## ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԱՌԱՋԻԿԱՑ ՏԵՍՈՒԹԻՒՆ

### ԵՕԹՆԵՐՈՐԴ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տարբերութեան և յատկի. եթէ տարբերութիւնք հասարակաբար ստորոգի որոց ստորոգին, նոյնպէս և յատուկ, եթէ միշտ առընթեր գոն որոց ստորոգին : Զանազանութիւն տարբերութեան և յատկի. եթէ տարբերութիւնք յոլով տեսակս պարունակէ՝ իսկ յատուկն մի : Եթէ տարբերութիւն ոչ հակադարձի տեսակի. իսկ յատուկն հակադարձի :*

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

## ՈՒԹԵՐՈՐԴ

ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տարբերութեան և պատահման. եթէ 'ի վերայ յոլովից ասիլ. եթէ առ անանջատական պատահմունսն միշտ և ամենայնին առ գոլ: Զանազանութիւն տարբերութեան և պատահման. եթէ տարբերութիւնք պարունակեն և պարունակին, իսկ պատահմունքն պարունակեն և պարունակին. եթէ տարբերութիւնք զառաւելն և զնուազն ոչ ընդունին, իսկ պատահմունքն ընդունին:*

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

## ԻՆՆԵՐՈՐԴ

ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տեսակի և յատկի. եթէ միմեանց ստորոգին, եթէ համգիտաբար ունակամնան: Զանազանութիւն տեսակի և յատկի. եթէ տեսակ կարող գոյ այլոց որպէս սեռ լինել, իսկ յատուկն ոչ. եթէ տեսակ գոյեղ գոյ, իսկ յատուկն մակագոյեղ:*

## ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

## ՏԱՍՆԵՐՈՐԴ

ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆ *տեսակի և պատահման ըստ յոլովից ստորոգիլ: Զանազանութիւն տեսակի և պատահման, եթէ տեսակ 'ի ներ զինչէին ստորոգին, իսկ պատահումն 'ի ներ որպիսիինչէին: Եթէ տեսակ բնութեամբ յառաջագոյն է պատահմանցն, իսկ պատահմունքն վերջագոյնք:*

ԱՍՏՈՒԾՈՎ ՀԱՆԴԵՐՁ

## ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

ՀԱՄԱՐԱԿՈՒԹԻՒՆ *յատկի և պատահման, թէ ոչ առանց նոցա բաղկանան այնոքիկ որոց նոքայն գոյանան. եթէ է հանապազ առընթեր գոն երկոքեանն։ Զանազանուի յատկի և պատահման, թէ յատուկ միում տեսակում գոյանայ, իսկ պատահումն յոլովից։ Եւ թէ յատուկն հակադարձի տեսակի, իսկ պատահումն ոչ երբէք։*

# ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

ՀՈՄԱՆՈՒԱՆՔ ասին՝ որոց անուանքն միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութեան այլ. որպէս՝ կենդանի՝ մարդն, և գրեալն: Քանզի սոցայց անուն միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութե՟ այլ. քանզի եթէ բացատրեսցէ ոք՝ զինչ է նոցա երկաքանչիւր ուրուք կենդանին գոլ, յատուկ իւրաքանչիւր ումեք բան բացատրեսցէ:

Եւ փաղանուանք ասին՝ որոց անուն հասարակ, և ըստ անուանն բան գոյացութե՟ն նոյն. որպէս՝ կենդանի՝ մարդն և արջառն. քանզի մարդն և արջառն հասարակ անուամբ առասին կենդանի, և բան գոյացութեանն նոյն է. քանզի եթէ բացատրեսցէ ոք զերկաքանչիւր ուրուք զբանն, զինչ նոցա երկաքանչիւր ումեք կենդանին գոլ, զնոյն բան բացատրեսցէ:

Եւ յարանուանք ասին, որք միանգամ յումեքէ տարբերեալք հոլովիւ զըստ անուանն զառասութի՟ ունին. որպէս՝ 'ի քերականութե՟ն՝ քերական, և յարութենէն՝ արին:

Յասիցելոցս, է ինչ որ ըստ շարամանութե՟ ասի՝ և է ինչ որ առանց շարամանութե՟: Արդ ըստ շարամանութե՟քն, որպէս՝ մարդ ընթանայ, մարդ յաղթէ:

Իսկ առանց շարամանութեան․ որզան՝ մարդ, արջառ՝ ընթանայ, յաղթէ [1]։

Եակացն է ինչ՝ որ զենթակայէ ուրումնէ ասի, և ՚ի ենթակայում ոչ յումեք է․ որզան, մարդ՝ զենթակայէ ասի՝ զուրումնէ մարդոյ․ և ՚ի ենթակայում ոչ յումեք է, և է՝ որ ՚ի ենթակայումէ, և զենթակայէ ոչ զումեքէ ասի։

"՚Ի ենթակայում ասեմ՝ որ ՚ի ումեքն ոչ իբր մասն եղեալ, անկար զատ գոլ յայնմանէ՝ յորումէն․ որզան՝ ոմն քերականութիւն՝ ՚ի ենթակայումն է ՚ի անձին, և զենթակայէ ոչ զումեքէ ասի․ և այս ինչ սպիտակ՝ ՚ի ենթակայում է ընդ մարմնի․ քանզի ամենայն գոյն ընդ մարմնի, իսկ զենթակայէ ոչ զումեքէ ասի։ Եւ է որ զենթակայէ ասի, և ՚ի ենթակայումէ, որզան՝ մակացութիւն՝ ՚ի ենթակայումէ ՚ի անձին․ և զենթակայէ ասի՝ զքերականութենէ։ Եւ է՝ որ ոչ ՚ի ենթակայումէ, և ոչ զենթակայէ ասի․ որզան՝ ոմն մարդ կամ ոմն ձի․ քանզի ոչ ինչ յայսպիսեացս ՚ի ենթակայում է, և ոչ զենթակայէ ասի։

Տի միանգամայն պարզաբար անհատքն և մի թուով ոչ զումեքէ զենթակայէ ասին բայց ՚ի ենթակայումն ոչ ինչ սոցա արգելէ գոլ․ քանզի ոմն քերականութիւն յայնցանէ է՝ որ ՚ի ենթակայումն են, և զենթակայէ ոչ զումեքէ ասի [2]։

1 Այս մուծեալ կայր հատուած ինչ բացատրութեան, որպէս և յընթացս ուրեք ուրեք՝ որք ոչ գոն ՚ի յոյն բնագիրն․ վասն որոյ առ զհարազատուն ձեռագրացս պահելոյ՝ զնոսին աստղանիշ դնեմք ՚ի ստորեւ։
*Իբր զի բանի կրկին տեսակ է, է որ խորհրդում, և է որ ՚ի արտաբերութեան։ ՚Ի արտաբերութեան է ձայն նշանական․ իսկ ընդ խորհրդումն իմացումն և պատկեր իրաց։ Գիտելի է, զի ոչ յամենայն ժամ ձայնքն և իմացմունքն հետևանան իրերաց, այլ է երբեմն՝ զի ձայնսն պատահէ գոլ պարզս, իսկ իմացմունսն բաղադրեալս․ որպէս ընթանամ, և կամ վերծանեմ․ և է ձայնքն բաղադրեալք, իսկ իմացմունքն պարզք․ որզան՝ իբր թէ ասիցէ ոք զմարդ՝ կենդանի, բանաւոր, մահկանացու։ Եւ է ձայնքն պարզք և իմացմունքն, որզան՝ Սոկրատէս, կամ Հոմերոս․ և է՝ զի ձայնքն բաղադրեալք և իմացմունքն, որզան՝ Սոկրատէս իմաստասէրն, Հոմերոս քերթողաբանն ||։

2 Յաւելուած հայ բնագրին։
*Գոյացուն ոչ ՚ի ենթակայումն է, և ոչ զենթակայէ․ իսկ պատահումն ՚ի հարկէ գոլ ՚ի ենթակայումն, բայց ենթակայի եւ անկար է ||։

Յորժամ այլ զայլմէ ստորոգիցի իբր զենթակայէ, որք միանգամ զստորոգիցելոյն ասի, ամենայնն և զենթակայէն ճառեսցի. որզան՝ մարդն՝ զումեմնէ մարդոյ ստորոգի, իսկ կենդանին՝ զմարդոյն. ապա ուրեմն և զումեմնէ մարդոյ կենդանին ստորոգեսցի. քանզի ոմն մարդն՝ և մարդ է, և կենդանի։

Այլոց սեռից, և ոչ ընդ միմեամբք դասիցելոց, այլք տեսակք[1] և տարբերութիւնք. որզան՝ կենդանւոյ, և մակացութեան. քանզի կենդանւոյն տարբերութիւնք՝ հետևակն, և երկոտանին, և թռչունն, և լողակն է։ Իսկ մակացութեան և ոչ մի ինչ յայսցանէ. քանզի ոչ տարբերի մակացութիւն ՚ի մակացութենէ երկոտանի գոլ։ Իսկ ընդ միմեամբք սեռից, ոչինչ է արգել նոյն տարբերութիւնք գոլ. քանզի վերոյքն[2] զընդ միմեամբքն սեռիցն ստորոգին. մինչ զի որքանք ընդստորոգիցելոյն տարբերութիւնք են, այսքանք և ենթակայինն եղիցի։

1 Յն. փէստոնս։ 2 Այլ օրինակ ՚ի վերոյին։

# ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ

ԻՍԿ յայնցանէ՝ որ և ոչ ըստ միում շարամանութեան ասացեալ են, իւրաքանչիւրոք կամ գոյացութիւն նշանակէ, կամ որակ, կամ քանակ, կամ առ ինչ, կամ ուր, կամ երբ, կամ կալ, կամ ունել, կամ առնել, կամ կրել: Եւ է գոյացութիւն՝ իբրու գաղափարաւ ասել. որգոն՝ մարդ, ձի: Իսկ քանակ՝ իբրու թէ երկկանգուն, քառականգուն: Եւ որակ, որգոն՝ սպիտակ, քերական: Եւ առ ինչ, որգոն՝ երկպատիկ, կէս, մեծամեծ: Եւ ուր, որգոն՝ 'ի լիւկիա [1], ներ աստուամ: Եւ երբ, հիգոն՝ երէկ, հերու: Եւ կալ, որգոն՝ ընկողմանեալ է, և նստի: Եւ ունել, հիգոն՝ ըստիմանի, զինի: Եւ առնել, որգոն՝ հատանել, այրել: Եւ կրել, հիգոն՝ հատանիլ, այրիլ:

Եւ իւրաքանչիւր յասիցելոցս ինքն ըստ ինքեան, և ոչ ըստ միում ստորասութեան և բացասութեան ասի. բայց յառ միմեանս սոցա շարամանութեան ստորասութիւն, և բացասութիւն լինի: Քանզի թուի ամենայն ստորասութիւն և բացասութիւն, կամ ճշմարիտ, կամ սուտ գոլ: Իսկ յայնցանէ՝ որք և ոչ ըստ միում շարամանութեան ասացեալք են, ոչինչ ոչ ճշմարիտ, և ոչ սուտ է. որպէս մարդ, սպիտակ, ընթանայ, յաղթէ:

[1] Կամ 'ի Լիւկէա. յն. էն Լիւկէօ, որ 'ի ճեմարանի:

# ՅԱՂԱԳՍ

# ԳՈՅԱՑՈՒԹԵԱՆ

Գոյացութիւն է, որ իսկագոյն, և նախկին, և մանաւանդ ասի. որ ոչ զենթակայէ զումեքէ ասի, և ոչ ՚ի ենթակայում յումեք է. որգոն՝ ոմն մարդ, կամ ոմն ձի։ Եւ երկրորդ գոյացութիւնք ասին, յորում տեսակք նախապէս գոյացութեանցն են, և այսոքիկ, և տեսակացն նոցա սեռք. որգոն՝ ոմն մարդ՝ ընդ տեսակաւ է ընդ մարդով, և սեռ տեսակին է կենդանին. արդ երկակի [1] սոքա ասին գոյացութիւնք. որգոն՝ մարդն, և կենդանին։

## ՊՐԱԿՔ Բ

Եւ երևելի է յասացելոցս, զի զենթակայէ ասիցելոցն հարկաւոր է և զանունն և զբանն ստորոգիլ զենթակայէն. որգոն՝ մարդ զենթակայէ ասի զումեքէ մարդոյ, և ըստորոգի անունն. քանզի մարդն զումեմնէ մարդոյ ստորոգեսցի, և բան մարդոյն զումեմնէ մարդոյ ստորոգեսցի։ Քանզի ոմն մարդն՝ և՛ մարդ և կենդանի է. ապա ուրեմն և անունն և բան զենթակայէն ստորոգեսցի։ Իսկ ՚ի ենթակայում էակացն մակ աւելեաց՝ և ոչ անունն և ոչ բանն ստորոգեսցի զենթակայէն։ Իսկ մակ ոմանց՝ ոչինչ զանունն արգելու ստորոգիլ զենթակայէն։ Իսկ զբանն անկար, որպէս՝ այս ինչ սպիտակ ՚ի ենթակայում է ընդ մարմնի, և ստորոգի զենթակայէն, քանզի սպիտակ մարմին ասի։ Իսկ բան սպիտակին՝ և ոչ երբեք ըզմարմնոյ ստորոգեսցի։ Իսկ այլքն ամենայն, կամ զեն-

1 Իմն, Երկրորդ. ըստ յն։

թակայից ասին՝ զառաջնոց գոյացութեանցն , և կամ ՚ի ենթակայս ըն սոսա են ։ Եւ այս երևելի է յըստ իւրաքանչիւր ումեք է նախ ընձեռեցելոցն ․ որգան՝ կենդանին զմարդոյն ստորոգեսցի ․ ապա ուրեմն և զումեմնէ մարդոյ ․ քանզի եթէ ոչ զումեքէ մարդոյ , և ոչ զմարդոյ բոլորովին ։ Դարձեալ և գոյն ըն մարմնի , ապա ուրեմն և յումեմն մարմնի ․ քանզի եթէ ոչ ըն մարմնի ումեմն յիւրաքանչիւրումն , և ոչ ըն մարմնի բոլորովին ։ Ապա ուրեմն այլքն ամենայնք կամ զենթակայից զառաջնոց գոյացութեանցն ասին , կամ յենթակայս ՚ի նոսա են ։ Իսկ յորժամ ոչ իցեն առաջին գոյացութիքն , անկար է այլոցն ումեք գոլ ․ քանզի այլքն ամենայն՝ կամ զենթակայից զոցանէ ասին , և կամ յենթակայս ՚ի սոսա են ։

## ՊՐԱԿՔ Գ.

Իսկ երկրորդ գոյացութեանցն՝ տեսակն քան զսեռն յաւէտ գոյացութի է ․ քանզի հպագոյն յառաջին գոյացութին է ։ Վասն զի թէ բացատրեսցէ ոք զառաջին գոյացութին՝ զինչ է , ծանօթագոյն և ընտանեգոյն բացատրեսցէ զտեսակն բացատրելով քան զսեռն ։ Որգան՝ զոմն մարդն ծանօթագոյն բացատրեսցէ , մարդ բացատրելով քան թէ կենդանի , քանզի սա առաւել ուրոյն ուրումն մարդոյ , իսկ նա հասարակագոյն ։ Եւ զոմն ծառ բացատրելով , ծանօթագոյն բացատրեսցէ ծառ բացատրելով քան թէ տունկ ։ Եւ այլ ևս՝ առաջին գոյացութիքն , վասն ընդ այլովքն ամենայնիւ կալ , և զայլսն զամենայն զոցանէ ստորոգիլ կամ ըն սոսա գոլ , վասն այսորիկ մանաւանդ գոյացութիք առաջինք ասին ։ Արդ որպէս առաջինք գոյացութիք առ այլսն ամենայնս ունին , այսպէս և տեսակքն առ սեռն ունին ․ քանզի կայ տեսակն ընդ սեռիւն ․ քանզի սեռքն զտեսակացն ստորոգին , իսկ տեսակքն զսեռիցն ոչ հակադարձին ․ ապա ուրեմն և արտասայց տեսակն քան զսեռն յաւէտ գոյացութի է ։

## ԳՐԱԿՔ Դ

Եւ նոցա տեսակացն՝ որք միանգամ ոչ են սեռք, ոչինչ առաւել այլ քան զայլ գոյացութիւն է։ Քանզի ոչ ինչ ընտանեգոյն բացատրեսցէ ոք զումեմնէ մարդոյ զմարդն բացատրելով, քան զումեքէ ձիոյ զձին։ Այնպէս և առաջին գոյացութիւնքն՝ ոչինչ առաւել այլ քան զայլ գոյացութիւն է. քանզի ոչինչ յաւէտ ոմն մարդն գոյացութիւն՝ քան ոմն արջառ։

## ԳՐԱԿՔ Ե

Եւ վայելչաբար յետ քան զառաջին գոյացութիւնս՝ միայնք 'ի պատահմանցն[1] այլոցն տեսակք և սեռքն՝ երկրորդ գոյացութիւնք ասին. քանզի միայնք յայտնեն զառաջին գոյացութիւնս 'ի ստորոգելեացն։ Քանզի զոմն մարդն եթէ բացատրեսցէ ոք զինչ է, զտեսակն առաւել քան զսեռն բացատրելով ընտանեբար բացատրեսցէ, և ծանօթագոյն առաւել արասցէ մարդ՝ քան թէ կենդանի բացատրելով։ Իսկ յայլոցն՝ որ զինչ և բացատրեսցէ ոք, օտարաբար եղիցի բացատրեալն. հիգամ՝ սպիտակ կամ ընթանալ կամ այլ ինչ յայսպիսեացս բացատրեալ. ապա ուրեմն վայելչաբար միայն սոքա յայլոցն գոյացութիւնք ասին։ Եւ այլ ևս՝ առաջին գոյացութիւնքն վասն ընդ այլովքն ամենեքումբք կալ՝ տիրագոյնք և իսկագոյնք գոյացութիւնք ասին։ Եւ որպէս առաջին գոյացութիւնքն առ այլսն ամենայնս ունին, այսպէս և տեսակքն և սեռքն առաջին գոյացութեացն՝ առ այլսն ամենայնս ունին. քանզի զսոցանէ այլքն ամենեքեան ստորոգին։ Քանզի զոմն մարդն ասասցես քերական, ապա

1 Յն. միայն այլոցն տեսակացն և սեռոցն :

ուրեմն և զմարդն և զկենդանին քերական ասասցես · նոյնպէս և մակ այլոցն ։

## ԳՐԱԿՔ Դ

Այլ հասարակ ամենայն գոյացութեան է ոչ ՚ի ենթակայում գոլ ։ Քանզի առաջին գոյացութիւն ոչ ՚ի ենթակայոջ է, և ոչ զենթակայէ ասի · իսկ երկրորդ գոյացութի երևելի է, զի այսպէս է, զի և ոչ մի յենթակայում է · քանզի մարդ զենթակայէ զումեմնէ մարդոյ ասի, և ՚ի ենթակայոջ ոչ է · քանզի ոչ ՚ի ումեմնք մարդոջ մարդն է ։ Նոյնպէս և կենդանին զենթակայէ ասի զումեմնէ մարդոյ, բայց ոչ է կենդանին յումեմն մարդոջ ։ Այլ ևս՝ ՚ի ենթակայոջ էակացն անուանն ոչինչ է արգել երբէք ստորոգիլ զենթակայէն · իսկ բանին անկարութի է ։ Իսկ երկրորդիցն գոյացութեանցն ստորոգի և բանն զենթակայէ, և անունն ։ Քանզի զմարդոյ բան զումեքէն մարդոյ ստորոգեսցես, և զկենդանւոյն ։ Ապա ուրեմն ոչ է գոյացութի 'ի ՚ի ենթակայոջացն ։

## ԳՐԱԿՔ Ե

ԲԱՅՑ ոչ ուրոյն գոյացութե է այս, այլ և տարբերութիւն ոչ 'ի ՚ի ենթակայոջացն է ։ Քանզի հետևակն և երկոտանին զենթակայէ ասի զմարդոյն, և ՚ի ենթակայում ոչ է · քանզի ոչ եթէ ըն մարդոջ է հետևակն, կամ երկոտանին · զի բանն ստորոգի տարբերութեանն, զորմէ ումեքէ ասի տարբերութի · որպէս՝ եթէ հետևակն զմարդոյ ասիցի, և բան հետևակին ստորոգեսցի զմարդոյն, քանզի հետևակ է մարդն ։

## ՊՐԱԿՔ Ը

ԲԱՅՑ մի՛ խռովեցուսցէ զմեզ մասունք գոյացութեան, իբրու ՚ի ենթակայս մասն են բոլորման, մի՛ գուցէ հարկեսցուք ոչ գոյացութիւնս զնոսա ասել գոլ. քանզի ոչ այսպէս ՚ի ենթակայոջքն ասին. իբրու մասունքն գոլով յումեք:

## ՊՐԱԿՔ Թ

ԵՒ է գոյացութեանց եւ տարբերութեանց՝ ամենայն փոխանունաբար ՚ի նոցանէն ասել. քանզի ամենայնք ՚ի սոցայցն ստորոգութիւք՝ կամ զանհատիցն ստորոգին կամ զտեսակացն: Քանզի զառաջնմէ գոյացութենէն եւ ոչ մի ոչ է ստորոգութիւն, քանզի եւ ոչ զմիոյ ումեքէ զենթակայէ ասի. իսկ երկրորդաց գոյացութեանց տեսակն՝ զանհատէն ստորոգի, եւ սեռն՝ զտեսակէն եւ զանհատէն: Նոյնպէս եւ տարբերութիւքն զտեսակացն եւ զանհատիցն ստորոգին: Եւ զբան ընդունին առաջին գոյացութիւքն՝ զսեռիցն եւ զտեսակացն. եւ տեսակքն զսեռիցն. քանզի որք միանգամ զստորոգիցելոյն ասի, եւ զենթակայէն ճառեսցի: Նոյնպէս եւ զտարբերութեանցն բան ընդունին տեսակքն եւ անհատքն: Եւ փոխանունն է, որոյ եւ անունն է հասարակ, եւ բանն նոյն: Ապա ուրեմն ամենայն ՚ի գոյացութեանցն, եւ տարբերացքն փոխանունաբար ասին:

## ՊՐԱԿՔ Ժ

ԲԱՅՑ ամենայն գոյացութիւն թուի զայս ինչ նշանակել։ Արդ առաջնոց գոյացութեանցն անյերկուանալի և ճշմարիտ է, զի զայս ինչ նշանակէ. քանզի անհատ և մի թուով զեկուցեալն է. իսկ երկրորդաց գոյացութեանցն երեւի նմանապէս ձեւով առասութեան զայս ինչ նշանակել. յորժամ ասիցէ ոք մարդ՝ կամ կենդանի, այլ սակայն ոչ ճշմարիտ, այլ առաւել որակ ինչ նշանակէ. քանզի ոչ մի է ենթակայն, որպէս առաջինն գոյացութիւն, այլ զբազմաց մարդն ասի և կենդանին. բայց ոչ վայրապար որակ ինչ նշանակէ, որպէս սպիտակն, քանզի ոչ այլ ինչ նշանակէ սպիտակն, այլ որակ։ Իսկ տեսակն և սեռն առ ՚ի գոյացութիւն զորակն ՚ի բաց որոշէ. քանզի որակ ինչ գոյացութեան նշանակէ, բայց մակաւելի սեռիւն քան թէ տեսակաւն զբացորոշութիւն առնէ. քանզի որ կենդանի ասէ՝ մակաւելի բակառէ, քան թէ որ զմարդն։

## ՊՐԱԿՔ ԺԱ

ԲԱՅՑ է գոյացութեանցն ոչինչ նոցա ներհական գոլ. քանզի նախկին գոյացութեանն զի՞նչ ինչ լիցի ներհական. որզան՝ ումեմն մարդոյ կամ կենդանւոյ ոչինչ է ներհական։ Բայց ոչ է այս ուրոյն գոյացութեանն՝ այլ և այլոցն. որզան՝ ՚ի վերայ քանակին։ Քանզի երկկանգնոյն ոչինչ է ներհական, և ոչ տասանցն, և ոչ այսպիսեացս ոչ միում ումեք։ Բայց եթէ ոք զշատն սակաւուն ասասցէ գոլ ներհական, կամ զմեծն փոքուն. իսկ բացորոշելոցն՝ ոչինչ ոչ ումեք ներհական է։

## ՊՐԱԿՔ ԺԲ

Բայց թուի գոյացութիւն ոչ ընդունել զյաւէտն և զնուազն. և զայս ասեմ իբրու ոչ եթէ գոյացութիւն քան զգոյացութիւն ոչ է առաւել գոյացութիւն. քանզի այս ահա ասացեալ զի է. այլ զի իւրաքանչիւր գոյացութիւն՝ այն որ ինչ էն, ոչ ասի յաւէտ և նուազ. որզան՝ թէ այս գոյացութիւն է մարդ, ոչ եղիցի առաւել և նուազ մարդ. ոչ ինքն ինքեան յաւէտ, և ոչ այլ այլոյ։ Քանզի ոչ է այլ քան զայլ առաւել մարդ, որպէս սպիտակն՝ է այլ քան զայլ առաւել սպիտակ, և ինքն ինքեան յաւէտ և նուազ ասի. հիզան՝ մարմին՝ որ սպիտակ է, առաւել սպիտակ ասի գոլ այժմ, քան եթէ յառաջագոյն. և որ ջերմ է՝ առաւել ջերմ և նուազ ասի։ Իսկ գոյացութիւն ոչինչ առաւել և նուազ ասի. քանզի և ոչ մարդ առաւել այժմ մարդ՝ քան թէ յառաջագոյն ասի, և ոչ յայլոցն ինչ՝ որք գոյացութիւնք են. ապա ուրեմն ոչ ընկալցի գոյացութիւն զյաւէտն և զնուազն։

## ՊՐԱԿՔ. ԺԳ

Այլ մանաւանդ զի ուրոյն գոյացութեան թուի գոլ, որ մի և նոյն թուովն է ներհակացն գոլ ընդունական. որզան՝ քանզի մանկ այլոցն, ոչ զուրուք գտցէ ոք յայտնել՝ որք միանգամ ոչ են գոյացութիւնք, որ մի թուով են ներհակացն ընդունական. որզան՝ գոյն, որ մի և նոյն է թուով, ոչ է սպիտակ և սեաւ, և ոչ նոյն իրակուն, և մի թուով ոչ եղիցի վատթար և առաքինի։ Նոյնպէս և մանկ այլոցն, որք միանգամ ոչ են գոյացութիւնք։ Իսկ գոյացութիւնն՝ որ է մի և նոյն թուով, ընդունական ներհակացն է. որզան՝ ոմն մարդ՝ մի և նոյն ելով, է զի սպիտակ, և է զի սեաւ լինի,

և ջերմ և ցուրտ. և վատթար և առաքինի։ Իսկ մակ այլոցն ոչ ուրուք երևի այսպիսի ինչ։

# ՊՐԱԿՔ ԺԴ

ԲԱՅՑ եթէ ոք վրիժեսցի՝ զբանն և զկարծիսն ասելով յայսպիսեացն գոլ իբրու ներհակաց ընդունական. քանզի նոյն բան և ճշմարիտ և սուտ թուի գոլ. հիման՝ եթէ ճշմարիտ իցէ բանն նստելն ումեք, յարուցելոյ նորա՝ սոյն սա սուտ եղիցի։ Սոյնպէս և կարծիքն. քանզի եթէ ճշմարտապէս կարծեսցէ ոք նստելն զումեքէ, յարուցելոյ նորա՝ ստաբար կարծիքն եղիցի յաղագս նորա։ Այլ եթէ ոք զայս առընկալցի, այլ սակայն յեղանակաւ տարբերի. քանզի մակագոյացութեացն այնքան[1], զի յեղափոխեալ, ընդունական ներհակացն են։ Քանզի ցուրտ՝ 'ի ջերմոյ յեղեալ շրջեցաւ, քանզի այլայլեցաւ. և սեաւ 'ի սպիտակէ, և առաքինի 'ի վատթարէ։ Սոյնպէս և մակ այլոցն իւրաքանչիւրոց իրքն փոփոխումն ընկալեալ, ներհակացն ընդունական ասի։ Իսկ բանն և կարծիքն՝ ինքեանք անշարժք և անխաղացք ամենայն իրօք ամենեւին կան մնան։ Իսկ իրին շարժեցելոյ, ներհական յինքեանս լինին. քանզի բանն կայ մնայ նոյն՝ նստելն ումեքն. իսկ իրին շարժեցելոյ՝ է զի ճշմարիտ, և է զի սուտ լինի. սոյնպէս և մակ կարծեացն։ Այլ ուրեմն յեղանակաւ՝ ուրոյն է գոյացութեանն՝ ըստ իւրոյ փոփոխման ընդունական ներհակացն գոլ։ Այլ թէ ոք և զայսոսիկ առընկալցի, զկարծիսն և զբանն ընդունական ներհակացն գոլ ասէ. բայց ոչ է այս ճշմարիտ. քանզի բան և կարծիքն ոչ վասն իւրեանց ընդունական ներհակացն գոլ՝ ընդունականք ասին, որպէս թէ ընդունեալ ինչ, այլ վասն յայլում կիրքն եղանելն. քանզի իրին գոլն կամ չգոլն՝ այսուիկ և բանն ճշմարիտ կամ սուտ ասի. այլ ոչ վասն

1 Ցն. քանզի ոյք 'ի վերայ գոյացութեանն՝ նոյնք յեղափոխեալ։

իւրն ընդունական գոլ ներհակացն ։ Բայց միանգամայն պարզաբար , ոչ յումեքէ՝ ոչ բանն շարժի , և ոչ կարծիքն . ապա ուրեմն ոչ եղիցի ընդունական ներհակացն , ոչինչ ուրուք 'ի նոսա եղելոյ ։ Իսկ գոյացութիւն վասն իւրն զներհակսն ընդունելոյ՝ այսուիկ ընդունական ներհակացն ասի . քանզի հիւանդութիւն և ողջութիւն ընդունի , և սպիտակութիւն և սևութիւն , և զիւրաքանչիւր յայսպիսեացն յինքեան ընդունելով ներհակացն գոլ ընդունական ասի ։ Ապա ուրեմն ուրոյն գոյացութեան եղիցի , որ մի և նոյն է թուով և ըստ իւրում փոփոխմամբն ընդունական գոլ ներհակացն ։ Այս յաղագս գոյացութեան այսքան ասասցի ։

# ՅԱՂԱԳՍ

# Ք Ա Ն Ա Կ Ի

Եւ քանակէն՝ է ինչ որ տարորոշ է, և է ինչ որ շարունակ. և այնք՝ որք դիրս ունին առ միմեանս՝ յինքեանց մասանց բաղկացան, և է որք ոչ յայնցանէ են, որ զդիրս ունին. և է տարորոշեալն, որգոն՝ թիւ, բան. և շարունակն, որկէն՝ գիծ, մակերևոյթ [1], մարմին. և առ այսոքիւք ևս ամանակ և տեղի։ Քանզի թուոյն մասնկանց ոչինչ է հասարակ սահման, առ որ շարամծոյին մասնկունք իւր. հիկէն, հինգքն՝ տասանցն մասնկունք են. և առ ոչ մի ինչ հասարակ սահման շարամծոյին հինգն և հինգն, այլ տարորոշեալ են. և երեքն, և եօթեանքն առ ոչ մի ինչ հասարակ սահման շարամծոյին։ Եւ ոչ ընաւ ամենևին գտցես 'ի վերայ թուոյ առնուլ հասարակ սահման մասնկացն, այլ միշտ տարորոշեալ է. ապա ուրեմն թիւ 'ի տարորոշիցն է. սոյնպէս և բան 'ի տարորոշեցելոցն է։

## ՊՐԱԿՔ Բ

Եւ զի քանակ է բան՝ երևելի է, քանզի ստորաչափի փաղառութե՛ սղիւ և երկարաւ. և ասեմ զնոյն զինքն որ ձայնիւն բան լինի։ Քանզի ոչ առ մի ինչ հասարակ սահման՝ նորա մասունքն շարամծոյին. քանզի ոչ է հասարակ սահման՝ առ որ փաղառուիքն շարամծոյին, այլ իւրաքանչիւրոք տարորոշեալ է ինքն ըստ ինքեան ուրոյն։

1 Երեք օրինակք մակերևութ։

## ՊՐԱԿՔ Գ

Նա՛ւ գիծ շարունակ է, քանզի է առնուլ հասարակ սահման՝ առ որ մասնկունքն նորա շարամօտին, կէտ, և մակերևույթն գիծն. քանզի մակարդակին մասնկունքն առ մի ինչ սահման շարամօտին։ Սոյնպէս և 'ի վերայ մարմնոյ գտցես առնուլ հասարակ սահման զգիծն, կամ զմակերևույթն, առ որ մարմնոյն մասնկունքն յարեալ միաբանին[1]։ Նաւ է ամանակ, և տեղի յայսպիսեացս, քանզի արդեան ամանակս շարամօտի առ անցեալն, և առ հանդերձեալն։ Նաւ դարձեալ տեղի 'ի շարունակացն է. քանզի տեղի ինչ մարմնոյն մասնկունքն ունին, որք առ հասարակ ինչ սահման շարամօտին։ Իսկ ապա և տեղւոյն մասնկունքն, զորս ունին զիւրաքանչիւրոք 'ի մարմնոյն մասնկացն՝ առ նոյն սահման շարամօտին, առ որ և մարմնոյն մասնկունքն։ Ապա ուրեմն շարունակ եղիցի և տեղին, քանզի առ մի հասարակ սահման շարամօտին նորա մասնկունքն։

## ՊՐԱԿՔ Դ

Նա՛ւս դարձեալ յարատունողացն դիր առ միմեանս՝ յինքեանց մասանց բաղկացաւ. և են որք ոչ են յարատունողացն դիր, քանզի գծին մասնկունքն դիր ունին առ միմեանս, զի իւրաքանչիւրոք 'ի սոցանէ կայ ուրեմն. և գտցես տարառնուլ և բացատրել. ուր

[1] Յաւելուած հայ բնագրին։

* Եւ է աւելադրամակայքն և զնուազիցն ունել զսահման։ Իսկ նուազքն ոչ ևս, որպէս և մարմնոյն մասանց հասարակ սահման գոլ մասանց զգիծն կամ զմակերևութին։ Իսկ մակերևույթն՝ և ոչ ևս սահման եղիցի մարմին. քանզի ոմն եռակի, իսկ ոմն երկակի ||։

իւրաքանչիւր ոք կայ՝ ըն մակարդակին. և առ որ մասնիկ այլոցն շարամծութն : Սոյնպէս և մակարդակին մասնկունքն դիր իմն ունին : Քանզի նմանապէս բաղցատրեսցի իւրաքանչիւրոք՝ ուր կայ, և որք շարամծութն առ միմեանս, և հաստատիքն [1], սոյնպէս և տեղիքն :

## ԳՐԱԿՔ Ե

ՍԱԿ 'ի վերայ թուոյ ոչ ոք գտցէ մակայել [2], իբրև թէ մասնկունքն սորա դիր ինչ ունին առ միմեանս, կամ կան ուրեք. և կամ որք առ որս շարամծութն մասնկացն : Այլ ոչ տեղոյք ժամանակին. քանզի են ժամնայ և ոչ ինչ ժամանակին մասանց : Իսկ որ ոչն են ժամնայական, զիա՞րդ սա դիր ունիցի, այլ առաւել դաս ինչ ասասցես ունել՝ այսու, զի է ինչ որ նախկին գոլ է ժամանակին, և է որ վերջին : Այլ 'ի վերայ թուոյ սոյնպէս այսու՝ զի միմն նախկին է 'ի թուել երկուցն, և երկուսն երիցն, և այսպէս դաս ինչ կալցի. բայց դիր ոչ կարի քաջ գտցես առնուլ : Այլ բան սոյնպէս, քանզի ոչ ինչ են ժամնայ մասնկացն սորա. քանզի ասացեալ է, և ոչ ևս գոյ զսա առնուլ. ապա ուրեմն ոչ եղիցի դիր մասանցն սորա, զի ոչ ինչ են ժամնայանայ : Արդ են որք յարտադիր ունողաց մասնկացն բաղկացան, և են որք ոչ յարտաւնողացն դիրք :

1 Այս ինքն հաստատունքն :

2 Ցն. մակայել, իմա՛ ապա ցուցանել :

## ՊՐԱԿՔ Զ

ԵՒ իսկապէս և առաջին քանակ միայն այսոքիկ ասին ասացեալքս. իսկ այլքն ամենայնքն ըստ պատահման. քանզի յայսոսիկ հայելով, և զայլսն քանակ ասեմք. հիկէն՝ շատ սպիտակն ասի վասն մակերևութեն շատոյ գոլ, և իրակութիւն երկար՝ վասն ժամանակին բազում գոլ, և զշարժումն շատ. քանզի ոչ ըստ ինքեան իւրաքանչիւր սոյցն քանակ ասի. հիբար՝ եթէ բացատրեսցէ ոք քանի՞ ինչ իրակութիւն է, ժամանակաւ սահմանեսցէ, տարևոր, թէ այսպիսաբար ինչ օրինակաւ բացատրեսցէ: Եւ սպիտակն քանակ ինչ բացատրեալ, մակերևութիւն սահմանեսցէ. վասն զի որքան մակերևութիւն իցէ, այնքանապէս և զսպիտակն ասասցէ ել. ապա ուրեմն միայնք իսկապէս և ըստ ինքեան քանակք ասին ասացեալքս: Իսկ յայլոցն ոչինչ ինքն ըստ ինքեան, բայց եթէ արդեօք ըստ պատահման:

## ՊՐԱԿՔ Է

ԵՒ այլ ևս, քանակին ինչ ոչ է ներհական. քանզի ՚ի վերայ բացորոշեցելոցն երևելի է. զի ոչինչ է ներհական, հիպէս՝ եռականգնումն կամ մակերևութոյն, կամ այսպիսեացն իմիք, ոչինչ նայնոցն է ներհական: Բայց եթէ զշատն սակաւուումն ասասցէ ոք ել ներհական, կամ զմեծն փոքուումն, և սայց ոչինչ է քանակին, այլ յաւէտ առընչիցն. քանզի ոչինչ ինքն ըստ ինքեան մեծ ասի, կամ փոքր, այլ՝ առ այլ վերաբերիլ. որկէն՝ զի լեառն փոքր ասի, և կորեակն մեծ, վասն ումեմն հոմասեռիցն մեծ գոլ, և ումեմն նուազ հոմասեռիցն: Իսկ ապա ուրեմն, այլ առ այլ վերաբերումն է. այլ եթէ էր ինքն ըստ ինքեան փոքր և մեծ, ոչ երբէք լեառն փոքր ասացեալ լինէր, և կո

րեակն մեծ ։ Դարձեալ 'ի գեօղս ասեմք բազում մարդիկ գոլ, և յԱթէնս սակաւ, իբրու զի բազմապատիկ են քան զնոսա. և 'ի տեսարանին սակաւս, իսկ 'ի տան բազումս ։ Նաև այլ ևս՝ երկկանգունն և եռականգունն, և իւրաքանչիւրոք յայսպիսեացն քանակ նշանակէ ։ Իսկ մեծն կամ փոքրն ոչ նշանակէ քանակ, այլ յաւէտ առինչ. քանզի առ այլ տեսանի մեծն և փոքրն. ապա ուրեմն երևելի է, զի սոքա առընչիցն են ։

## ՊՐԱԿՔ Ը

Նու այլ ևս. թէ դիցէ ոք զսոսա քանակ գոլ, և եթէ ոչ դիցէ, ոչ է սոցա ներհական և ոչինչ. քանզի որ ոչ է ինքն ըստ ինքեանս առնուլ, այլ առ այլս վերաբերեալ, զիա՞րդ լիցի ինչ սոցա ներհական ։ Նաև այլ ևս. եթէ եղիցի մեծն և փոքրն ներհականք, պատահեսցէ նմին համանգամայն զներհակսն ընդունել, և ինքեանք ինքեանց գոլ ներհականք. քանզի պատահէ նմին համանգամայն և մեծ և փոքր գոլ. քանզի է առ սա փոքր, և առ այլ՝ սոյն այս մեծ ։ Ապա ուրեմն նոյնն և մեծ և փոքր՝ ըստ նմին օրինակի գոլ պատահէ, մինչ զի համանգամայն զներհակսն ընդունել. այլ ոչինչ թուի համանգամայն զներհակսն ընդունել. հիզան՝'ի վերայ գոյացութեց, զի ընդունական ներհակացն թուի գոլ. այլ սակայն ոչ համայն հիւանդ և ողջ է, և ոչ սպիտակ և սեաւ է համանգամայն ։ Տինա և ոչ յայլոցն ինչ է որ համանգամայն զներհակսն ընդունի, և ինքեանք ինքեանց պատահին ներհականք գոլ. քանզի եթէ մեծն փոքուն ներհական է, և նոյն է համանգամայն մեծ և փոքր, ինքն ինքեան եղիցի ներհական, այլ անկարացն է ինքըն ինքեան գոլ ինչ ներհական ։ Ապա ուրեմն ոչ է մեծն փոքուն ներհական, և ոչ շատն սակաւուն ։ Իսկ ապա թէպէտ և ոչ ոք առընչիցն զսոսա ասասցէ գոլ, այլ քանակին ոչինչ ներհական կայցի ։

## ԳԼՈՒԽ Թ

Այս մանաւանդ զի ներհակութիւն քանակին առ 'ի տեղին թուի գոլ. քանզի զվերոյն ստորնուին ներհական դնեն, զառ մէջն վայր ըստորև ասելով, վասն յոյժ աւելի միջոցին տարակացութեան առ ոլորտս աշխարհիս գոլ անուանեցին, և զայլոցն ներհակացն սահման բացասայց մակաբերել. քանզի զյոյժ աւելիքն 'ի միմեանց տարակացեալք 'ի նմին սեռի ներհականս որոշէ :

## ԳԼՈՒԽ Ժ

ԲԱՅՑ ոչ թուի քանակն ընդունել զյաւէտն և զնուազն, հիկէն՝ երկկանգունն. քանզի ոչ է այլ այլոյ յաւէտ երկկանգուն. և ոչ 'ի վերայ թուոյ, որպակ՝ երեքն հնգիցն ոչինչ յաւէտ հինգ՝ քան երեք ասին, և ոչ հինգն՝ երիցն : Այլ ոչ ամանակքն այլ այլոյ յաւէտ ամանակք ասին, և ոչ 'ի վերայ սայց ասացելոցն բոլորովին՝ ոչ միոյ ուրուք յաւէտն և նուազն ասի : Իսկ ապա քանակն ոչ ընդունի զյաւէտն և զնուազն և ուրոյն յատուկ մանաւանդ քանոյն՝ զհանգէտն և զանհանգէտն ասիլ : Քանզի իւրաքանչիւր ասիցելոցն քանակաց՝ և հանգէտ և անհանգէտ ասի. որզան՝ մարմին և հանգէտ և անհանգէտ ասի. և թիւ և ամանակ՝ զոյգ և անզոյգ ասի : Սապէս և 'ի վերայ այլոցն ճառեցելոց իւրաքանչիւր հանգէտ և անհանգէտ ասի : Իսկ այլոցն՝ որք միանգամ են ոչ քանակ, ոչ կարի յոյժ թուեսցին զոյգ և անզոյգ ասիլ. որպակ՝ տրամադրութիւն՝ ոչ կարի յոյժ զոյգ և անզոյգ ասի. այլ յաւէտ նմանք և աննմանք, և սպիտակ՝ զոյգ և անզոյգ ոչ կարի յոյժ, այլ նման : Ապա ուրեմն քանոյն մանաւանդ եղիցի ուրոյն յատուկ՝ զոյգ և անզոյգ ասիլ :

# ՅԱՂԱԳՍ

# ԱՌԸՆՉԻ

ԱՌԻՆՉ այսպիսիքս ասին, որք միանգամ ինքեանք որ ինչ ենն, այլոց գոլ ասին, և կամ որպէս զիարդ և իցէ, այլապէս՝ առ այլ. որգոն՝ մեծ այս՝ որ ինչ է՝ այլոյ ասի. քանզի ուրուեմն մեծ ասի, և կըրկնապատիկ այլոյ ասի այս՝ որ ինչ է, քանզի ուրուեմն կրկնապատիկ ասի: Այսպէս և որքան միանգամ այլք ինչ այսպիսիք ասին. և է այսպիսիքս առինչութիւնց. որկէն՝ ունակութիւն, տրամադրութիւն, զգայութիւն, մակացութիւն, դրութիւն. քանզի ամենայն ասացեալքս այս՝ որ ինչ են, այլոց ասին. և կամ որպէս զիարդ և է, այլազգ առ այլ, և ոչ այլ ինչ: Քանզի ունակութիւն՝ ուրուեմն ունակութիւն ասի. և մակացութիւն՝ ուրուեմն մակացութիւն, և դրութիւն՝ ուրուեմն դրութիւն, և այլքն սոյնպէս: Արդ առինչք են՝ որք միանգամ ինքեանք որք ինչ ենն՝ այլոց գոլ ասին, և կամ որպէս զիարդ և իցէ, այլազգ առ այլ. հիկէն՝ լեառն մեծ ասի՝ առ այլ. քանզի առ այլ մեծ ասի լեառնդ. և նման՝ ուրուեմն նման ասի. և այլքն այսպիսիքն՝ սոյնպէս առինչ ասին:

## ՊՐԱԿՔ Բ

ԵՒ է ընկողմանութիւն, և կացութիւն, և նիստն՝ դրութիւնք ոմանք. և դրութիւնքն առընչից են. իսկ ընկողմանելն և կամ կալն, կամ նստելն, սոքա ոչ են դրութիւնք. բայց յարանունաբար յասիցելոց դրութեանցն ասին:

## ՊՐԱԿՔ Գ

ԲԱՅՑ է և ներհակութիւն յառընչոյն. որպէս՝ առաքինութիւն չարութեան ներհական է, և երկաքանչիւրն առընչիցն են, և մակացութիւն անգիտութեան։ Բայց ոչ ամի առընչութիւնցն գոյ ներհական. քանզի կրկնապատկին ոչինչ է ներհական, և ոչ եռապատկին, և ոչ այսպիսեացքն ոչ միում ումեք։ Բայց թուի զառաւելն և զնուազն ընդունել առինչքն. քանզի նմանն յաւէտ և նուազ ասի. և անհանգիտոյն յաւէտ և նուազ ասի. և երկաքանչիւրոք 'ի նոցանէ առինչ է։ Քանզի նմանն ուրուամն նման ասի, և անզուգագոյնն ուրուամն անզուգագոյն. այլ ոչ ամենայնք առինչքն ընդունին զառաւելն և զնուազն. քանզի կրկնապատիկն ոչ ընդունի զյաւէտն և զնուազն, և ոչ յայսպիսեացն և ոչ մի ինչ։

## ՊՐԱԿՔ Դ

ԱՄԵՆԱՅՆՔ առինչքն առ հակադարձման ասին. որպէս՝ ծառայ՝ տեառն ասի ծառայ, և տէր՝ ծառային ասի տէր։ Եւ կրկնապատիկն՝ կիսոյն կրկնապատիկ է, և կէսն կրկնապատկին է կէս. և մեծն նըւազին ասի մեծ, և նուազն մեծի ասի նուազ. սոպէս և 'ի վերայ այլոցն։ Բայց հոլովիւ՝ է երբէք զի տարբերեսցի ըստ բառին. որպէս՝ մակացութիւն մակացելոյն ասի մակացութիւն. և մակացելին՝ մակացութեամբ մակացելի. և զգայութիւն՝ զգալւոյ զգայութիւն. և զգալին՝ զգայութեամբ զգալի։ Բայց սակայն է երբէք՝ զի ոչ թըւեսցի հակադարձիլ, եթէ ոչ ընտանեբար՝ առ որ ասին՝ բացատրեսցին, այլ զեխեսցի որ բացատրեացն. որպէս՝ թև՝ եթէ բացատրեսցի հաւու, ոչ հակա-

դարձէ հաւ թեւոյ. քանզի ոչ է ընտանեբար առ առաջինն բացատրեալ թեւ հաւու. քանզի ոչ ըստ որում հաւ, ըստ այսմ թեւ նորա ասի, այլ ըստ որում թեւաւորն է. քանզի բազմաց և այլոց թեւ է, որք ոչ են հաւք. ապա եթէ բացատրեսցի ընտանեբար, և հակադարձէ. որպակ՝ թեւ՝ թեւաւորի թեւ, և թեւաւորն՝ թեւով թեւաւոր։

## ՊՐԱԿՔ Է

ԲԱՅՑ է երբէք, զի և անուանագործել թերևս հարկաւոր է, եթէ ոչ կայցէ անուն, առ որ ընտանեբար բացատրեսցի. Հիկէն՝ քեղի՝ նաւի եթէ բացատրեսցի, ոչ ընտանի է բացատրութիւն. քանզի ոչ ըստ որում նաւն է՝ ըստ այսմ սորա ասի քեղին։ Քանզի են նաւք՝ որոց ոչ գոն քեղիք. վասն որոյ և ոչ հակադարձէ. քանզի նաւ ոչ ասի քեղւոյ, այլ թերևս ընտանեգոյն բացատրութիւն եղիցի՝ եթէ այսպէս օրինակաւ ինչ բացատրեսցի. քեղին՝ քեղաւորի քեղի, կամ որպէս զիարդ և իցէ այլազգաբար. քանզի անուն ոչ կայ, և հակադարձէ, եթէ ընտանեբար բացատրեսցի. քանզի քեղաւորն քեղեաւ քեղաւոր է։ Սոյնպէս և 'ի վերայ այլոցն. Հիզան՝ գլուխ ընտանեբար բացատրեսցի գլխաւորի՝ քան կենդանւոյ բացատրեալ. քանզի ոչ ըստ որում կենդանի է՝ գլուխ ունի, քանզի բազումք 'ի կենդանեաց գլուխ ոչ ունին, և այսպէս դիւրաւ թերևս առցէ ոք, որոց ոչ կան անուանք. եթէ յառաջնոցն և յայնցանէ՝ որք առ սոսա հակադարձին, դիցեն անուանսն, որպէս և 'ի վերայ յառաջասացելոցն, 'ի թեւոյն թեւաւոր, և 'ի քեղւոյն քեղաւոր։ Արդ ամենայն առինչքն եթէ ընտանեբար բացատրեսցին առ հակադարձսն ասին. ապա եթէ առ դիպաւոր ինչ բացատրեսցին, և ոչ առ որ ասին, ոչ հակադարձին։

## ՊՐԱԿՔ Ձ

Նի տանեմ, զի և ոչ որք են 'ի խոստովանիցելոցն առ հակադարձմն ասիցելոց, և անուանց նոցա կացելոց, ոչինչ հակադարձէ, եթէ առինչ պատահեցելոցն բացատրեսցի, և ոչ իցեն առ որս ասինն. հիկէն՝ ծառայ՝ եթէ ոչ տեառն բացատրեսցի, այլ մարդոյ, կամ երկոտանւոյ, և կամ ո՛յր ուրուք և իցէ այսպիսեացս՝ ոչ հակադարձէ, քանզի ոչ ընտանի է բացատրութին։ Նու ևս՝ եթէ ընտանեբար բացատրեալ իցէ առ որս ասինն, ամենայն պարաբարձիցելոց այլոցն, որք միանգամ պատահարք են. բայց մնացելոյ այսր միայնոյ, առ որ բացատրեցաւն, ընտանեբար առ սա միայն ասասցի։ Որզամն՝ եթէ ծառայ առ տէր ասասցի, և պարաբարձելոցն այլոց՝ որք միանգամ պատահարք են տեառնն. հիկէն՝ երկոտանին գոլ և մակացութեան ընդունական գոլ և մարդն. և մնացելոյ միայնոյ տեառնն՝ յար ծառայն առ նա ասասցի. քանզի ծառայ՝ տն ծառայ ասասցի. ապա թէ ոչ ընտանեբար բացատրեսցի, առ որս ասինն, պարաբարձեցելոց այլոց, և մնացելոյ միայնոյ առ որ բացատրեցաւն, ոչ ասի առ նա։ Մարդ բացատրեսցի ծառայ մարդոյ, և թև հաւու, և պարաբարձցի 'ի մարդոյն տէրն սմա գոլ, ոչ ևս ծառայն առ մարդն ասասցի. քանզի ոչ ելոյ տեառն՝ և ոչ ծառայն է. այսպէս և հաւուն, եթէ պարաբարձցի թևաւորն գոլ, ոչ ևս եղիցի թևն առընչիցն. քանզի ոչ ելոյ թևաւորի՝ և ոչ թևն եղիցի ուրուք. ապա ուրեմն պիտի բացատրել առ որ ընտանեբարն ասի. և եթէ անուն կայցէ, դիւրաւ բացատրութիւն լինի, և ոչ ելոյ՝ հարկաւոր է թերևս անուանագործել. և այսպէս բացատրեցելոց՝ երևելի է, զի ամենայնք առ ինչքն առ հակադարձմն ասին։

## ՊՐԱԿՔ Է

ԲԱՅՑ թուին առընչքն համանգամայն բնութեամբ գոլ, և 'ի վերայ շատից ճշմարիտ է. քանզի համանգամայն կրկնապատիկն է և կէսն, և կիսոյն եղեալ կրկնապատիկն է, և ծառայն եղեալ տէրն է. Նմանապէս այսոցիկ և այլքն. և առհասարակ 'ի բաց բառնան այսոքիկ զմիմեանս. քանզի ոչ եղեալ կրկնապատկի՝ և ոչ է կէս, և կիսոյ ոչ եղեալ՝ ոչ է կրկնապատիկն. սոյնպէս և 'ի վերայ այլոցն, որք միանգամ այսպիսիք են: Բայց ոչ 'ի վերայ ամենեցուն առընչիցն ճշմարիտ թուի համանգամայն բնութեամբ գոլ. քանզի մակացելին քան զմակացութիւն նախկին թուեսցի գոլ. քանզի իբրու յաճախ՝ յառաջագոյն գոյացելոց իրացն, զմակացութիւն առնումք յետոյ:

## ՊՐԱԿՔ Ը

ՔԱՆԶԻ 'ի վերայ սակաւուց, և կամ 'ի վերայ ոչ միոյ տեսցէ ոք զհամանգամայնն ընդ մակացելոյն զմակացութիւն լեալ: Այլ ևս՝ զի մակացելին 'ի բաց բարձեալ, ընդ իւր 'ի բաց բառնայ զմակացութիւն. իսկ մակացութիւնն զմակացելին ոչ շարաբառնայ. քանզի մակացելոյ ոչ եղեալ, ոչ է մակացութիւն. քանզի ոչ ևս ուրուք եղիցի մակացութիւն. և մակացութեան ոչ եղեալ, ոչինչ արգելու զմակացելին գոլ, որպէս և բոլորակին չորեքանկիւնութիւն. զի թէ է մակացելի, քանզի մակացութիւն սորա չև ևս է, իսկ մակացելին գոյ: Այլ ևս՝ կենդանւոյ վերաբարձեցելոյ՝ ոչ է մակացութիւն. իսկ մակացելեացն բազումք ինչ դէպ լինելն գոլ:

## ԳԼՈՒԽ Թ

Նոյն նմանապէս այսոցիկ և 'ի վերայ զգայութեցքն ունին. քանզի զգալին նախկին քան զզգայութիւն թուի գոլ. քանզի զգալին բարձեալ՝ ընդ իւր բառնայ զզգայութիւն։ Իսկ զգայութիւն զզգալին ոչ ընդ իւր 'ի բաց բառնայ. վասն զի զգայութիւնք զմարմնով և ըն մարմնի. և զգալւոյ 'ի բաց բարձիցելոյ, 'ի բաց բարձեալ է և մարմինն. իսկ մարմնոյ ոչ ելոյ՝ 'ի բաց բարձեալ է և զգայութիւն։ Ապա ուրեմն ընդ իւր 'ի բաց բառնայ զգալին զզգայութիւն. իսկ զգայութիւն զզգալին ոչ ընդ իւր 'ի բաց բառնայ. քանզի կենդանւոյն 'ի բաց բարձիցելոյ, և զգայութիւն 'ի բաց բարձեալ է. բայց զգալին գոյ մարմին, որգոն՝ ջերմ, քաղցր, դառն, և այլքն ամենայնք՝ որ միանգամ զգալիք։ Նաև ևս՝ զի զգայութիւնք համանգամայն ընդ կենդանւոյն լինի. քանզի միանգամայն լինի կենդանին և զգայութիւն։ Իսկ զգալին է և նախ քան զգոլ զգայութեան. քանզի հուր և ջուր և այսպիսիքս, ոյց և կենդանին բաղկացեալ է, է և յառաջ քան զկենդանին բոլորովին գոլ, և քան զզգայութիւն։ Ապա ուրեմն յառաջագոյն էացեալ քան զզգայութիւն զգալին գոլ թուեսցի։

## ԳԼՈՒԽ Ժ

ԲԱՅՑ ունի տարակուսանս, եթէ արդեօք և ոչ մի գոյացութի առընչիցն ասի, թէ որպէս թուի՝ սա ընդունի ըստ երկրորդաց ոմանց գոյացութեանցն. քանզի մակ ոմանց առաջնոց գոյացութեանցն ճշմարիտ է. քանզի ոչ բոլորքն, և ոչ մասունքն առընչիցն ասին. քանզի ոմն մարդ ոչ ասի ուրումն ոք

մարդ, և ոչ ոմն արջառ՝ ուրումն ոմն արջառ։ Նոյնպէս և մասունքն. քանզի ոմն ձեռն ոչ ասի ուրումն ոմն ձեռն, և ոչ ոմն գլուխ ոչ ասի ուրումն ոմն գլուխ, այլ ոմն[1] գլուխ։ Նոյնպէս և 'ի վերայ երկրորդաց գոյացութեանցն 'ի վերայ յոլովիցն. որկէն՝ մարդ, ոչ ասի ուրումն մարդ, և ոչ արջառ՝ ուրումն արջառ, և ոչ փայտ՝ ուրումն փայտ, այլ ուրումն ստացուած ասի։ Արդ 'ի վերայ այսպիսեացս երևելի է, զի ոչ են առընչիցն. իսկ 'ի վերայ ոմանց երկրորդաց գոյացութեցն ունի երկբայութիւն. հիպէս՝ գլուխ՝ ուրումն ասի գլուխ, և ձեռն՝ ուրումն ասի ձեռն, և իւրաքանչիւրոք յայսպիսեացն, մինչ զի այսպիսիքս առընչիցն թուեսցին գոլ։

## ԳԼՈՒԽ ԺԱ

ԱՐԴ եթէ բաւականաբար առընչիցն սահման բացատրեալ էր, կամ յոյժ դժուարացն՝ կամ յանկարացն էր լուծանել, իբրու թէ և ոչ մի գոյացութիւն առընչիցն ասի. ապա եթէ ոչ բաւականաբար այլ են առինչքն, որոց գոլն նոյն է՝ առ ինչ իմնապէս ունել, թերևս ջատեսցի ինչ առ այսոսիկ։

## ԳԼՈՒԽ ԺԲ

ԱՅՍ առաջին սահմանն յարահետևի ամենեցունց առընչիցն. այլ սակայն ոչ է այս առընչիցն, նոյնք՝ որք ինչ ենն՝ այլոց ասիլ. և 'ի սոցանէ յայտնի է, զի թէ ոք գիտացեալ տեսցէ ինչ որոշաբար յառընչիցն, և զայն՝ առ որ ասինն՝ որոշաբար գիտասցէ։ Արդ երևելի և յինքեանէ է. քանզի եթէ գի-

1 Յն. ուրումն գլուխ։

տէ ոք զայս ինչ՝ զի առընչից է, և է գոլն առընչից նոյն առ ինչ իմն օրինակ ունել, և զայն գիտէ՝ առ որ սայն և զիարդն ունի. քանզի եթէ ոչ գիտէ բոլորովին առ որ զիարդ ունին, և ոչ եթէ առ ինչ զիարդ ունի գիտասցէ. և 'ի վերայ իւրաքանչիւրոցն յայտնի է այսպիսին: Արկէն՝ եթէ զայս ինչ գիտէ բացորոշեալ, զի է կրկնապատիկ, և որո՞յ է կրկնապատիկ՝ անդէն բացորոշաբար գիտասցէ. քանզի եթէ ոչ ուրուք 'ի բացորոշիցելոցն գիտէ զսա կրկնապակել, և ոչ եթէ է կրկնապատիկ, բոլորովին գիտէ:

Սոյնպէս և զայս ինչ եթէ գիտէ, եթէ գեղեցկագոյն է, և որոյ գեղեցկագոյնն է, անդէն բացորոշաբար հարկաւոր է գիտել զսա վասն սոցա. բայց եթէ անորոշակի գիտասցէ, եթէ սայ է վատթարի լաւագոյն, կարծիք այսպիսիս լինին, այլ ոչ մակացութի. քանզի ոչ ևս գիտասցէ ստուգաբար, եթէ է վատթարի լաւագոյն: Քանզի եթէ այսպէս դիպեցաւ, ոչ ինչ գոյ վատթարագոյն քան զսա, ապա ուրեմն երևելի է, զի հարկաւոր է, զի եթէ գիտասցէ ոք յառընչիցն՝ սահմանաբար գիտասցէ:

## ՊՐԱԿՔ ԺԳ

ԻՍԿ զգլուխն եթէ ոք գիտասցէ կամ զձեռն, և զիւրաքանչիւրն յայսպիսեացն, որք են գոյացութիւք, զայն որ են որոշաբար գիտասցէ. բայց առ որ ասինն՝ ոչ է հարկաւոր: Քանզի ո՞յր այս գլուխ, և կամ ո՞յր ձեռն, ոչ եղիցի գիտել սահմանօրէն. ապա ուրեմն ոչ են սոքա առընչից:

Ապա թէ ոչ են առընչից, ճշմարիտ եղիցի ասել, զի ոչ մի գոյացութի առընչից է: Բայց թերևս դժուար է յաղագս այսպիսեացս սաստկաբար բացերևեցուցանել հրամանաւ պատասխանւոյ, ոչ բազում անգամ հարցեալ և խնդրեալ. բայց սակայն տարակուսել և վարանել 'ի վերայ իւրաքանչիւր ուրուք սոցայցն ոչ անպիտան է:

# ՅԱՂԱԳՍ

# ՈՐԱԿԻ ԵՒ ՈՐԱԿՈՒԹԵԱՆ

Զի՛ որակութիւն ասեմ, ըստ որում որակք ոմանք ասին. և է որակութիւն ՚ի յոգնաբանս ասիցելոց։

## ԳՐԱԿՔ Բ

Արդ մի տեսակ որակութեան ունակութիւն և տրամադրութիւն ասասցին. և տարբեր է ունակութիւն ՚ի տրամադրութենէ, վասն տևողագոյն և յոգնամանակագոյն գոլ. և այսպիսիք են մակացութիւնք և առաքինութիւնք. քանզի մակացութիւն թուի ՚ի յարտևողացն [1] գոլ և ՚ի դժուարաշարժիցն. եթէ և չափաւորաբար ոք մակացութիւն առցէ. թէ ոչ մեծ փոփոխումն ընկալցի ՚ի հիւանդութենէ կամ յայլմէ պատճառէ իմեքէ այսպիսոյ. սոյնպէս և առաքինութիւն։ Նիքար՝ արդարութիւն և ողջախոհութիւն և իւրաքանչիւրոք յայսպիսեացն՝ ոչ դիւրաշարժելի թուի գոլ, և ոչ դիւրափոփոխ։

Եւ տրամադրութիւնք ասին, որք են դիւրաշարժք, և արագափոփոխք [2]. հիկէն՝ ջերմութիւն և ցրտութիւն. հիւանդութիւն և առողջութիւն, և որք միանգամ այսպիսիք են. քանզի տրամակայի ինն ըստ այսոցիկ մարդն։ Բայց արագափոխ է, ՚ի ջերմոյ՝ ցուրտ լեալ, և յողջմանալոյն հիւանդանալ։

Սոյնպէս և ՚ի վերայ այլոցն, եթէ ոչ ոք և սոցունս այսոցիկ դիպեսցի բազում ժամանակաւ, ահա բնաւորեալ անբոյժ և կամ կարի դժուարաշարժելի եղեալ, զոր ահա ոք իբր ունակութիւն առասասցէ։

1 Այլ օրինակ. ՚ի յարտևողացն։ 2 Մի օրին. արագափոփոխ։

## ՊՐԱԿՔ Գ

Այլ երևելի է, զի զայսոսիկ կամին ունակութիւնս ասել, որք են յոգնամանակագոյնք և դժուարաշարժագոյնք. քանզի զմակացութեանցն և ոչ զքաջ զունօղսն, այլ դիւրաշարժելիս լեալս ոչ ասեն ունակութիւն ունել. այլ սակայն տրամակայիլ իմն ըստ մակացութեան, կամ վատթար և կամ քաջ: Իսկ ապա տարբեր է ունակութիւն 'ի տրամադրութենէ այսու, դիւրաշարժելին գոլ, և ումեմն յոգնամանակագոյն, և դժուարաշարժագոյն: Այլ են ունակութիւնք և տրամադրութիւնք. իսկ տրամադրութիւնք ոչ 'ի հարկէ ունակութիւն. քանզի որ ունակութիւնս ունին՝ և տրամակայեն իմն ըստ սոսա. իսկ որք տրամակայենն՝ ոչ ամենայն իրօք ունակութիւն ունին:

## ՊՐԱԿՔ Դ

Այլ այլ սեռ որակութեան ըստ որում մրցականս և ընթացականս, կամ ողջականս, կամ հիւանդոտս, և ասեմք պարզաբար միանգամայն որ ինչ միանգամ ըստ բնական կարողութեան կամ անկարութեան ասի: Քանզի ոչ վասն տրամակալոյն իմն իւրաքանչիւրոք յայսպիսեացն ասի, այլ վասն զօրութիւն ունելոյ բնական, կամ անկարութիւն առնել ինչ դիւրաւ, և կամ ոչինչ կրել. հիզան՝ մրցականք կամ ընթացականք ասին, ոչ վասն տրամակալոյն իմն օրինակի, այլ վասն զօրութիւն ունելոյ բնական առնել ինչ դիւրաւ: Այլ ողջականք ասին, վասն զօրութիւն ունելոյ բնական, ոչինչ կրել 'ի դիպեցելոցն դիւրաւ. և հիւանդոտս, վասն անզօրն լինել, և դիւրաւ տալ տեղի հիւանդութեանց բնականս ինչ կրել. և նմանապէս այսոցիկ, և խիստն

և կակուղն ունի. քանզի խիստ ասի վասն զօրութեան ունել ոչ դիւրաւ հատանել, իսկ կակուղ՝ վասն ոչ զօրութիւն ունել և դիւրեաւ տեղի տալ սորին այսորիկ ։

## ՊՐԱԿՔ Ե

Ի երրորդ սեռ որակութեան, կրականք որակութիւնք, և կիրք. և են այսպիսիք. որպէս՝ քաղցրութիւն և դառնութիւն, և ամենայնք սոցայցք ազգակիցք. և ևս՝ ջերմութիւն և ցրտութիւն և սպիտակութիւն և սևութիւն. և զի այսոքիկ որակութիւնք են՝ երևելի է. քանզի ընդունականք սոցա որակք ասին ըստ այսմիկ, որպէս՝ մեղր վասն քաղցրութեան ունելոյ քաղցր ասի, և մարմին սպիտակ, վասն սպիտակութեան ունելոյ. սոյնպէս և 'ի վերայ այլոցն ունի ։ Իսկ կրականք որակութիւնք ասին՝ ոչ վասն սոցուն ընդունականացս [1] զորակութիւնս կրել ինչ. քանզի և ոչ քաղցր վասն կրել ինչ ասի քաղցր, և ոչ յայլոցն ինչ յայսպիսեացս և ոչինչ ։

Նմանապէս այսոցիկ՝ և ջերմութիւնք և ցրտութիւնք կրականք որակութիւնք ասին, ոչ վասն սոցուն ընդունականացս կրել ինչ, այլ վասն ըստ զգայութեանցս, իւրաքանչիւր յասացելոցս որակութեանցն ախտից գոլ արարչական՝ կրականք որակութիւնք ասին. քանզի քաղցրութիւն կիրս իմն ըստ ճաշակելեաց առնէ, և ջերմութիւն ըստ շօշափելեաց, նմանապէս և այլքն ։

1 Մի օրին. ընդունականացս ։

## ՊՐԱԿՔ Ջ

Իսկ սպիտակութիւն և սևութիւն և այլ գոյնք, ոչ զնոյնօրինակ ասացելոցս կրականք որակութիւնք ասին, այլ վասն իւրեանցն յախտէ եղանիլ. և զի լինին վասն ախտի բազում փոփոխմունք գունոյ յայտ է: Քանզի ամաչեալ ոք՝ շառագունէ, և երկուցեալ՝ դեղին լինի, և զիւրաքանչիւրոք յայսպիսեացն, մինչ զի և թէ ոք բնութեամբ յայսպիսեացս ինչ ախտից կրեաց յումանց բնական պատահմանց, զնմանագոյնն դէպ եղև ունել սմա. քանզի որ այժմ յամաչելն տրամադրութիւն առ մարմինն եղև. և ըստ բնական բաղկացութեան սոյն եղիցի տրամադրութիւն, մինչ զի և բնութեամբ զոյգ[1] և նման լինել: Արդ որք միանգամ յայսպիսեացս պատահից յախտից ումանց դժուարաշարժից և յարատևաց սկիզբն էառ, որակութիւնք ասին:

Քանզի եթէ ըստ բնութեան բաղկացութեան դեղնութիւնք կամ սևութիւնք եղեալք են, որակութիւնք ասին. քանզի որակք ըստ սոսա ասեմք. և եթէ վասն երկար հիւանդութեան, և կամ վասն խարշման, այսպիսիս պատահեաց դեղնութիւն, կամ սևութիւն, և ոչ դիւրաւ անդրէն հաստատեալ դառնայ, այլ առ կենօքն յարակայ մնան՝ որակութիւնք և սոքա ասին, քանզի նմանապէս որակք ըստ սոսա ասեմք:

## ՊՐԱԿՔ Է

Իսկ որք միանգամ՝ ի դիւրին տարալուծելոցն և յարագ անդրէն հաստատելոց լինին՝ ախտք ասին. զի ոչ ասին որակք ումանք ըստ սոսա. քանզի և ոչ որ շիկնէն վասն ամաչելոյն շիկնոտ ասի, և ոչ դեղնա-

1 Յն. գոյն:

ցեալն վասն երկնչելոյն դեղնոտ[1] . այլ յաւէտ առ կրել ինչ . ապա ուրեմն ախտք այսպիսիքս ասին , այլ ոչ որակութիւնք ։ Նմանապէս սոցա և ըստ հոգւոյն կրականք՝ որակութիւնք և կիրք ասին . քանզի որք միանգամ 'ի լինելութեան անդէն յախտից ոմանց եղեալ լինին որակութիւն , որակութիւնք ասին . որպէս՝ մոլեկան արտակացութիւն , ափշութիւն , և բարկութիւն , և այսպիսիքս . քանզի որակք ըստ սոսա ասին և բարկացողք և մոլեկանք ։ Նմանապէս և որք միանգամ արտակացութիւնք ափշութեան , ոչ բնականք , այլ յոմանց յայլոց պատահից եղեալ են , և դժուարաթափք , և կամ բոլորովին անշարժք , որակութիւնք և այնպիսիք են . քանզի որակք ոմանք ըստ սոսա ասին ։ Իսկ որք յարագ անդրէն դարձեալ հաստատելոցն լինին , ախտք ասին . հիզան՝ եթէ տրտմեալ բարկացողագոյն ոք է , քանզի ոչ ևս ասի բարկացող , որ յայսպիսում ախտէ բարկացողագոյնն է , այլ յաւէտ վասն կրելն ինչ . ապա ուրեմն կիրք ասին այսպիսիքս , այլ ոչ որակութիւնք ։

## ԳՐԱԿՔ Ը

Եւ չորրորդ սեռ որակութեան՝ ձև , և որ առ իւրաքանչիւր ումեք է՝ կերպ . և ևս առ այսոքիւք , ուղղութիւն և ծռութիւն , և որ ինչ սոցին նման է ։ Քանզի ըստ իւրաքանչիւր սոցա որակ ինչ ասի . քանզի վասն եռանկիւնին կամ քառանկիւնին գոլ՝ որակ իմն ասի . և վասն ուղղոյն և ծռոյն գոլ , և ըստ կերպին իւրաքանչիւր , որակ իմն ասի ։ Իսկ անգայտն և հոծն , և խոշորն և ողորկն՝ թուեսցի որակ նշանակել . բայց երևեցաւ օտար այսպիսիքս գոլ առ 'ի յորակն բաժանմանէ . քանզի դրութիւն իմն առաւել երևին 'ի մասնկանցն իւրաքանչիւր ազդել ։ Քանզի հոծն՝ վասն մասնկանցն շարամօտն գոլ առ միմեանս , և անգայտն՝

1 Մի օրին . դեղնոտ ։

վասն տարակացելոյն 'ի միմեանց, և ողորկն՝ վասն դէպուղիղն մասնկանցն կալ, և խոշորն՝ վասն ումեմն գերազանցն լինելոյն, և ումեմն որ պակաս և փնխստ լինելն :

## ՊՐԱԿՔ Թ

ԲԱՅՑ Թերեւս և այլ ինչ երեւեսցի յեղանակ որակութեան, այլ որք մանաւանդ ասին, գրեթէ սոքա են. արդ որակութիւնք են նախասացեալքս, և որակք ըստ սոսա յարանուանաբար ասացեալքն, և կամ որպէս ղիարդ և իցէ 'ի սոցանէ :

Արդ 'ի վերայ յոլովիցն և գրեթէ 'ի վերայ ամենեցուն է՝ յարանուանաբար ասիլն. որպէս՝ 'ի սպիտակութենէն սպիտակն, և 'ի քերականութենէն քերականն, և յարդարութենէն արդարն. սոյնպէս և 'ի վերայ այլոցն : Իսկ 'ի վերայ ոմանց՝ վասն ոչն կալոյ որակութեանցն անուանք՝ ոչ ընդունելին յարանուանաբար 'ի սոցանէ ասիլ. որպէս՝ ընթացականն և կամ մրցականն. որ ըստ զօրութեան մրցականութիւն ասիցի, ոչ 'ի միոջէ որակութենէ յարանուանաբար ասի. քանզի ոչ կան անուանք զօրութեանցն ըստ որս սոքա որակք ասին. որպէս և մակացութեանց, ըստ որս մրցականք, և կամ մարտիկք, որք ըստ տրամադրութեան ասին : Քանզի մրցական մակացութիւն ասի և մարտական. քանզի որակք 'ի սոցանէ յարանուանաբար տրամակայեալքն ասին. և Թերեւս և անուն կայցէ, և ոչ ասի յարանուանաբար ըստ այսմիկ որակն ասացեալ. որգան՝ յառաքինութենէն քաջն ասի. քանզի վասն առաքինութեան ունելոյ քաջ ասի. այլ ոչ յարանուանաբար յառաքինութենէն առաքինի. բայց ոչ 'ի վերայ բազմաց այսպիսիս է : Արդ որակք այսուհետեւ ասին յարանունաբարքս յասիցելոց որակութեանցն ասիցեալք, և կամ որպէս զիարդ և իցէ այդպէս և 'ի նոցանէ :

## ՊՐԱԿՔ Ժ

Եւ գոյ և ներհակութիւն ևս ըստ որակին. հիզան՝ արդարութիւն անիրաւութեան ներհական է, և սպիտակութիւն սևութեան, և այլքն։ Սապէս և ըստ սոսայքն՝ որակք ասիցեալքն, որկէն՝ անիրաւն՝ արդարոյն, և սպիտակն՝ սևոյն. բայց ոչ ՚ի վերայ ամենեցունց այսպիսի է։ Վասնզի շիկլին կամ դեղնին, կամ այսպիսեացս գունոց՝ ոչինչ ներհական է, թէպէտ և որակք են։

Եւ ևս՝ եթէ ՚ի ներհակաց ոմն է որակ, և այլքն եղիցին որակք. և այս յայտ է՝ ՚ի ձեռն առեալ և երևեցուցեալ զայլոցն ստորոգութիւնս. որզան՝ եթէ արդարութե անիրաւութիւն, և սպիտակութե սևութիւն ներհական է, և որակ է արդարութիւն, որակ ուրեմն ապա և անիրաւութիւն։ Վասնզի ոչ և մի յայլոց ստորոգութեանցն յարմարեալ պատկանի ընդ անիրաւութե. ոչ քանակն և ոչ առինչն, և ոչ ուրն, և ոչ բոլորովին ինչ յայսպիսեացն և ոչ մի ինչ, այլ՝ որակ։ Սոյնպէս և ՚ի վերայ այլոցն ըստ որակին ներհակացն։

## ՊՐԱԿՔ ԺԱ

Եւ ընդունին զյաւէտն և զնուազն որակք. քանզի սպիտակ յաւէտ և նուազ այլ այլոյ ասի, և արդարագոյն այլ այլոյ յաւէտ և նուազ. և ինքն մակատրամատուի առնու. քանզի իբրու սպիտակն է, ընդունի և սպիտակագոյն ևս եղանիլ։ Բայց ոչ ամենայնք, այլ յոլովք. քանզի արդարութիւն՝ արդարութե եթէ ասասցի յաւէտ և նուազ, տարակուսեալ վարանեսցի ոք. նմանապէս և ՚ի վերայ այլոց տրամադրութեանց։ Վասնզի ոմանք յերկուանան յաղագս

այսպիսեացն. քանզի արդարութիւն արդարութենէ ոչ կարի քաջ, ասեն, ասիլ յաւէտ և նուազ, և ոչ ողջութիւն՝ ողջութենէ։ Բայց սակայն նուազ ունել այլում քան զայլում ողջութիւն ասեն, և արդարութիւն նուազ այլում քան զայլում. սոյնպէս և զքերականութիւն և զայլս տրամադրութիւնս։ Բայց սակայն ըստ սոսայն ասիցեալք որակքն անյերկուանալի ընդունին զյաւէտն և զնուազն. քանզի քերականագոյն այլ քան զայլ ասի. և ողջագոյն, և արդարագոյն, և 'ի վերայ այլոցն սոյնպէս։

Բայց եռանկիւնին և քառանկիւնին ոչ թուի զյաւէտն և զնուազն ընդունել, և ոչ այլոցն ձևոցն և ոչ մի ինչ։ Քանզի որք միանգամ ընդունին զեռանկիւնւոյն զբան և զբոլորակին, ամենեքեան նմանապէս եռանկիւնիք կամ բոլորակք են. իսկ այնք որք ոչ ընդունին[1], ոչ մի ինչ այլ քան զայլ յաւէտ ճառեսցի։ Քանզի ոչինչ սուղ քառանկիւնին, քան զայլն երկարն բոլորակ է. քանզի և ոչ մի ոչ ընդունի զբոլորակին բան։ Բայց պարզաբար միանգամայն, եթէ ոչ ընկալցին երկոքեան զառաջիկային զբան, ոչ ասասցի այլ քան զայլ յաւէտ և նուազ. ապա ոչ ընդունին որակութիւնքն զյաւէտն և զնուազն։

## ԳՐԱԿՔ ԺԲ

Արդ յասացելոցս ոչինչ է ուրոյն յատուկ որակութեան. բայց նմանս և աննմանս ըստ որակութեանց միայն ասեն. քանզի նման այլ քան զայլ է և ոչ ըստ միումիրիք, այլ ըստ որում որակն է։ Իսկ ապա ուրեմն ուրոյն յատուկ լիցի որակութեան՝ նմանն[2] ասիլ ըստ ինքեան։ Բայց ոչ է պարտ և արժան խռովիլ, մի գուցէ ասասցէ ոք զմեզ յաղագս որակութեան արարելոյ զառաջադրութիւնս՝ բազումս ինչ առընչիցն համարել և 'ի հաշիւ արկանել. վասն զի զունակութիւնս

1 Ցն. յաւելու, զնոյն բան։ 2 Ցն. կամ աննման։

և զտրամադրութիւն՝ առընչից գոլ, քանզի դրեթէ ՚ի վերայ ամենեցուն այսպիսեաց սեռքն առընչից ասին, իսկ ըստ իւրաքանչիւրոցն ոչինչ։

Վասնզի մակացութիւն իբրու զի սեռ է ինքն՝ որ ինչ էն՝ այլոց ասի, քանզի ուրումն մակացուի ասի. իսկ ըստ իւրաքանչիւրոցն ոչինչ ինքն՝ որ ինչ էն՝ այլոց ասի. որգոն՝ քերականութիւն ոչ ասի ուրումն քերականութեան, և ոչ երաժշտականութիւն ուրումն երաժշտականութեան, այլ թերևս արդեօք ըստ սեռին սոքա առընչից ասին. որպէս՝ քերականութիւն ասի ուրումն մակացութեան, այլ ոչ ուրումն քերականութեան. և երաժշտականութիւն՝ ուրումն մակացութեան ասի, այլ ոչ ուրումն երաժշտականութեան. ապա ուրեմն ըստ իւրաքանչիւրքն ոչ են առընչից։ Եւ ասեմք որակք ըստ այսոցիկ, քանզի զսոսա և ունիմք. քանզի մակացուք ասիմք՝ վասն ունելոյ ինչ ըստ իւրաքանչիւրոցն հանճարոյ. ապա ուրեմն սոքա և որակութիւնք եղիցին ըստ իւրաքանչիւրքս, ըստ որոց երբեմն և որակք ասիմք. իսկ սոքա ոչ են առընչից։ Եւ ևս՝ թէ պատահեսցէ նոյն առինչ և որակեալ, ոչինչ անտեղագոյն է յերկոսին սմա ՚ի սեռէն ՚ի համար դասու անկանել։

## ՅԱՂԱԳՍ

# ԱՌՆԵԼՈՑ ԵՒ ԿՐԵԼՈՑ

Ընդունի առնելըն և կրելըն ներհակութիւն, և զյաւելումն և զնուազն. քանզի ջեռուցանելն ցրտացուցանելոյն ներհակ է, և ջեռնուլն ցրտանալոյն, և հեշտանալն տրտմելոյն. ապա ուրեմն ընդունի ներհակութիւն, և զյաւելումն և զնուազն. քանզի ջեռուցանելն՝ և յաւէտ և նուազ է, և տրտմելն յաւէտ և նուազ. ապա ուրեմն ընդունի զյաւէտ և զնուազ՝ առնելն և կրելն: Արդ յաղագս նոցա այսքանք ասին. և ասացեալ է և յաղագս կալոյ յառինչսն. քանզի յարանուանաբար 'ի դրոցն ասի:

Իսկ յաղագս այլոցն, երբէն և ուրէն և ունելոյն, վասն յառաջագոյն յայտնին գոլոյ, ոչինչ յաղագս նոցա այլ ինչ ասի՝ քան որ միանգամ՚ի սկզբանն ձայնեցաւ: Զի ունելն նշանակէ զըստիմանելն, զինելն. իսկ ուրն, հիբար՝ ըն լիկիոն. և այլքն՝ որ միանգամ յաղագս նոցա ձայնեցաւ: Արդ յաղագս յառաջադրելոց սեռից բաւական են յառաջասացեալքն:

# ՅԱՂԱԳՍ

# ՀԱԿԱԿԱՅՑ

Իսկ յաղագս հակակայց՝ ըստ քանի յեղանակս սովորեցաւ հակակայիլն՝ ճառելի է։ Եւ ասի այլ այլում հակակայիլ քառակաբար. կամ իբր առընչէք, կամ իբր ներհակք, և կամ իբր պակասութիւն և ունակութիւն, կամ իբր ստորասութիւն և բացասութիւն. և հակակայի իւրաքանչիւրոք յայսպիսեացս։ Իբր թէ գաղափարաւ ասել, որպէս առընչէքն. որկէն՝ կրկնապատիկն՝ կիսոյ։ Իսկ որպէս ներհականք. հիբար՝ չար՝ բարւոյ։ Իսկ որպէս ըստ պակասութեան, և ունակութեան. հիզան՝ կուրութիւն, և երեոք։ Իսկ որպէս ստորասութիւն և բացասութիւն. հիպէս՝ նստի, ոչ նստի։

Արդ որք միանգամ իբրու առընչէք հակակային, ինքեանք որ ինչ են՝ հակակայեցն ասին. և կամ որպէս զիարդ և իցէ՝ այլազգ առ սոսա. որբար՝ կրկնապատիկն՝ կիսոյն, ինքն որ ինչ էն՝ այլոյ կրկնապատիկ ասի. և մակացութիւն մակացելւոյ իբրև առընչէք հակակային. և ասի մակացութիւն ինքն որ ինչ էն՝ մակացելւոյն. և մակացելին ինքն որ ինչ էն՝ առ հակակայեալ մակացութեան ասի։

## ՊՐԱԿՔ Բ

Արդ որք միանգամ հակակային իբրու առընչէք, ինքեանք որ ինչ ենն, և կամ որպէս զիարդ և իցէ երբէք առ միմեանս ասին. իսկ որպէս ներհակք՝ ինքեանք որ ինչ ենն և ոչ միով իւիք առ միմեանս ասին։ Բայց սակայն ներհակք միմեանց ասին. քանզի ոչ բարի՝ չարի բարի ասի, այլ ներհական, և ոչ սպի-

տակ՝ սևոյ սպիտակ, այլ ներհական։ Իսկ ապա ուրեմն տարբեր են այսք հակադրութիւնք միմեանց ։

## ՊՐԱԿՔ Գ

Որք միանգամ՚ի ներհակացն այսպիսիք են, մինչ զի յորս բնաւորեցան լինել, կամ զորոց ստորոգիլ, և հարկաւոր է սոցա միումն գոլ, սոցա ոչինչ է ընդ մէջ. իսկ որոց ոչ է հարկաւոր միումն գոլ, սոցա է իմն ամենայն իրօք ընդ մէջ։ Որպէս՝ ողջութիւն և հիւանդութ̃ի ՚ի մարմնոջ կենդանւոյն բնաւորեաց լինել. և հարկաւոր է միումն լինել ՚ի կենդանւոջն ՚ի մարմնի, կամ առողջութ̃ի կամ հիւանդութիւն. և դար և կոճատ զթուոյ ստորոգին. և հարկաւոր է միումն ՚ի թուոջն գոլ կամ կոճատ, կամ դար. ոչ է սոցա և ոչինչ ընդ մէջ, ոչ հիւանդութ̃ե և ողջութեան, և ոչ դարի, և կոճատի։ Իսկ որոց ոչ է հարկաւոր մինն գոլ, սոցա է իմն ընդ մէջ. որգոն՝ սեաւ և սպիտակ ՚ի մարմնոջ բնաւորեաց լինել, և ոչ է հարկաւոր զմինն գոլ նոցա ըն մարմնոջն. քանզի ոչ ամենայն կամ սպիտակ է և կամ սեաւ. և ոչ վատթար և առաքինի, որ ստորոգեալ զմարդոյ լինի, և զայլոց բազմաց, բայց ոչ է հարկաւոր զմինն ՚ի նոցանէ գոլ այնց՝ զոյց ստորոգին. քանզի ոչ ա̃մ՝ կամ վատթար, կամ առաքինի, և է սոցա ընդ մէջ. որպէս՝ սպիտակի և՛ սևի՝ գորշն և դեղինն, և որ միանգամ այլ գոյնք։ Իսկ վատթարին և առաքինւոյն, ոչ վատթարն, և ոչ առաքինին։

Արդ ՚ի վերայ ոմանց անուանք կան միջոցացն. որպէս՝ սպիտակին և սևին, գորշն և դեղինն, և որք միանգամ այլ գոյնք։ Իսկ ՚ի վերայ ոմանց անուամբ ոչ է դիւրին բացադրել զընդմէջսն, բայց երկաքանչիւրովքն ծայրիցն ապասութ̃բ զընդմէջն սահմանի. հիբար՝ ոչ բարին և ոչ չարն, ոչ արդարն և ոչ անիրաւն։

# ՊՐԱԿՔ Դ

Իսկ ունակութիւն և պակասութիւն առ նոյն ինչ են. որքար՝ երեսք և կուրութիւն ասին զակամբ: Իսկ ընդհանուր ասել, յորում բնաւորեաց ունակութիւն լինել. զի զսովաւ ասին երկաքանչիւրոք 'ի նոցանէ. քանզի պակասիլ յայնժամ ասեմք զիւրաքանչիւր զունակութիւնն ընդունողն, յորժամ յորում բնաւորեցան գոլ, և ոչ միով իւիք ոչ գուցէ: Քանզի ժոռատ ասեմք, ոչ որ ոչ ունին ատամունս, և կոյր՝ ոչ որ ոչ ունի երեսս, այլ որ ոչ ունի՝ յորժամ բնաւորեցան ունել. քանզի ոմանք 'ի ծննդեան ոչ երեսս ունին և ոչ ատամունս. այլ ոչ ասին ոչ ժոռատք և ոչ կոյրք: Իսկ պակասելն և ունելն երեսս, ոչ է պակասութիւն և ունակութիւն. քանզի ունակութիւն է երեսք, իսկ պակասութիւն՝ կուրութիւն: Բայց ունելն երեսս, ոչ է երեսք. և ոչ կոյրն գոլ՝ կուրութիւն. քանզի պակասութիւն ինչ է կուրութիւն. իսկ կոյրն գոլ՝ է պակասիլն, և ոչ է պակասութիւն: Եւ ևս՝ եթէ էր նոյն կուրութիւն և կոյրն գոլ, ստորոգէին երկոքեան զնրմանէ, այլ սակայն կոյր ասի մարդ, բայց կուրութիւն և ոչ միով իւիք մարդ ոչ ասի. և հակակայիլ և այսոքիկ թուին՝ և պակասիլն և զունակութիւն ունելն, որպէս պակասութիւն և ունակութիւն, քանզի յեղանակ հակադրութեան նոյն է: Քանզի որպէս կուրութիւն՝ երեսաց հակակայի, այսպէս կոյրն գոլ՝ զերեսս ունելոյն հակակայի:

## ԳՐԱԿՔ Ե

ԲԱՅՑ ոչ որ ընդ ստորասութեամբ և բացասութեամբ՝ ստորասութիւն և բացասութիւն. քանզի ստորասութիւն բան է ստորասական, իսկ բացասութիւն՝ բան բացասական: Իսկ այնոքիկ որ ընդ ստորասութեամբ կամ բացասութեամբ են, ոչինչ է բան. և սոքին և սոքա հակակայիւ միմեանց, որպէս ստորասութիւն և բացասութիւն. քանզի և ՚ի վերայ սոցա յեղանակ հակադրութեան նոյն է: Քանզի որպէս երբեմն ստորասութիւն առ բացասութիւն, որգան՝ նստին՝ ոչ նստումն, այսպէս և որք ընդ երկաքանչիւրովք ՚ի սոցանէ իրք են՝ հակակային, նստելն ոչ նստելումն: Եւ զի պակասութիւն և ունակութիւն ոչ հակակային, որպէս առնչքն, երևելի է, քանզի ոչ ասի այն ինչ որ ինչ էն՝ հակակային. քանզի երեսք ոչ է կուրութեան երեսք, և ոչ այլազգ և ոչ միով իւիք իրօք առ այս ասի. սապէս և ոչ կուրութիւն՝ ասի կուրութիւն երեսաց, այլ պակասութիւն երեսաց՝ կուրութիւն ասի: Եւ եւս առնչքն ամենայն առ հակադարձման ասին. իսկ ապա և կուրութիւն, զի եթէ էր առնչիցն, հակադարձէր ապա և առ այն, առ որս ասին, այլ ոչ հակադարձի, քանզի ոչ ասի երեսք կուրութեան:

## ԳՐԱԿՔ Զ

ԵՒ զի ոչ որպէս ներհականքն հակակային այնք, որք ըստ պակասութեան և ունակութեան ասին, յայսցանէ յայտ է. քանզի ներհակացն որոց ոչինչ է ընդ մէջ՝ հարկաւոր է, յորում բնաւորեցան լինել, կամ զոյգ ստորոգելին, միումն ՚ի սոցանէ գոլ միշտ, և սոցա ոչինչ էր ընդ մէջ իմն, յորոց միումն հարկաւոր էր

յընդունականէն գոլ. որպէս՝ 'ի վերայ հիւանդութեան և առողջութեան, և կոճատին և դարին: Իսկ որոց է ինչ ընդ մէջ, ոչ երբէք հարկ է ամենայնիւ գոլ զմինն. քանզի ոչ սպիտակ, և ոչ սեաւ ամենայն գոլ ընդունականն, և ոչ ջերմն և ոչ ցուրտ: Իսկ զընդ միջոցն ոչինչ արգելու գոլ, և սոցա ևս էր ինչ ընդ մէջ, որոց ոչ էր հարկաւոր զմինն գոլ յընդունականութեան, և ոչ որոց բնութեամբ մինն գուցէ. հրզան՝ բնութեամբ հրոյ ջերմն գոլ, և ձեան՝ սպիտակ: Այլ 'ի վերայ այսոց հարկաւոր է զոմն յընդունականէն գոլ, և բացորոշաբար հարկաւոր է զմինն գոլ, և որումն ոչ ումեք դէպ եղև. քանզի ոչ ընդունելի հուր ցուրտ գոլ, և ոչ ձիւն՝ սեաւ:

Այլ ուրեմն յամենայնոջ ոչ հարկաւոր է յընդունականոջ զմինն 'ի նոցանէ գոլ, այլ միայն որոց բնութեամբ մինն գոլ, և սոցա բացորոշաբար մինն, ոչ որումն ումեք և դէպ իցէ: Իսկ 'ի վերայ պակասութեան և ունակութեան և ոչ մի յասիցելոցս ճշմարիտ է. քանզի ոչ միշտ ընդունականութեան հարկաւոր է զմինն 'ի նոցանէ գոլ. քանզի չև ևս բնաւորեալն երեսս ունել, և ոչ կոյր, և ոչ երես ունել ասի: Իսկ ապա ոչ են սոքա յայսպիսեացս ներհակաց, որոց ոչինչ է ընդ մէջ. այլ և ոչ որոց ընդ մէջ է, և հարկաւոր է երբէք ամենայնիւ ընդունականութեան զմինն 'ի նոցանէ գոլ բացորոշաբար. քանզի յորժամ ահա բնաւորեալ իցէ երեսս ունել և յայնժամ կոյր, և կամ երեսս ունել ասասցի, սա ոչ բացորոշաբար մինն, այլ՝ ումն և դէպ իցէ. քանզի ոչ հարկաւոր է կամ կոյր, կամ երեսս ունել ասիլ, այլ որումն և դէպ եղև[1]: Իսկ ապա յայտ է, զի ոչ ըստ միում յեղանակաց որպէս ներհականք հակակայեն ըստ պակասութիւնք, և ունակութիւնքն հակակայքն:

1 Յաւելուած հայ բնագրին:

* Իսկ 'ի վերայ ներհակացն՝ որց է ինչ ընդ մէջ՝ ոչ երբէք հարկաւոր է ըն ամենայնի զմինն գոլ, այլ և զմիջոցսն: Իսկ ունակութեան և պակասութեան ընդունականին ոչ հարկ է զայլս ամենս ընդունել, զի ոչ է միջոց, այլ զմինն. և ոչ սոցա բացորոշաբար զմինն ||:

## ՊՐԱԿՔ Է

Այլ եւ՝ զի 'ի վերայ ներհակացն յորժամ է ընդունակմանն, կարէ 'ի միմեանս փոփոխումն լինել, եթէ ոչ ուրեմն բնութեամբ մինն գուցէ. հիւանդն՝ հրոյ ջերմն գոլ. և քանզի ողջն կարէ հիւանդանալ, և սպիտակն սեաւ լինել, և ջերմն ցուրտ. և յառաքինոյն վատթար, և 'ի վատթարէն առաքինի կարէ լինել: Քանզի վատթարն 'ի լաւ դեգերմանս ածեալ և 'ի բանս, գտանեալ սակաւ մի աճումն առցէ 'ի լաւագոյնն գոլ. և եթէ միանգամ սակաւ աճումն առցէ, երևելի է, զի կամ կատարելապէս փոխեսցի, և կամ կարի շատ աճումն առցէ. քանզի միշտ դիւրաշարժագոյն յառաքինութիւն լինի: Այլ թէպէտ զինչ աճումն և իցէ առեալ 'ի սկզբանէ, մինչ զի առաւելագոյն դէպ է աճումն առնուլ, և այս միշտ լինելով կատարելապէս 'ի ներհակութեան ունակութիւն հաստատեալ դարձցի, եթէ ոչ ժամանակաւ արգելցի:

Իսկ 'ի վերայ ունակութեան և պակասութեան՝ անհնար է 'ի միմեանս փոփոխումն լինել. քանզի յունակութենէ առ պակասութիւն լինի փոփոխումն, իսկ 'ի պակասութենէ յունակութիւն անկար է փոփոխումն լինել. քանզի ոչ կոյր եղեալ ոք դարձեալ վերատեսեաց, և ոչ կնտացեալ ոք վարսաւոր եղև, և ոչ ժոռոմ ատամունս բուսոյց երբէք:

## ՊՐԱԿՔ Ը

Իսկ որք միանգամ իբր ստորասութեան և բացասութեան հակակայքն՝ երևելի է, զի ոչ ըստ միում յեղանակաց ասիցելոցս հակակայքն. քանզի 'ի վերայ միայնոց սոցա հարկաւոր է միշտ զոմն ճշմարիտ, և զոմանս սուտ սայց գոլ. քանզի ոչ 'ի վերայ ներհակացն հարկաւոր է գոլ զմինն ճշմարիտ, և զմինն

սուտ. և ոչ 'ի վերայ առընչիցն, և ոչ 'ի վերայ ունակութեան և պակասութեան. որզան՝ ողջութիւն և հիւանդութիւն ներհականք, և ոչ մի 'ի սոցանէ՝ ոչ ճշմարիտ և ոչ սուտ է. սոյնպէս և կրկնապատիկն, և կէսն. քանզի սոքա իբր առընչք հակակայքն. և ոչ է 'ի սոցանէ և ոչ մի, ոչ ճշմարիտ և ոչ սուտ: Նաև ոչ ըստ պակասութեանցն և ունակութեանցն. որբար՝ երեւք և կուրութիւն, և բնաւին յայնց, որք և ոչ ըստ միում շարամանութեան ասին՝ ոչինչ ոչ ճշմարիտ և ոչ սուտ ասին, և ամենայն ասացեալքս առանց շարամանութեան ասին:

Բայց սակայն առաւել թուեսցի այսպիսիս դիպել և 'ի վերայ ըստ շարամանութեան ներհակացն ասիցելոց. քանզի ողջն լինել Սոկրատայ, հիւանդանալունն Սոկրատայ ներհակն է: Այլ և ոչ 'ի վերայ այսց հարկաւոր է միշտ զմինն ճշմարիտ և զմինն սուտ գոլ. քանզի ելոյ Սոկրատայ՝ եղիցի մին ճշմարիտ և մին սուտ, իսկ ոչ ելոյ՝ երկոքեան սուտք. քանզի ոչ հիւանդանալն Սոկրատայ և ոչ ողջն է ճշմարիտ. զի նորա ոչ ելոյ՝ բոլորովին Սոկրատայն սուտ է:

Իսկ 'ի վերայ ունակութեան և պակասութեան, ելոյ և ոչ ելոյ, ոչ է մինն ճշմարիտ և մինն սուտ: Քանզի երեւս ունել Սոկրատայ, կոյրն գոլ Սոկրատայ, հակակայքն. որպէս ունակութիւն և պակասութիւն. և ելոյ միումն ոչ է հարկաւոր ճշմարիտ գոլ, կամ սուտ. քանզի յորժամ չև ևս բնաւորեցաւ ունել, երկոքեան սուտք: Նաև ոչ ելոյ միանգամայն պարզաբար Սոկրատայ, և այսպէս սուտք երկոքին, և երեսան զնա ունել, և կոյրն զնա գոլ:

Իսկ 'ի վերայ ստորասութեան և բացասութեան յար եթէ իցէ, և եթէ ոչ իցէ, մինն եղիցի ճշմարիտ և մինն սուտ: Քանզի հիւանդանալն Սոկրատայ, կամ ոչ հիւանդանալն, ելոյ սորա՝ երևելի է, զի մին սայց ճշմարիտ է, կամ սուտ, և ոչ ելոյ՝ նմանապէս. քանզի հիւանդանալն, ոչ ելոյ՝ սուտ է, իսկ ոչն հիւանդանալն՝ ճշմարիտ: Իսկ ապա 'ի վերայ սայց ուրոյն յատուկ եղիցի միշտ մին սոցա ճշմարիտ կամ սուտ գոլ, որք միանգամ իբր ստորասութիւն և բացասութիւն հակակայքն:

## ՊՐԱԿՔ Թ

Եւ ներհական է 'ի հարկէ բարւոյ չարն, և տոքա յայտնին ըստ իւրաքանչիւր իւրեանց մակածութեան. որկէն՝ ողջութեան հիւանդութիւն, և արդարութեան անիրաւութիւն, և արութեան՝ երկչոտութիւն. նմանապէս և 'ի վերայ այլոցն: Իսկ չարի՝ է զի բարին ներհական է, և է զի չարն. քանզի պակասոյ չաբուամ ելում առաւելն ներհական է չար: Եւ նմանապէս և ընդմիջութիւն ներհականք երկաքանչիւրուածն, իբրու զի բարի է. և քանզի 'ի վերայ սակաւուց զայսպիսիս գիտասցէ ոք, իսկ 'ի վերայ յոլովիցն, միշտ չարուածն բարւոյն ներհական է:

Եւ ևս ներհականացն՝ ոչ հարկաւոր է, եթէ միոյն լիցէ այլուածն գոլ. քանզի ողջ ելոյ ամենեցուն՝ ողջութիւն եղիցի. բայց հիւանդութիւն ոչ: Սապէս և սպիտակացելոց ամենեցուն՝ սպիտակութիւն եղիցի. իսկ սևութիւն ոչ: Եւ ևս՝ զի եթէ Սոկրատայ ողջն լինել՝ Սոկրատայ հիւանդանալոյն ներհական է, և ոչ ընդունի համանգամայն 'ի նմին գոլ երկոքեանն, ոչ ընկալցի միոյ ներհականացն եղելոյ՝ և այլն գոլ. քանզի ելոյ Սոկրատայ ողջ, ոչ եղիցի հիւանդանալ Սոկրատայ. և յայտ է՝ զի առ նոյն տեսակի կամ սեռի ծնաւորեցան լինել ներհականքն. քանզի հիւանդութիւն և ողջութիւն ընդ մարմնոյ կենդանւոյ. իսկ սպիտակութիւն և սևութիւն՝ պարզաբար ընդ մարմնոյ. իսկ արդարութիւն և անիրաւութիւն՝ ոգւոյ մարդոյ: Եւ հարկաւոր է ամենայն ներհականացն՝ կամ 'ի նմին սեռի գոլ, և կամ 'ի ներհական սեռս, և կամ ինքեանք սեռք գոլ. քանզի սպիտակ և սեաւ 'ի նմին սեռի. քանզի գոյն է սոցա սեռն. իսկ արդարութիւն և անիրաւութիւն՝ 'ի ներհական սեռսն. քանզի ուրուածն առաքինութիւն, և ուրուածն չարութիւն է սեռ: Իսկ բարի և չար՝ ոչ են սեռի միում, այլ ինքեանք դիպեցան լինել ումանց սեռք:

# ՅԱՂԱԳՍ

# ՆԱԽԿՆԻ

ՆԱԽԿԻՆ այլ այլոյ ասի քառակապար․ քանզի նախ առաջին և իսկագոյն և տիրագոյնն ըստ ժամանակի, ըստ որում երիցագոյն այլ այլոյ և հնագոյն և վաղագոյն ասի․ քանզի վասն զժամանակն աւելի գոլ՝ երիցագոյն և հնագոյն և վաղագոյն ասի։ Իսկ երկրորդ, որ ոչն հակադարձի ըստ գոլոյն հետևումն․ որզան՝ մի քան զերկուսն նախկին է․ քանզի երկուց ելոց՝ հետևի անդէն միոյն գոլ, իսկ միոյ ելոյ՝ ոչ է հարկաւոր երկու գոլ․ ապա ուրեմն ոչ հակադարձի 'ի միոյէն հետևութիւն գոլոյ զայլն․ բայց նախկին թուի այսպիսիս գոլ, յորմէ ոչն հակադարձի գոլոյն հետևութի։ Իսկ երրորդ՝ որ ըստ դասի իմն նախկին ասի, որպէս 'ի վերայ մակացութեցն և այլոցն․ քանզի 'ապացուցական մակացութե գոյ նախկին և վերջին դասիւ․ քանզի գիծք նախկինք քան զտրամագիծսն են դասիւ․ զի սկզբունքն նախկինք են քան զտեսուածսն դասիւ։ Նոյն 'ի քերականութե տառքն նախկինք են քան զփաղառութիւնս․ և 'ի վերայ բանից նմանապէս․ քանզի նախերգութի քան զպատմութի նախկին է դասիւ։ Նոյն ևս՝ առ յառաջասացելովքդ լաւագոյնն և պատուականագոյնն՝ նախկին գոլ․ այլ ոչ բնութե այս թուի․ բայց սովորեցին և բազումք զպատուականագոյնսն և զսիրեցեալս իւրեանց՝ նախկինս իւրեանց ասեն գոլ․ բայց գրեթէ օտարագոյն յեղանակաց՝ այսոքիկ։ Որդ որք ասինն նախկինին յեղանակք՝ այսքանք են։

Բայց թուեսցի և քան զասացեալսն այլ միւս ևս գոլ նախկինին յեղանակ․ քանզի և է յայնց որք հակադարձին ըստ գոլոյն հետևութեան, զպատճառն՝ որպէս զիարդ և իցէ միւսոյն գոլ նախկին՝ վայելչաբար ասասցի․ և զի են այսպիսիք իմն՝ յայտ է, քան-

զի գոլն մարդ՝ հակադարձէ ըստ գոլոյն հետեւութեան առ ճշմարիտն յաղագս իւր բան. քանզի եթէ մարդ է, ճշմարիտ բանն է՝ որով ասեմք զի է մարդ, և հակադարձէ. և էր ճշմարիտ բանն ոչ միով իւիք պատճառ գոլոյ իրին, այլ իրն երևի իմն իբրև պատճառ գոլոյ ճշմարիտ զբանին. քանզի վասն գոլոյ զիրն՝ կամ ոչ, ճշմարիտ՝ բանն կամ սուտ ասի: Իսկ ապա ըստ հինգ յեղանակս նախկինն այլ այլոյ ասի:

## ՅԱՂԱԳՍ

## ՀԱՄԱՆԳԱՄԱՅՆՑ

ՀԱՄԱՆԳԱՄԱՅՆՔ են պարզաբար և իսկադոյնք և տիրապէս՝ որոց լինելութիւնն 'ի նմին ժամանակի. քանզի ոչ մին նախկին և ոչ վերջին է սոցա, այլ համանգամայնք ըստ ժամանակի սոքա ասին: Իսկ բնութեամբ համանգամայնք, որք միանգամ հակադարձին ըստ գոլոյն հետեւութեան. բայց ոչ միով իւիք պատճառ այլ այլոյ գոլոյ է. որպէս՝ 'ի վերայ կրկնապատկին և կիսոյն. քանզի հակադարձեն սոքա, վասն զի կրկնապատկի եղոյ՝ է կէս, և կիսոյ եղոյ՝ է կրկնապատիկն. բայց ոչ միում ուրուք պատճառ գոլոյ է. և 'ի նմանէ սեռէ հակատարաբարձեալքն միմեանց՝ համանգամայնք բնութեամբ ասին: Իսկ հակատարաբարձիլ ասին միմեանց՝ ըստ նմինքն տարբերութեան. որպէս՝ թռչունն հետեւակին և ջրայնոյն. քանզի սոքա միմեանց հակատարաբարձին 'ի նմին սեռէ եղով. քանզի կենդանին տարաբարձի յայսոսիկ, 'ի թռչունն և 'ի հետեւակն և 'ի ջրայինն և 'ի ցամաքայինն, և ոչ ինչ սոցա նախկին կամ վերջին է, այլ համանգամայնք բնութեամբ այսոքիկ թուին գոլ:

Նաեւ տարաբարձին և սոքա իւրաքանչիւր 'ի տեսակս դարձեալ, հետեւակ կենդանին, և թռչունն, և ջըրայինն ։ Նաեւ եղիցի և այն համանգամայն բնութք, որ միանգամ 'ի նմին սեռէ ըստ նմին տարաբարձութեն է. իսկ սեռքն միշտ քան զտեսակսն նախկինք. քանզի ոչ հակադարձ ըստ գոլոյն հետեւութե. որպէս՝ ջրայնոյ եղոյ՝ է կենդանին, իսկ կենդանւոյ եղոյ՝ ոչ հարկաւոր է ջրային գոլ։

Արդ համանգամայնքն բնութք ասին, որք միանգամ հակադարձին ըստ գոլոյն հետեւութե, բայց ոչ միով իւիք պատճառք գոլոյ այլ այլում է, և 'ի նմանէքն սեռէ՝ հակատարաբարձեալքն միմեանց ։ Տի միանգամայն պարզաբար համանգամայնք, որոց լինելութիւն 'ի նմին ժամանակի ։

## ՅԱՂԱԳՍ

## ՇԱՐԺՈՒԹԵԱՆ

ՇԱՐԺՈՒԹԵԱՆ տեսակք են վեց. լինելութիւն, ապականութի, աճելութի, նուազութի, ըստ տեղւոյ փոփոխութի, այլայլութիւն ։ Արդ հինգ այնք շարժութիւնք երեւելի են, զի այլք 'ի միմեանց են ։ Քանզի ոչ է լինելութի ապականութի, և ոչ աճելութի նուազութի, և ոչ ըստ տեղւոյ փոփոխութի. սապէս և այլքն ։ Իսկ 'ի վերայ այլայլութեան ունի ինչ անհնարութի, մի գուցէ հարկաւոր էր այլայլել ըստ ոմանց՝ այլոց շարժութեցն այլայլութիւն ։ Իսկ այս ոչ ճշմարիտ. քանզի գրեթէ ըստ ամենայն ախտից, և կամ ըստ աւելեաց այլայլիլ պատահեաց մեզ. քանզի և ոչ միոյ այլոց շարժութեցն հաղորդակաց ելոց, քանզի ոչ աճիլ հարկաւոր է, որ ըստ ախտին շարժի, և ոչ նուազիլ. սապէս և 'ի վերայ այլոցն ։

Ապա ուրեմն այլ եղիցի առ այլովք շարժութիւնքն

այլայլութիւն. քանզի եթէ նոյն էր, պարտ էր այլայլելոյն անդրէն աճել և նուազանալ, և կամ այլ ինչ այլոցն հետևել շարժութեանց, այլ ոչ է հարկ: Նոյնպէս և որ աճէրն, և կամ այլ ինչ շարժութիւն շարժիւր՝ այլայլիլ. այլ են ինչ որ աճեն, որք ոչ այլայլին. որկէն՝ քառանկիւնին՝ անկեան փարագրեցելոյ՝ աճեսցէ, բայց այլայլագոյն և ոչ ինչ եղև. սոյնպէս և ՚ի վերայ այլոց այսպիսեացն: Ապա ուրեմն այլք եղիցին շարժութիւնքն ՚ի միմեանց:

## ԳՐԱԿՔ Բ

Այս է պարզաբար շարժութեան դադարութիւն ներհական. իսկ ըստ իւրաքանչիւրոցն լինելութեան ապականութիւն, և աճելութեան նուազութիւն: Իսկ ըստ տեղւոյն փոփոխութեան, ըստ տեղւոյն դադարութիւն մանաւանդ երևեցաւ հակակայիլ. և թերևս արդեօք ՚ի ներհական տեղին փոփոխութիւն. հիբար՝ ներքընտուածն վերինն, իսկ վերստուածն ներքինն: Իսկ այլայլութեան բացատրեցելոյ՝ շարժութեանցն ոչ դիւրին է բացատրել զինչ արդեօք է ներհական. այլ երևեցաւ ոչինչ գոլ ինքն իւր ներհական:

Բայց եթէ ոք և ՚ի վերայ այսորիկ զըստ որակին դադարումն հակադրիցէ այնմ, ՚ի ներհական որակին փոփոխումն, որպէս ՚ի վերայ ըստ տեղւոյն փոփոխութեան՝ ըստ տեղւոյն դադարումն, կամ ՚ի ներհական տեղին փոփոխումն. քանզի է այլայլումն՝ փոփոխումն ըստ որակի: Ապա ուրեմն հակակայեսցէ ըստ որակին դադարութեան ներհականն որակին փոփոխութիւն. որպէս՝ սպիտակն լինել՝ սեաւն լինելում, քանզի այլայլի ՚ի ներհական որակին փոփոխութեան եղելոյ:

# ՅԱՂԱԳՍ

# ՈՒՆԵԼՈՅ

ՈՒՆԵԼԴ ըստ յոլով յեղանակս ասի , կամ իբր ունակութիւն և տրամադրութիւն , կամ ըստ այլոյ իմն որակութեան . քանզի ասեմք մակացութիւն իմն ունել , և առաքինութիւն . կամ որպէս քանակ . որպէս՝ որ դիպի ումեք ունել մեծութիւն . քանզի ասի եռականգուն մեծութիւն ունել , կամ քառականգուն . կամ որպէս որ շուրջ զմարմնովք են . որպէս՝ հանդերձ , կամ պատմուճան . կամ որպէս 'ի մասնկան . որգան՝ 'ի ձեռին մատանի . կամ որպէս մասն . որգան՝ զձեռն կամ զոտն . կամ որպէս յամանի . որկէն՝ կեղթն զցորեանն և սափորն զգինին . քանզի զգինին ունի սափորն , և կեղթն զցորեանն :

Արդ այսոքիկ ամենեքեան ունել ասին , որպէս Նամանոջ , կամ որպէս ստացուած . քանզի ունել տուն և վայր , ասեմք , և կին ունել , և կնոջ այր : Բայց երեւեցաւ օտարագոյն ունելոյս այժմու ճառեցեալ յեղանակս գոլ . քանզի ոչ այլ ինչ ունելով կին նշանակեմք , բայց զի շարաբնակեալ է : Բայց թերեւս և այլք ոմանք երեւեսցին ունելոյ յեղանակ , բայց սովորեալքս ասիլ գրեթէ ամենեքեան թուեալք և հաշուեալք եղեն այսոքիկ :

ԿԱՏԱՐԵՑԱՒ ՏԱՍՆ ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՍՆ
ԱՍԱՑԵԱԼ ՅԵՌԱՄԵԾԷՆ ՅԱՐԻՍՏՈՏԵԼԷ
ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ՅՈՒՆԱՐԷՆ ՁԱՅՆԻ
ԿԱՏԻՂՕՐԻԱՍ

# ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

## ԹԱՐԳՄԱՆԵԱԼ ԵՒ ՄԵԿՆԵԱԼ

## Ի ԴԱՒԹԷ[1]

### ԳՐԱԿՔ Է

### ԲԱՆ

Իսկ որք միանգամ 'ի դիւրին տարալուծելոյն և յարագ անդրէն հաստատելոց լինին՝ ախտք ասին. զի ոչ ասին որակք ոմանք ըստ սոսա. քանզի և ոչ որ շիկնէն վ՟ն ամաչելոյն շիկնոտ ասի, և ոչ դեղնացեալն վասն երկնչելոյն դեղնոտ. այլ յաւէտ առ կրել ինչ. ապա ուրեմն ախտք այսպիսիքս ասին, այլ ոչ որակութիւնք: Նմանապէս սոցա և ըստ հոգւոյն կրականք՝ որակութիւնք և կիրք ասին. քանզի որք միանգամ 'ի լինելութ՟ն անդէն յախտից ոմանց եղեալ լինին որակութ՟ն, որակութիւնք ասին. որպէս՝ մոլեկան արտաքացութ՟ն, ափշութ՟ն, և բարկութ՟ն, և այսպիսիքս. քանզի որակք ըստ սոսա ասին և բարկացողք և մոլեկանք: Նմանապէս և որք միանգամ արտաքացութիւնք ափշութ՟ն, ոչ բնականք, այլ յոմանց յայ-

1 Զկիսամասնեայ մնացուած օրինակէ, որ առձեռն գտաւ, մեկնաւն Ստորոգութեանց Արիստո- յարեալք աստանօր կարօղք ան- տեղի 'ի միոյ եւեթ թերակատար ձեռի օրինակաց:

լոց պատահից եղեալ են, և դժուարաթափք, և կամ բոլորովին անշարժք, որակութիւնք և այնոքիկ են. քանզի որակք ոմանք ըստ սոսա ասին ։ Իսկ որք յարագ անդրէն դարձեալ հաստատելոցն լինին, ախտք ասին. հիզանն՝ եթէ տրտմեալ բարկացողագոյն ոք է, քանզի ոչ ևս ասի բարկացող, որ յայսպիսում ախտէ բարկացողագոյնն է, այլ յաւէտ վասն կրելն ինչ. ապա ուրեմն կիրք ասին այսպիսիքս, այլ ոչ որակութիւնք ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԱՍԱՑԵԱԼ յաղագս կրականաց որակութեանց, եթէ ո՛րք վասն 'ի զգայարանացն կիրս առնել լիցին կրականք որակութիւնք, և կամ ո՛րք վասն զինքեանս յախտիւն եղանիլ, յետ այսորիկ փոխի առ վարդապետութիւն կրիցն, և կամի ասել, եթէ քանզի որակք ոմանք 'ի սոցանէ յարանուանաբար ոչ ասին, յաղագս այսորիկ և ոչ կիրքս որակութիւնք. ոչ իբր սահմանս ինձ թուի որակութեան գոլ զյարանուանաբար 'ի սմանէ ասելն, այլ իբրև հետևութիւն իմն ։ Նաև այս ոչ ամենայն որակութեան. քանզի որ միանգամ դիւրաշարժք են, և բաղկանալն 'ի դուզնաքեայ պատճառաց, ոչ ոք յարանուանաբար 'ի սոցանէ ասի ։

Արդ վասն զի որակութիւնք են կիրքս ...[1] և ոչ ընդ միում յայլոցն ստորոգութեանցն, ոչ ընդ գոյացութեան և ոչ ընդ քանակի և 'նայլոյն 'նամենեսեան զկիրս, բայց միայն 'նորակի և 'նորակութեան ։ Իսկ իբր ասիցէ եթէ ոչ ասին որակութիւնք. վասն զի ոչ յարանուանաբար ոք 'ի սոցանէ ասի. մի գուցէ ոչ հարկաւոր է յամենայնից որակութեանց յարանուանաբար ասիլ. քանզի որ միանգամ յարանուանաբար ասին և են որակք՝ յորոց ասին որակութիւնք, այսպիսիքն են. այլ ոչ որ միանգամ որակութիւնք են՝ հարկաւոր է յարանուանաբար 'ի սոցանէ ասիլ ։ Քանզի դիւրայեղքն յախտիցն և դուզնաժամանակեան

1 Տողք չորք եղծեալ են յօրինակին և անընթեռնլի ։

քըն ոչ բաւականապէս ընձեռեն ումեք զատաստուն· տակս այսորիկ և ոչ որակք 'ի սոցանէ ասին : Որդ-զասացեալն եթէ որակութիք ոչ ասին կիրքն՝ այսպէս է լսել, եթէ ոչ ասին կիրքն կրականք որակութիւնք· վասն զի որակք ոմանք 'ի սոցանէ ոչ ասին : Իսկ վասն զի են որակութիք նոյն ինքն կիրքն՝ բաւական են յիմաստասիրէս յառաջագոյն ասացեալքն, և որչափ մեզ 'ի տեղւոջս ըստ կարի ցուցեալ :

Սորին տեսութ կամի ասել գոլ և որ Նամնձին պատահեցին գոլ կիրք ինչ· որպէս մոլութի կամ բարկութի կամ երկիւղ, և այլք այսպիսիք ինչ : Նա և որպէս 'ի վերայ մարմնոյ եռակի տրամատեաց ասելով զոմանս 'ի ծննդենէ, իսկ զոմանս յետոյ յախտից եղանիլ, և զերկոսեանս դժուարաշարժս և յոգնամանակեանս, իսկ զկիրսն յետոյ և դիւրայեղ, սոյնպէս և Նամնձին : Քանզի ոմանք 'ի ծննդենէ մոլեկանք և բարկացողք, իսկ ոմանք յետոյ յախտից ոմանց եղեալ՝ երկար ամանակաւ պահեն զվատախառնութեցն բնոյ· և ասին այսուիկ բարկացողք և մոլեկանք յարանունաբար 'ի բարկութէն և 'ի մոլութէն· իսկ ոմանք դիւրաշարժելի զբարկութն ունելով իբր այն թէ 'ի տրտմութէ լեալ բարկութի, այսպիսին ոչ ասի բարկացող· քանզի դիւրայեղ միւսանգամ առ հեզութի լինի· սոյնպէս և այլքն ամենեքեան : Քանզի բարեխառնութե և վատախառնութե մարմնոյն ըստ բնութ և անձին հետեւանան զօրութիք, որպէս ոմանք կարծեն : Բայց իմաստասիրութիւնն բաւական է և բնութ ընդդէմ մարտնչել, որպէս զի 'ի վատթար ախորժակացն յառաքինութի փոխել :

# ՊՐԱԿՔ Ը

## ԲԱՆ

ԵՒ քառորդ սեռ որակութեան՝ ձև, և որ առ իւրաքանչիւր ումեք է՝ կերպ. և՛ ևս առ այսոքիւք, ուղղութիւն և ծռութիւն, և որ ինչ սոցին նման է։ Քանզի ըստ իւրաքանչիւր սոցա որակ ինչ ասի. քանզի վասն եռանկիւնին կամ քառանկիւնին գոլ՝ որակ իմն ասի. և վասն ուղղոյն և ծռոյն գոլ, և ըստ կերպին իւրաքանչիւր, որակ իմն ասի։ Իսկ անգայտն և հոծն, և խոշորն և ողորկն՝ թուեսցի որակ նշանակել. բայց երևեցաւ օտար այսպիսիքս գոլ առ 'ի յորակն բաժանմանէ. քանզի դրութիւն իմն առաւել երևին 'ի մասնկանցն իւրաքանչիւր ազդել։ Քանզի հոծն՝ վասն մասնկանցն շարամօտն գոլ առ միմեանս, և անգայտն՝ վասն տարակացելոյն 'ի միմեանց, և ողորկն՝ վասն դէպուղղոյն մասնկանցն կալ, և խոշորն՝ վասն ումեմն գերազանցն լինելոյն, և ումեմն որ պակաս և զնիստ լինելն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ սովորութեամբ հետևեալ իմաստասէրս՝ քառորդ տեսակի որակութեանս առնէ տրամատութիւն. և ասէ զոմն ձև և զոմն կերպ գոլ. այլ սակայն սովորեցաք զանազանել՝ ասելով զձևն 'ի վերայ անշնչոցն, իսկ զկերպն 'ի վերայ կենդանեաց։ Եւ սեռ ասաց 'ի տեղւոջս որպէս և յառաջագոյն, իբրու եթէ տեսակ, ասէ և զուղղութիւն և զծռութիւն որակութիւն գոլ. քանզի յարանուանաբար ոմանք 'ի սոցանէ ասին. քանզի գտցես 'ի վերայ ձևոյն և կերպիցն յիւրաքանչիւրոց այսպիսեաց որակութեանց ասացեալ։ Քանզի որպէս եռանկիւնին ուղղագիծ ասի՝ վասն զսահմանն սորա ուղիղ գոլ, թէ ձև 'ի միջէ և 'ի յոլովից սահ-

մանանց պարունակեալ է որ 'ի գծացն ։ Իսկ հարկաւոր է զգիծս կամ ուղիղս դնել և կամ թիւրս, որպէս զի 'ի խառնուածոց նոցա եղանիլ զկերպս կենդանեաց։ Նու ևս՝ զի թէ ասի գիծն ուղիղ և կամ ծուռ, յայտ է՝ թէ յուղղութէն կամ 'ի ծռութէն յարանունաբար ասացան ․ ոչ ըստ որում գիծն է, քանզի ըստ այսմիկ քանակին ասացան, այլ ըստ որում զանազանուէ գծացն առ միմեանս, ըստ այսմիկ որակուէ եղեցին ընդունակ ։ Բայց թերևս և ոչ յազագս այսպիսեաց ընդունականաց զուղղութի և զծռութի ասէ, այլ յաղագս մարմնոց, առ որ ձևն և կերպն յարմարին․ քանզի իւրաքանչիւրոք 'ի գծացն ոչ ձև և ոչ կերպ է ։ Իսկ արարչականք լինին ձևոցն և կերպիցն՝ յորժամ բաղադրեսցին կամ առ նոյնս և կամ առ տարբերեալսն տեսակս ։

Յիշեաց և յաղագս հոծուէ և անգայտութէ, ողորկուէ և խոշորութէ, եթէ ո՞ր արդեօք իւրաքանչիւրոք 'ի ներհակացն իցէ․ քանզի 'ի հարկէ որոյ յայտնեսցի ումն 'ի ներհակացն, նորին եղիցի և միւսն ևս․ քանզի եթէ անգայտն է որակին, և հոծն սորին․ սոյնպէս և 'ի վերայ այլոցն ամենեցուն ։ Նու ասէ զայսպիսիս՝ դրուէ առաւել քան եթէ որակութէ դնել․ և ցուցանէ հաւաստապէս ինքն, եթէ որով պատճառաւ յարմարիցի՝ դրութիւն առաւել ասիլ քան թէ որակուէ ։ Բայց ոչ ինչ արգելու և կալոյն դնել զսոսա․ քանզի և կան 'ի դրուէն, որպէս և յառաջագոյն ասացաւ ։

## ՊՐԱԿՔ Թ

### ԲԱՆ

ԲԱՅՑ թերևս և այլ ինչ երևեսցի յեղանակ որակութէ, այլ որք մանաւանդ ասին, գրեթէ սոքա են․ արդ որակութիք են նախասացեալքս, և որակք ըստ սոսա յարանունաբար ասացեալքն, և կամ որպէս զիարդ և իցէ 'ի սոցանէ ։

Նոյն 'ի վերայ յոլովից և գրեթէ 'ի վերայ ամե-նեցուն է յարանունաբար ասիլն. որպէսն' 'ի սպիտա-կութենէն սպիտակն, և 'ի քերականութենէն քերականն, և յարդարութենէն արդարն. սոյնպէս և 'ի վերայ այ-լոցն: Իսկ 'ի վերայ ոմանց' վասն ոչն կալոյ որակու-թեանցն անուանք' ոչ ընդունելին յարանունաբար 'ի նո-ցանէ ասիլ. որպէսն' ընթացականն և կամ մրցականն. որ ըստ զօրութեան մրցականութեան ասիցի, ոչ 'ի միոջէ որակութենէ յարանունաբար ասի. քանզի ոչ կան ա-նուանք զօրութեանցն' ըստ որս սոքա որակք ասին. որ-պէս և մակացութեանց, ըստ որս մրցականք, և կամ մարտիկք, որք ըստ տրամադրութեան ասին: Քանզի մրցական մակացութեան ասի և մարտական. քանզի որակք 'ի նոցանէ յարանունաբար տրամակայեալքն ասին. և թերևս և անուն կայցէ, և ոչ ասի յարա-նունաբար ըստ այսմիկ որակն ասացեալ. որզան' յա-ռաքինութենէն քաջն ասի. քանզի վասն առաքինու-թեան ունելոյ քաջ ասի. այլ ոչ յարանունաբար յառաքի-նութենէն առաքինի. բայց ոչ 'ի վերայ բազմաց այս-պիսիս է: Նոյն որակք այսուհետև ասին յարանու-նաբարքս յասիցելոց որակութեանցն ասիցեալք, և կամ որպէս զիարդ և իցէ այդպէս և 'ի նոցանէ:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԿԱՏԱՐԵԱԼ յամենայնի իմաստասէրս ոչ հեռա-նայ 'ի հեզութենէ' յանդիմանելով զամբարտաւանիցն խանչմունս. քանզի քաջապէս իւր ասացեալ զտե-սակս որակութեան, սակայն ըստ չափաւորութեան զիջանի ասելով «Թերևս և այլ երևեսցի տեսակ որակութեան»: Բայց սովորեալք առ մեզ ասին ճշմարտապէս ասա-ցեալքս, հեզութեան միանգամայն ուսուցանելով իշխա-նութեան տալ և քեզ խնդրող լինել առ 'ի գտանել, եթէ արդեօք միայն ասացեալքս են' եթէ այլ ինչ երևեա-ցի տեսակ որակութեան:

Վասն այսորիկ ասէ, որք յարանունաբար յասացե-լոցն որակութեանցն ասին' և որք ոչ. քանզի հարկ է զո-

րակն կամ յարանունաբար և կամ հոմանունաբար և կամ չէզոքապէս յասիցելոց յորակութեանցն ասիլ։

Եւ յարանունաբար ասին, որք ընդունին զսահման յարանունութեան, որ ասացաւ մեզ՝ եթէ սահման յարանունութեան է կցորդութիւն անուան և իրաց ունել ըստ փոխանձեւութեան յանկական փաղառութեանցն. և են այսպիսիքս. որպէս 'ի պիտակութենէն պիտակն յարանունաբար ասի. քանզի ունի կցորդութիւն անուան և իրաց, և զանազանի յանկական փաղառութեամբն. նոյնպէս և այլք որք միանգամ զայս ընդունին գաղափար։

Իսկ հոմանունաբար ասին ոչ եռանգիւնին և կամ քառանգիւնին. քանզի նոյն ինքն ձեւն և մարմինն ընդունական ձեւոյն նովիմբ անուամբ առասին. քանզի այսպիսեացս անունն միայն հասարակ, իսկ ոչ անուանն բան գոյացութեան այլ։ Եւ սակայն յեռանգիւնի ձեւոյն կամ 'ի քառանգիւնոյն՝ մարմինն ընդունական ձեւոյն եռանգիւնի կամ քառանգիւնի ասի։ Իսկ չէզոքն ոչ երկուց պատճառաց. մի՝ վասն ոչ գոլոյ որակութեան անունն 'ի բնութենէ. որպէս մրցականքն կամ ընթացականք ըստ բնական զօրութեան ասին. քանզի այսպիսիքս ոչ յումեքէ որակութենէ յարանունաբար ասին, այլ վասն բնական իմն զօրութիւն ունելոյ։ Եւ երկրորդ՝ զի թէպէտ և անունն կայցէ որակութեան և ունի կցորդութիւն և որակն իրացն, այլ սակայն անունն ոչ ունելով կցորդութիւն՝ ոչ յարանունաբար ասի 'ի յառաջակացելոյ որակութենէն. որպէս յառաքինութենէն քաջն ասիլ. քանզի ըստ ելլենական ձայնին՝ առաքինութիւն որակութիւն իմն է. իսկ 'ի սմանէ որակն ասացեալ ոչ առաքինի, այլ քաջ. մանաւանդ եթէ ճշմարտապէս խնդրեսցես՝ փոյթ ասեն զայսպիսին։ Արդ ըստ ելլենացոց ձայնի ոչ փութութիւն անուանն նախագաղափարն ասի, իբրու թէ 'ի փութութենէն զփոյթն ասիլ, և ոչ առաքինութեան կացելոյ որակութեան՝ յարանունաբար որակն 'ի սմանէ ասին, իբր եթէ ասասցես առաքինի. այլ այլ իմն ձայն որակութեան է, որ է առաքինութիւն. իսկ այլ ձայն որակլին, որ է փոյթն։ Եւ ասի փոյթն յառաքինութենէն վասն կցորդութեան ունելոյ իրացն, թէպէտ և անուանն ոչ հաղորդեաց։

## ՊՐԱԿՔ Ժ

### ԲԱՆ

Եւ գոյ և ներհակութիւն ևս ըստ որակին. հիզան՝ արդարութիւն անիրաւութեան ներհական է, և սպիտակութիւն սևութեան, և այլքն։ Սապէս և ըստ նոսայքն՝ որակք ասիցեալքն. որպէս՝ անիրաւն՝ արդարոյն, և սպիտակն՝ սևոյն. բայց ոչ ’ի վերայ ամենեցունց այսպիսի է։ Քանզի շիկկին կամ դեղնին, կամ այսպիսեացս գունոց՝ ոչինչ ներհական է, թէպէտ և որակք են։

Եւ ևս՝ եթէ ’ի ներհակաց միոյն է որակ, և այլքն եղիցին որակք. և այս յայտ է՝ ’ի ձեռն առնուլ և երևեցուցեալ զայլոյն ստորոգութիւնս. որզան՝ եթէ արդարութեան անիրաւութիւն, և սպիտակութեան սևութիւն ներհական է, և որակ է արդարութիւն, որակ ուրեմն ապա և անիրաւութիւն։ Քանզի ոչ և մի յայլոց ստորոգութեանցն յարմարեալ պատկանի ըստ անիրաւութեան. ոչ քանակն և ոչ առ ինչն և ոչ ուրն, և ոչ բոլորովին ինչ յայսպիսեացն և ոչ մի ինչ, այլ՝ որակ։ Սոյնպէս և ’ի վերայ այլոցն ըստ որակին ներհակացն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՍՊԱՌԵԱԼ զտրամատութիւս առ ’ի տեսակս որակութեան, յետ այսորիկ փոխի առ ’ի համարել՝ որք միանգամ հետևմանն որակութեան, որպէս և զնայլմն ամենեքեան արար. նոյնօրինակ և աստ համարելով զհետևեալսն՝ պսէ և զուրոյնս նորա. և այսպէս աւարտէ և զառաջակայ ստորոգութիւս։ Եւ ձեռնարկէ նախ ասել, եթէ է ներհականութիւն յորակի. և զի ոչ ուրոյն է սա նորա, յայտնէ ասելովն, եթէ ոչ ամենայն որակութիւն գոյ ներհական. քանզի դեղնութիւն և կարմրութիւն ոչ ինչ է ներհական. որպէս և ոչ որա-

կացն յարանուանաբար 'ի սոցանէ ասիցելոցն, իբր այն եթէ կարմրին կամ դեղնին. ապա ուրեմն յայտ է՝ թէ ոչ ուրոյն է այս որակութեան։

Յետ այսորիկ և այլ ինն տեսութիւն մեզ կամի ասել. քանզի ասէ՝ թէ Մին 'ի ներհակացն ընդ սեռիւ իմեմն անկեալ՝ նորին եղիցի և միւսն ևս։ Նոյն 'ի վերայ ոմանց ստոյգ են ասացեալքս. քանզի սպիտակութիւն և սևութիւն ներհականք ելով, գոյն սպիտակութիւն, գոյն ապա ուրեմն և սևութիւն. նոյնօրինակ և 'ի վերայ այլոցն բազմաց։ Բայց 'ի վերայ ոմանց ունի տարակուսանս. զի եթէ արդարութիւն և անիրաւութիւն ներհականք ելով, առաքինութիւն արդարութիւն, առաքինութիւն արդեօք եղիցի և անիրաւութիւն, որ է անտեղի. այլ և ոչ արդարութիւն չարութիւն. թէպէտ և անիրաւութիւն չարութիւն։ Նոյն ևս, քանզի և ինքն յառաջ մատչելով ասէ՝ թէ Ներհակացն ոմանք են՝ որ զինքեանս պատահեաց գոլ սեռս. արդ այսպիսիքս ընդ որո՞վ եղիցին սեռիւ՝ ինքեանք սեռք ելով։ Իսկ յաղագս տեսակի և պակասութեան՝ զի են ներհականք, և գոյացութիւն է տեսակ, արդ և պակասութիւնն գոյացութիւն, լուծելի է զսոցա խնդիրն. քանզի բնական տեսութիւն այսոքիկ են, այլ ոչ տրամաբանական։

Իսկ առաջադրելոց տարակուսանացս, հաւաստագոյնս այսպէս է, թէ սեռիցն ոմանք են մերձաւորագոյնք, իսկ ոմանք հեռաւորագոյնք։ Նոյն գիտելի է, զի ոչ 'ի վերայ յայտնեացն, և որք ոչն ունին աննելին խնդիր՝ պարտ է խնդրել կամ տարակուսանալ. քանզի ո՞վ ոչ գիտէ՝ եթէ անիրաւութիւն ընդ առաքինութեամբ ոչ դասի, որպէս և ոչ արդարութիւն ընդ չարութեամբ. քանզի և ոչ հակատրամատութիւն նոցա լինի յայսպիսեաց սեռիցս, բայց եթէ զգերագոյն ումն՝ ընդ որով երկոքեան դասին՝ առ այլ հակատրամատեսցես, դասցես զի երկոքեան նորին եղիցին սեռի։ Արդ եղիցի մեզ որպէս 'ի վերայ սոցա ցուցանել, և գերազանցեսցէ զառաքինութեամբ և զչարութեամբ ախորժակս, և տրամատեսցի այսպէս ասելով եթէ Ախորժականս է որ արդարութիւն և է որ անիրաւութիւն. կամ թէ մատաւոր զսեռն նոցա ասելով զառաքինութիւն և զչարութիւն ոչ վրիպեսցես յողջ խորհրդոյ։ Քանզի որպէս

առաքինութիւն ախորժակք են՝ և չարութիւն, այսպէս և արդարութիւն և անիրաւութիւն ընդ նովիմբ դասեալ են ընդ սեռիւ, որ է ընդ ախորժակօքն ։

Իսկ իմաստասէրս և ես զգուշապէս ոչ միայն զայսպիսի սեռս, այլ և զսեռականագոյնսն և զգերազանցեալ զամենեքումբք ասաց, որ են տասն ստորոգութիւնք ։ Եւ 'ի մակացութէ ընձեռեաց զխնդիրն առնել. քանզի թէ արդարութիւն որակութիւն է, իսկ անիրաւութիւն ոչ որակութիւն, խնդրեսցես՝ եթէ ո՞ր արդեօք յայլոց ստորոգութեանցն իցէ ։ Ապա եթէ յայտնեսցի ոչ գոյացութիւն և ոչ քանակի և ոչ այլոցն ամենեցուն. յայտ է թէ որակութեանս եղիցի և որակութիւն. քանզի որ ինչ միանգամ էակ, արտաքոյ քան զտասն ստորոգութիւնս գտանել անհնար է ։

## ՊՐԱԿՔ ԺԱ

### ԲԱՆ

Եւ ընդունին զյաւէտն և զնուազն որակք. քանզի սպիտակ յաւէտ և նուազ այլ այլոյ ասի, և արդարագոյն այլ այլոյ յաւէտ և նուազ. և ինքն մակատարամատութիւն առնու. քանզի իբրու սպիտակն է, ընդունի և սպիտակագոյն ևս եղանիլ ։ Բայց ոչ ամենայնք, այլ յոլովք. քանզի արդարութիւն՝ արդարութեան եթէ ասասցի յաւէտ և նուազ, տարակուսեալ վարանեսցի ոք նմանապէս և 'ի վերայ այլոց տրամադրութեանց ։ Քանզի ոմանք յերկուանան յաղագս այսպիսեացն. քանզի արդարութիւն արդարութեան ոչ կարի քաջ, ասեն, ասել յաւէտ և նուազ, և ոչ ողջութիւն՝ ողջութեան ։ Բայց սակայն նուազ ունել այլում քան զայլում ողջութիւն ասեն, և արդարութիւն նուազ այլում քան զայլում. սոյնպէս և զքերականութիւն և զայլս տրամադրութիւնս ։ Բայց սակայն ըստ սոսայն ասիցեալք որակքն անյերկուանալի ընդունին զյաւէտն և զնուազն. քանզի քերականագոյն այլ քան զայլ ասի, և ողջագոյն և արդարագոյն. և 'ի վերայ այլոցն սոյնպէս ։

Բայց եռանկիւնին և քառանկիւնին ոչ թուի զյաւէտն և զնուազն ընդունել, և ոչ այլոցն ձևոցն և ոչ մի ինչ։ Վասնզի որք միանգամ ընդունին զեռանկիւնեայն զբան և զբոլորակին, ամենեքեան նմանապէս եռանկիւնիք կամ բոլորակք են. իսկ այնք որք ոչ ընդունին, ոչ մի ինչ այլ քան զայլ յաւէտ ճառեսցի։ Վասնզի ոչինչ սուղ քառանկիւնին՝ քան զայլն երկարն բոլորակ է. քանզի և ոչ մի ոչ ընդունի զբոլորակին բան։ Բայց պարզաբար միանգամայն, եթէ ոչ ընկալցին երկոքեան զառաջիկային զբան, ոչ ասասցի այլ քան զայլ յաւէտ և նուազ. ապա ոչ ընդունին որակութիւնքն զյաւէտն և զնուազն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՎԱՍՆ զյաւէտն և զնուազն ընդունելոյ՝ զորակութիւնսն և զորակ ճառէ աստանօր 'ի հետևելոցն որակին. և ասացեալքն անհաւաստիք են՝ եթէ ընդունիցին, և եթէ ոչ ընդունիցին. քանզի 'ի վերայ տարակուսութեան ունի տարակուսանս, եթէ արդեօք և ոչ մի որակութիւն ընդունին ըստ առաջադրեցելում բանիս. քանզի որ միանգամ առաւելութիւն և նուազութիւն ընդունին, յումեմնէ յայլ ումեքէ զիսկութիւն ունին։ Այլ ըստ լայնութեան, որպէս և բժիշկք [1] կամին, այսպիսեացն լինի զանազանութիւն. և զի ոչ է ընդ համարաւ եթէ ըն փակեցելոցն։ Իսկ առ իմաստասէրս, վասն զի պարփակեալ է սահմանաւ իւրաքանչիւրոք յորակութեցն, և ոչ ըստ լայնութեան ասի. ոչ ուրեմն ընկալցի զյաւէտն և զնուազն ոք յորակութեց անտի։

Իսկ 'ի վերայ որակացն որք միանգամ յարանունաբար յորակութեցն ասին, այսպիսիքն ընդունին զյաւէտն և զնուազն, վասն զորս առաւելապէս ընդունել յախորժակացն, և կամ 'ի մարմնոյ պատահմանց, և ըստ ածուին ունելոյ առ 'ի նմայ, և կամ

1 Ի լուսանցսն բժշկական ։

զընդդէմն նորա՝ առաւել և նուազ ասի և ինքեան և այլոց. քանզի որպէս առ այլ՝ այնպէս և առ ինքն բաղդատել հնարաւոր է։ Իսկ որք համանունաբար ասացեալք են, ոմն և ինքն յիշեաց յաղագս եռանկիւնւոյ կամ քառանկիւնւոյ, այսպիսեացս և ոչ միում ումեք յարմարի զառաւելն և զնուազն ընդունել. քանզի ընդունականք բանի եռանկիւնեացն կամ քառանկիւնոյն, ամենեքեան հանգիտաբար եռանկիւնի կամ քառանկիւնի ասին։ Իսկ ոչ ընդունականքն ոչ ընդունելին առաւասուն կցորդուի, որպէս 'ի վերայ կարճ քառանկիւնոյն կամ այլ երկարէն ինքն ասաց, վասն զի և ոչ մի ոք 'ի նոցանէ ընդունի զբան բոլորակին. ըստ այսմիկ և ոչ ոմն քան զոմն բոլորակ ասի, քանզի և ոչ բոլորակ ամենեւին։

## ՊՐԱԿՔ ԺԲ

### ԲԱՆ

ՍՐԴ յասացելոցս ոչինչ է ուրոյն յատուկ որակութե. բայց նմանս և աննմանս ըստ որակութեանց միայն ասին. քանզի նման այլ քան զայլ է՝ և ոչ ըստ միում իրիք, այլ ըստ որում որակն է. իսկ ապա ուրեմն ուրոյն յատուկ լիցի որակութեան՝ նմանն ասիլ ըստ ինքեան։ Բայց ոչ է պարտ և արժան խռովիլ, մի՛ գուցէ ասասցէ ոք զմեզ յաղագս որակութեան արարելոյ զառաջադրութիւն՝ բազումս ինչ առընչիցն համարել և 'ի հաշիւ արկանել. վասն զի զունակութիւն և զտրամադրութիւն՝ առընչիցն գոլ. քանզի գրեթէ 'ի վերայ ամենեցուն այսպիսեացս սեռքն առընչիցն ասին, իսկ ըստ իւրաքանչիւրոցն ոչինչ։

Քանզի մակացութիւն իբրու զի սեռ է, ինքն որ ինչ էն՝ այլոց ասի, քանզի ուրուեմն մակացուի ասի. իսկ ըստ իւրաքանչիւրոցն ոչինչ ինքն՝ որ ինչ էն՝ այլոց ասի. որպէս՝ քերականութիւն ոչ ասի ուրուեմն քերականութիւն, և ոչ երաժշտականութիւն՝ ուրուեմն երաժշտականութիւն, այլ թերևս արդեօք ըստ սեռին սոքա առընչիցն ասին. որկէն՝ քերականութիւն ասի ու-

րումն մակացութեան, այլ ոչ ուրումն քերականութեան․ և երաժշտականութեան՝ ուրումն մակացութիւն ասի, այլ ոչ ուրումն երաժշտականութիւն․ ապա ուրեմն ըստ իւրաքանչիւրքն ոչ են առընչիցս։ Եւ ասեմք որակս ըստ այսոցիկ, քանզի զսոսա և ունիմք․ քանզի մակացուք ասիմք՝ վասն ունելն ինչ ըստ իւրաքանչիւրոցն հանճարոյ․ ապա ուրեմն սոքա և որակութիւնք եղիցին ըստ իւրաքանչիւրքս, ըստ որոց երբեմն և որակս ասիմք․ իսկ սոքա ոչ են առընչիցս։ Եւ ևս՝ թէ պատահեսցէ նոյն առինչ և որակ եալ, ոչինչ անտեղագոյն է յերկոսին սմա 'ի սեռսն՝ 'ի համար դասուանկանիլ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՊՏԵԱԼ զուրոյնն որակի և որակութեան, ընձեռէ զայս առ 'ի կատարումն ստորոգութեանս։ Իսկ այլ իմն առաջի դնէ հարցափորձութիւնս․ զոր եթէ ոք յետոյ պատահեալ ասացուածի իմաստասիրիս տարակուսանայցէ, ինքն շարժէ զխնդիրն նոցա․ քանզի թուի բազում ինչ համարեալ ըն յաղագս որակի և որակութեան, որք առընչին յարմարին․ քանզի ունակութիւն և տրամադրութիւն, որպէս և ինքն ասէ, մանաւանդ սեռքն՝ առընչին գոլ պատահեցին։ Քանզի իւրաքանչիւրոք յայսցանէ՝ ուրումն ասի, որպէս և մակացութիւն՝ ուրումն մակացուի ասի, և որ ինչ դարձեալ ըն տրամադրութիւնքն դասեալ են․ նոյնօրինակ սեռն ուրումն ասի։

Ոչ եթող զայսպիսի խնդիրս ոմանց յետոյ տարակուսանալ, այլ ինքն լուծանէ՝ և ասէ, թէ Այսպիսեացս ոմանք են սեռք, և ոմանք տեսակք․ իսկ թէպէտ և սեռքն պատահեաց առընչին գոլ, սակայն տեսակքն բաժանելով յառընչէն՝ որակութիւնք ասին։ Քանզի իւրաքանչիւրոք 'ի տեսակաց՝ կամ քերականութիւն կամ երաժշտականութիւն, կամ այլ ոք յայսպիսեացն, ոչ ոք 'ի սոցանէ ինքն ըստ ինքեան ուրումն ասի․ բայց եթէ ըստ առ 'ի սեռն վերաբերութեան․ քանզի զքերականութիւն եթէ ասասցես

ուրումն, ոչ քերականութեան՝ այլ մակացութեան՝ որ է ըստ սեռին։ Սոյնպէս և երաժշտականութիւն ոչ ասի ուրումն երաժշտականութեան, այլ ուրումն մակացութիւն ասի. Նմանապէս և այլքն ամենեքին ասին՝ որք միանգամ են տեսակք, ինքեանք ըստ որում տեսակքն՝ ոչ ասին ուրումն. իսկ առ 'ի սեռն վերաբերեցելոյ առասութեանն՝ ուրումն մակացութեան կամ տրամադրութեան ասացելոցն. ապա ուրեմն յայտ է՝ թէ տեսակքն սոցա ոչ են առընչիցն։ Իսկ զի որակութիւնք են, աստուստ յայտ է, քանզի իւրաքանչիւր որակ յարանուանաբար յումեմնէ ասացեալ են, և նշանակէ որակութեան յորմէ ասի։ Քանզի մակացուք ասիմք ոչ վայրապար՝ այլ կամ քերականք կամ երաժիշտք կամ ճարտասանք. իսկ այսպիսիքս 'ի ճարտասանութենէ՝ յայտ է թէ և 'ի քերականութենէ և կամ յերաժշտականութենէ։ Նոյն են այսոքիկ տեսակք մակացութեան՝ զոր ինքն ծածկապէս 'նիւրաքանչիւրոցն ասաց. յայտ է եթէ իւրաքանչիւրքն որակութիւնք են, այլ ոչ առինչք. վասն զի ունիմք զնոսա, և յարանուանաբար ասիմք 'ի սոցանէ։

Բայց ոչ ինչ դանդաղելի գոյ յարիլ առ երկոսին ստորոգութիւնս զնմանս յայսցանէ. քանզի ոչ միայն 'նորակութեան, այլ և 'նայլս գտանեմք ստորոգութիւնս ըստ այլում իմեմն՝ այլոյ ստորոգութեան եալ. իսկ ըստ այլում՝ առընչին, որպէս և տեղի՝ ըստ որում երկակի տրամակայեալ է՝ քանակին գոյ. իսկ ըստ որում եզր է՝ պարունակող մարմնոյ, ըստ այսմիկ առընչին է։ Իսկ եթէ ընդէր արդեօք առինչն բնաւորեցաւ այսպէս գոլ, ասացաւ մեզ և յառաջագոյն, եթէ վա ոչ ունելոյ ինքն ըստ ինքեան գոյացութիւն իմն, այլ առ այլ ստորոգութիւնս մերձենալով զերծանէ 'ի նոցանէ առ ինքն յարմարելով։ Վասն այսորիկ հարկեցան ոմանք անկանել յերկու ստորոգութիւնս. քանզի յայլոցն և ոչ մի ոք յառ այլ ասելոյ գոյանայ, բայց միայն առինչն. քանզի յառ ումն յունակութենէ բաղկացեալ՝ ըստ առ այլումն ասելով զիւրն ստանայ էութիւն։

# ՅԱՂԱԳՍ

# ԱՌՆԵԼՈՅ ԵՒ ԿՐԵԼՈՅ

## ԲԱՆ

ԸՆԴՈՒՆԻ առնելոյ և կրելոյ ներհակութիւն, և զյաւէտն և զնուազն. քանզի ջեռուցանելն ցրտացուցանելոյն ներհակ է, և ջեռնուլն ցրտանալոյն, և հեշտանալն տրտմելոյն. ապա ուրեմն ընդունի ներհակութիւն, և զյաւէտն և զնուազն. քանզի ջեռուցանելն՝ և յաւէտ և նուազ է, և տրտմելն՝ յաւէտ և նուազ. ապա ուրեմն ընդունի զյաւէտ և զնուազ՝ առնելն և կրելն։ Արդ յաղագս նոցա այսքանիք ասին։ Այլ ասացեալ է և յաղագս կալոյ յառինչսն. քանզի յարանուանաբար 'ի դիրոցն ասի։

Իսկ յաղագս այլոցն, երբէն և ուրին և ունելոյն, վասն յառաջագոյն յայտնելին գոլոյ, ոչինչ յաղագս նոցա այլինչ ասի՝ քան որ միանգամ 'ի սկզբանն ճառեցաւ։ Զի ունելն նշանակէ զըստաւորելն, զինելն. իսկ ուրն, հիբար՝ ըն Լիւկիոն. և այլքն՝ որ միանգամ յաղագս նոցա ճառեցաւ։ Արդ յաղագս յառաջադրելոց սեռից բաւական են յառաջասացեալքն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԱՍՏԱՐԵԱԼ իւր յաղագս որակի և որակութեան բան. յետ այսորիկ ասէ յաղագս առնելոյ և կրելոյ։ Այլ իրաւի զդաս ընկալաւ առնելն և կրելն անդէն առ որակութեան, քան թէ առ այլ ստորոգութիւնս. քանզի յանկագոյն առ որակութիւնսն ցուցանի առնելոյ և կրելոյ։ Քանզի որ առնէ, ըստ որակութեան իւրում առնէ. որպէս ջեռուցանելն կամ ցրտացուցանելն, քանզի

ըստ ցրտութեան և ըստ ջերմութեան. իսկ որպէս առնէ՝ որ առնէն, այսպէս և կրէ՝ որ կրէն. առնէ ըստ որակութեան առնօղն, ըստ որակութեան ապա ուրեմն և կրօղն կրէ. յիրաւի ապա քան զայլ ստորոգութիւնսն յետ որակի և որակութեան առնելդ և կրելդ դասեցաւ:

Նոյն և զհետևեալսն սոցա զներհակացն գոլ ընդունականս՝ և յաւէտ և նուազ ասիլ. և զի ներհակացն գոն ընդունականք, յայտ է. քանզի յարանունաբար ասացեալք որակք ճանաչին առնելդ և կրելդ. որպէս ՚ի ջերմոյն՝ ջեռուցանելն և ջեռնուլն, և՚ ի ցրտոյն՝ ցրտացուցանելն և ցրտանալն, և իւրաքանչիւրոք: Ոչ զառնելն կրելոյն, ասէ, ներհական գոլ, այլ առնելն առնելոյն, և կրելն կրելոյ. քանզի ջեռուցանելն ցրտացուցանելոյն ներհական է, և երկոքեան առնել. իսկ ջեռնուլն ցրտանալոյն, և երկոքին կրել. սոյնպէս և ՚ի վերայ այլոցն ամենեցուն: Քանզի առնելն, որպէս և թուի, առ կրելն ասի. յորմէ և ոմանք գայթակղեալ՝ առընչիցն ասացին գոլ զայսոսիկ, որոց սուտ այսպիսի կարծիքն են: Նախ զի ոչ ամենայն առնել առ կրելն ասի. քանզի գոչելն և կամ գրելն առնել ելով՝ և ոչ առ մի ոք կրել ասի. յայտ է թէ ոչ առընչիցն այսպիսիքս:

Նաև ևս, եթէ ոք թուլացուսցէ սոցա զսեռն ասել գոլ առընչիցն, իսկ զտեսակն ոչ ևս հարկաւոր. քանզի ոչ երաժշտականութեան առընչիցն՝ մակացութեան առընչի ելոյ: Այնպէս թէպէտ և առնելն և կրելն ասասցին առ իրեարս, այլ սակայն զիւրաքանչիւրն սոցա ոչ հարկաւորս. քանզի գնալն կամ ընթանալն՝ որ է առնելն, և ոչ առ մի ոք ոչ ասի: Ապա ոչ հարկաւոր է զայսպիսիս առընչիցն գոլ, թէպէտ և սեռքն սոցա իբրև առընչք իցեն. և զի ընդունի զյաւէտն և զնուազն առնելն և կրելն. և այս յայտ է յասելոց յեղանակացն: Քանզի ջեռուցանելն զյաւէտն և զնուազն ընդունի. ապա ուրեմն և ջեռնուլն. սոյնպէս և ցրտացուցանելն և ցրտանալն. որպէս զի ճշմարիտ ասացեալքն են՝ եթէ առնելն և կրելն ընդունին զներհակութիւն, ընդունին և զյաւէտն և զնուազն:

Կատարեալ յաղագս առնելոյ և կրելոյ, յետ և

զայլ ստորոգութիւն՝ յաղագս ունելոյ, 'ի վերջին գրոցս այսոցիկ առնէ տրամատութիւնս՝ զեկուցանելով ըստ քանի՛ս յեղանակս ունելն ասի։ Իսկ յաղագս այլոցն ամենեցուն բաւական գոլ ասէ, որ միանգամ յիսկզբանն ճառեցաւ՝ իբր յայտնեաց ելոց ստորոգութեանց թերեւս 'ի վեր քան զկրողութիւնս զայս խնդիրն նոցա։ Վասնզի իսկապէս ըն բնական լսողութիւն խնդրէ յաղագս ամանակի և տեղւոյ՝ զորս նշանակեն երբն և ուրն։

## ՅԱՂԱԳՍ

## ՀԱԿԱԿԱՅՑ

### ԲԱՆ

Իսկ յաղագս հակակայց՝ ըստ քանի՛ յեղանակս սովորեցաւ հակակայիլ՝ ճառելի է։ Նա ասի այլ այլում հակակայել քառակաբար. կամ իբր առնչաք, կամ իբր ներհակք, և կամ իբր պակասութիւն և ունակութիւն, կամ իբր ստորասութիւն և բացասութիւն. և հակակայի իւրաքանչիւրոք յայսպիսեացս։ Իբր թէ գաղափարաւ ասել, որպէս առնչաքն. որկէն՝ կրկնապատիկն՝ կիսոյ։ Իսկ որպէս ներհականք. հիբար՝ չար՝ բարւոյ։ Իսկ որպէս ըստ պակասութեան, և ունակութեան. հիզան՝ կուրութիւն, և երեսք։ Իսկ որպէս ստորասութիւն և բացասութիւն. հիպէս՝ նստի, ոչ նստի։

Արդ որք միանգամ իբրու առնչաք հակակայեն, ինքեանք որ ինչ են՝ հակակայեացն ասին. և կամ որպէս զկարդ և իցէ՝ այլազգ առ սոսա. որբար՝ կրկնապատիկն՝ կիսոյն, ինքն որ ինչ էն՝ այլոյ կրկնապատիկ ասի. և մակացութիւն մակացելում իբրև առնչաք հակակայեն. և ասի մակացութիւն ինքն որ ինչ էն՝ մակացելոյն. և մակացելին ինքն որ ինչ էն՝ առ հակակայեալ մակացութիւն ասի։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Եթէ ոք զպիտանացու իրողութիւնս այսորիկ գիտել կամիցի, ոչ դուզնաքեայ և աստանօր ծանիցի, քանիօն շահաւորութիւն առ տրամաբանականսն բերիցէ։ Քանզի թէ հարկաւոր է տրամաբանողացն վարել հակակայիւքս, իսկ զոչս հակակայիցն գիտողս անհնար է տրամաբանել. ուրեմն ապա յայտ է՝ եթէ նախ ուսանել է, յետ այսորիկ և առձեռն ունելով կրել ըստ պիտանացուին, իսկ ուսանել աստանօր։ Զի թէպէտ և յիշեաց ինքն 'ի տրամաբանականացն գիրս, սակայն յայտնապէս զտրամատութիւն սոցա աստ առնէ։

Բայց խնդրելի է, թէ իբրու 'ի տրամաբանականացն գիրս է պիտանութիւն հակակայիցս, ընդէ՞ր զկնի ստորոգութեցս առնէ զվարդապետութիւն սոցա։ Պատելի է. զի տասն ստորոգութիւքս պարզք են՝ որպէս ինքն ասաց, թէ յայնցանէ որ առանց շարամանութեան ասին և պարզ են, կամ գոյացութիւն նշանակէ կամ որակ. և զայլսն։ Արդ զի ստորոգութիւքն պարզք էին, վայելուչ էր զկնի նոցա զհակակայսն դասել. քանզի յոլովք 'ի հակակայիցն պարզք են. քանզի միայն ներհակքն են շարամանեալք. յաղագս այսորիկ կարգաւոր էր՝ և յաղագս այսորիկ յիշել յայսմ տեղւոջ։ Իսկ եւս, զի ասելով յաղագս տասն ստորոգութեցն, ասաց զոմանս 'ի նոցանէ ներհակաց գոլ ընդունականս, պիտանացու էր և գիտութիւն ներհակին թէ զինչ արդեօք իցէ։

Այլ և յառաջ քան զգիտութիւն ներհակին՝ իմանալի էր զսեռն սորա, որ էին հակակայք. յաղագս այսորիկ գիտակս արար զսեռն, որպէս զի 'ի սեռէն ոչ միայն զներհակսն, այլ և զայլսն զամենեսեան իմասցուք զհակակայիսն տեսակսն. ապա ուրեմն և զդաս յիրաւի նախ ընկալաւ քան զայլսն՝ որք միանգամ յետ ստորոգութեցն ասին։ Եւ զի ոչ այլոց գիւտք, այլ իմաստասիրիս են հակակայիցն տրամատութիւք, յայտնէ ասելովն՝ թէ „Ըստ քանիս յեղանակս հակա-

կայքն ասէին, ճառելի է»։ Իբր այն եթէ մեզ ասելի է՝ այլոցն անփոյթ արարեալ, թերևս և ոչ գտեալ։ Յետ այսորիկ առաջդրէ զիւրաքանչիւր սոցա՝ ոչ որպէս ունի ըստ բնութեան խնդիրն, այլ դուզնաքեայ միայն առ գիտութիւն, զի մի տարակուսեսցուք յանուանսն։ Իսկ յետոյ կատարելապէս հարցափորձէ զիւրաքանչիւրոք ՚ի հակակայիցն. եթէ ըստ որո՞ւմ հաւասարին իրերաց, և ըստ որում զատ գան։

## ՊՐԱԿՔ Բ

### ԲԱՆ

Արդ որք միանգամ հակակայեն իբրու առնչիք, ինքեանք որ ինչ ենն, և կամ որպէս զհայրդ և իցէ երբէք առ միմեանս ասին. իսկ որպէս ներհակք՝ ինքեանք որ ինչ ենն և ոչ միով իւիք առ միմեանս ասին։ Բայց սակայն ներհակք միմեանց ասին. քանզի ոչ բարի՝ չարի բարի ասի, այլ ներհական. և ոչ սպիտակ՝ սևոյ սպիտակ, այլ ներհական։ Իսկ ապա ուրեմն տարբեր են այդք հակադրութիւնք միմեանց։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԳԱՂԱՓԱՐԱՒ ասացելոց յեղանակաց հակակայիցն ստուգապէս տրամատութիւն առնէ՝ զիւրաքանչիւրոք նոցա յատուկ ուսուցանել։ Եւ նախ յաղագս իբր առնչման հակակայիցն առնէ ձեռնարկութիւն՝ ասելով, թէ Ինքեանք որ ինչ ենն՝ այլոյ գոլ ասին։ Բայց տարակուսեսցի ոք, եթէ խոտեալ իւր յառաջագոյն զբանս զայս իբր զոչ ստուգապէս նշանակօղ զէութիւն առնչելն՝ իբր աստանօր յիշեաց զնոյն բան՝ իբր թէ յարմարել առ առնչման. մի գուցէ իբր ուրոյն ինն և հարկաւորագոյն և ճշմարտապէս ծանուցիչ էութեան առնչիցն պատահեաց զյիւրմէ բացատրեալն բան. իսկ իբրև հետևելոյ ամենայն առն-

չիցն այսորիկ յիշումն արար աստանօր ։ Նոյն ուրեմն ոչ ընդդէմ իւր, այլ ըստ կարգի անդ զէութի խնդրելով առընչիցն՝ զստուգապէսն խնդրեաց բանն. իսկ աստ առ 'ի ծանուցանել իբր զառնչումն հակակայեալն՝ ըզհետեւեալսն ամենայն առընչիցն ընձեռեաց ։

Բայց խնդրելի է, թէ որ միանգամ առընչիցն են՝ և առ յիրեարս ունակութ ունիցին զէութի, եթէ սոքա հակակայիցն եղիցին. քանզի թուին հակակայք իբրերաց 'ի բաց բառնօղք գոլ, մի գուցէ ոչ ուրոյնն՝ այս է հակակայիցն, առ՛ նմին և ըստ նոյն ինքն և առ նոյն զհակակայսն ասել. այլ այս առ ամենայնս յարմարի առնչսն ։ Վասնզի թէ է այս կրկնապատիկ ուրումն, ոքին այսորիկ և ըստ նմին օրինակի և երբէք կիսի ասասցի. այսպէս և 'ի վերայ այլոցն ամենեցուն որք միանգամ իբր առնչք հակակայքն ։ Նոյն ուրեմն զատուցանելն իբր զառնչս հակակայեալքն յայլոցն յեղանակացն այսուիկ, ըստ որում ինքեանք որ ինչ են՝ այլոց գոլ ասին ։ Եւ ևս ճշմարտապէս, քանզի առնչքն միանգամայն են ըստ բնութ, իսկ յայլոց յեղանակաց և ոչ մի ինչ ։

## ՊՐԱԿՔ Գ

### ԲԱՆ

Որք միանգամ 'ի ներհակացն այսպիսիք են, մինչ զի յորս բնաւորեցան լինել, կամ զորոց ստորոգիլ, և հարկաւոր է սոցա միումն գոլ, սոցա ոչինչ է ընդմէջ. իսկ որոց ոչ է հարկաւոր միումն գոլ, սոցա է իմն ամենայն իրօք ընդ մէջ ։ Որպէս՝ ողջութիւն և հիւանդութի 'ի մարմնոջ կենդանւոյն բնաւորեաց լինել. և հարկաւոր է միումն լինել 'ի կենդանւոջն 'ի մարմնի, կամ առողջութի կամ հիւանդութիւն. և դար և կոճատ զթուոյ ստորոգին. և հարկաւոր է միումն 'ի թուոջն գոլ կամ կոճատ, կամ դար. ոչ է սոցա և ոչինչ ընդ մէջ, ոչ հիւանդութե և ողջութեան, և ոչ դարի, և կոճատի ։ Իսկ որոց ոչ է հարկաւոր մինն գոլ, սոցա է իմն ընդ մէջ. որպէս՝ սեաւ

և սպիտակ 'ի մարմնոյ բնաւորեաց լինել, և ոչ է հարկաւոր զմինն գոլ նոցա ընդ մարմնոյն. քանզի ոչ ամենայն՝ կամ սպիտակ է և կամ սեաւ. և ոչ վատթար և առաքինի, որ ստորոգեալ զմարդոյ լինի, և զայլոց բազմաց, բայց ոչ է հարկաւոր զմինն 'ի նոցանէ գոլ այնց՝ զոյց ստորոգին. քանզի ոչ ա̄մ՝ կամ վատթար, կամ առաքինի, և է սոցա ընդ մէջ. որպէս՝ սպիտակի և սևի՝ գորշն և դեղինն, և որ միանգամ այլ գոյնք: Իսկ վատթարին և առաքինւոյն, ոչ վատթարն և ոչ առաքինին:

Արդ 'ի վերայ ումանց անուանք կան միջոցացն. որպէս՝ սպիտակին և սևին, գորշն և դեղինն, և որք միանգամ այլ գոյնք: Իսկ 'ի վերայ ումանց անուանք ոչ է դիւրին բացատրել զընդ մէջսն, բայց երկաքանչիւրովքն ծայրիցն ապասութե̃ զընդ մէջն սահմանի. Հիբար՝ ոչ բարին և ոչ չարն, ոչ արդարն և ոչ անիրաւն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՏՐԱՄԱՏՈՒԹԻՒՆ առնէ ներհակացն՝ երկակի տրամատելով. քանզի ասէ զոմանս յենթակայում գոլ, իսկ զոմանս ստորոգիլ միայն, իսկ զիւրաքանչիւրոք սոցա՝ որք ստորոգին միայն, և կամ 'նենթակայում գոն, կամ գոլ ինչ ընդ մէջ՝ և կամ ոչ գոլ: Եւ հաւատացուցանէ զբանս յայնցանէ՝ որք բնաւորեցան հարկաւորապէս, որպէս մարմին կենդանոյն ընդունական ելով ներհակացն, որ է հիւանդութե̃ և ողջութե̃, և հարկ է կամ հիւանդ գոլ և կամ ողջ զկենդանին. այսպիսեացս ոչ ինչ է ընդ մէջ: Այնպէս և թիւ կամ դար ասի և կամ կոճատ, քանզի ստորոգի և զնմանէ, և հարկ է զմինն ընդունել 'ի նոցանէ. յաղագս որոյ դարին և կոճատին ոչ ինչ է ընդ մէջ: Ջերմութի̃ և ցրտութի̃, և կամ սպիտակութի̃ և սևութի̃ բնաւորեալք են ընդ մարմնի գոլ. և ոչ հարկաւոր է զմի ոք 'ի ծայրիցն ընդունել 'ի մարմինն. յայտ է թէ և այսպիսեացս է ինչ ընդ մէջ: Ընդ մէջ ասեմ այ-

տոցիկ, որոց իբր պատահումն՝ այլ ոչ իսկապէս տեսակք և գոյացութիւն մարմնոյս այսորիկ ճանաչլին, որպէս ջերմութիւն հրոյ և ցրտութիւն ձեան. քանզի ոչ միայն զընդ մէջսն, այլ և ոչ զներհականսն ընկալցի ոք։

Նաև որպէս 'ի վերայ մարմնոյ որակութեանց, այսպէս և 'ի վերայ անձին. իբր զի հնար է յեղմունս կրել և ընտանենալ զանձն առ իւրաքանչիւրոք 'ի ներհակացն, յորոց ասի որականալ. լինի ընդ մէջս ըն սոսա։ Իսկ ոչ կացելոց անուանց միջոցին, ապուսութեք ծայրիցն զառասութիւն ընդունելին. քանզի ըստ յառաջ հաստատելոյ և խոկալոյ յախորժակսն, այսպէս յումեմնէ հեռանայ, իսկ առ ոմն մերձենայ. որպէս յանիրաւութենէ յարդարութիւն, և կամ 'ի հեշտ ցանկութենէ յողջախոհութիւն, և կամ եթէ զընդդիմակն սոցա. քանզի հնարաւոր է առ երկաքանչիւրսն վարիլ, որպէս ասացաք։ Իսկ մինչ ոչ ևս զկատարեալն ունիցի ախորժակս՝ զինչ և իցէ ըն բացասութենէ ծայրիցն միջոցն անուանի։

## ՊՐԱԿՔ Դ

### ԲԱՆ

ԻՍԿ ունակութիւն և պակասութիւն առ նոյն ինչքն. որբար՝ երեսք և կուրութիւն ասին զականմք։ Իսկ ընդհանուր ասիլ, յորում բնաւորեացն ունակութիւն լինել. զի սովաւ ասին երկաքանչիւրոք 'ի նոցանէ։ Քանզի պակասիլ յայնժամ ասեմք զիւրաքանչիւր զունակութեանն ընդունողն, յորժամ յորում բնաւորեցան գոլ, և ոչ միով իւիք ոչ գուցէ։ Քանզի ժոռատ ասեմք՝ ոչ որ ոչ ունին ատամունս, և կոյր՝ ոչ որ ոչ ունի երեսս, այլ որ ոչ ունի՝ յորժամ բնաւորեցաւն ունել. քանզի ոմանք 'ի ծննդեանն ոչ երեսս ունին և ոչ ատամունս. այլ ոչ ասին ոչ ժոռատք և ոչ կոյրք։

Իսկ պակասելն և ունելն երեսս, ոչ է պակասութիւն և ունակութիւն. քանզի ունակութիւն է երեսք, իսկ պակասութիւն՝ կուրութիւն։ Բայց ունելն երեսս, ոչ է երեսք. և ոչ կոյրն գոլ՝ կուրութիւն. քանզի պա-

կատարութ՟ն իմն է կուրութ՟ն . իսկ կոյրն գոլ՝ է պակասիլն , և ոչ է պակասութ՟ի : Եւ և՛ս՝ եթէ էր նոյն կուրութ՟ն և կոյրն գոլ, ստորոգէին երկոքեան զնը֊մանէ . այլ սակայն կոյր ասի մարդ , բայց կուրութ՟ն և ոչ միով իւիք մարդ ոչ ասի: Եւ հակակայիւ և այսոքիկ թուին՝ և պակասիլն և զունակութ՟ին ունելն, որպէս պակասութ՟ն և ունակութիւն , քանզի յեղանակ հակադրութ՟ն նոյն է : Քանզի որպէս կուրութիւն՝ երեսաց հակակայի , այսպէս կոյրն գոլ՝ զերեսս ունելոյն հակակայի :

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԻՍԿ յետ այսորիկ զունակու՟ն և զպակասութիւն ասէ . քանզի եթէ առաջինն , և երկրորդն . իսկ եթէ ոչ առաջինն , և ոչ երկրորդն : Յետ այսորիկ ասէ և այլ իմն տեսութ՟ի , զերեսն ունել՝ և զերեսս ոչ գոլ նոյն իրքն . և լուծանէ զսա որպէս յերրորդ ձևումն՝ զոմն ստորասել , իսկ զոմն ապուսել , եթէ մարդ երեսս ունի ասի , իսկ երեսք ոչ ասի մարդ . յայտ է եթէ երեսք՝ և ունելն երեսս՝ ոչ են նոյն իրքն : Որպէս և ըստ պակասութ՟ե , զի պակասութ՟ի ոչ է նոյն իրքն՝ և ունելն պակասու՟ն . զի թէպէտ և թուեսցին հակակայիւ միմեանց իբր զունակութ՟ն և զպակասու՟ն՝ ունելն երեսս և կոյրն գոլ, այլ սակայն յոյժ անջատեալք են 'ի միմեանց . քանզի ոմանք իբր որակութիք , իսկ ոմանք իբր որակք ասին : Երրորդ յեղանակ հակակայիցն ունակու՟ն և պակասութ՟ն 'ի յոգնաբար ասիցելոցն , յաղագս որոյ 'նայլս ճառելի է :

Իսկ զ՚նայսմ տեղւոջ ասիցեալ պակասու՟նս սահմանեն այսպէս . « Պակասու՟ն է հեռաւորու՟ն պատուականին յորում բնաւորեցաւն գոլ , և ուր բնաւորեցաւ , և երբ » : Յորում բնաւորեցաւն գոլ . քանզի ոչ ևս զորմ ասասցես կոյր գոլ . քանզի և ոչ բնաւորեցաւ 'ի սմա գոլ երեսք : Իսկ ուրն՝ իբր եթէ ըն մասնական . քանզի ոչ ևս ոտին ասասցես կուրութ՟ի . քանզի և ոչ 'ի սմա բնաւորեցաւ գոլ : Իսկ երբն՝ ըստ

ժամանակին. քանզի ոչ ևս տեսանես զկորիւն կայր գոլ, անդէն 'ի ծննդեանն ոչ ունելով երեսս. և ոչ ժօռատ զհամբակ և զարդի ևս ծնեալ. այլ յորժամ ամանակն պահանջեսցէ զիւրաքանչիւրոք սոցա զունակութ. իսկ բնութի վնասեալ յախտից ումանց՝ յուրասա կայցէ ունել զայսպիսի ունակութի՝ զոր վայելէրն 'ի մէջ բերել, յայնժամ ասին ժօռատք արդեօք և կամ կոյրք:

Բայց գիտելի է, զի զանազանութի ձայնիցն և իրացն ըստ պակասութե ոչ բաղաձայնին[1] միմեանց. քանզի են իմն ձայնք պակասականք իրացն դուզնաքեայ կցորդութ ունելով առ պակասութի, և կամ ոչ բնաւ իսկ. և են որ ոչ ամենևին ըստ ձայնին նշանակեն զպակասութի, իսկ իրքն պահանջեն. որպէս անձայն ասեմք զնրբաձայնն՝ ոչ վասն ոչ ունելոյ ձայն, այլ վասն զի ոչ ըստ բնութե համատեսականացն 'ի սմա բնաւորեցաւ գոլ. իսկ անուանս իբր եթէ ամենևին ոչ ունիցի՝ այսպէս նշանակէ: Եւ անմահ ասեմք՝ ոչ յորս բնաւորեալն մահ լինել, այլ որք ամենևին անբաժ այսպիսոյ պատահեցին գոլ ախտի. և սակայն ձայնս այս անմահ ըստ պակասութե թուի ասիլ: Իսկ կուրութի, կամ այլք այսպիսիք, ըստ ձայնին ոչ ինչ նշանակեն պակասութիւն՝ ոչ առաջորեցելոյ պակասութեան մանկանն այնր. իսկ իրքն ոչ վայրապար, այլ իսկապէս ցուցանեն պակասութիւն. որպէս կուրութիւն, և այլքն այսպիսիք: Բայց գիտելի է, զի յորս բնաւորեցան լինել, հարկ է նախ գոլ զունակութիւն:

[1] Ի լուսանցսն հոմաձայնին:

## ԳՐԱԿՔ Ե

### ԲԱՆ

ԲԱՅՑ ոչ որ ընդ ստորասութեամբ և բացասութեամբ՝ ստորասութիւն և բացասութիւն. քանզի ստորասութիւն բան է ստորասական, իսկ բացասութիւն՝ բան բացասական։ Իսկ այնոքիկ որ ընդ ստորասութեամբ կամ ապասութեամբ են, ոչինչ է բան. և ասին և սոքա հակակայիլ միմեանց, որպէս ստորասութիւն և բացասութիւն. քանզի և 'ի վերայ սոցա յեղանակ հակադրութեան նոյն է։ Քանզի որպէս երբեմն ստորասութիւն առ բացասութիւն, որգոն՝ նստի՝ ոչ նստի, այսպէս և որք ընդ երկաքանչիւրովք 'ի սոցանէ իրք են՝ հակակայքն, նստելն ոչ նստելումն։ Եւ զի պակասութիւն և ունակութիւն ոչ հակակայքն, որպէս առինչքն, երևելի է. քանզի ոչ ասի այն ինչ որ ինչ էն՝ հակակայքն. քանզի երեսք ոչ է կուրութեան երեսք, և ոչ այլազգ և ոչ միով իւիք իրօք առ այս ասի. սապէս և ոչ կուրութիւն՝ ասի կուրութիւն երեսաց, այլ պակասութիւն երեսաց՝ կուրութիւն ասի։ Եւ ևս՝ առինչքն ամենայն առ հակադարձման ասին, իսկ ապա և կուրութիւն. զի եթէ էր առընչիցն, հակադարձէր ապա և առ այն, առ որս ասին, այլ ոչ հակադարձի, քանզի ոչ ասի երեսք կուրութեան։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՏԱԿԱՒԻՆ առ 'ի հաստատել զասացեալն իւր բան, եթէ ունելն ունակութիւն՝ ոչ է ունակութիւն, և պակասն ոչ պակասութիւն, շարժէ զհարցափորձութիւն և առնէ զցուցումն 'ի նմանութենէ։ Քանզի առադրելն աստանօր զստորասութիւն և զբացասութիւն ոչ յաղագս ստորասութեան և բացասութեան այժմ առաջի կայր, քանզի ահա յետոյ ճառեսցի յիւրում տեղւոջ. այլ որպէս ասացաք՝ առ 'ի հաստատել զիւր բանն յիշեաց

զտոսա ։ Վասնզի ասէ՝ թէ Ստորասութիւն և բացասութիւն ոչ նոյն ինքն են ընդ ստորասութեամբք և բացասութեամբք անկելոցն, քանզի իւրաքանչիւրոք սոցա բան է, իսկ ընդ սոքօք անկելոցն և ոչ մի ոք բան ոչ է. և սակայն հակակայիլ ասին և այսոքիկ՝ որպէս ստորասութիւն և բացասութիւն ։ Բայց գիտելի է, զի որք միանգամ ընդ ստորասութեամբն և բացասութեամբն հակակայեն՝ սոցա և ստորասութիւնն և բացասութիւնն հակակայեն. իսկ ոչ որոց միանգամ ստորասութիւն և բացասութիւն հակակայք են հարկաւոր է և զընդ նոքօքն հակակայիլ ։ Մարդ որպէս որք ընդ ստորասութեամբք և բացասութեամբք հակակայեն՝ և ոչ են սոքա ստորասութիւն և բացասութիւն. սոյնպէս և ունելն ունակութեան և պակասելութեան թէպէտ և հակակայեն իրերաց, այլ ոչ են ունակութիւն և պակասութիւն ։

Ցուցեալ զայս՝ զի զանազանին՝ ի միմեանց ունակութիւն, և ունելն ունակութեան, և պակասելն և պակասութիւն. յետ այսորիկ խնդրէ՝ թէ գուցէ արդեօք իբր առինչք հակակայեն ունակութիւն և պակասութիւն, կամ իբր ներհակք։ Եւ նախ ցուցանէ, զի իբր առինչք ոչ հակակայեն. քանզի առեալ զսահման առընչիցն, և կամ եթէ որ ամենայն առընչիցն հետևանայ՝ խնդրէ եթէ յարմարիցի արդեօք առ ունակութիւն և պակասութիւն ։ Եւ այսուհետև ցուցանէ, զի ոչ հակակայեն իբր առինչք. քանզի իբր զառինչս հակակայեալքն ինքեանք որ ինչ ենն՝ այլոց գոլ ասին. իսկ իբր զունակութիւն և զպակասութիւն հակակայեալքն ինքեանք որ ինչ ենն՝ այլոց գոլ ոչ ասին. քանզի ունակութիւն, որ է երեսք, ոչ ասի հակակայեն իւրոյ՝ իբր այն եթէ կուրութեան երեսք, և ոչ այլազգապէս ինչ առ նա, թէպէտ և կուրութիւն ասասցի պակասութիւն երեսաց. այլ սակայն ինքն որ ինչ են՝ այլոց գոլ ոչ ասին ։ Ապա ուրեմն յայտ է՝ եթէ հակակայեալքն իբր ունակութիւն և պակասութիւն յատուկ ունին զեղանակ հակադրութեան. այլ ոչ առընչիցն հաւասարին ։

# ՊՐԱԿՔ Ջ

## ԲԱՆ

Եւ զի ոչ որպէս ներհականքն հակակայքն այնք, որք ըստ պակասութեան և ունակութեան ասին, յայտանէ յայտ է. քանզի ներհակացն որոց ոչինչ է ընդմէջ՝ հարկաւոր է, յորում բնաւորեցան լինել՝ կամ զոյց ստորոգելին, միումն ՚ի սոցանէ գոլ միշտ, և սոցա ոչինչ էր ընդ մէջ իմն, յորոց միումն հարկաւոր էր յընդունականսին գոլ. որպէս՝ ՚ի վերայ հիւանդութե և ողջութեան, և կոճատին և դարին: Իսկ որոց է ինչ ընդ մէջ, ոչ երբէք հարկ է ամենայնիւ գոլ զմինն. քանզի ոչ սպիտակ, և ոչ սեաւ ամենայն գոլ ընդունականն, և ոչ ջերմն և ոչ ցուրտ: Իսկ զընդ միջոցն ոչինչ արգելու գոլ, և սոցա ևս էր իմն ընդ մէջ, որոց ոչ էր հարկաւոր զմինն գոլ յընդունականումն, և ոչ որոց բնութք մինն գուցէ. հիզանն՝ բնութք հրոյ ջերմն գոլ, և ձեանն՝ սպիտակ: Այլ ՚ի վերայ այսց հարկաւոր է զոմն յընդունականին գոլ, և բացորոշաբար հարկաւոր է զմինն գոլ, և որում ոչ ումեք դէպ եղև. քանզի ոչ ընդունելի հուր ցուրտ գոլ, և ոչ ձիւն՝ սեաւ:

Ապա ուրեմն յամենայնում ոչ հարկաւոր է յընդունականում զմինն ՚ի նոցանէ գոլ, այլ միայն որոց բնութք մինն գոլ, և սոցա բացորոշաբար մինն,. ոչ որում ումեք և դէպ իցէ: Իսկ ՚ի վերայ պակասութե և ունակութե և ոչ մի յասիցելոցս ճշմարիտ է. քանզի ոչ միշտ ընդունականումն հարկաւոր է զմինն ՚ի նոցանէ գոլ. քանզի չև ևս բնաւորեալն երեսս ունել, և ոչ կոյր, և ոչ երես ունել ասի: Իսկ ապա ոչ են սոքա յայսպիսեացս ներհակաց, որոց ոչինչ է ընդ մէջ. այլ և ոչ ոյց ընդմէջ է, և հարկաւոր է երբէք ամենայնի ընդունականումն զմինն ՚ի նոցանէ գոլ բացորոշաբար. քանզի յորժամ ահա բնաւորեալ իցէ երեսս ունել և յայնժամ կոյր, և կամ երեսս ունել ասասցի, սա ոչ բացորոշաբար մինն, այլ՝ ում և դէպ իցէ. քանզի ոչ հարկաւոր է կամ կոյր, կամ երեսս ունել ասել, այլ

որում և դէպ եղև ։ Իսկ ապա յայտ է, զի ոչ ըստ միում յեղանակաց որպէս ներհակմանք՝ հակակայինն ըստ պակասու՟թեք և ունակու՟թեքն հակակայքն ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԻՍԿ օրինակի առընչիցն հարցափորձելոյ՝ կամի դարձեալ ցուցանել, եթէ ոչ և առ ներհակմանս ունի կցորդու՟ի ունակու՟ի և պակասու՟ի. քանզի առեալ իւր զառաւելս ներհակացն՝ յիշեցուցանէ մեզ զառաջագոյն ճառեցեալսն յաղագս ներհակաց. քանզի երկակի ներհակքն ասին, որոց էրն ընդ մէջ՝ որպէս սպիտակու՟ն և սևու՟ն, և որոցն ոչ էրն ընդ մէջ՝ որպէս հիւանդու՟ն և ողջու՟ն ։ Այլ ցուցանէ, զի և ոչ առ մի ոք յասիցելոցս տեսակաց յարմարի ունակութիւն և պակասու՟ի. քանզի ներհակացն որոց ոչն էր ընդ մէջ ինչ՝ հարկ էր զմինն 'ի սոցանէ անդէն և անդ յընդունականումն գոլ. իսկ 'ի վերայ ունակու՟ն և պակասու՟ն ոչ ևս հարկաւոր. ապա ուրեմն յայտ է՝ եթէ ունակու՟ի և պակասու՟ի ոչ են իբրև զայն ներհակս՝ որոց ոչ ընդ մէջ ինչ էր ։ Այլ գուցէ եթէ և ոչ իբրև զայնոսիկ՝ որոց են ինչ ընդ մէջ. քանզի ներհակացն յորժամ բնաւորեալ է զընդունականն՝ ոչ է հարկ է զմինն 'ի ներհակացն ընդունել, քանզի հնարաւոր է և զմիջոցացն ինչ գոլ. իսկ 'ի վերայ ունակու՟ն և պակասու՟ն յորժամ բնաւորեալն է՝ հարկաւորապէս զմինն ընկալցի ։

Այլ ևս, քանզի ներհակքն յեղումն ընդունելով երբեմն զոմն և երբեմն զայլն պատահէ գոլ յընդունականումն ։ Իսկ ըստ ունակութեան և պակասութեան՝ յունակութենէ առցէ երբեմն յեղումն առ պակասու՟ի, իսկ 'ի պակասու՟էն առ ունակու՟ի և ոչ երբէք. ապա ուրեմն ոչ իբր զայն ներհակս որոց էրն ինչ ընդ մէջ ։ Իսկ արդեօք իբր զայնոսիկ որոց ըստ բնու՟ն մինն գոլ պատահեաց, որպէս հրոյ ջերմու՟թի, և ձեան սպիտակու՟ի և ցրտու՟ի ։ Այլ և ոչ այս ճըշմարիտ է. քանզի նոցա իւրաքանչիւրոք հարկաւորա-

պէս զմիմեանս ունի անընդունական ելով հակակայեն․ իսկ ըստ ունակութեան և պակասութեան ոչ հարկաւորապէս զմին, այլ որ արդեօք և դէպ լիցի գոլ․ յայտ է՝ թէ և ոչ իբր զայնոսիկ ունակութի և պակասութի։ Ցուցաւ զի ոչ իբր զառաջասացեալ յեղանակս ներհակութեան ունակութի և պակասութի ասին․ ապա ուրեմն և ոչ ըստ միում օրինակի ունակութիւն և պակասութիւն իբր ներհակք հակակային․ այլ բացորոշեալ է ըստ ունակութեան և պակասութեան յեղանակն՝ ի հակակայիցն։

## ՊՐԱԿՔ Է

### ԲԱՆ

Այլ և՝ զի ի վերայ ներհակացն յորժամ է ընդունականն, կարէ ի միմեանս փոփոխումն լինել, եթէ ոչ ումեմն բնութեամբ միոյն գուցէ․ հիզան՝ հրոյ ջերմն գոլ․ և քանզի ողջն կարէ հիւանդանալ, և սպիտակն սեաւ լինել, և ջերմն ցուրտ․ և յառաքինոյն վատթար, և ի վատթարէն առաքինի կարէ լինել։ Վասն զի վատթարն ի լաւ դեգերմանս ածեալ և ի բանս, գոնեայ սակաւ մի աճումն առցէ ի լաւագոյնն գոլ․ և եթէ միանգամ սակաւ աճումն առցէ, երևելի է, զի կամ կատարելապէս փոխեսցի, և կամ կարի շատ աճումն առցէ․ քանզի միշտ դիւրաշարժագոյն յառաքինութիւն լինի։ Այս թէպէտ զինչ աճումն և իցէ առեալ ի սկզբանէ, մինչ զի առաւելագոյն դէպ է աճումն առնուլ, և այս միշտ լինելով կատարելապէս ի ներհակութեան ունակութիւն հաստատեալ դարձցի, եթէ ոչ ժամանակաւ արգելցի։

Իսկ ի վերայ ունակութեան և պակասութեան՝ անհնար է ի միմեանս փոփոխումն լինել․ քանզի յունակութենէ առ պակասութիւն լինի փոփոխումն, իսկ ի պակասութենէ յունակութիւն անկար է փոփոխումն լինել․ քանզի ոչ կոյր եղեալ ոք՝ դարձեալ վերատեսեաց, և ոչ կնտացեալ ոք՝ վարսաւոր եղև, և ոչ ժոռատ՝ ատամունս բուսոյց երբէք։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՍՐԿԱԿԻ դարձեալ և յայսմ տեղւոջ կամի ասել յաղագս ունակութեան և պակասութեան. զի ոչ իբր ներհակք հակակայքն՝ ոչ իբր զայնոսիկ որոց մին ընդունի և անկար է զընդունականն՝ սոցա երբէք առանց այսոցիկ լինել: Այլ երկրորդ զի ընդունական ներհակացն 'ի փոփոխմանէ զներհակսն ընդունի, զոր ահա ժամանեցաք ասել. ըն յառաջասացեալսն յաղագս երկոցունց այսոցիկ: Բայց խնդրելի է առ այսոսիկ՝ որք ոչ կամին յառաքինութէ 'ի վատթարութի յեղանիլ, ասելով եթէ իսկապէս առաքինիքն որոց ըստ մակացութե ունակութի ախորժականն եղև՝ ոչ երբէք յեղումն կրեսցեն. քանզի գիծք տպաւորութես այսորիկ ոչ վեր 'ի վերոյ պատահեցին գոլ, իբր թէ դիւրաշարժք եղիցին, այլ՝ զընդդէմն հաստատուն և դժոխաշարժք:

Արդ ասելի է, թէ ըստ որում արդեօք առաքինութի և վատթարութի հակակայքն. քանզի ոչ իբր զառինչս՝ յայտ է. քանզի ոչ միանգամայն վատթար և առաքինի, որպէս առինչքն միանգամայն են. այլ և ոչ իբր ունակութի և պակասութի. քանզի յունակութէ 'ի պակասութի գոլ հնարաւոր է, իսկ 'ի պակասութէ յունակութիւն ոչ ևս: Իսկ սոքա զընդդէմսն կամին, իբր այն եթէ 'ի վատթարութէ յառաքինութի շարժիլ, իսկ յընդդէմն ոչ ևս. յայտ է, զի ոչ են իբր ունակութի և պակասութի. այլ և ոչ ևս իբր ստորասութի և բացասութիւն. քանզի անդ բանից, իսկ աստանօր վարուց զանազանութի. մնաց իբր ներհակս ուրեմն հակակայիլ զայսոսիկ: Իսկ ամենայն ընդունական ներհակացն ըստ փոփոխման արդեօք երբեմն զոմն և երբեմն զմիւսն ընդունի. թէպէտ և ունակութի եղեալ 'ի նմա տարրասցի և դժոխաշարժ լիցի 'ի յոգնամանակն գոլոյ. այլ սակայն հնար է երբեմն և զընդդէմն սորա ընդունել: Ապա ուրեմն առաքինին՝ թէպէտ և ունիցի հաստատակառոյց ախորժակս զառաքինութի, և յոգնամանակեան եղեալ 'ի նմին տար-

րացի, այլ սակայն ըն մարմնի ելով և յեղյեղուկ բնութե պատահեալ ընդունականի հիւանդութե և այլում փատախառնութե, որք այլայլել զմարդկային բնաւորեցան մարմինս, ոչ ևս աւելի է անկիրս զայսպիսիքն գոլ ամենևին. և ըստ կամաց և խորհրդոց անշարժք, որում և ունին ինքնիշխանութի. այլ սակայն ըստ մարմնոյ յեղյեղուկ: Վասնզի բազում անգամ ոչ ըստ մարմնոյ կամաց ողջութի և հիւանդութի հետևանան [1], այլ և հետևանան բազում անգամ և անձին զօրութիք խառնուածոյ մարմնոյն. յայտ է՝ թէ և յեղյեղումն ընդունել որպէս զմարմնոյն փատախառնութի, այսպէս զանձինն ախորժակաց հնարաւոր է:

## ԳՐԱԿՔ Ը

### ԲԱՆ՝

ԻՍԿ որք միանգամ իբր ստորասութի և բացասութի հակակային՝ երևելի է, զի ոչ ըստ միում յեղանակաց ասիցելոցս հակակային. քանզի 'ի վերայ միայնց սոցա հարկաւոր է միշտ զոմն ճշմարիտ, և զոմանս սուտ սայց գոլ. քանզի ոչ 'ի վերայ ներհակացն հարկաւոր է գոլ զմինն ճշմարիտ, և զմինն սուտ. և ոչ 'ի վերայ առընչիցն, և ոչ 'ի վերայ ունակութե և պակասութե: Որզան՝ ողջութի և հիւանդութի ներհականք, և ոչ մի 'ի սոցանէ՝ ոչ ճշմարիտ և ոչ սուտ է. սոյնպէս և կրկնապատիկն, և կէսն. քանզի սոքա իբր առինչք հակակային. և ոչ է 'ի սոցանէ և ոչ մի, ոչ ճշմարիտ և ոչ սուտ: Այլ ոչ ըստ պակասութեանցն և ունակութեցն. որքար՝ երեսք և կուրութի, և բնաւին յայնց, որք և ոչ ըստ միում շարամանութե ասին՝ ոչինչ ոչ ճշմարիտ և ոչ սուտ ասին, և ամենայն ասացեալքս առանց շարամանութե ասին:

1 Յօրինակին ընթեռնլնան. եդաք ըստ լուսանցից:

Բայց տակաւին առաւել թուեսցի այսպիսիս դիպել և 'ի վերայց ըստ շարամանութեան ներհակացն ասացելոց․ քանզի ողջն լինել Սոկրատայ, հիւանդանալումն Սոկրատայ ներհական է։ Բայց և ոչ 'ի վերայ այսց հարկաւոր է միշտ զմինն ճշմարիտ և զմինն սուտ գոլ․ քանզի ելոյ Սոկրատայ՝ եղիցի ոմն ճշմարիտ և ոմն սուտ, իսկ ոչ ելոյ՝ երկոքեան սուտք․ քանզի ոչ հիւանդանալն Սոկրատայ և ոչ ողջն է ճշմարիտ․ զի նորա ոչ ելոյ՝ բոլորովին Սոկրատայն սուտ է։

Իսկ 'ի վերայ ունակութեան և պակասութեան, ելոյ և ոչ ելոյ, ոչ է մինն ճշմարիտ և մինն սուտ։ Քանզի տեսս ունել Սոկրատայ, կոյրն գոլ Սոկրատայ, հակակայքն․ որպէս ունակութիւն և պակասութիւն․ և ելոյ միումն ոչ է հարկաւոր ճշմարիտ գոլ, կամ սուտ․ քանզի յորժամ չև ևս բնաւորեցաւ ունել, երկոքեան սուտք։ Այլ ոչ ելոյ միանգամայն պարզաբար Սոկրատայ, և այսպէս սուտք երկոքին, և տեսանն ընա ունել, և կոյրն ընա գոլ։

Իսկ 'ի վերայ ստորասութեան և բացասութեան յար եթէ իցէ, և եթէ ոչ իցէ, մինն եղիցի ճշմարիտ և մինն սուտ։ Քանզի հիւանդանալն Սոկրատայ, կամ ոչ հիւանդանալն, ելոյ նորա՝ երևելի է, զի մին սոյց ճշմարիտ է, կամ սուտ, և ոչ ելոյ՝ նմանապէս․ քանզի հիւանդանալն, ոչ ելոյ՝ սուտ է, իսկ ոչն հիւանդանալ՝ ճշմարիտ։ Իսկ ապա 'ի վերայ սոյց ուրոյն յատուկ եղիցի միշտ մին սոցա ճշմարիտ կամ սուտ գոլ, որք միանգամ իբր ստորասութիւն և բացասութիւն հակակայքն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՔԱՌՈՐԴ յեղանակ հակակայիցն ստորասութեան և բացասութեան զորմէ յայսմ տեղւոջ ուսուցանէ․ քանզի միով հակադրութեամբ յայլոցն զսա բացորոշէ յեղանակաց․ քանզի յայլոցն և ոչ մի ոք զճշմարիտն և զսուտն յայտնէ․ իբր զի իւրաքանչիւրոք սոցա առանց շարամանութեան ասին․ իսկ զճշմարիտն և զսուտ որո-

շողքն՝ ըստ շարամանութեան։ Նոքա ուրեմն յառաջադասացեալք յեղանակքն ոչ որոշեն զճշմարիտն և ըզսուտն, բայց միայն ըստ հակասութեան ասացեալքն, որպէս ստորասութիւն և բացասութիւն։ Իսկ զի զանխլանայր յոմանց հակադրութեանց յեղանակն, կարծէին եթէ որպէս զսուտն և զճշմարիտն որոշողքն ըստ շարամանութեան ասել, այսպէս և ամենայն ըստ շարամանութեան ասացեալքն զատուցանել զճշմարիտն և զսուտ. և առեալ զըստ ներհականութեան հակակայիցն՝ շարամանէին, որպէս թէ որոշել զճշմարիտն և զսուտ ասելով՝ Սոկրատէս ողջ է, Սոկրատէս հիւանդ է։ Իսկ այս ոչ հարկաւոր է միշտ ստոյգ գոլ. քանզի ելոյ Սոկրատայ՝ եղիցի մին ճշմարիտ, իսկ միւսն սուտ. իսկ ոչ ելոյ՝ երկոքեան սուտ։ Նոքա ուրեմն թէպէտ և շարամանեալք են, սակայն ամանակաւ յանդիմանին, զի ոչ հարկաւոր է յար զնոսա զճշմարիտն և զսուտն որոշել։

Իսկ ըստ ունակութեան և պակասութեան շարամանեալքն՝ և ոչ ըն միում ամանակի ոչ հարկաւորապէս որոշեն զճշմարիտն և զսուտ. քանզի ելոյ և ոչ ելոյ Սոկրատայ՝ հնարաւոր է միշտ զերկոսեան ստել. քանզի եթէ ըստ ունակութեան և պակասութեան շարամանեալ զժուատն զՍոկրատէս գոլ կամ ատամունս ունել՝ հնար է զնոսա երկոսին ստել ամանակս։ Քանզի ելոյ Սոկրատայ՝ իսկ ոչ ևս բնաւորեցելոյ ունել ատամունս, և ստորոգեսցես զնմանէ ժուատ գոլ և կամ ատամունս ունել, սուտ եղիցին երկոքին 'ի հարկէ. քանզի ոչ ևս ամանակն պահանջէ ժուատ և կամ ատամնաւոր[1] զՍոկրատէս գոլ։ Իսկ ոչ ելոյ՝ նոյն օրինակ երկոքեան սուտ. զի եթէ ինքն Սոկրատէս բոլորովին ոչ իցէ, ե՞րբ արդեօք ժուատ և կամ ատամնաւոր ասիցի։

Իսկ 'ի վերայ ստորասութեան կամ բացասութեան հարկ է միշտ զումեմէ ստորոգեսցին երկոքեան՝ զմին ճշմարիտ գոլ, իսկ զմիւսն սուտ. քանզի ելոյ Սոկրատայ՝ կամ հիւանդ գոլ կամ ոչ հիւանդ. սոյնպէս և ունել և

1 Յօրինակին գրեալ էր ներ ա-փան, երբ ատամնաւոր. զոր մեք եդաք պարզաբար ըստ յաջորդին։

րեսս և կամ ոչ ունել երեսս. իսկ ոչ ելոյ Սոկրատայ՝ միշտ բացասումն ճշմարտեսցէ, ոչ հիւանդ գոլ զՍոկրատէս, և ոչ ժօռաստ:

## ԳՐԱԿՔ Թ

### ԲԱՆ

Այս ներհական է 'ի հարկէ բարւոյ չարն, և սոքա յայտնին ըստ իւրաքանչիւր իւրեանց մակածութ՟. որպէս՝ ողջութ՟ հիւանդութիւն, և արդարութ՟ անիրաւութիւն, և արութեան՝ երկչոտութի. նմանապէս և 'ի վերայ այլոցն: Իսկ չարի՝ է զի բարին ներհական է, և է զի չարն. քանզի պակասոյ չարում ելումն առաւելն ներհական է չար: Այլ նմանապէս և ընդմիջութիւն ներհականք երկաքանչիւրումն, իբրու զի բարի է. և քանզի 'ի վերայ սակաւուց զայսպիսիս գիտասցէ ոք, իսկ 'ի վերայ յոլովիցն, միշտ չարումն բարին ներհական է:

Այլ ևս ներհականացն՝ ոչ հարկաւոր է, եթէ միւոն իցէ այլումն գոլ. քանզի ողջ ելոյ ամենեցուն՝ ողջութիւն եղիցի. բայց հիւանդութի ոչ: Սապէս և սպիտակացելոց ամենեցուն՝ սպիտակութիւն եղիցի. իսկ սեւութիւն ոչ: Այլ ևս՝ զի եթէ Սոկրատայ ողջն լինել՝ Սոկրատայ հիւանդանալոյն ներհական է, և ոչ ընդունի համանգամայն 'ի նմին գոլ երկոքինն, ոչ ընկալցի միոյ ներհականացն եղելոյ՝ և այլն գոլ. քանզի ելոյ Սոկրատայ ողջ, ոչ եղիցի հիւանդանալ Սոկրատայ. և յայտ է՝ զի առ նոյն տեսակի կամ սեռի բնաւորեցան լինել ներհականքն. քանզի հիւանդութիւն և ողջութ՟ ըն մարմնոյ կենդանւոյ. իսկ սպիտակութ՟ և սեւութ՟՝ պարզաբար ըն մարմնոյ. իսկ արդարութ՟ և անիրաւութ՟ հոգւոյ մարդոյ: Այլ հարկաւոր է ամենայն ներհականացն՝ կամ 'ի նմին սեռի գոլ, և կամ 'ի ներհական սեռս, և կամ ինքեանք սեռք գոլ. քանզի սպիտակ և սեաւ 'ի նմին սեռի. քանզի գոյն է սոցա սեռն. իսկ արդարութ՟ և անիրաւութ՟ 'ի ներհական սեռսն. քանզի ուրումն ա-

ռաքինութիւն, և ուրումն չարութիւնն է սեռ ։ Իսկ բարի և չար՝ ոչ են սեռի միում, այլ ինքեանք դիպեցան լինել ոմանց սեռք ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԱՐԱՐԵԱԼ իւր յառաջագոյն ներհակացն տրամատութիւն՝ ասաց զոմանս 'ի նոցանէ անմիջակս գոլ, իսկ զոմանս ներամիջակս ։ Եւ լցեալ աստանօր զյաղագս այլոց հակակայիցն ասուն, յիշէ դարձեալ ըզներհակացն, որք միանգամ հետևանան նոցա ։ Իսկ պիտանացու այսորիկ գիտութիւն առ 'ի տեղւոջն գոլ պատահեաց. քանզի ոչ դուզնաքեայ շահ բերէ առ տրամաբանութիւն ։

Բայց եթէ ասիցէ արդեօք, եթէ Չարի՝ է զի բարի, և է զի չար է ներհական. քանզի միումն երկուս ասէ գոլ ներհականս, ումեմն չարի զոմն բարի ներհական յայտնէ, և զոմն չար ներհական գոլ չարումն այնմիկ. մի՛ գուցէ ոչ ըստ որում չար, այլ ըստ որում առաւելազանցութիւն և նուազութիւն ներհական իւրաքանչիւրոց սոցա տեսանի ։ Քանզի չափաւորութիւն որ է բարի, իւրաքանչիւրոց ծայրիցն ներհական է, այլ և ծայրքն իրերաց, իսկ չափաւորութիւն ոչ ևս երկու, այլ միայն անչափութիւն. ապա ուրեմն անչափութիւն չափաւորութիւն, և չափաւորութիւն անչափութիւն ներհական է ։ Իսկ երկաքանչիւրոց ծայրիցն առաւելազանցութիւն չափաւորութիւն և նուազութիւն. իսկ նուազութիւն դարձեալ չափաւորութիւն և գերազանցութիւն ։

Արդ կացցէ մեզ առաջին՝ որպէս 'ի միոյ իրաց հաստատել զբանս. քանզի արութիւն որ է չափաւորութիւն, միջակ ելով ունի իւր ծայրս ըստ առաւելազանցութեան զյանդգնութիւն, իսկ ըստ նուազութեան զերկչոտութիւն. քանզի չափաւորութիւն է շարժումն առ որ վայելուչ և քանիւն և երբ. որպէս արութիւն շարժէ զարին՝ առ որ վայելուչ, իբր թէ առ պատերազմականսն ։ Իսկ քանիւն՝ մինչև իւր ոյժ իցէ պատերազմել, և առ որս կարիցէ զյաղթութիւն ունել՝ անվնաս զինքն պահելով ։ Իսկ երբ՝ յայտ է. 'ի հարկաւոր ժամանա-

կի՝ Թշնամեացն առընթեր կալով, և ամանակին պահանջելով զօգնականութիւն իւրոյ գաւառին։ Իսկ ծայրքն սորա անբաժ է իւրաքանչիւրոց ասացելոցս այսոսիկ. քանզի երկչոտն և ոչ երբէք շարժեսցի յարգելով զպատերազմականսն, այլ դողեալ յախտէն փութացուն բերէ միշտ։ Իսկ յանդուգն ըստ առաւելութեան շարժելով ոչ պահէ զչափաւորութիւն. քանզի ոչ միայն առ պատերազմականսն, այլ բազում անգամ և առ սիրելիս. և Թէպէտ և առ պատերազմականս, այլ ոչ քանիւն վայելուչ. քանզի յախորտելով բերի անբանաբար։ Այլ և ոչ զերթն. քանզի զհեշտութեան անմանակն, է երբէք զի զայսպիսիքս իբրև 'ի պատերազմի 'ի կիր առեալ՝ այսպէս սովորեցան։ Ապա ուրեմն արութեան բարւոյ ելոյ՝ մի է ներհական, որ է չարն. իսկ երկաքանչիւրոց ծայրիցն՝ յանդգնութեան՝ որ է չարութի, երկոքեանն են, ոմն ըստ չափաւորութեան, իսկ ոմն ըստ նուազութեան։ Իսկ երկչոտութեան դարձեալ չարուամ ելեամ՝ դարձեալ արութի ըստ չափաւորութեան, իսկ յանդգնութի ըստ գերազանցութե. ապա ուրեմն մէջն զի բարի է, մի ընդդէմ ներհակ՝ զչարն։ Իսկ երկաքանչիւրոց 'ի ծայրիցն չար ելով ըստ որում չար է՝ զբարին ներհական ունի, և ըստ որում առաւել կամ նուազ՝ զընդդիմական նոցա։

Յետ այսորիկ ասէ զներհակս ոչ հակակայիւ իբրև զառինչսն, զոր ժամանեալ մեք յառաջագոյն ասացաք՝ եթէ առինչքն համանգամայն են բնութ, իսկ ներհականքն ոչ ևս. և ասէ զոմն հասարակական՝ զոր ոչ հարկաւոր է դոլ, իբր թէ իցէ հնար զամենեսեան սպիտակս լինել՝ սպիտակութի եղիցի, իսկ սեւութիւն ոչ ևս. և ամենեցուն ողջ եղելոց՝ ողջութի եղիցի, իսկ հիւանդութի ոչ 'ի հարկէ. և 'ի վերայ հասարակականին այսպէս ասացի։ Իսկ 'ի վերայ անհատին եթէ իցէ յումն անհատութն ներհական, ընդդիմակն սոցա ոչ 'ի հարկէ եղիցի, այլ և բնաւ ոչ եղիցի. քանզի անհնար է համանգամայն զներհակսն դոլ. որպէս յառաջ ասացաւ։ Այլ ևս՝ ասէ զընդդունակս ներհակացն, կամ ըստ սեռին զներհակսն ընդունել և կամ ըստ տեսակի. քանզի սպիտակութե և սեւութե ընդունական ելով մարմին՝ ըստ սեռին

ընդունի . քանզի ամենայն բնական մարմին բնաբար ընդունական այսպիսեացս ։ Իսկ հիւանդութիւն և ողջութիւն ոչ ամենայն, այլ իբր այն թէ մարդոյ մարմին կամ ձիոյ և այլոցն . ապա ուրեմն ըստ տեսակի . սապէս և արդարութիւն և անիրաւութիւն ըստ տեսակի . քանզի մարդոյ անձն ։

Յետ այսորիկ փոխի գիտուն առնելով յաղագս դասութիւն սոցա . քանզի ոմանք 'ի ներհականցն, որպէս ինքն կամի, 'ի նմին պատահեցին գոլ սեռի . իսկ այլք 'ի ներհական սեռս . իսկ ոմանք ինքեանք սեռք ներհականք ելով ։ Բայց տարակուսեսցի ոք յիրաւի, իբր ինքեանք սեռք լիցին, որպէս զի ասացեալ ստորոգութիւնք երկոտասանք, այլ ոչ տասունք եղիցին ստորոգութիւնք . իսկ եթէ տասունք՝ ընդ միով ընդտասանցն դասելով սեռիւ, այլ ոչ ինքեանք եղիցին սեռք . մի գուցէ անխտիր ինքն անուամբս վարի, զոր հնար է առնուլ 'նայսմն տեղւոջ սեռ, իբր թէ տեսակ ։ Քանզի և յաղագս որակի և որակութիւն ասելով ասաց սեռ երկրորդ որակութիւն, և երրորդ . իբր այն եթէ տեսակ, ոչ խտրելով զառասութի անուանցն ։ Սոյնպէս և աստանօր առնլի է, իբր եթէ 'ի ներհական տեսակս, և կամ զինքեանս տեսակս գոլ ։ Նաև այսպէս յարմարեսցի բանս՝ ոչ ընդունելով ընդդիմակս . և կամ այն՝ եթէ իբր ընդդիմականցն սեռք ըստ նոյն և այլ գոլոյ, որպէս երբեմն ասացաւ, եթէ ըստ քանիս արդեօք յեղանակս, նոյնն և այլն ասի . քանզի կամ ըստ սեռի կամ ըստ տեսակի կամ ըստ թուոյ իւրաքանչիւրոք 'ի սոցանէ ասասցի ։ Նաև յարմարեսցի 'ի վերայ չարի և բարւոյ այսպէս սեռին անուանն, և լուծցին տարակուսանքն, ոչ տասն և երկուս, այլ միայն տասն զստորոգութիւնս գոլ . որպէս և ունի մակագրութիւնն ։

# ՅԱՂԱԳՍ

# ՆԱԽԿՆԻ

ՆԱԽԿԻՆ այլ այլոյ ասի քառակաբար. քանզի նախ առաջին և իսկագոյն և տիրագոյնն ըստ ժամանակի, ըստ որում երիցագոյն այլ այլոյ և հնագոյն և վաղագոյն ասի. քանզի վասն զժամանակն աւելի գոլ՝ երիցագոյն և հնագոյն և վաղագոյն ասի: Իսկ երկրորդ, որ ոչն հակադարձի ըստ գոլոյն հետևութե. որգոն՝ մի քան զերկուսն նախկին է. քանզի երկուց ելոց՝ հետևի անդէն միոյն գոլ, իսկ միոյ ելոյ՝ ոչ է հարկաւոր երկու գոլ. ապա ուրեմն ոչ հակադարձի 'ի միոջէն հետևութիւն գոլոյ զայլն. բայց նախկին թուի այսպիսիս գոլ, յորմէ ոչն հակադարձի գոլոյն հետևութի: Իսկ երրորդ՝ որ ըստ դասի իմն նախկին ասի, որպէս 'ի վերայ մակացութեցն և այլոցն. քանզի 'ի ապացուցական մակացութե գոյ նախկին և վերջին դասիւ. քանզի գիծք նախկինք քան զտրամագիծսն են դասիւ. զի սկզբունք նախկինք են քան զտեսուածսն դասիւ: Նոյն 'ի քերականութե տառքն նախկինք են քան զփաղառութիւնս. և 'ի վերայ բանից նմանապէս. քանզի նախերգութի քան զպատմութի նախկին է դասիւ: Նաև ևս առ յառաջասացելովքդ՝ լաւագոյնն և պատուականագոյնն՝ նախկին գոլ. այլ ոչ բնութե այս թուի. բայց սովորեցին և բազումք զպատուականագոյնսն և զյաւէտ սիրեցեալսն ինքեանց՝ նախկինս իւրեանց ասել գոլ. բայց գրեթէ օտարագոյն յեղանակաց՝ այսորիկ: Արդ որք ասինն նախկինին յեղանակք՝ այսքանք են:

Բայց թուեսցի և քան զասացեալսն այլ միւս ևս գոլ նախկինին յեղանակ. քանզի և է յայնց՝ որք հակադարձին ըստ գոլոյն հետևութեան, զպատճառն՝ որպէս զիարդ և իցէ միւսոյն գոլ նախկին՝ վայելչաբար ասասցի. և զի են այսպիսիք իմն՝ յայտ է, քան-

զի գոլն մարդ՝ հակադարձէ ըստ գոլոյն հետեւութե առ ճշմարիտն յաղագս իւր բանն. քանզի եթէ մարդ է, ճշմարիտ բանն է՝ որով ասեմք զի է մարդ, և հակադարձէ. և էր ճշմարիտ բանն ոչ միով իւիք պատճառք գոլոյ իրին, այլ իրն երեւի իմն իբրև պատճառք գոլոյ ճշմարիտ զբանն. քանզի վասն գոլոյ զիրն՝ կամ ոչ, ճշմարիտ՝ բանն կամ սուտ ասի: Իսկ ապա ըստ հինգ յեղանակս նախկինն այլ այլոյ ասի:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Քառակի, որպէս ասէ, մանաւանդ հնգակի նախկինն ասին յեղանակք. քանզի ըստ ժամանակի, և ըստ բնութեան, և ըստ դասի, և եւս՝ լաւագոյնն և պատուականագոյնն. և յետ այսորիկ հինգերորդն՝ ըստ պատճառի և ըստ պատճառելոյ: Արդ ըստ ժամանակի՝ որ է յայտնապէս ամենեցուն երիցագոյն և հնագոյն, իբր թէ տասնամանակեանն յիրաւի նախկին քան զհնգամանակեանն ասի. և յաւէտ առ այլ ասացեալս: Քանզի 'ի վերայ միոյ նախկինն ըստ ժամանակին՝ երկրորդութիւն երիցագոյն ոչ մարթի ասել. քանզի համբակ ելով նախկին ունելով զժամանակն, ըստ որում զայսպէսն բերէ ոխս. իսկ այր կատարեալ՝ երկրորդ զժամանակն: Այլ ոչ և երիցագոյն տղէն մանկութե քան զկատարելութե. քանզի երիցագոյնն ասի ըստ ծերութե. իսկ համբակն ոչ ասի ծերագոյն քան զկատարեալն, յայտ է՝ եթէ և ոչ երիցագոյն: Իսկ ըստ բնութե՝ որք ոչ հակադարձեն ըստ գոլոյն հետեւութե, որպէս մարդ և կենդանի. քանզի մարդոյ ելոյ՝ հարկաւոր է և կենդանին գոլ. իսկ կենդանւոյն ելոյ՝ ոչ եւս հարկաւոր է զմարդն գոլ. և նախ է կենդանին քան զմարդն գոլ. յայտ է՝ եթէ ոչ հակադարձէ ըստ բնութեան նախկինս այս՝ որ առ սոսայն ասի:

Յետ այսորիկ ըստ դասութե, որպէս զապացուցականս ասաց մակացութիս, զերկրաչափականս և կամ զաստեղաբաշխականս. քանզի առ այսպիսիս

դասիւ նախկինք սկզբունք, իբր թէ կէտ և գիծ և մակերեւութ, և որ միանգամ առ նոսա իբր խոստովանեալ առնանի. իսկ երկրորդք տրամագիծք. յետ այսորիկ և տեսութիւն: Նոյն դարձեալ առ ճարտասանսն որպէս և ’ի վերայ բանի՝ նախկին է նախերգանն, և երկրորդ՝ արտադրութիւն իրացն. իբր եթէ նահատակութիւն, և ապա մակաբանքն: Իսկ քառորդ յեղանակ լաւագոյնն և պատուականագոյնն ասի, իբր թէ ոսկի քան զարծաթ բնութեամբ ոչ նախկին, իսկ պատուական սովորեաց ասիլ: Նոյն ’ի զգեստս պարկեշտս քան զգեղջուկն նախկին սովորեաց ասիլ, և այլ որք միանգամ սոցին նման:

Իսկ պատճառն և պատճառելին թէպէտ և հակադարձին միմեանց, որպէս և ինքն ենթացոյց, սակայն պատճառն նախկին ասի քան զպատճառելին. քանզի Սոկրատայ ելոյ՝ ճշմարիտ է ասել յաղագս սորա, եթէ գոյ. և եթէ ճշմարիտ է ասել յաղագս Սոկրատայ՝ զի է, եղև և Սոկրատէս: Իսկ պատճառ է ոչ ճշմարիտն բան՝ ելոյն Սոկրատայ, այլ ելոյն Սոկրատայ՝ պատճառ եղև գոլոյ զճշմարիտն բան: Արդ թէպէտ և հակադարձին իրերաց, սակայն ոչ բանն իրացն՝ այլ իրքն պատճառ բանին. ապա ուրեմն իրքն պատճառք, իսկ ճշմարիտն բան յաղագս սոցա պատճառելի:

Բայց ոմանք կամին և այլ յեղանակս գոլ նախկնի, որպէս ըստ դրութեան կամ մատուցութեան կատարման. և ըստ դրութեան՝ որպէս ընդ սրահս դիրք սեանց, իբր թէ նախ արեւելեայս կանգնել, իսկ յետ այսորիկ զհետեւեալսն. և ըստ մատուցութեան կատարման, իբր եթէ նաւակառել՝ նախ իմացումն կատարելութեան նաւին, իսկ յետ այսորիկ որ ինչ հետեւանայ առ ներգործութի՝ կատարելութիւն եղև. քանզի կրկնակի կատարելութիւն է. է որ ’նիմացման, և է որ ներգործութեամբ. արդ ընդ գործս՝ կրսեր, իսկ ’նիմացման՝ առ այլսն նախ, իսկ առ նոյն ինքն առ կատարելութիւնն՝ նախկին ասացի: Բայց և այսոքիկ վերաբերին ’ի յառաջասացեալ յեղանակսն. քանզի ոմն ըստ դասուն, իսկ ոմն ըստ ժամանակի կամ պատուականութեան ասի: Նաև և ինքն այլուր զմասունս սահմանի

նախկին գոլ, քան եթէ զբաղկացեալն 'ի նոցանէ. և զընդելագոյնն 'ի զգայութեանց նոցին նախկին գոլ. քան եթէ զիմանալիսն. քանզի թէպէտ և ոչ ըստ բնութ̃, սակայն ըստ սովորութ̃ նախ պատահեմք զգալեացս, յետ այսորիկ 'ի ծանօթութ̃ գամք իմանալեացն ։

Իսկ այդ դուզնաքեայ ճառեցաւ յաղագս երկուց այսոցիկ յեղանակաց ստորանոր առ 'ի գիտել, զի և ինքն յիշէ և այլ ևս յեղանակս նախկնի. բայց սակայն զխնդիրն նոցա թողլի է, քանզի այլոյ տեսութ̃, այլ ոչ ըստ այժմու ժամանակիս ըմբռնն է ։

# ՅԱՂԱԳՍ

# ՀԱՄԱՆԳԱՄԱՑՆՑ

## ԲԱՆ

ՀԱՄԱՆԳԱՄԱՅՆՔ են պարզաբար և իսկագոյնք և տիրապէս՝ որոց լինելութիւնն 'ի նմին ամանակի. քանզի ոչ մին նախկին և ոչ վերջին է նոցա, այլ համանգամայնք ըստ ամանակի սոքա ասին ։ Իսկ բնութ̃ համանգամայնք, որք միանգամ հակադարձին ըստ գոլոյն հետևութ̃. բայց ոչ միով իւիք պատճառ այլ այլոյ գոլոյ է. որզան՝ 'ի վերայ կրկնապատկին և կիսոյն. քանզի հակադարձեն սոքա, վասն զի կրկնապատկի ելոյ՝ է կէս, և կիսոյ ելոյ՝ է կրկնապատկին. բայց ոչ միում ուրուք պատճառք գոլոյ է. և 'ի նմանէ սեռէ հակատարաբարձեալքն միմեանց՝ համանգամայնք բնութ̃ ասին ։ Իսկ հակատարաբարձիլ ասին միմեանց՝ ըստ նմինքն տարբերութ̃. որզան՝ թռչունն հետևակին և ջրայնոյն. քանզի սոքա միմեանց հակատարաբարձին 'ի նմին սեռէ ելով. քանզի կենդանին տարաբարձի յայսոսիկ, 'ի թռչունն և 'ի հետևակն և 'ի ջրայինն և 'ի ցամաքայինն, և ոչ ինչ սոցա նախկին կամ վերջին է, այլ համանգամայնք բնութ̃ այսոքիկ թուին գոլ ։

Եւ տարաբարձին եւ սոքա իւրաքանչիւր 'ի տեսակս դարձեալ, հետեւակ կենդանին, եւ թռչունն, եւ ջրային։ Եւ եղիցի եւ այն համանգամայն բնութք, որ միանգամ 'ի նմին սեռէ ըստ նմին տարաբարձութեն է. իսկ սեռքն միշտ քան զտեսակսն նախկինք. քանզի ոչ հակադարձ ըստ գոլոյն հետեւութե. որպէս՝ ջրայնոյ ելոյ՝ է կենդանին, իսկ կենդանւոյ ելոյ՝ ոչ հարկաւոր է ջրային գոլ։

Արդ համանգամայնքն բնութք ասին, որք միանգամ հակադարձին ըստ գոլոյն հետեւութե, բայց ոչ միով իւիք պատճառք գոլոյ այլ այլոցն է, եւ 'ի նմանեքն սեռէ՝ հակատարաբարձեալքն միմեանց. են միանգամայն պարզաբար համանգամայնք, որոց լինելութին 'ի նմին ժամանակի։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ նախկնիցն ծնանել իմն թուի զհամանգամայնցն յեղանակս, թէպէտ եւ նախասացեալ 'ի ստորոգութիւնն գտանեմք զհամանգամայնսն, որպէս եւ զառընչութիւն, այլ սակայն ոչ զամենայն յեղանակսն։ Այլ վասն զի ազդակցութի իմն առ նախկինսն համանգամայնքն ընդդիմին, թէպէտ եւ ընդդէմ թուիցի գոլ, սակս այսորիկ յետ նախկնիդ բանին՝ ասէ զհամանգամայնցն բան. քանզի եւ 'ի սոսա ասէ գոլ զոմն ըստ ժամանակի, իսկ զոմն ըստ բնութե։ Եւ որպէս 'ի վերայ նախկնին, զի զըստ ժամանակին ասաց իսկագոյն եւ մանաւանդ գոլ, սոյնպէս եւ 'ի համանգամայնս տիրագոյն եւ յաւէտ համանգամայնք ասին, որոց լինելութի 'ի նմին ժամանակի, որ է զգայութեան ընդելագոյն եւ ընտանի մերում բնութե։ Իսկ երկրորդ ըստ բնութեան, իբր եթէ միոյ ելոյ՝ հարկաւոր է եւ զմիւսն գոլ՝ որպէս ըստ առընչլին հակակայիլ։

Բայց գիտելի է, զի հինգերորդ յեղանակն նախկնին ասացեալ՝ հետեւանայ երկրորդ յեղանակիս այսմիկ. քանզի առ ինչ իմն օրինակ պատճառն եւ պատ-

ճառելոյն . ապա ուրեմն ըստ բնութեան համանգամայնքն վասն 'ի միասին գոլ հարկաւոր զամենեսեան, այլ ոչ և նոյնօրինակ ։ Վասնզի և 'ի սոսա ոմանք են՝ որ և ոչ միով իւիք պատճառք գոն եղելոյն իրերաց , որպէս կրկնապատիկն և կէսն . իսկ ոմանք իբր գոյ ոմն ուրումն պատճառ, որպէս իրն ճշմարտին յաղագս իւր բանի ։ Բայց ենթադրէ ոմն յեղանակի և ըղնմին սեռէ հակադրամատելս . քանզի համանգամայն այսպէս տեսակս ճանաչելոյն . ուսայք երբեմն ահա՝ եթէ հակադրամատեալքն իրերաց՝ յորմէ առաջինն և երկրորդ, ոչ զհասարակաց զսոցանէ ստորոգեալն իբր զսեռ ստորոգի ։ Ապա ուրեմն եթէ իբր սեռ և 'ի սեռէ ասին հակադրամատեալքս առաջինն և երկրորդ, ոչ ունի տեղին զայսոսիկ ասիլ համանգամայնք . ապա ուրեմն 'ի նմին սեռէ հակադրամատեալքն ասին ըստ երկուց յեղանակացս այսոցիկ՝ արտադրեալ ըղհամանգամայնսցն զանազանութիւն ։

Անփոյթ արար պատահել առ մնացեալ յեղանակս նախկնին . ինձ թուի իբրև հաւաստիս լեալս՝ ոչ համարեցաւ արժան յաղագս այսպիսեացս ասել ։ Իսկ եթէ ոք կամիցի ըստ դասի համանգամայն ասել, որպէս նախկնին ասիւր, զնմին սեռէ հակադրամատեալս, գիտասցէ՛ զի 'ի նոսա ոչ է առաջին և երկրորդ . ապա ուրեմն համանգամայն դասիւ ։ Ոչ իսկ ըստ լաւի և պատուականի զնոյնս ախորժակս ունի յառաքինութեն զոմանս ելով իբր եթէ ուսումնասէրք և կամ այլ ինչ այսպիսիք՝ ասասցեն համանգամայնք լաւագոյնք ։ Իսկ զնոյն պատիւ ունօղս և զնմանապէս մեծարեալսն 'ի ժողովոց՝ ասասցեն համանգամայն պատուագոյնս գոլ . որպէս զի քանիք յեղանակք նախկնին, այսքանք և համանգամայնսցն եղիցին ։

# ՅԱՂԱԳՍ

# ՇԱՐԺՈՒԹԵԱՆ

## ԲԱՆ

ՇԱՐԺՈՒԹԵԱՆ տեսակք են վեց. լինելութիւն, ապականութիւն, աճելութիւն, նուազութիւն, ըստ տեղւոյ փոփոխութիւն, այլայլութիւն։ Արդ՝ հինգ այնք շարժութիւնք երևելի են, զի այլք 'ի միմեանց են։ Քանզի ոչ է լինելութիւն ապականութիւն, և ոչ աճելութիւն նուազութիւն, և ոչ ըստ տեղւոյ փոփոխութիւն. սոյնպէս և այլքն։ Իսկ 'ի վերայ այլայլութեան ունի ինչ անհնարութիւն, մի գուցէ հարկաւոր էր այլայլել ըստ ումեմն՝ այլոց շարժութեանցն այլայլութիւն։ Իսկ այս ոչ ճշմարիտ. քանզի դրեթէ ըստ ամենայն ախտից, և կամ ըստ աւելեաց այլայլել պատահեաց մեզ. այլ քանզի և ոչ ըստ միոյ այլոց շարժութեանցն հաղորդակից ելոց. քանզի ոչ աճել հարկաւոր է, որ ըստ ախտին շարժի, և ոչ նուազել. սոյնպէս և 'ի վերայ այլոցն։

Սակայն ուրեմն այլ եղիցի առ այլովք շարժութեամբքն այլայլութիւն. քանզի եթէ նոյն էր, պարտ էր այլայլելոյն անդրէն աճել և նուազանալ, և կամ այլ ինչ այլոցն հետևել շարժութեանց, այլ ոչ է հարկ։ Սոյնպէս և որ աճէրն, և կամ այլ ինչ շարժութիւն շարժիւր՝ այլայլել. այլ են ինչ որ աճեն, որք ոչ այլայլին. որպէս՝ քառանկիւնին՝ անկեան փարագրեցելոյ՝ աճեցաւ, բայց այլայլագոյն և ոչ ինչ ոչ եղև. սոյնպէս և 'ի վերայ այլոց այսպիսեացն։ Սակայն ուրեմն այլք եղիցին շարժութիւնքն 'ի միմեանց։

# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՅԱՂԱԳՍ շարժութեանց քանի պիտանացու և առ տրամաբանականս է առ իւրեանցն պարապս, այլ և ոչ անգոսնելի բնական իմաստասիրութեան. սակս որոյ և ինքն ըն բնական լսողութեանն խնդրէ զէութիւն շարժութեան. վասն զի զամ բնական մարմին շարժիլ բնաւորեաց։ Իսկ 'նայսմ տեղւոջ յիշումն առնէ տեսակացն սորա, թէ ըստ քանիս արդեօք տեսակս տրամատիլ բնաւորեցաւ ։ Տեսակս ասաց որպէս հասարակագոյն իմն, թէպէտ և ոչ ամենեքին այսոքիկ տեսակք իցեն շարժութեան. քանզի այլ ուր զփոփոխումն վերագոյն ասէ գոլ, և ընդ փոփոխմամբ զլինելութիւն և զապականութիւն և զշարժութիւն. իսկ շարժութիւն դարձեալ քառակի, յաճելութիւն և 'ի նուազութիւն, յայլայլութիւն և 'ի բերումն ։ Արդ զի իբր կատարելագոյնք այնք տրամադրութիւնք են՝ ոչ խնդրելի. իսկ ըստ տեղւոյս ընկալեալ զսոսա իբր զտեսակս շարժութեան՝ զայս տարակուսանս լուծանել փորձեսցուք։ Քանզի և ոչ իւր անգէտ ելով զոմանց երկբայութիւն՝ որք սովորեցին ասել զայլայլութիւն նոյն ինքն գոլ յիւրաքանչիւր ումեքէ 'ի յառաջագոյն ասացելոցն ։

Արդ զայլովքն զանց արարեալ իբր հաւաստեցելոց՝ զի ոչ են 'ի միմեանց նոյն ինքն, քանզի ոչ լինելութիւն՝ ապականութիւն, և ոչ աճելութիւն՝ նուազութիւն. քանզի ոմն յոչէութենէ յէութիւն եղանի, իսկ ոմն 'նէութենէ ելով ստանայ առաւելագոյն իմն բաղկացութիւն, առ որ ունէրն յառաջագոյն զիւր գոյութիւն. այլ և ոչ նուազութիւն ապականութիւն. սապէս և ոչ ըստ տեղւոյն փոփոխումն ։ Թէպէտ և ոմանք կամին ըստ տեղւոյն փոփոխման գոլ զաճելութիւն և զնուազութիւն. քանզի մասնկանցն բերեցելոց իբր ըստ տեղւոյ փոփոխման աճել զբոլորն ասեն. որք յիւրեանցն անդէն յանդիմանին բանից. քանզի առ այլ և առ այլ իմն ըստ բանին եղիցի փոփոխել զմասնկունսն ։ Իսկ աճելն զբոլորն ոչ. քանզի 'ի բոլորին կրել իրս իմն՝ հարկ է և զմասունսն սորա հաւասարել կրիցն .

այլ ոչ զի՞նչ մասունքն՝ հարկաւոր ահա զբոլորն կրել. քանզի աճելոյ բոլորին և մասունքն աճեն. իսկ մասնը-կանցն ըստ տեղւոյն շարժելոյ՝ ոչ հարկաւոր զբոլորն շարժիլ. վասն որոյ և ինքն արհամարհելով զայսպիսի տարակուսանս, քանզի դուզնաքեայ և ախմարաց է ձեռնարկութիւնս :

Իսկ յաղագս այլայլութեան, որպէս ոչ վայրապար ելոյ խնդրոյս այսորիկ, ինքն տարակուսանայ՝ ի վերայ բերելով զլուծումն. և զի բնութ՟ ոչ նոյն ինքն է այլ-այլութիւն, յիւրաքանչիւրոք յայլոցն շարժութեանցն յայտ է. քանզի յայսմիկ և ոչ մի ոք այնպէս յամրու-սումն ելով, զի ընդդէմ ասել փորձեսցի : Բայց եթէ եթէ հետևանայ զայլայլութ՟ի իւրաքանչիւր ումեք այլոց շարժութեանց թուեսցի. և զայս յիրաւի ոք տա-րակուսեսցի. զոր և ինքն իմաստասէրս լուծանէ զտա-րակուսանսն ցուցանելով՝ զի այլայլութ՟ի այլոցն ոչ հետևանայ շարժութեանցն, և ոչ յայլոց շարժութեանցն ոք այլայլութ՟ե : Քանզի բնաւորեալք մեք այլայլել ըստ ախտից ՚ի մեզ եղելոց, ոչ ևս ՚ի հարկէ աճե-լութ՟ի և պակասութ՟ի հետևանայ. քանզի որ այժմ յախտէ՝ ջերմն կամ սպիտակ կամ քաղցր եղև, ոչ ևս՚ի հարկէ այնպիսին աճեաց կամ նուազեաց. ապա ուրեմն ոչ հետևանայ աճելութ՟ի կամ նուազութ՟ի այլայլութ՟ե. որպէս և ոչ մի ոք յայլոց շարժութեանցն:

Այլ և ոչ այլայլութ՟ի աճելութ՟ե և նուազութ՟ե. քան-զի որպէս ինքն ՚ի վերայ քառանկիւնոյն ասէ, աճել և նուազել հնարաւոր է զքառանկիւնին. իսկ այլ-այլել ոչ ևս. քանզի անկեան փարագրեցելոյ՝ աճումն ընդունի, իսկ այլայլի ոչ ևս. իսկ փարաբարձեցելոյ՝ նուազեաց, անայլայլ մնալով յիւրում ձևոջ : Քանզի աճեցեալ և նուազեալ ըստ անկեանն փարագրու-թեան կամ փարաբարձութ՟ ոչ եղև երկար կամ բոլորակ, այլ միշտ զիւրն պահեաց տեսակ. ապա ու-րեմն հնար է աճել և նուազել անայլայլ մնալով յիւ-րում ձևոջ: Ցուցաւ՝ զի և այլայլել հնարաւոր է առանց աճելութ՟ե և նուազութ՟ե, յայտ է՝ զի ինքն ըստ ինքեան այլայլութիւն տեսակ է շարժութ՟ե, այլ ոչ հետևանայ ՚ի հարկէ այլոց շարժութեանցն, որ-պէս վայել էր ցուցանել:

# ՊՐԱԿՔ Բ

## ԲԱՆ

Ո՞ր է պարզաբար շարժութեան դադարութիւն ներհական. իսկ ըստ իւրաքանչիւրոցն լինելութեան ապականութիւն, և աճելութեան նուազութիւն։ Իսկ ըստ տեղւոյն փոփոխութեան, ըստ տեղւոյն դադարութիւն մանաւանդ երևեցաւ հակակայիլ. և թերևս արդեօք 'ի ներհական տեղւոյն փոփոխութիւն. հիբար՝ ներքըստուածն՝ վերինն, իսկ վերըստուածն՝ ներքինն։ Իսկ այլայլութեան բացատրեցելոյ՝ շարժութեանցն ոչ դիւրին է բացատրել զի՞նչ արդեօք է ներհական. այլ երևեցաւ ոչինչ գոլ ինքն իւր ներհական։

Բայց եթէ ոք և 'ի վերայ այսորիկ զըստ որակին դադարումն հակադրիցէ այնմ, 'ի ներհական որակին փոփոխումն, որպէս 'ի վերայ ըստ տեղւոյն փոփոխութեան՝ ըստ տեղւոյն դադարումն, կամ 'ի ներհական տեղին փոփոխումն. քանզի է այլայլումն՝ փոփոխումն ըստ որակի։ Ապա ուրեմն հակակայեսցէ ըստ որակին դադարութեան ներհականն որակին փոփոխութիւն. որպէս սպիտակն լինել՝ սևուն լինելում, քանզի այլայլի 'ի ներհական որակին փոփոխութեան եղելոյ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԱՅՍ սովորութեան որպէս յայլսն յառաջ ասաց, սոյն՝ օրինակ՝ նայսմ տեղւոջ. նախ տրամատելով զշարժութիւնն եցոյց՝ եթէ քանի իցեն տեսակք. յետ այսորիկ՝ և զի ունէր տարակուսանս ինն 'ի վերայ այլայլութեան, խնդրեալ ելոյծ՝ որ թուէրն ընդդիմակն գոլ. և ցուցեալ՝ զի յատուկ ինքն ըստ ինքեան այլայլութիւն է, զկատարեալն թիւ 'ի վերայ եդ սոցա։ Իսկ յետ այսորիկ զհետևեալսն շարժումն ասէ՝ թէ իւրաքանչիւր ումեք շարժութեանց ներհական ինն գոյ. և ոչ միայն իւրաքանչիւրոցն, այլ և նմին ինքն շարժումն որ է սեռն ամենեցուն, ասէ ներհական գոլ զդադարութիւն. թէպէտ և այլուր հակա-

կայիւ ասէ զնոսա, ոչ իբրև զներհականս՝ այլ իբր զունակութիւն և պակասութիւն: Սակայն ՚նայիմ տեղւոջ հասարակաբար ինն օրինակ ներհակս անուանեաց: Իսկ ըստ իւրաքանչիւրոցն ՚ի վերայ լինելութեան և աճելութէ, յայտ է՝ զի ապականութիւն և նուազութիւն են ներհականք: Իսկ տեղւոյն փոփոխութեան իբրև սեռի եղոյ՝ ըստ տեղւոյն դադարութեան ներհական գոյ: Իսկ ըստ իւրաքանչիւրոց տեսակաց տեղւոյն փոփոխութեան. փոփոխութիւն յիւրաքանչիւրոց ՚ի նոցանէ, որպէս ինքն ասէ՝ ՚ի ներքուստումն՝ վերինն, իսկ ՚ի վերուստումն՝ ներքինն:

Դարձեալ զինչ և ասացէ ոք ՚ի վերայ այլայլութէ, զոյն յեղանակ պահելով. զի թէպէտ և ոչ ունիցի յայտնապէս ներհական, այլ սակայն ձևացուցանելով առ սեռն իւր՝ որ է շարժութիւն, և կամ առ համասեռն իւր՝ որ է ըստ տեղւոյն փոփոխութիւն, գտցէ և ՚ի վերայ ըստ այլայլութէ հասարակագունի՝ ըստ որակին այլայլութեան ներհական՝ զըստ որակին դադարութիւն: Քանզի սահմանեալ իւր զայլայլութիւն՝ փոփոխութիւն ասաց գոլ ըստ որակի. քանզի հասարակագունին եղիցի ներհական ըստ որակին դադարութիւն. իսկ ըստ իւրաքանչիւրոցն՝ քաղցրութեան՝ դառնութիւն, իսկ ջերմութեան՝ ցրտութիւն. նմանապէս և ՚ի վերայ այլոցն ամենեցուն:

## ՅԱՂԱԳՍ

# ՈՒՆԵԼՈՅ

### ԲԱՆ

ՈՒՆԵԼԴ ըստ յոլով յեղանակս ասի, կամ իբր ունակութիւն և տրամադրութիւն, կամ ըստ այլոյ ինչ որակութէ. քանզի ասեմք մակացութիւն ինչ ունել, և առաքինութիւն. կամ որպէս քանակ. որպէս՝ որ դիպի ոք ունել մեծութիւն. քանզի ասի եռականգուն մեծութիւն ունել, կամ քառականգուն. կամ որպէս որ շուրջ զմարմնովքն են. որպէս՝ հանդերձ կամ պատ-

մուճան· կամ որպէս 'ի մանկան· որգան՝ 'ի ձեռին մատանի· կամ որպէս մասն· որգան՝ զձեռն կամ զոտն· կամ որպէս յամանի· որկէն՝ կեղծն զցորեանսն և սափորն զգլխնին· քանզի զգլխնին ունի սափորն, և կեղծն զցորեանն ։

Արդ այսոքիկ ամենեքեան ունել ասին, որպէս ՚նամանով, կամ որպէս ստացուած· քանզի ունել տուն և վայր, ասեմք, և կին ունել, և կինն այր ։ Բայց երևեցաւ օտարագոյն ունելոյս՝ այժմու ճառեցեալ յեղանակս գոլ· քանզի ոչ այլ ինչ ունելով կին նշանակեմք, բայց զի շարաբնակեալ է ։ Բայց թերևս և այլք ոմանք երևեսցին ունելոյ յեղանակ, բայց սովորեալքս ասիլ գրեթէ ամենեքեան թուեալք և հաշուեալք եղեն այսոքիկ ։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Ի տասանց ասացելոց ստորոգութեանց մի ելով և ունելս, և ուսուցանէ ՚նայսմ տեղւոջ յաղագս սորա, և տանէ տրամատութիւն ըստ ութ յեղանակս զանազանելով զիւրաքանչիւրոց ունելոյն 'ի զանազան տարբերութիւն, զոմն ըստ որակութեան, իսկ զոմն ըստ քանակութեան, և զայլս ըստ փարադրութեան զմարմնով· իսկ զմիւսն որպէս մասն· և առ սմին իբր 'ի մանկան ասէ, և իբր ՚նամանում· և դարձեալ իբր ստացուած· իսկ ութերորդ զայլն կին ունել, և զկինն այր ։ Վասն որոյ և ինքն բացերևոցէ օտար գոլ զայսպէս ունակութիւս յունելոյն յեղանակաց· քանզի հոմապատիւք ըստ ունելն ասին, սակս որոյ և հակադարձեն առ միմեանս ։

Բայց խնդրեսցէ ոք յիրաւի, իբր ունելս ստորոգեսցի զասիցելոց յեղանակացս, արդեօք իբր յոքնաբայն ասիցելոց· քանզի ասէ՝ ասիլ ըստ բազում յեղանակս, որ է հոմանունաբար, այլ ոչ փաղանունաբար ստորոգիլ ։ Ապա եթէ այս՝ ոչ իբր սեռ ունելս ասասցի, այլ իբրև ձայն նշանական զոմանց ստորոգեալ, որպէս զի ոչ շարադասեսցի և թիւ ընկալցի ընդ տասն ստորոգութիւնս ։ Ուստի և զտեղին փոխեաց· քանզի կարգաւոր էր զդաս ընդունել նիւ-

րում տեղւոջ որ է առընթեր ստորոգութեանցն դասին․ իսկ աստանօր յանգման գրոցս կարգեաց զյաղագս ունելոյն բան ։

Ասէ զայս յառաջագոյն իւր ասացեալ, որպէս 'ի վերայ ուրեմն կամ կալոյն բաւական համարեալ զգաղափարաւ ասացեալս, զոմն իբր եթէ ըն լիկիոջ, կամ ներ աստուս․ իսկ կալն՝ ընկողմանելն կամ զնստելն սոյնպէս և զերրն․ նմանապէս և մակ ունելոյս բաւական ասաց գոլ զըստիմանելն զզինելն․ մի գուցէ լուծանելով զոմանց կարծիս, և հաստատելով զիւր ասացեալսն․ որպէս երբեմն ասաց՝ թէ տարակուսել 'ի վերայ այսպիսեացս ոչ անպիտան է՝ ասացեալ նախ իբր գաղափարաւ ։ Իսկ յայսմ տեղւոջ առնէ տրամատութիւն ունելոյն, զի մի վայրապար կարծեսցի թուիլն ասացեալ ըն ստորոգութիւնսն ունելս, այլ իբրև սեռականագոյն ընդ նոսին ընկալցի դաս․ քան զի զանազան տեսակաց եցոյց զունելն ստորոգիլ ։ Քանզի որպէս 'ի վերայ այլոց սեռիցն՝ սեռն պարզաբար ասի այս ինչ․ իսկ ենթանկեալքն ընդ նովաւ տեսակք՝ ըստ զանազանս տարբերութիս զիւրաքանչիւր ուրուք նշանակեն զգոյացութիս ։ Սոյնպէս և Նայսմ տեղւոջ սեռականագոյնս ասացի՝ ունելս ։

Իսկ զիւրաքանչիւրոցն տեսակացն ըստ իւրաքանչիւր ունակութեանցն զառաստութի ընկալցին յորակէ անտի որակ ընդունել, իսկ 'ի քանակէն քանակ, և յայլոցն ըստ յարմարութե ունելոյն զանազանեսցին տեսակքն 'ի միմեանց ։ Ասէ այսուիկ եղիցի զյոլովից և զտարբերեցելոց 'ի միմեանց տեսակաց ստորոգեալ ունելս․ որպէս զի եղիցի սեռ՝ ընդունելով զսահման սեռի․ քանզի էր սահման սեռին, որպէս ասացաւ, Օ յոլովից և զտարբերեցելոց տեսակաւ 'ի ներում զինչէն ստորոգեալ ։

ԿԱՏԱՐԵՑԱՒ ՏԱՍՆ ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՍՆ
ԱՍԱՑԵԱԼ ՅԵՌԱՄԵԾԷՆ ԱՐԻՍՏՈՏԷԼԷ
ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ՅՈՒՆԱՐԷՆ ԶԱՅՆԻ ԿԱՏԻՂՕՐԻԱՍ
ԹԱՐԳՄԱՆԵԱԼ ԵՒ ՄԵԿՆԵԱԼ
Ի ԴԱՒԹԷ ՆԵՐԳԻՆԱՑԻՈՅ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

## ՅԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ

# ՍԿԻԶԲՆ ԵՒ ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## ԳՐՈՑՆ ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ՅՈՒՆԱՑ

# ՊԵՐԻԱՐՄԷՆԻԱՍ

## ԵՒ ՀԱՅԵՐԷՆ

## ՅԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ

## ԱՐՏԱԴՐԵԱԼ Ի ՄԵԾ ԻՄԱՍՏՆՈՑՆ ԱՐԻՍՏՈՏԷԼԷ [1]

ՆԱխ արժան է դնել, զի՞նչ է անուն, և զի՞նչ է բայ. ապա զի՞նչ է բացասութիւն, և ստորասութիւն, և բացերեւութիւն, և բան։

## ՊՐԱԿՔ Բ

Արդ են ներ ձայնովքն ներ անձինցն ախտիցն նշանակք, և գրեցեալքն՝ ներ ձայնոցն. և որպէս գիրքն ոչ ամենեցուն նոյնք, և ոչ ձայնքն նոյնք։ Բայց որոց այսոքիկ նշանակք առաջնոցն՝ սոքին ամենեցուն նոյն կիրք անձինն. և որոց այսոքիկ նմանութիւնք՝ իրք ահա սոքա. արդ յաղագս այսոցիկ ասացեալ է ներ յաղագս ոգւոյն՝ քանզի այլոյ իրի է։

1 Առաջինկայս գործ այնչափ խրթնացեալ է 'ի նիւթական թարգմանութեն, և 'ի խառնակ գրութե անգրաղէտ գրչաց, մինչ զի չէր արժան տպագրութեն 'ի լոյս ընծայել. այլ զի մի կորիցէ յիշատակ հնութե, յանձն առաք և զայս աշխատութիւն, բաղդատելով լուտ կարի և ընդ յոյն բնագրին. թէպէտ և այնպէս տակաւին անխմանալի մնան խմաստքն բազում ուրեք։

## ԳՐԱԿՔ Գ

ԱՅԼ է որպէս ՚նանձին իմացուածս առանց ճշմարտել կամ ստել. և է որոց հարկաւոր է սոցա գոլ միումն. այսպէս և ներ ձայնոյն. քանզի 'ի շարադրութեան և 'ի տրոհութեան է ճշմարիտն և սուտն։

## ԳՐԱԿՔ Դ

ԱՐԴ սոքին իսկ անուանքս և բայքս՝ երևին առանց շարադրութեան և տրոհութեան յիմացուածսն. որպէս՝ մարդ կամ սպիտակ. և յորժամ ոչ առդիցի ինչ՝ չև ևս է, ոչ սուտ և ոչ ճշմարիտ. բայց նշանակք միայն են այսոքիկ։ Եւ քանզի Եղջերուաքաղ նշանակէ ինչ, բայց չև ևս ճշմարիտ ինչ կամ սուտ, եթէ ոչ զգոյն, կամ զոչն գոլ առդիցէ, կամ պարզ կամ ըստ ժամանակի։

## ՅԱՂԱԳՍ

# ԱՆՈՒԱՆ

ԱՆՈՒՆ է ձայն նշանական ըստ շարադրութեան առանց ժամանակի. որոյ ոչ ինչ մասն է նշանական զատեալ։ Քանզի ներ գեղեցկաձիոյն, ձիդ ոչ ինչ ըստ ինքեան նշանակէ, որպէս ներ բանին, գեղեցիկ ձի։ Բայց սակայն ոչ որպէս ներ պարզ անուանս, այսպէս ունի և ներ մանուեալսն. քանզի ներ նոցայ ոչ միով իւիք մասն նշանական. իսկ ներ սոցայ կամի՝ է, այլ ոչ ուրեք զատուցելոյ. որգամ՝ յածեղաձիոյն, եղաձին։

## ՊՐԱԿՔ Գ

Իսկ ըստ շարադրութեան, զի բնութիւն անուանց ոչինչ է, [1] այլ յորժամ եղիցին նշանակ․ բայց նշանակեն և անգիր թնդմունք․ որպէս՝ գազանաց, որոց ոչինչ է անուն։ Բայց ոչ մարդ՝ ոչ անուն։ Բայց սակայն և ոչ կայ անուն․ զի՞նչ պարտ է կոչել զդա։ Քանզի ոչ բան և ոչ բացասութիւն է, այլ եղիցի անուն անորոշելի․ իսկ Փիլոնայ, կամ Փիլոնի, և որքան միանգամ այլ ինչ այսպիսիք, ոչ անուանք՝ այլ հոլովք անուանց։ Եւ բան է սորա այլն ամենայն․ ըստ նմին և հանդերձ էիւն, կամ էրն, կամ եղիցին, ոչ ճշմարտէ կամ ստէ․ բայց անունն միշտ․ որպէս՝ Փիլոնի է, կամ ոչ է․ քանզի չև ևս ոչ ճշմարտէ, և ոչ ստէ։

## ՅԱՂԱԳՍ

## ԲԱՅԻ

Բայ է որ առնշանակէ ժամանակ՝ որոյ մասն ոչինչ նշանակէ զատ, և է միշտ զայլմէց ասիցելոցն նշանակ։ Եւ ասեմ, զի առնշանակէ ժամանակ․ որպէս՝ ողջութիւն՝ անուն, իսկ ողջ է՝ բայ․ քանզի առնշանակէ զայժմ գոյն․ և միշտ զայլմէց ասիցելոցն նշանակէ․ որկէն՝ ենթակայից և կամ, ՚նենթակայոջաց ասիցելոցն է։ Իսկ ոչն ողջ է, և ոչն վաստակէ, ոչ բայ ասեմք․ քանզի առնշանակէ ժամանակ, և միշտ զումեքէ գոյ։ Բայց տարբերութեան անուն ոչ կայ, այլ եղիցի անորոշելի բայ․ զի նմանապէս է՝ յորոյ վերայ

1 Յաւելուած հայ բնագրին։

* Եւ թէպէտ են ըստ բնութեան ձայնք ընդ գրով անկեալ, սակայն անուանք ոչ առին ||։

է, եւ եղոյ եւ ոչ եղոյ։ Բայց նմանապէս եւ ողջացաւն կամ ողջասցին, ոչ բայ, այլ հոլով բայի. բայց տարբեր է բայի, զի սա զներկայն նշանակէ ժամանակ, իսկ նա զշուրջն։

## ՊՐԱԿՔ Բ

Արդ սոքա ինքեանք ըստ ինքեանս ելով[1] բայքս՝ անուանք են, եւ նշանակեն ինչ. քանզի կացուցանէ՝ զոր ասէն զտրամախոհութիւն, եւ որ լուաւն դադարեաց. այլ թէ է կամ չէ, չեւ եւս նշանակէ։ Քանզի ոչ եթէ գոլն կամ ոչն գոլ՝ նշանակ է իրին, եւ ոչ եթէ լոկ միայն ինքն զէակն ասասցես. քանզի սա ոչ ինչ է, բայց առնշանակէ շարադրութիւն ինչ, որոյ առանց շարադրեցելոցն ոչ է իմանալ։

## ՅԱՂԱԳՍ

## ԲԱՆԻ

Բան է ձայն նշանական, որոյ մասանցն ինչ նշանական է զատ. իբր ասութիւն, այլ ոչ իբր ստորասութիւն. եւ ասեմք որգան՝ մարդ նշանակէ ինչ, այլ ոչ եթէ է, կամ եթէ ոչ է։ Այլ եղիցի ստորասութիւն, կամ բացասութիւն, եթէ ինչ առդիցի. այլ ոչ եթէ մարդոյն փաղառուն մու։ Քանզի եւ ոչ ներ թակն, ակն նշանական, այլ ձայն է այժմ միայն. իսկ ներկապատիկն[2] նշանակէ է, այլ ոչ ըստ ինքեան, որպէս եւ յառաջն ասացեալ է։

1 Այլ օրինակ ասացեալ։

2 Այլ օրինակ Ներ պարիկն։

## ՊՐԱԿՔ Բ

Եւ է բան ամենայն նշանական, ոչ իբր զգործի, այլ որպէս ասացեալ է, ըստ շարադրութեան. իսկ բացերեւական, ոչ ամենայնն այլ յորում ճշմարտելն կամ ստելն իք. բայց ոչ յամենեսին իք. որկէն՝ իղձքդ, բան. այլ ոչ ճշմարիտ և ոչ սուտ, այլ այլքըն 'ի բաց կացցեն. քանզի ըն ճարտասանութեան կամ քերթողութեան ընտանեգոյն է որոշմունս: Իսկ բացերեւականս արդեան տեսողութեաս, և է մի՝ առաջին բան բացերեւական, ստորասութիւն, ապա բացասութիւն. իսկ այլքն ամենեքին շաղկապաւ մի: Բայց հարկ է զամենայն բան բացերեւական յարտաբայէ գոլ, կամ 'ի տապալմանէ. և քանզի վասն մարդոյն բան, եթէ ոչ զէն, և կամ զեղիցին, կամ զայլ ինչ զայսպիսեացն առ դիցի, չև ևս բան բացերեւական: Եւ վասն զի մի է, այլ ոչ բազում, կենդանի, հետեւակ, երկոտանի: Քանզի ոչ 'ի շարադասելոյ մի եղիցի. բայց է այլոյ այս գործառնութեան ասել:

## ՊՐԱԿՔ Գ

Եւ է մի բան բացերեւական, կամ որ մի յայտնէ, կամ որ շաղկապաւ մի. և բազումք՝ որ բազումս, և ոչ մի, կամ անշաղկապքն: Արդ անուն կամ բայ՝ ասութիւն եղիցի միայն, վասն զի ոչ է ասել այնպէս յայտնել ինչ ձայնիւ, մինչ զի բացերեւեցել, կամ հարցեալ ուրուք, կամ ոչ. այլ իւր յառաջագոյն կամեցելոյ. և սոյց պարզն է բացերեւութիւն. որպակ՝ ինչն զումեմնէ, կամ առ ումեքէ: Իսկ արդ սոյցն շաղկայն. որգան՝ բան ինչն. ահա շարադրելի:

## ԳՐԱԿՔ Դ

Եւ է պարզ բացերևութիւն ձայն նշանական, յաղագս գոլ ինչ, կամ ոչ գոլ. որպէս ժամանակքն բաժանեալք. և ստորասութիւն է՝ բացերևութիւն ուրուեմն զուրուեմնէ. իսկ բացասութիւն՝ բացերևութիւն ուրուեմն ապ ուրուքէ: Եւ վասն զի է և զլիքն երևեցուցանել իբրև զլիք, և զչլիքն իբրև զչլիք. և զլիքն իբրև զչլիք, և զչլիքն իբրև զլիք. և շուրջ զարտաքոյսն այժմու ամանակին, սոյնպէս զամենայն ինչ ներկայլցի, զոր ստորասեացն ոք ապասացել, և զոր ապուսեացն ոք ստորասացել. ապա ուրեմն յայտնի է, զի ամենում ստորասութեան է բացասութիւն հակակայ, և ամենում բացասութեան ստորասութիւն: Եղիցի հակասութիւն այսպէս. ստորասութիւն և բացասութիւն հակակայեալք. և ասեմ հակակայիլ՝ զսորին այսորիկ զամէնէ. բայց ոչ համանուանակի. և որքան այլք ևս զայսպիսեացն հակորոշեմք առ իմաստականս խանդութիւս:

## ԳՐԱԿՔ Ե

Եւ վասն զի են ոմանք ըստ բոլորէ զիրացն, և ոմանք ըստ իւրաքանչիւրոցն. և ասեմք ըստ բոլորէ՝ որ 'ի վերայ յոլովիցն բնաւորեցաւ ստորոգիլ, և իւրաքանչիւրոցն որ ոչ. որպէս՝ մարդ՝ ըստ բոլորեցն, իսկ Կալլիաս ըստ իւրաքանչիւրոցն, հարկ է բացերևացել որպէս իք, կամ չիք. և է յորժամ զբոլորեցն իմիք, և է՝ յորժամ զըստ իւրաքանչիւրոցն:

Արդ եթէ զբոլորէն բացերևեսցէ 'ի վերայ ըստ բոլորին. եթէ իք, կամ ոչ, եղիցի ներհական բացերևումն. և ասեմ 'ի վերայ ըստ բոլորէն բացերևեցել զբոլորէն. որպէս ամենայն մարդ սպիտակ. ոչ ոք մարդ սպիտակ: Իսկ յորժամ 'ի վերայ ըստ բոլորեցն,

և ոչ զբոլորէ, ոչ են ներհականք, բայց զազդեցեալսն իք, զոլ ներհականք, և ասեմ զըստ բոլորէն երևեցել 'ի վերայ ոչ զբոլորեցն. որպէս՝ իք սպիտակ մարդ, ոչ իք սպիտակ մարդ. քանզի ըստ բոլորէ ելոյ մարդոյն, ոչ իբր զբոլորէ վարիլ բացերևութեան. քանզի ոչ ամէն, ոչ զբոլորէն նշանակէ, այլ թէ ըստ բոլորէ: Իսկ 'ի վերայ ստորոգիցելոյն՝ ոչ ըստ բոլորէն ստորոգել զբոլորէն, ոչ իք ճշմարիտ. քանզի և ոչ մի ստորասութիւն եղիցի, ՚նորում ստորոգիցելոյն ըստ բոլորէն, ստորոգի զբոլորէն. որպէս՝ իք ամէն մարդ, ամէն կենդանի:

## ԳԼՈՒԽ Է

Արդ հակակայիլ ստորասութիւն բացասութեան, ասեմ հակասութիւն, զըստ բոլորէն նշանակելով նմին զոչ ըստ բոլորէ. որպէս՝ ամէն մարդ սպիտակ, ոչ ամէն մարդ սպիտակ. ոչ ոք մարդ սպիտակ, է ոմն մարդ սպիտակ: Իսկ ներհակ զըստ բոլորէ ստորասութիւն, և զըստ բոլորէն բացասութիւն. որպէս՝ ամէն մարդ արդար, ոչ ոք մարդ արդար. և վասն զի զայսոսիկ, ոչ գոյ կար համանգամայն ճշմարիտ գոլ: Իսկ զներհականս սոցա ներընդունի 'ի վերայ սորին. ոչ ամէն մարդ սպիտակ, և է ոմն մարդ սպիտակ. քանզի ոչ ամէն ոչ զըստ բոլորէն նշանակէ:

Արդ որքանք հակասութիւնք զըստ բոլորեցն են զբոլորէ, հարկ է զոմն ճշմարիտ գոլ, կամ սուտ. և որքանք 'ի վերայ ըստ իւրաքանչիւրոցն սոյնպէս. որպէս՝ իք Սոկրատէս սպիտակ. Սոկրատէս ոչ սպիտակ: Իսկ որքանք 'ի վերայ ըստ բոլորեցն, և ոչ զբոլորէ, ոչ միշտ ոմն սուտ, և ոմն ճշմարիտ. քանզի համանգամայն ճշմարիտ իք ասել. թէ իք մարդ սպիտակ, և եթէ ոչ իք մարդ սպիտակ. և իք մարդ գեղեցիկ, և ոչ իք մարդ գեղեցիկ. քանզի եթէ զազիր՝ ոչ գեղեցիկ, և եթէ լինի ինչ, և ոչ իք:

## ՊՐԱԿՔ Է

Բայց թուեսցի յանկարծօրէն անտեղի գոլ. վասն զի երեւի նշանակելով, ոչ իք մարդ սպիտակ՝ համանգամայն այնմ թէ և ոչ ոք մարդ սպիտակ։ Բայց այս ոչ զնոյն նշանակէ, և ոչ համանգամայն 'ի հարկէ. և երեւելի է, զի և մի բացասութիւն ըստ միոյ ստորասութե. քանզի զնոյն պարտ է բացասոցել զբացասութի, զոր ստորասեացն ստորասութի. և ապոմնել. կամ ըստ իւրաքանչիւրոցն ումեքէ. կամ ապ ըստ բոլորեցն իմեքէ. կամ իբր ըստ բոլորէ, և ոչ զբոլորէ։

Իսկ ասեմ, որպէս՝ իք Սոկրատէս սպիտակ, ոչ է Սոկրատէս սպիտակ. և եթէ այլ ինչ, կամ ապ այլոյ, զնոյն ոչ հակակայ, այլ եղիցի նորա միւս ևսն, ամենուամ մարդ սպիտակ՝ ոչն ամէն մարդ սպիտակ, և ումեմն ոմն մարդ սպիտակ՝ ոչն ոք մարդ սպիտակ, իսկ իքուամ մարդ սպիտակ՝ ոչ իք մարդ սպիտակ։ Արդ զի մի բացասութի, միում ստորասութե հակակայէ՝ բացերևակի. և ոյք են սոքա. ասացեալ են, և զի են ներհականք այլք. և ո՞յք են սոքա, և զի ոչ ամէն ճշմարիտ կամ սուտ հակասութի են. և վասն է՞ր, և ե՞րբ ճշմարիտ կամ սուտ։

## ՊՐԱԿՔ Ը

Բայց մի է ստորասութի և բացասութի, կամ մի զմիոջէ նշանակելով, կամ զբոլորէ ելոյ զբոլորէ, կամ ոչ նմանապէս. որպէս՝ ամենայն մարդ սպիտակ է, և ոչ իք ամենայն մարդ սպիտակ. իք մարդ սպիտակ, չիք մարդ սպիտակ. ոչ ոք մարդ սպիտակ, ոմն մարդ սպիտակ, թէ սպիտակն մի նշանակէ, իսկ եթէ երկուց մի անուն կայցէ։ Արդ որոց չիք մի, ոչ մի ստորասութի, և ոչ մի բացասութի. որպէս՝ թէ ոք դիցէ անուն հանդերձ ձիոյ և մարդուամ, իքն

համդերձ սպիտակ, սա ոչ մու ստորասութիւն, և ոչ բացասութիւն մու. քանզի ոչ ինչ տարբեր է ասել, թէ իք ձի մարդ սպիտակ. և կամ թէ իք ձի սպիտակ, և իք մարդ սպիտակ: Արդ եթէ սոքա բազումս նշանակեն, և են բազումք, յայտ է թէ առաջինն բազումս նշանակէ, կամ ոչ ինչ. քանզի չիք ոք ձի մարդ. ապա ուրեմն և ոչ ներ նոջա հարկաւոր զոմն ճշմարիտ, և զոմն սուտ հակասութիւն գոլ:

Արդ մակ էակացն և եղելոց՝ զստորասութիւն կամ զբացասութիւն ճշմարիտ գոլ կամ սուտ, և մակ ըստ բոլորեցն իբր զբոլորէ՝ միշտ զոմն ճշմարիտ, և զոմն սուտ, և մակ ըստ իւրաքանչիւրոցն, որպէս ասացեալ է: Իսկ մակ ըստ բոլորեցն ասիցելոց և ոչ զբոլորէ, ոչ հարկաւոր, ասացեալ և յաղագս սորա:

## ԳՐԱԿՔ Թ

ԻՍԿ մակ ըստ իւրաքանչիւրոցն, և համդերձելոցն, ոչ նմանապէս. քանզի եթէ ամենայն ստորասութիւն և բացասութիւն ճշմարիտ կամ սուտ է. ապա ամենայնի հարկ է, կամ գոլ, կամ չգոլ: Զի եթէ ոմն ասասցէ լինոցել ինչ, և ոմն ոչ ասասցէ զսոյն զայս. յայտ է եթէ հարկ է ճշմարտել զոմն սայց, թէ ամենայն ստորասութիւն և բացասութիւն ճշմարիտ, կամ սուտ. քանզի երկոքեին՝ ոչ են համանգամայն 'ի վերայ այսպիսեացս: Քանզի եթէ ճշմարիտ է ասելն, եթէ սպիտակ կամ ոչ սպիտակ, է հարկաւոր գոլ սպիտակ, կամ ոչ սպիտակ. և եթէ իք սպիտակ, կամ ոչ իք սպիտակ, ճշմարիտ է ասել, կամ ապուսել. եթէ ոչ, ստէ. և եթէ ստէ՝ չիք. ապա հարկ է զստորասութիւն, կամ զբացասութիւն ճշմարիտ գոլ, կամ սուտ: Այլ եթէ այս ոչ, ապա ուրեմն ոչ ինչ, ոչ իք և ոչ լինի, և ոչ 'ի դիպուածոյ. և ոչ ուր ումեք և դէպ լիցի, ոչ եղիցին, և ոչ որ ոչ եղիցին, այլ 'ի հարկէ ամենայն. և ոչ ուր ումեք և դէպ է. զի կամ որ ստորասեացն՝ ճշմարիտ է, և կամ որ ապուսեաց թէ նմանապէս արդեօք լինէր, կամ ոչ լինէր:

Վասնզի ում ումեք և դէպ է, և ոչինչ առաւել այսպէս, և ոչ այնպէս ունի կամ կալցի ։

## ՊՐԱԿՔ Ժ

Եւ ևս՝ եթէ իք սպիտակ այժմ, ճշմարիտ էր ասել յառաջագոյն՝ թէ եղիցի սպիտակ ։ Իսկ ապա միշտ ճշմարիտ էր ասել յառաջագոյն, զինչ և էր յեղելոցն, եթէ եղիցի. և եթէ ճշմարիտ էր ասել յառաջագոյն, թէ է կամ եղիցի, ոչ կար այս ոչ գոլ, և ոչ՝ ոչ լինոցել. իսկ որ ոչ կար ոչ եղանիլ՝ անկար ոչ եղանիլ. իսկ որ անկարն ոչ եղանիլ, հարկաւոր եղանիլ ։ Իսկ ապա զամենայն զհանդերձեալսն հարկաւորապէս էր եղանիլ. ապա ոչինչ ուրեմն ում ումեք և դիպէր, և ոչ 'ի դիպուածոյ եղիցի. քանզի եթէ 'ի դիպուածոց, ոչ 'ի հարկէ ։ Բայց սակայն և ոչ որպէս չէզոք՝ ճշմարիտ ներընդունելի ասել. որզան՝ եթէ ոչ եղիցի, և ոչ ոչ եղիցի ։ Վասնզի և նախ առաջին ելոյ ստորասութեն ստի՝ բացասութեն ոչ ճշմարիտ, և սորա ստոյ ելոյ՝ զստորասութեն պատահեսցէ ոչ ճշմարիտ գոլ ։ Եւ առ այսոքիւք՝ եթէ ճշմարիտ էր ասել, եթէ սպիտակ և ոչ սպիտակ, սեաւ պարտ էր երկուցն գոլ. եթէ գոլ 'ի վաղիւ, և եթէ ելոցել 'ի վաղիւ, և եթէ ոչ գոլ 'ի վաղիւ, ոչ ելոցել 'ի վաղիւ, և եթէ ոչ եղիցի, և ոչ ոչն եղիցի 'ի վաղիւ. ապա ոչ եղիցի ում ումեքն դէպ է. որզան՝ նաւամարտութեն, քանզի դիպեսցի ոչ լինել նաւամարտութեն, և ոչ ոչ լինել նաւամարտութեն ։

Արդ որք պատահեն, այսոքիւք անտեղիք, և այսպիսիք այլք. զի եթէ ամենայն ստորասութեն և բացասութեն, կամ 'ի վերայ ըստ բոլորեցն ասիցելոց, իբր զբոլորէ, կամ 'ի վերայ ըստ իւրաքանչիւրոցն, հարկ է հակակայից գոլ ումեմն ճշմարիտ, և ումեմն ստոյ ։ Եւ ոչինչ ում ումեք դէպ է գոլ ներլինելոյն, այլ ամենայնին չգոլն, և լինելն 'ի հարկէ ։ Իսկ ապա և ոչ խորհել պիտեսցի, և ոչ իրաւորել, իբրու թէ զայս ինչ արասցուք՝ եղիցի այս, և եթէ ոչ զայս

ինչ, ոչ եղիցի։ Վասնզի ոչինչ արգելու, և 'ի բիւր ամ ումեմն ասել, այս լինոցել, և ումեմն ոչ ասել։ Իսկ ապա 'ի հարկէ եղիցի ում ումեք սայց ճշմարիտ էր ասել յայնժամ։

## ԴՐԱԿՔ ԺԱ

ԲԱՅՑ սակայն և ոչ այս տարբերէ, եթէ ոմանք ասացին զհակասութիւն, և եթէ ոչ ասացին. քանզի յայտ է՝ թէ այսպէս ունին իրքն. թէպէտ և ոմն ոչ ստորասիցէ, և ոմն ոչ բացասիցէ։ Վասնզի ոչ վասն ստորասելոյն կամ բացասելոյն եղիցի կամ ոչ եղիցի. թէ ոչ և 'ի բիւր ամ առաւել. կամ ներ քանուամ ժամանակի և իցէ. իսկ ապա եթէ յամենում ամանակում այսպէս ունէր, մինչ զի միումն ճշմարտել, և հարկաւոր էր այս եղանիլ կամ ոչ եղանիլ, ապա և իւրաքանչիւր 'ի լինելոցն միշտ այսպէս ունէր, մինչ զի 'ի հարկէ լինել. քանզի յորժամ ճշմարտապէս ասասցէ ոք, եղիցի, ոչ կար ոչ եղանիլ, և զեղեալն ճշմարիտ էր ասել, եթէ միշտ եղիցի։ Իսկ եթէ սոքա անկարք. քանզի տեսանեմք, զի սկիզբն է հանդերձելոցն, և 'ի խորհել և 'ի գործել ինչ, և զի բոլորապէս է, յորս ոչն միշտ ներգործել կարն գոլ, և ոչ՝ նորս երկոքին ներընկալեալ լինին, և գոլն և ոչն գոլ. իսկ ապա և եղանիլն և ոչն եղանիլ։

Իսկ բազումք մեզ յայտք են այսպէս ունելով։ Օրի զայս զհանդերձս կար գոյ հատանել, և ոչ հատացի, այլ յառաջ մաշեսցի. նմանապէս և ոչն հատանիլ կար. քանզի ոչ գոյր յառաջագոյն սա մաշիլ, եթէ ոչ կարէր ոչն հատանիլ սա։ Ապա ուրեմն և մակ այլոցն եղելութեց, որք միանգամ ըստ զօրութե ասին՝ այսպիսումն. ապա ուրեմն երևելի է, զի ոչ ամենայն ինչ 'ի հարկէ ոչ է, և ոչ լինի. այլ են ինչ՝ որում ումեք և դէպ է, և ոչինչ առաւել, կամ ստորասութին կամ բացասութին ճշմարիտ. և են որք առաւել, և իբրու թէ բազում անգամ և յոլով, միւսն ըստ իր և միւսն ոչ եղեալ, այլ ընդունակ եղանել ոմն, և ոմն ոչ։

## ԳԼՈՒԽ ԺԲ

Արդ գոլ զէակն՝ յորժամ է, և զոչ էակն ոչ գոլ՝ յորժամ ոչ է հարկ։ Բայց սակայն ոչ զէակն զամենայն հարկ է գոլ, և ոչ զոչ էակն ոչ գոլ հարկ։ Վասնզի ոչ նոյն է զամենայն զէակն գոլ ՚ի հարկէ, այլ յորժամ է. և պարզաբար գոլ ՚ի հարկէ. և նմանապէս ՚ի վերայ ոչ էակին, և ՚ի վերայ հակասութեան նոյն բան։ Բայց գոլ կամ ոչ գոլ ամենայնն հարկ, և եղոցել կամ ոչ։ Բայց ոչ սակայն զատուցանելով ասել զոմն հարկաւոր. և ասեմ, որգոն՝ հարկ է լինոցել նաւամարտութիւն վաղիւ, կամ ոչ լինոցել. բայց ոչ սակայն լինոցելն նաւամարտութիւն ըն վաղիւ հարկաւոր, և ոչ՝ ոչ եղանելն, այլ եղանիլն, կամ ոչ եղանիլն հարկաւոր։

Իսկ ապա վասն զի նմանապէս բանքն ճշմարիտ, որպէս և իրքն, յայտ է զի որքանք այսպէս ունին, մինչ զի ուր ումեք դէպ իցէ և զներհակսն ներընդունել. նմանապէս ունել հարկ է և զհակասութիւն, որ պատահէ ՚ի վերայ սայց, ոչ միշտ են, և ոչ միշտ չեն։ Վասնզի և սայց հարկ է ՚ի միասին հակասութեան ճշմարիտ գոլ, կամ սուտ. բայց ոչ սակայն այն՝ կամ այս, այլ որում ումեք դէպ իցէ. և ոչ առաւել ճշմարիտ զոմն, կամ սուտ. մինչ զի յայտ է եթէ ոչ հարկ է ամենայն ստորասութեան կամ բացասութեան հակակայցն զոմն ճշմարիտ և զոմն սուտ գոլ։ Վասն զի ոչ որպէս ՚ի վերայ էակացն, այսպէս ունի և ՚ի վերայ ոչ էակացն, բայց կարելի գոլ, կամ ոչ գոլ. այլ որպէս ասացեալ է։

## ՊՐԱԿՔ ԺԳ

ՎԱՍՆ զի է ինչ զուժեմնէ. կամ ստորասութիւն նշանակելով, և կամ բացասութի. և է այս անուն կամ անանուն. բայց մի պիտի դոլ զմիոջէ ներ ստորասութեն: Բայց զի՞նչ անուն և անանուն, ասացեալ է յառաջագոյն. քանզի ոչ մարդ՝ անուն ոչ ասեմ, այլ անորոշելի անուն. քանզի ոչ մի ինչ նշանակէ անորոշելի անուն, որպէս և ոչն ողջ է՝ ոչ բայ է:

Ամենայն ստորասութի և բացասութի կամ յարանուանէ և 'ի բայէ, կամ յարտանորոշելի անուանէ և 'ի բայէ. բայց առանց բայի՝ և ոչ մի ստորասութիւն կամ բացասութիւն: Քանզի է կամ եղիցի, կամ էր, կամ լինի, և կամ որքանք այլք այսպիսիք բայք արտակայցն է. քանզի առնշանակէ ամանակ: Ապա ուրեմն նախ ստորասութի և բացասութիք իք մարդ, ոչ իք մարդ, ապա իք ոչ մարդ, ոչ իք ոչ մարդ. դարձեալ իք ամէն մարդ, ոչ իք ամէն մարդ. իք ամէն ոչ մարդ, ոչ իք ամէն ոչ մարդ. և 'ի վերայց արտաքոյ ամանակաց նոյն բան է:

## ՊՐԱԿՔ ԺԴ

ԲԱՅՑ յորժամ զիքն երից առստորոգեսցի, ահա կրկնակի ասին հակադրութիքս. և ասեմ. որկէն՝ իք արդար մարդն, զիքն երից ասեմ շարկանալ անուան կամ անորոշելի անուան ներ ստորասութենդ. և ասեմ զի իքն կամ առ արդարն դիցի, և կամ առ ոչ արդարն. այսպէս և առ բացասութին:

Իսկ ապա վասն այսորիկ չորք այսոքիկ եղիցին. յորոց երկուքն առստորասութի և բացասութի կալցին ըստ կարգի, որպէս պակասութիքն, և երկուքն ոչ: Ասէ իմանամք զասացեալս արտաստորագրեցելոցս, իք արդար մարդ, ոչ իք արդար մարդ. իք ոչ արդար

մարդ, սորա բացասութիւն՝ ոչ իք ոչ արդար մարդ· քանզի իքն ասսամսօր և ոչն իք՝ ընդ արդարումն և ընդ ոչն արդարումն առդիցէ։ Արդ այսոքիկ որպէս 'ի վերլուծականս ասի, այսպէս դասեալ է։

## ԳՐԱԿՔ ԺԵ

Բայց նմանապէս ունի, զի թէպէտ ըստ բոլորէ զանուանելն իցէ ստորասութի, որգան՝ ամենայն իք մարդ արդար, բացասութի, ոչ ամենայն իք մարդ արդար, ամենայն իք մարդ ոչ արդար, ոչ ամենայն իք մարդ ոչ արդար· բայց ոչ նմանապէս զըստ տրամա-չափման ընկալցի շարաճշմարտել, այլ ընկալցի երբեք։
Արդ երկուք այսոքիկ հակակայքն· բայց այլքն առ ոչն մարդ իբր ենթակայ իմն առեդելոյ· որպէս, է արդար ոչ մարդ, ոչ իք արդար ոչ մարդ։ Բայց աւելիք սայց ոչ են հակադրութիւք· բայց սոքա զատ առանց նոցա ինքեանք ըստ ինքեանս են՝ իբրև ա-նուամբ ոչն մարդով առ վարեցեալք։

## ԳՐԱԿՔ ԺԶ

Իսկ մակ ոյց իքն ոչ յարմարին· որգան՝ մակ ողջ էին, և գնայ, 'ի վերայ սոցա զնոյն առնէ, այսպէս եղեալ, իբրու թէ իքն յարեցի և ընդհարկանիցի· որգան՝ է ողջ ամենայն մարդ, ոչ ողջ է ամենայն մարդ· ողջ է ամենայն ոչ մարդ, ոչ ողջ է ամենայն ոչ մարդ· քանզի ոչ է զոչն ամենայնին, այլ մարդոյ ասելի· այլ զոչն բացասութիւն մարդոյն առդնելի է։ Քանզի ամէնն ոչ զըստ բոլորէն նշանակէ, այլ իբրև զբոլորէ, և յայտ է յայսմանէ· ողջ է մարդ, ոչ ողջ է մարդ· ողջ է ոչ մարդ, ոչ ողջ է ոչ մարդ· քանզի սոքա նո-ցա տարբերեն, վասն ոչն զբոլորէ։ Իսկ ապա ամե-նայնն, կամ և ոչ ոքն ոչինչ այլ առնշանակէ, բայց

զի զբոլորե զանուանս, կամ ստորասել, կամ ապուսել. արդ զայլոն զնոյնս պիտի առնել։

## ՊՐԱԿՔ ԺԵ

ՎԱՍՆ զի ներհական բացասութիւն է ամենայն իք կենդանի արդար, որ նշանակէ թէ՝ ոչինչ կենդանի արդար. սոքա երեւին զի ոչ երբէք եղիցին ճշմարիտք համանգամայն ոչ 'ի վերայ սորին, եւ հակակայքն սոցա եղիցին երբէք. ոմն կենդանի իք արդար, ոչ ամենայն կենդանի իք արդար։ Այլ հետեւին սոքա այնմ, որ ոքն ամենայն մարդ արդար է, կամ ոչ ոք է մարդ արդար. իսկ այնմ, իքն ոմն մարդ արդար, հակակայն՝ թէ ոչ ամենայն մարդ իք արդար։ Վասնզի հարկ է գոլ զոմն, երեւելի է՝ զի 'ի վերայ իւրաքանչիւրոցն ճշմարիտ. թէ հարցեալ՝ բացուսել եւ ստորուսել ճշմարիտ. որզան՝ ապաքէն Սոկրատէս իմաստո՞ւն, ոչ. Սոկրատէս ապա ոչ իմաստուն։

Իսկ 'ի վերայց ըստ բոլորէ ոչ ճշմարիտ նմանապէս ասացեալն. բայց ճշմարիտ բացասութիւն. ապաքէն ամէն մարդ իմաստո՞ւն, ոչ. ամէն ապա մարդ ոչ իմաստուն. քանզի այս սուտ. այլ ոչն ամէն ապաքէն մարդ իմաստուն՝ ճշմարիտ. զի այս է հակակայն, իսկ այն ներհակն։

## ՊՐԱԿՔ ԺԶ

ԻՍԿ անորոշակին հակակայքն՝ անուանք կամ բայք. որզան՝ 'ի վերայ ոչն մարդ եւ ոչ արդար՝ որպէս բացասութի առանց անուան եւ բայի թուեսցի գոլ, բայց ոչ են. քանզի միշտ ճշմարտել հարկ է, կամ ստել զբացասութի։ Իսկ որ ասացն ոչ մարդ, ոչինչ առաւել քան զայն՝ որ ասացն մարդ, այլ եւ նուազ ճշմարտեաց ինչ եւ կամ ստեաց. թէ ոչինչ առդիցի։ Այլ նշանակէ ինքն ամէն ոչ մարդ արդար,

և ոչ մու 'ի նոցանէ · զնոյն և ոչ հակակայն սորա , որ է այս · ոչ է ամէն ոչ մարդ արդար · իսկ ամէնն ոչ մարդ ոչ արդար · այնմ ոչն ոք արդար , ոչ մարդ , զնոյն նշանակէ · և փոխադրեալք անուանքս և բայքըս զնոյն նշանակեն ։ Որգամ՝ իք սպիտակ մարդ , իք մարդ սպիտակ · քանզի եթէ ոչ այս , սորին աւելիք եղիցին բացասութիքն · այլ ցուցաւ , զի մու մոյր ։

Քանզի այնմ որ է սպիտակն մարդ , բացասութի͞ ոչն իք սպիտակ մարդ · իսկ այնր՝ իքն մարդ սպիտակ, թէ ոչ սոյն է այնմ իքն սպիտակ մարդ՝ եղիցի բացասութիւն · կամ ոչն իք ոչ մարդ սպիտակ , կամ ոչն իք սպիտակ մարդ · այլ՝ այլ է բացասութի͞ այնր , իքն ոչ մարդ սպիտակ , և այլ այնր , իքն սպիտակ մարդ ։ Իսկ ապա եղիցին երկուք մոյր ։ Արդ զի փոխադրեցելոյ անուան և բայի , սոյն եղիցի ստորասութիւն և բացասութիւն , յայտ է ։

## ՊՐԱԿՔ ԺԹ

ԲԱՅՑ մու զշատից՝ կամ զբազումս զմիոջէ ստորասել կամ ապուսել , եթէ ոչ մի իմն իցէ 'ի բազմացն բաղկացեալ · ոչ իք ստորասութի͞ մի , և ոչ բացասութի͞ ։ Այս ասեմ մի · ոչ եթէ անուն մի իցէ՝ որ կայցէն, և ոչ իցէ մի ինչ 'ի նոցանէն · որկէն՝ մարդ թերևս իք , և կենդանի և երկոտանի և ընտանի , այլ և մի իմն լինի սայց · իսկ 'ի սպիտակէն և 'ի մարդոյն և 'ի գնալոյն ոչ մի ։ Իսկ ապա և ոչ եթէ և մի ինչ զսոցանէ ստորոգեսցէ ոք մու ստորասութի͞ , այլ ձայն մու, բայց ստորասութիք բազումք · և ոչ եթէ զմիոջէ զայսոսիկ այլ նմանապէս բազումք ։

Արդ եթէ հարցումն տրամաբանական ըն պատասխանատուութե͞ է խնդիր , կամ առարկելոյն , և կամ միւսոյ մասին հակասութե͞ ։ Իսկ առարկութի͞ հակասութե͞ մոյր է մասն, ոչ եղիցի պատասխանատուութի͞ մու առ այսս · քանզի և ոչ հարցումն մու · և ոչ եթէ իցէ Ճշմարիտ , և ասացեալ է ներ տեղականսն յաղագս սայց ։ Բայց համայն յայտ է, զի և ոչ զինչէն հար-

ցուածն է տրամաբանական, քանզի պարտ է տալ՚ի հարցմանէն առնուլ զոր ոք կամի, զհակասութեան մասն բացերևեցուցանել. և պիտի հարցողին առաջարկոշել, արդեօք այս է մարդ՝ կամ ոչ այս:

## ԳՐԱԿՔ Ի

ՍԱՍՆ զի ոմանք ստորոգելին շարադրեալք՝ իբր մի ամենայն ստորոգած առանձին ստորոգելեացն, և ոմանք ոչ, զինչէն տարբերութիւն: Քանզի զմարդոյ ճշմարիտ է ասել, և զատ կենդանի, և զատ երկոտանի, և իբր մի. և զմարդ, և զսպիտակ, և զայսոսիկ իբր զմի. այլ ոչ եթէ կարուակ, և բարի և կարուակ բարի. քանզի ոչ եթէ զինչ իւրաքանչիւրն իցէ, և երկոքեին բազումք և անտեղիք հետևին: Քանզի զմարդոյն, և մարդն ճշմարիտ, և սպիտակն. իսկ ապա և ամենն:

Դարձեալ թէ սպիտակն և ամենն. իսկ ապա ամենն մարդն եղիցի սպիտակ. և այս յանհունս: Նաև դարձեալ՝ երաժշտական, սպիտակ, գնալով, և այսոքիկ բազում անգամ շարամանեալք. և եթէ Սոկրատէս՝ Սոկրատէս և մարդ. և եթէ Սոկրատէս, մարդ. և եթէ մարդ՝ և երկոտանի: Արդ զի եթէ ոք վայրապար ասասցէ զշարամանութիւնս լինել, բազումք պատահեն ասել անտեղիք, յայտ է. և որպէս դնելիք՝ ասասցուք այժմ:

## ԳՐԱԿՔ ԻԱ

ԲԱՅՑ ստորոգելեացն, և մակ որոց ստորոգել պատահեալ սովորեաց, որքան միանգամ ասին ըստ պատահման, կամ զնմանէ, կամ միւսն զմիւսմէն, այսոքիկ ոչ եղիցին մի. որզան՝ մարդ սպիտակ իք և երաժշտական, այլ ոչ մու սպիտակն և երաժշտականն. քանզի պատահմունք երկոքեին նմին, և ոչ եթէ սպիտակն և երաժշտականն մի ինչ. քանզի ըստ պատահ-

մանն սպիտակ և երաժշտականն, ապա ոչ եղիցի ըսպիտակն և երաժշտական մի ինչ: Նման որոյ և ոչ կարուակն՝ վայրապար բարի, այլ կենդանի, երկոտանի. քանզի ոչ ըստ պատահման:

Նաև և ոչ որքանք ներգոյն են միումն. վասն որոյ և ոչ սպիտակն բազում անգամ, և ոչ մարդն՝ մարդ կենդանի կամ երկոտանի. քանզի ներգոյ են մարդումն երկոտանին և կենդանին: Բայց ճշմարիտ է ասել զումեքէն և պարզաբար. որպէս, զոմն մարդ՝ մարդ, կամ զոմն սպիտակ մարդ՝ սպիտակ, բայց ոչ միշտ. քանզի յորժամ ներ առկայում հակակայցն ինչ ներգուցէ, զորոց զհետ երթայ հակասութիւն, ոչ ճշմարիտ՝ այլ սուտ. որգոն՝ զմեռեալն մարդ, մարդ ասել. և յորժամ ոչ ներգուցէ, ճշմարիտ. և յորժամ ներգուցէ՝ միշտ ոչ ճշմարիտ, և յորժամ ոչն ներգուցէ՝ ոչ միշտ ճշմարիտ. որպէս Հոմերոս իք ինն, որգոն՝ քերթող: Իսկ արդ արդեօք և է, կամ ոչ. քանզի ըստ պատահման ստորոգի իքն զՀոմերանէ, քանզի քերթող է. այլ ոչ ըստ ինքեան ստորոգի զՀոմերոնէ իքն: Իսկ ապա որքանոցս ստորոգութիւն և ոչ ներհակութիւն է. թէ բանք փոխանակ անուանց ասին, և ըստ ինքեան ստորոգիցէ, և ոչ ըստ պատահմանն ՚ի վերայ սայց, զինչ և պարզ, և ճշմարիտ ՚ի միասին իք ասել. իսկ զոր ոչն էակ թէ կարծելի՝ ոչ ճշմարիտ ասել էակ ինչ. քանզի կարծիք սորա ոչ իք թէ է, այլ զի ոչ է:

## ԳՐԱԿՔ ԻԲ

Եւ այսոցիկ տարորոշեցելոց, այցելի է, զիարդ ունին ստորասութիք և բացասութիք առ միմեանս, կարողքն գոլ, և ոչ կար. և ներընդունականին և ոչ ներընդունականին, և յաղագս անկարին և հարկաւորի: Զանզի ունի տարակուսանս ոմանս. քանզի եթէ շարամանելոցն ողքա միմեանց հակակայեն հակասութիք, որքան ըստ գոլ, կամ ոչ գոլ դասին. որգոն՝ գոլոյն սպիտակ մարդ՝ բացասութիւն, ոչ գոլ

ոչ սպիտակ մարդ, այլ ոչն գոլ սպիտակ մարդ։ Քանզի եթէ զամենայնէ ստորասութին իցէ կամ բացասութին, զփայտն եղիցի ճշմարիտ ասել գոլ ոչ սպիտակ մարդ, որ է անտեղի։

Իսկ եթէ այսպէս առնելի է զհակասութիւնն ասեմ, որքանից գոլն ոչ առդնիցի, զսոյն արասցէ փոխանակ գոլոյն ասիցեալ. որզան՝ այնր մարդն գնայ ստորասուէ, բացասութին ոչ գնայն ոչ մարդ, այլ ոչն գնայ մարդ. քանզի ոչինչ տարբերէ ասել մարդ գնալ, կամ մարդ գնալով ել։ Իսկ ապա թէ այսպէս, ամենայն ուրեք և կարն գոլոյ բացասուէ եղիցի, ոչ կար ոչ գոլ, այլ ոչ կարն գոլ։

## ՊՐԱԿՔ ԻԳ

ԲԱՑՑ թուի զնոյն կար գոլ և կար ոչ գոլ. քանզի ամենայն կարն հատանիլ կամ գնալ, և ոչ գնալ և ոչ հատանիլ կար. և քանզի ամենայն այսպէս կարելի, ոչ միշտ ներգործէ. իսկ ապա լիցի սորա բացասութին. քանզի կարէ և ոչ գնալ գնալին. և ոչ տեսանել տեսանելին. այլ սակայն անկար է զնմանէ ճշմարտել զհակակայն ստորասութիւնս. իսկ ապա ոչ ուրեմն այս բացասութի։ Քանզի պատանի կամ արտաասայց և զսոյն ստորուսել, և բացուսել համանգամայն զնմանէ, կամ զգոլն և ոչ գոլ, զառերդեալսն ոչ լինել ստորասութիս և բացասութիս. քանզի եթէ այն անկարելի է, այս ահա եղիցի ընտրելի։

Ապա է ուրեմն բացասութի կարն գոլոյ, ոչ կար ոչ գոլ, այլ ոչն կար գոլ. և սոյն բան և յաղագս ներընդունելոյ գոլ. քանզի սորա բացասութի է ոչն ներընդունական գոլ, և մակ այլոցն նմանօրէն. որզան՝ անկարին և հարկաւորի. քանզի լինի որպէս 'ի վերայ նոցա գոլն և ոչն գոլ՝ առադրութի. իսկ ենթակայ ամն սպիտակ և ամն մարդ. այսպէս աստանօր գոլն և ոչն գոլ, իբր ենթակայ լինի։ Իսկ կարել և ներընդունելն առադրութիս որոշելով, որպէս 'ի վերայ

ախոցիկ զճշմարիտն և զսուտն։ Նմանապէս սոքա 'ի վերայ գոլոյն կար, և գոլոյն ոչ կար։

## ՊՐԱԿՔ ԻԴ

ԻՍԿ կարն գոլոյ՝ բացասութիւն, ոչ կար ոչ գոլ, այլ ոչն կար գոլ. վասն որոյ և հետևիլ թուեսցին միմեանց, քանզի միոյն կարելի գոլ և կարելի ոչ գոլ։ Զի ոչ հակասութիւնք միմեանց այսպիսիքս, կարելի գոլ և կարելի ոչ գոլ, այլ ոչն կարելի գոլ, և կարելին ոչ գոլ, և ոչ կարելին ոչ գոլ, և ոչ երբէք 'ի վերայ սորին ճշմարտի միանգամայն, թէ հակակայ են և թէ ոչ, սակայն կարելին ոչ գոլ և ոչ կարելին ոչ գոլ, և ոչ երբէք միանգամայն։ Եւ նմանապէս և հարկաւորն գոլոյ բացասութիւն ոչ հարկաւոր ոչ գոլ, այլ ոչն հարկաւորն գոլ. իսկ հարկաւորն ոչ գոլոյ, ոչն հարկաւոր ոչ գոլ։ Եւ անկարելւոյն գոլոյ, ոչ անկարելին ոչ գոլ, այլ ոչն անկարելի գոլ. իսկ անկարելւոյն ոչ գոլ, ոչն անկարելի ոչ գոլ. և զբոլորէ որպէս ասացեալ է զգոլն և զոչ գոլն, միշտ պիտի դնել իբրև զենթակայս։

Իսկ ստորասութիւն և բացասութիւն զսոսա առնելով առ գոլն՝ և ոչ գոլ շարադասել։ Եւ զսոսա կարծել պարտ է գոլ հակակայս ստորասութիւնս և բացասութիւնս. կարելի, ոչ կարելի. մարթ, ոչ մարթ. անկարելի, ոչ անկարելի. հարկաւոր ոչ հարկաւոր. ճշմարիտ, ոչ ճշմարիտ։ Եւ հետևութիւնք ըստ բանի եղիցին այսպէս եդելոց. քանզի կարուածն գոլ հետևի մարթել գոլ, և սա այսմ հակադարձէ, և ոչ անկարելի գոլ, և ոչն հարկաւոր գոլ. իսկ կարելուածն ոչ գոլ. և ներընդունելուածն ոչ գոլ, ոչն հարկաւոր ոչ գոլ, և ոչն անկարելի ոչ գոլ. իսկ ոչն կարելուածն գոլ, և ոչ ներընդունելուածն գոլ, անկարելին գոլ. և հարկաւոր ոչ գոլ. և ոչ կարելուածն ոչ գոլ, և ոչ ընդունականուածն ոչ գոլ, և անկարելին ոչ գոլ. և հարկաւոր գոլ։

Արդ տեսցի՝ 'ի ստորագրութիւնս ասացեալս, կարելի գոլ, ոչ կարելի գոլ, կարելի ոչ գոլ, ոչ կարելի ոչ գոլ։ Մարթի գոլ, ոչ մարթի գոլ. մարթի ոչ գոլ,

ոչ մարթի ոչ գոլ։ Անկարելի գոլ, ոչ անկարելի գոլ. անկարելի ոչ գոլ, ոչ անկարելի ոչ գոլ։ Հարկաւոր գոլ, ոչ հարկաւոր գոլ. հարկաւոր ոչ գոլ, ոչ հարկաւոր ոչ գոլ։

## ԳԼՈՒԽ ԻԵ

ԱՆԿԱՐԵԼԻՆ և ոչ անկարելին, կարելւոյն և մարթելւոյն, և ոչ մարթելւոյ և ոչ կարելւոյ հետևի. ոչ հակասութք, բայց հակադարձաբար։ Քանզի կարելւոյն գոլ բացասութիւն՝ ոչ կարելին գոլ. իսկ բացասութեան ստորասութիւն, անկարելւոյ գոլ, որ է ոչ անկարելին գոլ. քանզի ստորասութիւն, անկարելին, իսկ ոչն անկարելի, բացասութիւն։ Բայց հարկաւորն զիարդ, տեսանելի է։

Երևելի է, զի ոչ այսպէս, այլ հակակայքն հետևին. այս հակասութեան զատ. քանզի բացասութիւն, ոչ է հարկաւորն ոչ գոլ. քանզի մարթի ճշմարտել ՚ի վերայ նորին երկոքին։ Քանզի հարկաւոր ոչ գոլ՝ ոչ հարկաւոր գոլ, և պատճառք ոչն հետևել նմանապէս այլոցն, զի ներհակաբար՝ անկարելին հարկ ելոյն բացասուեալ լինի զնոյն կարելով. քանզի եթէ անկարելի, հարկաւոր է այս ոչ գոլ. այլ հարկաւոր է չգոլ. և եթէ անկարելի ոչ գոլ. այս հարկաւոր գոլ։ Իսկ ապա թէ այն նմանապէս կարելւոյն, և այսոքիկ ներհակք են. վասն զի ոչ նշանակէ զնոյն հարկաւորն և անկարելին, այլ որպէս ասացեալ է՝ հակադարձաբար։

## ԳԼՈՒԽ ԻԶ

Ար՛ դուցէ ըստ որում կարելին, այսպէս կալ զհարկաւորին հակասութիւնս. քանզի հարկաւորն գոլ, կարելին գոլ. քանզի եթէ ոչ իցէ բացասութիւն, հետևեսցի. քանզի հարկ է կամ ստորասել կամ բաց-

ասել։ Իսկ ապա եթէ ոչ կարելի գոլ, անկարելի գոլ․ ապա ուրեմն անկարելի գոլ հարկաւորն գոլ, որ է անտեղի․ այլ սակայն կարելումն գոլ ոչն կար գոլ, հետևի և սմա ոչն հարկաւոր գոլ։ Իսկ ապա պատահէ հարկաւորն գոլ՝ ոչ հարկաւոր գոլ, որ է անտեղի․ այլ սակայն հարկաւորն գոլ ոչ հետևի կարելումն գոլ, և ոչ հարկաւոր ոչ գոլ։ Քանզի նմա երկոքեան մարթին պատահել․ իսկ սմա՝ որ ճշմարիտ իցէ՝ և ոչ ևս եղիցի այն ճշմարիտ․ քանզի երկոքեան կարեն կարելի գոլ և ոչ գոլ։

Այլ եթէ հարկաւոր գոլ և ոչ գոլ, ոչ եղիցի կարելի երկոքեան․ պակասեալ է այսուհետև, և ոչ հարկաւորն ոչ գոլ՝ հետևել կարելումն գոլ․ քանզի այս ճշմարիտ՝ և զհարկաւորն գոլոյ։ Քանզի սա եղիցի հակասումն հետևելումն, ոչ կարելումն ոչ գոլ։ Իսկ նմա հետևի ոչն կարելին գոլոյ, հարկաւորն ոչ գոլ․ որոյ բացասութիւն ոչն հարկաւոր ոչ գոլ։ Այլ հետևին ուրեմն և այսք հակասութիւնք, ըստ ասացելում յեղանակիս․ և ոչինչ անկարելի պատահէ այնպէս եդելոցն։

## ՊՐԱԿՔ ԻԵ

ԲԱՅՑ տարակուսեսցի ոք, եթէ հարկելումն գոլ՝ կարելին գոլ հետևի․ քանզի եթէ ոչ հետևի, հակասութիւն հետևեսցի ոչն կարելի գոլ։ Այլ եթէ ոք ոչ զայս ասասցէ գոլ, այլ զհակասութիւն, հարկաւոր է ասել զկարելին ոչ գոլ․ այլ երկոքեան սուտք զհարկաւորէն գոլ։ Այլ սակայն դարձեալ զնոյն գոլ թուի կար հատանիլ, և ոչ հատանիլ․ և գոլ, և ոչ գոլ․ ապա եղիցին և հարկաւորին գոլ մարթ գոլ․ և այս սուտ։ Այլ երևելի է, զի ոչ ամենայն կարելին գոլ, և կամ գնալ, զհակակայսն կարէ․ այլ է ՚ի վերայ ոմանց ոչ ճշմարիտ։

Նախ ՚ի վերայց ոչ ըստ բանի կարիցն․ որզամն՝ հուր ջերմային, և ունի զօրութիւն անբան․ քանզի որք համդերձ բանիւս են զօրութիւնք, սոքա աւելեացն և ներ-

հակացն. իսկ անբանքն ոչ ամենեքեան, այլ որպէս ասացեալ է, հուրն ոչ կարելի ջեռուցանել, և ոչ: Նոյն ոչ որքանք. այլ ներգործին միշտ. բայց ոմանք կարեն յայնցանէ որք ըստ անբանսն զօրութիւնք են, համանգամայն զհակակայսն. այլ սակայն զայս յայսր սակս ասացեալ է, զի ոչ ամենայն զօրութիւն հակակայցն է ընդունական, և ոչ որքանք ասին ըստ նմին տեսակի:

## ՊՐԱԿՔ ԻԲ

ԲԱՅՑ ոմանք զօրութիւնք համանունք են. քանզի կարելին ոչ վայրապար ասի. այլ ոմն զի ճշմարիտ, երբ զի ներգործութիւն է. որգոն՝ կարելի գնալ, զի գնայ, և բոլորովին կարելին գոլ. և ոմն, որ զի ահա դեռ է ըստ ներգործութիւն, որ ասի գոլ կարելի. և միւսն յորժամ ներգործեացէ. որգոն՝ կարելին գնալ, յորժամ գնասցէ. և այս ՚ի վերայ շարժականաց է միայնոց զօրութիւնս. և նա և ՚ի վերայ անշարժից: Նոյն զերկոսին ճշմարիտ ասել, կարելի գոլ գնալ կամ գոլ. և որ ահա դեռ գնայ, և զներգործունն, և զգնացականն: Արդ այսպէս կարելիս ոչ ճշմարիտ, ոչ զհարկաւորէն պարզաբար ասել. բայց միւսն ճշմարիտ իսկ. վասն զի ներմասնցն զառլորէն հետևի այնմ՚ի հարկէն, որում հետևի միշտն կարելի գոլ. բայց սակայն ոչ ամէն. և է թերևս ըսկիզբն հարկաւորն և ոչ հարկաւորն ամենեցուն գոլ, կամ ոչ գոլ: Նոյն զայլսն այսպէս կարգաւ հայցել և խնդրել պարտ է:

Նոյն երևելի է յասացելոցս, զի ՚ի հարկէն էակն ըստ ներգործութիւն է իսկապէս. թէ առաջինն է յաւէտախաղացն, և ներգործութիւնն՝ զօրութեան առաջին, և այնք որ առանց զօրութեանց ներգործութիւնք միշտ են. որգոն՝ առաջին գոյացութիւնք. իսկ որ համանգերձ զօրութեամբն՝ բնութեամբ առաջինք, բայց ժամանակաւ վերջինք: Նոյն ոմանք և երբէք ոչ են ներգործութիւնք, այլ զօրութիւնք միայն:

## ՊՐԱԿՔ ԻԹ

ԵՒ որ ոք ներհական է, ստորասութեան բացասութեան թէ ստորասութիւն ստորասութեան, թէ բան բանի. որ ասէն թէ ամենայն մարդ արդար. ոչ ոք ումն մարդ արդար. կամ թէ ամենայն մարդ արդար, ամենեւին մարդ անիրաւ է. որզան՝ Կալլիաս արդար է. Կալլիաս արդար ոչ է. Կալլիաս անիրաւ է. որ ոք ներհական 'ի սոցանէ լիցէ: Քանզի ներ ձայնոջքն հետեւին ներ խորհրդոջացն. թէ անոր ներհական կարծիքն, ներհականին. որզան՝ զի ամենայն մարդ արդար, ամենեւամ մարդ անիրաւ. եւ 'ի վերայ ներձայնոջացն ստորասութեանցն հարկ է նմանապէս ունել. եւ եթէ ոչ անոր ներհականին կարծիքն ներհական է, ոչ ստորասութիւն ստորասութեան եղիցի ներհական, այլ ասացեալ բացասութիւնքն :

Իսկ ապա խուզելի է, որ կարծիքն ճշմարիտ սուտ կարծեացն՝ ներհական, որդեօք հակասութեան, թէ որ զհակառակն գոլ կարծեցուցանէ: Ես ասեմ այսպէս. է իմն կարծիք ճշմարիտ՝ բարւոյ, զի բարի. եւ այլ զի ոչ բարի, սուտ, եւ միւս զի չար: Արդ որ ոք 'ի սոցանէ ներհական ճշմարտին. եւ եթէ մի է, ըստ որում ումեք է ներհական :

## ՊՐԱԿՔ Լ

Արդ այսուիկ կարծիք զներհական զկարծիսն որոշել ներհականացն գոլ, սուտ. քանզի բարւոյն՝ զի բարի, եւ չարին՝ զի չար. սոյն թերեւս եւ ճշմարիտ, թէ աւելիք, թէ մի է. եւ ներհական այսոքիկ ոչ ներհականացն գոլ ներհական, այլ առաւել ներհականութեամբ. եւ եթէ իք բարւոյն, զի բարի է, եւ բարւոյ կարծիք. եւ է զի ոչ բարի է, եւ է այլ զի ոչ է. եւ ոչ կարէ գոլ, եւ կարելի է զայլոցն ոչ մի զնելի է:

Այլ որքանք եւ գոյն է՝ կարծեցուցանեն, և ոչ որքանք ոչ գոլ զէն. քանզի անհունք երկոքեանն, և որքանք եւ կարծեցուցանեն գոյն է. և որքանք ոչ եւ զէն, այլ ՚ն որքանս խաբն, և այնոքիկ են արտորոց լինելութիքն, և արդի հակակայցն լինելութիք, իսկ ապա և խաբանքն:

## ՊՐԱԿՔ ԼԱ

Արդ եթէ բարին, և բարի, և ոչ չար իք. և ոմն ըստ ինքեան, և ոմն ըստ պատահման. քանզի պատահեցաւ սմա՝ ոչ չարութեան գոլ: Այլ առաւել իւրաքանչիւրն ճշմարիտ, կամ ըստ ինքեանն, կամ ըստ պատահմանն. և սուտ, թէպէտ և ճշմարիտ: Արդ ոչն բարի բարին, ըստ ինքեան եւոյ՝ սուտ. իսկ չարին ըստ պատահմանն. ապա ուրեմն առաւել եղիցի սուտ բարւոյն հակասութիւնն, քան թէ ներհականին: Վասնզի որ յոյժ ստեալ է, առ իւրաքանչիւրոք զներհականն ունելով կարծիս. քանզի ներհականքն ՚ի յոլովիցն տարբերեցելոց առ ՚ի նոյն. արդ եթէ ներհական սոցա մինն, և ներհականագոյն բացասութի, յայտ է՝ զի սա եղիցի ներհական: Իսկ այնոր՝ թէ չար բարին շարամանեալ է, և քանզի ոչ բարի հարկ է թերևս կարծել զնոյն:

## ՊՐԱԿՔ ԼԲ

Այս ևս՝ թէ ՚ի վերայց այլոցն նմանապէս պիտի ունել, այսուիկ թուեսցի բարւոք ասել. քանզի ամենայն ուրեք հակասութն, և կամ ոչ ուրեք, և յոր ոչ է ներհակութի. բայց որքանից ոչ իք ներհական, յաղագս սայց իք սուտ ճշմարտութն հակակայ. որզան՝ որք զմարդն ոչ կարծեն մարդ, յոյժ սուտ են: Արդ եթէ սոքա ներհական, և այլքն հակասութիքն:

## ՊՐԱԿՔ ԼԳ

Սոյն և նմանապէս ունի և բարւոյն, զի բարի է, և ոչն բարւոյ՝ զի ոչ բարի. և առ այսոքիւք բարւոյն՝ զի ոչ բարի. և ոչ բարւոյն՝ զի բարի։ Արդ ոչումն բարւոյ զի ոչ բարի, ճշմարտի ելոյ կարծեաց, զի՞նչ եղիցի ներհական, ոչ ահա որ ասէն թէ չար. քանզի զի համանգամայն երբեմն եղիցի ճշմարիտ. բայց ոչ երբէք ճշմարիտ ճշմարտում ներհական. քանզի իք իմն ոչ բարին չար. իսկ ապա մարթի համանգամայն ճշմարիտ գոլ։ Այլ ոչ դարձեալ զի ոչ չարն. քանզի ճշմարիտ է և այս. քանզի համանգամայն և սոքա եղիցին. և պակասեալ է ոչումն բարւոյ զի ոչ բարի է ներհականն ոչ բարւոյ՝ զի բարի. քանզի ոչ ճշմարիտ է այս։ Իսկ այնք, վասն զի բարին ներում բարւոյն, ներհական բարւոյն՝ զի ոչ բարին, սուտ. քանզի ճշմարիտ է այն. իսկ ապա և այնմ բարւոյն՝ զի ոչ բարին, եղիցի ոչ բարւոյն՝ զի բարին։

Այլ երևելի է, զի ոչ ինչ տարբերեսցէ, և ոչ եթէ զբոլորէ դիցուք ստորասութի. քանզի զբոլորէ բացասութի ներհական եղիցի. որզան՝ կարծեացն այնմ որ կարծեցուցանէն. քանզի ամենայն որ ինչ իցէ բարի, բարի իք, կամ թէ ոչինչ բարեաց բարի է. քանզի բարւոյն զի բարի, թէ և զբոլորէ բարին, նոյն է այնմ, որ զինչ և իցէ բարին կարծեցուցանելով զի բարի. և այս ինչ ոչ տարբեր է յայնմանէ, թէ ամենայն որ ինչ է բարի, բարի իք. և նմանապէս և 'ի վերայ ոչն բարւոյ։ Իսկ ապա զի թէ 'ի վերայ կարծեաց այսպէս ունի. և են ներ ձայնոցքն. ստորասութիւքն և բացասութիւքն՝ նշանակք ներ անձիցն, յայտ է՝ զի և ստորասութեան ներհական բացասութի, որ յաղագս նորին ըստ բոլորէ. որզան՝ զի ամենայն բարի, բարի, կամ ամէն մարդ բարի. թէ ոչ ամենայն մարդ, կամ թէ ոչ ոք. և բացերևաբար, թէ ոչ ամէն, կամ ոչ ոք։ Երևելի է, զի և ճշմարտութեան ճշմարտութի ոչ մարթէ ներհական գոլ, ոչ 'ի կարծիսս, և ոչ 'ի ներհակութի. քանզի ներհակութիք այնք՝ որք 'ի հակակայսն. իսկ առ 'ի նոսին 'ի համանգամայն մարթ է ճշմարտել զնոյն, զի համանգամայնքն ոչ մարթեն ներհակմնք գոլ նմին։

# ՊԷՐԻԱՐՄԷՆԻԱՍ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

### ԹԱՐԳՄԱՆԵԱԼ ԵՒ ՄԵԿՆԵԱԼ

## Ի ԴԱՒԻԹԷ

### ԲԱՆ

ՆԱԽ արժան է դնել, զի՞նչ է անուն, և զի՞նչ է բայ. ապա զի՞նչ է բացասութիւն, և ստորասութիւն, և բացերևութիւն, և բան։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՃԱՌԵՑԱՒ մեզ երբեմն, եթէ է ամենայն բանական խորհրդութեանս այսորիկ ակնկալութիւն առ ապացուցական շարաբանութիւնս հասանել. այլ վասն զի բազում պատրանք ընդ շարաբանութիւնսն լինի, հարկաւոր է զխաբանչութիւնս նոցա գիտել։ Քանզի 'ի ձեռն այլոցն գիտութեան լինի գիւտ ապացուցական շարաբանութեանցն. այլ և ոչ զխաբանչութիւնս յասիցելոց շարաբանութեանցն հնարաւոր է գիտել, եթէ ոչ նախ ուսցուք, զի՞նչ իսկ իցէ շարաբանութիւն։ Այլ և ոչ զնոյն ինքն զշարաբանութիւն՝ առանց նախադասութեանց կամ առարկութեանց[1], թէ ասասցես։ Այլ և նախադասութիւն՝ կամ ստորասական է, կամ բացասական, և է բան ոմն։

Վայելուչ էր նախ ուսուցանել յաղագս բանի և մասանցն նորա, իսկ յետ այսորիկ փոխիլ առ վար-

1 Իմա, առաջարկութեանց։

դասպետութե՛ն նախադասութեցն, զոր և ինքն առնէ ՚նայսմ իրողութեան . քանզի սահմանելով, զի՞նչ անուն, և զի՞նչ բայ և բան, փոխի առ վարդապետութիւն ստորասութեն և բացասութեն և բացերևական բանի, յորոց նախադասութիւքն բաղկանան : Բայց զի՞նչ արդեօք ՚նրսկզբանս Ճառեալս կամիցի . քանզի ասէ, Նախ արժան է դնել : Նախս գիտեմք, զի ըստ երկուս ասի յեղանակս . կամ առ ոմն, իբր այն եթէ նախ վերծանելի է զքերթածսն . յետ այսորիկ զիմացմունս խնդրել . և կամ առ յոլովս, իբր ասասցեն, նախ քան զամենայն ստանալի է զ՚Ոմերոսի քերթածսն, իսկ յետ այսորիկ զայլսն զամենայն՝ որ հետևանան, զոր և ՚նայսմ տեղւոջ ասելով, նախ . իբր այն եթէ՝ նախ քան զամենայն : Արժան է, իբր թէ՝ վայել է : Իսկ վայելեն՝ երկակի ասի, կամ ըստ հարկաւորին, կամ ըստ պիտանացուին, այլ և զըստ հարկաւորին գոլ զվայելէն . իբր այն եթէ հարկաւոր է . իսկ Դնել՝ եռակի դարձեալ . կամ իբր ՚ի տեղւոջ, որպէս ըն մարդում, կամ ներ ատում, կամ իբր անուանակոչել, քանզի դրութիւն ասի և անուանակոչութի՛ն, և կամ սահմանել, զոր յաւէտ հնագոյնքն դնել սովորեցան ասել, զոր և ՚նայսմ տեղւոջ իմաստասէրս ասէ դնել, իբր սահմանել : Արդ ժողովեալ զամենայն՝ տեսցուք զի՞նչ մեզ ՚ի մեկնութէս եղև . և ասասցուք փոխանակ այնորիկ՝ եթէ նախ արժան է դնել յայտնի բառիւք այսպէս :

Նախ քան զամենայն հարկաւոր է սահմանել, զի՞նչ անուն և զի՞նչ բայ, և կամ զի՞նչ իւրաքանչիւրոք յայլոցն : Քանզի գիտութիւն այսց ամենեցունց ՚ի ձեռն սահմանին դիւրագիւտ մեզ արասցէ զնախադասութեցն խնդիրս : Բայց էր արդեօք ՚նայսմ տեղւոջ այլազգ կարգեաց . իսկ այլազգ յետոյ առնէ սոցա վարդապետութի . մի՛ գուցէ, ոչ ըստ կարգաւորութեն ՚նայսմ տեղւոջ նախ քան զբան՝ զբացերևութի և զստորասութի և զբացասութի կարգեաց : Այլ վասն զի անգէտ մեզ եւս խառնակոչութիւն սոցա, յաղագս այսորիկ ՚ի մէջն վարեալ՝ յընդելոցն և ՚ի սովոր մեզ անուանց, որ է բանի և անուան և բայի, կամեցաւ գիտութե՛ ծայրիցն յայտնել զանգիտութի

միջոցին։ Նա զի ոչ զկարգ ունի, քաջայայտ է. զի և զբացասութիւն նախ քան զստորասութիւն կարգեաց, որպէս զի մի կարծեսցուք ըստ կարգաւորութեան ինչ աստանօր առնել, այլ պիտոյից միայն սակս։

Իսկ եթէ ոք կամիցի ասել, ընդէ՞ր միայն անուան և բայի արար յիշողութիւն տակաւին եւս, և ոչ և այլոց մասանցն բանի։ Ասելի է, եթէ վասն զի միայն իսկապէս մասունք բանի՝ անուն և բայ, իսկ այլոցն՝ ոք սովորեցան առ մանկադոյնսն ասել, ոմանք են որ ընդ անուամբ, իսկ այլք ընդ բայիւ անկանին։ Ընդ անուամբ՝ իբր թէ դերանունութիւն, և կամ մակբայ, որպէս խնդրեալ ոք գտցէ զիւրաքանչիւրն սոցա։ Իսկ ընդունելութիւն ընդ բայիւ. իսկ այլոցն՝ ամենեցունց՝ այլ իմն պիտոյից սակս առեալ լինին։ Որպէս 'ի նաւի առ այլ իմն պէտս առնանին առ 'ի մածուցանել՝ իբրև սինձն և վուշ, և առ 'ի զօդսն պնտել՝ բևեռք. և կամ առ 'ի գեղեցկութիւն՝ կարմրադեղն. և ոչ մի ոք 'ի սոցանէ մասն ոչ ասի նաւին. այլ պիտոյից սակս վերաբերին առ 'ի նաւն։ Սոյնպէս և բանի, ոմանք են՝ որ յարել և պնդել զմասունս բանի, որպէս շաղկապն, և ոմանք են՝ որ առ 'ի լրուն, որպէս նախդիրն. ոչ իբր ըն կատարել, այլ իբր գեղեցկացուցանելով և պայծառացուցանելով, և այլքն զիւրաքանչիւր պէտսն առ բանն ունելով, ոչ եւս մասունք ասասցին։

## ՊՐԱԿՔ Բ

### ԲԱՆ

Արդ են ներ ձայնոջքն ներ անձինսցն ախտիցն նշանակք, և գրեցեալքն ներ ձայնոջացն. և որպէս գիրքն ոչ ամենեցուն նոյնք, և ոչ ձայնքն նոյնք։ Բայց որոց այսոքիկ նշանակք առաջնոցն՝ սոքին ամենեցուն նոյն կիրք անձինն. և որոց այսոքիկ նմանութիւնք՝ իրք ահա սոքա. արդ յաղագս այսոցիկ ասացեալ է ներ յաղագս ոգւոյն՝ քանզի այլոյ իրի է։

Արդ ՚ի պիտանացու իւր՝ յաղագս որոյ առաջադրեցաւ ասել, խնամ տանելով յառաջադրոյն, այլ իմն առնէ պատրաստութիւն, զի հաստատել ՚ի տեղւոջն՝ անսխալապէս վարեսցի։ Իսկ է այս յաղագս ձայնի և կրից, որ ՚ն անձինն լինին՝ որ են իմացմունք, առնէ զխնդիրս։ Քանզի քառից եղոց, իրաց, և իմացմանն, և ձայնի, և գրոյ, խնդրէ՝ եթէ ո՞րք ՚ի սոցանէ բնութ՟ իցեն, իսկ ո՞յք յետոյ պատահեցին գոլ։ Իբր՝ իմացմունքն, զորս ախտ[1] անուանեաց, նշանակք են իրաց․ իսկ ձայնքն՝ իմացմանցն նշանակք․ այլ և գրեցեալքն՝ ձայնիցն նշանակք։ Արդեօք ամենեքեան բնութ՟ այսոքիկ իցեն՝ եթէ ոչ, ցուցանէ՝ զի իրքն, և իմացմունքն, ոչ որք ՚ն անձինն, այլ որք ՚ն իրսն իմացմունք են երկոքեան սոքա բնութ՟․ իսկ ձայնքն և կիրքն յետոյ պատահեցին գոլ։ Իսկ ձեռնարկութիւնս աստուստ․ ամենայն որ բնութ՟ է՝ առ ամենեսեան նոյն է, և որ առ ամենեսեան նոյն է՝ բնութ՟ է․ որպէս իրքն և իմացմունք իրացն․ քանզի բնութ՟ ոչ է տրամատեալ ըստ ձայնից և գրոց․ իսկ որք ոչ առ ամենեսեան նոյն իրքն են, յայտ է՝ թէ ոչ բնութ՟, որպէս ձայնքն և գրիցեալքն, քանզի ոչ նոյն գիր առ Ելլենացիս և Հռոմայեցիս, և ոչ ձայնքն նոյնք․ ապա ուրեմն և ոչ բնութ՟ ասացի։

Եւ ևս դարձեալ՝ ասացեալ յաղագս նշանակացն, որ է իրացն արդեօք, կամ իմացմանն, կամ ձայնի․ դարձեալ ՚ի սկիզբն ընթանայ, եթէ որոց այսոցիկ նշանակք առաջնոցն, կիրք անձինն նոյն իրքն․ իբր այն՝ եթէ որ միանգամ նոյնպէս իմացաւ, և որ ունին զիմացմունսն, հասարակապէս ըստ նմին օրինակի զնախագաղափարին ընդունին տիպ, որ են կիրք․ անդրէն հակադարձեալ զքանդ, և որ միանգամ նոյն տիպս ունելով և իմացմունս, նոյնք են նախագաղափար առ ամենեսեան՝ որ են իրք։ Ապա ուրեմն իմացմունքն և իրքն, որ կարեն գոլ նոյն առ ամենեսեան, բնութ՟ այսոքիկ ասացին։

1 Խմն, կիրս։

Իսկ ձայնքն և գրեցեալքն անկար առ ամենեսեան գոլ նոյնք. յաղագս այսորիկ եղանիլ յետոյ: Այլ զի ոչ այսր տեղւոյ յաղագս իմացմանն խնդիր, հարկեցաւ ղուզնաքեայ առնուլ առ 'ի պիտանացուն իւր: Իսկ զկատարելագոյն վարդապետութիւն, եթէ ո՞րք արդեօք նմանութիւնք իմացմունքն իցեն, յերրորդ գիրսն՝ յորժամ յաղագս անձին ասասցէ, անդ ճառեսցի: Վասնզի բնական իմաստասիրութէ, որպէս ձեմականք, կամ ծաբանականք, որպէս պղատոնականք, այլ ոչ այսորիկ իրողութե՝ այսպիսի տեսուչիս:

## ՊՐԱԿՔ Գ

### ԲԱՆ

Այն է որպէս նմանձին իմացուածս առանց ճշմարտել կամ ստել. և է որոց հարկաւոր է սոցա գոլ միումն. այսպէս և ներ ձայնոյն. քանզի 'ի շարադրութէ և 'ի տրոհութէ է ճշմարիտն և սուտն:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Այն զի նշանակ զձայնսն պատմեաց գոլ իմացմանն, հաստատէ յայսցանէ. եթէ որպէս իմացմունքն երբեմն պարզք, և երբեմն շարամանեալք են, որպէս և ձայնքն զնոյն ընդունին ձև. քանզի և սոքա երբեմն պարզք, և երբեմն շարամանեալք եղանին: Պարզք են իմացմունքն, յորժամ մասնկունք իմացմանն ոչ ճշմարիտ իցեն, և ոչ ստիցեն, թէպէտ և առնշանակիցեն ինչ իրս: Իսկ շարամանեալք, յորժամ հարկաւորապէս զմինն 'ի նոցանէ ունիցին: Այնպէս և ըն ձայնի, յորժամ անուան և բայի զատ 'ի միմեանց արտաբերեցելոց, որ են և սոքա մասնկունք արտաբերութե բանի, ոչ ճշմարիտ և ոչ սուտ 'ի սոսա երեւի: Իսկ առ միմեանս սոցա շարամանութն յորոց բանն բաղկանայ, հարկ է կամ ճշմարտն, և կամ ստութն որոշել:

Ապա յիրաւի ուրեմն նշանակ այսպիսի ձայնքս իմացմանն ասացան. քանզի գուշակէ արտաբերական բանս զայն՝ որ ըն խորհրդումն է, և յանդիմանէ, եթէ որպիսի՞ ինչ ունի յինքեանս թուելութիւնս. քանզի ՚ի ձեռն այսպիսոյ բանի խորհուրդքն ճանաչին՝ եթէ ստոյգ և եթէ սուտ յաղագս ուրուք ունիցի կարծիս: Նաև զի մասնկունքն ոչ ճշմարտեն և ոչ ստեն իմացման, որպէս և ՚նարտաբերութե ձայնիս, ինքն ՚ի վերայ բերէ, եթէ ճշմարիտն և սուտն ՚ի բաղադրութե և ՚ի տրոհութե լինի. իսկ ոչն եւս բաղադրեալ, կամ տրոհեալ, ոչ ճշմարիտ և ոչ սուտ նշանակէ: Քանզի բաղադրութիւն է՝ պարզիցն առ միմեանս դրութի, իբր ասասցես՝ անուան և բայի: Իսկ ըստ ինքեանս ասացելոյ անուան և բայի, ոչ ճշմարիտ է և ոչ սուտ. բայց շարամանեցելոյ սոցա ընկալցի տեղի ճշմարիտ և սուտ գոլ:

Իսկ շարադրութի և տրոհութի ասի, ոչ որպէս ոմանք կարծեցին, ստորասութի և բացասութի ասիլ. քանզի որպէս ՚ի ստորասութե շարամանութի է անուան և բայի, այսպէս և ՚ի բացասութե. զոր վայրապար է կարծել և ՚ի վերայ ստորասութե և բացասութե զայսոսիկ գոլ անուանս. այլ յայտ է, եթէ ըն խորհրդումն բան կամեցեալ իւր ցուցանել, յորժամ՝ որպէս ըն ձայնի ստորասութիւնս՝ ըն խորհրդում ինչ լինիցի առ ՚ի վկայութի տալ, յայնժամ շարադրեալ զմասունս բանին այնորիկ՝ առնեմք զշարադրութի, յորմէ ճշմարիտն կամ սուտն հարկաւորապէս եղիցի: Իսկ որպէս ըն ձայնի բացասութիւն, այսպէս ըն խորհրդումն տրոհութի. քանզի յուրաստ ելով գոլ զայս ինչ՝ զատուցանէ զշարադրութե ընդ միմեանս կարծիս, որ է տրոհութիւն. և դարձեալ կամ ճշմարիտ կամ սուտ: Արդ որպէս ՚ի ձայնի ստորասութի կամ բացասութի զճշմարիտն և ըզսուտն հարկաւորապէս յայտնեն, այսպէս և ՚նիմացման շարադրութիւն և տրոհութիւն՝ զճշմարիտն կամ զսուտն հարկաւորապէս յայտնեսցեն:

# ՊՐԱԿՔ Դ

## ԲԱՆ

*Արդ ինքին իսկ անուանքս և բայքս՝ երևին առանց շարադրութեան և տրոհութեան յիմացուածմն. որպէս՝ մարդ կամ սպիտակ. և յորժամ ոչ առդիցի ինչ՝ չև ևս է ոչ սուտ և ոչ ճշմարիտ. բայց նշանակք միայն են այսոքիկ: Նոյն քանզի Եղջերուաքաղդ նշանակէ իմն, բայց չև ևս ճշմարիտ ինչ կամ սուտ, եթէ ոչ զգոյն կամ զոչն գոլ առդիցէ, կամ պարզ կամ ըստ ժամանակի:*

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

*Սա 'ի հաստատել, զի իմացմանն ձայնքս հետեւանան, և որպէս ունիմք զիմացմունսն՝ այսպիսիս հարկաւոր է և զձայնսն գոլ, առդնէ զանուանսս զայսոսիկ: Վասնզի արարեալ իւր տրամատուն ըն խորհրդումն բանին՝ ասաց գոլ զոմն 'ի բաղադրութեան, իսկ զոմն 'ի տրոհութեան, այլ և զմասնկունս սոցա զյատուկսն 'ի միմեանց՝ պարզս անուանեաց իմացմունս. և ասէ, թէ որպէս ՚նարտաբերութեն բանն նշանակ է բանին այնորիկ, սոյնպէս և մասունք բանիս այսորիկ, մասնկանցն՝ որ ըն խորհրդումն են. քանզի նմանեցին և սոքա՝ որպէս ինքն ասէ, պարզից իմացմանցն: Վասնզի որպէս պարզքն իմացմունք ոչ ճշմարտեն և ոչ ստեն, սոյնպէս անուանք և բայք՝ զատք 'ի միմեանց ասացեալք՝ ոչ ճշմարտեն և ոչ ստեն, եթէ ոչ՝ որպէս առ նոսա շարադրութի, սոյնպէս և առ սոսա եղիցի. քանզի բաղադրեալ անուն և բայ զճշմարիտն որոշեն, կամ ըստ ստորասութեն կամ ըստ բացասութեն ասացեալք:*

*Նոյն քանզի մարդ, կամ սպիտակ, իբր զի յէակացն են, և թուի՝ որ ասասցէ մարդ, ճշմարտել զձայնս զայս, թէպէտ և ոչ է ճշմարիտ. այսպէս թուելութիս ստեղծանէ ինքն արտաքոյ այլ իմն անուն. և զայս ոչ վայրապար, այլ բաղադրեալ, որնոյնպէս յեա*

կաց ոմանց ունի զգոյացութիւն․ քանզի յեղջերուէ և ՚ի քաղէ ունի զգոյացութիւն յԱյծեղջերուաքաղն [1]․ և ցուցանէ զի ոչ ճշմարտէ և ոչ ստէ։ Ո՛ ի եթէ բաղադրեալ անուանս թուելով գոյ նշանակ ուրումն, ոչ ևս ճշմարիտ և ոչ սուտ․ իսկ պարզքն՝ հեռի եղիցին յայժ ճշմարիտ և կամ սուտ ինչ նշանակել։ Քանզի և յառաջագոյն զայս ասաց ըն ստորոգութեանն՝ թէ շարամանեալք առ միմեանս էակքս, որպէս մարդ և ընթանալ, առնեն զճշմարիտ և զսուտն․ վասն որոյ և աստանօր առադրեաց․ բայց եթէ գոյն, կամ ոչն գոլ բաղադրեսցի անուանցն, պարզաբար կամ ըստ ժամանակի։ Պարզաբարդ ինձ թուի զներկայն նշանակել․ քանզի որպէս ինքն կամի, զայժմն, իբր այն թէ դուզնաքեայն՝ սկիզբն կամ կատարումն գոլ ժամանակի, այլ ոչ ժամանակ․ ապա պարզաբարն ուրեմն յայս [2], իսկ ժամանակն յանցեալն կամ յապառնին հայելով։

Ասի դարձեալ պարզաբար․ յորժամ և բայն առադրեալ անուանն՝ զէութիւն իրացն նշանակիցէ միայն, այլ ոչ և մի առնշանակիցէ ժամանակ․ որպէս Սոկրատէս է․ քանզի նշանակէ՝ գոլ միայն զՍոկրատէս, իսկ յորժամ առադրեսցես Սոկրատէս այսօր է, կամ ՚նայսմ ամսեան, կամ ըն տարոջ․ հանդերձ էութեամբն միանգամայն և զժամանակն առնշանակեցեր։

Իսկ երրորդ յեղանակ, իբր զի ասէ ինքն՝ յորժամ յաղագս բայի ուսուցանէ զմեզ, զներկայն միայն գոլ բայ․ իսկ զանցեալն և զապառնին ոչ բայ, այլ հոլով բայի․ ապա ուրեմն ըստ ժամանակի ասէ զհոլովս բայի, զանցեալն և զապառնին։ Իսկ պարզաբար ասելն, է զըստ ներկայումն բայ․ իսկ յայլս ժամանակս առադրելն՝ զանցեալն կամ զապառնին։

Արդ վասն զի խնդիր ուր էր յաղագս ճշմարտութեան կամ ստութեան մասանց բանին, եթէ որպէս իմացմունքս, այսպէս և ձայնքս ունին․ ոչ միայն յայսմ տեղւոջ զայս, այլ և ըն յետոյս բնականացն ասէ այսպէս, թէ ճշմարտութիւն և ստութիւն զսկիզբն յիմա-

1 Այս ինքն, ՚ի յօդել անգ զանուանս եղջերուաքաղ։

2 Այս ինքն, նախասացեալ յայժմն։

ցուածոցն առնու, յետ այսորիկ և 'ի ձայնս երեւի։ Քանզի զիրսն անհնար է դնելի առ որ և իցեն սոքա, քանզի յամենայն ժամ զմինն ունիցի անշարժապէս կազմեալ իւր զայս, զի ճշմարտելն և ստելն՝ ըն բաղադրեալսն լինի, այլ ոչ 'ի պարզ ձայնս։ Յետ այսորիկ փոխի 'ի վարդապետութի անուան և բայի, և այլոցն ամենեցուն՝ որոց միանգամ յիշումն արար։

## ՑԱՂԱԳՍ

## ԱՆՈՒԱՆ

Անուն է ձայն նշանական ըստ շարադրութեան առանց ամանակի. որոյ ոչինչ մասն է նշանական զատեալ։ Քանզի ներ գեղեցկաձիոյդ, ձիդ ոչինչ ըստ ինքեան նշանակէ, որպէս ներ բանին, գեղեցիկ ձի։ Բայց սակայն ոչ որպէս ներ պարզ անուանս, այսպէս ունի և ներ մանեալսն. քանզի ներ նոյայ ոչ միով իւիք մասն նշանական, իսկ ներ սոյայ կամի՝ է. այլ ոչ ուրեք զատուցելոյ. որպէս՝ յածեզաձիոյն, եզաձին։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՅՕՐԻՆԵԱԼ իւր զպիտանացուս առ 'ի սահմանաւորութի այնոցիկ, զոր յառաջագոյնն խոստացաւ, յետ այսորիկ ձեռնարկէ սահմանել զիւրաքանչիւրոք 'ի նոցանէ։ Իսկ զսկիզբն առնէ յանուանէ. և թէ ընդէ՞ր առաջին զանունն առ բանն [1], ասելի է. եթէ սա պարզ, իսկ նա բաղադրեալ. իսկ պարզն՝ քան զբաղադրեալն նախկին է. յիրաւի ապա անունն ըզնախադասութի քան եթէ բանն՝ կալաւ։ Իսկ առ բայն, այսպէս. քանզի պարունակագոյն անունն՝ քան

[1] Այս ինքն, 'ի մէջ էառ զանուն նախ քան զբան, կամ որ նոյն է, զառաջին տեղին էառ անունն քան զբայ. քանզի 'ի յունականն՝ որպէս և 'ի լատինն՝ նոյն բառ է՝ որ բան և բայ նշանակէ։

եթէ բայն. քանզի որպէս ինքն կամի, նոքին ինքն և բայքն անուանք իմն օրինակեն. այլ ոմն ըստ իսկութեան, իսկ ոմն պիտակաբար, և որպէս ըստ իսկութեանն պատուականագոյն քան զպիտակաբարն, սոյնպէս և անունն քան զբայ:

Եւ ևս՝ զի անուն նմանեաց ենթակայի, իսկ բայն՝ ենթակայութեան. իսկ ենթակային նախկին է քան զենթակայութիւնն և ըստ բնութեան, և ըստ պատուականութեան. նախկին ապա ուրեմն անուն քան զբայ: Սահմանէ զանուանդ ըստ իւրում սովորութեան, սեռ ասելով գոլ անուան՝ զձայնն. իսկ նշանական. որպէս զի զատուցէ ՚ի հնչմանցն և ՚ի թնդմանցն, որք ոչ իսկապէս ձայնք. վասն զի և ոչ ձայնաւոր գործեօքն բացակատարին. այլ որպէս պատահեաց՝ օդոյ գոլ բախմունս. իսկ որ միանգամ ՚ի ձեռն ձայնաւոր գործեաց հնչոյն տարբերութեան զօդս բախեալ՝ բացակատարէ իմն հնչումն, այսպիսիս իսկապէս ձայն ասի:

Արդ զձայն՝ սեռ ասէ, գոլ անուան. այլ վասն զի ձայնից այսորիկ՝ է որ նշանական է, և է որ ոչ նշանական, զնշանականն ասէ: Այլ և նշանականացն՝ է որ ըստ բնութեան, և է որ զըստ յետոյն եղանիլ ասաց ըստ շարադրութեանն. այլ վասն զի այս հասարակ էր անուան և բայի, որպէս զի զատուցէ զսա ՚ի բայէն, առադրեաց՝ եթէ Առանց ժամանակի: Իբր ոչ եթէ անուն ժամանակ ինչ ոչ նշանակիցէ, քանզի սերկ որ է ժամանակ, նշանակէ անուն[1], կամ վաղիւ, կամ տարի, և կամ եթէ այլ ինչ յայսպիսեացն՝ որոց անուն կայցէ ժամանակի: Այլ վասն զի բայն հանդերձ զիւրն նշանակելով և ժամանակ իմն նշանակէ. քանզի կամ զներկայն՝ կամ զանցեալն՝ կամ զապառնին. իսկ անունն՝ և ոչինչ յայսպիսեաց աստի. յաղագս այսորիկ ասաց՝ եթէ առանց ժամանակի:

Եւ ևս պիտանացու, զի զատուցէ ՚ի բանէ, առադրէ, եթէ Որոյ մասն ոչինչ է զատուցեալ՝ է նշանական. քանզի իւրաքանչիւրոք ՚ի փաղառութեանցն՝ որք են ընդ անուամբն, իբր զի մասունք են անուանն, զատուցեալք ՚ի միմեանց, ոչ ինչ նշանակեն յայնցա-

1 Սերկ յորմէ սերկեան, որ է անուն՝ ժամանակ նշանակէ:

նէ՝ զոր յառաջագոյն նշանակէր։ Վասնզի համանգամայն ասացեալ գեղեցկաձի, նշանակէ զոմն մարդ, որ ունէր գեղեցիկ ձի. իսկ զատուցեալ զմասնկունսն սորա, եթէ ասասցես ձի, իբր զի յետոյ փաղառութիւն ոչ ևս զնոյնն նշանակէ, զոր յառաջագոյն ըն բոլորումն. քանզի 'նայսմն տեղւոջ՝ ձի նշանակէ, որ է արտաքոյ քան զմարդն։ Իսկ բանից մասունք, որպէս և ըն բոլորումն՝ այսպէս և զատք 'ի միմեանց՝ զնոյն նշանակեն. քանզի եթէ միանգամայն ասասցես՝ գեղեցիկ ձի, և եթէ որոշեալս 'ի միմեանց զգեղեցիկն և զձին, ոչինչ սխալեսցին մասունքն առ 'ի նշանակելն, այլ իւրաքանչիւրոք որպէս ըն բոլորումն, այսպէս և առանձինն նշանակէ։

Այլ զի մի՛ կարծեսցուք, եթէ ըն պարզս միայն անուանս ունիցի զայսպիսի զանազանութիւն, այլ ոչ ևս ըն շարամանեալսն բացերևոյթ յաղագս պարզիցն, եթէ սոցա մասնկունքն յայտնապէս ոչ նշանակեն. իսկ շարամանելոցն՝ կամի է, իբր այն եթէ՝ թուի է նշանակել, այլ ոչինչ յայսցանէ նշանակեն՝ որպէս ըն բոլորումն՝ որպէս 'ի վերայ յածեղաձիոյն։ Վասն զի յածեղաձի ասելով նշանակեմք տեսակ իմն փոքու նաւի, և թէ զատուսցուք զմասնկունսն, և ասասցուք եղաձի, նշանակեմք զոմն մեկնակաձի, որ ոչ երբէք կցորդութիւն ունի առ նաւ. յայտ է եթէ մասնկունք անուանդ ըստ ինքեանս ելով ոչ ինչ նշանակեն յայնցանէ, որպէս ըն բոլորումն. ապա ուրեմն զատուցանի և 'ի բանէ անուն։ Վասնզի բանին մասունք՝ որպէս ըն բոլորումն, այսպէս և առանձինն զնոյն նշանակեն, իսկ անուանն ոչ ևս. ապա ուրեմն ճշմարիտ է մեզ ասացեալն սահման անուան, եթէ "Անուն է ձայն նշանական ըստ բաղադրութեան՝ առանց ժամանակի, որոյ մասն ոչինչ նշանական զատուցեալ„։

Ընդ այսու սահմանաւ փակի դերանուանութիւն և առաստութիւն և մակբայ. քանզի կամի և զսոսա անուանս գոլ. այլ ոչ այլ ինչ մասունս բանի, որպէս ոմանք կարծեն։ Այլ զի ըստ շարադրութեան՝ հակատրամատի այնմ ձայնի՝ որ ըստ բնութեան է, ինքն առադրէ, եթէ ըստ բնութեան անուն և ոչինչ է. և առնի ցուցութիւն տեղւոյս այսորիկ, զի ոչ բնութ., այլ

դրութիւնք են՝ 'ի քառիցս այսոցիկ յեղանակաց. 'ի համանունութենէ, 'ի բազմանունութենէ, 'ի փոխադրեցելոց անուանց, և որ առ իւրաքանչիւր ազգս զանազանք նորին իրաց ասին անուանք: 'Ի համանունութենէ, բարձ ասելով, զի՞նչ կցորդութիւն կենդանւոյ մարմնոյ և զգայական անդամոց առ անշունչս և անբանս յարհեստէ կառուցեալս. և կամ երկնայինն շան՝ առ ցամաքայինն և ջրայինն, այսպէս և այլք համանունանք: Իսկ 'ի բազմանունութենէ, որպէս և սուսերն և նրան մի և նոյն ելով զանազան զամանէ ստորոգին անուանք: Իսկ 'ի փոխադրութենէ անուանց, որպէս երբեմն Արիստոտելէս, իսկ յետոյ Պղատոն կոչեցաւ, և որ այլ այսպիսիք: Իսկ առ ազգմն, քանզի մարդ՝ նոյն իրքն առ ամենեսեան. Ելլենացիք՝ անթրոպոս, իսկ հայք՝ մարդ: Եւ նոյն բնուն տարերք ելով, զինչ մի բնութիւն նշանակէ, որպէս Պղատոն կամի, զերկիր և զգեէ[1], կամ զհուր և պիր: Ապա յայտ է եթէ ըստ դրութեան, այլ ոչ ըստ բնութեան զանուանս պատահեաց գոլ:

## ՊՐԱԿՔ Բ

### ԲԱՆ

ԻՍԿ ըստ շարադրութեան, զի բնութք անուանց ոչինչ է, այլ յորժամ եղիցին նշանակ. բայց նշանակեն և անգիր Թնդմունք. որզան՝ գազանաց, որոց ոչինչ է անուն: Բայց ոչ մարդ՝ ոչ անուն: Բայց սակայն և ոչ կայ անուն. զի՞նչ պարտ է կոչել զդա: Քանզի ոչ բան և ոչ բացասութիւն է, այլ եղիցի անուն անորոշելի. իսկ Փիլոնեայ, կամ Փիլոնի, և որքան միանգամ այլ ինչ այսպիսիք, ոչ անուանք՝ այլ հոլովք անուանց: Եւ բան է սորա այլն ամենայն. ըստ նմին և հանդերձ էիւն, կամ էրն, կամ եղիցին, ոչ ճշմարտէ կամ ստէ. բայց անուննն միշտ. որզան՝ Փիլոնի է կամ ոչ է, քանզի չև ևս ոչ ճշմարտէ և ոչ ստէ:

1 Ջուր երկիր ասէ հայն, յոյնն զհուրն բիւռ: Սոքա ձայնիւ զաղէա կիմ՝ ղի ձայնէ. նմանապէս և նազանեին, այլ բնութք մի են:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Ոչ ըստ շարադրութեան զանուանսն, այլ ոչ ըստ բնութեան կամի գոլ բազումն՝ յաղագս այսորիկ յառաջագոյն ասացաւ։ Յիշէ սակայն և աստանօր ըզձայնս [1] ոմանս լեալս՝ և ընդ գրով անգեալս, այլ սակայն ոչ ևս անուանս. վասն զի և ոչ նշանականս, այլ յորժամ եղիցին ուրումն նշանական՝ յայնժամ և անուն ասասցին, որպէս և յակինդափոս. քանզի ձայն է և ընդ գրով անգեալ, այլ վասն զի ոչ ևս նշանակ է ուր ուրումն, յաղագս այսորիկ և ոչ անուն ասի. իսկ յորժամ մակադրեսցի և նշանակեսցէ ինչ իրս այսպիսի ձայնս, և անուն եղիցի։ Հաստատէ դարձեալ և զիւր բանն, եթէ ոչ ամենայն ձայն անուն է, յանբան կենդանեացն, ասելով թէ նշանակեն իմն անգիր թնդմունք գազանացն. այլ վասն զի ոչ պատկանաւորութիւն 'ի սոսա գտանի, և ոչ յարմարութիւն մասնկացն առ միմեանս, յաղագս այսորիկ և ոչ գրով նշանակին, ապա և ոչ անուն եղանին։ Քանզի հարկ է զերկոսին 'ի միասին ընթանալ առ անուանսն բաղկացուի՝ և զնշանակելն գոլ՝ և զընդ գրով անգանել, որպէս զի պատկանաւոր եղիցի ձայն, և անուն ասասցի։

Կարգաւորապէս յաղագս ձայնի ասացեալ ըստ բաղադրութեան՝ որ է 'ի սահման անուանն. յետ այսորիկ փոխի առ անորոշելի անուն, և առ հոլովս անուան։ Այլ նախ ասէ զանուն՝ ոչ ելոյ անուն, և տարակուսեալ 'ի վերայ սորա, եթէ զի՞նչ վայելուչ է զսա կոչել. քանզի ոչ մարդ՝ անուն ոչ է։ Ընդէ՞ր, զի անուն՝ մի իմն նշանակէ, զատուցանելով յայլոցն ամենեցուն. իսկ ոչ մարդ՝ 'ի բաց բառնայ զմիւսն, և թուի զայլսն ամենայն նշանակել. և զայս ոչ յայտնապէս, այլ անորոշաբար։ Քանզի որ ասէն ոչ մարդ՝ յուրաստ լինի գոլ զմարդն. իսկ զոր խոստովանեսցին, ոչ ևս յայտնէ՝ ձի՞ արդեօք, կամ առիւծ, կամ

1 'Ի լուսանցսն գնոյնս։

այլ ինչ. ապա ուրեմն ոչ է անուն և ոչ բայ. քանզի ոչ առնշանակէ ժամանակ. քանզի այսուիկ բայն զատուցանի յանուանէն, որպէս ուսուցաք ուսանել: Այլ և ոչ բան. քանզի բանին մասունքն՝ որպէս ընդ բոլորումն, այսպէս և զատք 'ի միմեանց, զնոյն նշանակեն: Նաև ոչ մարդն յորժամ զատուսցես զմասնկունս սորա, ոչ ևս զնոյնս գտցես նշանակեալ. քանզի ոչն՝ և ոչ ձայն նշանական, իսկ մարդն՝ թէպէտ և նշանակէ, այլ ոչ զնոյն որպէս ընդ բոլորումն. յայտ է, զի ոչ է բան, այլ և ոչ բացասութիւն. քանզի ամենայն բացասութիւն ոչինչ առաջադրեցեալ զստորասութեան առնէ բացասութիւն. արդ եթէ ոչ մարդ՝ բացասութիւն, ստորասութիւն եղիցի մարդ, իսկ թէ այս, կամ ճշմարտեսցէ կամ ստեսցէ: Ապա եթէ անկարելի, քանզի ահա ցուցաւ. քանզի յանուանս և 'ի բայս շարադրութիւն լինի բան կամ ստորասական կամ բացասական՝ յորում ճշմարտելն և ստելն է. իսկ մարդն անուն է, յայտ է՝ եթէ ոչ ճշմարտէ և ոչ ստէ. ապա եթէ այս, և ոչ ստորասութիւն և ոչ բացասութիւն ոչ մարդ:

Խնդրեալ՝ զի այս ամենայն ոչ է. այլ և ոչ կայ անուն, որպէս ինքն ասէ. իբր այն՝ եթէ ոչ ոք 'ի հնագունեացն անուանակոչեաց զայսպիսի ձայնս, որպէս յայտ է, և ոչ խնդրեաց ոք յաղագս սորա. իսկ խնդրեալ իւր և գտօղ եղեալ՝ անուանակոչէ ասելով անորոշական անուն. յիրաւի: Քանզի անուն զմիոյ որոշեալ զատուցանէ յայլոցն ամենեցուն. իսկ սա յուրաստ կալով զմինն, թուի նշանակել զայլսն. և զայս անորոշաբար:

Յետ այսորիկ խնդրէ և զհոլովս անուանն. և ըստ երկուց յեղանակաց ասէ զանազանիլ զանունն, և զհոլովսն 'ի միմեանց: Քանզի կամի ինքն զուղղականն միայն գոլ անուն. իսկ զայլսն՝ հոլովս անուան. իսկ զանազանութիւն, քանզի ուղղականն մի ոմն նշանակէ ենթակայ. և զայս յատկապէս. իսկ սեռականն՝ զստացօղն և զստացուածն. յայտնապէս զստացօղն, իսկ անորոշաբար զստացուածն. սոյնպէս և այլոց հոլովիցն, առ որ յարմարին, երկուց իրաց լինի ցուցութիւն: Այլ ևս՝ զի ուղղականին առաջադրեալ

բայ ինչ, կամ ճշմարիտ կամ սուտ է. իսկ սեռակա-նին առադրեալ բայ ինչ, ոչ ճշմարիտ և ոչ սուտ է, վասն այսորիկ և սահմանի կարօտանայ աւելադունի հոլովն՝ քան եթէ անուանն: Քանզի որպէս անուանն, նոյնպէս և հոլովն ձայն նշանական ըստ բաղադրութեան առանց ժամանակի, և մասանցն ոչինչ նշանակելով, այլ ոչ ևս ահա կատարեալ բանս այս՝ առ 'ի սահմա-նել զհոլովս անուան, բայց եթէ առադրեսցի ևս; եթէ հանդերձ բայիւ ասացեալ՝ ոչ ևս ճշմարիտ կամ սուտ:

# ՅԱՂԱԳՍ

# ԲԱՌԻՑ

## ԲԱՆ

ԲԱՅ է որ առնշանակէ ժամանակ՝ որոյ մասն ոչինչ նշանակէ զատ, և է միշտ զայլմէց ասիցելոցն նշա-նակ: Այլ ասեմ, զի առնշանակէ ժամանակ. որզան՝ ող-ջութիւն՝ անուն, իսկ ողջ է՝ բայ. քանզի առնշանա-կէ զայժմ գոյն. և միշտ զայլմէց ասիցելոցն նշանա-կէ. որպէս՝ ենթակայից և կամ ՚նենթակայոջաց ա-սիցելոցն է: Իսկ ոչն ողջ է, և ոչն վաստակէ, ոչ բայ ասեմք. քանզի առնշանակէ ժամանակ, և միշտ զու-մեքէ գոյ: Բայց տարբերութեն անուն ոչ կայ, այլ եղիցի անորոշելի բայ. զի նմանապէս է՝ յորոյ վերայ է, և եղոյ և ոչ եղոյ: Բայց նմանապէս և ողջացաւն կամ ողջասցէն, ոչ բայ, այլ հոլով բայի. բայց տար-բեր է բայի, զի սա զներկայն նշանակէ ժամանակ, իսկ նա զշուրջն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՍԱՀՄԱՆԵԼ զբայ կամեցեալ, զանց առնէ զայ-լովքն՝ որք միանգամ անուան և բայի են հասարակ. իսկ յիշէ զայն, ըստ որում բայ յանուանէն զատու-

ցանի ։ Քանզի հասարակաց է ձայնն, և նշանակելն, և ըստ բաղադրութեան ․ իսկ զատուցանի բայ յանուանէ զըստ անշանակելն ժամանակ ․ և միշտ զայլմէ ասիցելոցն գոլ ուսուցանէ զիւրաքանչիւրոք զայսոցիկ զանշանակելն ժամանակ՝ ասելով զտարբերութիւն նշանակելոյն ․ քանզի նշանակել որպէս տարին կամ օր, և կամ երբեմն ասասցես, զիւրաքանչիւրոք ՚ի սոցանէ ժամանակ նշանակէ ․ իսկ այսպէս նշանականք ժամանակի ձայնք ՚նանուանսն յաւէտ, այլ ոչ ըն բայի ընաւորեցան գոլ ։

Իսկ անշանակելն, որ ընտանեգոյն և ինքն ըստ ինքեան բայի յարմարի, յորժամ համդերձ ներգործութեան և կրիւք զներկայն կամ զանցեալն կամ զապառնին նշանակիցէ ։ Քանզի նախ զներգործութիւն կամ զկիրս նշանակէ ․ իսկ յետ այսորիկ և զժամանակն որոշէ, ՚նորում իրացն եղև կատարումն ․ և այսպէս ասէ անշանակել իսկապէս, որպէս և իւր առադրեալ զընթացոյցն, եթէ ողջութիւն անուն ․ իսկ ողջ է՝ բայ ․ քանզի ասելով ողջ է՝ ըն ներկայումն նշանակէ զողջութեան ՚նումեմն ներգործութիւն ․ և միշտ ասէ զայլմէ ասիցելոցն ․ իբր ոչ այն՝ զի ստորոգեսցի զումեմնէ, այլ յաւէտ սովորութիւն իւր և յայլ տեղիս ասել զ՚նումեքն, որ է ՚նընթակայում, զընթակայէ անուանեալ ․ սոյնպէս և յայսմ տեղոջ ․ քանզի ՚նընթակայում ընաւորեաց գոլ բայ, ասաց զայլմէ ասիցելոցն, իբր այն՝ եթէ ՚նում եալ ։

Սահմանեալ քաջապէս որպէս զանունն՝ այսպէս և զբայս, յետ այսորիկ խնդրէ, եթէ ոչ ողջ էն, զի՞նչ արդեօք ասիցէ ․ քանզի տարբերութեան անուն ոչ գոյ, և զի տարբեր են յիրերաց, յայտ է ․ քանզի բայն՝ ելոյ ուրումն՝ ասասցի արդեօք զնմանէ ․ իսկ ոչ ելոյ, և ոչ երբէք ․ իսկ ոչ ողջ է՝ և ելոյ և ոչ ելոյ հաւասարապէս ասասցի ․ քանզի ելոյ և ոչ ելոյ Սոկրատայ՝ հնարաւոր է ասել զոչ ողջ էն ։ Արդ վասն զի ունի զտարբերութիւն, և անուն ոչ գոյ սորա, եղիցի անորոշելի բայ ․ իսկ եթէ կամիցի ոք բացասութիւն ասել կամ եթէ բան, նոքինք եղիցին ձեռնարկուէք, որք յաղագս անորոշելի անուան մեզ ասացան ։

Յետ այսորիկ առնէ և զհոլովսն բայի կարգաւո-

ըապէս, որպէս զանուանն. քանզի կամի ինքն բայ ասել զներկայն. ներկայ ասեմ, ոչ զիսկապէսն. քանզի այն և ոչ ժամանակ, այլ զոր սովորեցաք ըստ լայնութեան առնուլ, յաղագս այսպիսի ներկայի աստանօր բանս, զոր անուանէ բայ. իսկ զանցեալն և զապառնին ոչ բայ, այլ հոլով բայի. զոր ասէ, քանզի ոմն զներկայն նշանակէ, իսկ հոլովքն սորա զշուրջն: Շուրջ ոչ զայժմու ժամանակս անուանելով, այլ զանցեալն և զապառնին, քանզի ներկայս՝ իբրև միջակցութուի երկոցունց նոցա:

## ՊՐԱԿՔ Բ

### ԲԱՆ

ԱՐԴ սոքա ինքեանք ըստ ինքեանս ելով բայքս՝ անուանք են, և նշանակեն ինչ. քանզի կացուցանէ՝ զոր ·ասէն զտրամախոհութիւն, և որ լուաւն դադարեաց. այլ թէ է կամ չէ, չև ևս նշանակէ: Քանզի ոչ եթէ գոլն կամ ոչն գոլ՝ նշանակ է իրին, և ոչ եթէ լոկ զնոյն ինքն զէակն ասասցես. քանզի սա ոչ ինչ է, բայց առնշանակէ շարադրութիւն ինչ, որոյ առանց շարադրեցելոցն ոչ է իմանալ:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՏԱԿԱՒԻՆ յաղագս բայի վարդապետութեան առնէ զբանս, որպէս զի զէութիւն նորա և զպիտանացուն ուսուցանէ մեզ: Քանզի ասէ և զսոսա՝ օրինակ ինչ, անուանս գոլ իրաց ոմանց, որպէս զիսկապէս անուանսն, որք նշանակեն ինչ ըստ շարադրութեան առանց ժամանակի. քանզի ուրաքանչիւրոք 'ի բայիցն նշանակէ ինչ. որպէս հատանելն, կամ ընթանալն, սոյնպէս և այլքն. քանզի ըստ զանազան ձայնիցն՝ զանազան ներգործութիւն և կիրք նշանակեն, որպէս յանուանսն՝ նոյնպէս և 'ի բայսն:

Իսկ զոր ասէ, եթէ "Կացուցանէ զտրամախոհութիւն, և որ լուանն՝ դադարեաց" ըստ երկուս յիմանալի է յեղանակս։ Մի՝ եթէ զիւր արդեօք ըզտրամախոհութիւն կացուցանէ, իբր այն եթէ 'ի վերայ տեղւոյ ուրումն հաստատեալ՝ նկատելովն զիրսն և ասելովն զմտածութիւնն դադարեցուցանէ։ Այլ կամ թէ առ նոյն ինքն առ լսողն ասացի. քանզի տակաւին խնդրելով լսօղն՝ թէ զի՞նչ լուիցէ, իսկ ձաւեալ յասողէն, զտեղի առ տրամախոհութիւն լսողին, որ է մտածութիւն, և դադարեաց 'ի լսելոյ անդի. վասն զի իմացումն 'ի ներքս ծնաւ. ապա ուրեմն յայտ է, զի նշանակ է իրի ուրումն, և ինքն ըստ ինքեան բայս անուն ասի։

Այլ զի ցուցցէ՝ թէ ոչ է ստորասութիւն բայս, դարձեալ վերստին յաղագս այսորիկ ձեռնարկէ ասել, եթէ զճշմարիտն և զսուտն ոչ յայտնէ։ Քանզի գոլն և ոչն գոլ՝ ուրումն պատահմանն նշանակք են, և այլք ասացեալ բայք այսպիսիք, այլ ոչ ևս ենթակայի նշանակք են, յորում պատահմունքն բնաւորեցան գոլ. վասն որոյ և ոչ զճշմարիտն և զսուտ առանձին նշանակել կարեն. բայց բաղադրեալք ենթակայէն՝ որ է իրն, ստորասութիւն կամ բացասութիւն արասցեն։ Այլ վասն զի թուի էակ իմն անունն՝ նախագաղափարել գոլոյն, յորս գոլն և ոչն գոլ ածանցուցեալ է, ասէ՝ թէ ոչ միայն գոլն և ոչն գոլ ոչ նշանակեն զիրն, այլ եթէ և զնոյն ինքն զէակն ասասցես, ոչ ճշմարտէ և ոչ ստէ։ Վասն զի հոմանունաբար՝ զորոց ստորոգելին էակս՝ ունի զստորոգութիւնս, յաղագս այսորիկ միայն զէակն ասելով ոչ ևս յայտ է՝[1] եթէ զորպիսի՞ արդեօք ասաց, գոյացութի՞, թէ պատահումն. և յաղագս այսորիկ ոչ ճշմարիտն և ոչ սուտն լինի։

Իսկ շարադրութիւն այսպիսեացս առանց էակին անհնար է լինել. քանզի յարի առ ամենայնսն, և նշանակ ցուցութեան ունելով ցուցանէ զիւրաքանչիւրոք յասիցելոցն էակ ել, և ընդ անուան և ընդ բայի. ապա ուրեմն 'ի շարադրութեան պիտանացու։ Քանզի

1 Օրին. կամ յայտնէ։

անկատար իմացումն լինի առանց էակի մտածութեան՝ զոր և ինքն ասէ, թէ անհնար է իմանալ․ այլ սակայն ինքն ըստ ինքեան ոչինչ նշանակէ․ քանզի և ոչ սահմանել հնար է զէակն, վասն զի բաժանեալ է առ զանազանութիւնս, առ գոյացութիւն և պատահմունս։

# ՑԱՂԱԳՍ

# ԲԱՆԻ

## ԲԱՆ

Բան է ձայն նշանական, որոյ մասանցն իմն նշանական է զատ․ իբր ասութիւն, այլ ոչ իբր ստորասութիւն․ և ասեմք որզան՝ մարդ նշանակէ իմն, այլ ոչ եթէ է, կամ եթէ ոչ է։ Այլ եղիցի ստորասութիւն, կամ բացասութիւն, եթէ ինչ առդիցի․ այլ ոչ եթէ մարդոյն փաղառութիւն մու։ Քանզի և ոչ ներ թակն, ակն նշանական, այլ ձայն է այժմ միայն․ իսկ ՚ներկպատիկան նշանակէ է, այլ ոչ ըստ ինքեան, որպէս և յառաջն ասացեալ է։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Յետ անուան և բայի կարգէ զբանն, որ ունէր ըստ բնութեան դասուն․ և եթէ ընդէ՞ր արդեօք ՚ի սկզբանն այլազգ կարգեաց, իսկ յայսմ տեղւոջ այլազգապէս, յառաջագոյն ասացան մեզ պատճառք նոցա․ զի աստ ըստ բնութեան, իսկ անդ սակս ուրուեմն պիտանացուի։ Եւ սահմանէ զբանն՝ Սեռ ասելով գոլ զպարզ ձայն, որ և ՚ի մասանցն սորա է ընդ անուանն և բայի։ Եւ զանց արարեալ զայլովքն՝ որք միանգամ հասարակ էր նոցա, իսկ որով զատուցանին ՚ի նոցանէն՝ ախոցիկ առնէ յիշումն։ Քանզի ասէ զմասունսն սորա նշանականս գոլ․ իբր ասութիւն, այլ ոչ իբր ստորասութիւնս։ Իբր ոչ եթէ ստորասութիւնքն

ոչ նշանակիցեն ինչ, քանզի հարկաւոր է ամենայնի որ ճշմարտէն և կամ ստէ, նշանակել ինչ. արդ զոր ասէս՝ այսպիսի ինչ է. եթէ մասունք բանին ոչ ճշմարտեն և կամ ստեն, այլ նշանակեն միայն ինչ ենթակայ իրս։ Որպէս մարդ, մասն ելով բանի՝ որոյ արդեօք որ ասէ, մարդ ընթանայ, զինքն ըստ ինքեան մարդ նշանակէ կ. այլ ոչ ևս ճշմարիտ կամ սուտ, բայց եթէ առադրեսցի ինչ. իսկ առադրեսցի՝ ոչ վայրապար. քանզի եթէ առադրեսցի մու փաղառութի՝ ան, և ասասցես՝ մարդան, ոչ ևս ճշմարիտ կամ սուտ. ապա ուրեմն վայրապար առադրեցելոյ փաղառութե՝ ոչ ճշմարիտ և ոչ սուտ լինի. իսկ բայլին առադրեցելոյ մարդոյն, եթէ մու և եթէ յուլովս գոլ պատահեաց փաղառութիս, որոշեսցէ կամ զճշմարիտն կամ զսուտն։

Դարձեալ վերստին կամի ասել, եթէ առասուէն մասունք ոչինչ նշանակեն զատուցեալք 'ի միմեանց. քանզի եթէ ոչ նշանականք յայտ է՝ եթէ ոչ ճշմարտեն և ոչ ստեն։ Նաւ ցուցանէ յումեմնէ կենդանոյ՝ որ կոչի թակն. քանզի զնորա եթէ զնախասական տառն 'ի բաց բարձցես, մնասցէ ակն, այլ ոչ ևս զնոյն նշանակէ՝ զոր համադերձ տառիւն այնուիկ նշանակէր. քանզի թակն ասելով՝ տեսակ ինչ անբան կենդանոյ նշանակէ, իսկ ակն՝ ոչ ևս տեսակ կենդանոյ՝ այլ մասնիկ ինչ բանաւոր կամ անբան կենդանոյ, որոյ և պատահեաց։ Ապա ուրեմն ներ թականս՝ ակնս ոչ ինչ նշանակէ, այլ ձայն է միայն, իբր այն եթէ հնչումն աննշանական։

Իսկ կրկնապատիկսն՝ զոր յառաջագոյնն ասաց բաղադրեալս, թէպէտ և երևեսցի նշանակել է, այլ և ոչ անդ զնոյն նշանակէ՝ որպէս ընդ բոլորումն, որպէս և յառաջագոյն մեզ ասացաւ՝ եթէ ՚Նաւծեզաձիոյն՝ եզաձին ոչ զնոյն նշանակէ։ Ապա ուրեմն այսպիսիքս՝ ասութիք միայն եղիցին, որոց մասունքն ոչ զնոյն նշանակեն՝ որպէս ընդ բոլորումն. իսկ որոց մասունքն զնոյն նշանակեն՝ որպէս ընդ բոլորումն, այսպիսիս բան անուանեսցի, վասն կարիլ յարմարիլ 'ի վերայ սորա սահմանն բանի։

# ՊՐԱԿՔ Բ

## ԲԱՆ

*Եւ է բան ամենայն նշանական, ոչ իբր զգործի, այլ որպէս ասացեալ է, ըստ շարադրութեան. իսկ բացերևական, ոչ ամենայնն՝ այլ 'նորում ճշմարտելն կամ ստելն իք, բայց ոչ 'նամենեսեան իք. որկէն՝ իղձքդ, բան, այլ ոչ ճշմարիտ և ոչ սուտ, այլ այլ-քըն 'ի բաց կացցեն. քանզի ըն ճարտասանութիւնն կամ քերթողութիւն ընտանեգոյն է որոշմունս. իսկ բացերևականս՝ արդեան տեսողութեանս: Եւ է մի՝ առաջին բան բացերևական, ստորասութիւն, ապա բացասութիւն. իսկ այլքն ամենեքեն շաղկապաւ մի: Բայց հարկ է զամենայն բան բացերևական 'նարտաբայէ գոլ, կամ 'ի տապալմանէ. և քանզի վասն մարդոյն բան, եթէ ոչ զէն, և կամ զեղիցին, կամ զայլ ինչ զայսպիսեացն առդիցի, չև ևս բան բացերևական: Եւ վասն զի մի է, այլ ոչ բազում, կենդանի, հետե-ւակ, երկոտանի. քանզի ոչ 'ի շարադասելոյ մի ե-ղիցի: Բայց է այլոյ այս գործառնութիւն ասել:*

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

*Առ Պղատոնի ինձ թուի 'ի տեղւոջս կռիւ. քանզի որպէս նա կամի՝ բնութեամբ բան 'ի մեզ է, վասն զի գործի է բանական զօրութիւն. որպէս է ական՝ տեսու-թեան գործի, և այլ ինչ զգայարան՝ իւրաքանչիւ-րոցն. բայց սուտ ասացեալն. քանզի առնու ներ-գործութիւնք և զօրութիւնք՝ իբրև զնոյն: Քանզի բանա-կան զօրութիւն 'ի մեզ՝ ոչ ներգործութիւնք են լինելու-թիւն, այլ զօրութիւնք. յաղագս այսորիկ և ոչ բան բնութեամբ 'ի մեզ, և նոյն ինքն յորոց սակս գործին բնութեամբ, վայրապար և այս. քանզի ոչ որոյ գործին բնութեամբ. ահա և իրքն ըստ բնութեան. քանզի և հնարաւոր է զնոյն գործի ումեմն ըստ բնութեան գոլ՝ և ումեմն ըստ պա-տահման: Որպէս և ձեռք մարդոյ ըստ բնութեան կազ-*

մեցան առ տուրեւառսն, իսկ Թուելն և կամ գրել՝ ոչ ևս ըստ բնութեան. իսկ ամն անընդհատ զկենդանութիւն պահելով ՚ի մեզ՝ առ ՚ի զովացուցանել զընդդաբոյս ջերմութիւնն, ըստ այսմիկ բնականք են. իսկ առ ՚ի բանելն առնել սպասաւորութիւն յետոյ պատահեաց գոլ:

Ցուցեալ զի ոչ եթէ զգործի՝ որպէս Պղատոն կամի, այլ ըստ շարադրութեան՝ որպէս ինքն ասաց, յետ այսորիկ առնէ տրամատութիւն բանին: Քանզի ըստ հինգ յեղանակս բանի ասացելոց. քանզի ոմանք են ըղձականք, իսկ ոմանք հարցականք, և ոմանք հոչականք, իսկ ոմանք հրամանականք, և այլք բացերևականք: Թողեալ զայլսն զամենեսեան՝ բացերևական բանիս խնդիր առնէ. քանզի յաղագս այլոցն ամենեցուն՝ զոմանս յիշեսցէ՝ յորժամ յաղագս քերթողութեան ասէ. իսկ զոմանս ըն ճարտասանականսն հարցափորձեսցէ արհեստ: Իսկ յաղագս բացերևական բանի ՚նայսմն իրողութեան զորոշմունսն առնէ. քանզի առ տրամաբանական կրթութիւնն, և կամ իսկապէս ասել՝ առ նոյն ինքն իմաստասիրութիւն յոյժ պիտանացու է. քանզի միայն յայտնէ զճշմարիտն և զսուտն, զորոյ իմաստասէրս ունի տարփանս:

Ասացեալ զայս, զի միայն բացերևական բան ճշմարտութեան և ստութեան յայտնիչ, առնէ տրամատութիւն բացերևական բանի՝ ասելով, եթէ մի բան բացերևան [1] առաջին ստորասութիւն, յետ այսորիկ բացասութիւն. որք իսկապէս են բացերևական բան, որպէս Սոկրատէս նստի, Սոկրատէս ոչ նստի: Իսկ շաղկապաւ մի ասացեալքն, որպէս Սոկրատէս ճեմի և վերծանէ և խօսի ընդ Պղատոնի, այսպիսեացս բաղադրելոց առ մի իմն Թուի գոլ վերբերութիւն, այլ սակայն իմացմունքն զանազանք. քանզի այլ է ճեմին Սոկրատէս՝ և այլ է վերծանելն, և զոր միանգամ շաղկապեցես այսպէս: Իսկ բազումքն՝ որոց իւրաքանչիւր ոք զատ է ՚ի միմեանց, որպէս Պղատոն իմաստասէր, Հերակլէս նահատակ, և այլք այսպիսիք:

Բայց հարկաւոր ասաց գոլ զբացերևականն բան, կամ ՚ի բայէ, կամ ՚ի հոլովէ բայի, ըստ երկուս ինճ

1 Թերևս բացերևական:

թուի յեղանակս: Առաջին, քանզի բայք բաղադրեալք միմեանց առանց անուան՝ բան և ոչ երբէք ասասցի. իսկ անուանք առանց բայի առնեն իմն բան որպէս սահման, և կամ աղօթք երբեմն: Երկրորդն, կամ առ այլս, զի ըն բացերևական բանի, ոչ միայն անուն առնանի, այլ և անորոշելի անուն. իսկ անորոշելի բայ՝ և ոչ երբէք: Յաղագս այսորիկ եթող զանուն, և ասաց զբացերևական բանն՝ կամ 'ի բայէ գոլ, կամ 'ի հոլովէ՝ որ է անցեալ կամ ապառնի. և անուանք բաղադրեալք առնեն բան, այլ ոչ բացերևական, յայտնեաց ասելով, քանզի կենդանի հետևակ երկոտանի՝ բան իմն է, այլ ոչ ևս ճշմարիտ կամ սուտ, եթէ ոչ ևս էն առադրեսցի, որ է բայ, կամ եղիցին՝ որ է տապալումն բայի: Նաև այսոքիւք ճշմարիտն և սուտն որոշեսցի:

## ՊՐԱԿՔ Գ

### ԲԱՆ

Եւ է մի բան բացերևական, կամ որ մի յայտնէ, կամ որ շաղկապաւ մի. և բազումք՝ որ բազումն, և ոչ մի, կամ անշաղկապքն: Արդ անուն կամ բայ՝ ասութիւն եղիցի միայն, վասն զի ոչ է ասել այնպէս յայտնել ինչ ձայնիւ, մինչ զի բացերևոցել, կամ հարցեալ ումեք, կամ ոչ. այլ իւր յառաջագոյն կամեցելոյ. և սոյց պարզն է բացերևութիւն. որպակ՝ իմն զումեմնէ, կամ առ ումեքէ: Իսկ արդ սայցն շարկայն. որզան՝ բան իմն. ահա շարադրելի:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՏՐԱՄԱՏԵԱԼ իւր յառաջագոյն զբացերևականն բան. որոց և զորոշմունս խոստացաւ առնել յառաջին և յերկրորդ բան. քանզի ասաց՝ Առաջին բան

բացերևական ստորասութի, ապա բացասութի։ Իսկ յայսմ տեղւոջ այլազգապէս տրամատէ 'ի մի և յոչ մի. 'ի շաղկապաւ ասացեալսն, և յասացեալսն ոչ շաղկապաւ. քանզի իւրաքանչիւր ոք սոցա զոր ասէ մի, և կամ ոչ մի՝ որ են բազումք. կամ ձայնիւ մի նշանակէ և իմացմամբն բազում, կամ ձայնիւն մի և իմացմամբն։

Արդ ձայնիւն մի և իմացմամբն՝ զոր ասաց առաջին և իսկագոյն բան գոլ բացերևական առանց շաղկապի. որպէս Սոկրատէս ընթանայ. քանզի միոյ Սոկրատայ, և ոչ ըստ համանունութե, այսպիսիս մի ասի բան. քանզի պարզ է և ձայնիւ և իմացմամբ։ Իսկ ըստ երկրորդ յեղանակի մի, որ շաղկապաւն մի գոյ բան, որպէս ասասցես, քանզի արեգակն 'ի վերնում կիսագնդին է, օր է. քանզի բան մի ասի սա, այլ ոչ իսկապէս մի. քանզի բռնադատեն շաղկապքն առ միոյն գոյացութի, իսկ իմացմունք զանազանք։ Սոյնպէս և եթէ ասասցես, Սոկրատէս գնայ և վերծանէ, այս շաղկապաւ մի, իսկ իմացմունք զանազանք։ Իսկ բազումք են, նախ այսոքիկ՝ որ շաղկապաւս մի թուին գոլ. քանզի ասացաւ մեզ՝ եթէ սոցա իմացմունքն զանազանք։ Եւ երկրորդ անշաղկապքն. և այս երկակի. քանզի կամ ձայնն մի է, իսկ նշանակեալն բազում, որպէս ունի 'ի վերայ համանունութե, և կամ որոց ձայնքն բազում, և նշանակեալքն բազում. որպէս Սոկրատէս ընթանայ, Պղատոն իմաստասիրէ։

Արարեալ իւր զտրամատութիւս զայս, դարձեալ վերստին յիշէ յաղագս անուան և բայի, ասելով եթէ իւրաքանչիւրոք սոցա ասութի միայն է. քանզի ստորասութի և բացասութի՝ հարցեալ յումեմն՝ պահանջէ զպատասխանատուութի. իսկ անուն և բայ արտաբերեալ յումեքէ՝ ոչ ևս 'ի վերայ [1] սոցա հարկաւոր է բացերևոցել՝ ասելով այո կամ ոչ։ Իսկ եթէ հարցցի ոք, Սոկրատէս իմաստասիրէ, և պարզաբար կամեցեալ առնել զպատասխանատուութի՝ ասել ունի՝ այո

1 Յօրինակին 'ի վեր սոցա ։

կամ ոչ։ Իսկ եթէ ասասցես, Սոկրատէս իմաստա-սիրէ, կամ ոչ իմաստասիրէ Սոկրատէս, այսպիսիս բաղադրեալ եղիցի։

Իսկ երկրորդ յեղանակ, որպէս ոմանք կամին ա-սել զպարզն և կամ զբաղադրեալն, քանզի իւրա-քանչիւրոք 'ի ստորասութեանցն և 'ի բացասութեանց պարզ է. իսկ բաղկացեալն 'ի նոցանէ, որ է հակասութիւն, ունի յինքեան զերկոցունց սոցա շարադրութիւն։ Իսկ զոր ասէն, հարցեալ ուրումն կամ ոչ, այլ իւր կամեցելոյ, զզանա-զանութիւն ցուցանէ տրամաբանական առ առարկութիւն, և ապացուցական. քանզի տրամաբանականք ոչ ինքեանք առնուն, այլ զոր տայցէ այն՝ որ հակաճառէն սմա. վասն այսորիկ և յառաջագոյն պատրաստին առ եր-կոսեան նախադասութիւնս որ ըն հակասութեան են, առ-նել ընդդիմակ շարաբանութիւնս. որպէս զի շառագու-նեալ զհակաճառողն առ ինքեանս ցուցանիցեն։ Իսկ որք ապացուցցենն, ինքեանք առնուն՝ զոր կամինն. քանզի ճշմարտութեան յամենայն ժամ խնդիր առնեն։ Քանզի հակասութեան հարկ է զմի նախադասութիւն ճշմարիտ գոլ, իսկ զմիւսն սուտ. որպէս նստի Սո-կրատէս, ոչ նստի Սոկրատէս։

## ՊՐԱԿՔ Դ

### ԲԱՆ

Եւ է պարզ բացերևութիւն ձայն նշանական, յա-ղագս գոլ ինչ կամ ոչ գոլ. որպէս ամանակքն բա-ժանեալք. և ստորասութիւն է՝ բացերևութիւն ուրումն զումեմնէ. իսկ բացասութիւն՝ բացերևութիւն ուրումն ապ ումեքէ։ Եւ վասն զի է և զէքն երևեցուցանել իբրև զէք, և զչէքն իբրև զչէք. և զէքն իբրև զչէք, և զչէքն իբրև զէք, և շուրջ զարտաքոյն այժմու ամանակին, սոյնպէս զամենայն ինչ ներկայացի, զորս ստորասեացն ոք ապասոցել, և զոր ապուսեացն ոք ստորասոցել. ապա ուրեմն յայտնի է, զի ամենուն ստորասութեան է բացասութիւն հակակայ, և ամե-նուն բացասութեան ստորասութիւն։ Եղիցի հակ-

ասութեան այսպէս. ստորասութեան և բացասութեան հակակայեալք. և ասեմ հակակայիլ՝ զորէն այսորիկ զանէ. բայց ոչ համանունակի. և որքան այլք են զայսպիսեացն հակորոշեմք առ իմաստականս խանդութիւնս :

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱԿԻ զբացերևականն բանի արարեալ զտրամատութի. նախ յառաջին և յերկրորդ բանն զնա տրամատելով. իսկ յետ այսորիկ 'ի պարզս և յոչ պարզս: Նաև յետ այսորիկ սահմանէ զպարզն՝ "Մի բացերևական բան". քանզի 'ի սմանէ զբաղադրեալն ենթացուցցէ: Բայց թուի 'ի ստորասութենէ և 'ի բացասութենէ սահմանել զնա. քանզի ասէ, ամենայն բացերևական բան պարզ՝ նշանակ է, յաղագս գոլոյ կամ ոչ գոլոյ ուրուամն զուամենն[1] . . . . . . . . . . .

## ԳՐԱԿՔ ԺԹ

### ԲԱՆ

ԲԱՅՑ մու զշատից՝ կամ զբազմաց զմիոջէ ստորասել կամ ապուսել, եթէ ոչ մի իմն իցէ 'ի բազմացն բաղկացեալ. ոչ իք ստորասութի մի, և ոչ բացասութի: Նաև ասեմ մի. ոչ եթէ անուն մի իցէ՝ որ կայցէն, և ոչ իցէ մի ինչ 'ի նոցանէն. որպէս՝ մարդ թերևս իք, և կենդանի և երկոտանի և ընտանի, այլ և մի իմն լինի սայց. իսկ 'ի սպիտակէն և 'ի մարդոյն և 'ի գնալոյն ոչ մի: Իսկ ապա և ոչ եթէ և մի ինչ զսոցանէ ստորոգեսցէ ոք մու ստորասութի, այլ ձայն մու, բայց ստորասութիք բազումք. և ոչ եթէ զմիոջէ զայսոսիկ այլ նմանապէս բազումք:

Արդ եթէ հարցումն տրամաբանական ըն պատասխանատուութե է խնդիր, կամ առարկելոյն, և կամ միւսոյ մասին հակասութե: Իսկ առարկութի հակա-

1 Ցօրինակին պակասեն թուղթք քսան և երեք:

սուտ մոյր է մասն, ոչ եղիցի պատասխանատուութիւն մու առ այսս. քանզի և ոչ հարցումն մու. և ոչ եթէ իցէ Ճշմարիտ, և ասացեալ է ներ տեղականան յաղագս սայց: Նայց համայն յայտ է, զի և ոչ զինչէն հարցումն է տրամաբանական, քանզի պարտ է տալ'ի հարցմանէն առնուլ զոր ոք կամի, զհակասուտ մասն բացերևեցուցանել. և պիտի հարցողին առ տարորոշել, արդեօք այս է մարդ՝ կամ ոչ այս:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .[1]

և բացասուտն յայտացանէ լինի: Իսկ սպիտակ և մարդ և գնալ, բազումք ելով ձայնք, ոչ կարեն մու նշանակել. ապա եթէ այս, և ոչ ստորասուտն մի և բացասուտն մի: Նայլ եթէ և մի ինչ զսպիտակէ և զմարդոյ և զգնալոյ ստորոգիցի, ոչ մի ստորասուտն. վասն զի բազումք նշանակեալքն են. ապա ուրեմն և ոչ բացասութիւն մի:

Իսկ զպիտանացու մտածուԵս այտորիկ առընթեր առադրեաց ասելով, զի եթէ տրամաբանական հարցումն, հարցումն է պատասխանատուուէ կամ ստորասուէ կամ բացասուէ: Իսկ ստորասուտն՝ զոր ասաց առարկուն, միմեանց հակասութէ մի է մասն. իսկ այսպէս ստորոգեալքն, որպէս սպիտակն և մարդ և գնալ, ոչ մու, այլ բազում առնեն հակասութիւս, յայտ է՝ զի ոչ եղիցի պատասխանատուութիւնս մի, վասն զի և ոչ հարցումն մի գոյր: Վասն զի վայել է հարցանել զտրամաբանականն զամենայն հակասուտն. իսկ որ պատասխանիէն, զմի մասն հակասութէ տալ՝ կամ՝ նորում այոյն, կամ՝ նորում ոչն. իբր այն եթէ վերականել կամ վայրականել: Իսկ եթէ զանազան եղիցին ասացեալքն, ոչ ևս իսկապէս եղիցի տրամաբանութիւն նայսմ տեղւոջ: Համանգամայն յիշեցուցանէ մեզ, զի և ասել՝ զինչ է, ոչ տրամաբանական է հարցումն. զի եթէ տրամաբանական է հարցումն, պահանջէ պատասխանատուութիւն կամ

1 Պակասի սկիզբն մեկնութեան. իսկ զԲանն այլուստ լրացուցաք:

ստորասութեան կամ բացասութե՟, որ ըն հակասութե՟ ճառեցաւ։ Իսկ զի՞նչ էն՝ ոչ միայն զի հակասութի՟ ոչ է, այլ և ոչ ստորասութի՟ առանձին և կամ բացասութի՟. Ընդ որ առ սա տրամաբանական արասցէ պատասխանատուութի՟. իսկ եթէ այս և ոչ ամենևին հարցումն եղիցի տրամաբանական՝ ասացեալն, զի՞նչ է։

Բայց գիտելի է, զի հնագոյնքն սեռականագոյն գոլ ասեն զհարցումն, իսկ սորա երկուս տեսակս՝ զումն տրամաբանական հարցումն, իսկ զումն ոչ տրամաբանական. և տրամաբանականն՝ որպէս ասացաւ. իսկ ոչ տրամաբանականն՝ որպէս Պղատոն յաղագս բառի յիշէ, կամ ըստ գոյացութե՟ ասէ գոլ, կամ ըստ պատահման. և ըստ պատահմանն երկակի, կամ զենթակայն հարցանէ, թէ ո՞վ սորա պատահումն. իբր այն եթէ Սոկրատէս ո՞ւր բնակէ. և կամ զպատահումն, թէ ո՞վ սորա ենթակայ, իբր թէ ասէր, ՚ի այսմ ապարանս ո՞ բնակեալ է։ Ստորաբաժանի և որ զըստ գոյացութեն դարձեալ երկակի. կամ զանուն հարցանէ, և կամի ուսանել զարտաուաջնորդականն սորա բան, իբր ասէրն, զի՞նչ անձն, և կամ զարտաուաջնորդական բան հարցանէ, թէ զո՞ր անուն նշանակէ. իբր ասէր, զի՞նչ է գոյացութիւն ներանձնաւոր, զգայական, այսպէս և Աղէքսանդրոս։

## ՊՐԱԿՔ Ի

### ԲԱՆ

ՎԱՍՆ զի ոմանք ստորոգելին շարադրեալք՝ իբր մի ամենայն ստորոգած առանձին ստորոգիցելոցն, և ոմանք ոչ, զինչէն տարբերութիւն։ Քանզի զմարդոյ ճշմարիտ է ասել, և զատ կենդանի, և զատ երկոտանի, և իբր մի. և զմարդ, և զսպիտակ, և զայսոսիկ իբր զմի. այլ ոչ եթէ կարուակ, և բարի և կարուակ բարի. քանզի ոչ եթէ զինչ իւրաքանչիւրն իցէ, և երկոքեան բազումք և անտեղիք հետևին։ Քան՟ զի զմարդոյն, և մարդն ճշմարիտ, և սպիտակն. իսկ ապա և ամենն։

Դարձեալ թէ սպիտակն և ամէնն. իսկ ապա ամէն մարդն եղիցի սպիտակ. և այս յանհունս։ Նոյն դարձեալ՝ երաժշտական, սպիտակ, գնալով, և այսոքիկ բազումանգամ շարամանեալք. և եթէ Սոկրատէս՝ Սոկրատէս և մարդ. և եթէ Սոկրատէս, մարդ. և եթէ մարդ՝ և երկոտանի։ Արդ զի եթէ ոք վայրապար տասցէ զշարամանութիւնս լինել, բազումք պատահեն ասել անտեղիք, յայտ է. և որպէս դնելիք՝ ասասցուք այժմ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Իբր զի ասաց, եթէ ստորոգելիցելոցն՝ ոչ որպէս ձայնն եզակի, այսպէս և միաւորութիւն. յետ այսորիկ խնդրէ, եթէ յատուկ ստորոգեալն յամենայն ձայնս և ճշմարտեալք զումեքէ, արդեօք և բաղադրեալք 'ի միասին ճշմարտիցեն զնմանէ՝ թէ ոչ. և ասէ, թէ ոմանք ճշմարտեն, իսկ ոմանք ոչ։ Ճշմարտեն այսպիսիքս, քանզի մարդոյ՝ եթէ առանձին ստորոգեսցես զկենդանին, ճշմարիտ լինի, սոյնպէս և երկոտանին. այլ և բաղադրեալ զսոսա՝ զնոյն ինքն զմարդոյն ստուգապէս։ Նոյն սպիտակն եթէ ճշմարիտ իցէ առանձին ստորոգեալ, այսոքիկ և բաղադրեալք ճշմարիտ եղիցին զնմանէ մարդոյ։ Իսկ կարուակն եթէ առանձինն ճշմարիտ, այլ և բարին զումեմնէ առանձինն ճշմարիտ, ոչ ևս 'ի հարկէ բաղադրեալք սոքա ճշմարտեսցեն։ Քանզի Սիմոն սոկրատական և կարուակ ելով ճշմարիտ, և բարի՝ դարձեալ ճշմարիտ. այլ ոչ ևս ճշմարիտ, Սիմոն կարուակ բարի. քանզի անխնամութիւն կարուակաւն՝ ոչ ևս բարի, այլ յոչ բարի զարուեստն մակացոյց. իսկ բարի Սիմոն՝ ըստ խնամ տանելոյ իմաստասիրութէ։

Ապա սուտ այս լինի, եթէ ոք զառանձին ստորոգեալն՝ և համանգամայն ստորոգել կամիցի զնմանէ. քանզի զորոց սպիտակն, և դարձեալ զսպիտակէն սպիտակն, և զայսոսիկ զմիաջէն ենթակայէ կամիցի ստորոգել. և կամ զորմէ երաժշտականն և սպիտակն, և զսոսա հակադարձ առ միմեանս. իբր թէ 'ի հարկէ զերաժշտականն սպիտակն գոլ. կամ զսպիտակն

երաժշտական. այսպիսիքս ոչ կարելիք ելով, միանգամայն և շաղփաղփութի ըն բառսն լինի. քանզի ասել զմարդ սպիտակ՝ սպիտակ, և զերաժշտական սպիտակ, վայրապար այսպիսիքս և անկարելի. քանզի ճշմարիտ զոմն մարդ՝ սպիտակ մարդ գոլ. այլ ոչ ևս առանձինն ճշմարիտ զոմն մարդ սպիտակ գոլ. և դարձեալ զոմն երաժշտական սպիտակ. ճշմարիտ 'ի միասին ասել՝ երաժշտական սպիտակ, այլ ոչ ևս առանձինն ճըշմարիտ՝ երաժշտական և սպիտակ ասել:

Նաև ևս. զի շաղփաղփութի իմն յասացեալն լինի բառս, թէպէտ և ասացեալն ճշմարիտ իցէ, և կարիցէ ստորոգիլ. որպէս Սոկրատէս, քանզի Սոկրատէս՝ Սոկրատէս, այլ Սոկրատէս մարդ է. իսկ մարդըն երկոտանի. ապա Սոկրատէս մարդ և երկոտանի: Մարդ այսպիսիքս թէպէտ և ճշմարիտ և ստուգապէս ստորոգին, սակայն շաղփաղփութիւն ասացեալս է:

Ըստ երից յեղանակաց անտեղութեն ելոյ 'յայսմ տեղւոջ, եթէ ոք ասիցէ զառանձին ստորոգեալսն և համանգամայն ստորոգիլ: Նաև զի 'ի վերայ ոմանց այլոց սուտ. դարձեալ զի անկարելի 'ի վերայ այլոց ոմանց սուտն: Նաև թէպէտ և ստոյգ և կարելի 'ի վերայ ոմանց, այլ սակայն նոյնաբանութի ելով, անպարկեշտութիւն ըն բառսն ցուցանէ: Իսկ իսկապէս վայելուչ ստորոգեալ յետ այսորիկ իմաստասէրս կարգեսցէ, ուսուցանելով զեղանակս ստորոգիցելոցն, և խտրութիւն առ 'ի ստորոգեալսն ունել:

## ՊՐԱԿՔ ԻԱ

### ԲԱՆ

ԸԱՑՑ ստորոգիցելոցն, և մակ որոց ստորոգիլ պատահեալ սովորեաց, որքան միանգամ ասին ըստ պատահման, կամ զնմանէ, կամ միւսն զմիւսմէն, այսոքիկ ոչ եղիցին մի. որզան՝ մարդ սպիտակ իք և երաժշտական, այլ ոչ մու սպիտակն և երաժշտականն. քանզի պատահմունք երկոքին նմին, և ոչ եթէ սպիտակն և երաժշտականն մի ինչ. քանզի ըստ պատահ-

մանն սպիտակ և երաժշտականն, ապա ոչ եղիցի ըս֊ պիտակն և երաժշտական մի ինչ։ Վասն որոյ և ոչ կարուակն՝ վայրապար բարի, այլ կենդանի, երկ֊ ոտանի. քանզի ոչ ըստ պատահման։

Նուս և ոչ որքանք ներգամն են միումն. վասն որոյ և ոչ սպիտակն բազում անգամ, և ոչ մարդն՝ մարդ կենդանի կամ երկոտանի. քանզի ներգոյ են մար֊ դումն երկոտանին և կենդանին։ Բայց ճշմարիտ է ասել զումեքէն և պարզաբար. որգէն, զոմն մարդ՝ մարդ, կամ զոմն սպիտակ մարդ՝ սպիտակ, բայց ոչ միշտ. քանզի յորժամ են առկայում հակակայցն ինչ ներգուցէ, զորոց զհետ երթայ հակասութիւն, ոչ ճշմարիտ՝ այլ սուտ. որգոն՝ զմեռեալն մարդ, մարդ ասել. և յորժամ ոչ ներգուցէ, ճշմարիտ. և յոր֊ ժամ ներգուցէ՝ միշտ ոչ ճշմարիտ, և յորժամ ոչն ներգուցէ՝ ոչ միշտ ճշմարիտ. որպէս Հոմերոս իք իմն, որգոն՝ քերթող։ Իսկ արդ արդեօք և է, կամ ոչ. քանզի ըստ պատահման ստորոգի իքն զՀոմերո֊ նէ, քանզի քերթող է. այլ ոչ ըստ ինքեան ստորոգի զՀոմերոնէ իքն։ Իսկ ապա ՚նորքանոյս ստորոգութիւ և ոչ ներհակութիւ է. թէ բանք փոխանակ անուանց ասին, և ըստ ինքեան ստորոգիցէ, և ոչ ըստ պա֊ տահմանն ՚ի վերայ սայց, զի՞նչ և պարզ, և ճշմա֊ րիտ ՚ի միասին իք ասել. իսկ զոր ոչն էակ թէ կար֊ ծելի՝ ոչ ճշմարիտ ասել էակ ինչ. քանզի կարծիք սո֊ րա ոչ իք՝ թէ է, այլ զի ոչ է։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԽՈՍՏԱՑԵԱԼ իւր յառաջագոյն ասել զստորո֊ գումն՝ զորոց պատահեաց ստորոգիլ, աստուստ ձեռ֊ նարկէ. և նախ առնէ տրամատութիւ. քանզի ամե֊ նայն ստորոգեալ կամ ըստ ինքեան ստորոգի, և կամ ըստ պատահման։ Եւ ըստ պատահմանն, կամ պա֊ տահմունք միում ենթակայի, և կամ պատահմունք պատահման ստորոգիցի. զայսպիսումն զատ իւրաքանչ իւրոք տեսա ստորոգիլ՝ ճշմարիտ գոլ ասէ. իսկ ՚ի միասին ոչ ես։ Քանզի եթէ զմարդոյ սպիտակն և երաշժտականն ստորոգիցէն, ճշմարիտ է և իւրա֊

քանչիւրոք սոցա յատուկ ստորոգիլ. քանզի այսքանք ստորոգութիւնք՝ քանիք և ստորոգեալքս. իսկ 'ի միասին կամեցեալ ստորոգել և առնել մի ստորասութիւն, սուտ ։ Քանզի ոչ զնոյն նշանակէ սպիտակն և երաժշտականն. այլ եթէ պատահեսցէ երբեք սպիտակ երաժշտականն գոլ, ճշմարիտ իցէ ասել զսպիտակն երաժշտական. և ոչ յամենայն ժամ ճշմարիտ սպիտակն երաժշտական. քանզի ըստ պատահման երաժշտականն՝ այլ ոչ ըստ ինքեան սպիտակին ստորոգին ։ Որպէս կարուակին՝ բարին ոչ ըստ ինքեան, այլ ըստ պատահման ստորոգիւր. իսկ կենդանին և երկոտանին՝ ըստ ինքեան. քանզի հարկ է զամենայն կարուակ կենդանի գոլ և երկոտանի, այլ ոչ զամենայն կարուակ բարի ։

Յետ այսորիկ այնոցիկ՝ որ գոյացաբար ստորոգին, և տեսակագործեն իմն, և 'ի միասին զստորոգումն սոցա ասէ ճշմարիտ գոլ. իսկ զատ 'ի միմեանց ստորոգիցելոցն՝ զոմանս ճշմարիտ, իսկ զոմանս սուտ ։ Արդ վասն զի զոմն ենթակայ և զոմն ստորոգեալ՝ 'ի միասին ասել զենթակայն և զստորոգեալն՝ ճշմարիտ գոլ ։ Իսկ զսոցանէ երբեմն զենթակայն ստորոգեալ՝ ճշմարիտ է, և երբեմն զստորոգեալն, այլ ոչ անխտրաբար ։ Քանզի 'նորս ստորոգեալս՝ զոր ասէ առկայն ներգուցէ հակակայ ենթակային, զորմէ ստորոգին, յորժամ զի զատ առանց սորա սա ելով ենթակայն, արասցէ զմի մասն հակասութեան, իսկ հանդերձ սովաւ զմիւսն ևս, այսպիսի ենթակայս յորժամ երկոցունց ստորոգիցի՝ ոչ ճշմարիտ, այլ սուտ ։ Որպէս մեռեալն՝ մարդ, քանզի 'ի միասին սոցա ճշմարտեցելոց՝ և ոչ հնարաւոր է զմարդն զերկոցունց ստորոգել սոցա իբրև զմիոջէ ենթակայէ. քանզի ներ մարդումն միայնոյ՝ ներգոյ կենդանոյն և ներանձնաւորն և զգայականն. իսկ ներ մեռելումն մարդոյ՝ ոչ կենդանին և անզգայականն և աններանձնաւորն, յորոց լինին հակասութիւնք, կենդանի, ոչ կենդանի. իսկ 'ի վերայ նորին ստորոգիլ զկենդանին և զոչ կենդանին, անհնար է ։ Ապա ուրեմն և մարդն՝ զմեռեալ մարդոյն ստորոգիլ անհնար. քանզի նոյն ինքն է ասել, մարդ՝ և ոչ մարդ ։

Արդ 'ի վերայ այսպիսեացս ասէ, եթէ 'նորա գոյ այսպիսի ինչ, միշտ ոչ ճշմարիտ ստորոգեալն լինի. իսկ 'նորա ոչ ներգոյ, երբեմն ճշմարիտ և երբեմն սուտ: Քանզի սպիտակն մարդ՝ թէպէտ և սպիտակս առկայցէ, այլ վասն զի ոչ գոյ հակակայցն սմա, յորմէ հակասութե՟ մարդոյն լինի, ճշմարիտ է զսպիտակն մարդոյ զմարդն ստորոգել: Իսկ զոմանց՝ դարձեալ թէպէտ և ոչ հակակայցն ինչ, ոչ ճշմարտէ. քանզի ներ ասմանն՝ եթէ Հոմերոս քերթող է, և ոչ ևս ճշմարիտ ասել, եթէ է Հոմերոս. քանզի սակս քերթողութե՟ ըստ պատահման, այլ ոչ ըստ ինքեան զՀոմերոսնէ էն ստորոգի. ապա ուրեմն 'ի վերայ այսպիսեացս՝ երբեմն ճշմարիտ երբեմն սուտ եղիցի: Իսկ 'նայսոսիկ՝ որք ոչ ըստ պատահմանց, այլ ըստ ինքեանց ստորոգին, և բանք, որ է սահմանքն՝ փոխանակ անուանց առնանին, իբր այն եթէ փաղանունաբար ստորոգին, այսպիսիքս միշտ ճշմարտեսցեն և 'ի միասին ասացեալք. և եթէ ենթակայն ստորոգիցի զերկոցունս դարձեալ իբր զմիոջէ ենթակայէ. որպէս մարդն ենթակայ ելով, ստորոգեսցի զմանէ երաժշտականն և մարդ. քանզի երաժշտականն մարդ է:

Ասէ դարձեալ և յաղագս ոչ էակին. և յանդիմանէ զոմանց սուտ կարծիս, և հաստատելով զիւր բանն յայսմ տեղւոջ: Քանզի ասէ՝ եւ կարծել զոչ էակն, ճշմարիտ է, այլ ոչ ևս գոլ զոչ էակն՝ ճշմարիտ. ապա ուրեմն կարծելլին և գոլ 'ի միասին ստորոգեալ զոչ էակէն, ճշմարիտ է: Իսկ եթէ միայն գոլն ստորոգիցի զոչ էակէ, սուտ է. և յանդիմանելին այնոքիկ, որք ասէին՝ եթէ ունիմք կարծիս իմն սակս ոչ էակին, թէպէտ և ոչ առանձինն իցէ, սակայն ըստ կարծիսն գոյացութե՟ ստանայ: Յանդիմանէ՝ ասելով, թէ կարծիս ունիմք սակս ոչ էակին՝ ոչ զի է, այլ զի ոչ է. ապա ուրեմն և ըստ կարծիսն՝ ոչ էութեան՝ ոչ էակին լինի գոյացութիւն, այլ ոչ էութե՟. քանզի ոչ ունիմք կարծիս՝ գոլ զոչ էակն, այլ ոչ գոլ:

## ԳԼՈՒԽ ԻԲ

### ԲԱՆ

Եւ այսոցիկ տարորոշիցելոց, այցելի է, զիա՞րդ ունիցին ստորասութիք և բացասութիք առ միմեանս, կարողքն գոլ, և ոչ կար. և ներընդունականին և ոչ ներընդունականին, և յաղագս անկարելին և հարկաւորի։ Քանզի ունի տարակուսանս ոմանս. քանզի եթէ շարամանելոցն սոքա միմեանց հակակայեն հակասութիք, որքան ըստ գոլ, կամ ոչ գոլ դասին. որզան՝ գոլոյն սպիտակ մարդ՝ բացասութիւն, ոչ գոլ ոչ սպիտակ մարդ, այլ ոչն գոլ սպիտակ մարդ։ Քանզի եթէ զամենայնէ ստորասութիւն իցէ կամ բացասութիւն, զփայտն եղիցի ճշմարիտ ասել գոլ. ոչ սպիտակ մարդ, որ է անտեղի։

Եւ եթէ այսպէս առնելի է զհակասութիւնս ասեմ, որքանեաց գոլն ոչ առդնիցի, զսոյն արասցէ փոխանակ գոլոյն ասիցեալ. որզան՝ այնր մարդն գնայ ստորասութիւն, բացասութիւն ոչ գնայն ոչ մարդ, այլ ոչն գնայ մարդ. քանզի ոչինչ տարբերէ ասել մարդ գնալ, կամ մարդ գնալով ել։ Իսկ ապա թէ այսպէս, ամենայն ուրեք և կարն գոլոյ բացասութի եղիցի, ոչ կար ոչ գոլ, այլ ոչ կարն գոլ։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Ոչ անփոյթ արար և զհանդերձ եղանակաւ ասացեալս զստորասութիս և զբացասութիս. այլ ո՞չ ՚ի վերայ առաջնոցն խնդրէ և ՚ի վերայ այսոցիկ. եթէ արդեօք յառաջ ասացելոցն հետեւանան սոքա՝ զնոյն կարգ ունելով, թէ այլ իմն յեղանակ[1] ինչ և զայնոսիկ առնէ։ Քանզի եթէ զնոյն ունի, և եթէ ոչ զնոյն, խնդրելի է։ Իսկ են յեղանակք, որպէս հարկաւորն, կամ կարելին, այսպէս և որում պիտանացուն և կամ շահաւորն առդիցի, հանդերձ յեղանակաւ առնէ զստորասութիւն. քանզի բազումս և անթիւ այսպիսի յե-

1 Յօրինակին յեղան՝ ինչ։

զանակք, այլ որպէս սեռականագոյն իմն գտեալ զկարելին և զհարկաւորն, զանկարելին և զներընդունականն, 'ի վերայ քառիցս այսոցիկ զխնդիր նախադասութեանցն առնէ ։

Իսկ նախ յիշեցուցանէ մեզ, եթէ յառաջասացեալ հակադրութիքն իբր արդեօք լինին. քանզի շարամանեալք՝ որ է բաղադրութի ենթակայի և ստորոգելոյ՝ միայն ինքն ստորոգիւր, և եթէ առստորոգիւր, իքն ընդունէր զոչն արարչական բացասութի. և այսպէս ամենայն ստորասութե եղանիւր բացասութի, որ ասիւր գոյ մարդ, այլ և գոյ ոչ մարդ ։ Սոյնպէս և յորժամ առստորոգիւր. գոլոյն սպիտակ մարդ՝ ոչ էր բացասութի՝ որ ասէր, գոյ ոչ սպիտակ մարդ, այլ ոչն գոյ սպիտակ մարդ ։ Քանզի որպէս ինքն ասէ, եթէ ոք վիճեսցի ասել, սպիտակն գոլոյ մարդ բացասութի գոլ՝ զգոլն ոչ սպիտակ մարդ, ճըշմարիտ եղիցի զփայտն ասել գոլ ոչ սպիտակ մարդ. քանզի որպէս ուսաք՝ հարկ է 'ի վերայ ամենայնի կամ զստորասութի կամ զբացասութիւն ճշմարտել ։ Ապա եթէ ոչ հնար է ասել զփայտն գոլ ոչ սպիտակ մարդ. քանզի սուտ է և այս, ճշմարիտ է ասել ոչ գոլ սպիտակ մարդ. և այս եղիցի բացասութի. այլ ոչ յառաջասացեալն ։ Այլ և 'նորա ոչ յայտնապէս իքն արտաբերի, այլ ներ առ 'ի ստորոգիցելումն. որպէս մարդն գնայ. քանզի ոչ տարբեր են ասել գընալ, կամ գնալով գոլ. և լինի սորին բացասութի. նոյնպէս առեղեալ՝ որպէս զի առ իքն յարիցի. քանզի մարդ գնայ ստորասութե՝ բացասութիւն լինի ոչ այն, գնայ ոչ մարդ, այլ այն, ոչ գնայ մարդ ։

Արդ զի 'նամենեսեան 'նայսոսիկ, եթէ յայտնապէս, և եթէ իմացմամբ առնանի իքն, առ այս յարելով զոչն՝ ասեմք բացասութիւն. այսպէս եղիցի և հանդերձ յեղանակաւ ասացեալքն՝ կարելին կամ անկարելին, ներընդունականն կամ հարկաւորն ։ Քանզի ստորասութիւն՝ որ ասէ կարելի գոլ, ոչ եղիցի բացասութիւն կարելին ոչ գոլ, այլ ոչն կարելի գոլ. քանզի 'ի վերայ առաջնոցն առ գոլն յարեալ զոչն, առնելով բացասութիւն. սոյնպէս և 'ի վերայ սոցա. արդ խնդիրքս այս ։

Իսկ զշաստութիւն որպէս ունի՝ յառաջ մատչելով որ միանգամ անտեղի պատահեն այսպէս դասելոցս, ասասցէ մեզ միանգամայն և զլուծումն, և զկարգ առ որ դիրս բացասութեան ընձեռելով։

## ՊՐԱԿՔ ԻԳ

### ԲԱՆ

ԲԱՅՑ թուի զնոյն կար գոլ և կար ոչ գոլ. քանզի ամենայն կարն հատանիլ կամ գնալ, և ոչ գնալ և ոչ հատանիլ կար. և քանզի ամենայն այսպէս կարելի, ոչ միշտ ներգործէ. իսկ ապա լինի սորա բացասութիւն. քանզի կարէ և ոչ գնալ գնալին. և ոչ տեսանել տեսանելին. այլ սակայն անկար է զնմանէ ճշմարտել զհակակայսն ստորասութիւնս. իսկ ապա ոչ ուրեմն այս բացասութիւն։ Քանզի պատանի կամ արտաքոյ և զնոյն ստորասել և բացասել համանգամայն զնմանէ, կամ զգոլն և ոչ գոլ, զառեղեալսն ոչ լինել ստորասութիւնս և բացասութիւնս. քանզի եթէ այն անկարելի է, այս ահա եղիցի ընտրելի։

Ապա է ուրեմն բացասութիւն կարն գոլոյ, ոչ կար ոչ գոլ, այլ ոչն կար գոլ. և սոյն բան և յաղագս ներընդունելոյ գոլ. քանզի սորա բացասութիւն է ոչն ներընդունական գոլ, և մակ այլոցն նմանօրէն. որգան՝ անկարելին և հարկաւորի. քանզի լինի որպէս ՚ի վերայ նոցա գոլն և ոչն գոլ՝ առադրութիւն. իսկ ենթակայ ոմն սպիտակ և ոմն մարդ. այսպէս աստանօր գոլն և ոչն գոլ, իբր ենթակայ լինի։ Իսկ կարել և ներընդունելն առադրութիւնս որոշելով, որպէս ՚ի վերայ այնոցիկ զճշմարիտն և զսուտն։ Նմանապէս սոքա ՚ի վերայ գոլոյն կար, և գոլոյն ոչ կար։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԶՍԽԱԼՈՒՄՆ որ յառաջագոյն եղելոցն պատահէ՝ յայտնապէս աստանօր ՚ի վեր բերելով զկազմութիւն նախադասութեանցն ուղղէ. քանզի ասէ, եթէ

այսպէս բացասութիւնս կալցի առ ստորասութիւնս, որպէս զի կարելի գոլոյն՝ բացասութիւն եղիցի կարելին ոչ գոլ, թուին այսպիսիքս 'ի միասին ճշմարտել։ Նա և ասացեալ է առ առաջինսն, եթէ այսպիսի կարելիս ոչ միշտ ներգործուք̃։ Իսկ զբացասութիւն առնեմք, ոչ զի զօրուք̃ ստորասութ̃ի, իսկ բացասութ̃ի ներգործուք̃, այլ որպէս ստորասութիւն, և բացասութիւն, եթէ ներգործուք̃, ներգործութ̃ք, և եթէ զօրութեամբ, զօրութեամբ։

Իսկ որ ասէն կար է գոլ, կար է ոչ գոլ. զոմն ներգործութեամբ նշանակէ, իսկ զոմն զօրութեամբ։ Վասնզի որպէս ինքն ասէ, կարէ ոչ գնալ գնալին, և ոչ հատանիլ հատանելին. վասն զի ներընդունական զնութիւնս սոցա պատահեաց գոլ. որպէս զի ճըշմարտել աստանօր զստորասութիս և զբացասութիս. եթէ կարելի գոլոյն՝ բացասութիւն իցէ կարելին ոչ գոլ։ Ճշմարտեսցէ ապա հակասութիւն 'ի վերայ այնորիկ ըստ նմին ժամանակի, որ թուին անտեղի գոլ. քանզի արժանաւորութիւն հակասութեան էր՝ զճշմարիտն և զսուտ որոշել։

Յետ այսորիկ ստուարութիւն առաջի դնէ երկուց իրաց. կամ զհակասութ̃ի յուրասատ լինել ասել որոշող գոլ ճշմարտին և ստին. և կամ զնա խոստովանել, իսկ զգոլն և զոչն գոլ դարձեալ յուրասատ լինել արարչական գոլ ստորասութ̃ե և բացասութ̃ե։ Արդ վասն զի զհակասութիւն ուրանալ անհնար է՝ ասել ոչ բացորոշող գոլ ճշմարտին և ստին, խոստովանել ապա ուրեմն ճշմարիտ է զնոյն։ Իսկ զգոլն և զոչն գոլ ոչ ևս ընդունել արարչական ստորասութեան և բացասութ̃ե։ Այլ որպէս յառաջին հակադրութ̃ին՝ գոլն և կամ ոչն գոլ ստորոգեալք էին, իսկ ենթակայ սոցա մարդն կամ սպիտակն. զսպիտակն ասել գոլ ենթակայ, ոչ իբր այն՝ զի զումեքէ ստորոգիւր իցէ, այլ վասն զի ստորոգիւր սպիտակն ումեմն ենթակայի. իսկ իցէ առստորոգիւր, յայտ է՝ թէ մակադրեալ սպիտակին, այսպէս առնէր զստորասութ̃ի. և եղանիւր իցէ առդրութ̃ի իմն, իսկ սպիտակն որպէս ենթակայ։

Արդ որպէս 'ի յայնմ 'ի կարգադրութ̃ի իցէ առ-

ղնիւր, իսկ ենթակայ սպիտակն և մարդն. նոյնպէս և ՚նայսմ տեղւոջ՝ իքն որ է գոլ՝ ենթակայ, իսկ իւրաքանչիւրոք ՚ի յեղանակացն՝ առդրութի. և այսպէս եղելոցն՝ կարգաւոր լինի հակասութիւն. քանզի որոշէ զճշմարիտն և զսուտն: Քանզի է կարելին գոլոյ ստորասութ՝ բացասութի լինի ոչ կարելին ոչ գոլ, այլ ոչն կարելի գոլ. և մի ոմն ճշմարտէ, իսկ միւսն ստէ: Նոյնպէս և ՚ի վերայ ներընդունականին անկարին և հարկաւորին. քանզի յեղանակ դրութ առեղեալ ամենեցուն՝ իսկապէս արասցէ ստորասութի և բացասութի ըստ հակասութե, առ ՚ի զճշմարիտն և զսուտն որոշել:

## ՊՐԱԿՔ ԻԴ

### ԲԱՆ

ԻՍԿ կարն գոլոյ՝ բացասութի, ոչ կար ոչ գոլ, այլ ոչն կար գոլ. վասն որոյ և հետեւիլ թուեսցին միմեանց, քանզի զնոյն կարելի գոլ և կարելի ոչ գոլ: Օ ի ոչ հակասութիք միմեանց այսպիսիքս, կարելի գոլ և կարելի ոչ գոլ, այլ ոչն կարելի գոլ, և կարելին ոչ գոլ, և ոչ կարելին ոչ գոլ, և ոչ երբեք ՚ի վերայ նորին ճշմարտի միանգամայն, թէ հակակայ են և թէ ոչ, սակայն կարելին ոչ գոլ և ոչ կարելին ոչ գոլ, և ոչ երբէք միանգամայն: Եւ նմանապէս և հարկաւորն գոլոյ բացասութի ոչ հարկաւոր ոչ գոլ, այլ ոչն հարկաւորն գոլ. իսկ հարկաւորն ոչ գոլոյ, ոչն հարկաւոր ոչ գոլ: Եւ անկարելւոյն գոլոյ, ոչ անկարելին ոչ գոլ, այլ ոչն անկարելի գոլ. իսկ անկարելւոյն ոչ գոլ, ոչն անկարելի ոչ գոլ. և զբոլորն որպէս ասացեալ է զգոլն և զոչ գոլն, միշտ պիտի դնել իբրև զենթակայս:

Իսկ ստորասութի և բացասութի զոսա առնելով առ գոլն՝ և ոչ գոլ շարադասել: Եւ զոսա կարծել պարտ է գոլ հակակայս ստորասութիս և բացասութիս. կարելի, ոչ կարելի. մարթ, ոչ մարթ. անկարելի, ոչ անկարելի. հարկաւոր ոչ հարկաւոր. ճշմարիտ, ոչ ճշմարիտ: Եւ հետեւութիք ըստ բանի եղիցին այսպէս ե-

ղելոց. քանզի կարուածն գոլ հետևի մարթել գոլ, և սա այսմ հակադարձի, և ոչ անկարելի գոլ, և ոչն հարկաւոր գոլ. իսկ կարելուածն ոչ գոլ և ներընդդունելուածն ոչ գոլ, ոչն հարկաւոր ոչ գոլ և ոչն անկարելի ոչ գոլ. իսկ ոչն կարելուածն գոլ և ոչ ներընդդունելուածն գոլ, անկարելլին գոլ. և հարկաւոր ոչ գոլ. և ոչ կարելուածն ոչ գոլ և ոչ ընդդունականուածն ոչ գոլ, և անկարելլին ոչ գոլ և հարկաւոր գոլ:

Արդ տեսցի 'ի ստորագրուածս ասացեալս, կարելի գոլ, ոչ կարելի գոլ, կարելի ոչ գոլ, ոչ կարելի ոչ գոլ: Մարթի գոլ, ոչ մարթի գոլ. մարթի ոչ գոլ, ոչ մարթի ոչ գոլ: Անկարելի գոլ, ոչ անկարելի գոլ. անկարելի ոչ գոլ, ոչ անկարելի ոչ գոլ: Հարկաւոր գոլ, ոչ հարկաւոր գոլ. հարկաւոր ոչ գոլ, ոչ հարկաւոր ոչ գոլ:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Ի զճշմարիտն և զսուտն որոշելոյ զհակասութիւն մասունս՝ եդիտ զհակադրութեանցս զիսկապէս բացասութիւնս. քանզի ոչ որպէս թուիւր, կարն գոլոյ ստորասութիւն՝ բացասութիւն էր կարն ոչ գոլ. ընդէ՞ր. քանզի ոչ զատուցանէին զճշմարիտն և զսուտ, այլ հնարաւոր էր 'ի միասին ճշմարտել. վասն այսորիկ և ոչ հակասութիւն: Քանզի հակասութիւն՝ որպէս բազումանգամ ասացաւ, առանձինն 'ի վերայ ամենայն իրաց զոմն ճշմարիտ և զոմն սուտ գոլ. իսկ որք ճշմարտեսցեն 'ի միասին, այսպիսիքս յայտ է՝ զի և ոչ հակասութիւնք: Այլ ուրեմն եղիցի կարն գոլոյ ստորասութիւն. բացասութիւն՝ ոչ կար գոլ. իսկ կարն ոչ գոլոյ, վասն զի ոչ էր սա բացասութիւն, ստորասութիւն ուրեմն. իսկ եղիցի բացասութիւն սորա, ոչ կար ոչ գոլ. սապէս և 'ի վերայ այլոց յեղանակաց զնոյն դաս ունելով: Պարզ ստորասութեանցն՝ բացասութիւնս ըստ պարզին. իսկ 'ի փոխադրութէ ստորասութեանց՝ 'ի փոխադրութէ բացասութիւն: Այլ որպէս ինքն ասէ, թէ ընթանուր ասել զգոլն և զոչն գոլ՝ վայելէ դնել իբր ենթակայս, որպէս յառաջին ասացեալսն, զմարթն և զոչն մարթ:

Իսկ առ սոսա յարելով զհարկաւորն, և զոչ հար-

կաւորն, առնել ըստ հակասութեան հակադրութիւնս. նոյնպէս և զայլսն ամենայն զորս միանգամ ինքն թուէ, և եթէ այլ ինչ արտաքոյ զսոյն յեղանակի ձև ունիցի, նոյնպէս առաջդրեալ արասցէ ստորասութիւնս և բացասութիւնս. և այսպէս եղելոց հակադրութեանցն հետևութիւն ըստ կարգի եղիցի: Արդ վասն զի կարելին և ներընդունականն յայսմ տեղւոջ հակադարձեն առ միմեանս, ստորասութիւն առ ստորասութիւն, և բացասութիւն առ բացասութիւն, կայցեն սոքա իբրև զգլխաւորք. իսկ հետևեալք առ սոսա, որպէս պարզքն. նոյնպէս գտցես և ընդ փոխադրութեան ասացեալսն: Բայց զի կարելոյն գոլ՝ հետևանայ բացասութիւնս անկարելին. և հարկաւորին՝ պարզլիցն, ոչ անկարելի գոլ, և ոչ հարկաւորն գոլն:

Իսկ կարելոյն ոչ գոլ, և ներընդունականութեան ոչ գոլ՝ որք ՚ի փոխադրութեան ստորասութիւք, հետևանան դարձեալ ՚ի փոխադրութեան անկարելին և հարկաւորին բացասութիւքն՝ ոչ անկարելին ոչ գոլ, և ոչ հարկաւորն ոչ գոլ: Իսկ պարզ բացասութիւն կարելոյն գոլ և ներընդունականին գոլ՝ որք են ոչ կարելի գոլ և ոչ ներընդունական գոլ, ստորասութիւն պարզ, անկարելոյն անկարելի գոլ. և ՚ի փոխադրութեան ստորասութիւն հարկաւորին հարկաւոր ոչ գոլ: Իսկ ՚ի փոխադրութեան բացասութեան կարելոյն և ներընդունականին ոչն կարելոյն ոչ գոլ, և ոչ ներընդունականութեան ոչ գոլ. ՚ի փոխադրութեան ստորասութիւն անկարելոյն հետևանայ անկարելին ոչ գոլ. իսկ հարկաւորին պարզ ստորասութիւն սմին այսմիկ հարկաւոր գոլ: Բաժանորդեսցէ բանին տրամագիծս դասեալ ՚ի ներքոյ:



## ՊՐԱԿՔ ԻԵ

### ԲԱՆ

ԱՆԿԱՐԵԼԻՆ և ոչ անկարելին, կարելւոյն և մարթելւոյն, և ոչ մարթելւոյ և ոչ կարելւոյ հետևի. ոչ հակասութեամբ, բայց հակադարձաբար: Քանզի կարելւոյն գոլ բացասութիւն՝ ոչ կարելին գոլ. իսկ բացասութեան ստորասութիւն, անկարելին գոլ, որ է ոչ անկարելին գոլ. քանզի ստորասութիւն՝ անկարելին, իսկ ոչն անկարելի՝ բացասութիւն: Բայց հարկաւորն զիա՞րդ, տեսանելի է:

Երևելի է, զի ոչ այսպէս, այլ հակակայքն հետևին. այս հակասութիւն զատ. քանզի բացասութիւն, ոչ է հարկաւորն ոչ գոլ. քանզի մարթի ճշմարտել ՚ի վերայ նորին երկոքին. քանզի հարկաւոր ոչ գոլ՝ ոչ հարկաւոր գոլ: Եւ պատճառք ոչն հետևել նմանապէս այլոցն, զի ներհակաբար՝ անկարելին հարկ ելումն բացատրեալ լինի զնոյն կարելով. քանզի եթէ անկարելի, հարկաւոր է այս ոչ գոլ, այլ հարկաւոր է չգոլ. և եթէ անկարելի ոչ գոլ, այս հարկաւոր գոլ: Իսկ ապա թէ այն՝ նմանապէս կարելւոյն և այսոքիկ ներհակք են. վասն զի ոչ նշանակէ զնոյն հարկաւորն և անկարելին, այլ որպէս ասացեալ է՝ հակադարձաբար:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՔԱՌԻՑ եղող յեղանակացս իբր սեռականագունից՝ յորոց վերայ հարցափորձութիւս առնէ, զհետևութիւնս կարգելով: Եւ ասաց՝ զի ներընդդիմականն և կարելին առ իրեարս հակադարձեն յայսմ տեղւոջ. քանզի նմանապէս դասիցելոց սոցա, ուղղակի հետևութիւնք լինի ստորասութեան առ ստորասութիւն, և բացասութեան առ բացասութիւն: Իսկ անկարելին հետևմանս սոցա ոչ ևս ուղղակի, այլ հակադարձաբար: Քանզի ստորասութիւն անկարելւոյն՝ որ է անկարելի գոլ, հետևմանս բացասութեան կարելւոյն՝ որ է ոչ կա-

ընելի գոլ. իսկ բացասութիւն անկարելոյն՝ հետեւմնայ ստորասութեան կարելոյն. արդ ամենայն հակասութիւն անկարելոյն՝ ամենուն հակասութեան կարելոյն հետեւմնայ, այլ ոչ եւս ուղղակի: Նա ուրեմն այս է առացեալն, եթէ անկարելին կարելումն եւ մարթելում հետեւմնայ՝ ոչ հակասաբար, այլ հակադարձապէս:

Յետ այսորիկ փոխադրեալ զհարկաւորին հետեւութիւնս, սակս որոյ ասէ իսկ, հարկաւորն զիարդ տեսանելի է, իբր այն թէ՝ հարցափորձելի է. քանզի զներհականման ասէ հետեւմնալ. ներհականս ոչ իսկապէս, որպէս յառաջագոյն մեզ ասացաւ, ներհականս գոլ զայնպիսիսն՝ որք ոչ երբէք ճշմարտեն ՚ի միասին՝ այլ ստեն. իսկ յայսմ տեղւոջ ասէ ճշմարտել ՚ի միասին: Քանզի թէ ճշմարիտ է ասել հարկաւոր ոչ գոլ զերկիցս երկուսուն, ճշմարիտ է ասել ոչ հարկաւոր գոլ ասել զերկիցս երկուսուն. ապա ուրեմն ճշմարտեն ՚ի միասին՝ իբր արդեօք ներհականք եղիցին. մի՞ գուցէ ըստ ենթակայիցն ունակութեան. այսպէս նախադասութիւքս ներհակականք իւրերաց ասին գոլ. քանզի ումեմն գոլն, իսկ ումեմն ոչն գոլն, իսկ գոլն եւ ոչն գոլ՝ ներհականք թուին գոլ: Նա ուրեմն եւ հանդերձ սոքօք ասացեալքն նախադասութիւքն ներհականք եղիցին. քանզի ունի ստորասութիւն հարկաւորին, որ հետեւմնայ բացասութեան կարելոյն, զոչն գոլ ենթակայ. իսկ բացասութիւն հարկաւորին, որ հետեւմնայ ստորասութեան կարելոյն, զգոլն ունելով ենթակայ. ապա ուրեմն եւ ներհականք՝ ըստ գոլոյն եւ ոչ գոլոյ: Իսկ զի ոչ հակասութիւք սոքա, վասն զի ճշմարտեն ՚ի միասին, զոր է անհնար գտանել ՚ի հակասութեան, զատ ասաց գոլ զհակասութիւնս զայս: Քանզի բացասութեանս այսորիկ՝ որ կարգեալ է ընդ կարելով, որ ասէ ոչ հարկաւոր գոլ՝ ստորասութիւն է դասեալն ընդ ոչ կարելոյն ոչ գոլ՝ որ ասէ հարկաւոր գոլ:

Նոյնպէս եւ ստորասութեան՝ որ ընդ ոչ կարելոյն դասեալ է՝ որ է հարկաւոր ոչ գոլ, գտցես այլ բացասութիւն, որ է ոչ հարկաւոր ոչ գոլ. ապա ուրեմն ոչ իսկապէս յայսմ տեղւոջ հարկաւորին եւ, այլ պիտեսցի

փոխադրել զբացասութիւն ստորասութեան այսորիկ, որ է հարկաւոր ոչ գոլ. որոյ է բացասութիւն ոչ հարկաւոր ոչ գոլ, ընդ ստորասութեան կարելւոյն, որ է կարելի գոլ: Եւ եղիցի հակասութիւն հարկաւորին, որ է ոչ հարկաւոր գոլ, հետեւեալ հակասութեան կարելւոյն, որ է կարելի ոչ գոլ: Դարձեալ և այս հակադարձապէս որպէս անկարելին, և զի ոչ պարզ զհակասութիւն հարկաւորին, այլ 'ի փոխադրութենէն հետեւանայ պարզ հակասութեան կարելւոյն, ասաց զպատճառն գոլ. վասն զի ներհակաբար անկարելւոյն նման և հարկաւորին առեալ է 'ի վերայ նորին իրաց նոյն կարելի այլ ներհակաբար:

Այս է դարձեալ զգոլոյն և զոչ գոլոյն. քանզի եթէ երբեք ուրեք իսկապէս ճշմարտեսցէ՝ ոչ հարկաւորն գոլ, այլ հարկաւորն ոչ գոլ, անկարելին գոլ ճշմարտեսցէ: Եւ եթէ անկարելին ոչ գոլ ճշմարտէ՝ այլ ոչ անկարելին, զնոյն նշանակեսցէ հարկաւորն գոլ. ապա ուրեմն ըստ գոլոյն և ոչ գոլոյ սոցա առ իրեարս լինի հետեւութիւն: Յաղագս այսորիկ յորում պարզ հակասութիւն անկարելւոյն հետեւանայ՝ որ է անկարելի գոլ. հետեւեսցին սմին այսմիկ 'ի փոխադրութենէ հարկաւորին, որ է հարկաւոր ոչ գոլ: Իսկ որ 'ի փոխադրութենէ անկարելւոյն՝ որ է անկարելի ոչ գոլ, հարկաւորին հետեւեսցի պարզն՝ որ է հարկաւոր գոլ:

## ՊՐԱԿՔ ԻԶ

### ԲԱՆ

Մի՛ գուցէ ըստ որում կարելին, այսպէս կալ զհարկաւորին հակասութիւնս. քանզի հարկաւորն գոլ, կարելին գոլ. քանզի եթէ ոչ իցէ բացասութիւն հետեւեսցի. քանզի հարկ է կամ ստորասել կամ բացասել: Իսկ ապա եթէ ոչ կարելի գոլ, անկարելի գոլ. ապա ուրեմն անկարելի գոլ հարկաւորն գոլ, որ է անտեղի. այլ սակայն կարելւումն գոլ ոչն կար գոլ, հետեւի և սմա ոչն հարկաւոր գոլ: Իսկ ապա պա-

տաՀէ հարկաւորն գոլ՝ ոչ հարկաւոր գոլ, որ է ան-
տեղի. այլ սակայն հարկաւորն գոլ ոչ հետեւի կա-
րելութիւն գոլ, եւ ոչ հարկաւոր ոչ գոլ: Վասնզի նմա
երկոքեան մարթին պատահել. իսկ սմա՝ որ ճշմարիտ
իցէ՝ եւ ոչ եւս եղիցի այն ճշմարիտ. քանզի երկոքեան
կարեն կարելի գոլ եւ ոչ գոլ:

Այլ եթէ հարկաւոր գոլ եւ ոչ գոլ, ոչ եղիցի կա-
րելի երկոքեան. պակասեալ է այսուհետեւ, եւ ոչ
հարկաւորն ոչ գոլ՝ հետեւել կարելութիւն գոլ. քանզի
այս ճշմարիտ՝ եւ զհարկաւորն գոլոյ: Վասնզի սա ե-
ղիցի հակասութի հետեւելութիւն, ոչ կարելութիւն ոչ գոլ:
Իսկ նմա հետեւի ոչն կարելին գոլոյ, հարկաւորն ոչ
գոլ. որոյ բացասութիւն ոչն հարկաւոր ոչ գոլ: Այլ
հետեւին ուրեմն եւ այսք հակասութիւնք, ըստ ասացե-
լում յեղանակիս. եւ ոչինչ անկարելի պատահէ այն-
պէս եղելոցն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Որ վերոյտին կազմել զհետեւութի հարկաւորին
առ կարելին, նախ ցուցանէ, զի կարելին հետեւանայ
հարկաւորին, եւ այսուհետեւ խնդրէ զհետեւութի հար-
կաւորին 'ի հակասութեան կարելութիւն: Վասնզի ոչ
հաձիւր դիրք հարկաւորին՝ որպէս յառաջագոյն ե-
դան. սակս որոյ ասէ, Մի դուցէ ըստ որում կարե-
լին, այսպէս կալ զհարկաւորին հակասութի: Վասն-
զի կարելին գոլ՝ հետեւանայ հարկաւորին, ուստի
յայտ է, որպէս ասացաւ բազում անգամ, եթէ 'ի
վերայ նորին իրաց հարկ է ճշմարտել կամ ստոր-
ասութի կամ բացասութի. արդ եթէ ոչ հետեւանայ
կարելին գոլ հարկաւորն գոլոյ, բացասութի կարե-
լոյն հետեւեսցի նմա, որ է՝ ոչ կարելի գոլ: Իսկ
նմա հետեւանայ անկարելին գոլ, հետեւեսցի ապա
ուրեմն հարկաւորն գոլոյ՝ անկարելին գոլ. եւ եղիցի
հարկաւորն կարելի, որ է անտեղի: Արդ եթէ
ստոյգ եդեալ է հետեւութիւնս այս 'նայսմ տեղւոջ,
հետեւեսցի ապա կարելութիւն բացասութիւն իւր, եւ
ճշմարտեսցեն 'ի միասին. իսկ սա հետեւանայ ոչն

հարկաւոր գոլոյ, և հետևեսցի ոչ հարկաւորն գոլ՝ կարելութիւն. և ցուցաւ՝ զի կարելւոյն հետևմնայ հարկաւորին, ապա ոչ հարկաւորն գոլ՝ հետևեսցի հարկաւորն գոլոյ, և Ճշմարտեսցեն 'ի միասին հակասութիւնք. որ է անհնար:

Ցուցանէ՝ զի և ոչ երկու ստորասութիւնք հարկաւորին, ոչ պարզն՝ որ է հարկաւորն գոլ, և ոչ 'ի փոխադրութեն՝ որ է հարկաւորն ոչ գոլ, հետևմնան կարելութեան գոլոյ: Ընդէր. վասն զի կարելւոյն գոլ, յորժամ ըստ ինքեան ասի, ներընդունի և զոչն գոլ. որպէս ասացեալ՝ կարելի գոլ մարդ երաժշտական, Ճշմարիտ է, կարէ և ոչ գոլ երաժշտական: Իսկ հարկաւորն յորոց վերայ գոլն Ճշմարտեսցէ, անհնար է սմին յարմարել զոչն գոլ. որպէս 'ի վերայ մարդոյ՝ հարկ է գոլ զմարդ բանաւոր, որ է Ճշմարիտ. այլ ոչ ներընդունի ասել՝ հարկ է ոչ գոլ զմարդ բանաւոր. քանզի այս սուտ: Իսկ յորոց վերայ ոչն գոլ Ճշմարտէ. որպէս թէ ասէր, հարկ է զմարդն ոչ գոլ քառաքեաց, որ է Ճշմարիտ. և ոչ ևս ներընդունի ասել՝ հարկ է զմարդն գոլ քառաքեաց, քանզի սուտ այս: Ապա ուրեմն կարելւոյն ներընդունի և զգոլն և զոչն գոլ ըստ ինքեան. իսկ հարկաւորն զմի ոք, կամ զգոլն, կամ զոչն գոլ. քանզի միւսումն ոչ ևս եղիցի կար զնմանէ ստորոգիլ:

Յերկակաց ելոց հակասութեանց հարկաւորին, պարզին, և 'ի փոխադրութեն: Իսկ քառից նախադասութեանց, ցուցանէ՝ զի երեք նախադասութիւնքն հարկաւորին ոչ հետևմնան կարելութեան, ոչ հարկաւորն գոլ, և ոչ հարկաւորն ոչ գոլ, և ոչ՝ ոչ հարկաւորն գոլ. որպէս և գոյ ուսանել բացերևապէս 'ի բնագրէ անտի: Մնաց քառից ասացելոց նախադասութեանցս մու բացասութիւն, որ է ոչ հարկաւոր ոչ գոլ, որ հետևմնայ կարելութեան. և այսպէս եղիցի ըստ կարգի հետևութիւն: Քանզի ում ումեք և կարելւոյն հետևեսցի՝ և բացասութիւն այս ոչ միայն, այլ եղիցի և հակասութիւն հակասութեան հետևել: Քանզի բացասութեան այսորիկ՝ որ է ոչ հարկաւոր ոչ գոլ, ստորասութիւն է հարկաւորն ոչ գոլ. և հետևմնայ բացասութեան կարելւոյն, որ է ոչ կարելի գոլ: Ապա ու-

րեմն ըստ կարգի է հակառակութիւն հակառակութեան. այլ ոչ ցիրք 'ի միմեանց, թէպէտ և հակադարձաբար հետևանան։

## ՊՐԱԿՔ ԻԵ

### ԲԱՆ

ԲԱՅՑ տարակուսեսցի ոք, եթէ հարկելումն գոլ՝ կարելւոյն գոլ հետևի. քանզի եթէ ոչ հետևի, հակառակն հետևեսցի ոչն կարելի գոլ։ Եւ եթէ ոք ոչ զայս ասասցէ գոլ, այլ զհակառակութիւն, հարկաւոր է ասել զկարելւոյն ոչ գոլ. այլ երկոքեան սուտք զհարկաւորէն գոլ։ Այլ սակայն դարձեալ զնոյն գոլ թուի կար հատանիլ, և ոչ հատանիլ. և գոլ, և ոչ գոլ. ապա եղիցին և հարկաւորին գոլ մարթ գոլ. և այս սուտ։ Եւ երևելի է, զի ոչ ամենայն կարելւոյն գոլ, և կամ գնալ, զհակակայսն կարէ. այլ է 'ի վերայ ոմանց ոչ ճշմարիտ։

Նախ 'ի վերայց ոչ ըստ բանի կարիցն. որզան՝ հուր ջերմային, և ունի զօրութիւն անբան. քանզի որք համադերձ բանիւս են զօրութիւնք, սոքա աւելեացն և ներհակացն. իսկ անբանքն ոչ ամենեքեան, այլ որպէս ասացեալ է, հուրդ ոչ կարելի ջեռուցանել, և ոչ։ Եւ ոչ որքանք, այլ ներգործին միշտ. բայց ոմանք կարեն յայնցանէ որք ըստ անբանին զօրութիւնք են, համանգամայն զհակակայսն. այլ սակայն զայս յայտ սակս ասացեալ է, զի ոչ ամենայն զօրութիւն հակակայցն է ընդունական, և ոչ որքանք ասին ըստ նմին տեսակի։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՀՈՄԱՆՈՒՆԱԲԱՐ ասացեալ կարելիս 'ի խնդիր եած զիմաստասէրս, եթէ ընդ արդեօք հարկաւորին հետևանայ՝։ Քանզի ոչ ծածկեալ յինքեան զոր ունէր տարակուսանս՝ յայտնէ ամենեցունց, եթէ ունի այսպիսի իմն խնդիրս։ Քանզի ցուցաւ թէ կարելւոյն

հետեւմանայ հարկաւորին․ ապա եթէ ոք ժխտեսցի առ այս, ասասցէ ապա և զբացասութիւն սորա հետեւանալ, որ է ոչ կարելի գոլ։ Իսկ եթէ ոք ոչ զայս ասասցէ գոլ զբացասութիւն կարելւոյն, հարկաւոր է խոստովանել զկարելին ոչ գոլ։ Այլ և ոչ մի ՚ի սոցանէ հարկաւորին հետեւեսցի, որպէս յառաջագոյն ցուցաւ անտեղի․ և ինքն այժմ ասէ յայտնապէս․ այլ երկոքեան սուտք զհարկաւորէն գոլ։ Վասնզի հարկաւորն պահանջէ միշտ գոլ զոմն․ իսկ կարելին ոչ գոլ՝ ասէ ներընդունել զոմն երբեմն ոչ գոլ, որ են հակակայք միմեանց՝ միշտն գոլ և երբեմն ոչ գոլ․ արդ զի այսոքիկ ոչ հետեւմանան, կարելին ուրեմն հետեւեսցի հարկաւորին։

Այլ դարձեալ ունի տարակուսանս ՚նայսմ տեղւոջ։ Վասնզի որպէս ասէ, կարելին թուի նշանակել զհատանելն և զոչ հատանիլ, և զգոլն և զոչ գոլն, իբր եթէ ասէր․ կարելիս թուի յերկոսեան ձեռնարկել՝ զորոց ստորոգի՝ կարելիս ունել զայնոսիկ այնպէս զաւրութիւնս, որպէս զի երբեմն հատանիլ, իսկ երբեմն ոչ հատանիլ․ և երբեմն գոլ, և երբեմն ոչ գոլ։ Վասնզի ոչ յաւէտախաղաց ոք է ըն լինելութեն և յապականութեն։ Արդ եթէ այսպէս կարելիս հետեւանայ հարկաւորին, եղիցի և հարկաւորն ներգործել երբեմն զայս ինչ, և երբեմն ոչ․ որ է անտեղի։ Վասնզի հարկաւորն միշտ զմու, այլ ոչ եւս զաւէտմն ներընդունի․ և մինչև ցայս վայր տարակուսանքս։ Իսկ յետ այսորիկ զլուծումն ՚ի վերայ բերէ․ քանզի տրամատելով զկարելին, եթէ ըստ քանիս յեղանակս, գտանէ զկարելին հետեւել հարկաւորին․ քանզի որպէս համանունութիւն կարելւոյն զանհաւաստութիւն գործեաց, արասցէ զհաւաստութիւն գիւտ կարելւոյն որ ոչ համանունակի, այլ զնոյն նշանակելով հարկաւորին հետեւեսցի։

Իսկ տրամատութիւն լինի․ իբր եթէ իսկապէս ասել․ եթէ կարութիւն է որ բանաւոր, և է որ անբան․ և երկաքանչիւրոք սոցա երկակի։ Բանաւորին՝ է որ առ երկոսեան ունի զօրութիւն՝ ներգործել և ոչ ներգործել, կրել և ոչ կրել, և է որ առ մի միայն, զոր ոք իցէ ՚ի սոցանէ․ նախ խնդրէ ՚ի վերայ անբա-

նիցն, որ ըստ միում կարութեն ներգործեն. որպէս հուր անբան ելով կարուն ունի ջեռուցանել, այլ ոչ ևս զընդդէմն նորա. որպէս և ցրտացուցանել ձեան միայն, այլ ոչ ևս զընդդէմն: Իսկ բանաւորն՝ որ ըստ կամաց վարին, առ երկոսեան ունին զօրուն, վասն որոյ հետևի բանի արուեստ, և արուեստի բան. զի որ մտածութն կամին առնել իրս, ներընդդունի առ երկոսեան ձեռնարկել, յառնելն և յոչ յառնելն, և որ միանգամ այսպիսիք են. այլ ոչ ամենայն բանաւոր ունի զօրութի առ երկոսեան. քանզի աստուածայինքն անբաժ այսպիսի զօրութե. քանզի որ ոք եղիցի առ նոսա մին 'ի զօրութեցն, առնելն կամ ոչ առնելն, անհնար է միւսումն ևս գոլ տեղի 'ի վերայ նոցին իրաց: Ապա ուրեմն այսպէս կարելիս, որ ըստ միում ասի ձևոյ, այլ ոչ ըստ երկուս, հետևանայ հարկաւորին:

Լուծէ զտրամատութիս կատարելապէս առնել. քանզի ոչ այսորիկ իրողութես խնդիրս այս. վասն որոյ ինքն ասաց, թէ սակս այնորիկ Ճառեցաւ աստանօր, եթէ ոչ ամ կարելի զներհականսն կարէ:

## ՊՐԱԿՔ ԻԲ

### ԲԱՆ

ԲԱՅՑ ոմանք զօրութիք համանունք են. քանզի կարելին ոչ վայրապար ասի, այլ ոմն զի ճշմարիտ, իբր զի ներգործութն է. որգոն՝ կարելի գնալ, զի գնայ, և բոլորովին կարելին գոլ. և ոմն, որ զի ահա դեռ է ըստ ներգործութե, որ ասի գոլ կարելի. և միւսն յորժամ ներգործեսցէ. որգոն՝ կարելին գնալ, յորժամ գնասցէ. և այս 'ի վերայ շարժականաց է միայնից զօրութիս. և նա և 'ի վերայ անշարժից: Այլ զերկոսին ճշմարիտ ասել, կարելի գոլ գնալ կամ գոլ. և որ ահա դեռ գնայ, և զներգործունն, և զգնացականն: Արդ այսպէս կարելիս ոչ ճշմարիտ, ոչ զհարկաւորէն պարզաբար ասել.

բայց միւսն ճշմարիտ իսկ. վասն զի ներմասնոցն զբա-լորէն հետևի այնմ՝ ՚ի հարկէն, որում հետևի միշտն կարելի գոլ. բայց սակայն ոչ ամէն. և է թերևս ըս-կիզբն հարկաւորին և ոչ հարկաւորն ամենեցուն գոլ, կամ ոչ գոլ: Այլ զայլսն այսպէս կարգաւ հայցել և խնդրել պարտ է:

Այլ երևելի է յասացելոցս, զի ՚ի հարկէն էակն ըստ ներգործութե՟ է իսկապէս. թէ առաջին է յա-ւէտախաղացն, և ներգործութիւն՝ զօրութե՟ առաջին, և այնք որ առանց զօրութե՟ց ներգործութ՟ք միշտ են. որպէս՝ առաջին գոյացութիւնք. իսկ որ համդերձ զօ-րութ՟բն՝ բնութ՟ք առաջինք, բայց ժամանակաւ վեր-ջինք: Այլ ոմանք և երբեք ոչ են ներգործութ՟ք, այլ զօրութ՟ք միայն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Այլ երբ առաջին տրամատութիւն իմաստասիրիս խնդրելով յաղագս զօրութե՟ ՚ի բանաւորս և յան-բանս: Քանզի այն զօրութիւն կարելն յերկոսեան ձեռնարկել՝ ՚ի վերայ ոմանց անբանից տասաց ոչ յար-մարել. որպէս ՚ի վերայ ձեան կամ հրոյ. քանզի ոչ ևս կարելի ձիւն առ ոչ ցրտացուցանելն: Իսկ ՚ի վե-րայ բանաւորացն ասէ, եթէ ունին զօրութի՟ առ եր-կոսին ձեռնարկել. բայց որոց ընտրութի՟ և դատութե՟ ՚ի խորհրդեանն է, յերկաքանչիւրսն միտելով իւրացն, որ ոք ՚ի դէպ իցէ՝ առնելն և կամ ոչ առնելն, զօրու-թ՟ք միայն իւրքն, ներգործութ՟ք ոչ ևս. իսկ յորժամ ներգործութ՟ք եղիցի, ՚ի բաց բարձաւ զօրութ՟ք զնա գոլ. այլ ոչ ևս ՚ի հարկէ այսպէս եղեալս. քանզի ներընդունի և զմիւս մասն, խորհրդոյն յաղթահա-րեալ[1], և ոչ լինել զայս որ եղևս:

Արդ առ որ այսպէս բանս ունի զօրութիս, որ զի փորհել և ՚ի ձեռն խորհրդոյն իրաւորել ներընդու-նի, առ սոսա զգօլն և զաջն գոլ յարմարել, որ է եր-բեմն զօրութ՟ք, և երբեմն ներգործութ՟ք: Արդեօք ամենայն ուրեք բանի ելոյ, անկատամբ այսպէս զօրու-

1 Ցօրինակին յախտահարեալ:

թիս իցէ, և խորհրդեանն կարօտանայցէ. մի՛ գուցէ անբաժ աստուածայինքն տարակուսանաց և երկբայութե խորհրդոյն. քանզի ոչ ես ամանակաւ խորհել և կամ ձեռնարկել, յառնելն և կամ յոչն. քանզի մի զօրութի ճշգրտապէս ծանուցեալ, որ է անշարժ և անյեղյեղուկ, ներգործութե առ նոսա բերէ կատարելութի. քանզի անկատար և ոչ ինչ յանծայինս։ Անբանաբա՛ր արդեօք զայս առնիցեն. որպէս հուրն արդեօք ունէր զօրութի զմիշտն ջեռուցանել, այլ և ոչ զայս տարակուսանս լուծանել եթող իմաստասէրս. քանզի երկուց տեսակաց, որպէս ասաց, ելոցն կարելութն՝ բանաւորին և անբանին, երկաքանչիւրոց սոցա զերկակի ասացեալս բերէ զանազանութիւնս, և զմիշտն ներգործել, և ոչ միշտ գործել։

Եւ քանզի որպէս յանբանս գտանեմք զոմանս ունել այնպէս իմն բնութիս, որպէս զի զոր ունին՝ անընդհատ գոլ 'ի նոսա, իսկ զոմանս կարել գոլ զոր ունին յինքեանս՝ կարեն և ոչ գոլ. որպէս երբեմն յիշեաց զհանդերձն՝ զօրութիւն ունել երկակի, հատանելոյ և ոչ հատանելոյ, այսպէս և 'ի վերայ բանաւորացն ունի. քանզի որք միանգամ խորհրդոյ և մրտածութե կարօտանան, և 'ի ձեռն ամանակի զունակութի առնեն, նայսպիսիսն ունի տեղի գոլն և և ոչն գոլն. իսկ նաստուածայինսն՝ թէպէտ և բան, այլ ոչ ես յեղյեղուկ և ոչ խորհրդոյ երկբայութի, և ոչն ամանակում ներգործութի նոցա ընդունի զէութի, այլ անամանակաբար. ապա ուրեմն է և ըն բանաւորսն նոմանս գոլ և ոչ գոլ. քանզի նոմանս խորհելն ունի տեղի, իսկ նոմանս ներգործել միշտ, վասն զի և ոչ խորհրդոյ կարօտանան։

Արդ վասն զի յոգնաբար կարողութիս ասի, և զմիշտն ներգործութե, և որ այժմ ներգործութիս է, սակայն կարէ դադարել, ասէ և զայնմանէ, որ չև ես 'ի ներգործութե այլ զօրութե ելոյն կարէ գալ 'ի ներգործութիւն։ Արդ զայսպէս կարելիս որ չև ես ներգործէ, այլ ունի զօրութի ներգործել, ոչ ճշմարիտ հետևանալ հարկաւորին. քանզի 'ի սորա հետևութէ՝ հարկաւորն լինի ոչ հարկաւոր. իսկ զայն

որ ներգործութեամբ ահա գոյ կարելի, ճշմարիտ հետե-ւանալ հարկաւորին, քանզի կամի հարկաւորն որում ստորոգիցի՝ միշտ ըստ ներգործութեան գոլ:

Յետ այսորիկ և դաս իմն հակասութեանցս այսոցիկ բաշխէ, եթէ ո՞ւմ արդեօք յարմարի նախադասութիւն ընդունել. իբր այն թէ առաջին գոլ. առնու և դար-ձեալ համեմատութիւն երկրաչափական 'նայսմ տե-ղւոջ: Յետ ասելոյ՝ թէ 'ի հարկէն էակն ըստ ներ-գործութեան, առաջին դնէ զաւէտախաղացն և զմիշտ ներգործութեամբն՝ որ են անծայինքն, որոց ըն լինելութե և 'նապականութեանս են: Իսկ յարմարի անծայնոյն յաւէտախաղացն գոլն, որ է միշտ ներգործել. իսկ մարդկայնոցս ոչ յաւէտախաղացն. այլ որ է երբեմն գոլ, իսկ երբեմն ոչ գոլ: Պատուականագոյնք և լա-ւագոյնք անծայինքն մարդկայնոցս. ապա ուրեմն և յաւէտախաղացն պատուականագոյն այնոցիկ, որ եր-բեմն գոն և երբեմն ոչ գոն. և յարմարի ընդ յաւէ-տախաղացս հարկաւոր գոլն և կամ հարկաւոր ոչ գոլ. իսկ առ մարդկայինսն՝ այլքն ասացեալքն յեղա-նակքն:

Արդ. որպէս յաւէտախաղացն առ ամանակեանս ունի, այսպէս և հակասութիւն հարկաւորին առ այլսն կալցի հակասութիւնս. առաջին յաւէտախա-ղացն, և պատուականագոյն 'ներամանակեանցն ա-ռաջին, ապա ուրեմն և պատուականագոյն հարկա-ւորին հակասութիւնք այլոցն ասացելոց հակասութեանց: Քանզի հարկաւորն և 'ի վերայ անշարժիցն, որպէս ինքն ասէ, որ է իմանալեացն՝ ճշմարտէ. իսկ այլքն 'ի վերայ շարժականացն միայն, որ է զգալեաց: Քան-զի ամենայն որ երբեմն գոյ և երբեմն ոչ գոյ, զգալի միայն էութի է. իսկ իմանալի գոյացութի և ոչ ինչ: Քանզի իմանալիքն և անշարժք են, և ներգործու-թք առաջին, իսկ ամանակաւ վերջինք որ 'ի լինելու-թեանս և 'նապականութեանս են, որպէս ինքն ասէ. բնութք առաջինք, իսկ ամանակաւ վերջինք. որպէս զի զօրութք եղեալ իսկ էին նախ քան զգոլն ներգոր-ծութեամբ. քանզի եթէ ոչ այս, և ոչ եղանելն սմա այժմն գոյր. այլ զի եղև՝ յայտ է թէ էր զօրութք յառաջագոյն: Իսկ արդեան ամանակս, ըստ ներ-

գործութեան զսա բացերևեցոյց, և այս էր ըստ բնութեան յառաջագոյն գոլն. իսկ ըստ ժամանակին յետոյ։

Նաւակի գոլով ասիցելոցս, կամ միշտ ներգործութիւնք, կամ երբեմն զօրութիւնք, իսկ երբեմն ներգործութիւնք, կամ միշտ զօրութեամբ։ Գիտելի է, զի աստուածայինքն միշտ ներգործութիւնք, զօրութիւնք և ոչ երբէք, որպէս բանս եցոյց։ Իսկ որ ընդ լինելութեանս և ապականութեանս են, երբեմն զօրութիւնք, և երբեմն ներգործութիւնք։ Իսկ այնոցիկ՝ որ միշտ զօրութիւնք են, բաւական մեզ դուզնաքեայ առ ՚ի տարացոյց առնուլ, եթէ է ինչ միշտ զօրութիւնք, որպէս զժամանակն առնուլ. քանզի կամին զսա գոլ միշտ զօրութիւնք. քանզի եթէ անցեալն ոչ է, իսկ ապառնին դարձեալ զօրութիւնք միայն է՝ և ներգործութիւնք ոչ ևս, յայտ է թէ միշտ համդերձեալ գալ ՚ի ներգործութիւն. իսկ ներգործութիւն իսկապէս և ոչ երբէք ընկալցի, զի և այժմուն՝ ցուցաւ ոչ ժամանակ, այլ սկիզբն ժամանակի։ Նոյնպէս և ՚ի վերայ նիւթոյն ունի. քանզի ներգործութիւնք նիւթ զէութիւն և ոչ երբէք ընկալցի. զի եթէ եղիցի ներգործութիւնք գոյացութիւն, կորուսցէ զնիւթն զինքն գոլ։ Նա եղիցի նիւթն՝ ոչ նիւթ, այլ նիւթ է ոչ ներգործութիւնք, իսկ է միշտ զօրութիւնք։ Իսկ էն միշտ զօրութիւնք՝ ոչ ընաւ է ներգործութիւնք, և հաստատուն սա ցա յանհունսն։ Ապա ուրեմն և անհունն՝ որ է անսպառն, զօրութիւնք միայն, այլ ոչ ներգործութիւնք. բաւական ինձ թուի մի ասացեալ տարացոյցս առ ՚ի դիտել, զի է ինչ՝ որ միշտ զօրութիւնք և ներգործութիւնք ոչ երբէք։

## ԳՐԱԿՔ ԻԹ

### ԲԱՆ

Եթէ ո՞ր ոք ներհական է, ստորասութեան բացասութիւն, թէ ստորասութիւն ստորասութեան, թէ բան բանի. որ ասէն թէ ամենայն մարդ արդար. ոչ ոք ոմն մարդ արդար. կամ թէ ամենայն մարդ արդար, ամենևին մարդ անիրաւ է. որզան՝ Կալլիաս արդար

է. Կալլիաս արդար ոչ է. Կալլիաս անիրաւ է. ո՞ր ոք ներհական ՚ի սոցանէ իցէ: Քանզի ներ ձայնողքն հետեւին ներ խորհրդողացն. թէ անդ ներհական կարծիքն, ներհականին. որզամ՝ զի ամենայն մարդ արդար, ամենուն մարդ անիրաւ. եւ ՚ի վերայ ներ-ձայնողացն ստորասութեցն հարկ է նմանապէս ունել. եւ եթէ ոչ անդ ներհականին կարծիքն ներհական է, ոչ ստորասութի ստորասութեան եղիցի ներհական, այլ ասացեալ բացասութիքն:

Իսկ ապա խուզելի է, ո՞ր կարծիք ճշմարիտ սուտի կարծեացն՝ ներհական. արդեօք հակասութե, թէ որ զհակառակն գոլ կարծեցուցանէ: Եւ ասեմ այսպէս. է իմն կարծիք ճշմարիտ՝ բարւոյ, զի բարի. եւ այլ զի ոչ բարի, սուտ, եւ միւս զի չար: Արդ ո՞ր ոք ՚ի սոցանէ ներհական ճշմարտին. եւ եթէ մի է, ըստ որո՞ւմ ումեք է ներհական:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԶՔՆՆԱԴ իմն տեսութի, եւ արժանաւոր բանական իմաստասիրութե առնէ աստանօր իմաստասէրս, հարցափորձելով՚ի վերայ հակասութեան, եթէ ո՞վ արդեօք բացասութի ստորասութե իւրոյ իցէ ներհական, եթէ այլ ասացեալ արտաքոյ՝ ստորասութի. իսկ առարկութիս է այսպիսի, զո՞ր ոք արդեօք ասելի է ներհական գոլ ստորասութե. զներ հակասութե բացասութին, թէ արտաքոյ ստորասութի. որպէս ըստ պակասութե ստորասութին պատահեաց գոլ ներհական այնմիկ՝ որ ըստ ունակութե էր. որպէս՝ արդարն մարդոյ բացասութի ոչն է արդար, իսկ ըստ պակասութե ներհական՝ որ ասէ, անիրաւ է. ո՞վ ոք ՚ի սոցանէ ներհական իցէ արդարն գոլոյ, ոչն արդա՞ր գոլ, թէ անիրաւն գոլ: Եւ զայս ոչ վայրապար առնէ. քանզի խնդրեաց յառաջագոյն ՚ի վերայ հակադրութեցն, եւ ասաց զըստ բոլորէ հակադրութիւն՝ ոչ ճշմարտելի ներհակաբար ասացեալս. իսկ մասնաւոր հակասութեն ճշմարտել, որպէս ՚ի վերայ ամէն մարդ արդար է, ներհական բացասութի, ոչ ոք մարդ արդար. իսկ ըստ հակասութե բացասութի, ոչ ա-

մէն մարդ արդար է. իսկ ըստ պակասութեան հակակայեալք, ամէն մարդ անիրաւ է։

Արդ 'ի վերայ երկուց բացասութեանց առ միմեանս ոչ են խնդիրք, քանզի ոչ և ս առաջի կայ ասել յաղագս ըստ բոլորէ հակադրութեանցն, այլ որ միանգամ հակասաբար հակադրութիւնք են. և զի այս ճշմարիտ է, յայտ 'ի տարացուցէն է. քանզի եառ՝ ոչ ըստ բոլորէ, այլ ըստ իւրաքանչիւրոցն խնդրելով։ Եթէ Կալլիաս արդար է ստորասութեան՝ բացասութի՞ն այնմիկ իցէ ներհական՝ որ ասէն, Կալլիաս ոչ է արդար, եթէ ստորասութի, որ ասէ՝ Կալլիաս անիրաւ է։ Իբր եթէ ընդհանուր ասել, ստորասութի բացասութեա՞ն իւրում, և բացասութի ստորասութեա՞ն իցեն ներհականք իսկապէս. եթէ ո՞յլք ոմանք արտաքոյ նոցա գոն ներհականք։ Պիտանացու իբր առ 'ի գիւտ նոցա՝ հանդերձեալ իմն տեսութի, և զայս 'ի խոստովանելոց անտի։ Քանզի յառաջագոյն եցոյց, թէ ներտաբերութեան բանս՝ գուշակ է խորհրդոյս մերոյ։

Արդ եթէ ներձայնոջքն՝ որպէս ասէ, ներանձինսցն՝ որ է մտածութեանցն, նշանակք են, արտաբերութեան ձայն հաւաստապէս պարտի զհակասութիւս առաջաբերել։ Քանզի որպէս անդ զմտածութիւնսն տեսցէ ունել առ միմեանս, հարկաւոր է սապէս գոլ և զնշանակսն նոցա։ Զի եթէ ներխորհրդումն՝ ներհական կարծիքն եղիցի ներհական, հարկ է և ըն բանին զստորասութի ստորասութեան գոլ ներհական։ Իսկ եթէ անդ ներհական կարծիքն ներհական կարծեաց ոչ և ս երևեսցին գոլ ներհականք, յայտ է թէ ոչ ստորասութի ստորասութեան եղիցի ներհական, այլ յաւէտ բացասութի։

Յետ այսորիկ առաջդրէ և զկարծիսն, թէ 'նիմն ներխորհրդումն ճշմարիտ կարծիք այն՝ որ կարծեն զբարին բարի գոլ. իսկ զմիւսն սուտ՝ որ կարծեն ըզ բարին ոչ գոլ բարի. իսկ այլ սուտ՝ որ կարծեն չար գոլ. ո՞վ ոք 'ի սոցանէ արդեօք յերկոցունցս իցէ ներհական բարոյն ճշմարիտ կարծեաց, ո՞չ բարին, եթէ չարին կարծիք, սուտ երկոքին զբարոյն։ Եւ զի են ներհական երկակի ասացեալքն, քանզի է ոմանց իմն ընդ մէջ, իսկ ոմանց ոչ է. արդ որոց է իմն ընդ մէջ,

որպէս բարոյն և չարի՝ յայտ է, զի բացասութիւն և ստորասութիւն որք են միում ստորասութեան ներհականք, ոչ զնոյն նշանակեն, այլ որիշ 'ի միմեանց։ Իսկ որոց ոչ է ընդ մէջ, Թուի զնոսա մու գոլ. վասն որոյ ասէ. և եթէ մի է, ըստ որում արդեօք իցէ ներհական զնոսա գոլ, արդեօք ըստ բացասութեան, թէ ըստ ստորասութեան։ Որպէս 'ի վերայ այնորիկ, Սոկրատէս ողջ է. և վասն զի ողջութեան և հիւանդութեան ներհակաց ելոց, ոչ ինչ է ընդ մէջ. և ոչ ինչ առաւել կարէ նշանակել՝ Սոկրատէս ոչ է ողջ, բայց եթէ զայն, եթէ Սոկրատէս հիւանդ է. և այսուիկ Թուի՝ մու գոլ զբացասութիւս զայս, ոչ ողջ է Սոկրատէս, և զստորասութիւն, Սոկրատէս հիւանդ է։ Ըստ որում արդեօք, ըստ ո՞չ ողջ գոլոյ, թէ ըստ հիւանդն գոլոյ ներհական. ասին սոքա գոլ՝ ողջն գոլում Սոկրատայ։

Բայց գիտելի է, զի Թէպէտ և զնոյն Թուի նշանակել բացասութիւս այս և ստորասութիւն, սակայն յեղանակաւ ստորոգութեան տարբեր են իրերաց։ Քանզի զի ճշմարիտ ելոյ՝ Սոկրատէս ողջ է, սուտ է բացասութիւն՝ որ ասէ, ոչ ողջ է Սոկրատէս, կամ Թէ հիւանդ է. քանզի որ կարծէ զիքն իբրև զիք գոլ, և բանն նոյնպէս ճշմարիտ՝ որ ճշմարտաբերութեան, որ ասէ զիքն իբրև զիք գոլ։ Իսկ որ ասէն՝ ոչ ողջ է Սոկրատէս, զիքն իբրև զչիք զմանէ ստորոգէ։ Իսկ որ ասէն հիւանդ գոլ, ստելով և սա զչիքն իբրև զիք, յոյժ տարբակացեալք են 'ի միմեանց. յայտ է զի բացասութիւն՝ որ ասէ, ոչ ողջ է Սոկրատէս, և ստորասութիւն՝ որ ասէ, Սոկրատէս հիւանդ է, զատք են 'ի միմեանց. քանզի ահա ցուցաւ ըստ յեղանակ ստորոգման այլ և այլ նշանակել։

## ՊՐԱԿՔ Լ

### ԲԱՆ

Արդ այսուհետև կարծիք զներհական զկարծիսն որոշել ներհականացն գոլ, սուտ. քանզի բարւոյն՝ զի բարի, և չարին՝ զի չար. սոյն թերևս և ճշմարիտ, թէ աւելիք, թէ մի է. և ներհական այսոքիկ ոչ ներհականացն գոլ ներհական, այլ առաւել ներհականութիւն. և եթէ իք բարւոյն, զի բարի է, և բարւոյ կարծիք. և է զի ոչ բարի է, և է այլ զի ոչ է. և ոչ կարէ գոլ, և կարելի է զայլոցն ոչ մի դնելի է։ Այլ որքանք ել զոյն է՝ կարծեցուցանեն, և ոչ որքանք ոչ գոլ զէն. քանզի անհունք երկոքեանն, և որքանք ել կարծեցուցանեն զոյն է. և որքանք ոչ ել զէն, այլ ՚նորքանս խաբէն, և այնոքիկ են արտորոց լինելուիքն, և արդի հակակայցն լինելութիւնք, իսկ ապա և խաբանքն։

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՏԱԿԱՒԻՆ զպիտամնացուն իսկ հաստատելով, առ ՚ի ցուցանել եթէ ո՞ արդեօք յաւէտ ներհական իցէ ճշմարիտ ստորասութեան, իւր բացասութիւնս, թէ ներհական ստորասութիւն։ Որոց զանազանութիւն ընտրութեան ՚ի մտացն կարծիսն առաւելապէս է. քանզի որպէս անդմտածութիւն, այսպէս և ՚նարտաքերութեան կալցի բան։ Իսկ յաղագս այսորիկ նախ սահմանէ զներհական կարծիս, եթէ զի՞նչ ձևացուցիչ սորա. իսկ յետ այսորիկ ձեռնարկէ առ ՚ի ցուցանել զխնդիրն իւր։

Արդ այսուհետև կարծել զներհական կարծիսն՝ ներհականացն գոլ՝ սուտ. և զոր ասէդ այսպիսի իմն է. եթէ ոք սահմանեսցէ ներհական կարծիս գոլ զայնոսիկ, որ յաղագս ներհականացն ունին կարծելութիւնս, ոչ է ճշմարիտ. ընդէ՞ր. քանզի ներհականքն և ոչ երբեք ճշմարտեն ՚ի միասին. իսկ յաղագս ներհականացն կարծիք ճշմարտեն ՚ի միասին։ Քանզի ներ֊

հակաց եղեց բարւոյ և չարի՝ իմն կարծիք բարւոյն, զի բարի է, և չարոյն, զի չար է. այսոքիկ ճշմարիտք 'ի միասին. քանզի նորին ախորժակաց է զսոյն կարծել, այլ ոչ հակակայց, սակս որոյ և թուեսցի մի գոլ զայսպիսի կարծիք. արդ եթէ մի և եթէ բազումք, ոչ յաղագս սորա խնդրելի է 'նայսմ տեղւոջ, այլ միայն այնչափ, զի միայն ճշմարտել 'ի միասին, ըստ որում ոչ գոն ներհակմունք: Արդ իբր զի այսպէս ոչ սահմանելի է զներհական կարծիսն, իբր արդեօք իցէ՝ ինքն սաէ, եթէ առաւել ներհակապէս: Այլ զոր ասէդ՝ այսպիսի իմն է, եթէ ոչ վայել է զներհական կարծիսն սահմանելի զներհականս պարունակելոյ, որպէս թէ զբարւոյն ունել կարծիս բարւոյ, և զչարին՝ չարի ունել կարծիս. քանզի բարւոյն զի բարի է, և չարին զի չար է. այսպիսիքս ոչ ներհակմունք, թէպէտ և 'ի ներհակացն իցեն, այլ ճշմարտեն 'ի միասին, և միոյ գոն ախորժակաց ծնունդք: Իսկ բարւոյն՝ զի բարի, և չարւոյն՝ զի չար, այսպէսքն ներհակմունք միմեանց. վասն զի ներհակապէս 'ի վերայ կարծեն նորին, ըստ որում ոչ ինչ արգելու և զբացասութի սոցա ներհական գոլ. քանզի զանազանաց ախորժակաց այսպէս թուելութիքս:

Յետ այսորիկ սկիզբն առնէ ձեռնարկութե առ 'ի ցուցանել զոր առաջինն եդ, եթէ են կարծիք բարւոյն, զի բարի, և այլ՝ որ միանգամ ասացաւ համառօտի ասացմանս ելոյ և հաւաստելոյ: Միտք տեղւոյս են այսպիսի. քանզի կամի ինքն ցուցանել, եթէ ճըշմարտի ստորասութե ելոյ, բացասութիւն իւր առաւել ներհական գոյ, քան թէ կարծեցեալ ստորասութի: Այլ զի ներհակմունք որոշակի ուեմն գոն ներհակմունք, այլ ոչ անորոշաբար, վասն որոյ և ցուցեալ է, զի մումիում է ներհական, այլ ոչ յոլովք, առնու որոշաբար իմն մու, և սմին այսմիկ խնդրէ զայն որ որոշակին ներհականն գոյ, ասելով, եթէ իք բարւոյն՝ զի բարի է բարի կարծիք, և է զի ոչ բարի է, և որ այլն, որքան որոշակի սմին այսմիկ հակակայն, 'ի բաց թողու զայլսն ամենեսին, իսկ որ որոշակին սմա գոյ ներհական, յաղագս սորա զխնդիրն առնէ:

Քանզի բարւոյն կարծեաց խնդրէ, եթէ ո՞ր ար-

դեռք կարծիք իցեն ներհական, որպէս մու միում. քանզի և կարծել զբարին, զի գովելի է, և զի նախանձելի է, և զի շահաւոր է, և այլք բազումք որք հետևանան բարւոյն, և դարձեալ առնուլ և անտրոշակի կարծիս ներհականս յաղագս բարւոյն, զի չար է, զի վնասակար է, զի պախարակելի է. և այսոքիկ զոչն եակի բարւոյն իբր զէակ գոլ դնեն: Իսկ այլք որք հետևեալս բարւոյն ասեն ոչ գոլ նման, եթէ ոչ գովելի, և ոչ օգտակար, և ոչ պիտանացու, և որ միանգամ այսպէս հնարաւոր է դնել զբարւոյն: Արդ իբր զի անհունք են այսոքիկ, արտաքս 'ի բանէ կայցեն. քանզի անհունիցն և ոչ գիտութիւն լինի:

Իսկ որք մի միում ներհական լինին, յաղագս այսորիկ խնդրելի է. և ասէ գոլ մու միում զայն ում խաբն. իբր այն թէ պատրանքն. քանզի ամենեցունց այսոցիկ անհուն կարծելոցս, ոչ վայրապար եղև ասել զբարին ումն զի չար, և ումն զի վնասակար, իսկ այլն զի ոչ պիտանացու, այլ պատրեալք 'ի բարոյն գիտութէ, այսուիկ կարծեցին զբարին 'ի զանազանութիւնս բաժանեալ: Իսկ պատրանքն են յայնցանէ, արտորոց[1] լինելուիքն, իբր արդեօք ասէր, թէ յորոց լինին այսպիսի կարծիքս՝ որ սուտք են 'ի բացասութէ խաբէութէ, սուտ ամենայնի ելով պատճառ իմն և սկիզբն, ներհակապէս զբարւոյն տալով կարծիս: Բանզի իւրաքանչիւր ոք կարծեաց զնա գոլ ոչ բարի. ուստի և պատրեալ. և ապա յետոյ զայլն ամենայն գեղեցիկ ուրեմն 'ի տեղւոջն էառ զպատրանս ծնող ամենայն սուտ կարծեաց ասացելոց. իսկ պատրանացս արարչական՝ զբացասութի, ապա և ամենայնից ուրեմն ստից կարծեացն այնոցիկ արարչական բացասութի: Արդ եթէ սուտք այնոքիկ, առաւել ստագոյն պատճառն և արարչականն սուտութեան նոցա. և առաւելն սուտ՝ առաւել ներհական ճշմարտին. ապա ուրեմն և բացասութիւն՝ ճշմարիտ ստորասութէ առաւել եղիցի ներհական, քան եթէ կարծեցեալ ստորասութիւն:

Բանզի և ինքն իմաստասէրն զնոյն յայտնեաց՝ ա-

[1] Այս ինքն յորոց:

սելով, եթէ խաբն է յորոց լինելուն. իբր եթէ ասէր՝ 'ի բացասութենն. քանզի իւրաքանչիւր ուրուք լինելութիւն 'ի բացասութենէ. այլ ոչ վայրապար, բայց թէ յիւրմէն և յընտանեգունէ, որ ներգործութիւն չև է այս որ լինիս, այլ զօրութիւն միայն. վասն որոյ և յետոյ կարէ զգոլն ներգործութեան: Քանզի լինի երաժշտականն յոչ երաժշտականութենէ, այլ ոչ վայրապար երաժշտականն է, քանզի ոչ 'ի քաղցուէ և ոչ 'ի դառնէ. քանզի և ոչ երաժշտականութիւն իցեն սոքա, այլ յիւրմէ պակասութենէ՝ յաներաժշտականութենէն: Սոու-գապէս 'ի վերայ եւբեր և զայն, եթէ լինելութիւնքն 'ի հակակայից անուի, որ է ճշմարիտ. քանզի օչն սպիտակ՝ 'ի սպիտակէն լինի, և սպիտակն՝ յոչ սպիտակէն. վասն որոյ և միայնք հակակայք այսպիսիքս:

## ՊՐԱԿՔ ԼԱ

### ԲԱՆ

Արդ եթէ բարին, և բարի, և ոչ չար իք. և ոմն ըստ ինքեան, և ոմն ըստ պատահման. քանզի պատահեցաւ սմա՝ ոչ չարութիւն գոլ: Նաև առաւել իւրաքանչիւրն ճշմարիտ, կամ ըստ ինքեանն, կամ ըստ պատահմանն. և սուտ, թէպէտ և ճշմարիտ: Արդ ոչն բարի՝ բարին, ըստ ինքեան ելոյ՝ սուտ. իսկ չարին ըստ պատահմանն. ապա ուրեմն առաւել եղիցի սուտ բարւոյն հակասութիւնն, քան թէ ներհականին: Քանզի որ յոյժ ստեալ է, առ իւրաքանչիւրոք զներհականն ունելով կարծիս. քանզի ներհականքն 'ի յոլովիցն տարբերեցելոց առ 'ի նոյն. արդ եթէ ներհական սոցա միոյն, և ներհականագոյն բացասութիւն, յայտ է՝ զի սա եղիցի ներհական: Իսկ այնր՝ թէ չար բարին շարամանեալ է, և քանզի ոչ բարի հարկ է թերևս կարծել զնոյն:

ԲԱԶՄԱԶԱՆ ցուցուք զիւր թուելութիւն հաստատէ, եթէ առաւել ներհական է ստորասութիւն իւր բացասութեան. յորմէ դիմեալ խօսնակ ունի ընդ ինքեան զճշմարտութիւն, որպէս և ՚նայսմ տեղւոջ. քանզի լինի նմա ձեռնարկութիւնս այս յայնմանէ, որ ըստ ինքեան ումեք ստորոգիցի, և կամ ըստ պատահման. քանզի ըստ ինքեան ստորոգեալ՝ ըստ բնութեան և կարևոր գոլ, իսկ ըստ պատահմանն՝ ոչ ևս ըստ բնութեան: Արդ վասն զի բարին ընդունի և զբարոյն ստորոգումն, որ է ճշմարիտ ասել զբարին՝ զի բարի է, ընդունի և զոչ չարին. քանզի ճշմարիտ է և ըզսոյն 'ի վերայ բարոյն ասել, եթէ ոչ չար է. այլ ոմն ըստ ինքեան ասի սոցա, իսկ ոմն ըստ պատահման. վասն զի բարւոյն ըստ ինքեան ստորոգիցելոյ զբարին՝ ըստ ինքեան և ճշմարտութեան եղանի, և վասն զի է բարին բարի, պատահեաց սմա գոլ ոչ չար: Այսպէս ուրեմն ըստ ինքեան ասել զբարին թէ բարի, իսկ ոչ չար՝ ըստ պատահման. և են հակակայք սոքա բացասութեան այնմիկ, որ ասէ զբարին ոչ չար գոլ, ստորասութիւնն՝ որ ասէ զբարին չար գոլ. իսկ ստորասութեանն՝ որ ասէ զբարին բարի գոլ, բացասութիւն՝ որ ասէ զբարին ոչ բարի գոլ. և 'ի վերայ այնոցիկ որք ճշմարտեն, ոմն էր ըստ ինքեան, իսկ ոմն էր ըստ պատահման: Այսպէս և որք ստեն, ոմն ըստ ինքեան ստէ, իսկ ոմն ըստ պատահման:

Ըստ պատահման ելոյ ճշմարտելն, որ ասէ զբարին ոչ չար գոլ՝ ըստ պատահման եղիցի և ընդդիմակն սոցա՝ որ ասէ զբարին չար գոլ: Իսկ ըստ ինքեան ելոյ ճշմարտելն, որ կարծէ զբարին բարի գոլ, ըստ ինքեան ստեսցէ և հակակայն սորա, որ կարծէ զբարին՝ ոչ բարի գոլ: Այսպէս ուրեմն առաւել քան զներհական ստորասութիւն՝ որ ըստ պատահմանն ստէ, որ է չարն, եղիցի ներհականագոյն իւր բացասութիւն, այն՝ որ ըստ ինքեան ստէ, որ է ոչ բարին, քան թէ որ ըստ պատահմանն: Եւ քանզի ըստ ինքեան ստէ բացասութիւն, իսկ ըստ պատահման՝ ներհական ստոր-

ասութիւն, առաւել ապա ստեսցէ բացասութիւնն բարւոյն, քան թէ ներհական ստորասութիւն։

Արդ թէպէտ և ներհականքն երկոքեան սուտք առ ճշմարտին, սակայն առաւելագոյնն սուտ՝ ներհականագոյն է. իսկ առաւել սուտ է բացասութին, ներհականագոյն ապա բացասութին։ Եւ վասն զի մումում է ներհական, բացասութի ապա եղիցի, ոչ ներհական ստորասութի։ Վասն որոյ և ինքն 'ի վերայ բերէ յիշեցուցանելով մեզ զսահման ներհականացն. քանզի սահմանեն զներհականսն զյոյժ տարբերեալսն առ 'ի նոյն։ Արդ վասն զի յոյժ ճշմարտէ ստորասութիւն բարւոյն, զի բարի, քան զայլսն ամենայն՝ որ միանգամ ճշմարտեն 'ի վերայ նորա. իսկ յոյժ ստէ բացասութի բարոյն, զի ոչ բարի, քան զայլսն ամենայն՝ որ միանգամ ստեն. եղիցին ապա սոքա ներհականք միմեանց։ Իսկ միւս առաջակայ ասացեալն, որ ասէ, թէ չարն շարամանեալ է, համառօտ. և թուի ըստ ինքեան այլ ձեռնարկութի գոլ. իսկ միտք տեղւոյս այս են։ Եթէ երկու իցեն որ 'ի բաց բառնայցեն զմին, և մինն ըստ ինքեան բաւական իցէ 'ի բաց բառնալ զընդդիմակն իւր, իսկ միւսն՝ ոչ ևս ինքն, այլ կարօտանայցէ միւսումն զօգնականութի. առաւել ներհական գոլ ասի այն՝ որ ոչ ումեք կարօտանայ առ 'ի բաց բառնալ զընդդիմակն իւր։ Քանզի չարն՝ եթէ ասասցի 'ի վերայ բարւոյն՝ ոչ ևս ըստ ինքեան 'ի բաց բառնայ զբարին, այլ ունի զօրաւիգն զոչ բարին. քանզի որ ոք կարծեսցէ զբարին չար գոլ, նախ հարկի զնա դնել ոչ բարի գոլ, յետ այսորիկ ապա և չար։ Իսկ եթէ ոք կարծեսցէ զբարին ոչ բարի գոլ, ոչ ևս այլում կարօտանայ, այլ ինքն ըստ ինքեան ունի զայսպէս կարծիս։ Ապա ուրեմն ներհականագոյն եղիցի բացասութիւն, քան եթէ ներհական ստորասութեանն կարծիք։

## ԳՐԱԿՔ ԼԲ

### ԲԱՆ

Այս ևս՝ թէ ՚ի վերայց այլոցն նմանապէս պիտի ունել, այսուհետև թուեսցի բարւոք ասել. քանզի ամենայն ուրեք հակասութիւն, և կամ ոչ ուրեք, և յոր ոչ է ներհականութիւն. բայց որքանեաց ոչ իք ներհական, յաղագս սայց իք սուտ ճշմարտութիւն հակակայ. որգամն՝ որք զմարդն ոչ կարծեն մարդ, յոյժ սուտ են: Արդ եթէ սոքա ներհական, և այլքն հակասութիւնքն:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԿԱՆՈՆ ընդհանրական և ՚ի վերայ ամենայն հակասութեան յարմարեալ ՚նայսմ տեղւոջ արտադրէ իմաստասէրս: Վասնզի վայելուչ է իմաստասիրական տեսութիւն, ոչ զի ՚ի վերայ ոմանց բանն յարմարիցի, իսկ ոմանց ոչ ևս, զայնպիսին կանոնել, այլ զի մի թողցի արտաքս ինչ՝ որ ոչ ընդ կանոնաւ պարունակեսցի, որպէս և ՚նայսմ տեղւոջ առնէ ձեռնարկութիւնս: Վասնզի եթէ նմանապէս ունի ասացեալս վերայ ամենայն հակասութեանցն՝ այսուհետև թուեսցի բարւոք գոլ: Որպէս զի է իմն ստորասութիւն, որում ոչ միայն բացասութիւն իւր հակակայի, այլ և այլ իմն ստորասութիւն. և ՚ի վերայ սոցա լինի երկբայութիւն, եթէ ո՛վ արդեօք առաւել ներհական իցէ: Իսկ են այլք, որոց ոչ գտանի ամենևին ստորասութիւն հակակայ, այլ միայն բացասութիւն իւր, յայտ է զի բացասութիւն իւր ըստ բոլորէ, զի ըստ բոլորէ ստորասութեան չիք գտանել ներհական այլ ինչ ստորասութիւն: Վասնզի կարծեացն այնմիկ՝ որ կարծէ զմարդն մարդ գոլ, ճշմարիտ ելոյ, ոչ ևս գտանի սուտ կարծիք այլ ինչ ներհական գոլ, որ ունիցի ստորասութիւն, բայց միայն նորուն բացասութիւն, որ կարծէ զմարդն ոչ մարդ գոլ: Այլ վասն զի կարծիքս ունօղք զբաց-

ասութի՞ւն ամենայն ուրեք գտանելին ։ Իսկ ՚նորա ստորասութիւն զներհականն ունելով կարծիք , ոչ ամենայն ուրեք . յայտ է , զի և բացասութիւն առաւել ներհական , քան եթէ զներհական ստորասութիւն ։

## ՊՐԱԿՔ ԼԴ

### ԲԱՆ

Եւ ևս նմանապէս ունի և բարւոյն՝ զի բարի է , և ոչն բարւոյ՝ զի ոչ բարի . և առ այսոքիւք բարւոյն՝ զի ոչ բարի , և ոչ բարւոյն՝ զի բարի ։ Արդ ոչուեն բարւոյ զի ոչ բարի , ճշմարտի ելոյ կարծեաց , զի՞նչ եղիցի ներհական , ոչ ահա որ ասեն թէ չար . քան զի համանգամայն երբեմն եղիցի ճշմարիտ . բայց ոչ երբէք ճշմարիտ ճշմարտութեան ներհական . քանզի իք իմն ոչ բարին չար . իսկ ապա մարթի համանգամայն ճշմարիտ գոլ ։ Եւ ոչ դարձեալ զի ոչ չարն . քանզի ճշմարիտ է և այս . քանզի համանգամայն և սոքա եղիցին . և պակասեալ է ոչուեն բարւոյ՝ զի ոչ բարի , է ներհականն ոչ բարւոյ՝ զի բարի . քանզի ոչ ճշմարիտ է այս ։ Իսկ այնք , վասն զի բարին ներուեմ բարւոյն , ներհական բարւոյն՝ զի ոչ բարին , սուտ . քանզի ճշմարիտ է այն . իսկ ապա և այնմ բարւոյն՝ զի ոչ բարին , եղիցի ոչ բարւոյն՝ զի բարին ։

Եւ երևելի է , զի ոչ ինչ տարբերեսցէ , և ոչ եթէ զբոլորէ դիցուք ստորասութիւն . քանզի զբոլորէ բացասութիւն ներհական եղիցի . որզան՝ կարծեացն այնմ որ կարծեցուցանեն . քանզի ամենայն որ ինչ իցէ բարի , բարի իք , կամ թէ ոչինչ բարեաց բարի է . քանզի բարւոյն զի բարի , թէ և զբոլորէ բարին , նոյն է այնմ , որ զինչ և իցէ բարին կարծեցուցանելով զի բարի . և այս ինչ ոչ տարբեր է յայնմանէ , թէ ամենայն որ ինչ է բարի , բարի իք . և նմանապէս և ՚ի վերայ ոչն բարւոյ ։ Իսկ ապա զի թէ ՚ի վերայ կարծեաց այսպէս ունի . և են ներձայնութիւնքն . ստորասութիւնքն և բացասութիւնքն՝ նշանակք ներանձիցն , յայտ

է՝ զի և ստորասութենն ներհական բացասութի, որ յաղագս նորին ըստ բոլորէ․ որզան՝ զի ամենայն բարի, բարի, կամ ամէն մարդ բարի․ թէ ոչ ամենայն մարդ, կամ թէ ոչ ոք․ և բացերևաբար, թէ ոչ ամէն, կամ ոչ ոք։ Յերևելի է, զի և ճշմարտութեան ճշմարտութի ոչ մարթէ ներհական գոլ, ոչ 'ի կարծիսս, և ոչ 'ի ներհակութի․ քանզի ներհակութիք այնք՝ որք 'ի հակակայսն․ իսկ առ 'ի նոսին 'ի համանգամայն մարթ է ճշմարտել զնոյն, զի համանգամայնքն ոչ մարթեն ներհականք գոլ նմին։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ՅԵՏ այսորիկ դնէ միւս ևս ձեռնարկութի 'ի վերայ նորին տեսութե, ունելով այսպիսի իրս։ Քանզի առնուլ չորս թուելութիս, իսկ երկուս՝ իբր ասացէ ոք՝ լծակցութիս․ և որպէս ինձ թուի համեմատաբար դարձեալ յայսմ տեղւոջ խնդիրս այսպէս թուելուեց։ Քանզի դնէ երկուս ճշմարիտս, զամն առաջնորդական, և զմիւսն հետևեալ․ և խնդրէ նախ 'ի վերայ միոյ առաջնորդականին։ Քանզի 'ի վերայ սորա գտանելով՝ ով ոք սորա ներհական իցէ, 'ի հարկէ միւսն միւսումն եղիցի ներհական։ Իսկ սկսանի յայնմանէ՝ որ զոչն բարի ոչ բարի կարծէ։

Քանզի ճշմարտի ելոյ թուելութես այսորիկ՝ ով արդեօք իցէ սորա ներհական, և առնու զչարին հակասութի․ արդեօք ստորասութիւն ներհական իցէ սորա, որ կարծէ զոչն բարի չար գոլ, այլ սոքա երբեմն ճշմարտեն 'ի միասին։ Իսկ ապա ոչ չար գոլ զոչ բարին ասել՝ իցէ՞ արդեօք ըստ ներհական հակադրութե ել կարծել, այլ և այս երբեմն ճշմարտակցէ․ քանզի ոչ 'ի հարկէ՝ ոչ բարին չար է, յայտ է՝ զի և ոչ սա ներհական է նմա․ ապա ուրեմն ոչ բարւոյն՝ զի ոչ բարի, ճշմարտի ելոյ թուելութե ներհական գոլ, որ կարծէ զոչն բարի զի բարի․ քանզի այս սուտ։ Սոյնպէս ուրեմն և բարւոյն՝ զի բարի, ճշմարտի ելոյ թուելութե, ոչ եղիցի այլ ինչ ներհական իսկապէս․ բայց այն՝ որ կարծէ զբարին՝ զի ոչ բարի։

Իսկ համեմատութ՟իդ այսպէս. եթէ առաջնորդական ոչն բարոյն՝ զի ոչ բարի. իսկ հետևեալ բարոյն զի բարի։ Դարձեալ է առաջնորդական ոչն բարոյ՝ զի բարի. իսկ հետևեալ բարոյն զի ոչ բարի։ Այլ ներփոխակի, որպէս առաջնորդականին առ առաջնորդականն, որ է ոչ բարոյն՝ զի բարի առ ոչ բարոյն՝ զի ոչ բարի. այսպէս և հետևեալն առ հետևեալն. որ է բարոյն զի ոչ բարի, առ բարոյն՝ զի բարի։ Արդ վասն զի էր իւր խնդիրն յառաջադրութ՟իս յայս՝ 'ի Թուելութ՟եց անուն զնախադասութ՟իս ձևացուցանել. և երևեցոյց, զի ընդ կարծիմն առաւել է ներհական բացասութ՟են կարծիք, քան թէ ներհականին կարծեցելոյ ստորասութ՟ե, ոչ միայն անորոշակի ասացեալքն, այլ և հանդերձ առորոշմամբն. որպէս ամէն բարի՝ բարի ոչ ամէն. որ լինի հակասաբար. կամ ոչն ոք, որ լինի ըստ ներհակութ՟ե, ոչ ինչ տարբերեսցէ ըստ յառաջասացելոցն կարծեաց. քանզի և անորոշակի ասացեալ բարին՝ ըստ բոլորէ էր։

Արդ որպէս 'ի վերայ Թուելուեց, այսպէս հարկ է ունել և 'ի վերայ բանի և նախադասութ՟եանցն. իսկ անհնար է հակասաբար ստորոգեցելոցն, ստորասութ՟եց և բացասութ՟եց համանգամայն գոլ. ապա և ոչ ճշմարտեն 'ի միասին։ Ներհականք ուրեմն ապա ստորասութ՟ի և բացասութ՟ի. վասն զի ամենայն ուրեք և 'ի վերայ ամենայնի, և հանդերձ որոշմամբ ասացեալ՝ հարկ է զմին ճշմարիտ, իսկ զմիւսն սուտ գոլ։ Այլ այսուիկ հաստատի իմաստասիրիս Թուելութ՟ի՝ որպէս եցոյց, ըստ հինգ յեղանակս։

Նախ խնդրելով զպատճառսն, եթէ որ ստէն զումեմնէ՝ պատրեալ ուստեմն ստէ. քանզի եթէ ոչ պատրիւր, և ոչ ստել նմա գոյր. ապա խնդրէ զծնօղ պատրանացն։ Այլ այսուիկ եգիտ, զի պատրանքն այլոցն ամենեցունց կարծեաց՝ լինի 'ի բացասուէն [1]. ապա առաւել ուրեմն ներհական բացասութ՟ի, որ է պատճառ և սկիզբն ամենայն սուտ կարծեացն։

Իսկ երկրորդ ըստ այնմիկ, ըստ որում ոմանք ըստ ինքեան ճշմարտեն, իսկ ոմանք ըստ պատահման,

1 Յօրինակին 'ի բացասութ՟է էն ։

## ՊՐԱԿՔ Լ

### ԲԱՆ

Արդ այսուիկ կարծիքն զներհական զկարծիսն որոշել ներհականացն գոլ, սուտ. քանզի բարւոյն՝ զի բարի, և չարին՝ զի չար. սոյն թերևս և ճշմարիտ, թէ աւելիք, թէ մի է. և ներհական այսոքիկ ոչ ներհականացն գոլ ներհական, այլ առաւել ներհականութիւն. և եթէ իք բարւոյն, զի բարի է, և բարւոյ կարծիք. և է զի ոչ բարի է, և է այլ զի ոչ է. և ոչ կարէ գոլ, և կարելի է զայլոցն ոչ մի դնելի է: Ոչ որքանք ել զոյն է՝ կարծեցուցանեն, և ոչ որքանք ոչ գոլ զէն. քանզի անհունք երկոքեանն, և որքանք ել կարծեցուցանեն զոյն է. և որքանք ոչ ել զէն, այլ ՚ն որքանս խաբէն, և այնոքիկ են արտորոց լինելութիւնքն, և արդի հակակայցն լինելութիւնք, իսկ ապա և խաբանքն:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Տակաւին զպխտամանացուն իսկ հաստատելով, առ ՚ի ցուցանել եթէ ո՞ արդեօք յաւէտ ներհական իցէ ճշմարիտ ստորասութե, իւր բացասութիւնս, թէ ներհական ստորասութի: Որոց զանազանութի ընտրաւն՝ ՚ի մտացն կարծիսն առաւելապէս է. քանզի որպէս անդմտածութի, այսպէս և ՚ն արտաբերութե կալցի բան: Նա յաղագս այսորիկ նախ սահմանէ զներհական կարծիս, եթէ զի՞նչ ձևացուցիչ սորա. իսկ յետ այսորիկ ձեռնարկէ առ ՚ի ցուցանել զխնդիրն իւր:

Արդ այսուիկ կարծել զներհական կարծիսն՝ ներհակացն գոլ՝ սուտ. և զոր ասէդ այսպիսի իմն է. եթէ ոք սահմանեսցէ ներհական կարծիս գոլ զայնոսիկ, որ յաղագս ներհականացն ունին կարծելութիս, ոչ է ճշմարիտ. ընդէ՞ր. քանզի ներհականքն և ոչ երբեք ճշմարտեն ՚ի միասին. իսկ յաղագս ներհակացն կարծիք ճշմարտեն ՚ի միասին: Քանզի ներ-

հակաց եղոց բարոյ և չարի՝ իմն կարծիք բարոյն, զի բարի է, և չարոյն, զի չար է. այսոքիկ ճշմարիտք 'ի միասին. քանզի նոքին ախորժակաց է զսոյն կարծել, այլ ոչ հակակայց, սակս որոյ և թուեսցի մի գոլ զայսպիսի կարծիք. արդ եթէ մի և եթէ բազումք, ոչ յաղագս սորա խնդրելի է 'նայսմ տեղւոջ, այլ միայն այնչափ, զի միայն ճշմարտել 'ի միասին, ըստ որում ոչ գոն ներհականք: Արդ իբր զի այսպէս ոչ սահմանելի է զներհական կարծիսն, իբր արդեօք իցէ՝ ինքն ասէ, եթէ առաւել ներհակապէս: Նա զոր ասէդ՝ այսպիսի իմն է, եթէ ոչ վայել է զներհական կարծիսն սահմանելի զներհականս պարունակելոյ, որպէս թէ զբարւոյն ունել կարծիս բարւոյ, և զչարին՝ չարի ունել կարծիս. քանզի բարւոյն զի բարի է, և չարին զի չար է. այսպիսիքս ոչ ներհականք, թէպէտ և 'ի ներհականց իցեն, այլ ճշմարտեն 'ի միասին, և միոյ գոն ախորժակաց ծնունդք: Իսկ բարոյն՝ զի բարի, և չարւոյն՝ զի չար, այսպէսքն ներհականք միմեանց. վասն զի ներհակապէս 'ի վերայ կարծեն նոքին, ըստ որում ոչ ինչ արգելու և զբացասութի սոցա ներհական գոլ. քանզի զանազանաց ախորժակաց այսպէս թուելութիքս:

Յետ այսորիկ սկիզբն առնէ ձեռնարկութե առ 'ի ցուցանել զոր առաջին եդ, եթէ են կարծիք բարւոյն, զի բարի, և այլ՝ որ միանգամ ասացաւ համառօտի ասացմանս ելոյ և հաւաստելոյ: Միտք տեղւոյս են այսպիսի. քանզի կամի ինքն ցուցանել, եթէ ճշմարտի ստորասութե ելոյ, բացասութին իւր առաւել ներհական գոյ, քան թէ կարծեցեալ ստորասութի: Նա զի ներհականք որոշակի ումեմն գոն ներհականք, այլ ոչ անորոշաբար, վասն որոյ և ցուցեալ է, զի մի միում է ներհական, այլ ոչ յոլովք, առնու որոշաբար իմն մի, և սմին այսմիկ խնդրէ զայն որ որոշակին ներհականն գոյ, ասելով, եթէ իք բարւոյն՝ զի բարի է բարի կարծիք, և է զի ոչ բարի է, և որ այլն, որքան որոշակի սմին այսմիկ հակակայեն, 'ի բաց թողու զայլսն ամենեսին, իսկ որ որոշակին սմա գոյ ներհական, յաղագս սորա զխնդիրն առնէ:

Քանզի բարւոյն կարծեաց խնդրէ, եթէ ո՞ր ար-

դեպք կարծիք իցեն ներհական, որպէս մու միում. քանզի և կարծել զբարին, զի գովելի է, և զի նախանձելի է, և զի շահաւոր է, և այլք բազումք որք հետևանան բարւոյն, և դարձեալ առնուլ և անորոշակի կարծիս ներհականս յաղագս բարւոյն, զի չար է, զի վնասակար է, զի պախարակելի է. և այսոքիկ զոչն էակի բարւոյն իբր զէակ գոլ դնեն: Իսկ այլք որք հետևեալս բարւոյն ասեն ոչ գոլ նմա, եթէ ոչ գովելի, և ոչ օգտակար, և ոչ պիտանացու, և որ միանգամ այսպէս հնարաւոր է դնել զբարւոյն: Արդ իբր զի անհունք են այսոքիկ, արտաքս 'ի բանէ կայցեն. քանզի անհունիցն և ոչ գիտութի լինի:

Իսկ որք մի միում ներհական լինին, յաղագս այսորիկ խնդրելի է. և ասէ գոլ մու միում զայն ում խաբն. իբր այն թէ պատրանքն. քանզի ամենեցունց այսոցիկ անհունս կարծելոցս, ոչ վայրապար եղև ասել զբարին ոմն զի չար, և ոմն զի վնասակար, իսկ այլն զի ոչ պիտանացու, այլ պատրեալք 'ի բարոյն գիտութէ, այսուիկ կարծեցին զբարին 'ի զանազանութիւնս բաժանեալ: Իսկ պատրանքն են յայնցանէ, արտորոց[1] լինելութիւն, իբր արդեօք ասէր, թէ յորոց լինին այսպիսի կարծիքս՝ որ սուտք են 'ի բացասութէ խաբէութէ, ստութէ ամենայնի ելով պատճառին և սկիզբն, ներհակապէս զբարւոյն տալով կարծիս: Քանզի իւրաքանչիւր ոք կարծեաց զնա գոլ ոչ բարի. ուստի և պատրեալ. և ապա յետոյ զայն ամենայն գեղեցիկ ուրեմն 'ի տեղւոջս էառ զպատրանըս ծնող ամենայն սուտ կարծեաց ասացելոց. իսկ պատրանացս արարչական՝ զբացասութի, ապա և ամենայնից ուրեմն ստից կարծեացն այնոցիկ արարչական բացասութի: Արդ եթէ սուտք այնոքիկ, առաւել ստագոյն պատճառն և արարչականն ստութեան նոցա. և առաւելն սուտ՝ առաւել ներհական ճշմարտին. ապա ուրեմն և բացասութիս՝ ճշմարիտ ստորասութէ առաւել եղիցի ներհական, քան եթէ կարծեցեալ ստորասութիւն:

Քանզի և ինքն իմաստասէրս զնոյն յայտնեաց՝ ա-

[1] Այս ինքն յորոց:

սելով, եթէ խառն է յորոց լինելումն. իսկ եթէ ասէր՝ 'ի բացասութենէն. քանզի իւրաքանչիւր ուրուք լինելութիւն 'ի բացասութենէ. այլ ոչ վայրապար, բայց թէ յիւրմէն և յընտանեգունէ, որ ներգործութիւն չև է այս որ լինիս, այլ զօրութիւն միայն. վասն որոյ և յետոյ կարէ զգոլն ներգործութիւն: Քանզի լինի երաժշտականն յոչ երաժշտականութենէ, այլ ոչ վայրապար երաժշտականն է, քանզի ոչ 'ի քաղցուէ և ոչ 'ի դառնէ. քանզի և ոչ երաժշտականութիւն իցեն սոքա, այլ յիւրմէ պակասութենէ՝ յաներաժշտականութենէն: Ստուգապէս 'ի վերայ եբեր և զայն, եթէ լինելութիւնքն 'ի հակակայից անուղի, որ է ճշմարիտ. քանզի ոչն սպիտակ՝ 'ի սպիտակէն լինի, և սպիտակն՝ յոչ սպիտակէն. վասն որոյ և միայնք հակակայք այսպիսիքս:

## ՊՐԱԿՔ ԼԱ

### ԲԱՆ

Արդ եթէ բարին, և բարի, և ոչ չար իք. և ոմն ըստ ինքեան, և ոմն ըստ պատահման. քանզի պատահեցաւ սմա՝ ոչ չարումն գոլ: Եւ առաւել իւրաքանչիւրն ճշմարիտ, կամ ըստ ինքեանն, կամ ըստ պատահմանն. և սուտ, թէպէտ և ճշմարիտ: Արդ ոչն բարէ՝ բարին, ըստ ինքեան ելոյ՝ սուտ. իսկ չարին ըստ պատահմանն. ապա ուրեմն առաւել եղիցի սուտ բարւոյն հակասութիւնն, քան թէ ներհականին: Քանզի որ յոյժ ստեալ է, առ իւրաքանչիւրոք զներհականն ունելով կարծիս. քանզի ներհականքն 'ի յոլովիցն տարբերեցելոց առ 'ի նոյն. արդ եթէ ներհական սոցա մինն, և ներհականագոյն բացասութիւն, յայտ է՝ զի սա եղիցի ներհական: Իսկ այնր՝ թէ չար բարին շարամանեալ է, և քանզի ոչ բարի հարկ է թերևս կարծել զնոյն:

ԲԱԶՄԱԶԱՆ ցուցանէ զիւր թուելութիւնն հաստատէ, եթէ առաւել ներհական է ստորասութիւն իւր բացասութեան. յորմէ դիմեալ՝ խօսնակ ունի ընդ ինքեան զճշմարտութիւն, որպէս և ՚Նայսմ տեղւոջ. քանզի լինի նմա ձեռնարկութիւս այս յայտնմանէ, որ ըստ ինքեան ումեք ստորոգիցի, և կամ ըստ պատահման. քանզի ըստ ինքեան ստորոգեալ՝ ըստ բնութեան և կարևոր գոլ, իսկ ըստ պատահմանն՝ ոչ ևս ըստ բնութեան: Արդ վասն զի բարին ընդունի և զբարոյն ստորոգութիւն, որ է ճշմարիտ ասել զբարին՝ զի բարի է, ընդունի և զոչ չարին. քանզի ճշմարիտ է և ըզսոյն ՚ի վերայ բարոյն ասել, եթէ ոչ չար է. այլ ոմն ըստ ինքեան առի սոցա, իսկ ոմն ըստ պատահման. վասն զի բարւոյն ըստ ինքեան ստորոգիցելոյ զբարին՝ ըստ ինքեան և ճշմարտութիւն եղանի, և վասն զի է բարին բարի, պատահեաց սմա գոլ ոչ չար: Ապա ուրեմն ըստ ինքեան ասել զբարին թէ բարի, իսկ ոչ չար՝ ըստ պատահման. և են հակակայք սոքա բացասութիւնք այնմիկ, որ ասէ զբարին ոչ չար գոլ, ստորասութիւնն՝ որ ասէ զբարին չար գոլ. իսկ ստորասութեանն՝ որ ասէ զբարին բարի գոլ, բացասութիւն՝ որ ասէ զբարին ոչ բարի գոլ. և ՚ի վերայ այնոցիկ որք ճշմարտենն, ոմն էր ըստ ինքեան, իսկ ոմն էր ըստ պատահման: Ապա և որք ստեն, ոմն ըստ ինքեան ստէ, իսկ ոմն ըստ պատահման:

Ըստ պատահման ելոյ ճշմարտին, որ ասէ զբարին ոչ չար գոլ՝ ըստ պատահման եղիցի և ընդդիմակն սոցա՝ որ ասէ զբարին չար գոլ: Իսկ ըստ ինքեան ելոյ ճշմարտին, որ կարծէ զբարին բարի գոլ, ըստ ինքեան ստեսցէ և հակակայն սորա, որ կարծէ զբարին՝ ոչ բարի գոլ: Ապա ուրեմն առաւել քան զներհական ստորասութիւն՝ որ ըստ պատահմանն ստէ, որ է չարն, եղիցի ներհականագոյն իւր բացասութիւն, այն՝ որ ըստ ինքեան ստէ, որ է ոչ բարին, քան թէ որ ըստ պատահմանն: Եւ քանզի ըստ ինքեան ստէ բացասութի, իսկ ըստ պատահման՝ ներհական ստոր-

տութիւն, առաւել ապա ստեսցէ բացասութիւնն
բարւոյն, քան թէ ներհական ստորասութիւն ։
Արդ թէպէտ և ներհականքն երկոքեան սուտք
առ ճշմարտին, սակայն առաւելագոյնն սուտ՝ ներ-
հականագոյն է. իսկ առաւել սուտ բացասութին, ներ-
հականագոյն ապա բացասութեն ։ Եւ վասն զի մու-
մուտ է ներհական, բացասութի ապա եղիցի, ոչ ներ-
հական ստորասութի ։ Վասն որոյ և ինքն 'ի վերայ
բերէ յիշեցուցանելով մեզ զսահման ներհակացն.
քանզի սահմանեն զներհականս զյոյժ տարբերեալս
առ 'ի նոյն ։ Արդ վասն զի յոյժ ճշմարտէ ստորասու-
թիւն բարւոյն, զի բարի, քան զայլսն ամենայն՝ որ
միանգամ ճշմարտեն 'ի վերայ նորա. իսկ յոյժ սուտ
բացասութի բարւոյն, զի ոչ բարի, քան զայլսն ամե-
նայն՝ որ միանգամ ստեն. եղիցին ապա սոքա ներհա-
կանք միմեանց ։ Իսկ միւս առաջակայ ասացեալն, որ
ասէ, թէ չարն շարամանեալ է, համառօտ. և թուի
ըստ ինքեան այլ ձեռնարկութի գոլ. իսկ միտք տեղ-
ւոյս այս են ։ Եթէ երկու իցեն որ 'ի բաց բառնայցեն
զմին, և մինն ըստ ինքեան բաւական իցէ 'ի բաց բառ-
նալ զընդդիմակն իւր, իսկ միւսն՝ ոչ ևս ինքն, այլ
կարօտանայցէ միւսումն զօգնականութի. առաւել
ներհական գոլ ասի այն՝ որ ոչ ումեք կարօտանայ առ
'ի բաց բառնալ զընդդիմակն իւր ։ Քանզի չարն՝ ե-
թէ ասասցի 'ի վերայ բարւոյն՝ ոչ ևս ըստ ինքեան 'ի
բաց բառնայ զբարին, այլ ունի զօրաւիգն զոչ բարին.
քանզի որ ոք կարծեսցէ զբարին չար գոլ, նախ հար-
կի զնա դնել ոչ բարի գոլ, յետ այսորիկ ապա և
չար ։ Իսկ եթէ ոք կարծեսցէ զբարին ոչ բարի գոլ,
ոչ ևս այլումն կարօտանայ, այլ ինքն ըստ ինքեան ու-
նի զայսպէս կարծիս ։ Ապա ուրեմն ներհականագոյն
եղիցի բացասութիւն, քան եթէ ներհական ստորա-
սութեանն կարծիք ։

## ՊՐԱԿՔ ԼԲ

### ԲԱՆ

ԵՒ եւս՝ թէ 'ի վերայ այլոցն նմանապէս պիտոյ ունել, այսուիկ թուեսցի բարւոք ասել. քանզի ամենայն ուրեք հակասութիւն, եւ կամ ոչ ուրեք, եւ յոր ոչ է ներհականութիւն. բայց որքանից ոչ իք ներհական, յաղագս սոյց իք սուտ ճշմարտութեան հակակայ. որզան՝ որք զմարդն ոչ կարծեն մարդ, յոյժ սուտ են: Արդ եթէ սոքա ներհական, եւ այլքն հակասութիւնքն:

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

ԿԱՆՈՆ ընդհանրական է 'ի վերայ ամենայն հակասութեան յարմարեալ 'նայսմ տեղւոջ արտադրէ իմաստասէրս: Քանզի վայելուչ է իմաստասիրական տեսութեան, ոչ զի 'ի վերայ ոմանց բանն յարմարիցի, իսկ ոմանց ոչ եւս, զայնպիսին կանոնել, այլ զի մի թողցի արտաքս ինչ՝ որ ոչ ընդ կանոնաւ պարունակեսցի, որպէս եւ 'նայսմ տեղւոջ առնէ ձեռնարկութիւնս: Քանզի եթէ նմանապէս ունի ասացեալս վերայ ամենայն հակասութեանցն՝ այսուիկ թուեսցի բարւոք գոլ: Որպէս զի է իմն ստորասութիւն, որում ոչ միայն բացասութիւն իւր հակակայի, այլ եւ այլ իմն ստորասութիւն. եւ 'ի վերայ սոցա լինի երկբայութիւն, եթէ ո՞վ արդեօք առաւել ներհական իցէ: Իսկ են այլք, որոց ոչ գտանի ամենեւին ստորասութիւն հակակայ, այլ միայն բացասութիւն իւր, յայտ է զի բացասութիւն իւր ըստ բոլորէ, զի ըստ բոլորէ ստորասութեան չիք գտանել ներհական այլ ինչ ստորասութիւն: Քանզի կարծեացն այնմիկ՝ որ կարծէ զմարդն մարդ գոլ, ճշմարիտ ելոյ, ոչ եւս գտանի սուտ կարծիք այլ ինչ ներհական գոլ, որ ունիցի ստորասութիւն, բայց միայն նորուն բացասութիւն, որ կարծէ զմարդն ոչ մարդ գոլ: Այլ վասն զի կարծիքս ունօղք զբաց-

ասութ̃ի ամենայն ուրեք գտանելին։ Իսկ նորա ստորասութ̃ի զներհականն ունելով կարծիք, ոչ ամենայն ուրեք. յայտ է, զի և բացասութ̃իս առաւել ներհական, քան եթէ զներհական ստորասութ̃ի։

## ՊՐԱԿՔ ԼԴ

### ԲԱՆ

Այս ևս նմանապէս ունի և բարւոյն՝ զի բարի է, և ոչն բարւոյ՝ զի ոչ բարի. և առ այսոքիւք բարւոյն՝ զի ոչ բարի, և ոչ բարւոյն՝ զի բարի։ Արդ ոչումն բարւոյ զի ոչ բարի, ճշմարտի ելոյ կարծեաց, զի՞նչ եղիցի ներհական, ոչ ապա որ ասեն թէ չար. քանզի համանգամայն երբեմն եղիցի ճշմարիտ. բայց ոչ երբէք ճշմարիտ ճշմարտութեան ներհական. քանզի իք իմն ոչ բարին չար. իսկ ապա մարթի համանգամայն ճշմարիտ գոլ։ Այլ ոչ դարձեալ զի ոչ չարն. քանզի ճշմարիտ է և այս. քանզի համանգամայն և սոքա եղիցին. և պակասեալ է ոչումն բարւոյ՝ զի ոչ բարի, է ներհականն ոչ բարւոյ՝ զի բարի. քանզի ոչ ճշմարիտ է այս։ Իսկ այնք, վասն զի բարին ներում բարւոյն, ներհական բարւոյն՝ զի ոչ բարին, սուտ. քանզի ճշմարիտ է այն. իսկ ապա և այնմ բարւոյն՝ զի ոչ բարին, եղիցի ոչ բարւոյն՝ զի բարին։

Այլ երևելի է, զի ոչ ինչ տարբերեսցէ, և ոչ եթէ զբոլորէ դիցուք ստորասութ̃ի. քանզի զբոլորէ բացասութ̃ի ներհական եղիցի. որպէս՝ կարծեացն այնմ որ կարծեցուցանեն. քանզի ամենայն որ ինչ իցէ բարի, բարի իք, կամ թէ ոչինչ բարեաց բարի է. քանզի բարւոյն զի բարի, թէ և զբոլորէ բարին, նոյն է այնմ, որ զինչ և իցէ բարին կարծեցուցանելով զի բարի. և այս ինչ ոչ տարբեր է յայնմանէ, թէ ամենայն որ ինչ է բարի, բարի իք. և նմանապէս և ՚ի վերայ ոչն բարւոյ։ Իսկ ապա զի թէ ՚ի վերայ կարծեաց այսպէս ունի. և են ներձայնոջքն. ստորասութ̃իքն և բացասութ̃իքն՝ նշանակք ներանձիցն, յայտ

է՝ զի և ստորասութեն ներհական բացասութի, որ յաղագս նորին ըստ բոլորէ. որգոն՝ զի ամենայն բարի, բարի, կամ ամէն մարդ բարի. թէ ոչ ամենայն մարդ, կամ թէ ոչ ոք. և բացերևաբար, թէ ոչ ամէն, կամ ոչ ոք։ Երևելի է, զի և ճշմարտութեան ճշմարտութի ոչ մարթէ ներհական գոլ, ոչ ՚ի կարծիսս, և ոչ ՚ի ներհակութի. քանզի ներհակութիք այնք՝ որք ՚ի հակակայսն. իսկ առ ՚ի նոսին ՚ի համանգամայսն մարթ է ճշմարտել զնոյն, զի համանգամայնքն ոչ մարթեն ներհականք գոլ նմին։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

Յետ այսորիկ դնէ միւս ևս ձեռնարկութի ՚ի վերայ նորին տեսութե, ունելով այսպիսի իրս։ Քանզի առնուլ չորս թուելութիս, իսկ երկուս՝ իբր ասասցէ ոք՝ լծակցութիս. և որպէս ինձ թուի համեմատաբար դարձեալ յայսմ տեղւոջ խնդիրս այսպէս թուելուէց։ Քանզի դնէ երկուս ճշմարիտս, զոմն առաջնորդական, և զմիւսն հետևեալ. և խնդրէ նախ ՚ի վերայ միոյ առաջնորդականին։ Քանզի ՚ի վերայ սորա գտանելով ո՛վ ոք սորա ներհական իցէ, ՚ի հարկէ միւսն միւսումն եղիցի ներհական։ Եւ սկսանի յայնմանէ՝ որ զոչն բարի ոչ բարի կարծէ։

Քանզի ճշմարտի ելոյ թուելութես այսորիկ՝ ո՛վ արդեօք իցէ սորա ներհական, և առնու զչարին հակասութի. արդեօք ստորասութիւն ներհական իցէ սորա, որ կարծէ զոչն բարի չար գոլ, այլ սոքա երբեմն ճշմարտեն ՚ի միասին։ Իսկ ապա ոչ չար գոլ զոչ բարին ասել՝ իցէ՞ արդեօք ըստ ներհական հակադրութե ել կարծել, այլ և այս երբեմն ճշմարտակցէ. քանզի ոչ ՚ի հարկէ՝ ոչ բարին չար է, յայտ է՝ զի և ոչ սա ներհական է նմա. ապա ուրեմն ոչ բարւոյն՝ զի ոչ բարի, ճշմարտի ելոյ թուելութե ներհական գոլ, որ կարծէ զոչն բարի զի բարի. քանզի այս սուտ։ Սոյնպէս ուրեմն և բարւոյն՝ զի բարի, ճըշմարտի ելոյ թուելութե, ոչ եղիցի այլ ինչ ներհական իսկապէս. բայց այն՝ որ կարծէ զբարին՝ զի ոչ բարի։

Իսկ համեմատութիւնդ այսպէս. եթէ առաջնորդական ոչն բարոյն՝ զի ոչ բարի. իսկ հետեւեալ բարոյն զի բարի։ Դարձեալ է առաջնորդական ոչն բարոյ՝ զի բարի. իսկ հետեւեալ բարոյն զի ոչ բարի։ Նու ներփոխակի, որպէս առաջնորդականն առ առաջնորդականն, որ է ոչ բարոյն՝ զի բարի առ ոչ բարոյն՝ զի ոչ բարի. այսպէս եւ հետեւեալն առ հետեւեալն. որ է բարոյն զի ոչ բարի, առ բարոյն՝ զի բարի։ Արդ վասն զի էր իւր խնդիրն յառաջադրութիս յայս՝ 'ի Թուելութեց անտի զնախադասութիս ձեւացուցանել. եւ երեւեցոյց, զի ըստ կարծիսն առաւել է ներհական բացասութեն կարծիք, քան թէ ներհականն կարծեցելոյ ստորասութե, ոչ միայն անորոշակի ասացեալքն, այլ եւ հանդերձ առորոշմամբն. որպէս ամէն բարի՝ բարի ոչ ամէն. որ լինի հակասաբար. կամ ոչն ոք, որ լինի ըստ ներհակութե, ոչ ինչ տարբերեսցէ ըստ յառաջասացելոցն կարծեաց. քանզի եւ անորոշակի ասացեալ բարին՝ ըստ բոլորէ էր։

Արդ որպէս 'ի վերայ Թուելուեց, այսպէս հարկ է ունել եւ 'ի վերայ բանի եւ նախադասութեանցն. իսկ անհնար է հակասաբար ստորոգիցելոցն, ստորասուեց եւ բացասութեց համանգամայն գոլ. ապա եւ ոչ ճշմարտեն 'ի միասին։ Ներհականք ուրեմն ապա ստորասութի եւ բացասութի. վասն զի ամենայն ուրեք եւ 'ի վերայ ամենայնի, եւ հանդերձ որոշմամբ ասացեալ՝ հարկ է զմին ճշմարիտ, իսկ զմիւսն սուտ գոլ։ Նու այսուիկ հաստատի իմաստասիրիս Թուելութի՝ որպէս եցոյց, ըստ հինգ յեղանակս։

Նախ խնդրելով զպատճառսն, եթէ որ ստէն զումեմնէ՝ պատրեալ ուստեմն ստէ. քանզի եթէ ոչ պատրիւր, եւ ոչ ստել նմա գոյր. ապա խնդրէ զծնօղ պատրանացն։ Նու այսուիկ եգիտ, զի պատրանքն այլոցն ամենեցունց կարծեաց՝ լինի 'ի բացասութէն [1]. ապա առաւել ուրեմն ներհական բացասութի, որ է պատճառ եւ սկիզբն ամենայն սուտ կարծեացն։

Իսկ երկրորդ ըստ այսմիկ, ըստ որում ոմանք ըստ ինքեան ճշմարտեն, իսկ ոմանք ըստ պատահման,

1 Յօրինակին 'ի բացասութէ էն ։

ապա ուրեմն և ՚ի ստեղն՝ ոմանք ըստ ինքեան ստեն, իսկ ոմանք ըստ պատահման ։ Իսկ որ ըստ ինքեան ստէ՝ առաւել ներհական է ճշմարտին, քան եթէ որ ըստ պատահման ․ և եցոյց զի բացասութի ըստ ինքեան ստէ, իսկ այլքն ըստ պատահման ․ առաւել ապա բացասութի ներհական ։

Իսկ երրորդ զոր ասացն, թէ ոմն շարամանեալ է ըստ ներհականութե, զոր մեք առաջարկեցաք, եթէ ոմն կարօտանայ առ ՚ի բաց բառնալ զընդդիմակն իւր այլոյ օգնականութե ․ իսկ ոմն ըստ ինքեան բաւական է ․ իսկ ըստ ինքեան բաւականն առաւել ներհական է այնմիկ՝ զոր ՚ի բացն բառնայ ․ որպէս ունի բացասութիւն բարոյ ոչ բարին՝ քան զներհական ստորասութիւն, որ է չարն՝ առ բարին ։ Արդ եթէ ստորասութիք և բացասութիք նշանակք են ներանձինց, որպէս ասացաւ, և որպէս ներանձինքն՝ սոյնպէս նշանակ են և ներձայնողքն, իսկ անդ առաւել ներհականք ըստ բացասութե, սոյնպէս ապա և ձայնքս ընկալցին, և եղիցի բացասութի ստորասութե ներհական, քան եթէ այլ ինչ ստորասութի ։ Վասնզի եցոյց զնոսա՝ եթէ հարկ է ճշմարտել, վասն որոյ և համանգամայն դոլն ․ իսկ զներհականսն անհնար է ՚ի նմին համանգամայն գոլ ․ ապա ուրեմն և ոչ ճշմարտեն ՚ի միասին ներհականքն ։

Չորրորդ յեղանակ, զոր ընդհանրական կանոն ասացաք գոլ իմաստասիրիս ․ քանզի ասաց՝ եթէ ամենայն ուրեք բարիոք թուիցի գոլ, որ ՚ի վերայ ամենեցուն յարմարիցի բան, կամ զբացասութի ամենայն ուրեք գոլ ներհական, և կամ զներհականն կարծեցեալ ստորասութին ։ Արդ վասն զի ոչ ամենայն ուրեք ստորասութի ներհական գտանի, որպէս ինքն ասաց, իսկ բացասութի ամենայն ուրեք, յայտ է՝ զի թէ և ուր իցեն ներհական ստորասութի՝ բացասութի առաւել ներհական իւրում ստորասութե, քան թէ արտաքոյ ստորասութե ։

Հինգերորդ և վերջին ամենայն յեղանակաց, զոր ասացաք ըստ համեմատութե գոլ, եթէ որպէս առաջնորդականն առ հետևեալսն, այսպէս առ առաջնորդականն հետևեալքն ։ Եւ ներփոխի, որպէս

առաջնորդականն առ առաջնորդականն, այսպէս և հետևեալն առ հետևեալն։ Յետ այսորիկ և 'ի յանկի իրողութեանս իբրև կնիք 'ի վերայ եդ զշարաբանութիւն, եթէ ոյք ճշմարտեանն 'ի միասին՝ համանգամայն են, իսկ ներհականքն ոչ են համանգամայն. և պատահէ ճշմարտել բազում անգամ ներհական ստորասութեանց, այլ ոչ երբէք և հակասաբար ասացելոց. վասն զի ոմն ճշմարտէ, իսկ ոմն ստէ։

Արդ կարգեցաւ իբր նուաճնումն 'ի ձևի ստորասութեան և բացասութեան, իսկ շարաբանութիւնս՝ յերկրորդ ձևումն, և ոչ վայրապար ինձ թուի շարաբանութիւնս յայսմ տեղւոջ, այլ վասն զի ուսոյց նայսմ իրողութեան յաղագս նախադասութեանց։ Նաև պիտանացու նախադասութիւնքս առ շարաբանութիւնս, աւարտ եդ 'ի վերայ զշարաբանութիւնս, ընդոստուցանելով զմեզ փութալ յառաջիկայ իրողութիւն, յորում ուսուցանէ յաղագս շարաբանութեան, որոյ են առաջին վերլուծականքն. քանզի ամենայն ուրեք սովորեաց իմաստասէրս յաղագս պիտանացուին գիտութեան սերմանել[1] իւրոց լսողացն։

1 Յօրինակին սէրմէլ։

# ԴԱՒԹԻ

# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## Ի ՎԵՐԼՈՒԾԱԿԱՆՆ

# ԴԱՒԹԻ

# ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

### ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԳԼԽՈՑ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

## Ի ՎԵՐԼՈՒԾԱԿԱՆՍՆ[1]

ԴԻՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ Արիստոտէլի ՚ի վերլուծականն՝ է բուռն հարկանել զպարզ հաւաքմանէ։ Այլ եթէ է դիտաւորութիւն առաջնոյ վերլուծականաց պարզ հաւաքման, զիա՞րդ վաղվաղակի՝ ի սկզբանս ասէ, Նախ ասել արժան է՝ զի՞նչ և յաղագս որո՞յ խոհմունս. և եթէ սակս ապացուցի և մակացութեան ապացուցականի։ Նաև ահա վաղվաղակի՝ ի նախերգանս ապացուցի յիշումն առնէ։

Առ որս ասեմք, եթէ ոչ ինչ անտեղի է՝ և յաղագս պարզ հաւաքման ելոյ դիտաւորութեան, ճառել և յաղագս ապացուցի, և զնոյն դիտաւորութիւն գոլ և յաղագս ապացուցի։ Որպէս յորժամ ոք անտառահարութեան մասն ասիցէ զնաւակառութիւն. զի յաղագս նորա լինի։ Նաև դարձեալ երակահատութեան ասիցէ զառողջութիւն գոլ կատարումն. զի սակս նորա եղանի։ Բայց ուսոյց և այլ պատճառս, եթէ որպէս վեր-

1 Ի չորից ընդարձակ գրոց Արիստոտէլի Յաղագս վերլուծականաց հաւաքաբանութեան՝ զառաջինսն եւեթ ըստ մասին 'ի Դաւթէ անյաղթէ գտեալ մեր զմեկնութիւն՝ ընծայեմք 'ի լոյս։

լուծականացն պարզաբար կատարումն ապացոյցն է. իսկ որպէս յառաջնոց վերլուծականացն գիտութեան բաւեան հարկանել զպարզ հաւաքմանն, տայ և զմիւս ևս պատճառ, եթէ որպէս ևս ըղձալի կամելով առնել զառաջինկայ շարագրածս, զպիտանացուն՝ որ 'ի նմայն՝ յառաջագոյն քարոզէր, զի պիտանացու է պարզաբար հաւաքումն: Այս է քննուի պարզաբար հաւաքման յապացուցական հաւաքմանն: Վասնզի պարտ է գիտել, եթէ մի իրողութի ձայնեաց Արիստոտէլ պարզաբար հաւաքմանն, և ապացուցականումն՝ զչորս ճառս վերլուծականացն պատուեալ. և զպարզաբար հաւաքումն շարամերձելով զնա լաւագոյնումն տեսակումն. այս ինքն ապացուցականում պատմելոց, զապացուցականն շարամերձելով ընդ հանուր սեռումն:

Այլ պարտ է գիտել՝ եթէ հինգ են տեսակք հաւաքմանց: Ապացուցական, Տրամաբանական, Ճարտասանական, Իմաստական, Քերթողական, որ և Առասպելախառնումն: Բայց հինգ են վասն այսր պատճառի. որոյ անուն և դիմէն¹. կամ ամենևին ճշմարտեն, և լինի ապացուցականն, կամ ամենևին ստեն, և լինի քերթողականն. և կամ է ինչ որ ճշմարիտ, և է ինչ որ սուտ: Այլ թէ հաւասարք են միմեանց ճշմարիտն, և սուտն՝ լինի ճարտասանականն. և ճարտասանականումն միայնում ասին գոլ կացմունք. և վէճք և անվէճք, առ 'ի նոցանէ միայն եղանակելիք: Իսկ եթէ առաւել է ճշմարիտն քան զսուտն՝ լինի տրամաբանականն. իսկ եթէ առաւել է սուտն քան զճշմարիտն՝ լինի իմաստականն:

Բայց ոմանք ասեն՝ եթէ երեք միայն են տեսակք հաւաքման, ապացուցական, տրամաբանական, իմաստական. քանզի լծեն ընդ տրամաբանականումն զճարտասանականն, իսկ ընդ իմաստականումն զքերթողականն: Այլ ստորանիւթեն այսպէս. երեք միայն են տեսակք. քանզի հինգ են ամենեքեան՝ որովք

¹ Այլ օրինակ. և դմէն. Թերևս է բառ յոյն մոտ 'ի դմնա, այս ինքն Հատուած, կամ հատուած. զի սովոր է Արիստոտէլ այսու անուամբ նշանակել զընթացս այլ և այլ գլուխ խրոց իւր գլխակարգութիւն:

ճանաչեմք ինչ և գիտեմք, զգայութի, երևակայութիւն, կարծիք, տրամախոհութի, միտք: Վասնզի գիտելին՝ կամ արտաքոյ է, կամ ՚ի ներքս. բայց է մասնական ամենայն իրօք. վասն զի զգայութիւնք զմասնականացն բնաւորեցան բուռն հարկանել: Նոյն և երևակայութի զմասնականացն բուռն հարկանէ. քանզի զոր ինչ առնու ՚ի զգայութենէ՝ զայն պահէ. վասն որոյ և երևակայութի յորջորջի, այս ինքն՝ երեւեցելոցն կացուցմն: Իսկ կարծիքն զընդհանուրսն գիտեն, նոյնպէս և տրամախոհութիւն և միտք. այլ կարծիք՝ առանց գիտելոյ զպատճառսն. իսկ միտք ՚ի վեր քան զպատճառսն. իսկ տրամախոհութի ըստ պատճառաց: Արդ երեք են տեսակք հաւաքման. այսպէս և ըստ այսմ յեղանակում: Ոչ զգայութիւք, և ոչ երևակայութիւք, քանզի և նա ՚ի զգայութենէ առնու, և ոչ միտք հաւաքեն, որպէս ինքնատեսօղք ամենայն իրաց. այլ և ոչ կարծիք. քանզի կարծիք՝ զեզրակացութի միայն գիտէ. բայց միայն տրամախոհութի է, որ հաւաքէ: Եւ սա կամ ՚ի միտ առնու զնախադասութի, այս ինքն է զառաջարկութի, և առնէ զապացուցական՝ որ ՚ի պատճառաց՝ և յառաջնոց. և կամ ՚ի կարծեաց, և առնէ զտրամաբանականն, և կամ ՚ի զգայութէ, և առնէ զմասնականն: Այս երեք ուրեմն են տեսակք հաւաքմանն:

Յետ որոյ ասասցուք զպիտանացուն: Արդարև պիտանացու առաջիկայ իրողութիս յապացուցական հաւաքմանն. քանզի որ ոչ կարօղ գոյ գեղեցիկ գրել՝ այնպիսին բնաւ իսկ ոչ գիտէ գրել. նոյնպէս և ոչ գեղեցկաբար հաւաքել այն՝ որ ոչ գիտէ զի՞նչ է պարզաբար հաւաքումն: Իսկ ապացուցական հաւաքումն պիտանացու գոյ յամենայն իմաստասիրութեան, ՚ի տեսականն և ՚ի գործականն. որպէս զի զցուցեալսն ՚ի տեսականումն ճշմարտապէս՝ ճշմարիտ կարծեսցուք. որպէս զի մի՛ զսուտ գիտութի ընկալցուք, և մի՛ չար ինչ գործեսցուք:

Արդ պիտանացու առաջիկայ իրողութես պարզ հաւաքման՝ և զայլ ինչ ՚ի ձեռն այլոյ գտանել. քանզի ոչ զամենայն ինչ թագոյց բնութիս, զի ոչ կարօղ գոյր գտանել ինչ ոք, և ոչ դարձեալ զամենայն ինչ

յայտնի առնէր, զի ոչ ոք էր այլ որ 'ի խնդիր ան-կանէր։ Այլ է ինչ՝ զոր թաքոյց, և է ինչ՝ զոր յայտ-նեաց. վասն որոյ խնդրելն է յուզելն և գտանելն։ Որդ. եկն եանց 'ի մէջ հաւաքումն, որպէս զի յորոց եցոյց բնութիւնս, գտցէ զայն՝ զոր թաքոյցն. զօրէն յուզականացն ասացեալ շանց, որք գտեն, այս ինքն 'ի շաւղացն և 'ի հոտոցն գտանեն զորջս գազանաց։

Պիտանացու առաջինկայ իրողութիւն՝ և 'ի մեր ին-քեանց գոյութիւն. քանզի մարդ միայն բանաւոր յէ-իցս՝ է հաւաքօղ էիցս։ Վասն զի այլ գոյութիւնք ոչ հաւաքեն. ոմանք որպէս ոչ կարելով, և ոմանք որ-պէս ոչ պէտս ունելով։ Քանզի երկնայինքն որպէս ինքնատեսօղք իրողութեան ոչ պէտս ունին հաւաք-ման։ Իսկ անասունք, որպէս ոչ կարօղ գոլով. վասն զի անգիտանան զընդհանուրսն. քանզի թէպէտ և ջուն՝ այլ ինչ 'ի ձեռն այլոց բնաւորեցաւ գտանել, յորոց գիտէ զոր ինչ գիտէ. այլ զայս ըստ բնութեն առնէ, և ոչ ըստ տրամախոհութեն. և զի ըստ բնու-թեն գոյանայ նմա այսպէս առնելն՝ յայտ է յայտմա-նէ, զի ամենայն շուն այսպէս առնէ։ Բայց ոչ ամե-նայն մարդ հաւաքէ, ապա ուրեմն մարդում միայն գոյ հաւաքելն. զի թէ հաւաքէին և անբանք, որ ոչ գիտեն զընդհանուրսն, առանց որոց ոչ լինի հա-ւաքումն, զինքեանս պատրաստէին։ Այլ զի անասունք անգիտանան զընդհանուրսն, յայտ առնեն աքաղաղք. համատեսակաց զենեցելոցն և 'ի զենումն եկելոցն՝ նոքա խայտան, ոչ գիտելով թէ այն ինչ 'ի նոսա հա սանելոց են չարիքն։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ, ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ՊՐԱԿՔ . Բ

ՅԵՏ գիտաւորութեան պիտանացուին, աստանօր և զկարգն առաջիկայ շարադրութեան, որ ունի այսպէս, և ըստ այսմ օրինակում, եթէ Առաջին է առաջի դրութիւն պարզ ձայնիցն: Երկրորդ է՝ դրութիւն նոցին: Երրորդ է՝ դրութիւն առաջին շարադրութեան, այս ինքն նախադասութեան. իսկ նախադասութիւն պարզ հաւաքումն՝ այլոց ըստ մասին հաւաքմանց: Արդ յաղագս առաջին դրութեան պարզ ձայնիցն 'ի ստորոգութիւնս ճառեաց. իսկ երկրորդ յաղագս երկրորդ դրութեանց պարզ ձայնից. այս ինքն յաղագս անուանց և բայից 'ի մեկնութեան, յորում և վասն նախադասութեանց ճառեաց. այս ինքն է յաղագս առաջին շարադրութեան պարզ ձայնից՝ յորոց ամենայն հաւաքմունք: Յաղագս ընդհանուր հաւաքման յառաջիկայումս ճառէ իրողութեան. յաղագս ըստ մասին հաւաքմանց՝ յետ այսր իրողութեանս ճառէ. և յաղագս ապացուցականին՝ 'ի յերկրորդում վերլուծականումն: Իսկ յաղագս տրամաբանականումն՝ 'ի տեղիսն. իսկ յաղագս ճարտասանականին՝ 'ի յաղագս ճարտասանականութեանց արհեստս: Իսկ յաղագս իմաստականին՝ 'ի յաղագս իմաստականութեանց յանդիմանութեանց. իսկ յաղագս քերթողականին՝ 'ի յաղագս քերթողականութեանց: Արդ յառաջագոյն է առաջիկայ իրողութիւս ամենեցուն ըստ մասին հաւաքականաց իրողութեանց, վասն զի և պարզ հաւաքումն ըստ մասին էիցն: Իսկ ստորոգութիւնն իրողութեան յառաջագոյն է, քան յաղագս մեկնութեան. որ է պարզ ձայնիցն երկրորդ շարադրութիւն. իսկ յաղագս մեկնութեան, քան զվերլուծականսն. վասն զի երկրորդ դրութիւն յառաջագոյն է քան զառա-

ջին շարադրութիւն։ Եւ առաջին շարադրութիւն պարզ հաւաքման։ Եւ այսոքիկ յաղագս դիտաւորութեան պարզ հաւաքման։

Յետ որոյ ասասցուք և զպատճառս մակագրութեան։ Մակագրեալ է առաջիկայ բոլոր իրողութիւն՝ վերլուծականք 'ի միոյ հատածէ յերրորդէն առաջին բանէն. այլ զի ստուգաբար գիտասցուք զասացեալդ, ասասցուք զառ 'ի մասնականսն բաժանումն։ Արդ բաժանի առաջիկայ բոլոր իրողութիւն վերլուծականաց 'ի չորս ճառս։ Եւ առաջինք երկու ճառքն՝ առաջին վերլուծականք մակագրեալք են. իսկ վերջինքն երկու ևս ճառք՝ կամ վերջինք, և կամ երկրորդ վերլուծականք։ Եւ արդ յառաջինումն յերկու ճառսն յաղագս պարզ հաւաքման բուռն հարկանէ։ Արդ երկաքանչիւրոցն երկակացն՝ յառաջին ճառսն այս են, առաջինն և երկրորդն բոլոր իրողութեամբ յաղագս տեսակի գոն ասացեալք իւրեանց հաւաքմանն. իսկ երրորդն և չորրորդն յաղագս նիւթոյ իւրեանց հաւաքմանն գոն ասացեալք։ Իսկ առաջին ճառն առաջնոյ վերլուծականացն բաժանի յերիս հատածս։ Եւ առաջին հատած նորին՝ յաղագս լինելութեան. առաջին այսք յաղագս պարզ հաւաքման. իսկ երկրորդ հատածն յաղագս առատութեան առաջարկութեանց է. իսկ երրորդն յաղագս վերլուծութեան հաւաքմանցն։ Բայց յամենայն ուրեք գրեթէ յամենայնում ճառում յիշէ յաղագս վերլուծութեան հաւաքմանցն։ Սակայն երրորդ հատածն յաղագս վերլուծութեան հաւաքմանց մակագրեցաւ. վասն զի բազմաց ելոց յեղանակաց վերլուծականաց՝ գրեթէ զբոլորն յարադրէ յերրորդումն հատածին։ Բայց յատուկ լինելութեան և հաւաքմանցն է առնուլն առաջարկութիւնս նմանս, որպիսիք կարօղք գոն շարադրել որպէս ազգակիցք, և հիւսել զնոսա, և գտանել զհետևօղն նոցա, այս է զհետևութիւն նոցին բաղեզերումն. որգոն՝ զբանականն, զմահկանացուն, զանմահն, որ հաւաքի 'ի մարդ, կամ 'ի հրեշտակ։ Իսկ յատուկ լինելութեան առաջարկութեանց է առնուլն զինչ և է բաղեզերութիւն, և գտանել զառաջարկութիւնս, որք յարդարեն զնա։

Որգոն՝ տուաւ ինձ առաջարկութիւն, եթէ անձն անմահ է. արդ կամ է իմ գտանել զառաջարկութիւնս, որք յարդարեն զնա։ Եւ դարձեալ տուաւ ինձ որպէս աք առ այլ առաջարկութիւնս, եթէ անձն անմարմին է. արդ կամ է ինձ գտանել առաջարկութիւնս այնպիսիս, որպիսիք զնա կարողք գոն յօրինել։ Իսկ յատուկ վերլուծութիւն է 'ի հաւաքմանցն առնուլն հաւաքումն որպիսի ինչ և է վերլուծանել զնա յայնս՝ յորոց շարադրեցեալ գոյ. այս ինքն որո՞յ ձեւոյ է, և ո՞ր է աւարտումն և ոչ աւարտումն. և զիա՞րդ մարդ գոյ զերկրորդում ձեւումն հաւաքումն վերլուծանել յառաջին ձեւն։ Եւ դարձեալ զիա՞րդ մարթ գոյ՝ զանկատարսն 'ի հաւաքմանն 'ի կատարումն ածել։ Եւ այսոքիկ յաղագս 'ի մամնկունսն բաժանմանն բոլոր առաջինկայիս իրողութէ հաւաքմանց, որ մակագրեալ գոյ վերլուծականք յերրորդ հատածէ առաջին ճառին։

Բայց վերլուծականք մակագրեցան և ոչ շարադրականք, վասն երկուց պատճառաց. նախ և առաջին, վասն զի սակաւագոյն է վերլուծութիւն քան զշարադրութիւն. զի որ վերլուծանելն կարող գոյ, նա և շարադրել. բայց ոչ որ շարադրելն գիտէ նա և վերլուծանել. որպէս և 'ի տգիտաց իսկ յայտ է, որք երկայն շարադրել բանս գիտեն, բայց վերլուծանել զնոսա յայնս՝ յորոց և շարադրեալքն գոն, ոչ գիտեն, այս ինքն 'ի բառս և 'ի փաղառութիւնս և 'ի տառս։ Երկրորդ պատճառ, եթէ երկրաչափականացն տեսութեանց և շարադրութիւնս ունելով և վերլուծութիւն, երկրաչափքն զվերլուծութիւնս միայն գրեն, վասն զի աւելորդ խոհամտութեան պէտս ունին։ Եւ այսոքիկ այսպէս։

Յետ որոց եթէ հարազատ գոյ, խնդրեսցուք։ Արդարև հարազատ Արիստոտէլի գոյ առաջինկայ իրողութիւնս՝ յերից իրաց յայտնանէ։ Նախ և առաջին՝ եթէ քառասուն գրոց գտելոյ հաւաքմանցն 'ի հին գրանոցսն, չորք միայն այսոքիկ գիրք ընտրեցան գոլ Արիստոտէլի։ Երկրորդ՝ եթէ վասն զի յայտնանէ յիշէ իսկ ինքն Արիստոտէլ յիւր հարազատ բանս. քանզի յաղագս մեկնութեան ասէ, թէ Այսոքիկ որ-

պէս 'ի վերլուծականսն գոն ասացեալ, նոյնպէս դաւանեսցին ։ Երրորդ պատճառ, եթէ և արիստոտելական պահեալ գոն ստորութիւնք ․ քանզի ստորութիւն է Արիստոտելի զընդհանուրսն նախադասել մասնականացն, որպէս և յաղագս անձին առնէ՝ նախադասելով զընդհանուր անձն մասնականին ․ նոյնպէս և աստ արար՝ նախադասելով զընդհանուր հաւաքումն մասնականի հաւաքման ։

## ԸՆԴ ԱՅՄՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ԳՐԱԿՔ Գ

Երրորդ եթէ է մասն, և եթէ մասնիկ իմաստասիրութեան բանականս, Եւտոկիոս սկիզբն առնելով յիշատակութենն Պորփիւրի ներածութեանցն խնդրէ ․ իսկ Աղեքսանդրոս զառաջիկայս յիշատակելով զիրողութիւն լաւագոյն քան զնա արար ․ քանզի խնդրէ, եթէ մասն է, և եթէ գործի իմաստասիրութեան բանականս, կամ ըստ հաւաքաբանին միայն է, և կամ ըստ բոլորին ։ Քանզի երեք կարծիք վասն այսորիկ ասեն եղեալք, վասն զի ստոյիկեանքն ասէին մասն գոլ զհաւաքաբանականն իմաստասիրութեան ․ իսկ արիստոտելականքն գործի ․ իսկ պղատոնականքն և գործի և մասն ։

Բայց այժմ զձեռնարկութիւն ստոյիկեանցն ասասցուք ․ որոց առաջին ձեռնարկութիւն է այս ․ Ամենայն իրուն պիտոյանայ արուեստ ինչ, և կամ մակացութիւն, եթէ ոչ է այլոյ արուեստի մասն, և կամ մասնիկ նորին ․ իսկ պիտացելոցն մասն է, կամ մասնիկ ․ քանզի տածականումն՝ պիտանանայ բժշկականութիւն, որ ոչ է այլոյ արհեստի մասն կամ մասնիկ, հարկ է նորին բժշկականութեան մասն գոլ և կամ մասնիկ ։ Եւ բարուոք առկայացաւ, եթէ ոչ է այլոյ արհեստի մասն

և կամ մասնիկ՝ վասն քերականութեան և աստեղաբաշխութեան. և զի ոչ է մասն քերականութեան աստեղաբաշխութիւն. քանզի աստեղաբաշխութիւն ուսումնականին գոյ մասն, իսկ բոլոր իմաստասիրութեան մասնիկ։

Արդ հաւաքականն միայն պիտանանայ իմաստասիրութեան, 'ի տեսականումն՝ առ 'ի յորոշումն ճշմարտութեան և ստութեան, իսկ 'ի գործականումն՝ առ 'ի յորոշումն բարւոյ և չարի, և այլոյ արհեստի, կամ մակացութեան ոչ մասն և ոչ մասնիկ գոյ, յայտ է՝ եթէ իմաստասիրութեան է մասն և կամ մասնիկ. որ և հակաբաժանի 'ի տեսականումն և 'ի գործականումն. քանզի եթէ ցուցցուք, եթէ ոչ է մասնիկ, հարկ է մասն գոլ. արդ մասնիկ գոլ ոչ կարէ. քանզի մասնիկն զնոյն նիւթ բոլորին և զնոյն կատարումն նորին ունի։ Արդ տեսականն նիւթ ունի զամենայն գոյս առ 'ի գիտել. իսկ կատարումն զճշմարիտն. իսկ գործականն նիւթ ունի զմարդկային հոգիս. իսկ կատարումն զբարին. այս ինքն՝ կամ զչափաւորապէսն գոլ 'ի կիրս, ըստ Արիստոտելումն, և կամ զանախտն գոլ, ըստ Պղատոնումն, նոյնպէս և հաւաքաբանականն նիւթ ունի զձայնս, իսկ կատարումն զապացոյցն։ Արդ ոչ կարող գոյ մասնիկ գոլ իմաստասիրութեան, քանզի ոչ ուրեք զմասանց նորա զնոյն կատարումն նորին ունի։

Առ որս ասեմք, եթէ զխնդրելին խոստովանելի առնէք, եթէ ոչ է գործի նորին. և անկատար է բանդ ձեր. քանզի այսպէս պարտ էր յառաջ բերել, եթէ էր կատարումն ամենայնի՝ որում պիտանանայ արհեստ, և կամ մակացութիւն. եթէ ոչ է այլոց արհեստից մասն և կամ մասնիկ և կամ գործի նորին. իսկ պիտացելոցն մասն է և կամ մասնիկ և կամ գործի։ Զի որպէս ցուցիք՝ եթէ մասնիկ իմաստասիրութեան, նոյնպէս պարտ էր ցուցանել՝ եթէ և ոչ գործի նորին է, և ունէիք զխնդրելին. ապա թէ ոչ և մեք ասասցուք զերակահատն, որ է 'ի մարմին, բժշկականութեան մասն գոլ. քանզի այլոյ արհեստի ոչ մասն է, և ոչ մասնիկ, այլ բժշկականութեան միայն պիտոյանայ։

Երկրորդ ձեռնարկութիւն ստոյիկեանց, որք ցու-

ցանեն եթէ է մասն քանականն իմաստասիրութեան։ Այլ եթէ նոյն ինքն առէ, իմաստասիրութիւն ծնաւ զհաւաքումն նորին, ուրեմն ապա և մասն է։ Իր որս ասեմք եթէ շատ ինչ ծնանին արհեստք ոմանք՝ որք ոչ են նոցա մասունք. բայց բացակատարեցին զնոսա, որպէս զի և ինքեանց տացեն 'ի պէտս և այլք. քանզի քանոնումն և կանգնումն պիտանանայ և հիւսն և շինօղն. Թէպէտ և հիւսն բացակատարեաց զնոսա. և զի որպէս գործի բացակատարեաց զնոսա հիւսն առ 'ի պիտանանալ նոցին, յայտ է յայնմանէ, զի բազում զգուշութեամբ գործեաց վասն ամենայն իրօք պէտս ունելոյ նոցա, ոչ իւր միայնոյ, այլ և այլոց։

## ԸՆԴ ԱՅՍՈՐԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ՊՐԱԿՔ Դ

Այս զի մասն իմաստասիրութեան զհաւաքականն յարդարեցին ստոյիկեանքն 'ի ձեռն երկուց ձեռնարկութեանց, զորս և կործանեցաք։ Իսկ եթէ որպէս գործի յարդարեն արիստոտելականքն, այսպիսում պիտանայեալք բանում. եթէ մասն է ասեն հաւաքականն իմաստասիրութեան, վասն զի և այլ արհեստք պիտանանան բնական հնարում. բաժանելով զինքեանս, և սահմանելով և ապացուցանելով. նաև ձեռնայինքն հաւաքաբանեն. որգոն՝ շինողականն հաւաքաբանէ, եթէ յորժամ հանդերձեալ է ուղղորդ յարուցանել զորմն պարտ է հիմունս արկանել։ Արդ՝ եթէ առաջինն ամենայն իրօք, ապա 'ի հարկէ ուրեմն և երկրորդն. և աթոռ՝ եթէ հանդերձեալ է զնիստն ճահաւոր ունել՝ պարտ է նմա այսպիսի ինչ ունել զձեւն՝ հաւաքաբանէ հիւսն. տրպագոյն ապա ուրեմն իմաստասիրութիւն և քան զձեռն արհեստ, որ քաւ և մի լիցի. որովհետև և մասնում նորա,

այս լինելն կատարման պիտանանան և այլ արհեստք. քանզի է ընդհանուր, եթէ երկու արհեստ գոլով, և միումն պիտանանայ միւսոյն կատարման. որպէս գործւոյ, յոււր գոլ ասի այն՝ որում պիտանանայն: Վասն զի յոււր ասի գոլ սանձարարականն քան զձիականն:

Եւ որս ասեն ոմանք ՚ի մերոց, եթէ ըստ ձեր բանաւմէ՝ յոււր ուրեմն է և երկնայինն անձն քան զմարդկայինսն, քանզի երկնայինն անձն բացակատարեաց զմեր մարմինս, որում որպէս գործւոյ պիտանանայ մեր հոգիս: Եւ որս ասելի է, թէ երկնայինն անձն, ոչ միայն զմեր մարմինս բացակատարեաց, այլ և զանբանիցն և զտնկոցն. իսկ սանձարարականն՝ սանձս միայն առնէ, այլ և ոչ գոյն, և որ պիտանանայն սանձաց զձիականն: Բայց առնեն և այլ ձեռնարկութի այսպիսի. եթէ ոչ է մասն իմաստասիրութե բանականս, որպէս ցուցանեմք: Իսկ եթէ մասն՝ ոչ հարկ է գործի գոլ. արդ մասն ոչ կարէ գոլ. վասն զի մասունք ՚ի բաց բարձեալք՝ և զբոլորն ՚ի բաց բառնան. բայց ապացոյց էր և յառաջ քան զգրել վերլուծականացն առ ՚ի յԱրիստոտելէ, քանզի էր ապացոյց և բնութի իրողութե: Եւ զայսպիսիկ արիստոտէլականքն:

Իսկ պղատոնականքն յարդարեն, եթէ է մասն, և է գործի. և զի գործի է՝ բաւական արիստոտէլականացն ձեռնարկութիք: Բայց եթէ որպէս մասն, յարդարեն ինքեանք. քանզի ոչ բաւականն ստոյիկեանցն ձեռնարկութիւնքն. վասն զի այնոքիկ կործանեցան. բայց ձեռնարկեն այսպէս, եթէ մասն է իմաստասիրութե հաւաքաբանութիս, քանզի հաւաքաբանութի գիտութի է բոլոր գոյից. զի գիտութիւն ամենայն գոյից մասն իմաստասիրութեան է. քանզի ոչ է բոլոր իմաստասիրութիւն. քանզի բոլոր իմաստասիրութի պէտս ունի և բարեկենդանութե. և զի մասն իմաստասիրութե է հաւաքաբանութի, գիտէ և Պղատոն յիւրում տրամաբանականին ՚ի պէտս առեալ զհաւաքաբանութի, զոր և Զենոն ուսմանց անուանեաց ՚ի բազում տեղիս: Իսկ ցանկ մասն է՝ որոյ և ցանկն գոյ. և զի մասն է, դարձեալ յայտ արար յիւրում շարադրութեն, յորում ասելով, եթէ

Արթեամ զքեզ յինքեան կոչեցելոյն առ ՚ի բազմաց թախանձութի, մինչ տակաւին ևս նորագոյնք եմ, ապա թէ ոչ՝ փախիցէ ՚ի քէն ։ Ճշմարտաթախանձութիւն կոչեցեալ զաւագագունութի իրացն, իսկ կըրթութի զգիտութիւն գոյից. քանզի երկակի ասի գոլ ապացուցականն. քանզի մին ՚ի նոյնս իսկ յիրողութիւն բնութի ասի գոլ. որգոն՝ անձն ինքնաշարժ, ինքնաշարժն մշտաշարժ, մշտաշարժն անմահ ։ Իսկ միւսն յորոշմունս, այս ինքն՝ ՚ի նկատմունս միայն և ՚ի կիտմունս [1]. որգոն՝ յերկուց ստորասութեանց՝ ստորասականագոյն և ժողովեալն. այս ՚ի բանս միայն է, իսկ այն և յիրողութս. քանզի միայն Արիստոտէլ ոչ հեղգացաւ բացակայտել [2] զհնարս բանից ՚ի նոցունց իսկ յիրողութեանց ։ Եւ կիտակս, այս ինքն՝ է կանոնս առնել. առ որ Պղատոն ասաց, եթէ Արհեստիկ արարեր զիմաստասիրութի ։

Արդ վասն այնոցիկ որք յիրողութիւնն են ապացոյցք, ձայնակիցք գոն Արիստոտէլ և Պղատոն. իսկ որք ՚ի կիտակս գոն, վասն այնոցիկ տարաձայնք են. քանզի էին կիտակք և հնարք հաւաքաբանութե ՚ի ժամանակս Պղատոնի. և թէպէտ և ոչ էին հնարք յաւուրս Պղատոնի, սակայն ոչ եթէ զանցանէր ինչ ինքն Պղատոն յիւր յինն տրամաբանութիւնն. քանզի առաքինիքն և մեծքն բնութե՝ ոչ ունին պէտս կիտաց, այլ գեր ՚ի վերոյ քան զնոսա ներգործեն, և ինքեանք լինին կիտակք յետնոցայցն ։ Քանզի ոչ կալաւ պէտս Պղատոն ապացուցականութեամբն Արիստոտելի, այլ Արիստոտէլ Պղատոնութեամբն, զի առցէ ՚ի նմանէ սերմանիս. ոչ պիտացաւ [3] և Հոմերոս յաղագս քերթողականութեամբն Արիստոտելի, այլ Արիստոտէլ Հոմերոսիւ. ոչ պիտացաւ և Դիմոսթենէս վիճաբանութեանց Հերմոգինի, այլ Հերմոգինէս նմա ։

Բայց տարակուսեն՝ եթէ զիարդ պղատոնականքն զբանականս և մասն և գործի նոյն իրաց ասեն կարող գոլ, զի թէպէտ և ձեռն՝ և մասն և գործի, այլ մասն ամենայն մարմնոյ է, իսկ գործի՝ ներ-

1 Միւս օրինակ դիփմունս ։

2 Միւս օրին. Բացայայտել ։

3 Միւս օրինակ ասա և զէնի, դիփոյոցայ ։

անձնաւորին. քանզի մեռելոյ ձեռն, թէպէտ և մասն է բոլոր մարմնոյն, այլ գործի ոչ է. քանզի տալոյ և առնլոյ գործի է. և կուժն՝ և մասն է և գործի, այլ ոչ նոյն իրի. այլ ամանն գործի է պարունակեցելոցն, իսկ կժաւոր ջուր՝ մասն է այլոյ ջրոյ։ Նաորս եթէ ասիցեն պղատոնականքն, եթէ և ոչ մեք ասեմք նոյն իրաց գործի և մասն զբանականն, այլ կամ նոյնում այլ և այլ, և կամ զնոյնն այլում և այլում մասն և գործի, որպէս զձեռն. քանզի շնչաւորին գործի, իսկ մարմնոյն մասն և կամ նոյնում գոլ այլ և այլ՝ և գործի և մասն. քանզի իմաստասիրութե բանականս և գործի և մասն. քանզի բնութիւն իրողութեց գոլ ապացոյց՝ մասն է իմաստասիրութե, իսկ 'ի կիրականն գործի։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ԳՐԱԿՔ Ե

«Նախ ասել արժան է յաղագս զի՞նչ, և որո՞յ խոհմունս, թէ սակս ապացուցի, և մակացութեան ապացուցականի»[1]։ 'Ի նախերգանսի իրողութեանս զդիտաւորութի նորին քարոզէ, և այլ ինչ՝ պիտանացու դիտաւորութե. արդ զդիտաւորութի, զի յաղագս ապացուցի և մակացութե ապացուցականի։ Իսկ պիտանացուք հինգ են, քանզի սահմանէ յառաջ զառաջարկութի, զսահման, զհաւաքաբանութի, ո՞ր աւարտուն և ո՞ր անաւարտ, զի՞նչ որ 'ի բոլորում, և զի՞նչ որ ոչ 'ի բոլորում, և զի՞նչ 'ի մասնում, և զի՞նչ ըստ ամենայնում, և ոչ ըստ ումեքում։

Բայց տարակուսին և առ առաջինն, և առ եր-

1 Այս բան է Արիստոտելի 'ի յուռն նախերգանս վերլուծականաց։

կրորդն։ Նա առ առաջինն՝ եթէ ընդէ՞ր յաղագս պարզ հաւաքաբանութեան ելոյ դիտաւորութեան՝ յաղագս ապացուցի ճառէ անդուստ ՚ի նախերգանի։ Առ որս ասեմք զպատճառն զայս, եթէ ոչ ինչ տեղի է յաղագս պարզ հաւաքաբանութեան ելոյ դիտաւորութեան, և յաղագս ապացուցի ճառելն և զնոյն գոլ դիտաւորութեան։ Վասն զի ՚ի ձեռն ապացուցական հաւաքաբանութեան և պարզ հաւաքաբանութեան առնէ խնդիր։ Արդ այսպէս առ առաջինն։

Իսկ առ երկրորդն տարակուսին, եթէ ընդէ՞ր սահման ՚ի միջի դասեաց առաջարկութեան և հաւաքաբանութեան. քանզի արժան էր՝ կամ ըստ մեզ կարգաւորութեան պիտանանալ, և զհաւաստեան նախադասել, իսկ հաւաստի մեզ քան զայլս ամենայն սահման է, կամ ըստ բնութեան, և ՚ի վերջոյ դասել զսահման քան զառաջարկութիւն, և զհաւաքաբանութիւն։

Առ որս չորս ասեմք լուծմունս։ Նախ՝ եթէ է իւր Արիստոտելի անուն սահմանիդ. քանզի ինքն ասէ, եթէ Սահման կոչեմ՝ յոր լուծանի առաջարկութիւն. իսկ կոչեմն առաջարկութեան գոլով յայտ առնէ, թէ Արիստոտելի է այդպէս սահման անուանել. և վասն այնորիկ ոչ է արժան յոտարաձայնութենէ սկիզբն առնել բառից, այլ ՚ի ծանօթիցն։ Այս առաջին պատճառն։

Երկրորդ պատճառն, եթէ պէտս ունի իւր առաջարկութեան սահմանի սահմանումն, քանզի սահման է յոր առաջարկութիւն վերլուծանի. արդ պարտ էր յետ առաջարկութեան զսահմանն գոլ։

Երրորդ պատճառ, եթէ յաղագս մեկնութեան վասն առաջարկութեանց ճառէ. արդ որպէս զի զպատճառ յառաջեցելոցն եղիցի, վասն զի նախադասեաց զառաջարկութիւն քան զերրիմն, և իսկոյն զսահմանն. քանզի թէպէտ յաղագս պարզ ձայնիցն խօսեցաւ և յաղագս մեկնութեան անուան և բայի, և ՚ի ստորոգութիւն, այլ ՚ի ստորոգութեան որպէս պարզ ձայնս միայն քննէ զնոսա։ Իսկ յաղագս մեկնութեան որպէս ասութիւն խնդրէ զանուն և զբայ. որպէս և զառաջարկութիւն ուսուցանէ և աստ, և յաղագս մեկնութեան. այլ յաղագս մեկնութեան որպէս երևմունս ու-

սուցանէ զնոսա․ իսկ աստ որպէս մասունս հաւաքաբանութեանց ։

Զորրորդ պատճառ, եթէ վայել է սահմանումն 'ի միջում դասիլ առաջարկութե և հաւաքաբանութե, զի տեսակարարէ զհաւաքաբանութին միջին սահմանս, զի այս միջին սահմանս կամ ենթակայ է ումեմն, այլ սահմանացն, և այլում ստորոգի, և առնէ զառաջին ձևն, և երկոցունց ենթակայ է, և կամ զերկոցունց ստորոգի և առնէ զերկրորդ և զերրորդ ձևն․ այլ եթէ զերկոցունց ստորոգի, զերկրորդն առնէ ձև․ իսկ եթէ զերկոցունց ենթակայի, զերրորդն ։ Նախադասիլ ատտիկեան է շարադրութի․ քանզի առլսի և պարտն ։ Յաղագս զի՞նչ, և որո՞յ խոհմունս ։ Եւրուք դասեաց յաղագս զի՞նչ, առ հայցականն․ իսկ յաղագս որո՞յն առ սեռականն ։ Այլ զի՞նչ՝ եթէ յաղագս զապացոյցն․ ահա առ հայցական դասեաց․ և յաղագս որո՞յ խոհմունս, եթէ յաղագս մակացութեան ապացուցականին․ ահա առ սեռական շարադասեաց ։ Նաև պարտ է գիտել, եթէ այլ է ապացոյց, և այլ է մակացութի ապացուցականն․ քանզի ապացոյցն ինքն իսկ ներգործութիւն է․ իսկ մակացութի ապացուցական՝ նոյն ինքն ունակութի․ և եթէ 'ի նոյնում գոն ենթակայում, արարողականն է ունակութի ներգործութե․ իսկ եթէ յայլում և յայլում, արարողական է ներգործութի ունակութե ։ Քանզի արարողական է ուսուցանողին ներգործութի․ այս ինքն վարդապետութի ունակութե ուսանողին ։ Նաև զի՞նչ առաջարկութի և սահման և զի՞նչ հաւաքաբանութի․ ահա 'ի միջում դասեաց զսահման առաջարկութե, և հաւաքաբանութե ։ Նաև յետ այսորիկ ո՞ր աւարտումն և որ անաւարտն․ և պարտ է գիտել՝ եթէ ո՞ր աւարտումն և անաւարտն զանազանութիք են հաւաքաբանութեց ։ Նաև զի՞նչ որ 'ի բոլորումն և ըստ ամենայնում, և ոչ ըստ ումեքումն․ այսոքիկ զանազանութիք են առաջարկութեց, որ ելումն և իջումն քատակեալք․ զի եթէ 'ի ներքուստ ոք սկիզբն առնէ, որգոն՝ յորժամ ասէ, եթէ մարդ կենդանի, այս 'ի ներ բոլորումն ասի․ քանզի 'ի բոլորումն կենդանւոյն է մարդն, որպէս 'ի սեռումն․ իսկ եթէ 'ի վերուստ

սկիզբն առնէ և ասէ կենդանի ըստ ամենայն մարդումն, այս ըստ ամենայնում ասի. և նոցին հակակայքն ոչ ներ 'ի բոլորումն և ոչ ըստ ումեքում:

## ԸՆԴ ԱՑՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ

## ԳՐԱԿՔ Զ

“Արդ է նախադասութիւն բան յայտնող ինչ ըստ ումեքում„: Ճանապարհակից լինելով Արիստոտէլ իւրոց հիւսմանց՝ սահմանէ զնախադասութիւն, այս ինքն զառաջարկութիւն, ասելով. Նախադասութիւն է յայտնող ինչ ըստ ումեքում: Երկակի ելոյ առաջարկութեան, կամ ստորոգականի, և կամ ստորադրականի, զստորոգականն միայնութիւն սահմանէ. և որպէս 'ի ձեռին նորա զստորադրականն ունելով: Վանզի ստորադրականն՝ յորժամ յերկբայս լինին, ստորոգականացն պէտս ունին առաջարկութեանց յարդարումն: Զինչ ըստ ումեքումն, ոչ ստորասութիւն յայտ առնելով. զի թերևս ապա 'ի վերայ ածեալ էր, եթէ ինչ բաց ումեքումն. որ է բացասութիւն: Այլ ինչ ըստ ումեքում այժմ առ որոշումն ասացեալ է ստորադրականացն առաջարկութեանց. քանզի նոքա ոչ յայտնեն ըստ ումեքումն, այլ ումեմն գոլոյ զինչ է, և ումեմն ոչ գոլոյ զինչ ոչ է: Զի թէպէտ և զընդհանուր հաւաքաբանութիւնն սահմանեսցէ. իսկ ընդհանուր հաւաքաբանութիւն 'ի համուր յառաջարկութէ գոյ բաղկացեալ, և պարտ էր զընդհանուր առաջարկութիւն գոլ սահմանել:

Արդ 'ի յաղագս մեկնութեան և զընդհանուր առաջարկութիւն սահմանեաց՝ ասելով, եթէ Նախադասութիւն է բան՝ ընդունակ ճշմարտութեան և ստութեան. քանզի այս սահման և զստորադրական առաջարկութեան պարունակէ: Բայց սահմանելոց և զստորադրականն

անդ ասելով այսպէս՝ Բան յայտնօղ իմն ըստ ումեքումն, և իմն բաց ումեքում ։ Իսկ այժմ զստորոգականն դարձեալ սահմանէ . վասն զի և սորա միայնոյ սահմանն ուղղութե պէտս ունէր . քանզի յաղագս մեկնութե 'ի ձեռն թուելոյ նշանակութեց չինէր ստորադրութի ։ Քանզի ասելն՝ իմն ըստ ումեքումն, և իմն բաց ումեքէ, ոչ իմն այլ, եթէ ոչ ասել, եթէ առաջարկութիւն՝ կամ ստորասական է, և կամ բացասական ։

Իսկ աստ ասացեալ զառաջարկութե բան գոլ յայտնողական իմն ըստ ումեքումն, սահմանական արար զբացատութին ։ Բայց թէպէտ զորակն եւ ասաց, ոչ ասացեալ՝ թէ և իմն բաց ումեքէ, սակայն զքանակն սփռեաց՝ ասելով, եթէ բայց սա՝ կամ ընդհանուր է և կամ մասնական և կամ առ անսահմանելի ։ Քանզի զըստ իւրաքանչիւրսն ոչ յիշեաց, որպէս պարունակեցելոցն առ անսահմանելեացն . քանզի ըստ իւրաքանչիւրքն առ անսահմանելիք ։ Բայց զանազանին յայլոց առ անսահմանելեաց . քանզի նոքա բնաւորեալք ունել՝ ոչ ունէին . իսկ նոքա ոչ բնաւորեալք են՝ և ոչ ունէին . քանզի ոչ ոք կարէ ասել ոք Սոկրատէս կամ ամենայն ոք Սոկրատէս . և կամ այլ ազգ, եթէ ըստ իւրաքանչիւրքն ապականելիք, իսկ մասնականքն անապականք . քանզի միշտ է ոք մարդ . իսկ Սոկրատէս ապականելի է ։

## ԸՆԴ ԱՑՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵԻ ԱՌԱՋԻԿԱՑ

## ԳՐԱԿՔ Ը

ՍԱՀՄԱՆԵԱԼ զառաջարկութին՝ իջանէ և 'ի տեսակս առաջարկուե, երկու տարակուսանս առնելով մեզ տարակուսել ։ Առաջին՝ եթէ ընդէր յաղագս հաւաքաբանութե ելոյ դիտաւորուե՝ և այսք և յա

ղագս հանուր առաջարկութեան: Երկրորդ՝ թէ ընդէ՞ր 'ի տեսակս առաջարկութեանցն զանազանութեանց՝ զտրամաբանականն միայն ասէ առաջարկութիւն և զապացուցականն. իսկ զիմաստականն և զքերթողականն ոչ ասէ: Արդ առ առաջինն ասեմք, եթէ իջեալ 'ի տեսակս առաջարկութեանցն՝ ոչ ինչ ընդհատ 'ի հանրականութենէ մնաց[1]. քանզի զանազանին առաջարկութիւնք ոչ ընդհանրականին իւրեանց սահմանաւ, քանզի մի սահման է, այլ այլովք ոմամբք: Իսկ առ երկրորդն ասեմք, եթէ իջեալ 'ի տեսակս առաջարկութեանցն՝ ըղհուպն տարորոշէ, այս ինքն զապացուցականն և զտրամաբանականն: Եւ այսք յաղագս այսորիկ:

Յետ որոյ ասէ զզանազանութիւն բացացուցականի առաջարկութեան և տրամաբանականի. և առ այժմ տարորոշէ զնոսա 'ի միմեանց և պիտոյիւք և նիւթով: Եւ պիտոյիւք՝ եթէ տրամաբանականն հակասութիւն հարցանէ և առաջարկութիւն առնէ ոչ զբոլորն, այլ զմասն ինչ հակասութեան, և այժմ սահմանէ այսպէս, եթէ Տրամաբանական նախադասութիւն է ուսողումն[2] հակասութեան. իսկ 'ի հաւաքաբանողումն տրամատութիւն[3] երևեցելոց, և ներկարծաւորին: Իսկ յաղագս մեկնութեան այսպէս սահմանէ զնա ասելով, Տրամաբանական է՝ հարցումն պատասխանւոյ միոյ նախադասութեան, կամ միոյ մասնական հակասութեան: Վասն որոյ տարակուսեն, եթէ զիա՞րդ զտրամաբանականն հարցումն հակասութեան ասէ. իսկ 'ի յաղագս մեկնութեան, միոյ պատասխանւոյ հարցումն, և կամ միոյ մասին նորա: Առ որ Ամմոնիոս ասէ, լուծումն իմն այսպիսի, եթէ երկոքեան ճշմարիտ գոն. զի և որ զբոլոր հակասութեանց հարցանէ՝ տրամաբանական է:

Յայտ առնեն ուրացողական պատասխանիքն հաճոյացեալքն լուծելումն մասնումն: Իսկ զմի առաջարկութիւն ներգործութեամբ, զմիւս ևս մասն զօրութեամբ յայտնելով. և այս յաղագս այսորիկ բացացուցականն ոչ հարցանէ, այլ առնու զկարծեցեալսն ճըշ-

1 Միւս օրինակ ոչինչ անհատ 'ի հանրականութենէ մնաց:

2 Միւս օրինակ հարցումն:

3 Միւս օրին. տրամաբանութիւն:

մարիտ գոլ նմա, Թէպէտ և ոչ Թուի տրամաբանողութեանն ։ Նոյն այսպէս պիտոյիւք զանազանին ։

Նաև և նիւթով, զի բացացուցականութիւն ենթակայանայ ամ որ ինչ ճշմարիտ է, Թէ և անկարծելի է. որգոն՝ Թէ արեգակն կարի յոյժ մեծ է քան զերկիր, և երկիր քան զլուսին. Թէպէտ և ոտնաչափ երևի արեգակն. քանզի այս Թէպէտ և անկարծելի է, այլ սակայն ճշմարիտ գոյ ։ Իսկ տրամաբանականութիւն ամենայն որ ինչ կարծելի է՝ ենթակայանայ, Թէպէտ և սուտ գոյ ։ Իսկ ներկարծելի է և սուտ՝ ասելն, եԹէ Աստուած զամենայն ինչ կարէ ներգործել. վա՛ զի բազմաց ամենեցուն այսպէս Թուի ։ Բայց սուտ է, վասն զի 'ի չարիս անկարութի՟ ունի նոյնպէս և Աստուած, սակս անչափ բարույն՝ որ բընութե՟ և 'ի վեր քան զմնութի գոյ գոյացեալ 'ի նմա ։ Նաև դարձեալ ներկարծաւոր է և սուտ՝ ասելն, եԹէ ամենայն մարմին 'ի տեղւոջ է. քանզի այս Թէպէտ և է ներկարծաւոր, բայց սուտ է. քանզի անմոլարն՝ ոչ է 'ի տեղւոջն. Թէ և մակերևոյԹ ասիցեմք զտեղին, ոչ ինչ արտաքոյ է անմոլարն՝ ոչ մակերևոյԹ և ոչ մարմին. Թէպէտ և մարմին տացի, գտցի նոյն ինքն տեղական մարմին 'ի տեղւոջ. և այս յանհունս ։ Նաև այսք մինչև ցայսչափ ։

Նախադասութի է բան ուրումն ըստ ումեքում, որպէս զի Թէ ասէր, եԹէ նախադասութի է, ոչ որպէս Թէ երբեմն բան ստորասական կամ բացասական. քանզի ենԹագրական է այսպիսիս, որպէս 'ի ձեռն բացասութէ նշանակելեացն, այլ որպէս այժմու բանս ստորասական՝ ումեք ուրումն կամ ումեքումն ։ Նաև սա՝ կամ ընդհանուր և կամ ներմասնութիւն, մասնական և կամ անորոշելի. ահա նեղեալ զորակն՝ զքանակն տարածեաց բացաԹուեալ զտեսակս առաջարկութեցն. իսկ զըստ իւրաքանչիւրոյն ելԹող. և Թէ յորոց պատճառի՝ ասասցուք ։

Բայց այսմ ընդհանուր ամենայնում, կամ ոչ ումեքումն՝ ընդհանուր առաջարկութիք զերկուս ընդհանուրս առ որոշմունս պարունակեալք ունին. իսկ ներմասնութիւն ումեքում, կամ ոչ ումեքում, և ոչ ամենայնում ։ Օ մասնական բացասութիւնս երկակի

անուանել, ոչ ումեքում և ոչ ամենայնում, որպէս ումեմն ստորասութիւն հակակայց ոչ ումեքում ոչ է. իսկ որպէս ընդհանրում ամենայնում ստորասութիւն հակակայիցեալ բացասաբար՝ ոչ ամենայնում։ Բայց ոչ ինչ տարբերեսցէ առիթ լինել զերկաքանչիւրոցն հաւաքաբանութիւն զտարակուսեալսն 'ի տեսութի։ Բաւէ, եթէ ընդէ՞ր հանուր հաւաքաբանութեան եղոյ դիտաւորութիւն, և այսոքիկ և ընդհանուր առաջարկութեան, ինքն 'ի տեսակս առաջարկութեանցն էջ։ Այլ ասէ՝ եթէ ոչինչ արգելու զմեզ 'ի խնդրելոյ զտեսակս առաջարկութեան, առ 'ի լինելոյ դիտաւորութեան, և յաղագս ընդհանուր առաջարկութեան և ընդհանուր հաւաքաբանութեան։ «Քանզի հանուրքն[1] բանիւ ոչինչ զանազանի առաջարկութիւնքն. քանզի զամենայն առաջարկութի որպէս այսու սահմանել, բան ուրումն ըստ ումեքում։

ԸՆԴ ԱՑՏՈՍՏԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ

ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ

ՊՐԱԿՔ Ը

«ԲԱՅՑ սահման կոչեմ, յոր վերլուծանի նախադասութիւն»։ Յետ սահմանի առաջարկութեան՝ սահմանէ և զսահման՝ ասելով, եթէ Սահման կոչեմ, յոր վերլուծանի նախադասութիւն, 'ի ստորոգեալն և յենթակայն, եթէ ոմն է՝ յաղագս որոյ է բան, իսկ ոմն՝ յաղագս նորա ասացեալ, որք տիրապէս մասունք գոն առաջարկութեան։ Իսկ այլքն ամենայն զշաղկապի տեղիս ունին, որպէս էրն. և կամ զքանակն չափեն, որպէս առ որոշմունքն. և կամ զորակն, որպէս եղանակն. և կամ զբացմունսն. և զի կարևոր մասունք առաջարկութեան այսք են, աստուստ է յայտ.

1 Միւս օրինակ ընդհանուրքն։

վասն զի ամենայն առաջարկութիւն 'ի հարկէ ենթակայ ունի և ստորոգումն. և թարց երկուց այսոցիկ ոչ երբէք լինի առաջարկութիւն. բայց թարց այլոց լինի առաջարկութիւն. թարց յեղանակի և բացմանն և առստորոգման, առորոշման: Քանզի Սոկրատէս ճեմի, ոչ ինչ յայսպիսեաց ունի, իսկ յաւելեալ՝ եթէ առադրեցելոյ ումեք, կամ տրամատեցելոյ՝ զամենայն առաջարկութիւնս պարունակեաց, զոր յաղագս մեկնութեան բացատրեաց: Քանզի երկուց ելոց հակադրութեանց, առդրութեան և բացառութեան, տրամատութեան և շարադրութեան, զմին յիշելով յերկաքանչիւրոցն հակադրութեանց՝ և զայլն ըստորակնարկէ. 'ի ձեռն առդրութեան զբացառութիւն յայտնելով, իսկ 'ի ձեռն տրամատութեան զշարադրութիւն: Նոյն իւրաքանչիւր ումեք 'ի չորեցս յայսցանէ առադրեցելոց գոլոյ կամ ոչ գոլոյն, ութ լինին ընդ ամենայն. որգոն՝ առադրութեան գոլոյ՝ առադրութեան ոչ գոլոյ. բացառութեան գոլոյ՝ բացառութեան ոչ գոլոյ. տրամատութեան գոլոյ՝ տրամատութեան ոչ գոլոյ. շարադրութեան գոլոյ՝ շարադրութեան ոչ գոլոյ:

Արդ զամենայն առաջարկութիւնս պարունակեաց, որպէս ասացաք և ցուցաք: Այս բայ է. քանզի ընդհանուր առաջարկութիւնք, որպիսի ինչ և է, կամ զօրութիւն ունի զէն առ ստորոգելով, կամ ներգործութիւն: Զօրութիւն, որպէս ամենայն մարդ ենթակայ է, և աստի ստորոգելոյ: Քանզի թէպէտ և ոմանք 'ի դոցանէ ներգործութիւն ունին զէն, որպէս Աստուած է, Սոկրատէս է, այլ դոյն առ ստորոգելով զօրութիւն ունին, վասն զի ամենայն բայ յիւր ընդունելութիւն վերլուծանելով. որգոն՝ Սոկրատէս է, Սոկրատէս գոլով է. Աստուած է, Աստուած գոլով է: Արդ այսք՝ որք զօրութիւն ունին զէն առկայացեալ, կամ ստորասականք են, կամ բացասականք: Նոյն ստորասականք գոլով ստորասութիւն ունին գոլոյն. իսկ գոլն է՝ պարտ է իմանալ որ 'ի բաց բառնայ 'ի նոցանէ. իսկ բացասականք գոլով բացասութիւն ոչ գոլոյն ունին. քանզի 'ի բաց բառնայ 'ի նոցանէ ոչ գոլոյն: Իսկ որք ներգործութիւն ունին զէն, կամ յեղականաւ են, կամ առանց յեղանակի. առանց յեղանակի՝ որպէս Սո-

կրատէս արդար է, Սոկրատէս արդար ոչ է: Արդ ստորասականք գոլով առադրութի ունին գոլոյն, իսկ բացասականք գոլով առադրութի ունին ոչ գոլոյն. իսկ թէ յեղանակաւ են, կամ ստորասականք են, կամ բացասականք. և ըստ իւրաքանչիւրոցդ, կամ պարզք գոն և կամ 'ի գերադրութե: Արդ պարզ գոլով ստորասութե, և յեղանակ շարադրութե ունի Սոկրատէս մարդաբար:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ
## ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ

## ՊՐԱԿՔ Թ

«ՀԱՒԱՔԱԲԱՆՈՒԹԻՒՆ է բան, յորում դրիցելոց ոմանց՝ նմա նոցին այլ ինչ առկացելեօքն 'ի հարկէ համադիպի զայնս այսպէս ունելով»։ Յետ մասանցն հաւաքաբանութե, զհուպսն ասեմ՝ այս ինքն զառաջարկութիւնսն, և զհեռիսն՝ այս ինքն զսահմանսն, գայ Արիստոտէլ և զառ 'ի նոցանէն բաղկացեալ հաւաքաբանութիւն՝ յերից իրողութեց արտաքս առկացուցանելով զնախերգան առաջիկայիս իրողութե, ստորոգութե, յաղագս մեկնութե, և վերլուծականացն: Քանզի ոչ 'ի ստորոգութե յաղագս պարզ ձայնիցն խօսեցաւ, որք են սահմանք. իսկ 'ի յաղագս մեկնութե՝ յաղագս նախադասութեց. իսկ 'ի վերլուծականսն՝ յաղագս պարզ հաւաքաբանութե. նոյնպէս և յարակայում նախերգանումս սահմանեալ զառաջարկութի և զսահմանս, այսպէս գայ 'ի հաւաքաբանութի:

Բայց սահմանէ զնմ հաւաքաբանութի, զստորոգականն և կամ զստորադրականն՝ ոչ զայս և ոչ զայն: Քանզի բացատրեցեալդ սահման ամենայնում հաւաքաբանութե պատշաճի: Իսկ Աղէքսանդրոս առյարակայիցս պատմիչ բանից, ասէ՝ թէ Օ ստորոգականն միայն սահմանէ հաւաքաբանութե, երկոքումբք

այսոքիւք հաւատարմացուցանելով զբանդ ։ Միով և առաջնով, եթէ զստորոգական առաջարկութիւն սահմանեաց միայն. իսկ ստորոգականք հաւաքաբանութիւնք 'ի ստորոգականացն գան յառաջարկութեանց ։ Ասէ և երկրորդ պատճառ, եթէ զանազանութիւնս յարադրէ[1] աւարտնոց և անաւարտից հաւաքաբանութեանց. իսկ աւարտեալն և անաւարտն՝ ստորոգականացն միայն գոյ հաւաքաբանութեանց ։

Առ որս ասեմք մեք նախ և առաջին, եթէ ստորոգականն միայն սահմանէ առաջարկութիւն, որպէս այն ինչ յաղագս մեկնութեան զամենայն առաջարկութիւն սահմանեալ ։ Բայց թէ ընդէ՞ր զստորոգականն միայն սահմանէ զառաջարկութիւն, զպատճառն ասացաք ։ Բայց լուծանեմք և զերկրորդն այսպէս, եթէ ստորադրականացն զանազանութիւն յարադրէ հուպ 'ի կատարումն առաջնոյ հատածի առաջնոյ ճառիս՝ որ առձեռն է ։ Եւ արդ այսոքիկ առ Աղեքսանդրոս ասասցին ։ Այլ վասն զի Արիստոտէլ՝ եթէ զի՞նչ է հաւաքաբանութիւն, յարադրէ միայն, թողեալ զեթէէն ։ Իսկ եթէէն յառաջագոյն է քան զզինչէն, բե՞ր ցուցցուք, եթէ է հաւաքաբանութիւն ։ Բայց զայս առնեմք վասն եփիկուրեանցն փիլիսոփայից, որք անհասութիւն ախտանեան, և այսուիկ 'ի բաց բառնան զհաւաքաբանութիւն, որպէս զգործին մտահասութեան ։

Բայց բառնան զհաւաքաբանութիւն այսպէս ձեռնարկելով. Ի ձեռն հաւաքաբանութեա՞ն ցուցանէք, ով ճեմականք, եթէ է հաւաքաբանութիւն, եթէ առանց հաւաքաբանութեան ։ Եթէ առանց հաւաքաբանութեան, ոչ հաւանիմք ձեզ որպէս ոչ ցուցելոց. իսկ եթէ 'ի ձեռն հաւաքաբանութեան, զսկզբանութիւն հայցելի է զերկբայացեալն խոստովանեալ առնելով ։ Այլ և յաղագս հաւաքաբանութեան, որ եցոյցն՝ եթէ է հաւաքաբանութիւն, զնոյնս ցուցէք. և այս յանհունս ։

Առ որս ասեմք զայսոսիկ, եթէ ձերովք իսկ ըմբռնեցայք թևօք առասպելումն որպէս մանկունականք ։ Վասն զի զնոյն և մեք ասեմք առ ձեզ, եթէ

1 Ի միւս օրինակին միշտ գրի յարդարէ ։

ուստի՞ ասէք՝ եթէ ոչ է հաւաքաբանութեան. բացացուցանելո՞վ, եթէ ոչ բացացուցանելով: Եւ զիա՞րդ կարողութիւն է՝ ոչ ելոյ հաւաքաբանութիւն ըստ ձեզ՝ հաւաքաբանութեան պիտալ. զոր 'ի բաց բառնալ ձեռնարկէք. այլ և ոչ յանհունս ելանեմք: Վասնզի հաւաքաբանութիւն՝ որ եցոյց, եթէ է հաւաքաբանութիւն, և զինքն եցոյց, թէպէտ և ոչ որպէս հաւաքաբանութիւն, այլ որպէս հաւաքաբանելի. որպէս և սահման և զինքն սահմանէ, թէպէտ և ոչ որպէս սահման, այլ որպէս սահմանելի: Բայց արդ այսպիսի բան՝ որ ցուցանէ, եթէ է հաւաքաբանութիւն, այլ այլո՞վ ցուցանելի է՝ եթէ է հաւաքաբանութիւն: Վասնզի բնութիւն ոչ զամենայն ինչ թաքոյց. զի ոչ էր ապա գտանելն, և ոչ զամենայն ինչ յայտնեաց, զի ոչ էր ապա խնդրել, այլ խնդրելն և գտանելն: Բայց եկն մարդկային տրամախոհութիւն հաւաքաբանել յայսպիսւոյ պատճառէ. քանզի տեսանէին զամենայն իրս ոչ ամենեւիմբ հաղորդեալս ընդ միմեանս[1]. քանզի ոչ էր ապա այլ այլով գտանել. վասն զի ամենայն ինչ յինքեանս ցուցանիւր. որ զգայութեանց է յատուկ, և ոչ հաւաքաբանութեան. և ոչ դարձեալ ամենեւիմբ զանազանեալս 'ի միմեանց, քանզի ոչ երբէք յերկուց բացասութեանց եզրակացութիւն լինի: Եւ այսոքիկ յաղագս այսորիկ:

Յետ որոց եկեսցուք 'ի նոյն ինքն 'ի հաւաքաբանութիւն, զոր սահմանէ այսպէս. "Հաւաքաբանութիւն է բան յորում դրիցելոց ոմանց, այլ ինչ առկացելովք 'ի հարկէ հանդիպի վնոյնս գոլ": Այս սահման և սեռ ունի. քանզի բան՝ սեռ է բացացուցականին, տրամաբանականին, ճարտասանականին, իմաստականին, քերթողականին. և բաղկացուցիչ զանազանութիւն: Իսկ զանազանութեանց ոմանք 'ի նիւթոյ են, որպէս ոմանց և դրիցելոցն. իսկ ոմանք 'ի տեսակէ, որպէս այլ ինչ առկացելեօքն 'ի հարկէ. և այլքն ամենայն 'ի կարգութիւն: Իսկ տեսակ հաւաքաբանութեան եզրակացութիւն: Բայց հաւաստեսցուք զիւրաքանչիւր ոք 'ի բառիցդ առանձին:

Բան՝ յորում դրիցելոց ոմանց: Դրիցելոց ասաց,

1 Միւս օրինակ ընդ գծեանց :

և ոչ ստորադրիցելոց, ապա թէ ոչ՝ զստորադրականն միայն սահմանէր. և ոչ ստորոգիցելոց ասաց, ապա թէ ոչ զստորոգականն միայն սահմանէր. այլ՝ դրիցելոց ասաց, այ̃՝ խոստովանիցելոց: Նաև պարառեցաւ[1] զստորոգականսն և զստորադրականսն. քանզի առաջարկութիւքն խոստովանեցեալք ոմանք գոն: Նաև 'ի ստորոգականսն, մինչ զի առաջարկութ̃. իսկ ստորադրականսն, ոպ̃ շարամերձական և առասութ̃: Նաև զի դրիցելոցն՝ խոստովանեցելոց է, յայտ է. վասն զի նշանակութեց դրութ̃ է խոստովանութ̃: Իսկ դրիցելոց ասաց առ հակորոշումն այլոց բանից, որպէս ըղձականին, հրամանականին[2] և հակորոշեցելոցն բացերևականութեմ̃. քանզի յոչ ուրուք վերայ նոցա նախենթակայէ ինչ երբէք խոստովանեցեալ: Բայց յոգնակի ասաց՝ դրիցելոց, և ոչ եզակի՝ դրիցելոյ. վասն շարամերձականաց, և տարալծականաց, և վասն հակադարձմանց՝ և վասն եզառածիցն. քանզի 'ի նոսա մի զմիոյ կնի երթայ: Որգոն՝ որպէս շարամերձականն՝ եթէ է արեգակն 'ի վերայ երկրի՝ տիւ է. այլ արդ 'ի վերայ երկրի, ապա ուրեմն տիւ է. և 'ի տարալծականսն նմանապէս, կամ տիւ է և կամ գիշեր, այլ ահա տիւ է, գիշեր ապա ուրեմն ոչ է: Նմանապէս և 'ի հակադարձութեան մի զմիոյ զկնի երթայ. որգոն՝ եթէ ոչ ոք քար՝ մարդ է, և ոչ ոք մարդ՝ քար է. և զի յեզառածսն մի միում հետևի. բայց պիտոյ են եզառածիցն ճարտասանքն. որգոն՝ այս անուն պղնձ̃ող, ապա ուրեմն և շուն. այս անուն մեռաւ առընթեր կալով նորա որ եսպան, մեռելումն ապա ուրեմն սպանող: Արդ այսպիսեացս պիտոյին հաւաքաբանութեց և Նաքինէս ընդդէմ Դեմոստենայ՝ ասելով. քանզի որդխատեայն և հայր չար, յաւել, թերևս ոչ երբէք հրապարակութ̃ երևեսցի քաղցրապիտակ: Նչյուքիկ ամենեքեան անհաւարտք են հաւաքաբանութիք:

Բայց զի կոչեցին անհաւարտութիք, այսպէս պարտ է ասել. այս անուն պղնձ̃ող. մ̃մ պղնձ̃ող շուն, ապա ուրեմն

1 Ցօրինակն պատառոյէաց:　　2 Միւս օրինակ հրամայականին:

այս անուն շուն է։ Այս անուն առաւ ՚ի գիշերումն առ-
ընթեր նորա կալով սպանումն, առելումն ամենայ-
նի սպանող է այս անուն, ապա ուրեմն այս անուն
սպանող է. Նմանապէս և զԱպաքինեայ հաւաքաբա-
նութն այսպէս պարտ է ասել. Դեմոստենէս որդխա-
տեաց և հայր չար. ամենայն այսպիսի թերևս ոչ
երբէք երևեսցի հրապարակութեամբ քաղցրապիտակ։
Բայց պիտոյին եղառածիցն ճարտասանք՝ վասն չո-
րից պատճառաց. կամ խնայելով ՚ի ժամանակն. քան-
զի առ հոսանուտն ընտրելով[1] առնէին, կամ շողո-
քորթելով զզատաւորսն, որպէս զգիտունսն հաւա-
քաբանից հնարից, և կամ այլազգաբար, որպէս ՚ի
ձայնակիցս կալցին զզատաւորսն, որպէս վերալցող
զպակասումն. քանզի ամենայն ոք ընդ ինքեան առա-
ւել հաւատայ ասողում, քան թէ այլում։ Եւ այլազ-
գաբար, եթէ կամաւորութեամբ թողուին զմեծ առաջ-
արկութիւն. վասն զի բազում անգամ սուտ գտա-
նէին, և վասն թաքուցանելոյ զսուտն՝ այնպէս առ-
նէին։

Արդ բարւոք ասաց դրիցելոց ոմանց, և ոչ դրի-
ցելոց, քանզի ՚ի հաւաքաբանութիւն յոլովք դնին,
և ասելով դրիցելոց, առարկեաց՝ եթէ է կարինուազ
երկուքն ամենայն իրօք։ Վասն զի և բազում առաջ-
արկութիւս կարողութիւն է դնել ՚ի հաւաքաբանութեան.
և աստուստ և անուն հաւաքաբանութեան գտաւ, որ
նշանակէ բաղհաւաքումն. քանզի բաղ՝ յորոց վերայ
առադրի, բազմութիւն նշանակէ. որպէս մարտակից,
որպէս որդեկից, նոյնպէս հաւաքակցութիւք, այս ինքն
բաղհաւաքումն, սակս բազում ինչ միանգամայն հա-
ւաքաբանելոյ։ Քանզի ՚ի սմա ոչ եթէ մի միումն
հետևի, այլ բազմաց մին. որգոն՝ մարդ, կենդանի,
շնչաւոր. ապա ուրեմն և մարդն շնչաւոր. ահա բազ-
մաց՝ այս ինքն կենդանումն և ներանձնաւորումն՝ մինն
հետևի, այս ինքն մարդ ներանձնաւոր։

1 Միւս օրինակ ընտրով։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՑ

## ՊՐԱԿՔ Ժ

*“ԱՅԼ ինչ առակացելոցն 'ի հարկէ համադիպելի ըղ-նոյնս գոլ» ։ Յետ առ 'ի նիւթոյն զանազանութեանց՝ գայ և առ 'ի տեսակէն ։ Այլն առակայանայ , որպէս զի այլ եղիցի եզրակացութիւն առաջարկութեանց , և ոչ մի ինչ 'ի նոցանէ իցէ նոյն ․ որգոն՝ մարդ կենդանի , կենդանին՝ գոյացութիւն , ապա ուրեմն մարդ գոյացութիւն ։ Արդ մարդ գոյացութիւն , և ոչ մի ինչ որ է յառաջարկութեանս նոյն գոլ ․ իսկ ոչ մի ինչ յառաջարկութիւնս նոյն գոլ՝ է եզրակացութիւն , այսինքն բաղեզերումն ։ Ասացաւ և վասն տարբերեցելոցն առ 'ի ստոյիկեանցն բաղհաւաքմանցն , որք ըղբաղեզերումն զնոյն առնէին միում յառաջարկութեանց ։ Որգոն՝ եթէ տիւ է , տիւ է ․ այլ արդ տիւ է , ապա ուրեմն տիւ է ․ քանզի սոքա սակս թախանձանս 'ի ներքս ածելոյ և ոչ զգործոյն առնեն , քանզի ոչ եթէ այլ այլով ցուցանեն , այլ զինքն ինքեամբ ․ այսինքն զնոյն նոյնիւ ։ Ինչ ․ ոչ է արհամարհել զինչդ , որպէս զմի փաղառութիւն ․ քանզի անչափ ունի զօրութիւն , որպէս և որ ոչ ինչ գոլ բաղհաւաքականացն , և անբաղհաւաքմանց լծակցութեանց ։ Վասն զի պարտ է գիտել , եթէ որքանիք լծակցութիւնք նոյն հիւսմանց պատահեցելոց ․ իսկ նիւթոյն փոխեցելոյ ինչ ժողովեն՝ և մի , և ոչ բազում , այնոքիկ բաղհաւաքմանց ․ իսկ որքանիք լծակցութիւնք նոյն հիւսմանց պատահեցելոց , և մի սահմանի փոխեցելոյ , այլ ինչ և այլ ժողովեն , երբեմն ումեքումն , և երբեմն ոչ ամենայնի ․ այնոքիկ անբաղահաւաքականք ասին ։*

*Ի հարկէ ․ 'ի հարկէ ասացաւ , որպէս զի հարկաւոր և կարևոր եղիցի ժողովելն մակածականացն և յարացուցից , որք ոչ հարկաւոր ինչ ժողովեն ․*

*քանզի ամենայն հաւաստ՝ կամ 'ի հանգիտէն զհանգէտն յարդարէ, կամ 'ի նուազէն զմեծն, և կամ 'ի մեծէն զնուազն. արդ որ 'ի հանգիտէն զհանգէտն յարդարէ, ասի յարացոյց. որգոն՝ ոչ տացուք Դիոնեսիոսումն թիկնապահ մարմնոյ. վասն զի և Պիսիստրատոս առեալ բռնացաւ: Քանզի ոչ հարկաւոր է՝ թէ Պիսիստրատոս բռնացաւ, և Դիոնեսիոս բռնանայ: Իսկ որ 'ի նուազէն զմեծն յարդարէ, մակածութիւն ասի. որգոն՝ վասն զի մարդ և ձի զներքին կղաւին շարժեն, ոչ է հարկաւոր՝ թէ ապա ուրեմն և ամենայն կենդանի զներքին կղափն շարժեն, որ ոչ է հարկաւոր փիւնակաթևի և կոկորդիլոսի և գուձողի[1], որք զվերին կղափն շարժեն: Իսկ որք 'ի մեծէն զնուազն հաւաստեցուցանեն, այնոքիկ բաղհաւաքումն ասին, որք հարկաւոր հաւաքեն. որգոն՝ եթէ ամենայն մարդ երկոտանի գոյ, ապա և Սոկրատէս երկոտանի գոյ, որ է կարևոր:*

*Իսկ համդիպի ասացաւ, վասն տրամաբանականացն և իմաստականաց բաղհաւաքմանց, որք զմարթելին և զանկարելին ժողովեն, քանզի տրամաբանականքն զմարթելին ժողովեն. իսկ իմաստականքն զանկարելին: Բայց ուրեք ուրեք զհարկաւորն ժողովեն. սակայն ոչ ըստ ինքեան, այլ ըստ պատահման, և զայն հետևման բաղհաւաքման. քանզի Սոկրատէս ձեմի, իսկ որք ձեմին, շարժի՝ մարթելի է: Իսկ հետևման բաղհաւաքման, հարկաւոր լինի. և թևս ունել Սոկրատայ անկարելի է. և մարթելին է բռնուն բաղհաւաքման. որգոն՝ Սոկրատէս թռչի. և որ թռչի՝ թևս ունի. ապա ուրեմն և Սոկրատէս թևս ունի: Բայց բացացուցականն միայն և ըստ ինքեան հետևման զհարկաւորն ունի. որգոն՝ մարդ կենդանի, որ է հարկաւոր և թարց հիւսմանց[2]: Իսկ կենդանին՝ ներանձնաւոր, հարկաւոր այսոքիկ և ըստ ինքեան, հարկաւոր և ըստ հիւսման լինին:*

*Օնոյ գոլ. զայս ասաց, այս ինքն՝ եթէ պարտ է բաղեզերումն վասն կացելոց առաջարկունեցն, և ոչ սահմանն 'ի սմանէ արտաքուստ մակիմացելոյ, և կամ*

1 Միւս օրինակ գոձոյի:

2 Միւս օրինակ հեփսմանց:

պակասեցելոյ. որգոն՝ անձն ինքնաշարժ, ինքնաշարժն մշտաշարժ, մշտաշարժն անմահ. ապա ուրեմն անձն անմահ. քանզի ոչ եթէ 'ի կացելոց առաջարկութեանց ժողովեցաւ, այլ զսահմանի ոմանց արտաքուստ մակիմացելոց, որ ասէ՝ եթէ մշտաշարժն անմահ։ Այլ դարձեալ անձն ինքնաշարժ, ինքնաշարժըն մշտաշարժ, մշտաշարժն անմահ. ապա ուրեմն անձն ինքնաշարժ. քանզի աստ աւելորդ է մի առաջարկութիւն, որպէս մշտաշարժն. քանզի ոչ ինչ պիտանի 'ի բաղեզերութիւն։

Այսպիսիք են և առ 'ի ստոյիկեանցն անճառաբար¹ եղերեալք բաղհաւաքմունքն. որգոն՝ մին հանդէտ գոյ երկուում, և երկու հանդէտ գոյ երեքում. ուրեմն մին երկու՝ հանդէտ է երեքում։ Այլ դարձեալ մին երկու՝ մեծ է քան զերկուսն, իսկ երկու մեծ է քան զերեքում. ապա մինն երկուսն՝ մեծ է քան զերեքում. քանզի այսոքիկ անճառաբար¹ ասին եղերեալ։ Քանզի զնուազ առաջարկութիւն երկիցս առնուն, իսկ զմեծն թողուն. քանզի ասելով մին հանդէտ երկուում, իսկ երկու երեքում հանդէտ, ըզնուազն երկիցս էառ, իսկ զմեծն եթող. քանզի ոչ մի քան զմի առաւել է. և 'ի վերայ միւս և այլոյ յարացուցին նոյն բան պատշաճի։ Քանզի պարտ էր ներճառաբար² այսպէս հիւսել. մինն երկու, և երկուսն երեքում հանդէտ, իսկ որ նոյնում գոն հանդէտ, ապա և մին երկուում հանդէտ. և դարձեալ մինն քան զերկուսն մեծ մեծի ելոյ քան զերեքումն. իսկ որ քան զմեծն մեծ է, կարի յոյժ ապա և քան զնուազն մեծ. ապա և մին երկուսն քան զերեքում մեծ։ Այս է և ճառաբար եղերիլն։ Քանզի թէպէտ և 'ի վերայ այնոցիկ յարացուցից ճշմարիտ գոլ ժողովեալն զբանութիւն ենթակայացելոցն իրողութեանց, այլ 'ի վերայ այլոց յարացուցիցն ոչ պատկանի բանն. որգոն՝ այս անուն նորա եղբայր, և այս անուն նորա եղբայր, ապա այս անուն և այս անուն եղբարք գոն միմեանց, որ է սուտ բաղեզերութիւն. քանզի մարթ գոյ երկուց

1 Միւս օրինակ անճառաբար. որպէս և այլուր։

2 Յօրինակն ներճառաբապէս։

ոմանց և այլոցն եղբայր գոլ. բայց միմեանց ոչ գոլ եղբարք։ Որգոն՝ ոմն ունելով զորդի յայլմէ կնոջէ, կին էառ զոմն՝ որ ունէր զորդի յայլմէ յառնէ. արդ՝ որ 'ի նոցանէ յերկուցն ծնանի՝ եղբայր գոյ միումն 'ի հօրէ, իսկ միւսումն 'ի մօրէ։ Երկուքն միում գոլով եղբարք, միմեանց ամենևին ոչ գոն եղբարք։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ԳՐԱՔԿ ԺԱ

«ԲԱՅՑ աւարտուն կոչեմ բաղհաւաքումն զոչինչ արտաքուստ սահմանումն առ կարօտացեալն առ 'ի լինել բաղեզերումն»։ Յետ սահմանին բաղհաւաքման՝ գայ 'ի զանազանութիւն բաղհաւաքմանցն, զաւարտուն ասեմ, և զանաւարտն։ Ասելով թէ բաղհաւաքմանցն ոմանք աւարտունք են, որք յառաջնումն գոն ձևում. իսկ ոմանք անաւարտք՝ որք յերկրորդումն և յերրորդումն ձևում։ Այլ զիարդ ասեմք անաւարտ բաղհաւաքումն. որովհետև անկարօտն կայ 'ի սահմանումն. քանզի անկարօտն կարօտեցելոյն կատարելագոյն, իսկ անաւարտ է՝ որ կարօտանայ սահմանում ումեք արտաքուստ. իսկ աւարտունն՝ անկարօտն արտաքուստ սահմանումն։ Սակս որոյն այսորիկ տարաձայնեցան առ միմեանս Մաքսիմոս ուռհայեցի աշակերտ Յամլիքոսի, և Թեմիստոս. քանզի և Թեմիստոս ուշ ունելով բաժանման հաւաքմանցն՝ զոմանս աւարտունս կոչէր, որք յառաջնումն ձևում, իսկ զոմանս անաւարտ՝ որք յերկրորդումն և յերրորդումն։ Իսկ Մաքսիմոս ուշ ունելով սահմանումն ունողումն զանկարօտն զամենայն բաղհաւաքումն աւարտուն կոչէր։ Եւ յաղագս այսորիկ առին դատաւոր զՅուլիանոս թագաւոր՝ որ զյաղթութիւնն ետ Մաքսիմոսումն։

Բայց ասասցուք սակս Թէմիստոսի, զոր և ինքն միայնագրում ուրեմն ասաց այսպէս, թէ Եւ ոչ ես կոչեմ անաւարտ բաղհաւաքումն, որ ընաւ կարօտանայ արտաքուստ իմիք սահմանումն: Զի որ սահմանումն կարօտանայ ընաւ և ոչ բաղհաւաքումն ումեք, և ոչ այլում ումեք արտաքուստ ոչ հակադարձութե͞ն միումն և երկուց, և ոչ անկարելի մակածութե͞ն[1]. զի անաւարտ կոչեմ բաղհաւաքումն ոչ զայն՝ որ կարօտանայ արտաքուստն ումեք սահմանումն. քանզի սահմանումն կարօտացեալն՝ և բաղհաւաքումն իսկ ոչ է: Այլ զայն որ այլումն է՝ անուանէ, 'ի պէտս արտաքուստ սահմանումն, առ 'ի արծարծումն հարկաւորին, և ոչ եթէ առ 'ի լրումն, և կամ հակադարձումն միում, կամ երկուց, և կամ յանկարելին մակածութե͞ն: Եւ արդ այսոքիկ յաղագս տարբերութե͞ց բաղհաւաքմանցն:

Յետ որոյ յարադրէ մեզ և զանազանութի͞ս առաջարկութե͞ցն՝ զներ բոլորումն և զոչ ներ բոլորումն, զըստ ամենայնումն և զըստ ոչ ումեքումն. և այսոքիկ կամ ստորասականք են, կամ բացասականք: Արդ ստորասականք գոլով 'ի ներ բոլորումն ասին, և կամ ըստ ամենայնում. իսկ բացասականք գոլով ոչ 'ի ներ բոլորումն, և ոչ ըստ ումեքումն: Բայց եթէ զիա՞րդ այսոքիկ զանազանին 'ի միմեանց, այն ինչ ուսաք, եթէ յորժամ ասեմք՝ մարդ կենդանի 'ի ներ բոլորումն, զմարդն ասեմք գոլ 'ի կենդանումն. իսկ եթէ ասեմք կենդանի ամենայնումն մարդումն, ըստ ամենայնումն ասեմք զայսպիսի առաջարկութի͞ս: Իսկ եթէ ասեմք մարդ ոչ ումեք կենդանումն, ասի ոչ 'ի ներ բոլորումն. իսկ եթէ ասեմք կենդանի ոչ ումեք մարդում, ոչ ըստ ումեքում ասի:

Բայց տարակուսեն երիս տարակուսանս: Նախ՝ եթէ զիա՞րդ ասեմք ներ 'ի բոլորումն կենդանումն կենդանւոյն մարդում և ձիում և եզում յարադրելով զինքն: Լուծումն. եթէ վասն զի զբոլոր սահմանս կենդանւոյն ունի յինքեան մարդն: Երկրորդ տարակուսանք, եթէ ընդէ՞ր յորժամ ասեմք մարդ կեն-

1 Միւս օրինակ հաջացաւնելեաց:

դանի, առի ներ բոլորումն. իսկ յորժամ ասեմք կեն-
դանի ամենայնումն մարդումն, առի ըստ ամենայ-
նումն: Լուծումն այսորիկ. եթէ վայելուչ է ստորո-
գիցելումն առ անորոշելլյն: Վասնզի 'ի բոլորումդ
ստորոգիցելումդ գոյ շարամերձեալ, և ոչ առորո-
շումն, որգոն՝ ներ 'ի բոլորումն կենդանումն. իսկ
ենթակայումն վայել է առորոշումն, որգոն՝ որպէս
յորժամ ասեմք, կենդանի ըստ ամենայնումն մար-
դումն: Վասնզի ամենայնդ այդ[1] առորոշումն շարամեր-
ձեալ է մարդումն, ենթակայումն յաւելումն: Եր-
րորդ տարակուսանք, եթէ էր վասն նախակարգեաց
զներ 'ի բոլորումն ըստ ամենայնումն: Լուծումն.
եթէ վասն զի վերլուծական է իրողութիս, և վայել
է վերլուծութեան մանաւանդ վերլուծութիւն քան
զվայրիջութիւն:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ԳԻՐՔ ԺԲ

«Այլ վասն զի 'ի նախադասութեց ոմանք ստորասա-
կանք են, և ոմանք բացասականք»: Ուսուցեալ զմեզ
Արիստոտէլի զամենայն զոր ինչ միանգամ խոստա-
ցաւ, և սահմանեալ զսահմանս, զառաջարկութիս.
և եթէ զի՞նչ է բաղհաւաքումն, ասացեալ է և զզա-
նազանութիս նորա զաւարտումն և զանաւարտումն,
և զզանազանութիսն առաջարկութեցն, զոչ ներ բո-
լորումն և ներ բոլորումն, և ըստ ամենայնում և ոչ
ըստ ումեքումն: Այժմ այլ տեղի քննութեց առնու
վարդապետուէ բաղհաւաքմանցն, և հակադարձու-
թէ նոցա, որպէս զի մի՛ յերկրորդումն և յերրորդումն
ձևումն պէտս ունելով հակադարձութեց, և ոչ ու-

1 Միւս օրինակ ամենայն մարդ:

սուցեալ յառաջագոյն 'ի վերայ անհաւաստեաց յա-
ռաջածեսցէ զբանն, և կամ ուսուսցէ 'ի միջունն,
կտրեսցէ զշարունակութիւն: Նաև տարակուսեն, եթէ
վասն էր ոչ ուսուցանէ մեզ յառաջագոյն և զանկա-
րելին բացածութի, և թէ զիարդ լինի, վասն զի և
նմանապէս պէտս ունի և յերկրորդութեան և յերրոր-
դութեան ձևութեան:

Արդ որս ասեմք, եթէ բաւական համարեցաւ, զոր
նորա մտածութի ունիմք: Բայց այժմ զայսոսիկ ու-
սուցանէ և յարդարէ, որպէս ստիպեցուցանօղս: Իսկ
յառաջելով[1] և զառ 'ի յանկարելի բացածութիւն
ուսուցանէ. քանզի նոյնպէս և պիտանացուացս առ-
ստորոգութիւն' զոմանս նախակարգեաց զանհաւա-
տիմս, իսկ զոմանս 'ի վերջոյ ուսոյց: Բայց լինի սա
'ի բառնալոյ բաղեզերմանն. 'ի ձեռն հակակայի ա-
ռաջարկութեացն բաղեզերմանն, և միոյ առաջարկու-
թեան, որ յառաջէր մնացելով և զայն 'ի բաց բառնա-
լով: Որգոն ասեմ, մարդ' կենդանի, կենդանին' ներ-
անձնաւոր, ապա և մարդ' ներանձնաւոր: Արդ
եթէ ոք ասէ զբաղեզերումդ ոչ գոլ, այս ինքն ըզ-
մարդն ներանձնաւոր, յանդիմանէ 'ի ձեռն անկա-
րելին բացածութեանց: Այսպէս եղելոյ' առնում զհա-
կակայն բաղեզերմանն. որգոն' զոչ ոք մարդ ներ-
անձնաւոր առնում. և մի յառաջարկութի, որ յա-
ռաջն էր' որ ասէր, ամենայն մարդ կենդանի, և առ-
նեմ երկրորդ ձև այսպէս. ոչ ոք մարդ ներանձնաւոր,
ամենայն մարդ կենդանի, ժողովել 'ի մասնական բա-
ցասական, որպէս յերկրորդութեան ձևութեան' ոչ ամենայն
կենդանի ներանձնաւոր: Բայց աստ մանաւանդ
այսպէս, ոչ ոք մարդ ներանձնաւոր, որ հակակայի
սկզբան բաղեզերմանն: Նաև մի առաջարկութիւն
սկզբանցն, ամենայն մարդ կենդանի. և ժողովել[2] 'ի
մասնական բացասական, ոչ ամենայն կենդանի, ներ-
անձնաւոր ամենայն և ոչ ամենայն, և առնէ հակա-
սութիւն, որում ոչ գոյ հնար ճշմարտակից լինել:
Զայն և հակադարձութի բաղհաւաքման կոչեն:
Նաև այսոքիկ յաղագս այսորիկ:

1 Միւս օրին. յառաջ ածելով: 2 Միւս օրին. ժողովել մասնական:

Բայց պարտ է ութ գլուխս ոմանս յառաջագոյն առնուլ յաղագս հակադարձութեան բանի, այս ինքն վարդապետութեան բաղհաւաքմանցն։ Նախ՝ եթէ քանաքա՞ր ասի հակադարձութիւն, և յաղագս որո՞յ արդեօք այժմու բանս է։ Երկրորդ՝ եթէ այս յաղագս որոյ այժմու բանս է՝ քանաքա՞ր, և յաղագս որո՞յ դիտաւորութեան։ Երրորդ՝ սահմանել զնա յաղագս որոյ բանն է։ Չորրորդ՝ քանաքար գոյն և հարկաւորն և մարթն, քանզի զայլսն ոչ յիշէ՝ զկարելին և զանկարելին, և զիա՞րդ ըստ իւրաքանչիւր ումեք 'ի սոցանէ պիտանանայ հակադարձութեան։ Հինգերորդ՝ վասն է՞ր եթող զկարելւոյն և զանկարելւոյն հակադարձութիւնս [1]։ Վեցերորդ՝ զի՞նչ այնոքիկ՝ որք ցուցանին 'ի ձեռն հակադարձութեանցն։ Եօթներորդ՝ զի՞նչ կարգաւորութիւն նոցին։ Ութերորդ՝ ո՞յք ոմանք իցեն յառաջ բերեալքն տարակուսանք։

Արդ ութ ելոց գլխոց առաջիկայ տեսութիւս զերիմն միայն յարադրէ։ Նախ՝ եթէ քանաքա՞ր հակադարձութիւն, և յաղագս որո՞յ բանս։ Արդ հակադարձութիւն եռակի ասի, կամ 'ի սահմանս, կամ յառինչսն. զոր և յարադրեաց 'ի ստորոգութիւնս, յորժամ ասէրն, եթէ առինչքն առ 'ի հակադառնալն ասին, հայր՝ որդւոյ հայր, և որդի՝ հօր որդի. և կամ յառաջարկութիւնս են, որպէս այժմու բանս։ Այս առաջին գլուխ։ Երկրորդ գլուխ էր, եթէ այս որ յառաջարկութիւս՝ յաղագս որոյ և այժմու բանս է, քանաքա՞ր, և յաղագս որո՞յ արդեօք է դիտաւորութիւն։ Եւ սա նոյնպէս եռակի. քանզի կամ պարզ է, և կամ մարթելի, և կամ բաղհակադարձութեամբ։

Պարզ է, որ զորակն զնոյն պահէ, իսկ զկարգ սահմանացն փոխէ. որգոն՝ ոչ ոք մարդ քար, և ոչ ոք քար մարդ։ Որակն նոյն մնաց, քանզի երկոքեին բացասականք. իսկ կարգ սահմանացն փոխեցաւ միայն. քանզի ստորոգիցեալն ենթակայ եղև, և ենթակայն ստորոգիցեալ։ Քանզի յորժամ ասեմք, ոչ ոք մարդ

1 Միւս օրինակ հակադրութիւնսն։

քար, մարդն ենթակայ է, իսկ քարն ստորոգեալ. իսկ յորժամ ասեմք, եթէ ոչ ոք քար մարդ, քարն ենթակայ է, իսկ մարդն ստորոգեալ:

Իսկ մարթելի հակադարձութիւն է, որ զորակն փոխէ, իսկ զկարգ սահմանացն զնոյն պահէ: Բայց մարթելի ասի 'ի նիւթոյն, յորոյ վերայ բնաւորեցաւ ճշմարտել. որգոն՝ մարթելի գոյ ամենայնում մարդում արդար գոլ, որ է ստորասութիւն. և դարձեալ մարթելի գոյ՝ ոչ ումեք մարդում արդար գոլ. որ է բացասութիւն: Ահա որակն փոխեցաւ, իսկ կարգ սահմանացն նոյն պահեցաւ. քանզի մնաց նոյն ստորոգլիցեալ, և նոյն ենթակայ:

Տարակուսեն ոմանք, եթէ վասն էր, որպէս զբացասութիւն է առ, եթէ մարթելի [1] ոչ ումեքում մարդում արդար գոլ. քանզի 'ի վերայ յեղանակաւ առաջարկութեանցն՝ յեղանակին 'ի բաց բարձիցելոյ լինի բացասութիւն: Արդ եթէ յեղանակաւ էր առաջարկութիւնդ՝ պարտ էր ասել, եթէ ոչ մարթի ամենայն մարդում արդար գոլ: Լուծումն սորին, եթէ համազօրի այլում առաջարկութեան, որ ասէ՝ ոչ հարկաւոր զոք մարդ արդար գոլ. քանզի մարթի ոչ ումեք մարդումն արդար գոլ՝ ոչ հարկաւոր գոլ արդար գոլ:

Իսկ բաղհակադարձութիւն է հակադարձութիւն, որ և զորակն փոխէ և զկարգ սահմանացն. որգոն՝ եթէ մարդ՝ և կենդանի, եթէ ոչ կենդանի՝ և ոչ մարդ. այս բաղհակադարձութիւն հակադարձութիւն: Երկրորդ յեղանակ ստորադրականացն. և յորժամ զստորադրականացն բուռն հարկանիցէ, և յաղագս նորին ուսուցէ:

Արդ երկրորդ յեղանակ ստորադրականացն 'ի բաց բարձմամբ հետևեցելոց բառնայ զառաջեցեալն, եթէ ոչ կենդանի և ոչ մարդ: Իսկ առաջինն դրութեամբ յառաջեցելոյ ներածէ զհետևեցեալն, եթէ մարդ՝ և կենդանի, այլ արդ՝ մարդ, ապա ուրեմն և կենդանի: Բայց բաղհակադարձութիւն ասի. վասն զի հանդերձ որակաւն և զկարգ սահմանացն փոխէ հա-

1 Միւս օրինակ մարթի:

կադարձութ̄ ումամբ ։ Բայց այժմ յաղագս պարզ հակադարձութ̄ե է բանս ։

Երրորդ գլուխ էր՝ սահմանել զնորա զինքն՝ յաղագս որոյ բանն է, որոյ սահմանն է այսպէս. «Պարզ հակադարձութ̄ի է՝ հաղորդութ̄ի երկուց նախադասութ̄եց առաջարկութ̄եց՝ ըստ իւրաքանչիւր երկոցունց սահմանաց որակին նոյնի մնացելոյ, իսկ կարգի սահմանացն փոխեցելոց, համդերձ ճշմարտակցելովն»։ Հաղորդուի փոխանակ սեռի յարառեալ գոյ. իսկ երկուց նախադասութ̄եցն՝ 'ի սահմանս հակադարձութ̄ե. քանզի նոքա ոչ աւարտաբար [1] հաղորդին, այլ առընչեղ են. որգոն՝ հայր՝ որդւոյ հայր, և որդի՝ հօր որդի. զի յորդի հակադարձուցէ ։ Որպէս անդ 'ի յանկեցելոցն հակադարձեցաւ. որգոն՝ ոչ ոք մարդ քար, և 'ի քարէն հակադարձութիւն եղև. և կամ յորժամ համդիպի մարդոյն, յորժամ յանկմանն գտանի. իսկ այժմ որդւոյ հայր՝ ոչ ոք ասի հայր ։ Քանզի եթէ էր տիրապէս հակադարձութ̄ի և որպէս արդարև զուգադարձութ̄ի այսպէս պարտ էր հակադարձիլ որպէս և ասացաւ ։ Բայց այժմ ասեմք, որդի՝ հօր որդի. և դարձեալ 'ի բաղհաւաքմունս. վասնզի ոչ անդ հաղորդին երկու առաջարկութիւնք ըստ ամենայնութ̄ն, զորակն զնոյն պահելով, իսկ զկարգ սահմանացն փոխելով ։

Այս առարկեցաւ վասն մարթելոյն հակադարձութ̄ե, որ զորակն փոխէ, և վասն բաղհակադարձութ̄ե, այսպէս և զորակն փոխելոյ և զկարգ սահմանացն ։ Համդերձ ճշմարտակցելովն. այս առարկի, զի մի մի ոմն առաջարկութ̄եցն ճշմարիտ եղիցի, և միւսն սուտ ։ Բայց զի ոչ ասաց և սրտակցելով. վասն զի ճշմարիտքն ոչ երբէք մարտնչին ընդ միմեանս, իսկ սուտքն՝ և ճշմարտութ̄ն և խնքեանց մարտնչին. որգոն՝ ամենայն մարդ շնչէ, ճշմարիտ է ։ Արդ որք մարտնչին, են երկու առաջարկութ̄իք, ոչ ամենայն մարդ շնչէ, և ոչ ոք մարդ շնչէ. որք և միմեանց մարտնչին. և դարձեալ ոչ ամենայն մարդ գնայ. և ճշմարիտ առաջարկութ̄ես այսմիկ մարտնչին այլք

1 Միւս օրինակ օտարաբար ։

երկուք, ամենայն մարդ գնայ, և ոչ ոք մարդ գնայ. այլ և միմեանց մարտնչին, քանզի ամենայն՝ ոչ ումեքին ընդդէմ է։

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՋԻԿԱՅ

## ՊՐԱԿՔ ԺԳ

ԶՈՐՐՈՐԴ գլուխ առաջադրեցելոց՝ քանաբար ասի գոլն, և հարկաւորն, և մարթն։ Ա՛րդ գոլն երկակի է. կամ այն՝ որ զսուտ էութիւն յայտնէ, և զթարց յեղանակի առաջարկութիւնս. վասն որոց և յաղագս մեկնութեանց ճառեաց և աստ. և կամ զվճարեալ մարթն, զորմէ բուռն հարցէ յառաջագոլով խառնակութի̃նս. և զորմէ՞ արդեօք աստ զգոլոյ բուռն հարկանէ։ Ասեմք, եթէ զայնմանէ՝ որ զսուտ էութի̃ յայտնէ. քանզի ինքն իսկ հակորոշեաց զգոլն յայլոց յեղանակաց՝ ասելով, եթէ Ամենայն նախադասութի̃ կամ գոլ է, կամ մարթ, կամ հարկաւոր։ Որպէս զի ասէր, եթէ ամենայն առաջարկութի̃ կամ յեղանակաւ է, կամ թարց յեղանակի, և 'ի յաղագս մեկնութե̃ առաջարկութեան է բան. յայտնելով ինչ ումեքու̃ն գոլ, և ինչ ումեքու̃ն ոչ գոլ. զի եթէ գոլն այժմ զվճարեալ մարթն յայտնէր, թողոյր արդեօք զեղանակաւ առաջարկութի̃նս. և խորթանայլին երկոքեան իրողութի̃քն Արիստոտելի։

Յառաջիկայս որպէս ոչ ուսուցեալ զհակադարձութի̃ զգոլոյն առաջարկութե̃ցն, և յաղագս մեկնութե̃ որպէս ոչ զամենայն առաջարկութի̃ սահմանեալ, այլ եթէ գոլոյն այժմ զսուտ էութի̃ յայտնելոյ, նախ զհակադարձմունսն վճարելոյ մարթին ասէ գոլոյ, որ ուսուցէ ապա զնորա հակադարձութի̃նս։ Ասեմք եթէ եթող զայսոսիկ, որպէս պարունակեցեալս ընդ հարկաւորու̃ն։ Քանզի և

վճարեալ մարթն է հարկաւոր. ըստ այսոսիկ և նշանակութիք գոլոյն ։ Իսկ հարկաւորն, և նա զանազան գոյ. կամ յարագոյ, և կամ լինելոց. որպէս ՚ի վերայ եղիցին. եղիցի ամառն, եղիցի ձմեռն ։ Իսկ յարագոյ, կամ մշտնջենաւոր, կամ ապականելի ։ Մշտընջենաւոր՝ միշտ աստուածայինն բարի. միշտ արեգակն լուսաւոր է. միշտ հուր ջեռուցանէ. իսկ ապականելի՝ հանդերձ առորոշմամբ եղիցի. եթէ ենթակայն եղիցի, եթէ ստորոգիցելոյն եղիցի. եթէ ենթակայն, եթէ Սոկրատէս շնչէ՝ եղիցի, եթէ ստորոգելոյն, եթէ Սոկրատէս լուանի, ցորքան գոյ նըմա լուանիլն ։

Իսկ վասն որոյ արդեօք հարկաւորի այժմ տրամաճառէ ։ Ասեմք, եթէ յաղագս միշտ և նոյնպէս ունելոյն. ըստ այսոսիկ և զանազանութիք հարկաւորին ։ Իսկ մարթն, և նա եռակի. կամ ՚ի նուազն, կամ ՚ի յոլովն, կամ ՚ի հանգէտն ։ ՚Ի նուազն՝ որպէս բախտացի. քանզի պակաս ոք ՚ի փորձել ինչ եգիտ գանձ. իսկ ՚ի յոլովն՝ բնութի, և նորին նմանող՝ արհեստ. քանզի յոլով հնգամասնեան[1] առնէ բնութիւն, և արհեստ՝ յոլով համդիպի իւրում դիտաւորութեան. իսկ ՚ի հանգէտն՝ մարդկային նախառութե, քանզի ՚ի մէջ է լուանիլն և ոչ լուանիլն ։ Իսկ վասն որոյ արդեօք նշանակեցելոցս այժմու բանս ։ Իսկ ասեմք, եթէ այժմ զայն առնու՝ որ ՚ի յոլովն է. քանզի արհեստական է և կարելի, ըստ մակացութեամբ դասեալ ըստ գիտութեան ։ Ըստ այսոսիկ չորրորդ գլուխն ։

Հինգերորդ գլուխն, յորում խնդրեմք, եթէ վասն էր եթող զհակադարձութիս կարելւոյն և անկարելւոյն ։ Իսկ ասեմք եթէ զկարելւոյն եթող, որպէս պարունակեցեալս յայնցանեաց, որք մարթին գոլ. իսկ զանկարելին եթող, վասն զի հակադարձի նոյնք գոն հարկաւորին առաջարկութեցն, և բացասութիք բացասութեց ։ Վասնզի համգիտաւոր է ՚ի փոխադրութէ ստորասութի անկարելւոյն պարզութն ստորասութե հարկաւորին. որգոն՝ անկար է ոչ գոլ.

1 Միւս օրին. հնգամասնեան ։

հարկաւոր է գոլ. քանզի անկար ոչ գոլոյն՝ հարկաւոր գոլ է. և բացասութիւն բացասութեան, ոչ անկար է ոչ գոլ. ոչ հարկաւոր գոլ: Ընդ այսոսիկ և հինգերորդ գլուխն:

Վեցերորդ գլուխն, եթէ ո՛յք ոմանք են՝ որք ցուցանին[1] ՚ի ձեռն հակադարձութեանցն: Նոյն ասեմք, եթէ գիտելի. վասն զի ցուցանիւր ՚ի ձեռն հակադարձութեանդ տակաւին ՚ի վերայ գոլոյն և հարկաւորին յեղանակի՝ եթէ ընդհանուր բացասութիւն առ ինքն հակադարձի. որգոն՝ ոչ ոք մարդ քար, ոչ ոք քար մարդ: Իսկ ընդհանուր ստորասութիւն առ մասնականն. որգոն՝ ամենայն մարդ կենդանի, և իք կենդանի մարդ: Իսկ մասնական բացասութիւն՝ ոչ առ ինքն, և ոչ առ այլ. որգոն՝ ոչ ամենայն մարդ կենդանի, և ոչ ամենայն կենդանի մարդ, ոչ ճշմարտակցէ, և ոչ ստակցէ. և ոչ է հակադարձութիւն: Նոյնոքիկ ՚ի վերայ գոլոյն և հարկաւոր յեղանակին՝ այդպէս ունին, որպէս ասացաւ:

Իսկ ՚ի վերայ մարթին ստորասութիւնք նոյնպէս ունին. իք մարդ գնայ, և իք գնայն մարդ: Իսկ բացասութիւն ստորասութեան՝ ներհակաբար ունին. քանզի ընդհանուր բացասութիւն՝ որ երբեմն հակադարձիւր առ ինքն ՚ի վերայ գոլոյն, և հարկաւոր յեղանակին, այժմ ՚ի վերայ մարթին ոչ հակադարձի, և ոչ առ ինքն հակադարձի: Քանզի ընդհանուրն ՚ի վերայ մարթին նիւթոյ՝ ոչ երբէք ճշմարտէ. բայց մասնական բացասութիւն՝ որ երբեմն ոչ հակադարձիւր ՚ի վերայ գոլոյն և հարկաւոր յեղանակին, այժմ ՚ի վերայ մարթին հակադարձի. որգոն՝ ոչ ամենայն մարդ գնայ, և ոչ ամենայն գնայն մարդ:

1 Միւս օրինակ. ստուցանին:

## ԸՆԴ ԱՅՍՈՍԻԿ ՀԱՆԴԵՐՁ ԱՍՏՈՒԾՈՎ ԵՒ ԱՌԱՔԻՆԱՑ

### ԳՐԱԿՔ ԺԴ

ՄԵՆԱՑՆ նախադասութի՛ն կամ ՚ի գոլոյն է, և կամ ՚ի հարկէ գոլոյն, և կամ ՚ի մարթելոյն։ Եօթներորդ գլուխ՝ զի՞նչ է կարգ հակադարձութեցն. որոց այսպէս և ըստ այսմ օրինակի ճանաչի կարգ։ Նախադասեաց զգոլն յառաջ քան զհարկաւորն և զմարթն, որպէս զառանց յեղանակի, այնոցիկ՝ որք յեղանակի են. իսկ զհարկաւորն քան զմարթն. վասն զի և միշտ և նոյնպէս ունի ըստ հակադարձութեցն գոլուածն։ Դարձեալ ՚ի հակադարձութիւն յայտնիկ յառաջագոյն դասեաց զընդհանուր բացասութիւն քան զընդհանուր ստորասութի. ոչ միայն զի հակադարձի, և առ ինքն հակադարձի, այլ և զի պիտանի է հակադարձութի նորա այլոցն հակադարձութեց։ Իսկ զընդհանուր ստորասութի յառաջագոյն դասեաց քան զմասնական ստորասութի. թէպէտ և գնա պարտ էր յառաջագոյն դասել. ոչ որպէս առ ինքն հակադարձելով, այլ որպէս հանուր քան զմասնական։ Իսկ զստորասութի յառաջագոյն դասեաց քան զմասնական բացասութի. վասն զի մասնական բացասութի ամենևին ոչ հակադարձի ՚ի վերայ գոլոյն և հարկաւոր յեղանակին։ Սոյն որս և է եօթներորդ գլուխն։ Ութերորդ գլուխ՝ տարակուսանք ոմանք։ Նախ՝ եթէ զի՞արդ ասես, ով Արիստոտէլ, եթէ ընդհանուր բացասութի առ ինքն հակադարձի. քանզի ՚ի բազում իրս ոչ այդպէս գտանեմք. որգոն՝ զի թէ ոչ մի դդում զդանակ հատանէ, և ոչ մի դանակ զդդումն հատանէ. և եթէ ոչ որմ ՚ի ցցում է, և ոչ ցից յորմում է. և եթէ ոչ մի կարաս ՚ի գինւոջ, և ոչ մի գինի ՚ի կարասում։ Արդ այսո-

քիկ ամենայն հակադարձութիւնք բացասութիւնք գոն առ ինքն հակադարձելոյ, և պարտ էր ճշմարտակցել, սակայն ոչ ճշմարտակցին։ Այլք երեք տարակուսանք. որոց մի լուծումն է այս, եթէ ոչ է ողջաբար բոլոր ստորոգիցելոյն. քանզի պարտ էր ասել այսպէս, ոչ մի դդում գդանակ հատանէ, և ոչ մի ինչ՝ որ գդանակն հատանէ՝ դդում է. այլ կամ խարտոց է, և կամ այլ ինչ այսպիսի։ Նաև դարձեալ՝ վասն զի և ոչ մի որմ 'ի ցցում է, և ոչ ինչ որ 'ի ցցում է՝ որմ է, այլ չուան է, և կամ պարան. և վասն զի ոչ մի կարաս 'ի գինւոջ, և ոչ ինչ որ 'ի գինւոջ՝ կարաս է, այլ հատիճ, և կամ Թին է։

Բայց տարակուսի և այլ տարակուսանս. եթէ վասն զի ոչ կենդանին՝ ոչ մարդ, ոչ մարդն՝ ոչ կենդանի, ձի և կամ եզն։ Այլ տարակուսանք. եթէ վասն զի ոչ մի գոյացութիւն 'ի սպիտակութեան, այն ինչ և ոչ մի սպիտակ[1] 'ի գոյացութեան. և ո՞ւմ արդեօք ստորոգեսցի սպիտակն, և կամ յո՞ւմ ենթակայցէ, եթէ ոչ 'ի գոյացութեան։ Երրորդ տարակուսութիւն այսպէս. որ ոչ է 'ի տեղւոջ՝ ոչ կայ, և ոչ կացեալն՝ ոչ է 'ի տեղւոջ։ Նա և զիա՞րդ է այս ճշմարիտ, եթէ համադիպի գնալով։ Լուծումն այսոցիկ մի։ Առաջնոյն, եթէ ոչ է պարտ զուրացականն 'ի հակադարձութեան առմերձիլ 'ի ենթակայութիւն, և ընդհանուր կիտացն պատշաճելով. քանզի յորժամ ուրացութիւն առնիցի, և ենթակային և ստորոգելոյն, պարտ է զերկուս ուրացութիւնս ստորոգելում առմերձիլ։ Որգոն՝ ոչ կենդանին՝ ոչ մարդ, իսկ ոչ մարդն՝ ոչ կենդանի. քանզի ուրացութիւնք զմիմեանս 'ի բաց բառնալով մի ստորասութիւն առնեն. ոչ ոչ կենդանի, այլ կենդանի։ Դարձեալ որ ոչ է 'ի տեղւոջ՝ ոչ կայ, և որ ոչն կայ՝ ոչ 'ի տեղւոջ է. և դարձեալ՝ ոչ մի գոյացութիւն յորակութեան, այս արդէն իսկ սուտ. քանզի է յորակութեան գոյացութիւն, թէպէտ և բնազանցաբար։ Քանզի երկակի է ստորոգութիւն, մին ըստ բնութեան, իսկ միւսն բնազանցաբար։ Ըստ բնութեան, յորժամ հանուրքն մասնականացն, և պատահմունք գոյացութեանց

1 Միւս օրինակ փոխէ։

ստորոգելին ։ Իսկ բնազանցաբար՝ յորժամ մասնականքն ընդհանուրցն, և գոյացութիք պատահմանց ստորոգելին ։

Բայց տարակուսեն և առ ընդհանրումն ստորասութի այսպէս . եթէ զիա՞րդ ասի ընդհանուր ստորասութիւն առ մասնական ստորասութի հակադարձիլ . քանզի եթէ այս ճշմարիտ՝ տարակուսեսցի ոք արդեօք այսպէս ։ Եթէ վասն զի ամենայն որ կին գոյ՝ կոյս էր ; և որ կոյս գոլով՝ կին էր . և վասն զի ամենայն աւագ՝ մանուկ էր, և որ մանուկ՝ աւագ էր ։ Լուծումն նորա ։ Թէ և ոչ աստ ողջաբար առաւ ստորոգելոցն 'ի հակադարձիլն . Ամենայն կին՝ կոյս էր . քանզի պարտ էր այսպէս հակադարձել . ամենայն կին կոյս էր, և որ կոյս գոլով յառաջին՝ կին է . և ամենայն աւագ՝ մանուկ էր, և որ մանուկ գոլով յառաջին՝ աւագ է ։

Տարակուսեն և այլ տարակուսանս այսպէս . եթէ զիա՞րդ ասէ, եթէ մասնական բացասութի ոչ հակադարձի՝ ոչ առ ինքն և ոչ առ այլ, զի ոչ հակադարձի առ հանուր ստորասութի, որպէս ընդհանուր ստորասութի առ մասնական ստորասութի . որգոն՝ որպէս յորժամ ասէ ոք, ոչ ամենայն կենդանի՝ մարդ, ամենայն մարդ՝ կենդանի ։ Լուծումն այսորիկ ։ Եթէ ոչ մնաց նոյն որակ . քանզի ոմն յառաջարկութեցդ ստորասական է, իսկ ոմն բացասական, զոր ոչ պարտ է ունել պարզ հակադարձութե . քանզի որակ միշտ զնոյն պահէ, բայց միայն զկարգ սահմանացն փոխէ ։

ՅԱՂԱԳՍ

ՔԵՐԱԿԱՆԻՆ ՊԱՏՃԱՌ

# ԴԱՒԻԹԻ ՓԻԼԻՍՈՓԱՅԻ

ԱՍԱՑԵԱԼ

Քերականութեան արուեստ յարտաքնոցն է. վասն զի և նոքա մեծաւ ջանիւ ինքնեին առին զընտրութի ձայնից և բայից և բառից և կոկորդիւ խօսից, և թէ ո՛յք են աւետեաց ձայնք, և ո՛յք ողբերգականք, աւաղականք, աշխարականք, հեգնականք, հաւտատականք, յանձնառականք, հրաժարականք։ Քանզի 'ի յայլայլեալ բնութեա՛ն՝ ընդ նմին խանգարեցաւ բանականութեան շնորհն. մանաւանդ 'ի բաժանել լեզուացն՝ շփոթեցաւ ամենայն բանին յարմարութիւք. այլ այնք՝ որ 'ի խնդիր ելին, ոչ թէ մի ոք, կամ 'ի միում ազգի, կամ 'ի միում ժամանակի, բայց թէ 'ի բազումս և յամենայն ազգս յերկար ժամանակս։ Իսկ յորժամ գտեալ եղև. այսպէս՝ ոմն զբայ, ոմն զբառ, ոմն զանուն, ոմն զբան, ոմն զթուական, ոմն զդասական, ոմն զերաժշտական, ոմն զաստեղագիտական, ոմն զերկրաչափականն, և այլ ոմն զայլ ինչ, և այլ ոմն զայլ, զոր ոչ է դիւրաւ թուել. և ապա սովորեցին բանիւ կրթիլ, զի և ոչ էր գիր։ Իսկ դարձեալ սկսաւ ապականութիւն լինել գտեալ արուեստիցն։

Ապա հնարեցան ոմանք գիր առնել, զոր և արարեալ գրեցին զուսուցեալ ուսումն, որք և անուանեցան գիրթողք։ Դարձեալ և այսոցիկ եղև խանգարիլ, և այլ ընդ այլոյ լինել. վասն զի բազումք ջանա-

ցան առանց աշխատելոյ յուսմունս միայն լինել դիւրաւ իմաստասէրք և հանճարեղ: Ապա ազդմամբ Աստուծոյ ոմանք հնարեցան զայս իրողութի, զոր և քերական անուանեցին. զի որք կամիցին գոլ ինչ, այս օրինակ կրթութեն և ընթերցման պարապեալ հազիւ թէ հասու լինիցին գրելոյն: Եւ սկիզբն է սորա այսպէս:

Քերականութիւն է հմտութիւն ՚ի բուն իմաստնոցն յայտնեալ և շարագրեալ: Եւ մասունք են նորա վեց: Առաջին վերծանութի. է արուեստ, թէ որպէս ներկուռ, այս ինքն յիւր մտացն ընտրել զարուեստն: Երկրորդ զրուցատրութի ներգոյս. այս ինքն յստակ և քերեալ զկարգ յեղանակին: Երրորդ թէ որպէս լեզուաց թարգմանութե մարթ է զհին պատմութին կամ զնորն իմանալ. որ և բացատրութիւն կոչի: Չորրորդ թէ որպէս ստուգաբանութի իմացուք ճշգրտիւ: Հինգերորդ թէ որպէս զհամեմատութի իրաց զինչ և իցէ մարթասցուք ճանաչել: Վեցերորդ թէ որպէս է մարթ քննել զիմաստնոցն քերթածսն, զի և որք յիմաստասիրութե են՝ առաւել սա է օգուտ:

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

## ԹՈՒՂԹՔ

# ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

## ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

## ԹՈՒՂԹ

## ԱՌ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ ԹԱԳԱՒՈՐ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՑԱՂԱԳՍ ԱՇԽԱՐՀԻ

ԻՍԿ բազում անգամ ինձ աստուածային ինչ և բարեբախտեալ ճշմարտապէս իր, ով Աղեքսանդրէ, գոլ թուեցաւ իմաստասիրութիւն. և մանաւանդ այնոքիւք՝ որովք միայն բարձրացեալ առ 'ի տեսութին բոլորիցն փութացաւ գիտել զիրսն ճշմարտութին. և այլոցն 'ի նմանէ հեռանալով վասն՝ բարձրութն և մեծութն նորին, նա յիրէն ոչ վեհերեաց, և ոչ զանձն գեղեցկագունին անարժան արար, այլ և սրբազանագոյն իւր և վայելչական մանաւանդ կարծեաց զուսումն նոցունց:

Այլ քանզի ոչ էր հնար մարմնով յերկնայինն հասանել տեղի, և զերկիր թողլով զսրբազանն զայն վայր տեսանել, որպէս Աւաղադացիք անիմաստքն երբեմն մտածեցին, իմաստասիրութի առեալ զմիտսն առաջնորդ՝ անցեալ եղև և հասեալ առանց աշխատութե գտեալ ճանապարհ. և զյոլովագոյնն 'ի միմեանց հեռացեալսն տեղեօք, տրամախոհութն եբեր 'ի միասին դիւրաքար: Կարծեմ եթէ զազգակիցսն ճանաչելով, և աստուածային ակամբ հոգւոյ յաստուածային իրսն հասանելով, և յառաջախօս լինելով մարդկան զայս ինչ իրաց. և որչափ հնար ինչ էր՝ առ յին-

քննէ ամենեցուն առաւատապէս եւս զպատուականա-գունիցն ցոյցս ։

Նա զի և այնոքիկ, որ փութացան գրել մեզ զմիոյ տեղւոյ բնութիւն, կամ զմիոյ քաղաքի զձև, կամ զգետոց մեծութիւն, կամ զլերին գեղեցկութիւն, իբրու աւասիկ արարին ոմանք, արտայայտեալ ոմանք զՆաւս քաղաք, և ոմանք զՆաւս լեառն, և միւսք զայրն Կորիկեան, և այլք զորս ինչ պատահեցաւ 'ի մասնականացն [1], որք ցանկալի և մեծախոհս կարծէին լինել 'ի փոքր տեսութիւնս և 'ի սակաւ հոգացողութիւն գիտուն ։ Նու զայս կրէին՝ վասն զի անփորձք էին լաւագունիցն, աշխարհի ասեմ և որ 'ի սմա են մեծագունիցն. զի ոչ երբէք սոցունց մակացու լեալք հարազատապէս, վասն այսր ընդ այլս ոմանս լինէին սքանչեցեալք ։ Այլ ամենայն ինչ յայլոցն առ սմա փոքր լինի երևեալ, և ոչ միոյ իրի արժանի առ մեծութիւն սորին ։ Յաղագս որոյ ասասցուք մեք որչափ և հաւանելի է մեզ, և աստուածաբանեսցուք յաղագս նորին, և որոց ընդ նմին ամենայնի, որպ իւրաքանչիւր ինչ բնութիւն ունի և դրութիւն և շարժութիւն. իբր զի կարծեմ՝ թէ քեզ իսկ վայել է ազնուեաց արիագունիդ զպատմութիւնս՝ որ վասն այդոցիկ է՝ գիտել, և զիմաստասիրութիւն ոչ փոքր ինչ կարծել, այլ այսպիսի ձրիւք զարիագոյնսն յաջորդել ։

Արդ աշխարհ է բաղկացութիւն յերկնէ և յերկրէ, և որ 'ի մէջ սոցունց պար առեալ են զմիմեանց բնութիւնք. այսպէս աշխարհ ասացեալ լինի բոլորից կարգաւորութիւն իսկ և զարդարութիւն՝ Աստուծով իսկ և 'ի ձեռն Աստուծոյ պահեալ ։ Սորա որ 'ի մէջն է, անշարժ և հաստատուն գոլով, կենսաբեր երկիրս, որ և պատահեաց ամենատեսակ կենդանեաց տուն լինել և մայր ։ Իսկ վերհագոյնն սորին՝ ամենեւին և յամենայն կողմանէ աւարտեալ 'ի բարձրագոյնսն՝ երկինս լինի անուանեալ, լի գոլով աստուածային մարմնովք, զորս աստեղք սովոր եմք կոչել. շարժելով երկնի շարժութիւն մշտնջենաւոր միով շրջաբերութք, և բոլորեալ ընդ նմին պարակիցք լինին ամենայն այսո-

1 Այլ օրին. 'ի մասնակացն ։

քին տարերքս անդադարապէս յաւիտեանս ։ Ամենայն աշխարհի ընդ նմին իսկ ընդ երկնի գնտաձեւակ գոլով և շարժելով, որպէս ասացի , միապէս , երկու հարկաւորապէս հանդէպ միմեանց անշարժ են կէտք որպէս 'ի Ճախարակի ․ շրջաբերեալ բոլորի՝ յոր յարակայեալ շուրջ շրջանակի բոլորն ․ և 'ի սոսա ամենայնի հաստատեալ է չափաւորութի ։ Այս իսկ արդ յաշխարհ բոլորակի[1] շրջեալ լինի այն որ կոչեցեալն է երկիրն ․ որում իմանամք համանմանս , զոր ոմանք սռնակ կոչեն ․ ուղիղն համաչափ իցէ աշխարհի , իսկ բոլորակն՝ որ փնովաւ շրջի՝ երկնի ․ այս ինքն մէջ ունելով զերկիր , և ծագք զերկրորդն երկին ։ Արդ յայսմիկ յանշարժ յերկու կէտիցս մինն հանապազ յայտնի է վերոյ գագաթան կալով ըստ հիւսիսային վայրին՝ հիւսիսական կոչեցեալ , և միւսն ընդ երկրաւ միշտ թագուցեալ լինի ըստ հարաւային վայրին՝ դերհիւսիսական ասացեալ ։

Իսկ արդ երկնի և աստեղաց գոյացութի զեթերն կոչեմք , ոչ որպէս ոմանք՝ վասն հրատեսակ լինելոյն կիզական գոլ զնա ասացին՝ սղալելով առ յոլով իրօք ․ 'ի հրոյ ազատեալ[2] զօրութի ․ այլ վասն միշտ ընթանալոյն բոլորակի բերմամբ՝ տարր գոլ զնա այլ , բայց 'ի չորիցն , անապական և աստուածային իսկ ։

Բայց սակայն 'ի պարունակեալ աստեղացն , անմոլարքն ամենայն ընդ նմին ընդ երկնի շրջաբերեալ լինին 'ի նոյնն ունելով զհաստատութի ․ 'ի մէջ յորոց կենդանատեսակքն կոչեցեալ բոլորապէս ընդկողմնեալ[3] 'ի ձեռն յեղեղմանն տեսեալ լինին ըստ մասին ։ Այս բաժանեալ լինին 'ի վայրս երկոտասան կենդանիքն ․ բայց մոլորակքն ոչ նոցին յառաջագունիցն համընթաց շարժիլ բնաւորեալ են , և ոչ իրերաց ․ այլ յայլ և յայլ վայրս 'ի բոլորէն շրջին , իբրու թէ միոյն մերձ յերկիր գոլով և միւսոյն վերագոյն ։

Արդ անմոլարիցն բազմութի անգիտելի է մարդկան , թէպէտ և առ միում մակերեւութեանն՝ շար-

1 Երկք նոր օրին․ աշխարհ բոլորակի ։

2 Մի օրին․ զատեալ ։

3 Մի օրին․ ընդկողմեալ … յեղմանն ։

ժեալ ամենայնին ընդ նմին երկնի ։ Իսկ մոլորակացն առ եւթն մասն գլխաւորին, յայսպիսի բոլորս ըստ կարգի կալով իբրու թէ միշտ վերագոյնն մեծ իցէ քան զստորնագոյնն եւթանցն պարունակեալ, և ամենեցուն ընդ անմոլարիցն պարառողի գնտաձև կալով, և շարունակ ունելով միշտ զդրութի այսպէս ։ Վերնագոյնն Երեւակն համանգամայն և Կռոնոսի կոչեցեալ բոլոր ․ և յետ այնմիկ Փայիթոն՝ և Արամազդայ ասացեալ ․ ապա Հրատն՝ Հերակլեայ իսկ և Արեսի ասացեալն ․ ապա Փայլածուն, զոր տաճար Երմեսի կոչեն ոմանք, և այլք Ապողոնի ․ յետ որոյ Լուսաբերին, զոր ոմանք Ափրոդիտեայ, և այլք Երմեայ[1] անուանեն ․ ապա Արեգակն, և 'ի վախճանին Լուսինն մինչև յերկիր լինի սահմանեալ ։

Իսկ եթերն զայսոսիկ աստուածայինս պարառեալ լինի մարմինս ․ և յետ եթերային և աստուածային բնութեն, զոր կարգեալ բացատեմք միշտ անփոփոխելի և անայլայլելի և անախտ, շարունակի բոլորովին ախտացեալն և փոփոխեալն ․ ընդ նմին ասել և զամենայնն ապականացուն և մահացուն ։ Սորինդ այդմիկ նախ առաջին է անօսրամասն և բացատեսակ գոյացութիւնն, յեթերային բնութէ հրացեալն, վասն մեծութե նորին և երագութե շարժութեն ։

Այլ 'ի հրատեսակն և ապականացու տարրն ասացեալ՝ ճաճանչքն ցոլացեալ լինին[2], և բոցքն ոստուցեալ 'ի նմա լինին ․ և նիզքն և խորափիտքն և գիսաւոր ասացեալքն հաստատեալ լինին, և շիջուցեալ բազում անգամ ։ Եւ 'ի կարգի սորա օդն է հեղեալ խաւարչտին գոլով և սառնային բնութե ․ այլ ընդ վերնաձև փայլեալ համանգամայն և բորբոքեալ պայծառ և գեղեցկագոյն[3] լինի ։ Իսկ սորա կրական գոլով զօրութե և ամենապէս այլայլական, յոր և ամպք բաղկացեալ լինին և անձրևք հոսեալք, նոյնպէս և ձիւնաբերք և եղեմունք և կարկուտք, շունչք հողմոց ամբուռուցից[4], և որոտմունք և փայլատակմունք

1 Յոյնն Հէրայ ։

2 Յօրինակն ասացեալ լինին ․ և-գաւ ըստ յունին ։

3 Յոյնն Էղչագոյն ։

4 Մի օրին ․ ամբռուռից ։

և գլորմունք ամպահարութեց, և մրգաց և մառախղաց խառնակմունք ։ Իսկ յետ օդային բնութե՟ ծով և երկիր կառուցեալ է տնկովք ճոխացեալ և կենդանեօք, աղբերօք և գետովք, ոմանց յերկիր ծաւալելով, և այլոց 'ի ծով բղխելով ։ Սա զանազանեալ է և տեղովք բազմօք և լերամբք բազմազունովք [1] և խառածառ անտառովք և քաղաքօք, որ յիմաստուն կենդանւոյն 'ի մարդոյն եղև հաստատեալ, կղզովք 'ի ծովու, և 'ի ցամաք ծովօք ։

Արդ զբնաւ տիեզերս հասարակաց բանն 'ի կղզիս և 'ի ցամաք գիտէ բաժանել. ոչ գիտելով թէ համանգամայն ամ՟ մի կղզի է՝ ատլանդական [2] անուանեալ ծովովն շրջահոսեալ ։ Սայելչական է արդեօք կարծել՝ թէ և այլք բազումք յանդիման սորա յայնկոյս զետեղեալ իցեն կղզիք՝ ոմանք մեծագոյն քան զսա, և ոմանք փոքրագոյն, այլ մեզ ամ՟ն բաց 'ի սմանէ անտես են ։ Քանզի զոր ինչ առ մեզ կղզիքս առ այսմիկ խորոց ծովուց հանդիպեալ են, կրեալ զայս ինչ և տիեզերս առ այն ծով ատլանդական ։ Քանզի բազումք են յամենայն ծով կղզիք, և մեծքն 'ի նոցանէ մեծովք շրջանակի ղօղեալ են ծովօք, ըստ որս և տիեզերս . քանզի գիճային բնութ՟ ջուրցն առ ոմամբք տեղօք յոյժ ծովացեալ և յինքեան ժողովեալ երևեցոյց զանուանեալս տիեզերք ։ Եւ 'ի կարգի իցէ թերևս ըստ օդային բնութ՟ն ջուրն. և յետ այնմիկ առխորմն 'ի միջագոյնումն կառուցեալ երկիր ամենայն, և հաստատեալ բաղկացութ՟ կայ և մնայ անշարժ ։ Եւ այս ինչ է աշխարհի ամենայն՝ զոր կոչեմք ստորին ։

Այլ հինգ տարերքս այսոքիկ առ հինգ վայրս գնդապէս կալով պարունակեալ լինի միշտ փոքրագոյնն առ 'ի մեծագունէն. որպէս ասեմ աւասիկ՝ երկիր 'ի ջրոյ, ջուր յօդոյ, օդ 'ի հրոյ, հուր յեթերէ, որով բոլոր աշխարհս բաղկացեալ եղև, և զբոլոր վայրն՝ Աստուածոց եցոյց բանս՝ բնակարան, և զստորինս՝ առօրեայ կենդանեաց ։ Եւ սորին որ ստորինս, է ինչ մասն գէճ՝ զորս գետս և ծովս սովոր եմք կո-

1 Երկու օրին. բազմագունիւք ։ Ցոյնն բարձրագունիւք ։

2 Երկու օրին. անդնդական. և այլ երեք անդնդական ։

չեւ, և մասն ինչ չոր՝ զոր ցամաք և կղզիս անուանեմք։ Իսկ 'ի կղզեացն ոմանք մեծագոյնք են, որպէս զամենայն տիեզերաց եղև ասացեալ, և են քաղաքք և այլք մեծագոյնք ծովք շրջահոսեալք [1]. և այլք են փոքրագոյնք. որք յայտնիք են մեզ 'ի ստորինս գոլով։ Իսկ 'ի սոցունց արժանաւորք են բանի Սիկիլիա, և Սարդոն, և Կիւռնոս, և Կրիտէ, և Եւբէա, և Կիւպրոս և Լեզբոս. իսկ նուազագոյնքն՝ յոմանց Սփիւռեն կոչեցեալ, և յոմանց Բոլոր կղզիք, և ոմանք այլպէս գիտեն անուանել։

Իսկ ծովն այն որ արտաքոյ բնակութեան տեղոյս տիեզերաց՝ ատլանդական լինի կոչեալ. և այս որ շուրջ զմեօք հոսեալ՝ ովկիանոս։ Նա է 'ի ներքոյ սորա առ մուտս արևու նեղ ինչ բերան բացեալ հուպ ասացելոց Հերակլեան արձանացն, ընդ որ արտաքս հոսի ներքինս ծով յանդրլընդական ծովէն. և սա արտաքս եկեալ 'ի նմանէ ու փոքուն լայնացեալ, և առ սակաւ սակաւ ընդարձակեալ պար առնու 'ի ծոց իւր զգաւառս մեծագոյնս. և ինքն շարամերձի առ ինքեան՝ երբեմն ըստ նեղ գնացից 'ի պարանոցս դարձեալ, և վերստին դարձեալ անդորրացեալ լայնութբ։

Արդ նախ ասացեալ լինի՝ ծոց առնուլ յաջակողմն Հերակլեան արձանացն, և զարձանսն երկաթի թողլով ուր ասացաք գոլ զՀոսանս. յորոց զմին ծոցն մեծ կոչեն, և զմիւսն փոքր. վասն զի երկաքանչիւր կողմանքն ոչ նմանապէս խորանան։ Աւատի և երիս առնի ծովս խորինս, Սարդոնականն, իսկ և զԳաղատականն ասացեալ. և յետ սոցունց կողմանն ելով զՍիկիլէականն, և յետ այսորիկ զԿրետականն, և շարունակեալ ընդ նմա զԵգիպտականն իսկ և զՊամփիւլեանն և զՍորեստանեայն. յետ որոց և Եգիականն է և Միւրտաւականն։ Նոյն հանդէպ ասացելոցն բազմամամնագոյն ջրոցս յարակայեալ գոլով Պոնտոս, որոյ խորագոյնն կոչեցեալ լինի Մեաւտիս. իսկ և արտաքինն առ Եղեսպոնտոս [2] ընդ նովաւ կցեալ լինի, զոր անուանեն Պրոպոնտոս։

1 Մի օրին. Ջրահոսեալք. իսկ 'ի լուսանցսն համաձայն այլոց։

2 Զորք օրինակք առ Եւլէսպոնտոս. և այլ նոր առ Եւլէսպոնտոս ... և նմանապէս կոչեալ առ Պրոպոնտոս։

Սակայն առ ելս արեւու դարձեալ ծփեալ Ովկիանոս, և զհնդկականն և զպարսկականն բացեալ ծոց երեւեալ լինի, և շարունակեալ ըմբռնեալ լինի ըդծոցն կարմիր: Իսկ միւս եղջիւրն դարձեալ ընդ նեղ և ընդ երկայնաձիգ անցանելով պարանոց, և դարձեալ վերստին լայնանայ զԻւրկանիական և զԿասպիականն սահմանեալ, և վերագոյնն քան զայսոսիկ յոյժ խորագոյն գոլով մերձ Մէոտական լճին լինի ըստ տեղեաց զետեղեալ: Ապա ըստ սակաւու պատելով զՍկիւթք և զՍկիլէացիք՝ պարփակէ զտիեզերս առ գաղատական ծոցոյն առասացեալ Հերակլեան արձանովքն՝ ընդ որ արտաքս հոսեալ լինի Ովկիանոս:

Սակայն աստանօր 'ի սմա կղզիք մեծամեծք եղեն համադիպեալ երկու Բրիտեանքն անուանեալք, և Աղբիոն և Վերնիա քան զյառաջագոյն պատմագրեալսն մեծագոյն տրամակայեալք վերագոյն Կեղտոսաց են, և փոքրագոյն քան զնոսա Տապրովանէ[1] յայնկոյս Հնդկաց զետեղեալ, և Փոբեայ կոչեցեալն տրամակայեալն 'ի ծոց յԱրաբիայն, և այլք ոչ սակաւք շուրջ զԲրետականովքն և զՎրօք պարփակեալ լինին կղզիք:

Այլ զտիեզերաց՝ զոր կղզի ասացաք 'ի խորուն ծովու՝ ցամաքային լայնութիւն է սուղ ինչ պակաս՝ ունելով չորս բիւրս ստադիոն՝ որպէս ասացին քաջ երկրագրողքն, և երկայնութիւն բիւրս եւթն: Եւ բաժանեալ լինի յԵւրոպէ՝ յԱսիա և 'ի Լիբիա: Իսկ Եւրոպէ է՝ որոյ սահմանքն շրջանակաւ այս են. արձանքն Հերակլեայ և խորքն Պոնտոսի և ծովն Իւրկանեայ, յորմէ նեղագոյն պարանոց ինչ 'ի Պոնտոս անցանէ, զոր ոմանք Տանաւիս գետ ասացին: Իսկ Ասիա է յասացեալ պարանոցէդ Պոնտոսի և Իւրկանեայ ծովուն մինչև ցմիւս պարանոցն՝ որ 'ի մէջ է տրամակայեալ արաբիական ծոցոյն և ներքին ծովուն՝ պարունակեալ առ 'ի սմանէ իսկ և առ 'ի յՈվկիանոսէ՝ որ ընդ ամենայնիւ շուրջ է. բայց ոմանք 'ի Տանաւիս գետոյ մինչև ցելսն Նեղոսի դնեն զսահ-

1 Այլ օրինակք Գրովանէ:

մանս Ասիոյ ։ Իսկ Լիբիա է առեալ յարաբիական պարանոցէն մինչև ցՎերակլեան արձանքն․ և այլք ասեն ՚ի Նեղոսէ մինչև ցնոյն արձանսն ։ Այլ զԵգիպտոս, առ ՚ի յեւլոյն Նեղոսի շրջահոսեալ․ ոմանք ՚ի յԱսիա, և ոմանք ՚ի Լիբիա շարադասեն ։ Այլ զկղզիսն ոմանք առանձինն առնեն, և ոմանք մերձաւոր մասանցն բաշխեն ։ Արդ զերկրի և զծովու զձևութիւն և զդրութիւն, զորս տիեզերս սովոր եմք կոչել, ընդ այսպիսով եղաք պատմութեամբ ։

Իսկ յաղագս այսոցիկ որ ՚ի սմա են ասացուածի արժանագունիցն, և որ ՚ի նոսա են կրից՝ գլխօրէնս հարկաւորաբար այժմիկ ասասցուք ։ Քանզի երկու ոմանք գոլորշիք ՚ի սմանէ վերաբերեալ լինին շարունակապէս․ զեր ՚ի վերոյ մեր օդն անօսրագոյն է և ամենևին անտես, եթէ ոչ ՚ի սաստկութէ ուսմանէ երևեալ լիցի․ իսկ այն որ ՚ի ջրոյ և ՚ի գետոյ վերաբերեալ լինի, ընդ տեսուք ստորանկանի ։ ՚Ի սոցունց մինն չոր է և ծխատեսակ յերկրէ ՚ի վեր հոսեալ, իսկ միւսն խոնաւագոյն ՚ի գէճմունէն ՚ի վեր ծխեալ ։ Այլ ՚ի սմանէ լեալ լինին մառախուղք և սառնամանեաց տեսակք և ամպք իսկ, և ձիւնաբերք և կարկուտք ։ Իսկ ՚ի չորոցն հողմունք և հնչմունք զանազանք, որոտմունք և փայլատակմունք, կիզմունք և ամպահարութիւնք, և այլ որ ինչ ընտանակից է սոցունց ։

Իսկ մառախուղ է խոնաւ գոլորշի անծննդական ջրոյ քան զօդ թանձրագոյն և քան զամպ անօսրագոյն․ և հակամարտ սոյա ասացեալ լինի պարզութի․ այլ ոչ ինչ գոլով, բայց միայն օդ առանց ամպոյ և մառախղի ։ Այլ ցօղ է գիճութի ՚ի պարզոյ բերեալ ըստ անօսր բաղկացուէ․ և սառն է յոլովութի ջրոյ պաղեալ ՚ի պարզոյ․ և եղեամն է ցօղ թերասառոյց․ և ամպ է թանձրութի գոլորշատեսակ՝ թաղկեալ ծննդական ջրոյ ։ Այլ անձրև լեալ լինի ՚ի թօթափմանէ ամպոյ քաջ մանաւանդ թանձրացելոյ, և զանազանութի ունի որչափ և ամպոյն պակասութի․ քանզի չափաւոր գոլով կակղագոյն շիթք սերմանէ․ և ուժգնագոյն՝ կարծրագոյնս, որ և տեղումն լինի կոչեցեալ․ և տեղումն է, որ ունի քան զանձրև շիթք ջաղջագոյն՝ ստէպ թօթափմամբ բերեալ ՚ի վերայ երկրի ։ Այլ

ձիւն լինի 'ի թանձրացեալ ամպոց բեկմանէ, նախասառոյց ջուրն, 'ի փափոխմանէն հատուածն առեալ. և գործեալ լինի հատուածն փրփրատեսակ և սպիտակագոյն, և կառուցեալ 'ի ցրտութենէն գիճագոյնն առ 'ի յոչ հեղուլ, այլ անգայտացեալ. վասն որոյ և այնպիսին յաճախ 'ի վայր բերեալ ձիւնաբեր եղև անուանեալ։ Նոյն կարկուտ լինի ըստ ձիւնաբերին, դառնալով 'ի թաղկմանէ անգայտութե՟ 'ի սերտութի՟, և 'ի ստորաբերելն վասն թանձրուե՟ 'ի բաց պատառեալ բեկանի. և ըստ չափոյ թանձրութեան լինի և մեծութիւնն, և բերմունքն լեալ լինին բոլորագոյն։

Որք այսոքիկ 'ի գէճ գոլորշոյն բնաւորեալ են արտաքս անկանել. իսկ չորն 'ի ցրտումն վանելով յարտաքս հոսմանէն՝ հողմ եղև. քանզի սա այլ ոչ ինչ է, բայց բազում օդ ուժգին և յոլովակի հոսեալ, որ և համանգամայն շունչ լինի անուանեալ։ Բայց կոչեցեալ լինի և այլ ինչ շունչ, որ 'ի տնկականս և 'ի կենդանիսն, և յամենայնի՝ որ շնչաւոր է և ծննդականն ըստ թափ անցանելով. յաղագս որոյ և այժմիկ ասել ոչ է հարկաւոր։ Նոյն զայն՝ որ ընդ եթերն շնչեն շունչքն 'ի չորոյն՝ հողմն կոչեմք, իսկ օդ՝ զառ 'ի գիճոյն բերեալ արտաշնչութիւնքն։ Նոյն յօդոց, որ 'ի գիճացեալ երկրէ շնչեալք լինին՝ գետնայինք լինին ասացեալք, իսկ որք 'ի ծովային ծոցոյ լինին ոստուցեալք՝ ներծովայինք, առ որովք համեմատութի՟ ինչ ունին՝ որք 'ի գետոց և 'ի նաւաքաշխից շնչեալ լինին։ Նոյն որք 'ի պատառմանէ ամպոյ 'ի վերլուծութեան թանձրուէ յինքեանս յաւելուն՝ ամպայինք լինին կոչեցեալ. և որ հանդերձ ջրով յանկարծակի պատառեալ լինին՝ ջրային լինին կոչեցեալք։ Նոյն որք յարևելից եղեալ լինին շարունակք՝ եւրոսք կոչին, և վոռէք՝ որ 'ի հիւսիսոյ շնչեն. զեփիւռք՝ որ 'ի մտից արևու, և նոտոսք՝ որ 'ի միջօրէայէ։

Նոյն սակայն եւրոսացն՝ այն որ յամառնային յեղանակն յելեն արևու շնչեալ լինի՝ կէկիաս կոչի. և որ 'ի հասարակօրին արևելեանն՝ ապելիոտ կոչի. և որ 'ի ձմեռն արևելեանն շնչեալ լինի՝ եւրոս կոչի. և ներհակք նոցունց զեփիւռք լինին ասացեալ։ Նոյն արգես-

տես կոչի՝ որ յամառնմն յարեւմտեն շնչէ, զոր և ողիմ
բիաս կոչեմք, և այլք յապիւգա կոչեն. և որ 'ի հա-
սարակօրին յարեւմտէն ելանէ՝ զեփիւռոս կոչեն. և
որ 'ի ձմեռանմն յարեւմտէն ելանէ՝ կոչեալ լինի լիփս:
Նոյնպէս և վօռէիցն՝ այն որ մերձ կիկիասայ ելանէ՝
յատուկ վօռէաս կոչի. և ապարքտիաս՝ որ 'ի կարգին
է յինքնին 'ի Սայլէն իսկ հնչեալ և 'ի հիւսիսային
մէջօրէին [1], և Թրասկիաս լինի ասացեալ՝ որ ընԹեր է
արգեստեսի, զոր ոմանք և կիկիաս կոչեն: Նոյն 'ի
նօտասացն՝ այն որ յաներեւան բոլորէն լինի բերեալ՝
համամարտ է ապարքտիոյ և նօտոս լինի անուանեալ.
և լիւանօտոս լինի կոչեցեալ՝ որ ելանէ 'ի մէջ լիփ-
սի և նօտոսի, զոր ոմանք լիբօփիւնիկ կոչեն. և եւ-
րօփնօտոս լինի ասացեալ, որ ելանէ 'ի մէջ եւրոսի և
նօտոսի:

Նոյն 'ի հողմոցն ոմանք ուղղաշունչք են յա-
ռաջ շնչելով ուղղակի, և ոմանք Թիւրաշունչք, որ-
պէս է կիկիաս ասացեալն. և ոմանք 'ի ձմերայնի զօ-
րեղք լինին, որպէս նօտօսքն, և ոմանք յամարայնի, որ
տարեկան կոչին, խառնուրդ ունելով յապարքտիա-
կանացն և 'ի զեփիւռիցն. և այլք հարաւայինք լի-
նին ասացեալք՝ գարնանայինք հողմունք գոլով, և
ինքեանք վօռէք են: Նոյն 'ի բռնագոյն հողմոյն կա-
տեգիս լինի ասացեալ, որ է մրրիկ, այն որ 'ի վե-
րուստ կոփէ յանկարծակի. և Թեւելլիա որ է դղըր-
դիչ, այն որ բախէ յանկարծակի: Եւ լափս և ստռօ-
բիլոս հողմ է պտուտկեալ ներքուստ 'ի վեր, և փչումն
յերկրէ վերաբերեալ 'ի խորոց ոմանց հողմն, և կամ
'ի պատառմանէ վերատրուն̄ [2], յորժամ պտուտեալ
ուժգնակի բերեալ լինի:

Նոյն պռեստեր՝ որ կիզիչ ասի, հողմ է շարամա-
նեալ ընդ ամպոյ խառնաւ և Թանձրագունի. 'ի ձեռն
ինքեան պատառեալ զշարաւնակ ծալմունս ամպոյն՝
խորշիւն շաչիւն և Թընդիւն առնելով: Նա որոտումն
ասեմք այսմիկ, հողմ ինչ յոյժ վտարեալ մտանէ 'ի
մէջ ամպոյ, և անդ ըմբռնեալ լինի յամենայն կող-

1 Մի օրին. միջօրէէն: այլ օրին. վերադրութիւն. միւս
2 Մի օրին. վերարփութիւն: այլ վերափոխութեան:

մանէ. և պատառելով ամենայն հողմն վրդովելով եղեալ լինի, և զամպն ջերմացուցեալ ըստ պատառմանն, որ և ծագումն արարեալ լինի զփայլատակումն ուստի և յառաջ որոտումն լինի, Թէպէտ և յետոյ լինի լսելի յապաղեալ 'ի յօդոյն և հեղգագոյն հասանիլ ընաւորեալ, և փայլմանն 'ի հեռաստանէ երևեալ, իսկ որոտմանն 'ի հուպ լինել լսելեացն. վասն որոյ երևումն հրոյն կանխագոյն եղև՝ էութի ունելով առ 'ի տեսութե հասումն 'ի քացուստ. իսկ որոտումն յորժամ 'ի լսելիս հպի՝ լինի լսելի: Այլ փայլեալն հուր բռնութբ ամպահարութեն՝ որ մինչև յերկիր հեղու կիռոնոս լինի կոչեցեալ. ապա Թէ Թերաբորբոք իցէ հրութիւն առ 'ի յոչ յուժգին հարկանել ամպոցն՝ պրեստէր կոչի, որ ասի կիզիչ: Ապա Թէ առանց հրոյ ամենևին՝ տիւփոն ասի, որ Թարգմանի այրող. և իւրաքանչիւր իր 'ի սոցունց յերկիր հասանելով սկիպտոս անուանի:

Այլ յայսպիսի ամպահարութեցս որ մոխրատեսակ փոշի բերեն՝ փօլոսք [1] անուանին. իսկ որ վաղվաղակի 'ի Թուխս անցանին՝ ասացեալ լինին արգիտէսք. և ելքք՝ այնոքիկ որ զծօրէն բերեալ լինին. և սկիպտոս այն են, որ հատումն առնեն ներգործուԹեամբ իւրեանց: Այլ 'ի միասին առնլով զամենայն՝ որ զինչ յօդս լինին երևմունք, զի ոմանք են ըստ ներերևութե, և ոմանք ըստ ենԹակայութե: Իսկ ներերևութիւն՝ իրիդէս, որ են աղեղունք և ցուպք և այնպիսիքն: Իսկ ըստ ենԹակայութե սելք, որ են ճաճանչք. և դիատոնք, որ են Թուիչք. և կոմիտք, որ են գիսաւորք, և որք սոցունց են նմանիք:

Արդ իրիս [2] է ներերևուԹի հատման արևու կամ լուսնի 'ի խոնաւ ամպում և 'ի խորին, և շարունակեալ առ յերևուԹի իբրու առ հայելւոջ տեսեալ ըստ բոլորի շրջաբերուԹե: Իսկ ռաւդոսք՝ է իրիսի ներերևուԹի ուղիղ, որ Թարգմանի ցուպ. և կալ է երևուԹի պայծառուԹե աստեղացն պարահեղեալ: Այս է տարբերուԹի իրիսի և կալի. զի իրիսն հանդէպ լինի երևեալ արեգական և լուսնի. իսկ ա-

1 Երկք օրէն. ֆոոլոս:

2 Ամենայն օրինակք Նիրիս:

րամն՝ որ ասացեալ լինի կաղ, ընդ ամենայն աստեղք շուրջ լինի ։ Այլ սելաս՝ է հրոյ յոլովի վառումն յօդի ․ և 'ի սելայիցն ոմանք սառուցեալ լինին և ոմանք հաստատեալք ։ Արդ ստուումն է հրոյ լինելութի 'ի մերձաւորութենէ [1] տարերցն փութով անցեալ ընդ օդով, երևութի երկայնատեսակ [2] ունելով 'ի ձեռն երագութե ․ իսկ հաստուումն է առանց բերման երկարաձիգ տարածումն ․ և 'ի նմանութի գէջ բնութե լայնացեալ երկաքանչիւր կողմանքն որ կոչեալ լինի գիսաւոր ։ Այլ բազում անգամ 'ի սելայիցն ոմանք տեականք լինին առ յոլով ժամանակս, և ոմանք վաղվաղակի շիջեալ լինին ։

Բազում և այլ երևութացեալ տեսակք լինին լամբատք կոչեցեալ, և դօդիք, և պիւթօսք, և բոթինոսք՝ ըստ առ սոցա նմանութեց ․ և այսոքիկ երկակի տեսեալք լինին և սղապէս [3], հիւսուսայինք և հարաւայինք ․ այլ սակայն ամենայն այսպիսիքս անհաստատ են, զի ոչ երբէք 'ի սոցանէ ինչ միշտ երեւելի լինի պատմագրեալ հաստատուն ։ Իսկ արդ օդայինքս այսպէս են ։

Այլ պարունակէ երկիր բազում ինչ իւրով 'ի յինքեանս որպէս ջրոյ, այնպէս հրոյ և հողմոյ աղբերք ։ 'Ի սոցունց որ ընդ երկրաւ են՝ անտեսք են, այլ բազում վերաշնչմունք ունին և վերափչմունք, որպէս Լիպարք, և Յետնէ՝ և որ Ղոլոմն կղզի, և այլք՝ որ հասեն բազում անգամ զհուրն գետօրէն, և խառն ձողս հանդերձ հրոյն վերաբերեն, և այլք ընդ երկրաւ գոլով մերձ ջուրց աղբերականց՝ զայնոսիկ ջերմացուցանեն, և զոմանս 'ի ջուրցն եղկագոյնս հանեն, և զոմանս յոյժ եռացեալս, և զոմանս բարեխառն ։

Նոյնպէս և հողմոց է բացեալ ակունս բազումն 'ի յերկրի, յորոց ոմանք դիւթացեալ առնեն վհրպեալս, և այլք անկերակրութիւն տան, և ոմանք հրամանատրութի, որպէս այն որ 'ի Դելփքն են, և

1 Երկու 'ի հին օրինակացն 'ի սոսկ ․ եդաւ ըստ յունին ։ Գերյօփրութէ ։
2 Ամենայն օրինակք Երկնափէ դէս ։
3 Մի օրին․ սղապէս․ այլքն կա-

այն որ 'ի Լեբալիա , և այլք ամենևին սպանանեն , որպէս այն որ 'ի Փռիւգիայն են ։ Բազում անգամ և տարազգակից հողմն յերկրի արտաքս ելեալ 'ի վայրէ իւրմէ 'ի խորագոյն յատակս երկրի բազում մասունս դողացուցանէ ․ 'ի սմանէ յոլով անցեալ 'ի փորոգս [1] երկրի , և 'ի բաց փակեալ առ նոքօք Թօթափեաց զերկիր ․ և 'ի խնդրելն իւր ել՝ գործեաց յերկիր զայս ինչ՝ զոր սովորեալ եմք կոչել շարժումն ․

Այլ 'ի շարժմանցն՝ որ առ կողմանս կողմանս[2] շարժին ըստ սուր անկմանցն եպիկլիտաք կոչին՝ որ Թարգմանի խոնարհեցուցիչ ․ և որք ներքուստ 'ի վեր բերեն ըստ սուր անկմանցն՝ եռացուցիչք ․ և որ բացմունք բանան և բերեն զերկիր՝ ընկեցուցիչք անուանին , յորոց ոմանք հողմունք վերաբերեն , և ոմանք վէմք , և ոմանք տիղմք , և այլք աղբերք երևեցուցանեն , որք յառաջագոյն ոչ կային ․ Իսկ ոմանք դըղըրդեցուցանեն ըստ միոյ մերժման, զոր կոչեմք վանողք ․ և այլք դողացուցանեն խոնարհեցուցանելով և վերստին շարժելով և միշտ 'ի շարժելն բերելով որ պաղմականք [3] լինին ասացեալ նման դողութեան ախտի բացագործելով ։ Այլ և լեալ լինին մռընչողական շարժմունք շարժելով զերկիր ժահահոտուք ․ այլ ևս բազումս առանց շարժման լինին մռընչմունք յերկրի՝ յորժամ հողմն շարժելոյ ոչ իցէ բաւական , այլ ըստ ինքեան հատեալ շարամանի [4] 'ի նա և վըրդովի բռնութիւն մատուցեալ [5] ․ քանզի 'ի ներքս մտանեն հողմունքն ընդ այնոսիկ որ յերկրի խոնաւութիւքն միացեալ և խառնեալ ։

Ըստ սոցունց համեմատութե լեալ լինի և 'ի ծովու տեղի տալ նմա բազում անգամ և կոհակացն 'ի վեր ընթացութիւքն , երբեմն ընդդիմահարութի ունելով և երբեմն մերժումն միայն , որպէս պատմագրեալ լինի առ 'ի Լիկիէ և Իսաւրայ ։ Այլ բազում

1 Նոր օրինակ մի 'ի փորափս ։

2 Երկու օրին․ առ կողմանի կողմանսն ․ այլ օրին․ առ կողմանի շարժին ։

3 Մի օրին․ պղմականք ․ այլ օրինակ նոր․ փաղաղականք ․ մնացեալքն պաղմականք ․ եդաւ համաձայն յունին ։

4 Մի օրին․ շարամանի , նա և ։

5 Երեք օրին․ մարտուցեալ ։

անդամ վերելեալ լինի փչմունք 'ի ծովէն հրոյ, և աղբերաց բղխմունք, և ելք գետոց, և բուսմունք ծառոց, և հոսմունք 'ի պտոյտս 'ի խառնելոյ հողմոցն 'ի խորսն, այն իսկ որ յԵւուրիպոս և 'ի Պարթմոս լինին լեալ. զի բազում ամբովտ[1] ասացեալ լինին և կոհակաց բարձրութի ընդ լուսնին միշտ շրջաբերեալք ըստ ոմանց սահմանեալ ժամայից. և այժմ զամենայնն ասացից: Տարերքս խառնին առ միմեանս յօդեալ և բաղկացեալ 'ի միութի. և նոցա 'ի մասնէ ապականութին խառնմամբն լինելութիւն լինի այլ էակացս. և ամենայնն 'ի նոսա և 'ի ձեռն նոցա անապական և անյեղ պահին. առ որ հայելով ոք զարմացեալ եղև, թէ որպէս 'ի ներհակաց սկզբանց բաղկացեալ եղև աշխարհ. այս ինքն 'ի չորոյ և 'ի գիջոյ, 'ի ցրտոյ և 'ի ջերմոյ. որոց կանխաւ խառնեալ գոյացան 'ի նոցանէ ամենայն հանդիպելոցս բազմութիք:

Դարձեալ սքանչելի թուի ումեք, թէ որպէս կայ հաստատուն 'ի ներհակ ազգացն վարելն զսա, տնանգաց ասեմ և հարստաց, համբակաց և ծերոց, զօրաւորաց և տկարաց, բարեաց և չարաց: Ո՛վ ոք ոչ գիտէ զքաղաքական միաբանութի, զհրաշափառն ասեմ իր. զի մի 'ի բազմաց և յաննմանից բացակատարի, և 'ի մի տրամադրութի նորա ամենեցուն պարունակի բնութի և բախտ. նա զի և ներհականացն ախորժէ լինել միաբանութին. և զայս ախորժէ բնութին, ըստ որում զարուն առ էգն ած, և ոչ զերկաքանչիւրոյն առ ցեղակիցսն. ըստ այսմ և զառաջին միաբանութի 'ի ներհակացն շարամերձեաց, և ոչ 'ի նմանեացն:

Թուի ինձ և արհեստ նմանելով 'ի բնութիս զնոյն առնէ. քանզի դեղագործութի 'ի սպիտակ և 'ի սեաւ, դեղին և կարմիր դեղոց խառնեալ, պատկեր՝ 'ի ձեռն ասացելոցդ միաբանութե՝ բացակատարեաց: Նա երաժշտականութե սուրս՝ և ծանունս համանգամայն զերկարս և զսուղ բարբառս խառնելով զանազան ձայնիւք մի բացակատարեաց յօդաւորութի: Նա 'ի

1 Ամենայն օրինակք ամպրող. եդաք ըստ յունին:

